# ՄԱՐՏԻՆՈՍ ԼՈՒՏԵՐԻՆ

# ՎԱՐՈՒՑ

# ԵՒ

# ՆՈՐՈԳՈՒԹԵԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ



# ՄԱՐՏԻՆՈՍ ԼՈՒՏԵՐԻՆ

# ՎԱՐՈՒՑ

ԵՒ

# ՆՈՐՈԳՈՒԹԵԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

ԳՐԵՑ

Հ. ՂԵՒՈՆԴ Վ. ՅՈՎՆԱՆԵԱՆՑ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԷՆՆԱ

ՊԱՀՏՊԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

1850 ՌՄՂԹ.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

ԲՈՂՈՔՈՂՆԵՐՈՒՆ քանի՛ մը տարիէ վեր իրենց սկզբունքներն ու մոլորութիւնները Ազգերնուս մէջ տարածելու համար ըրած ջանքը տեսնելով, մտքերնիս դրած էինք որ աս՝ թէ կրօնական եւ թէ ազգային նկատմամբ՝ սաստիկ վնասակար չարեաց առջեւն առնելու յարմար գիրք մը հրատարակենք։ Աս մեր մտածութեան կամ բաղձանքին մէջ երթալով աւելի եւս հաստատուեցանք նոյն իսկ Ազգին մէջէն զանազան բարեսէր ու ճշմարիտ ազգասէր անձանց բաղձանքը տեսնելով, որոնք գրով ու խօսքով զմեզ կը յորդորէին ու կ՚աղաչէին որ Ազգը մոլորեցընել ուզողներուն դէմ ելլենք, եւ պատշաճաւոր գրուածներ հանելով՝ գործած ու գործելու չարիքնին խափանելու ջանանք։

Այս վախճանին հասնելու համար ամենէն աւելի յարմար երեւցաւ մեզի բողոքողութեան հիմնադրին վարքը եւ իր ըրած Նորոգութեան պատմութիւնը հրատարակել, որպէս զի իր՝ ինչպիսի մարդ, եւ բողոքողութեան՝ ինչ տեսակ սկզբանց վրայ հիմնուած ըլլալը, ինչ կերպով սկսիլն ու յառաջ երթալը, ծագելուն պէս՝ որչափ չարիքներ պատճառելը, եւ իր պաշտպաններուն ու հետեւողներուն՝ ընդհանրապէս ինչչափ անպիտան մարդիկ ըլլալը տեսնելով, ամէն մարդ նոյն իսկ բողոքողութեան վրայ պայծառ գաղափար ունենայ։

Գիտենք բողոքողներուն ասոնք կարդացած ատեն ըսելիքը։ Նորոգութեան սկիզբը ըլլողներուն եւ առանձինն Լուտերին ինչպիսի մարդ ըլլալը, ու բողոքողութեան՝ ինչ միջոցներով հաստատուիլը՝ մեր հոգը չէ, կ՚ըսեն. մենք միայն վարդապետութեան կը նայինք. Նոյն

վարդապետութիւնն Աստուծոյ խօսքն է․ Աստուած զԼուտեր եւ անոր ընկերներն ու աշակերտները իբրեւ գործիք բանեցուց, եւ անոնց ձեռքովը եկեղեցին մաքրեց ու նորոգեց։ Գործք մը բարի սեպուելու համար՝ հարկաւոր չէ որ գործիքը բարի ըլլայ։ — Աս է հիմնական բողոքողաց ընդհանրապէս բանեցուցած բերանը։ Բայց մեր պատմութիւնը մտադրութեամբ կարդացողը ինք իրմէ կ՚իմանայ աս խօսքին որչափ անհիմ ու խաբէական ըլլալը։ Անոր համար հոստեղս միայն համառօտիւ մը ետեւի պատասխանը կու տանք։

Տարակոյս չկայ որ Աստուած երբեմն գէշ ու անպիտան գործիքով մեծամեծ ու շատ բարի գործքեր կը գործէ։ Բայց ո՞վ խելացի մարդ կրնայ ըսել թէ Աստուած այսպիսի երեւելի գործք մը գործելու, այս ինքն՝ բոլոր եկեղեցւոյ կարգաւորութիւնը, պաշտամունքը, վարդապետութիւնները փոխելով կրօնը նորոգելու համար՝ անանկ մարդիկ ընտրէ, որոնք աւելի կամ պակաս մոլութիւններու մէջ թաթխուած ըլլան, եւ իրենց գործքը գլուխ հանելու համար ձեռուընին միջնորդ առնեն ամէն տեսակ ստութիւնները, խարդախութիւնները, նենգութիւնները, բռնութիւնները, անիրաւութիւնները, յափշտակութիւններն ու պղծութիւնները։ Քրիստոնէութեան վրայ թեթեւ գաղափար մ՚ալ ունեցողը անմիջապէս կ՚իմանայ աս բողոքողաց մինչեւ երկինք բարձրացուցած Նորոգութեան ինչ տեսակ բան ըլլալը՝ երբ որ մտածէ զմարդիկ իրեն ձգելու համար առջեւնին դրած խայծերը․ այս ինքն՝ փառասէր իշխաններուն առջեւը՝ մեծութիւն եւ իշխանութեան ընդարձակութիւն, ընչասէր ասպետներուն առջեւը՝ եկեղեցիներուն ու վանքերուն ինչքերը, կամաւ յանձն առած կապանքներնէն ձանձրացած քահանայից ու վանականաց առջեւը՝ կարգուելու հրաման, հասարակ մարդուն առջեւը՝ ամէն ուզածն ընելու գրեթէ անսանձ ազատութիւն։

Բայց այս ամենայն մէկդի թող տանք, ո՛ւր տեղ լսուած է որ մարդիկ իրենց սխալական կրօնը թող տա-

լով ու ճշմարտութեան դառնալով, նոյն ճշմարիտ վարդապետութեամբ գէշցած եւ մոլութեանց մէջ թաթխուած, ապստամբութիւններ հանած ու մեծամեծ չարիքներ գործած ըլլան: Ամէն տեղ եւ ամէն ատեն ճշմարիտ կրօնի դառնալուն առաջին պտուղն եղած է գազանի պէս մարդիկներն աղէկցընել ու կիրքերը չափաւորել. իսկ աս բողոքողաց Նորոգեալ կրօնին ամենէն առջի պտուղն եղած է՝ զմարդիկ գազանի դարձընել եւ կիրքերն աւելի եւս սաստկացընել: Ասով միայն դիւրին է իմանալը թէ ինչպիսի հոգւոյ գործք է աս Նորոգութիւնը. եւ իրաւամբ ամէն մարդ կրնայ մտածել Էրազմոսին առ Մելանքթոն գրածը, թէ «Ինչպէս կրնամ համոզուիլ որ Քրիստոսի Հոգիէն վարուած ըլլան անանկ մարդիկ՝ որոնց վարքը Քրիստոսի վարդապետութենէն այնչափ օտար է: Յառաջագոյն Աւետարանը զվայրենի մարդիկները քաղցրահամբոյր կ՚ընէր, յափշտակասէր մարդիկները՝ բարերար եւ առատատուր... խռովայոյզ մարդիկները՝ խաղաղասէր. իսկ հիմակուան մարդիկ կարծես թէ կատաղի կ՚ըլլան»:

Այսչափս բաւական կը սեպենք աս նիւթին վրայ, որովհետեւ վերը ըսածներնուս պէս՝ պատմութիւններնուս ընթացքին մէջ ընթերցողք շատ տեղ թէ բողոքողաց ըսածին պատասխանը եւ թէ մեր գրածին վկայութիւններն ու հաստատութիւնը կը գտնեն: Կը մնայ հիմա քիչ մ՚ալ պատմածներնուս ստուգութիւնն ու հաւաստարմութիւնը ցուցընել:

Որպէս զի թէ բարեմիտ ընթերցողները գրածներնուս վրայ աւելի վստահութիւն ունենան, եւ թէ հակառակորդներուն բերանն աւելի դիւրաւ կարկուի, բոլոր աս մեր գրուածքին մէջ մեզի առաջնորդ առած ենք նոյն իսկ Լուտերին, իր աշակերտներուն եւ ուրիշ հին ու նոր երեւելի բողոքող մատենագիրներուն գրուածքները. այնպէս որ կրնանք ըսել թէ բաց ի անտարբեր եւ կամ փոքր մոքր դէպքերէն՝ գրեթէ ամէն տեղ նոյն մատենագիրներուն հետեւած եւ իրենց խօսքերն յա-

ռաջ բերած ենք։ Բայց Լուտերին եւ իրեններուն դէմ ըսածներնուս ճշմարտութիւնը բոլորովին անտարակուսելի կ'ըլլայ. որովհետեւ մարդու մը կամ կողմնակցութեան մը՝ ինք իրեն դէմ տուած վկայութիւնը՝ ուրիշ ամէն վկայութիւններէն աւելի զօրաւոր է, եւ անհակառակելի ցոյց է ճշմարտութեան։

Հոս կը դնենք ան հեղինակները՝ որոնց հետեւած եւ կամ վկայութիւն բերած ենք, ծանուցանելով ան տպագրութիւնն ալ՝ որն որ ձեռուընիս ունեինք։

Բողոքող հեղինակներ։

Ա. Գործք Լութերի գերմաներէն[1]. ութը հատոր. տպագր. Յենա, 1555 — 1558։

Բ. Գործք Լութերի լատիներէն[2]. եօթը հատոր. տպագր. ի Վիդդենպերկ, 1545 — 1557։

Լուտերի գրուածքներէն բերած վկայութիւններնիս միշտ աս երկու տպագրութեան մէկուն մէջէն առած ենք. եւ քիչ տեղ եղած է որ ուրիշ հեղինակներուն բերած վկայութիւնը՝ մենք ալ իրենցմէ առնելով յառաջ բերենք, բայց ասանկ տեղերն ալ միշտ իմացուցած ենք՝ առած տեղերնուս անունը քովը դնելով, ինչպէս առ Մէնցլէ, առ Ալթէնպուրքի, եւ այլն։ Գիտնալու է որ Լուտերին ամէն գրուածքները թէ լատիներէն եւ թէ գերմաներէն չեն գտնուիր, հապա ընդհանրապէս ոմանք մէկ լեզուաւ ոմանք ալ մէկալ լեզուաւ. բայց կան անանկ գրուածքներ ալ՝ զորոնք կամ ինք Լուտեր եւ կամ ուրիշները լատիներէնէն գերմաներէն կամ գերմաներէնէն լատիներէն թարգմանած ըլլալով՝ երկու լեզուաւ ալ կը գտնուին։ Ընդհանրապէս ուրիշներուն ըրած թարգմանութիւնը սկզբնագրին հետ նոյն է. իսկ Լուտերին անձամբ թարգմանածները հասարակօրէն շատ փոխուած են, այնպէս որ տեղ տեղ աւելի տարբեր գրուածք մը կրնայ սեպուիլ քան թէ թարգմանութիւն մը։

1. Սկզբնագրին ճակատը. Der (erste . . .) Theil aller Bücher und Schrifften des thewren, seligen Manns Doct. Mart. Lutheri.

2. Tomus (primus . . .) omnium operum Reverendi Domini Martini Lutheri, Doctoris Theologiæ.

**Գ. Լութերի Նամակները**։ Թէպէտ եւ Լութերի նամակներէն ոմանք իր Գործոց մէջ կը գտնուին, բայց առանձին ալ հաւաքուած ու տպուած են։ Այս հաւաքումներուն մէջ ամենէն կատարեալն ու ընտիրն է Տը Վէթ կամ Տէ Վեդդէ անուն մէկու մը Պերլին տպել տուածը հինգ հատորի մէջ 1825 — 1828, որմէ՝ քանի մը վկայութենէ զատ՝ մենք ալ միշտ առած ենք։

**Գ. Խօսք սեղանոյ**[3], գերմաներէն, տպագր. ի Ֆրանքֆուրդ առ Մայն, 1574։ Այս գիրքը Լութերին՝ սեղանի վրայ իր աշակերտներուն ու բարեկամներուն առջեւը խօսած խօսքերուն, զանազան նիւթերու վրայ տուած վճիռներուն ու որոշմունքներուն եւ պատմած պատմութիւններուն հաւաքումն է, զորոնք անձամբ լսողներէն Յովհաննէս Աւրիֆապէր անուն Լութերի աշակերտը գրի անցուցած, կարգի խոթած ու տպել տուած է։ Բողոքողք նոյն գրքին վրայ այնչափ համարում ունին, որ մեր ձեռքն ունեցած տպագրութեան ճակատը Աւետարանին աս խօսքը տպուած է, "Ժողովեցէք զնշխարս կոտորոցն, զի մի ինչ կորիցէ„։ Բայց ինչպէս որ պատմութեան ընթացքին մէջ մէկ երկու տեղ ըսած ենք, մէջը անանկ պիղծ վարդապետութիւններ եւ անամօթ ու լպրշական խօսակցութիւններ ու պատմութիւններ կան, որ անկարելի է թէ հեթանոսաց մէջ ամենէն անամօթագոյն բանաստեղծը անոնցմէ աւելի պիղծ բան մը կարենայ խօսիլ։ Աս պատճառաւ՝ վերջի ժամանակուան քանի մը բողոքող մատենագիրներ Լութերին պատուոյն ոլատ չբերելու համար՝ կը զրուցեն թէ նոյն գործքն իրեն հարազատ գործքերուն մէջ սեպելու չէ. բայց ասիկա փուճ խօսք է, ամէն երեւելի հեղինակները կը վկայեն որ մէջինները իր խօսքերն են։

**Ե. Մելանքթոն, Լութերի կենաց ու գործոց պատմութիւնը**[4]. տպագր. ի Թուրինգիա, 1548, որն որ Լութերին վարքը ծնընդենէն մինչեւ ներողութեանց վէճին

3. Colloquia oder Tischreden Doctor Martini Lutheri . . . Durch Johannem Aurifabern.

4. De vita et Actis Martini Lutheri Historia.

սկսիլը կը պատմէ, եւ վերջը երկայն բարակ խորհրդածութիւններ ընելէն ետեւ՝ Վորմսի ազգաժողովին պատմութիւնը կը դնէ։

Զ. Մաթեզիոս (Ծն. 1504. մեռ. 1588.) Պատմութիւն Լութերի[5]. տպագր. ի Դրեզդին, 1563։ Ասիկա Նորոգչին երեւելի աշակերտներէն մէկն է, որն որ ժողովրդեան առջեւը խօսուած ԺԷ. ճառի մէջ իր վարդապետին վարքը բաւական ընդարձակութեամբ բայց արտաքոյ կարգի կողմնակալութեամբ կը պատմէ։

Է. Սլէյտան (Ծն. 1506. մեռ. 1556.) Կարոլոս Հինգերորդին ատենը պետութեան ու կրօնից վիճակը[6]. տպագր. 1597ին, առանց տեղւոյ անուան։ Ասոր մէջ բողոքողութեան պատմութիւնն ընդարձակ կը գտնուի։ Հեղինակը լատիներէն գրած է, բայց մեր ձեռքն ունեցածը գաղղիերէն հին թարգմանութիւն մըն էր։

Ը. Սեքենտորֆ (Ծն. 1626. մեռ. 1692.) Պատմական եւ ջատագովական Մեկնութիւն Լութերականութեան վրայ[7]. Ֆրանքֆուրդ եւ Լիփսիա, 1692։ Աս ընդարձակ գիրքը գրած է Մենպուր անունով Յիսուսեանի մը շինած Լուտերականութեան պատմութեան դէմ. եւ թէպէտ շատ կողմանէ պատմական ճշդութիւն ունի, բայց եւ արտաքոյ կարգի կողմնակալ է։

Թ. Ռոպերթսըն (Ծն. 1721. մեռ. 1793.) Կարոլոս Հինգերորդին պատմութիւնը[8]. երեք հատոր. տպագր. ի Լոնտոն, 1769։

Ժ. Բլանք (մեռ. 1833.) Մեր բողոքական վարդապետութեան սկզբնաւորութեան, փոփոխութեանց եւ կազմութեան պատմութիւնը[9]. վեց հատոր. տպագր. ի Լիփսիա, 1791 — 1800։ Աս գրուածքը բողոքողութեան ըն-

5. Historien von des ehrwürdigen in Gott seligen theueren Mannes Gottes D. M. Luther's Anfang, Lehre, Leben, standhafter Bekenntniß seines Glaubens und sterben.

6. Commentaires touchant l'estat de la Religion et République sous l'empereur Charles V.

7. Viti Ludovici a Seckendorf, Commentarius historicus et apologeticus de Lutheranismo.

8. The History of the Reign of the Emperor Charles V. By William Robertson.

9. Geschichte der Entstehung, der Veränderungen und der Bildung unsers protestantischen Lehrbegriffs. Von D. Gottlieb Jakob Planck.

դարձակ պատմութիւն մըն է, որուն մէջ հեղինակը տեղ տեղ շատ անկողմնակալ եւ ուղիղ դատաստաններ կ'ը-նէ ալ նէ, տեղ տեղ ալ սաստիկ կողմնակալութեամբ ու նախապաշարմամբ կը խօսի։

ԺԱ. Ռոսգոյ (Ծն. 1753. մեռ. 1831.) Լեւոն Տասներորդին կեանքն ու քահանայապետութիւնը[10]. չորս հատոր. տպագր. ի Լիվըրփուլ, 1805։ Ընդհանրապէս ճիշդ ու անկողմնակալ է, եւ դատաստաններն ըստ մեծի մասին ուղիղ եւ իմաստուն են։

ԺԲ. Մէնցըլ (Ծն. 1784.) Նոր պատմութիւն Գերմանացւոց[11]. տասուերկու հատոր. տպագր. ի Պրեզլաւ, 1826 — 1848։ Այս գործքս արտաքոյ կարգի անկողմնակալութեամբ եւ մեծ չափաւորութեամբ գրուած է։

ԺԳ. Մերլ տ'Օպինեէ (Ծն. 1794.) Պատմութիւն վեշտասաներորդ դարու բարեկարգութեան ի Գերմանիա. երկու հատոր. տպագր. ի Զմիւռնիա, 1846 — 1848։ Ասիկա գրեթէ բոլոր ձեռուընիս եղած բողոքող հեղինակներէն աւելի կողմնակալ ու խարդախ է։

ԺԴ. Ռանքէ (Ծն. 1795.) Գերմանական պատմութիւն ի ժամանակի Նորոգութեան[12]. վեց հատոր. տպագր. ի Պերլին, 1839 — 1843։ Երբեմն խիստ եւ երբեմն չափաւորութեամբ կը խօսի։

ԺԵ. Լէոն (Ծն. 1799.) Տիեզերական պատմութիւն[13]. վեց հատոր. տպագր. ի Հալլէ, 1825 — 1844։ Հասարակօրէն անանկ չափաւորութեամբ կը խօսի որ մարդ չիկրնար կարծել թէ բողոքող ըլլայ։

ԺԶ. Գուստաւ Ֆիցէր (Ծն. 1809.) Վարք Մարթինոսի Լութերի[14]. տպագր. ի Շդուդկարդ, 1836։ Ըստ մեծի մասին Սեքենտորֆէն քաղուած է, եւ իսկզբանէ մինչեւ վերջը Լութերի գովեստ մըն է։

10. The life and pontificate of Leo the Tenth. By William Roscoe.

11. Neuere Geschichte der Deutschen, von der Reformation bis zur Bundes-Acte. Von Karl Adolf Menzel.

12. Deutsche Gesch. im Zeitalter der Reformation. Von Leopold Ranke.

13. Lehrbuch der Universalgeschichte. Von Dr. Heinrich Leo.

14. Martin Luther's Leben. Von Gustav Pfizer.

Աս բողոքող հեղինակներուն գրուածոց սկզբնագիրը ձեռուընիս ունենալով՝ զգուշութեամբ եւ կրնանք ըսել խղճահարական ճշդութեամբ հետեւեցանք, շատ անգամ մի եւ նոյն վկայութիւնը երեք չորս անգամ բաղդատելով, եւ թարգմանելու ատեն՝ աւելի ճշդութեան միտ դնելով քան թէ վայելչութեան։

Իսկ ունեցած ուղղափառ հեղինակներնիս ասոնք են։

Ա. Ուլէնպէրկ (մեռ. 1617.) Լութէրական քարոզչաց պատմութիւնը[15]. երկու հատոր. տպագր. ի Գոլոնիա, 1622։ Մենք միայն առաջին հատորը գործածեցինք, որն որ Լութերին վարքը կը բովանդակէ։

Բ. Բալլավիչինի (ծն. 1607. մեռ. 1667.) Տրիտենտեան ժողովոյն պատմութիւնը[16]. երեք հատոր. տպագր. ի Նէապոլիս, 1757։

Գ. Պոսիւէ (ծն. 1617. մեռ. 1704.) Բողոքական եկեղեցեաց փոփոխութիւններուն պատմութիւնը[17]. չորս հատոր. տպագր. ի Փարիզ, 1730։

Դ. Օտէն (ծն. 1789.) Մարթինոս Լութերին վարուց, վարդապետութեանց ու գրուածոց պատմութիւնը[18]. (գերմ. թարգմ.) երկու հատոր. տպագր. յԱւկսպուրկ, 1843։ Աս գաղղիացի մատենագրին գերմաներէն թարգմանութիւնը գործածելնուս պատճառն ան է, որ թարգմանիչը հեղինակին Լութերէն եւ ուրիշ գերմանացի հեղինակներէն բերած շատ ու ընդարձակ վկայութիւններուն սկզբնագիրը կը դնէ։

Ե. Ռիֆֆէլ (ծն. 1807) Քրիստոնէական եկեղեցւոյ նոր ժամանակուան պատմութիւնը[19] մինչեւ հիմա երեք հատոր. տպագր. ի Մոգունտիա (Մայնց) 1841 — 1846։

Ասոնցմէ զատ նաեւ ուրիշ քանի մը թէ բողոքող եւ թէ ուղղափառ հեղինակներ ալ ունէինք, ինչպէս

15. Historia de vita, moribus, rebus gestis, studiis ac denique morte praedicantium Lutheranorum. Auctore Casparo Ulenbergio.

16. Istoria del Concilio di Trento, scritta dal P. Sforza Pallavicino.

17. Histoire des Variations des églises protestantes, par Bossuet.

18. Geschichte des Lebens, der Lehren und Schriften Dr. Martin Luther's, von J. M. Audin.

19. Christliche Kirchengeschichte der neuesten Zeit. Von Dr. Caspar Riffel.

բողոքողներէն՝ Մոսհեմիոսի եկեղեցական պատմութիւնը, Գոսպլերի նամակները, եւ այլն․ իսկ ուղղափառներէն՝ Ռայնալտի տարեգրութիւնը՝ որմէ միայն քանի մը յիշատակարան առած ենք, Մեմպուրի Լուտերականութեան պատմութիւնը, Նոյէլ Փերդինանդոս Ա․ին պատմութիւնը, եւ այլն․ բայց ասոնք քիչ գործածած ըլլալով, վրանին առանձին խօսիլն հարկ չսեպեցինք։

Ասոնք են ահաւասիկ ձեռուընիս եղած բողոքող եւ ուղղափառ մատենագիրները․ բայց ինչպէս վերը ըսինք եւ գրքին վրայ վեր ի վերոյ մը նայողն ալ կրնայ տեսնել՝ գրեթէ միշտ բողոքող հեղինակներուն հետեւած ենք, որով եւ դրածներնուս ստուգութեան վրայ տարակոյս չմնալով, կը յուսանք որ դիւրաւ կը հասնինք վախճաններնուս, որ է Ազգերնուս վնասը խափանել։

Ի սկզբան ըսինք որ բողոքողութիւնը թէ կրօնական եւ թէ ազգային նկատմամբ մեծապէս վնասակար է։ Կրօնական կողմանէ վնասակար ըլլալուն, ճշմարիտ աստուածպաշտութիւնը խանգարելուն, բարեգործութիւնները խափանելուն, մոլութիւններ պատճառելուն վրայ կարծենք թէ աս մեր գրուածքը մտադրութեամբ եւ առանց նախապաշարման կարդացողը չիկրնար ամենեւին տարակուսիլ։ Բայց ազգային նկատմամբ ալ վնասակար ըլլալը յայտնի բան է։ Ստուգիւ ամէն հայրենասէր սրտի մեծ տրտմութիւն ու ցաւ կը պատճառէ տեսնելը թէ Ազգերնիս կրօնի կողմանէ հիմա երկու բաժնուած ըլլալով, մեծամեծ բարիքներ կը խափանուին, ազգային յառաջադիմութիւնն ու պայծառութիւնը գոնէ այնչափ դիւրաւ յառաջ չ'երթար, որչափ որ կրնար ըլլալ՝ թէ որ ամէն կողմանէ մէկ ըլլալով՝ ամէնքս միաբան մի եւ նոյն վախճանին դիմէինք։ Անոր համար ալ Ազգին ճշմարիտ բարիքն ուզողներուն գլխաւոր մտածմունքն ան է որ աս դժբախտ բաժանման պատճառն ու բաժանումը վերցնելով՝ Ազգերնիս նաեւ աս կողմանէ կատարելապէս մէկ ըլլայ։ Արդ հիմա՝ միայն աս նկատմամբ ալ մտա-

ծելով՝ ինչ աւելի վնասակար բան կրնայ ըլլալ, քան թէ՝ որ մէջերնիս նոր կրօնք մ՚ալ ուսուի եւ նոր բաժանմունք մ՚ալ մտնէ, եւ դժբախտութեամբ երկու բաժնուած Ազգը երեքի բաժնուի, մանաւանդ չէ թէ երեքի, հապա անհամար բաժիններու, որովհետեւ՝ ինչպէս յայտնի է՝ նոյն իսկ բողոքողութեան նկարագիրն է զանազան աղանդներու բաժնուիլ:

Աս ասանկ ըլլալով, պէտք է որ ամէն ազգասէր շատ ցաւի, տեսնելով որ բաց անոնցմէ՝ որոնք բողոքողաց նենգաւոր խօսքերէն խաբուած՝ անոնց մոլորութիւններուն ետեւէն կ՚երթան, կը գտնուին Ազգերնուս մէջ նաեւ անանկ մարդիկ ալ՝ որոնք մէկ կողմանէ հայրենասէր կը ձեւանան եւ իբրեւ թէ իրենք զիրենք Ազգին օգտին համար նուիրած կը կերպարանին, եւ մէկալ կողմանէ ի ծածուկ բողոքողաց թեւ թիկունք կ՚ըլլան, անոնց կողմը կը բռնեն եւ անոնց սկզբունքները տարածելու կը ջանան: Այսպիսիները մէկ կողմանէ նոյն իսկ յայտնապէս բողոքող ըլլողներէն աւելի վնասակար են, որովհետեւ կրնայ ըլլալ որ շատերը ծածուկ թոյներնին չճանչնալով՝ անոնց խաբէական խօսքերէն ըմբռնուին:

Այս ամենայն տեսնելով եւ մեր սիրելի Ազգին ճըշմարիտ օգուտը նկատելով՝ մեր աս գրուածքով ջանացինք նոյն չարեաց առջեւն առնել: Կը յուսանք որ ակնկալութիւննիս պարապ չ՚երթար, եւ աս նիւթը մինչեւ հիմա մեծ բանի տեղ չդնողներն ու Ազգին վնասակար չսեպողներն ալ՝ ասկէ վերջը մեծապէս կը զգուշանան, որով եւ հակառակորդաց դարանները գոնէ ըստ մասին անգործ կ՚ըլլան:



# ՄԱՐՏԻՆՈՍ ԼՈՒՏԵՐԻՆ ՎԱՐՈՒՑ

## ԵՒ

# ՆՈՐՈԳՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

---

## ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ

Թէ՛ եկեղեցական եւ թէ արտաքին պատմութեան մէջ չկայ դէպք մը՝ որուն սկիզբն այնպէս պզտիկ ու չնչին եւ հետեւութիւններն անանկ մեծ ու սաստիկ եղած ըլլան, ինչպէս Լուտերին ձեռքով եկեղեցւոյ մէջ մտած հերձուածը: Գերմանիայի պզտիկ մէկ քաղքին մէջ՝ իսկզբան եւ ոչ մտադրութեան արժանի սեպուող դպրոցական վէճ մը, երկու կրօնի կամ միաբանութեան անձանց մէջ փրթած ուսումնական կռիւ մը, որմէ հազարապատիկ մեծերը շատ հեղ պատահած եւ առանց հետեւութիւն մ'ունենալու իրենք իրենցմէ անցած գացած էին, քիչ ատենուան մէջ անանկ կը մեծնայ, կը սաստկանայ, որ չէ թէ միայն բոլոր Գերմանիան հապա նաեւ գրեթէ բովանդակ Եւրոպան տակն ու վրայ կ'ընէ: Իշխանն ու գեղացին, ազնուականն ու եկեղեցականը, կրօնաւորն ու աշխարհականը, գիտունն ու տգէտը, ամէնն ալ նոյն վէճին մասնակից կ'ըլլան: Կամաց կամաց բանն ան աստիճանի կը հասնի, որ իշխաններն ուրիշ ամէն նիւթերը մէկդի թող տալով՝ իրենց ժողովքներուն ու խորհուրդներուն մէջ՝ միայն ասոր կը զբաղին, ուսումնականները իրենց մտաց բոլոր կարողութիւնները ասոր վրայ կը թափեն, իբրեւ թէ իրենց մտադրութեան արժանի ամենեւին ուրիշ առարկայ մնացած չըլլար: Եւ ասոնց մէկ կողմանէ թզթով ու գրչով իրարու հետ նոյն նիւթին վրայ կռուած ատեն՝ մէկալ կողմանէ մի եւ նոյն պատճառաւ անանկ իրական պատերազմներ կ'ըլլան, որ մեծամեծ իշխանութիւննե-

րու եւ ընդարձակ երկիրներու քաղաքական վիճակին տակն ու վրայ ըլլալուն ու փոխուելուն առիթ կու տան։ Փոքր կայծ մը սեպուած բանը՝ բոլոր աշխարհքը կը հրդեհէ, կաթիլ մը ջուր համարուածը՝ բովանդակ երկրիս երեսը կ՚ողողէ։ Եւ աս ամենայն չէ թէ քիչ մը ժամանակ կը տեւէ, հապա դարերով. եւ թէպէտ երկար տեւողութիւնը՝ կիրքերուն բորբոքումը տկարացընելով ու գաղափարները փոխելով՝ նոյն դէպքին ըրած ազդեցութեան սաստկութիւնը մէկ կողմանէ կը նուազեցընէ, բայց մէկալ կողմանէ աւելի սփռելով՝ տարածութիւնը կը մեծցընէ։

Ասանկ փոքր դէպքի մը այսպիսի մեծ հետեւութիւնը տեսնելով, ուրիշ բան չիկրնար ըսուիլ՝ բայց եթէ որ՝ շատ եւ արտաքոյ կարգի մեծ պարագաներ մէկտեղ գալով, ըստ ինքեան ունենալ չկրցած ազդեցութիւնը տուին անոր։ Եւ արդէն նոյն նիւթին վրայ խօսող մատենագիրներուն գրեթէ ամէնն ալ աս բանս կ՚ընդունին. եւ կը զրուցեն որ երկայն ժամանակէ վեր սաստիկ հեղեղներ ժողվուած՝ տկար թումբով մը բռնուած էին, եւ երկիրն ողողելու համար՝ ուրիշ բանի հարկ չկար, բայց եթէ աս թումբը մէկդի առնողի մը. եւ կամ թէ՝ ետեւէ ետեւ շատ այրելի նիւթեր եկած վրայէ վրայ դիզուած էին, եւ բռընկելու համար՝ միայն կայծ դնող մը հարկաւոր էր։ Արդ Լուտեր ան միայն ըրաւ որ, կ՚ըսեն, թումբը մէկդի վերցուց, եւ այսպէս ան զարհուրելի ջրհեղեղը կամ ան ահագին հրդեհը պատահեցաւ։

Աս մէկտեղ եկող պարագաներն աղէկ իմանալու համար՝ Եւրոպայի եւ մանաւանդ Գերմանիայի նոյն ատենուան՝ եկեղեցական, ուսումնական ու քաղաքական վիճակին պէտք է որ միտ դրուի։ Աս երեք նկատմամբ Գերմանիայի նոյն ժամանակուան վիճակին նայողը յայտնի կը տեսնէ թէ պէտք էր որ ինչ կերպով ըլլայ նէ՝ մեծ խռովութիւն մը փրթէր։ Իսկ թէ որ նոյն խռովութիւնը՝ կրօնական կերպարանք ունեցաւ, կամ թէ աւելի ճիշդ խօսելու համար՝ կրօնական պատրուակի տակ սաստկացաւ նէ, ասոր պատճառն է՝ մերձաւորապէս սկիզբը ընողին՝ եկեղեցական, ու սկսած վէճին՝ կրօնական նիւթի վրայ ըլլալը, եւ միանգամայն միջին դարերու տէրութեանց եւ մանաւանդ Գերմանիայի կայսրութեան դրութիւնը, որոնք ըստ մեծի մասին կրօ-

նական կամ եկեղեցական հիմանց վրայ հիմնուած ըլլալով, զանոնք փոխելու համար եղած շարժման՝ հարկ էր որ կրօնական կերպարանք տրուէր: — Հիմա հարկ է որ առջեւի պատմութիւննիս չսկսած՝ անոր մէջը տեսնելու երեւոյթներնիս աւելի դիւրըմբռնելի ընելու համար՝ առանձինն Գերմանիայի նոյն ժամանակուան եկեղեցական, ուսումնական ու քաղաքական վիճակին վրայ համառօտ տեսութիւն մը տանք:

Ա. Երբ որ Քրիստոս տէրն մեր՝ մարմնով երկրէն բաժնուելու ատեն՝ իր առաքեալներուն եւ անոնցմով բոլոր եկեղեցւոյն ըսած էր որ Մինչեւ աշխարհքիս վերջը հետերնին պիտի մնայ [1], եւ մասնաւորաբար իր մահուընէ քիչ մը յառաջ Պետրոսին զրուցած էր թէ Ես քեզի համար աղաչեցի որ հաւատքդ չպակսի, եւ դուն երբեմն պիտի դառնաս եղբայրներդ հաստատես [2]. աս խօսքերով խոստացած էր որ իր օգնութիւնը եկեղեցիէն երբեք պիտի չպակսի, եւ իր եկեղեցին ու Պետրոս՝ ի յաջորդս իւր՝ երբեք հաւատոյ նիւթերու մէջ պիտի չպակսին կամ չսխալին: Քրիստոսի աս խոստումը սքանչելի կերպով ամէն ատեն կատարուած էր, որով եւ Պետրոսի յաջորդները՝ Հռոմայ քահանայապետները հաւատոյ նիւթերու մէջ երբեք չպակսելէն զատ, շատ անգամ իրենց եղբայրները՝ ուրիշ առաքելոց յաջորդները կամ հայրապետները կանգնած էին. եւ կամ Քրիստոսէն իրենց յանձնուած գլխաւոր իշխանութիւնը գործածելով՝ հաւատքներնուն մէջ պակսող, մոլորութեանց մէջ իյնող եւ նորէն ճշմարիտ հաւատք դառնալ չուզողները եկեղեցիէն մերժած դուրս հանած էին: Ասանկով եկեղեցին հաւատոյ վարդապետութեանց կողմանէ միշտ սուրբ եւ անարատ մնացած էր, եւ նոյնպէս ալ պիտի մնայ մինչեւ աշխարհքիս վերջը:

Բայց ամէն ատենուան հերետիկոսները եւ մանաւանդ բողոքողք աս բանս չեն ընդունիր, եւ ամէն կերպով կը ջանան ցուցընել որ եկեղեցւոյն հաւատքը շատոնցուընէ եւ գրեթէ իր հաստատութենէն մէկ դար ետքը, այս ինքն՝ առաքելոց մահուընէ անմիջապէս վերջը, սկսած էր նուազիլ, իր վարդապետութիւնները շատ բանի մէջ պղտորած էին, եւ ետեւէ ետեւ աւելի փոխուելով ու ապականելով՝ վեշտասաներորդ դարուն սկիզբները կամ Լուտերի երեւցած ատեն՝ բանն ան աստիճանի հա-

1. Մատթ. ԻԸ. 20: 2. Ղուկ. ԻԲ. 31, 32:

սած էր որ գրեթէ տեղ մը Քրիստոսի ճշմարիտ ու զուտ վարդապետութիւնը չէր գտնուեր։ Սակայն որչափ որ ասանկ ընդհանրապէս խօսած ատեններնին՝ ձայներնին կը բարձրացընեն, այնչափ ալ ի մասնաւորի խօսելու ստիպուած ատեններնին՝ նեղ մտնելով եւ իրական բան մը չկրնալով գտնել, կը սկսին այլանդակ խմաստակութեանց ու զրպարտութեանց դիմել, եւ եկեղեցւոյն անանկ վարդապետութիւններ տալ՝ զորոնք ինք չէ թէ միայն երբեք ընդունած եւ վարդապետած չունի, հապա միշտ մերժած եւ իբրեւ հերետիկոսութիւն դատապարտած է ու կը դատապարտէ։

Ասիկա իրենք ալ աղէկ գիտնալով, եւ ճանչնալով որ աս կողմանէ եկեղեցւոյն դէմ ճակատ ելլելը՝ յաղթուելու հետ նոյն է, հասարակօրէն աս մասը թող կու տան կամ շատ թեթեւ կ'անցնին, եւ եկեղեցականաց մէջ մտած բարոյական անկարգութեանց, բարուց ապականութեանց ու թուլութեանց կը դիմեն․ եւ ամէն ճիգն ի գործ կը դնեն որ ցուցընեն թէ եկեղեցականք, կամ եկեղեցին աս վիճակին մէջ ըլլալով՝ հարկ էր որ նորոգութիւն ըլլար։ Աս մասին մէջ ալ բողոքողք չափն արտաքոյ կարգի կ'անցընեն, մէկ երկու տեղ կամ քանի մը անձանց վրայ եղած անկարգութիւնը՝ իբրեւ ընդհանուր ամէն տեղ եւ բոլոր եկեղեցականաց վրայ գտնուող անկարգութիւն կ'ուզեն ցուցընել․ մէկ իրական եւ ստոյգ անկարգութեան վրայ՝ զրպարտութեամբ հարիւր, չըսենք թէ հազար անկարգութիւն ալ իրենց կողմանէ կ'աւելցընեն․ միշտ ալ անանկ կը ձեւացընեն որ աս անկարգութիւնները եկեղեցւոյ մէջ իբրեւ օրինաւոր կամ գոնէ իբրեւ թոյլ տուեալ բաներ էին, ուր որ եկեղեցին զանոնք միշտ դատապարտած է, եւ երբեք իբրեւ օրինաւոր եւ ոչ իսկ իբրեւ թոյլ տուեալ բան սեպած չէ։ Բայց ինչպէս վերը ըսածներնէս կ'երեւայ, դժբախտութեամբ աս նիւթիս մէջ բողոքողաց ամէն ըսածն ալ բոլորովին սուտ եւ անհիմն չէ․ աս ալ ստոյգ է որ աս անկարգութիւնները՝ որոնք Գերմանիայի մէջ ամէն տեղէն աւելի սաստիկ ու մեծ էին, թէ որ Լուտերին հանած շփոթութեանց կատարեալ պատճառ չեղան նէ՝ գոնէ առիթ տուին եւ բողոքողաց ձեռքը յարմար պատրուակ եղան ուզածնին յառաջ տանելու։ Եւ աս անկարգութիւնները չէ թէ միայն ստորին աստիճանի եկեղեցականաց մէջ կը գտնուէին,

հապա նաեւ մենաստաններուն մէջ ալ տարածուած էին. այնպէս որ եկեղեցական կարգին պարծանք ու զարդ եղող շատ սուրբ եպիսկոպոսաց մէջ՝ անանկներ ալ կային, որոնք իրենց եկեղեցական աստիճանին բոլորովին նախատինք կ'ըլլային: Նոյն իսկ Պետրոսի աթոռոյն վրայ երբեմն քանի մը քահանայապետներ նստած էին, որոնք վարքերնին՝ վարդապետութիւններնուն չհամաձայնեցընելով, եկեղեցւոյն շինութիւն ըլլալու տեղ՝ իրենց անձնական պակասութիւններովը՝ գայթակղութեան պատճառ եղած էին:

Այս նիւթերուն վրայ ասանկ կը գրէ Պոսիւէ: "Շատ դարերէ վեր ամէն մարդ եկեղեցական կարգին կանոնին նորոգուելուն կը բաղձար: Ո՛վ տար ինծի, կ'ըսէր Ս. Բեռնարդոս, որ չմեռած՝ եկեղեցին այնպէս տեսնէի, ինչպէս էր իր առջի ժամանակները: Եւ թէ որ նոյն սուրբ մարդը մեռնելու ատեն բանի մը վրայ կը ցաւէր նէ՝ ան էր որ աս բաղձալի փոփոխութիւնը չէր տեսեր: Բոլոր իր կենացը մէջ եկեղեցւոյն չարեացը վրայ կը հեծէր. եւ ժողովուրդները, եկեղեցականները, եպիսկոպոսներն ու նոյն իսկ քահանայապետները նոյն չարիքներէն զգուշացընելէն երբեք չէր դադրեր:... Անկարգութիւններն իրմէ ետքը աւելի շատցած էին: Հռոմայ եկեղեցին, եկեղեցիներուն մայրը, որ ինն ամբողջ դար ամենէն յառաջ օրինակ ըլլալու ճշդութեամբ մը եկեղեցական կարգն ու կանոնը բռնելէն զատ՝ բոլոր աշխարհքիս մէջն ալ հաստատուն պահած էր, հիմա նոյն չարիքէն ազատ չէր: Այնպէս որ Վիէննայի ժողովքին ատենը (1311) մեծ եպիսկոպոս մը՝ որուն քահանայապետէն յանձնած էր որ նոյն ժողովքին մէջ խօսուելու նիւթերը կարգի դնէ, աս սուրբ ժողովքին տեսնելու գործքերուն իբրեւ հիմ դրաւ թէ Պէտք է նորոգել զեկեղեցին ի գլուխն եւ յանդամս իւր:... Յուլիանոս կարդինալը՝ եկեղեցականաց եւ գլխաւորաբար Գերմանիայի եկեղեցականաց անկարգութիւնները Եւգինէոս Դ. քահանայապետին առջեւը դնելով, կը զրուցէր որ Աս անկարգութիւնները բոլոր եկեղեցականաց դէմ զժողովուրդը ատելութեան կը գրգռեն. եւ թէ որ ասոնք ուղղուելու չըլլան, վախնալու է որ աշխարհականք Հուսեանց պէս՝ եկեղեցականաց վրայ կը յարձակին, ինչպէս որ արդէն սաստկութեամբ կը սպառնան: Թէ որ Գերմանիայի եկեղեցականները

շուտով չեն ուղղուիր նէ, կ'ըսէր, Բոհեմիացւոց (Հուսեանց) հերետիկոսութիւնը զսպուելէն ետեւ՝ անկից աւելի վտանգաւոր հերետիկոսութիւն մը դուրս կ'ելլէ. որովհետեւ քիչ մը վերջը մարդիկ պիտ'որ սկսին ըսել թէ եկեղեցականք անուղղայ են եւ իրենց անկարգութեանց ճար գտնել չեն ուզեր:... Մեզի դէմ ունեցած թոյներնին յայտնուելու կը սկսի. քիչ մը վերջը Աստուծոյ հաճոյ պատարագ մը ըրած պիտի սեպեն, եթէ եկեղեցականները նախատեն ու չարչարեն, եւ կամ ունեցածնին չունեցածնին ձեռուըներնէն առնեն, զիրենք՝ իբրեւ Աստուծոյ եւ մարդկան առջի եւ վերջին աստիճանի չարեաց մէջ ընկղմած մարդիկներու տեղ դնելով:... Եւ աս ամէն անկարգութեանց յանցանքը Հռոմայ արքունեաց վրայ պիտի ձգեն,, ըսելով որ ասոնց համար հարկաւոր եղած ճարն հոգալու ետեւէ չինկաւ[3]:

Այս աստիճանի հասած էին չարիքները: Բայց Աստուծոյ մասնաւոր հրաշքովը աս մեծամեծ չարեաց մէջ ալ եկեղեցին իր վարդապետութեանց անարատութիւնն ու սրբութիւնը պահած էր, եւ Հռոմայ եկեղեցին՝ նոյն իսկ Լուտերին վկայութեան նայելով՝ երբեք իր վճիռներուն մէջ սխալած կամ մոլորութիւն մը վարդապետած չէր[4]: Միանգամայն նոյն չարիքները պատահած ատեն ալ եկեղեցւոյ մէջ շատ երեւելի սուրբեր ու սուրբ մարդիկներ ելած էին եւ կ'ելլէին: Անոր համար ալ նոյն չարիքները ամենեւին պատճառ չէին կրնար ըլլալ եկեղեցիէն բաժնուելու. ուստի եւ բոլոր բարեպաշտ մարդիկ թէպէտ եւ ասոնց վրայ կու լային կ'ողբային, թէպէտ եւ կը բաղձային որ կարելի ըլլար նէ՝ արիւննին թափելով կարգի բերեն ուղղեն, ի վերայ այսր ամենայնի երբեք եկեղեցւոյ հաւատքին վրայ տարակոյս մը կամ եկեղեցիէն բաժնուելու մտածութիւնը չէին ունենար: Եւ ինչպէս որ Պոսիւէ կը գրուցէ, թէպէտ եւ բողոքողք «իրենց կարծեցեալ նորոգութիւնը ջատագովելու համար՝ բոլոր եկեղեցական մատենագրաց՝ թէ ժողովրդեան եւ թէ նոյն իսկ եկեղեցականաց անկարգութիւններուն վրայ ըսածները

3. Գիրք Ա. Համ. Ա:

4. Աւստրիկ Լուտերին խօսքը. «Պէտք է որ ամենուն հաւատքը՝ Հռոմայ եկեղեցւոյ դաւանած հաւատքին հետ համաձայնի:... Յիսուսի Քրիստոսի շնորհակալ կ'ըլլամ որ մեծ հրաշքով մը աս միակ եկեղեցին աշխարհքիս վրայ կը պահէ... այնպէս որ երբեք վճռով մը ճշմարիտ հաւատքէն հեռացած չունի,,: Տես Գիրք Ա. Գլ. Դ. Ծանօթ. 88:

ժողված են... բայց աս բերած վկայութիւններուն մէջ եւ ոչ մէկը կայ, որմէ ցուցուի թէ նոյն վարդապետներէն մէկը միայն մտքէն անցուցած ըլլայ որ եկեղեցւոյ հաւատքը փոխէ, ուղղէ անոր պաշտամունքը՝ որն որ գլխաւորաբար կը կայանար ի սուրբ պատարագն, անոր հայրապետներուն եւ մասնաւորաբար քահանայապետներուն իշխանութիւնը կործանէ, որն որ մին նորատեսակ նորոգութեան վախճանն էր, որուն ճարտարապետն եղաւ Լուտեր" [5]: Աս բանս ալ այնչափ յայտնի է որ նոյն իսկ Լուտեր եկեղեցւոյ դէմ ոտք ելլելէն վերջն ալ յայտնապէս կը խոստովանէր: "Թէպէտ Հռոմ քաղաքը հիմա անանկ վիճակի մը մէջ է որ, կ՚ըսէ տեղ մը, աւելի աղէկ կրնար ըլլալ, ի վերայ այսր ամենայնի ոչ աս բանը եւ ոչ ուրիշ պատճառ այնչափ մեծ է եւ կամ կրնայ ըլլալ՝ որ մարդուս հարկ ըլլայ նոյն եկեղեցիէն ելլել կամ բաժնուիլ" [6]:

Սակայն ինչպէս վերը ըսինք, ինք եւ իր կողմնակիցներն իրենց վախճանին հասնելու համար աս անկարգութիւններն աղէկ առիթ սեպեցին. ուստի եւ իրականները հազարապատիկ մեծցընելով եւ մտքերնէն նոր նոր այլանդակ անկարգութիւններ ստեղծելով, անոնցմով ժողովուրդն ուղղափառութեան եւ ուղղափառաց դէմ կը գրգռէին: Եւ աս եղաւ ան գլխաւոր միջոցներէն մէկը՝ որով Լուտերի բռնկցուցած հրդեհն ան աստիճանի սաստկացաւ:

Բ. Գանք հիմա ուսումնական վիճակին: Ինչպէս որ յայտնի է, միջին դարերու մէջ Եւրոպայի գրեթէ ամէն կողմերը ուսումն ու գիտութիւնը վերջին աստիճանի ողորմելութեան մէջ ինկած էր. չէ թէ միայն հասարակ մարդիկներուն այլ նաեւ ազնուականներուն մէջ՝ չըսեմ գիտուն մարդ՝ հապա կարդալ գրել գիտցող ալ քիչ կը գտնուէր: Ժամանակ եղաւ որ մինչեւ կարդալ գրել չգիտնալը՝ պարծանք եւ հարստութեան ու ազնուականութեան նշան կը սեպուէր: Կրնայ ըսուիլ որ նոյն ատենները Եւրոպայի բոլոր ուսումնականութիւնը՝ եկեղեցականաց եւ մանաւանդ կրօնաւորաց վրայ կեդրոնացած էր, եւ իբրեւ ուսումնական ընկերութիւն՝ միայն վանքերը կրնային նկատուիլ: Աս վանքերուն մէջի անձինքներն եղան, որ ուսմանն կայծին բոլորովին մարելն արգելեցին, եւ գիտութեանց պահպա-

5. Գիրք Ա. Հատ. Բ:　　6. Տես էջ 61:

նութեան համար ըրած ուրիշ ծառայութիւններէն զատ՝ ան գլխաւոր օգուտն ալ ըրին, որ շատերը հին ու հազուագիւտ ձեռագիրներն օրինակելով՝ անոնց բազմանալուն եւ կամ գոնէ չկորսուելուն եւ մինչեւ հիմա կամ մինչեւ տպագրութեան գիւտին ժամանակը պահպանուելուն պատճառ եղան։ Բայց արդէն կ՚ենթադրուի որ ամէն վանքերուն մէջն ալ պէտք էր որ գըտնուէին նաեւ այնպիսի անձինք՝ որոնք նոյն ժամանակին աշխարհականներէն աւելի գիտուն չըլլային, որովհետեւ իրենց աշխատաւորութեան վիճակը չէր ներեր ուսմանց ետեւէ իյնալ։ Դարձեալ կրնայ ըլլալ որ այնչափ վանօրէից բազմութեան մէջ այնպիսիներ ալ գտնուէին, որոնց մէջիններուն ամէնքն ալ՝ կամ իրենց աղքատութեան համար (որովհետեւ նոյն ժամանակները գիրքերը շատ սուղ էին), կամ իրենց վիճակը բոլոր աշխատաւորութեան, երկրագործութեան վիճակ ըլլալուն համար, եւ կամ երբեմն նաեւ մեծերուն փոյթ չտանելովը՝ բոլորովին տգէտ եւ անուս ըլլային։ Բայց ինչպէս որ ըսինք, ասիկա բացառութեան պէս բան մըն էր, եւ ընդհանրապէս եկեղեցականաց եւ կրօնաւորաց վիճակը՝ իրաւամբ իբրեւ ուսումնականաց վիճակ կը նկատուէր։

Այս գիտութեանց փոյթն ու եռանդը եւ ուսումնականութիւնը թէպէտ եւ շատ մենաստաններու մէջ մինչեւ վերջը հաստատուն մնաց, բայց կարծես թէ երբ որ սկսաւ աշխարհականաց մէջ ուսմանց սէրը զարթնուլ, երբ որ ան հին ձեռագիրները՝ որոնց երեսը նայող չեղած ժամանակը կրօնաւորները կ՚օրինակէին, սկսան աշխարհականաց առջեւ յարգ ունենալ, երբ որ ասոնք նոյն մատենագիրներուն գեղեցկութեան զարնուելով ժամանակին անպիտան ու բարբարոսական լեզուն թող տալու եւ ան զարմացած գեղեցկութիւններուն հետեւելու կը ջանային, մանաւանդ երբ որ տպագրութեան արուեստն ալ գըտնուելով՝ գիրքերը դիւրութեամբ կը բազմանային ու կը տարածէին, եւ ալ հարկ չկար որ վանականները մեծամեծ դժուարութեամբ օրինակէին, նոյն ատեն կրօնաւորներէն շատերը իբրեւ թէ իրենց ընթացքը կատարածի պէս՝ սկսան կամաց կամաց ուսման անհոգ ըլլալ։ Ասով ան աշխարհականները՝ որոնք իրենց գիտութիւնը նոյն իսկ կրօնաւորաց ձեռքէն ընդունած էին, որոնցմէ շատերը կրօնաւորներուն հիմնած եւ անոնց առաջ-

նորդութեան տակ եղող ուսումնարաններուն մէջ կրթուած եւ ուսում առած էին, առանց միտ դնելու որ տակաւին որչափ ուսումնական եւ գիտուն եկեղեցականներ ու կրօնաւորներ կան, եւ միայն անուններուն ու տգէտներուն նայելով՝ սկսան բոլոր եկեղեցականները եւ մանաւանդ կրօնաւորները իբրեւ անուսում ու տգէտ նախատել, եւ խօսքով թշնամանելը բաւական չսեպելով՝ իրենց գրուածոց մէջ ալ անոնց դէմ նախատական խօսքեր գրելէն չէին դադրեր։

Այս աշխարհական ուսումնականաց՝ կրօնաւորներուն եւ եկեղեցականներուն դէմ ունեցած ատելութեան ու թշնամութեան ուրիշ պատճառ ալ կար։ Ասոնցմէ ոմանք Յունաց եւ Հռոմայեցւոց հին մատենագիրներուն ունեցած սէրերնին երբեմն չափէն անդին տանելով՝ միայն անոնց լեզուին գեղեցկութեան ու ոճոյն ընտրութեան հետեւիլը բաւական չէին սեպեր, հապա նաեւ անոնց հեթանոսական գաղափարներուն ու ծուռ փիլիսոփայական կարծիքներուն ալ ետեւէն կ'երթային կամ կը նմանէին։ Այնպէս որ նորաձեւութեան մը պէս եղած էր ամէն բանի եւ մինչեւ հոգեւոր ու կրօնական նիւթերու վրայ խօսուած ատեն՝ հեթանոսաց դից անունը, հեթանոսական պաշտամանց բառերը մէջը խառնել. մինչեւ շատ անգամ Հայր Աստուած ըսելու տեղ՝ Արամազդ, Որդին Աստուած ըսելու տեղ՝ Ապողոն, Ս. Աստուածածին ըսելու տեղ՝ Անահիտ ... կ'ըսէին։ Անոր համար նոյն ատենուան ուսումնական եկեղեցականները վախնալով որ չըլլայ թէ կամաց կամաց ուսման ու գեղեցիկ ոճոյ պատրուակաւ՝ տգէտ ժողովրդեան մէջ հեթանոսական գաղափարներ ու ծուռ փիլիսոփայական կարծիքներ տարածուին, սկսան աս չափազանց նախնեաց հետեւութեան դէմ խօսիլ ու գրել, որով մէջերնին սաստիկ վէճեր ծագեցան։ Եւ որովհետեւ ամէն նիւթոյ մէջ միջին տեղը կենալը եւ մէկ ծայրէն զգուշանամ ըսելով՝ մէկալ ծայրը չիյնալը դժուարին է, անոր համար աս եկեղեցական եւ վանական գրագէտներէն ոմանք իրենց եռանդեան մէջ չափին անցընելով, հեթանոսական գաղափարներէն զգուշութիւնը՝ մինչեւ լեզուին բառերուն ու ոճերուն ալ կը տարածէին, ուստի եւ չէին ուզեր հին հեղինակաց ոճովը գրել, ոմանք ալ չէ թէ աս նկատմամբ հապա միայն վարժութեամբ կամ մանաւանդ իրենց միջին դարու ապականեալ

լեզուին սէր ունենալով՝ նոյն լեզուաւ կը գրէին։ Ասով նոյն իսկ գրութեան կերպն ալ երկուքի բաժնուեցաւ. աշխարհական ուսումնականաց կամ Բանասիրաց լեզուն՝ ըստ մեծի մասին հին հեղինակաց լեզուին նման վայելուչ էր, իսկ կրօնաւոր ու եկեղեցական գրագէտներուն լեզուն ըստ մեծի մասին միջին դարերուն ապականեալ լեզուն։ Եւ թէպէտ վանականաց մէջն ալ շատ վայելուչ ու ընտիր ոճով գրողներ, եւ ասոր հակառակ աշխարհականաց մէջ շատ բարբարոսական լեզուով գրողներ կը գտնուէին, ի վերայ այսր ամենայնի մեծ մասին նայելով եւ աշխարհական բանասիրաց ներկայութեամբն այնպէս մը եղաւ իբրեւ թէ միայն աշխարհականք ընտիր լեզուով կը գրեն եւ միայն կրօնաւորք՝ բարբարոսական ոճով։

Իսկզբան աս վէճերն ու թշնամութիւնները առանձնական մարդիկներու մէջ էին, բայց վրան քիչ մ'ատեն անցնելէն ետեւ՝ ընկերութիւններու եւ համալսարաններու հաղորդուեցան, այնպէս որ մէկ ուսումնարան մէկալ ուսումնարանին, մէկ համալսարան մէկալ համալսարանին դէմ չէ թէ միայն նախանձաւոր, հապա նաեւ թշնամի եղան։ Ասկից զատ՝ աս երկու կողմնակցութեանց թշնամութեան մէկ պատճառն ալ ան էր, որ մէկը (աւելի կրօնաւորներուն կողմը) Արիստոտելեան, եւ մէկալը (աւելի աշխարհականներուն կողմը) Պղատոնեան փիլիսոփայութեան կը հետեւէին, եւ իրարու հետ աս կողմանէ ալ սաստիկ վիճման մէջ էին։

Այն թշնամութիւնն ու ատելութիւնը երբեմն նաեւ առանձնական դէպքերով ալ աւելի եւս կը սաստկանար։ Աս առանձնական դէպքերուն մէջ շատ երեւելի եղաւ եւ մեծ վըրդովմունք հանեց Հրէական գրքերու պատճառաւ եղած կռիւը, որուն համառօտ պատմութիւնն աս է։ Փեֆերգոռն անունով մէկը Հրէական գրքերուն դէմ վէճ մը բանալով՝ կը պնդէր թէ բոլոր աս գրքերն այրելու է, որովհետեւ անոնց մէջ Քրիստոսի, Ս. Աստուածածնայ ու սրբոց դէմ սաստիկ հայհոյութիւններ կան։ Ասոր կողմը կը բռնէր գլխաւորաբար Գոլոնիայի համալսարանը. իսկ հակառակորդաց գլխաւորն էր Ռայխլին, որ յոյն, լատին եւ եբրայական լեզուներու ծանօթութեամբն եւ ուրիշ գիտութիւններովը նոյն ատենները շատ մեծ համբաւստացած էր։ Ասիկա կը զրուցէր որ Հրէական գրքերուն մէջէն

միայն անոնք պըրուէին՝ որոնց մէջ իրզք Քրիստոսի, Ս. Աստուածածնայ եւ սրբոց դէմ հայհոյութիւններ եւ կամ կաթողիկէ եկեղեցւոյ վարդապետութեանց դէմ մոլորութիւններ կան. իսկ թալմուտը, մեկնութիւնները, տարեգրութիւնները եւ փիլիսոփայական ու բժշկական գրութիւնները պահուէին: Կամաց կամաց աս նիւթիս վրայ եղած գրուածները շատցան, վէճերը սաստկացան, եւ վիճաբանութեան տաքութեան մէջ երկու կողմանէ ալ չափն անցնելով, Գեֆֆերգոռնին կողմնակիցները՝ որոնք ընդհանրապէս կրօնաւորներն էին, սկսան ըսել թէ հակառակորդներնին հերետիկոսութեան մէջ ինկած են, կրօնը վտանգի մէջ է, եւայլն. իսկ Ռայխլինին կողմնակիցները սկսան ըսել որ կրօնաւորները նոյն իսկ Ս. Գիրքն ալ այրել կ'ուզեն: Այսպէսով Հրէական գրքեր ըսելու տեղն՝ Ս. Գիրքն ալ մէջ մտաւ, քիչ մը վերջը Արիստոտէլ ու Պղատոն ալ թատրն ելան: Կրօնաւորաց ու բանասիրաց մէջ կամաց կամաց ազնուականներ ու ասպետներ մանաւանդ թէ իշխաններ ալ ասպարէզ իջան, եւ կռուին մէջ խառնուելով՝ սկսան գրուածքներ դուրս հանել: Հուդդէն՝ նոյն ատենուան ասպետներուն ամենէն յանդուգը՝ որն որ բանաստէրներուն կարգն էր, կրօնաւորներուն եւ ընդհանրապէս եկեղեցականներուն դէմ ունեցած ատելութիւնն յագեցընելու համար Գծուծ մարդիկներու նամակներ անունով գրուած մը հրատարակեց, որուն նման պիղծ ու գարշելի գրուածք շատ քիչ կը գտնուի: Աս տեսակ գրուածքներով՝ որոնք չէ թէ միայն ուսումնականներու հապա նաեւ ռամիկներու մէջ ալ կը պտըտէին, Ժողովրդեան մէջ ընդհանրապէս կրօնաւորաց դէմ մեծ ատելութիւն մը մտաւ, իբրեւ թէ իրենք մարդկային ազգի լուսաւորութեան եւ ուսմանց թշնամի են: Եւ թէպէտ Լեւոն Ժ. քահանայապետը իր իմաստուն վճռովը աս կռուոյն վերջ տուաւ, որոշելով որ Հրէական գրքերը չայրին, բայց բանասիրաց ու կրօնաւորաց մէջ մտած ատելութիւնն ասով ամենեւին չնուազեցաւ:

Կարծես թէ աս ատելութիւնն ու թշնամութիւնը վերջին ծայրը հասած էր երբ որ Լուտեր երեւցաւ. եւ բանասէրք ասիկա կրօնաւորները խոնարհեցընելու աղէկ միջոց մը սեպելով, հոգւով եւ մարմնով իր կողմը բռնեցին: Այնպէս որ նոյն իսկ անոր բռնած ընթացքը չհաւնողներն ալ՝ կամ կրօնաւորներուն

կողմնակից եւ բանասիրաց հակառակորդ չերեւնալու համար, եւ կամ իրենց անձնական ատելութիւնն յագեցընելու համար՝ չէ թէ միայն Լուտերին դէմ չէին դներ, հապա կ՚ուրախանային ալ եւ քիչ մ՚ալ կը նպաստէին: Այսպիսիներուն մէջ ամենէն երեւելին էր Հռչակաւոր Երազմոսը: Լուտեր ալ ատեններով որ իրեն դէմ դնող կրօնաւորները հարստահարելու եւ ձեռք զարկած գործքը յառաջ տանելու համար՝ բանասէրներէն որչափ օգնութիւն կրնայ գտնել՝ անոնց հետ միացաւ, եւ այնպէս ձեւացուց որ իր դատն ալ անոնց դատին հետ նոյն է, կամ թէ իրենք մի եւ նոյն դատը պաշտպանելու եւ կրօնաւորներուն դէմ բանասիրաց վրէժխնդիր ըլլալու համար ոտք ելած է, եւ այսպէս ինք իր կողմնակիցներովը բանասիրաց կողմնակցութեան հետ միացաւ, որով շատ զօրանալով՝ ձեռք զարկածը սաստիկ յառաջացուց:

Գ. Կը մնայ հիմա քիչ մ՚ալ Գերմանիայի նոյն ժամանակուան քաղաքական վիճակին միտ դնել, որն որ գրեթէ մինչեւ հիմա ըսածներէս աւելի օգնեց լուտերական վէճին մեծնալուն որովհետեւ ասիկա աւելի մեծ շահեր գրգռելով, եւ աս շահը փնտռողները աւելի զօրութիւն ու միջոց ունենալով՝ խռովութիւնը շատ սաստկացուցին:

Գերմանիայի կայսրութիւնը կամ պետութիւնը սահմանադրական տէրութիւն մըն էր, որուն գլուխը կամ կայսրը թէպէտ մինչեւ ի մահ կը տիրէր, բայց իշխանութիւնը ժառանգութեամբ չէր առներ, հապա ընտրութեամբ: Աս կայսրն ընտրողները՝ որոնք կայսրընտիր կամ ընտրող իշխան կ՚ըսուէին, նոյն ժամանակները եօթը հոգի էին, որոնցմէ երեքը եկեղեցական կամ արքեպիսկոպոս կ՚ըլլային, իսկ չորսը աշխարհական իշխան: Եկեղեցական կայսրընտիրներն էին Մոգունտիայի, Գոլոնիայի ու Տրիերի արքեպիսկոպոսները, որոնք ինչպէս յայտնի է՝ ընտրութեամբ պէտք էր որ դրուէին, եւ հասարակօրէն Գերմանիայի երեւելի իշխանական տնէ մը կ՚առնուէին. ինչպէս օրինակի համար՝ մեր աս պատմութեան սկսելու ատեն Մոգունտիայի կայսրընտիր արքեպիսկոպոսը՝ Բրանտենպուրկի սահմանակալ կոմսերուն ցեղէն էր: Իսկ չորս աշխարհական կայսրընտիրներն էին Բոհեմիայի թագաւորը, Պալատական կամ Փալցի կոմսը, Սաքսոնիայի դուքսը եւ Բրանտենպուրկի սահմանակալ կոմսը, որոնց

իշխանութիւնը ժառանգութեամբ յորդւոց յորդի կ'երթար։ Ասոնք միանգամայն բոլոր կայսրութեան մէջ ամենէն երեւելի ու զօրաւոր իշխաններն էին։

Կայսրընտիրներէն վերջը կու գային ուրիշ մեծ եկեղեցական եւ աշխարհական իշխաններ, այս ինքն արքեպիսկոպոսք, եպիսկոպոսք, աբբայք, աւագերէցք, դքսեր, կոմսեր, սահմանակալ կոմսեր, աշխարհատէր կոմսեր, իշխանք եւ տեարք, որոնց իշխանութիւնք բոլոր իրենց կենացը ժամանակը կը տեւէր։ Եկեղեցականներուն մահուընէ վերջը՝ իրենց տեղը կ'անցնէին նորէն ընտրուած անձինքը, իսկ աշխարհական իշխաններուն կը յաջորդէին իրենց զաւկըները։ Ասոնցմէ զատ նաեւ 50էն աւելի ազատ կամ պետութեան քաղաքներ կային, որոնց ամէն մէկուն մեծերը՝ գրեթէ վերը յիշուած իշխաններուն համազօրապատիւ էին։ Կայսրընտիրները, եւ ուրիշ եկեղեցական ու աշխարհական իշխաններն ու ազատ քաղաքները, որոնց ամենուն մէկտեղ թիւը՝ 300ի կը հասնէր, անընդմիջապէս ընդ պետութեամբ կ'ըսուէին, որովհետեւ իրենք անմիջապէս կայսրմէ ետքը կու գային, եւ իրենց ու կայսեր մէջ ուրիշ միջին աստիճան մը չկար. ասոնք նաեւ աւագանի ալ կ'ըսուէին. Նոյնպէս իրենց երկիրներն ու ինչքերը՝ պետութեան անընդմիջական երկիր եւ ինչք կ'ըսուէին։ Ասոնցմէ զատ 1400ի չափ ասպետական երկիրներ եւ ասպետներ ալ կային, որոնցմէ միայն քանի մը հատը աւագանւոյն կարգին մէջ կը սեպուէին, իսկ մէկալները ուրիշ աւագանւոյն տակն էին։

Միջի կարգին մէջ եղող իշխանները կամ աւագանին՝ ըստ ամենայնի այնպէս էին ինչպէս երբեմն մեր նախարարները։ Ստոյգ է կայսրութեան ընդհանուր օրէնքներուն հնազանդելու էին, պէտք էր որ կայսեր հպատակէին, պատերազմի կանչած ատեն պէտք էր որ իրենց զօրքըն երթային կամ զօրքերնին խաւրէին. բայց իրենք իրենց երկրին մէջ գրեթէ ինքնիշխան տէր էին, իրենց զօրքըն ու արքունիքըն ունէին, ստակ կը կոխէին, երկիրնին կայսրմէ անկախ կը կառավարէին, իրենց գաւառաժողովը կը ժողվէին, եւ անոր հետ մէկտեղ իրենց երկրին մասնաւոր օրէնքներ կը դնէին։ Միայն այլեւայլ իշխաններու մէջ եղած յարաբերութեանց վրայ, նոյնպէս եւ ամէն մէկ իշխանին իր երկիրը կառավարելու կերպին վրայ զանազան ընդհանուր օ-

րէնքներ ու սահմաններ կային, որոնցմէ ամենեւին չէին կրնար խոտորիլ:

Կայսրը առանձին՝ կայսրութեան օրէնքները չէր կրնար փոխել կամ նոր օրէնք տալ, հապա աւագանւոյն հետ մէկտեղ, որ է ըսել՝ օրէնսդիր իշխանութիւնը կայսեր եւ աւագանւոյն ձեռքն էր: Քանի մը տարի մէջ մը կայսեր որոշման համաձայն՝ կայսրութեան երեւելի մէկ քաղաքին մէջ աւագաժողովը կը գումարուէր, կամ աւագանին (որոնց մէջն էին նաեւ ազատ քաղաքաց պատգամաւորները) խորհրդի կը ժողովուէր, եւ հանրութեան ընդհանուր գործքերուն վրայ խօսելէն ետեւ՝ առաւելութեամբ կամ բազմութեամբ քուէից որոշումը՝ կայսրութեան օրէնք կը սեպուէր: Կայսրն ալ աւագաժողովին մէջ կը մտնէր ու գահերէց կը նստէր: Բայց թէ ինք եւ թէ իշխանները անձամբ գալու տեղ՝ կրնային տեղերնին փոխանորդ կամ պատգամաւոր խաւրել, որոնք զիրենք խաւրողներուն ձայնն ու քուէն կ'ունենային:

Իսկ բոլոր կայսրութեան ընդհանուր գործադիր իշխանութիւնը՝ միայն կայսեր ձեռքն էր. բայց այս իշխանութիւնը մանաւանդ վերջին ատենները սաստիկ տկարացած էր, այնպէս որ կրնայ ըսուիլ թէ ամէն մէկ իշխան իբրեւ բացարձակ ու անկախ տէր ուզածը կ'ընէր, չէ թէ միայն իր երկրին հապա նաեւ բոլոր կայսրութեան նկատմամբ: — Այս կայսերական իշխանութեան տկարանալուն շատ պատճառներ նպաստած էին, որոնց գլխաւորներէն մէկն էր նոյն իշխանութեան՝ ընտրութեամբ ըլլալը: Կայսր մը մեռնելուն պէս՝ կայսերութեան ետեւէ ըլլողները կը սկսէին կայսրընտիրներուն խոստմունքներ ընել, իրարու դէմ նենգութիւններ բանեցընել: Կայսրընտիրներն ու աւագանին ալ նոյն ատենները իրենց անձնական իշխանութիւնը մեծցընելու համար զանազան պահանջմունքներ կ'ընէին, զորոնք հաստատակօրէն կ'ընդունէին ալ: Ասով գրեթէ ամէն անգամ կայսր ընտրուած ատեն՝ աւագանին նոր նոր իրաւունքներ ձեռք կը բերէր, եւ կայսերական իշխանութիւնն ամէն անգամ աւելի կը տկարանար: Դարձեալ շատ անգամ կայսրընտիրները՝ առանց տէրութեան ընդհանուր բարւոյն միտ դնելու՝ իրենց անձնական շահին համաձայն սեպած մարդիկներին կ'ընտրէին. օրինակի համար զՌուտոլֆոս Ե. ան պատճառաւ ընտրեցին, որովհետեւ անիկա ու-

քիչ տեղ ընդարձակ տէրութիւն ունենալով, չէր կրնար Գերմանիայի գործքերուն աղէկ միտ դնել, որով իրենք ուզածնին կընային ընել: Անկից ալ զատ ան ցեղերը՝ որոնց մէջէն հասարակօրէն կայսր կ'ընտրուէր, իրարու դէմ մեծ թշնամութիւն կամ՝ գոնէ նախանձախնդրութիւն կ'ունենային, եւ երբ որ մէկ ցեղէն կայսր կ'ընտրուէր, մէկալ ցեղերուն իշխանները իրարու հետ միաբանելով՝ տիրող կայսեր ցեղին դէմ կը գործէին եւ անոր ազդեցութիւնը տկարացընելու կը ջանային: — Կայսերական իշխանութեան տկարանալուն ասոր ալ շատ կ'օգնէր որ կայսրը անանկ ընդարձակ երկրի մը համեմատ բանակ ու զօրք չէր ունենար, հապա թէ որ Գերմանիայի մէջ երկիր ու տէրութիւն ունեցող իշխան մըն էր նէ՝ կայսր ըլլալէն վերջն ալ միայն այնչափ զօրք կ'ունենար՝ որչափ որ կայսր չեղած իր առանձին երկրին մէջ ունէր. իսկ թէ որ ուրիշ Գերմանիայէ դուրս երկրի մը իշխան էր նէ՝ ան իր անձնական գերմանացի չեղած զօրքը կայսրութեան երկրին մէջ չէր կրնար խոթել: Ուստի եւ հարկ ունեցած ատեն՝ պէտք էր որ աւագանւոյն դիմէր եւ անոնցմէ զօրք ուզէր, որոնք թէպէտ եւ պարտաւոր էին տալու, ինչպէս որ վերը ըսինք, բայց ան ալ ստոյգ է որ միայն ուզած ատեննին կու տային, եւ չուզած ատեննին՝ միշտ իրենք զիրենք արդարացընելու պատճառանքներ կրնային գտնել: — Վերջին ժամանակներուն ուրիշ չարիք մ'ալ աւելցաւ, որն որ վերը յիշատակեցինք. այս ինքն թէ կայսրը Գերմանիայէն դուրս ընդարձակ երկիրներ ունենալով՝ գրեթէ միշտ կայսրութեան երկիրներէն դուրս կը մնար, եւ իր բացակայութեան ատեն՝ ամէն մարդ ուզածը կ'ընէր: Աս մեծ չարիքին առջեւը քիչ մ'առնելու համար՝ կառավարութիւն անուամբ զանազան իշխաններէ կազմուած ժողով մը դրին Նիւրէնպուրկ քաղաքը. բայց յայտնի է որ աս ալ բոլորովին անզօր ու տկար բան մըն էր, եւ ամենեւին գործք մը գլուխ չէր կրնար հանել: — Ասոր վրայ շատ անգամ ան ալ կ'աւելնար որ կայսրը դրսի երկիրներու հետ պատերազմ ընելու ստիպուելով՝ չէր կրնար Գերմանիայի իրողութեանց ինչպէս որ պէտք է նէ՝ միտ դնել, միանգամայն իշխաններէն զօրաց օգնութիւն առնելու կարօտութիւն ունենալով՝ կը ստիպուէր ուզածէն ու պատշաճ եղածէն շատ աւելի իրենց զիջանել:

Արդէն ինք իրմէ կը հետեւի թէ որչափ որ մէկ կողմանէ կայսեր իշխանութիւնը կը տկարանար, այնչափ ալ մէկալ կողմանէ աւագանւոյն իշխանութիւնը կը մեծնար ու կ'ընդարձակէր: Այսպէսով կամաց կամաց ամէն մէկ իշխան ինքը զինքը կատարեալ բացարձակ, անկախ եւ ինքնագլուխ տէր սեպելով՝ կը համարձակէր ամէն ուզածն ընել, առանց ամենեւին միտ դնելու ո՛չ կայսեր իշխանութեան, ո՛չ պետութեան օրէնքներուն, ո՛չ ալ իրմէ տկարներուն իրաւանց: Մինչեւ իրարու երկիր ասպատակութիւններ, աւարառութիւններ, եւ մէկը մէկալին հետ կարգաւորեալ պատերազմներ կ'ընէին: Եւ թէպէտ չի կրնար ըսուիլ որ ամէն գերմանացի իշխան աս աստիճանի յանդգնութեան հասած էր, եւ թէ նոյն չարիքները ամէն տեղ հաւասարապէս կը գործուէին, բայց աս ալ ստոյգ է որ մեծ մասը նոյն կերպով կը վարուէր. մանաւանդ թէ ոմանք ալ կային որ ասանցմով գոհ չըլլալով՝ աւելի մեծագոյն անիրաւութիւններ ու չարիքներ կը գործէին: Եւ գլխաւորաբար ասպետները աս տեսակ անիրաւութեանց եւ յափշտակութեանց մէջ ամէն չափն ու սահմանը կ'անցնէին: Շատերը կային որ դիպուածական յափըշտակութիւններէ եւ սպանութիւններէ զատ՝ իրենց դղեակներն աւազակներու այր դարձընելով՝ ճամբաներուն վրայ կարգաւորեալ աւազակութիւն կ'ընէին: Ո՛չ ինչ ապահով էր, ո՛չ պատիւ, ո՛չ կեանք, որովհետեւ աս ասպետաց աչքին առջեւ ամենեւին սուրբ բան մը չկար:

Ստոյգ է 1494ին Մաքսիմիլիանոս Ա. Դատաւորական իշխանութիւնն ի գործ դնելու համար՝ կայսերական ատենական դատաստանարանը կամ կեդրոնական դատաստանարանը դրած էր (Ֆրանքֆուրդ քաղաքը. ետքը Շփայեր փոխադրուեցաւ), որն որ աւագանւոյն մէջ եղած վէճերն ու խնդիրները կը քննէր, կայսերական իշխանութեան եւ պետութեան օրինաց դէմ յանցանք ընող իշխաններուն վրայ պատիժներ կը դնէր. բայց յայտնի է որ իր որոշմունքները մտիկ ընող շատ քիչ կը գտնուէր, որովհետեւ որոշածն ի գործ դնել տալու զօրութիւն չունէր:

Ըստ ինքեան կը տեսնուի որ ինչպէս դիւրին էր ասանկ վիճակի մէջ գտնուող երկիր մը յեղափոխութիւն հանել, եւ թէ փոքր պատճառ մը ինչչափ մեծամեծ շփոթութիւններու առիթ կրնար տալ: Բայց ուրիշ միտ դնելու քանի մը բան ալ

կայ, որմէ ի սկզբան ըսածնիս՝ աւելի կը հաստատուի, այս ինքն թէ ա՛ս եղած շփոթութիւնները ինչու կրօնական կերպարանք ունեցան։ — Եկեղեցական իշխանաց Գերմանիայի մէջ ունեցած աշխարհական իշխանութիւնը՝ զիրենք ատելի կ՚ընէր գըլխաւորաբար ան աղնուականներուն կամ ասպետներուն, որոնք կամ անոնց աշխարհական իշխանութեան տակն էին, եւ կամ երկիրնին՝ անոնց տէրութեան երկրին մօտ էր։ Եւ թէպէտ աս աղնուականներն ու ասպետները՝ բուն աշխարհական իշխաններն ալ կ՚ատէին եւ անոնց ալ թշնամի էին, բայց որովհետեւ շատ դժուարին էր անոնց իշխանութիւնը յաղթահարել, եւ գիտէին որ մէկու մը դէմ ելլեննէ՝ զամէնքն ալ կամ շատերը իրենց դէմ կը յարուցանեն, ուր որ եթէ եկեղեցականներուն դէմ ելլէին նէ՝ կը յուսային որ գուցէ նոյն իսկ աշխարհական իշխաններէն օգնութիւն կը գտնեն, անոր համար միշտ ամէն կերպով կը ջանային զեկեղեցական իշխանները հպատակներնուն աչքէն ատելի ընել, անոնց դէմ գրուածներ դուրս կը հանէին, երբեմն երբեմն ալ երկիրներնուն մէջ փոքր ապստամբութիւններ կ՚ընէին։ Դարձեալ ան մեծ քաղաքները՝ որոնք եկեղեցական իշխանաց իշխանութեան տակն էին, ամէն կերպով ետեւէ կ՚իյնային որ նոյն ժամանակուան կառավարութեան կերպը փոխուի, որպէս զի իրենք անոնց իշխանութեան տակէն ելլելով ինքնագլուխ ըլլան, եւ ուրիշ ազատ քաղաքներուն պէս՝ պետութեան անընդմիջական աւագանւոյն հաւասար սեպուին։ — Ասկից զատ՝ որովհետեւ եպիսկոպոսարաններէն ու աբբայարաններէն ոմանք մեծ հարստութիւն ունէին, անոր համար իշխաններն ու ասպետները, մանաւանդ անոնք՝ որոնք իրենց շռայլութեամբն ու անառակութիւններովը հայրենական ինչքերնին վատնած էին, եւ կամ անոնք՝ որոնց հարստութիւնը չէր հաւասարեր նոյն ժամանակները ձեռք ձգած իշխանութիւններնուն, մեծ փափաքով յարմար առթի մը կը սպասէին որ նոյն եկեղեցական ինչքերն յափըշտակեն։

Ա՛ս ատելութիւնը վերջին ժամանակները մասնաւոր պարագայով մը արտաքոյ կարգի սաստկացած էր։ — Շատ կայսրներ ջանացած էին որ յափշտակիչ եւ աւազակաբարոյ ասպետներուն չարագործութիւնն արգելէն. բայց անկարելի եղած էր։ Սակայն վերջին ատենները Մաքսիմիլիանոս Ա. գլխաւորաբար

եկեղեցական իշխաններուն յորդորելովը ու ետեւէ կենալովը՝ անոնց սաստիկ սանձ դրած, եւ բոլոր անկարգութիւններուն դէմ խիստ օրէնքներ հրատարակած էր։ Այսով նոյն ասպետաներն ու իրենց նման եղող իշխանները եկեղեցական իշխանաց դէմ վերջին աստիճանի կատղեցան, եւ միակերպ հնարք կը խնդրէին թէ անանցմէ վրէժ խնդրելու եւ թէ անոնց ինչքովը իրենց դատարկ քսակները լեցնելու։ Իրենց վախճանին հասանելու եւ ժողովուրդն ալ իրենց կողմը վաստըկելու համար՝ անանկ կը ձեւացընէին որ աս իրենց չարագործութեանց դրուած սանձը գերմանական ազատութեան դէմ է, կայսրն ու եկեղեցականք իրենց վրայ բռնաւորութիւն կ'ընեն։ Վերջապէս կամաց կամաց կը պատրաստուէին սաստիկ յեղափոխութեամբ մը առջի վիճակնին նորէն ստանալու։ Ուստի երբ որ Լոթեր ելաւնէ՝ ասոնք զէնքն իբրեւ իրենց յառաջամարտիկը սիրով ընդունելով, եւ իբրեւ իրենց վախճանին հասնելու մէկիկ միջոց ձեռք առնելով՝ ամէն կերպով անոր օգնութիւն ըրին։ Նոյնպէս նորագիշն ալ տեսնելով որ անոնց հետ միանալուն պէտ՝ ամէն բան կրնայ ընել, հոգւով եւ մարմնով ինքը զէնքն անոնց տուաւ, անոնց ատելութիւնն աւելի գրգռեց եւ ցանկութիւններուն առջեւը՝ յուսացածներնէն աւելի մեծ խայծ դրաւ։ Եւ այսպէս իրարու թեւ թիկունք ըլլալով՝ ան փոքր վէճն այնպէս մեծցուցին ու տարածեցին։



# ԳԻՐՔ Ա

## ԼՈՒՏԵՐԻ ԾՆԸՆԴԵՆԷՆ

ՄԻՆՉԵՒ

## ՎԱՐԴԳՈՒՐԿԷՆ ԵԼԼԵԼԸ.

**1483—1522**

# Գ Ի Ր Ք Ա

## ԼՈՒՏԵՐԻ ԾՆԸՆԴԵՆԷՆ ՄԻՆՉԵՒ ՎԱՐԴՊՈՒՐԿԷՆ ԵԼԼԵԼԸ



## Գ Լ Ո Ւ Խ Ա

### Լուտեր մինչեւ ներողութեանց վէճը

Լութերի ծնունդն ու դպրութիւնը։ Ուսում առնելու համար Մակդեբուրկ, Այզենախ ու Էրֆուրտ կ'երթայ։ Վանք կը մտնէ, կրօնաւոր ու քահանայ կ'ըլլայ։ Վիթթէնպերկի երթալն ու փիլիսոփայութեան դասատու ըլլալը։ Հռոմ կը երթայ, ու ետ դառնալէն ետեւ աստուածաբանութեան վարդապետ կ'անուանուի։ Լութերին ունեցած ներքին խռովութիւններուն պատճառը։

## 1483 — 1517

ՄԱՐՏԻՆՈՍ Լուտեր 1483ին նոյեմբերի 10ին Սաքսոնիայի Այսլեպէն քաղաքը ծնաւ [1]։ Հօրը անունը Յովհաննէս Լուտեր էր, իսկ մօրը՝ Մարգարիտա Լինդեման, որոնք թէպէտ աղքատ ու գեղացի, բայց կ'երեւայ որ պարկեշտ ու առաքինի մարդիկ էին, եւ միանգամայն ան ժամանակին ու վիճակներնուն ներածին չափ՝ ուսման սէր ունէին։ Անոր համար ալ մեծ փոյթ ունեցան որ Մարտինոսը չէ թէ միայն աստուածպաշտութեամբ մեծցընեն, հապա նաեւ ետեւէ ինկան որ ուսմանց մէջ ալ աղէկ կրթուի։

Մարտինոսին ծնանելէն մէկ քանի ամիս ետքը ծնողքը տեղերնէն ելան ու Մանսֆելտ գացին [2]։ Հոն երբ որ տղան քիչ մը մեծցաւ, սկսան զինքը քաղքին դպրոցը խրկել. բայց ինք որչափ կամապաշտ ըլլալը՝ ան ատենէն կը ցուցընէր, ու վիզը լծի տակ ձգել չէր ուզեր։ Եւ որովհետեւ ծնողքը իսկզբանէ

1. Ինչպէս որ հաւատք չենք ընծայեր ու չենք յիշեր մէկ քանի անշան ուղղափառ հեղինակներու՝ Լուտերի ծնընդեան վրայ պատմած քանի մը այլանդակ ու անճոռնի դէպքերը, զորոնք բոլոր անուանի ուղղափառ հեղինակներն ալ բանի տեղ չդնելով՝ չեն յիշեր կամ կը հերքեն, այնպէս ալ աւելի ծիծաղելու եւ արհամարհելու քան թէ յիշելու արժանի կը սեպենք շատ բողոքող հեղինակներուն (որոնց մէջ նաեւ քանի մը երեւելիներ ալ կը գըտնուին) իր ծնընդեան վրայ պատմած զարմանալի հրաշքներն ու աստղայ կարգի նշանները, եւ իր վրայ եղած տեսիլքներն ու մարգարէութիւնները, զորոնք Լէօշէր (Գործք Նորոգութեան, Մաս Ա. Էջ 145....) մէկիկ մէկիկ կը դնէ։ Բայց քիչ մը ետքը՝ իր վրայ եղած մէկ տեսիլքը պիտ'որ պատմենք, որմէ՝ հոստեղը յիշատակածներնուս ինչպէս բան ըլլալը կ'իմացուի։

2. Նոյն տեղը քանի մը տարի վերջը չէ թէ միայն չափաւոր ընչից տէր եղան, հապա նաեւ Յովհ. Լուտեր քաղաքացւոց աւագերէ մեծ պատիւ ստանալով՝ քաղքին կառավարութեան գործքերուն մէջ մտաւ։

տս մոլութեան դարման տանիլ կ'ուզէին եւ հետը շատ անգամ խստութեամբ կը վարուէին, երբեմն երբեմն ալ կը ծեծէին, անոր համար անգամ մը տղան ձգեց ամէն փախաւ³: Ինք ետքը շատ անգամ իր ծնողացը խստութեան վրայ կը տրտնջէր, ըսելով որ թէպէտ զիս կը սիրէին եւ ըրածնին իմ բարույս համար կ'ընէին, բայց հետս չափէ դուրս խստութեամբ կը վարուէին, ու տուած պատիժներնուն մէջ պատշաճ չափը չէին պահեր: Տեղ մ'ալ վանք մտնելուն պատճառը՝ ծնողացը խստութիւնը կը դնէ⁴: Աս խստապահանջութիւնն ու կամապաշտութիւնը դպրոցին մէջն ալ շատ անգամ ցուցընելուն համար՝ հոն ալ ծեծ կ'ուտէր. անգամ մը մինչեւ կէսօր տասնուհինգ անգամ ծեծ ուտելը՝ ետքը ինք բերնովը բարեկամներուն կը պատմէր⁵:

Քանի մը տարի սանկ յառաջ երթալէն ետեւ՝ երբ որ Մարտինոս տասնուչորս տարուան եղաւ՝ հայրը ուզելով որ բարձրագոյն ուսմանց զբաղի, առաւ զինքը Մակտեպուրկ քաղաքը Փրանկիսկեանց դպրոցը խաւրեց (1497), ուր որ աղքատ տղոց առանց ստակի ուսում կը սորվեցընէին: Բայց որովհետեւ, վերը ըսածներնուս պէս, ծնողքը դեռ նոյն տեններն աղքատ էին, անոր համար հարկ եղաւ որ Մարտինոս հանտեղը մուրալով իր ապրուստը հոգայ. ուստի փողոցներու մէջ պտըտելով՝ պզտիկութենէ սորված երգերը տներուն առջեւը կ'երգէր, նոյնպէս շատ անգամ ալ եկեղեցւոյ մէջ հոգեւոր երգեր կ'երգէր, որով քիչ մը ստակ ձեռք կը բերէր: Սակայն հազիւ տարի մը աս կերպով կրցաւ Մակտեպուրկ ապրիլ. ետքը բաւական ողորմութիւն չգտնելով՝ ելաւ Թուրինգիայի Այզենախ քաղաքը գնաց, ուր որ մօրը ազգականները կային, եւ հոն ալ Փրանկիսկեանց դպրոցը մտաւ: Կ'երեւայ որ ազգականները չուզեցին կամ չկրցան իրեն օգնութիւն ընել, ինչու որ հոն ալ ստիպուեցաւ Մակտեպուրկ ապրածին պէս ապրիլ: Բայց աս կողմանէ բախտը նոյն վերջին քաղքին մէջ աւելի բանեցաւ. օր մը ըստ սովորութեան տան մը առջեւ ողորմութիւն առնելու համար երգած ատեն՝ պատուհանը կին մ'ելաւ, ու երգածը մտիկ ընելէն ետեւ՝ քիչ մը ստակ վար նետեց: Լուտեր՝ իրեն ան բարերարութիւնն ընողը տեսնելու եւ շնորհակալ ըլլալու համար աչուըները վեր վերցուց. իսկ կինը՝ որ նորահասակ որբեւարի մըն էր, ձեռօք նշան ըրաւ որ վեր գայ, եւ անկէ ետեւ քովը պահեց ու հետը սեղան կը նստեցընէր: Աս որբեւարիին սեղանին վրայ ու անոր բերնէն սորվեցաւ նորոգիչը ան աշխարհային

3. Խօսք սեղանոյ, լատ. Հատ. Բ. 400. Բ:

4. Աս խօսքերը Կուստաւ Փֆիցեր (Գլ. Ա. 6.) բառ առ բառ կը բերէ:

5. Խօսք սեղանոյ, լատ. Հատ. Բ. 414: Ռանքէ, Գիրք Բ. Գլ. Ա. Հատ. Ա. 298: Ուլէնպերկ, Գլ. Ա. Համ. Բ.

ու անփայլել ոտանաւորը, որն որ ետքը միշտ բերանն ունէր, ու իր աստուածաշնչին Թարգմանութեան Առակաց գրքին Լ. գլխին եզերքը գրեց. այս ինքն թէ "Երկրիս վրայ կանանց սիրոյն պէս սիրելի բան մը չկայ, թէ որ մէկու մը վիճակելու ըլլայ,, [6]: — Մարտինոս աս քաղաքը երեք տարիի չափ կեցաւ. դպրոցը գլխաւորաբար քերականութիւն ու լատիներէն լեզու կը սորվէր. իսկ տունն եղած ատենները՝ իր գեղեցիկ երգերովը բարերարը կը զբօսցընէր. եւ որովհետեւ երաժշտութիւնը շատ կը սիրէր, անոր համար որբեւարին իրեն քանի մը նուագարաններ գնեց, որոնք առանց վարպետի սորվեցաւ:

Լուտեր անգամ մը ուսմանց քաղցրութիւնը ճաշակելէն ետեւ՝ ալ ինքը զինքը բոլորովին ուսում ու գիտութիւն սորվելու տուաւ. եւ աւելի եւս յառաջանալու համար՝ ելաւ Էրֆուրդ գնաց (1501) ու նոյն քաղքին անուանի համալսարանը մտաւ: Հայրն ալ աս բանին չէ թէ միայն սիրով հաւանութիւն տուաւ, հապա ան ժամանակները բաները քիչ մը շիտկած ըլլալով՝ իրեն ստակ ալ կը խաւրէր: Մարտինոս հոնտեղը իսկզբան բոլորովին փիլիսոփայութեան ետեւէ եղաւ, կամ "Յօթը ազատական արուեստները սորվեցաւ, որոնք որ հիմա փիլիսոփայական գիտութիւնը կը կացուցանեն,, [7]: Շատ անգամ Լատինացւոց երեւելի մատենագիրները կը կարդար, երբեմն երբեմն ալ լատիներէն աստուածաշունչ: Փիլիսոփայութիւնը լմնցընելէն ետեւ՝ փիլիսոփայութեան [8] կամ ազատական արուեստից [9] վարդապետ անուանուեցաւ (1503), եւ ետքը սկսաւ իրաւագիտութիւն սորվիլ: Աս գիտութիւնը սորվելու ստիպեցին զինքը թէ հայրը եւ թէ իր բարեկամները, յուսալով որ իր սուր ու յաջողակ միտքը երեւելի կ'ըլլայ:

Ուսման զբաղելու ատեն Լուտեր միշտ խղճի անհանգստութեան մէջ կ'ըլլար, որով եւ վիճակին վրայ գոհ չէր. բայց աս ատենները պատահած մէկ երկու դէպքէն շարժելով՝ իր վիճակը բոլորովին թող տուաւ [10]: Նախ՝ համալսարանի ընկերներէն մէկը՝ որուն հետ շատ սիրով կապուած էր, սպաննուեցաւ. Լուտեր ասով արդէն այլայլած էր, մէյ մ'ալ քիչ մը

6. Խօսք սեղանոյ, 448: — Ոտանաւորին սկզբնագիրն աս է.
Nichts liebers ist auf Erden,
Denn Frauen Lieb' wem sie mag zu Theil werden.
որուն բառ առ բառ թարգմանութիւնն է վերը դրածնիս, եւ ուրիշ իմաստ հանելը անկարելի է: Անոր համար չեմ գիտեր ատ խօսքս ինչպէս կրնայ ատանկ թարգմանուիլ. "Բան մը չկայ երկրի վրայ այնչափ քաղցրագոյն՝ որչափ բարեպաշտ կնոջ մը սէրը,,. ինչպէս որ կը թարգմանէ մէկը, Պատմ. ԺԶ. Դարու Բարեկարգ. Հատ. Ա. 10:

7. Կուստաւ Ֆիցեր, Գլ. Բ. 16:

8. Մելանքթոն, էջ 5:

9. Մաթեսիոս, Ճառ Ա. 4. Բ:

10. Նոյնը, Ճառ Ա. 4. Բ: Մելանքթոն, էջ 6:

ետքը անտառի մը մէջէն անցնելու ատեն՝ յանկարծ մրրկի մը բռնուեցաւ, եւ "Այս մրրկին մէջ... իբրեւ բարկութեան ու վրէժխնդրութեան Աստուածը տեսնելով,, 11 ու սաստիկ վախնալով՝ մէկէն ուխտ ըրաւ որ Աստուած զինքը ան վտանգէն ազատելու ըլլայ նէ, աշխարհք թողու եւ վանք մտնէ. "Որպէս զի, կ'ըսէ Մաթեսիոս 12, հոն Աստուծոյ ծառայէ... ու կրօնաւորական սրբութեամբ՝ յաւիտենական երջանկութեան հասնի,,: Քանի մը օր ետքը դրած ուխտը կատարել ուզելով՝ առանց յառաջագոյն ծնողացը բան մ'ըսելու, վարպետներէն եւ ընկերներէն ծածուկ գիշեր մը համալսարանէն ելաւ, եւ գնաց նոյն Էրֆուրդ քաղքին Օգոստինեան կրօնաւորներուն վանքը մտաւ (1505): Երկրորդ օրը երբ որ վարպետները բանն իմացան, կասկածելով որ չըլլայ թէ ըրածը երիտասարդական փոփոխամտութեան գործք մ'ըլլայ, մարդ խըրկեցին որ երթան զինքը համոզեն որ վանքը թողու եւ առջի վիճակը դառնայ. բայց Լուտեր եւ ոչ հետերնին խօսիլ ուզեց: Հայրն ալ երբ որ ըրածն իմացաւ, սաստիկ բարկանալով՝ իրեն խիստ թուղթ մը գրեց, որ աս մէկէն ի մէկ վախէն մտքին մէջ ինկած խորհուրդը մէկդի ձգէ, եւ առջի ուսմունքը յառաջ տանի 13: Բայց ամէն բան փուճ գնաց. ամենեւին բան մը կարող չեղաւ զինքը միտքը դրածէն խախտել: — Թէպէտ եւ Լուտեր ան ժամանակը իր առաջադրութեան մէջ այսպէս հաստատուն ու յօժար կ'երեւար, բայց ետքը ինքը աս բանիս վրայ հօրը այսպէս կը գրէ. "Հիմա տասնուվեց տարի է որ ես առանց քու գիտնալուդ եւ քու կամացդ դէմ՝ կրօնաւոր եղայ. դուն իմ տկարութեանս վրայ հոգ կ'ունենայիր... բայց ես քեզի կ'ըսէի որ երկնից ահագին յայտնութեամբը կանչուած եմ: Ինչու որ ես յօժարութեամբ ու կամօք կրօնաւոր եղած չէի... հապա յանկարծակի վախէ եւ մահուան անձկութենէ պաշարուելով՝ բռնի ու ստիպուած ուխտ ըրի:... Սակայն աս ուխտը բան մը չէր արժեր. ինչու որ ես անով ինքը զինքս իմ ծնողացս իշխանութենէն ու կամքէն դուրս կը հանէի...: Եւ աս ուխտիս Աստուծմէ չըլլալը՝ չէ թէ միայն անկից յայտնի է որ ձեր իշխանութեանը հակառակ էր, հապա անկից ալ որ սրտանց ու կամքով եղած չէր,, 14:

Աս բաներուն համար զարմանք չէ որ համալսարանն ունեցած խղճի անհանգստութիւններն ու նեղութիւնները վանքին

11. Ռոնքէ, Գիրք Բ. Գլ. Ա. Հատ. Ա. 295:

12. Ճառ Ա. 4. Բ:

13. Մաթեսիոս, Ճառ Ա. 4. Բ: Սէքէնտորֆ, Գիրք Ա. Համ. Ը. 19:

14. Կրօնաւորական ուխտերու դէմ լատիններէն լեզուաւ գրած ու հօրը նուիրած գրքին յառաջաբանութեան մէջ. Գործք Լուտ. լատ. Հատ. Բ. 284. Բ. 285:

մէջ չդադրելէն զատ՝ սաստկացան ալ։ Վանք մտնելէն սկսած՝ միշտ ահու դողու մէջ էր, միշտ սպաննուող ընկերին մահը աչքին առջեւը կու գար։ Շատ անգամ քնոյ մէջ իրեն անանկ կ'երեւար որ ընկերը յարութիւն առեր եկեր է որ զինքը ապաշխարութեան յորդորէ։ Միշտ անանկ կը կարծէր որ Աստուած իր բարկութեան կայծակունքը վրան պիտի թափէ. ուստի եւ Աստուծոյ սրտմտութենէն ազատելու համար՝ անդադար աղօթք կ'ընէր, պահք կը պահէր, մարմինը կը ճնշէր, եւ ամենեւին իր անձին հանգիստ չէր տար [15]։ Մանաւանդ սատանաներէն շատ կը վախնար, եւ ձեռքերնէն ազատելու համար աղօթից կը դիմէր։ Օր մը պատարագ տեսնելու ատեն՝ երբ որ քահանան աւետարանին աս խօսքը կը կարդար. "Եւ հանէր (Յիսուս) դեւ մի համր,,, Լուտեր ան ատրիճան զարհուրեցաւ, որ Ես չեմ, ես չեմ, պոռալով՝ սկսաւ փախչիլ [16]։

Նոյն իսկ կրօնաւորական վիճակն ու նորընծայութիւնն ալ իրեն շատ դժուարին կու գար. ինչու որ իր հպարտ ու փառասէր բնութեանը սաստիկ դէմ էին ան խոնարհութեան գործքերը՝ որոնք որ իր վիճակին համաձայն հարկ էր որ գործէր. մանաւանդ որ մեծերը վրան հպարտութեան նշաններ տեսնելով՝ իրմէ ուրիշներէն աւելի կը պահանջէին, որպէս զի անարգական գործքեր կատարելով՝ խոնարհութեան մէջ կրթուի։ Պէտք էր որ սենեակներն ու սրահները աւլէր, եկեղեցւոյն դըռները բանար ու գոցէր, ժամացոյցները լարէր, փողոցներն ու հրապարակները երթար մուրանար, եւ ուրիշ ասոնց նման ստորին գործքեր գործէր։ Լուտեր ասոնք չկրնալով տանիլ եւ իրեն նախատինք սեպելով՝ քաղքին համալսարանին վարդապետներուն եւ ուսուցիչներուն դիմեց, ու անոնց միջնորդութեամբը մանաւանդ թէ ստիպելովը՝ առաջնորդները ալ անկէ ետեւ զինքը ասանկ գործքերու չէին գործածեր [17]։

Երբ որ Նորընծայութեան ժամանակը լմնցաւ, Լուտեր ըստ սովորութեան կրօնաւորական ուխտերը դրաւ (1507), եւ անկէ ետեւ աստուածաբանական ուսմունքը աւելի փութով յառաջ կը տանէր, ու դպրոցական աստուածաբաններուն

15. Ասոնց վրայ ինք այսպէս կը գրուցէ. "Ստոյգ է որ ես ջերմեռանդ կրօնաւոր մըն էի, եւ իմ կարգիս պարտքերը անանկ խստութեամբ կը պահէի, որ չեմ կրնար ըսել։ Թէ որ կրօնաւոր մը կրօնաւորութեան գործքերով երկինք գացած է նէ՝ պէտք էր որ ես ալ երթայի։ Վասն զի ըրածներս աւելի երկայն տեւէին նէ, աղօթքով, հսկումով, կարդալով եւ ուրիշ աշխատութիւններով ինքը զինքս մինչեւ մահուան ատրիճանի հասնելու չափ կը նեղէի"։ Առ Կոստ. Գէչերէ, Գլ. Բ. 28։

16. Լինդէոս, ի վարս Լուտերի, էջ 4. տե. Օաէնի, Հատ. Ա. Գլ. Ա. 12։

17. Մաթեսիոս, Ճառ. Ա. ձ։ Ուլէնպերկ, Գլ. Ա. Համ. Գ։

գրուածները կը կարդար։ Քիչ մը վերջն ալ քահանայ ձեռնադրուեցաւ։ Քահանայ ըլլալէն ետեւ՝ դեռ առջի պատարագը չըրած՝ բարեկամներէն մէկուն այսպէս կը գրէ․ “Աստուած փառաւորեալը, որ իր ամէն գործքերուն մէջ սքանչելի է, իր անսահման ողորմութեամբը զիս ողորմելի ու տառապեալ մեղաւորս կանչեց եւ սանկ կարգի արժանի ըրաւ։ Ես ալ Աստուծոյ աս մեծ բարերարութեան՝ ձեռքէս եկածին չափ՝ կ՚ուզեմ երախտագէտ ըլլալ ու ինծի յանձնուած պաշտօնն աղէկ կատարել։ Աղօթք ըրէ ինծի համար որ զոհս կամ պատարագս Աստուծոյ աչացը հաճելի ըլլայ„ [18]։ — Առաջին անգամ պատարագ ըրած ատեն (1507ին, Մայիսի 2ին), երբ որ քահանայագործելու մօտ էր, վրան այնպէս սաստիկ վախ ու խռովութիւն մը եկաւ, որ եթէ առաջնորդն արգելած չէր ըլլար նէ, կ՚ուզէր պատարագը կիսկատար թողուլ ու եկեղեցիէն դուրս փախչիլ [19]։

Լուտեր քահանայ ըլլալէն ետեւ՝ առջիններէն աւելի հոգեւոր կրթութիւններու եւ ուսմանց ետեւէ ինկաւ․ բայց անոնցմէ համ մը չէր առներ։ Միշտ խղճմտանքը զինքը կը տանջէր իբրեւ թէ մեծ մեղաւոր է, որով շատ անգամ յուսահատութեան խորհուրդներու մէջ կ՚իյնար [20]։ Աս ներքին անհանգստութիւններն ու խռովութիւնները առողջութեան վրայ ալ մեծ ազդեցութիւն մ՚ընելով՝ կամաց կամաց ոյժը կը նուազէր, մարմինը կը հիւծէր կը մաշէր ու երեսին գոյնը կը նետէր։ Առաջնորդներն ու ընկերները իրեն խրատ կու տային որ սանկ մտածմունքները մտքէն հանէ, եւ Աստուծոյ ողորմութեան ու Քրիստոսի արդեանցը վստահի․ բայց աս ամէն խրատները վրան ազդեցութիւն մը չէին ըներ [21]։ Շատ անգամ բոլոր գիշերը

18. Առ. Կուստ. Ֆիցերի, Գլ. Բ. 29. եւ առ. Օտենի, Հատ. Ա. Գլ. Ա. 14։

19. Խօսք սեղանոյ, լատ. Հատ. Բ. 13, 14։

20. Լուտեր ինքը աս բանս կը խոստովանի իր մէկ քարոզին մէջ։ Տես առ Ռոնթէլէ, Գիրք Բ. Գլ. Ա. Հատ. Ա. 296։

21. Կուստաւ Ֆիցեր, Գլ. Բ. 31։ — Բլանք (Գիրք Ա. Հատ. Ա. 55—57.) կը պատմէ որ Սդաուփից (Գերմանիայի Օգոստինեանց գաւառապետը) Լուտերին ընտրած վանքը գալով եւ անոր տրտմութիւնը տեսնելով՝ սկսաւ հետը մեծ բարեկամութեամբ վարուիլ, եւ կամաց կամաց զինքը հոն բերաւ որ, կ՚ըսէ, “խոստովանանքի մէջ սիրտը բոլորովին իրեն բանայ„։ Ասով առիթ գտնելով՝ զինքը աղէկ մը խրատեց, մտած ճամբուն մէջ աղէկ յառաջանալու միջոցները ցուցուց, եւ հօր մը պէս իրեն յայտնեց որ աս կրած փորձութիւնները չէ թէ միայն իր յառաջադիմութեան կ՚օգնեն, հապա միանգամայն Աստուծոյ իր վրայ ունեցած մասնաւոր խնամոցը նշան են. որովհետեւ Աստուած շատ անգամ սանկ փորձութիւնները անանկ մարդիկներու կը խաւրէ, ըսաւ, որոնք որ իբրեւ գործիք ընտրած է իր մասնաւոր դիտմունքները կատարելու։ Եւ իրեն հասկըցուց որ ատոնցմէ կրնայ հետեւցընել թէ պէտք է որ Աստուած զինքը արտաքոյ կարգի բանի մը համար ընտրած ըլլայ․ եւ առանձինն խրատեց որ նոյն ատենէն ան ամէն բանին պատրաստուի, որուն որ Աստուած զինքը

աղօթքով կ'անցընէր, սակայն ժամերով եկեղեցւոյն մէջ ծնկի վրայ ինկած ու ձեռուըները վեր վերցուցած՝ աչուըներէն արցունք թափելով՝ աղօթք կ'ընէր: Առտու մը կրօնակիցները տեսան որ սովորական ատեն խցէն դուրս չ'ելլեր, եւ կասկածի երթալով՝ եկան դուռը զարկին. բայց ո՛չ բացող եղաւ ո՛չ ալ ձայն տուող: Ան ատեն դուռը կոտրեցին ներս մտան. ի՜նչ կը տեսնես, Լուտեր մեռածի պէս գետինը փռուած՝ հազիւ թէ շունչ կ'առնէր: Շատ ջանացին որ արթընցընեն, եւ երկայն ատեն վերջը երաժշտական գործիքներով հազիւ կրցան խելքը գլուխը բերել 22:

Անգամ մը աստանկ խորհուրդներու մէջ ընկղմած կեցած ատեն՝ ծեր կրօնաւոր մը վրան գթալով իրեն ըսաւ. Եղբայր, ես զքեզ տառապեցընող վշտերուն դեղ մը գիտեմ: — Ի՞նչ է ան դեղը, ըսաւ Լուտեր դողալով: — Կրօնաւորը պատասխան տուաւ թէ Հաւատքը: — Հաւա՞տքը, կրկնեց Լուտեր, որ աս բառը լսելով՝ աւելի եւս դողալու սկսած էր. Հաւա՞տքը: — Հա՛, ըսաւ ծերունին, հաւատքը. ինչու որ հաւատալ՝ ուրիշ բան չէ, բայց եթէ սիրել, եւ ով որ կը սիրէ՝ երանելի է: — Ան ատեն Լուտերի աչուըները սկսան զուարթանալ, եւ շատ անգամ կը կրկնէր ու կ'ըսէր, Հաւատք, հաւատալ, սիրել. եւ երկայն երազէ արթընցող մարդու մը կը նմանէր: Ծերը աս տեսնելով՝ վրան աւելցուց. Ս. Բեռնարդոսին Աւետման ճառին մէջ ըսածը չե՞ս կարդացեր. Հաւատա, կ'ըսէ, որ մեղքերդ Յիսուսի Քրիստոսի ձեռքովը թող կը տրուին. աս է վկայութիւնը՝ որն որ Հոգին սուրբ մարդուն սրտին մէջ դրած է, որովհետեւ ըսած է. Հաւատա, ու մեղքերդ քեզի թող կը

ետքէն կրնար կանչել: — Ասոր վրայ Ռիֆէլ (Գիրք Ա. Գլ. Ա. 12.) կը զրուցէ որ աս դեղը՝ որն որ խոնարհ մարդիկներուն ըստ ինքեան շատ մեծ օգուտ կրնայ ընել, Լուտերին հպարտութեանը սաստիկ վնասակար թոյն մ'եղաւ. ինչու որ երբ որ ետքը մէյ մը ինքը զինքը ասպարիզին մէջ գտաւ, երեւակայելով որ Աստուած զինքը կրօնի նորոգութեան գործքին ընտրած է, սկսաւ իր անձին վրայ շատ մեծ համարում ունենալ: Ասոր տակը ծածկուած էր կրօնի վերաբերեալ բաներու մէջ ցուցուցած կիրքերը, ան սաստիկ բարձրամտութիւնը՝ որով ուղղափառ կրօնը պաշտպանողներուն հետ կը վարուէր, ան բռնաւորութիւնը՝ որն որ իրեն օգնողներուն դէմ կը բանեցընէր, ան խստութիւնները՝ որոնք որ իր փոփոխական կարծիքներէն հեռանալու յանդգնող աշակերտներուն դէմ ի գործ կը դնէր, եւ վերջապէս ան սաստիկ յանձնապաստանութիւնը՝ որով Ս. Գիրքը կը խանգարէր, անոր՝ իր խելքին փչածին պէս՝ իմաստ կու տար, եկեղեցւոյ հաւատքը կը նախատէր, ժողովքներուն իշխանութիւնը կ'ուրանար, որոնց Հարց յարգութիւնը կը մերժէր, ու ինքը զինքը "Աստուծոյ շնորհօքը Վիդդենպերկի Եկղեզիաստէս„ կ'անուանէր, եւ իբրեւ մարգարէ կամ առաքեալ կամ պղծեալ աւետարանը մաքրող կը պարծէր, ինչպէս որ պատմութեան ընթացքին մէջ պիտի տեսնենք:

22. Ռանքէ, Գիրք Բ. Գլ. Ա. Հատ. Ա. 297: Կուստաւ Ֆիցէր, Գլ. Բ. 31:

տրուին 23: Այս խօսքերէն Լուտեր քիչ մը մխիթարուելով ու քաջալերութիւն առնելով՝ ատեն մը հանդարտեցաւ, ու առաջինէն աւելի աղօթք կ'ընէր, պահք կը պահէր եւ ուսմանց ետեւէ կ'իյնար. անանկ ալ կ'երեւար որ անոնցմէ քաղցրութիւն ու մխիթարութիւն կը զգայ: Բայց աս հանդարտութեան վիճակը երկայն չտեւեց, քիչ մը ետքը նորէն առջի տրտմութեան ու յուսահատութեան մէջ ինկաւ. եւ աս տրտմութիւնն ան աստիճանի հասաւ, մինչեւ դրսէն ալ կ'երեւար որ սիրտը ներքին պատերազմներով կտոր կտոր կ'ըլլար, կ'ըսէ Բլանք 24:

Լուտեր աս վիճակի մէջ եղած ատեն՝ Վիդդենպերկ քաղաքը խաւրուեցաւ (1508), ու հոնտեղը քանի մը տարի յառաջ (1502ին) Փրեդերիկոս Սաքսոնիայի կայսրընտրին հաստատած համալսարանին մէջ փիլիսոփայութեան դասատու դրուեցաւ: Հոն իր միտքը սրութեամբն ու բնական ճարտարախօսութեամբը քիչ ատենուան մէջ անանկ մեծ անուն հանեց, որ շատ մարդիկ եկան քովը ժողվուեցան, ու մեծ փութով իր դասերը մտիկ կ'ընէին: Ասով իր բնական հպարտութիւնն ու մեծամտութիւնը աւելի եւս սաստկանալով՝ սկսաւ իրմէ յառաջ եղող երեւելի մարդիկները, եւ մանաւանդ դպրոցական փիլիսոփաներն ու աստուածաբանները սաստիկ արհամարհել, եւ վրանին միշտ հեգնութեամբ ու ծաղր ընելով կը խօսէր: Գլխաւորաբար անոր կը բարկանար որ ետքի ատենուան փիլիսոփաներն ու աստուածաբանները՝ հին փիլիսոփաներուն ետեւէն կ'երթան, որոնք ամէնքն ալ ինքը կ'անարգէր, եւ մասնաւոր կերպով մը Արիստոտէլը կ'ատէր, ու իրեն Սատանայական վարդապետ կը կանչէր: Նոյն ատենէն ան աստիճանի յանդգնութիւն ստացած էր, որ շատ խոհեմ մարդիկներ՝ ետքը հանելու շփոթութիւնները կը կռահէին 25: Ան ատենները սկսաւ նաեւ քարոզ ալ տալ, ու վերը դրած պատճառներնուս համար՝ ասոր մէջն ալ մեծ ընդունելութիւն գտաւ:

Նոյն պաշտօնին զբաղելու ատեն՝ իր կրօնակիցները իրենց կրօնին մէկ գործքին համար Լուտերը Հռոմ խրկեցին (1510): Աս պաշտօնը Լուտեր մեծ սիրով յանձն առաւ, ինչու որ շատոնցուընէ ինքն ալ քրիստոնէութեան մայրաքաղաքը տեսնելու կը բաղձար, մանաւանդ որ կը յուսար թէ շատ տարիներէ վեր զինքը նեղող ներքին խռովութիւններէն ու անհանգստութիւններէն հոն կ'ազատի. որովհետեւ վանքին մէջ ունեցած խղճմտան-

23. Մելանքթոն, էջ 7: Մաթեսիոս, ճառ Ա. 5. Բ: Բլանք, Գիրք Ա. Հատ. Ա. 60: Ռանքէ, Գիրք Բ. Գլ. Ա. Հատ. Ա. 297: Օտէն, Հատ. Ա. Գլ. Ա. 17:

24. Գիրք Ա. Հատ. Ա. 55:

25. Ուլէնպերկ, Գլ. Ա. Համ. Գ: Կուստաւ Փիցէր, Գլ. Գ. 37. բայց աս վերջին հեղինակը նոյն բանը գովեստի դարձընելով կը գնէ:

քի փրդովմունքը՝ համալսարանին զբաղմունքներուն եւ ընդունած գովութիւններուն մէջն ալ իրմէ չէին հեռանար։ Երբ որ Ճամբորդութեան նպատակին հասաւ ու հեռուանց Հռոմ քաղաքը տեսաւ, ուրախութենէն սկսաւ սիրտը դող ելլել, եւ ինչպէս ինք կը պատմէ, անմիջապէս ծնկան վրայ ինկաւ ու ողջունեց ըսելով. Ո՛ղջ լեր, Հռոմ, սուրբ քաղաք[26]։ Մեծ ջերմեռանդութեամբ ամէն սուրբ տեղերը, եկեղեցիները, վկայարանները տեսնելու գնաց, ու շատ տեղեր պատարագ ըրաւ. վերջապէս՝ ասանկ սուրբ տեղերը սովորաբար եղած ջերմեռանդութիւններէն ամենեւին մէկը թող չտուաւ[27]։ Բայց թէպէտ եւ իր կրօնին գործքը՝ որուն համար գացած էր, յաջողութեամբ կատարեց, սակայն իրեն անձին համար օգուտ մը չտեսաւ, ու ներքին խռովութիւնները չթեթեւցան։ Մանաւանդ որ մեծամեծ եկեղեցիներուն ու վանքերուն եւ անոնց զարդերուն փառաւորութենէն գայթակղեցաւ. փոխանակ փառք տալու Աստուծոյ՝ որուն պատուոյն համար եղած էր ան ամէն բան։ — Եկեղեցիէն բաժնուելէն ետեւ՝ Լուտեր Հռոմայ վրայ խել մը առասպելներ կը պատմէր, հոնտեղաց եկեղեցականներուն համար կ'ըսէր որ սաստիկ բարուց ապականութեան մէջ ինկած են, բոլորովին անհաւատ են. իրմէ ետքն ալ իր աշակերտները աս ամէն առասպելները իբրեւ ճշմարտութիւն ու անկողմնակալ վկայութիւն կը յիշեն։ Բայց թէ որ ասանկ յայտնի թշնամիոյ մը խօսքերը ճշմարտութիւն կրնան սեպուիլ նէ՝ չեմ գիտեր զրպարտութեան ու ստութեան անունն ինչ բանի տալու է։

Լուտեր Հռոմէն Վիդդենպերկ դառնալէն քիչ մը ետքը աստուածաբանութեան վարդապետ անուանուեցաւ, ու Գարլշդատ՝ որ նոյն ատենները Վիդդենպերկի մէջ կանոնիկոս, աւ-

26. Ռոնքէ, Գիրք Բ. Գլ. Ա. Հատ. Ա. 299։ Կուստաւ Ֆիցեր, Գլ. Դ. 56։

27. Լուտեր կը գրէ որ Հռոմ եղած ատենս "Ծնողացս դեռ չմեռած ըլլալուն վրայ գրեթէ կը տրտմէի. որովհետեւ կ'ուզէի որ պատարագներովս եւ ուրիշ բարի գործքերովս ու աղօթքներովս զիրենք քաւարանէն հանել"։ ՃԺԷ տողերէն Յէնաբերան օրինակը. Գործք Լուտ. Գերմ. Հատ. Ե. 146. — Չեմ գիտեր, կ'ըսէ Ռիֆէլ (Գիրք Ա. Գլ. Ա. 8.) աս գործքերը ինչպէս կրնան մեկնուիլ, թէ որ գնելու ըլլանք որ Լուտեր նոյն ատենէն ուղղափառ կրօնէն վրայ տարակոյսներ ունեցած ըլլայ, ինչպէս որ ինք Լուտեր եւ իրեն հետեւողները կը զրուցեն։ Եւ թէպէտ Լուտեր ետքէն կ'ըսէր որ աս ամէն գործքերն ընելու ատենս՝ միշտ ներքին ձայն մը կը լսէի թէ "Արդարն ի հաւատոց կեցցէ". բայց անիկա խաբէութիւն է։ Ինչու որ ինք աս ալ կը գրէ թէ "Պապին վարդապետութիւններովը այնպէս լեցուած էի որ ձեռքէս գալու ըլլար նէ՝ պատրաստ էի պապին նաեւ փոքր բանի (վանկի) մը մէջ չհնազանդողները մեռցընելու կամ մեռցընողներուն գործակից ըլլալու եւ հաւանութիւն տալու"։ Իր լատիներէն Գործոց յառաջաբանութեան մէջ. Հատ. Ա. օրինակներ։

ադ սարկաւագ ու աստուածաբանութեան վարդապետ էր, իրեն այս աստիճանը տուաւ (1512)․ իսկ եղած ծախքը՝ Սաքսոնիայի կայսրընտիրը քաշեց [28]։ Լուտեր այս աստիճանն ընդունելուն պէս՝ սկսաւ Վիդդենպերկի համալսարանին մէջ աստուածաբանութեան դաս տալ ու Ս․ Գիրքը մեկնել։ Այս պաշտօնին մէջն ալ ամենուն հաճելի եղաւ, ու ամէն մարդ իր մտաց սրութիւնը, իր գիտնականութիւնն ու ճարտարախօսութիւնը կը գովէր․ այնպէս որ Վիդդենպերկի համալսարանը իր պատճառաւը քիչ ատենի մէջ մեծ համբաւ ստացաւ։ Ասոր համար Վիդդենպերկցիք սկսան զինքը շատ մեծարել ու մէջերնին ասանկ մարդ մ'ունենալը՝ իրենց մեծ պարծանք կը սեպէին։ Մանաւանդ Սաքսոնիայի կայսրընտիրը վրան մեծ սէր ստացաւ, կարծելով որ Լուտեր ուսմանց ու գիտութեանց յառաջադիմութեան շատ մեծ օգուտ պիտի՛ որ ընէ, որով եւ իր հաստատած համալսարանը բոլոր աշխարհքիս մէջ սաստիկ հռչակ պիտի՛ որ հանէ։ Այս կարծիքին մէջ կը հաստատէին իշխանը Լուտերի երկու մեծամեծ բարեկամներն ու պաշտպանները, այս ինքն Ստաւփից՝ Գերմանիայի մէջ եղող Օգոստինեան կրօնաւորներուն գաւառապետը կամ փոխանորդը [29], եւ Սփալադին՝ իշխանին ատենադպիրն ու պալատին մատրանապետը, որոնք միշտ իր առջեւը Լուտերը կը գովէին։ — Այսպէս քանի մը տարի յառաջ գնաց Լուտեր, եւ գուցէ առանց միտ դնելու կամաց կամաց կը պատրաստուէր ու զէնքեր կը շինէր այն մեծ պատերազմին համար՝ որն որ ետքը եկեղեցւոյ դէմ բացաւ։

Որովհետեւ այս գլխուս մէջ քանի մը անգամ Լուտերին խղճի անհանգստութեան ու խռովութեանց վրայ խօսեցանք, հարկ է որ իր պատերազմ ելլելու պատմութիւնը գրելէն յառաջ՝ հոստեղս այս խռովութեանց պատճառներուն վրայ խօսինք, որով իր ետքէն ընդունած ու վարդապետած գլխաւոր մոլորութեան վրայ ալ ընթերցողներնուս միտքը կը լուսաւորուի։ — Այս խռովութեանց բուն պատճառը, կ՚ըսէ Ռիֆէլ [30], այս էր որ Լուտեր զԱստուած ճշմարիտ որդիական սիրով չէր սիրեր․ միշտ զԱստուած ահով ու դողով՝ միայն իբրեւ արդար

28․ Սէքենտորֆ, Գիրք Ա․ Համ․ Ը․ 19․ դարձեալ նոյն տեղը, Յաւել․ Դ․ 21։ Կուստաւ Փֆիցէր, Գլ․ Գ․ 37։

29․ Ստաւփիցին Լուտերի վրայ ինչ մեծ համարում ունենալը անկից յայտնի է, որ 1516ին ինք ճամբորդութեան մը պատճառաւ պաշտօնը չկրնալով կատարել՝ զանիկա իրեն ընդհանուր փոխանորդն ըրաւ։ Լուտեր ալ այս միջոցիս բոլոր իր տեսչութեան յանձնուած վանքերուն այցելութեան ելաւ, տեղ տեղ մեծաւորները փոխեց, եւ ուրիշ մեծամեծ փոփոխութիւններ ու կարգադրութիւններ ըրաւ։ Սեքենտորֆ, Գիրք Ա․ Համ․ Ը․ 20։ Կուստաւ Փֆիցէր, Գլ․ Գ․ 40։ Ռոնտէ, Գիրք Բ․ Գլ․ Ա․ Հատ․ Ա․ 300։

30․ Գիրք Ա․ Գլ․ Ա․ 9—13։

դատաւոր ու չարեաց պատժիչ աչքին առջեւը կը բերէր. Աստուծոյ արդարութիւնը՝ իբրեւ մեղաւորները ոչընչացընելու պատրաստ՝ սաստիկ բարկութիւն մը կ'երեւակայէր [31]. սրտին մէջ չէր հաւատար Աստուծոյ ողորմութեանը՝ որն որ Քրիստոսի արդեանց համար մեծամեծ մեղքերու ալ թողութիւն կու տայ, եւ ոչ ալ մեր տկարութեանը օգնութեան հասնող շնորհաց վրայ յոյս ունէր։ Կուրութիւնն ան աստիճանի հասած չէր որ կարենար ըսել թէ ես բոլորովին մեղքէ ազատ եմ. բայց իր հպարտութիւնը թող չէր տար որ խոստովանի թէ մարդս իր բոլոր ճիգն ի գործ դնելէն ու ձեռքէն ամէն եկածն ընելէն վերջն ալ՝ ծառայ անպիտան է, եւ բոլոր ունեցածն ու ըրածը՝ միայն Աստուծոյ ազատ շնորհքովն է։ Կ'ուզէր իր անձնական զօրութեամբն արդարանալ։ Անոր համար ալ ինքը զինքը վերջին աստիճանի ու չափէ դուրս կը նեղէր. պահք կը բռնէր, կը հսկէր, կ'աղօթէր եւ կ'ուզէր որ անոնցմով արդարանայ։ Բայց յայտնի է որ այսպէս առանց Աստուծոյ երկինք երթալ ուզող մը՝ որչափ ինքը զինքը չարչարելու ալ ըլլար նէ՝ ներքին անհանգստութիւններէն ու խռովութիւններէն ազատ չէր կրնար ըլլալ. ինչու որ բոլոր իր ճգանց ու աշխատութեանց անբաւականութիւնը կ'իմանար, առանց չարիքին բուն պատճառն իմանալու, որ իր հպարտութիւնն էր։

Աս ըսածներնիս Լութերի հետեւողներն ու իրեն պաշտպաններն ալ կը հաստատեն [32]. միայն թէ Լութերին աս կարծիքը՝ իր հպարտութենէն կը ծագէր, ըսելու տեղ, կ'ըսեն թէ նոյն ատենուան բոլոր ուղղափառաց կամ գոնէ անոնցմէ շատերուն կարծիքն ալ աս էր, այս ինքն թէ մարդը չէ թէ Քրիստոսի արդիւնքովը, հապա միայն իր զօրութեամբն ու ըրած բա-

31. Աս խօսքերը գրեթէ մի եւ նոյն բառերով Ռանքէ ալ կը դնէ. եւ քիչ մը վերջը բուն Լութերին խօսքերը վկայութիւն կը բերէ, որն որ կ'ըսէ թէ "Արդարութիւնը՝ Աստուծոյ կատաղի բարկութիւնն է, որով մեղաւորները կը պատժէ,,։ Գէրմ. Բ. Գլ. Ա. Հատ. Ա. 296։— Նմանապէս կը խօսի Կուստաւ Ֆիցէր ալ (Գլ. Բ. 27.), բայց յանցանքը Լութերին տալու տեղ՝ ընդունուած կրօնական կրթութեան կու տայ։

32. Լութեր իր բերնովը աս բանս կը խոստովանի։ Ռանքէ (Գէրմ. Ա. Հատ. Ա. 59. Ծան. 46.) Լութերի 1516ին իր կրօնակիցներէն մէկուն գրած մէկ նամակէն երեւելի կտորը կը բերէ։ "Մեր դարուն մէջ, կը գրէ Լութեր, յանձնապաստանութեան փորձութիւնը շատերուն վրայ տարածուած է, եւ գլխաւորապէս անոնց վրայ, որոնք որ իրենց բոլոր զօրութեամբ եռանդէ կ'իյնան որ առաքինի ըլլան, ու չգիտնալով Աստուծոյ արդարութիւնը՝ որն որ Քրիստոսի ձեռօքը մեզի առատութեամբ եւ ձրի տրուած է, կ'ուզեն որ իրենք այնչափ բարիք գործեն, որ կարենան իբրեւ առաքինութիւններով ու արդեամբք զարդարեալ՝ Աստուծոյ առջեւը կենալու վստահութիւն ունենալ, որն որ անկարելի է։ Թէ որ դուն աս կարծիքը մանաւանդ թէ աս մոլորութիւնն ունեցած ես նէ, ես ալ ունեցած եմ, ես հիմայ ալ միշտ աս մոլորութեան դէմ կը կռուիմ, ու դեռ չկրցայ յաղթել,,։

ընգործութիւններովը կ'արդարանայ։ Բայց աս խօսքին սուտ ըլլալը անկից յայտնի է որ աս հեղինակներէն ամենուն մէկը ըսածին՝ եկեղեցւոյ ընդունած գրքերուն մէջէն եւ ոչ մէկ վկայութիւն կրնայ բերել. եւ թէ որ ոմանք աղիէն անդիէն քանի մը վկայութիւն բերեն ալ նէ՝ անոնք ալ ուրիշ բան չեն նշանակեր, բայց եթէ աս՝ որ բարեգործութիւններն ու ապաշխարութեան գործքերը օգտակար եւ հարկաւոր են, բայց միշտ Քրիստոսի արդիւնքն ու շնորհաց զօրութիւնը ենթադրելով։ Աս վկայութիւններէն եւ ոչ մէկը կայ, որուն մէջ ըսուի թէ մարդը՝ միայն բարեգործութիւններով կամ ապաշխարութեան գործքերով կ'արդարանայ, կամ թէ մարդը առանց Քրիստոսի արդեանցը կամ առանց շնորհաց կ'արդարանայ։

Մարդ՝ Լուտեր այսպէս երկայն ատեն նեղուելէն ետքը՝ երբ որ կէս մը ուրիշներուն խրատներէն, կէս մ'ալ Ս. Գիրքը կարդալով՝ իմացաւ որ մարդուս արդարանալը Քրիստոսի արդիւնքովը ու Աստուծոյ շնորհօքը կ'ըլլայ, փոխանակ խոստովանելու որ ինք սխալեր է, սկսաւ եկեղեցւոյ սկիզբէն մինչեւ իր ժամանակը առանց միջահատութեան եկած աս ճշմարտութիւնը՝ իբրեւ իր անձին սեպհական գիւտը, ու առաքելոց ժամանակէն անմիջապէս ետքը մոռցուած վարդապետութեան մը պէս քարոզել։ Եւ ինչպէս որ յառաջագոյն մէկ ծայրը անցնելով՝ միտքը դրած էր որ մարդը՝ միայն իր զօրութեամբը կրնայ փրկուիլ, ետքն ալ անոր հակառակ ծայրն անցնելով՝ միտքը դրաւ ու սկսաւ վարդապետել թէ միայն հաւատքով կամ Քրիստոսի արդեանցը հաւատալով՝ կ'արդարանանք ու կը փրկուինք, առանց մեր կողմանէ գործակցութիւն մ'ընելու կամ առանց բարեգործութեան։ Անոր համար ալ Պօղոս առաքելոյն՝ իր թղթերուն մէջ հին օրինաց գործքերուն՝ նոր օրինաց ժամանակը հարկաւոր չէ ըսածը, մանաւանդ թէ աս օրինական գործքերը հարկաւոր սեպելը մոլորութիւն է ըսածը կարդալով, ու հին օրինաց գործքերուն եւ ընդհանրապէս ամէն բարեգործութեանց մէջ եղած զանազանութիւնը չիմանալով կամ չուզելով իմանալ, սկսաւ Առաքելոյն խօսքերը ընդհանրապէս բոլոր բարեգործութեանց վրայ ըսուածի պէս առնել։ Եւ իսկզբան "Մարդը՝ միայն հաւատքով ու Քրիստոսի արդիւնքներուն հաւատալով կ'արդարանայ ու բարեգործութիւններն օգուտ մը չունին,, ըսելէն վերջը, ետքէն քիչ մ'ալ յառաջ գնաց եւ սկսաւ ըսել թէ մարդուն ամէն գործքերը եւ նոյն իսկ բարեգործութիւններն ալ մեղք են։



# ԳԼՈՒԽ Բ

## Ներողութեանց վէճը

Գերմանիոյ մէջ ներողութիւն քարոզելը։ Դեցլ։ Լութեր ներողութեանց դէմ քարոզելու կը սկսի։ Մոգունտիոյ արքեպիսկոպոսին նամակ մը կը գրէ եւ 95 նախադասութիւն դուրս կը հանէ։ Դեցլ, Փրիերաս, Հոխշթրաթէն ու Էք՝ Լութերի դէմ կը գրեն։ Լութեր իր հակառակորդներուն տալիք պատասխան կու տայ։ Հայտելպերկի մէջ պաշտպանած նորանոր նախադասութիւնները։ Պրանտենպուրկի եպիսկոպոսին ու Քահանայապետին նամակ կը գրէ։

## 1517 — 1518

*Ան տենները Լեւոն Ժ. Հռոմայ քահանայապետը՝ եկեղեցւոյ զանազան կարօտութիւններուն եւ մանաւանդ Ս. Պետրոսի եկեղեցւոյն շինութեան համար՝ հաւատացելոց օգնութեան պէտք ունենալով՝ նոյն գործքին տալով օգնութիւն ընողներուն ներողութիւն շնորհեց* [1], *եւ աս ներողութիւնը Գերմանիայի մէջ քարոզել տալը՝ Մոգունտիայի կայսրընտիր ու արքեպիսկոպոս Ալպերդին յանձնեց* (1516)։ *Աս հայրապետն ու իշխանն ալ՝ Դեցլ Դոմինիկեան կրօնաւորը, (որն որ յառաջագոյն ուրիշ ասանկ գործք մը շատ յաջողութեամբ կատարած էր) ընտրեց, որ աս ներողութիւնը քարոզէ ու բարեպաշտաց տուած տալիքները ժողվէ։*

1. Բողոքող մատենագիրներէն շատերը՝ քահանայապետին աս ներողութիւնը հրատարակելու ատեն ունեցած վախճանին, եւ աս ներողութենէն ժողվուած տալիքին գործածութեան վրայ զանազան զրպարտութիւններ կ'ընեն, շատ մը տառապելիներ կը պատմեն, եւ գլխաւորաբար կը ջանան ցուցընել որ բողոքողութեան ելլելուն պատճառն ասոնք եղան։ Ասոր սուտութիւնը ցուցընելու համար բաւական կը սեպենք երեւելի բողոքող մատենագրի մը խօսքերը հոստեղս դնել, որն որ նոյն զրպարտութիւններէն ոմանք կը յիշատակէ եւ իբրեւ սուտ կը հերքէ։ 'Մարտինոս Լուտերին նորանոր կարծիքներն ու իր անսաստ վարմունքը (the new opinions and refractory conduct of Martin Luther), կ'ըսէ, ... ծագում տուին այն եկեղեցական հերձուածին՝ որն որ գրեթէ երեք դարէ վեր քրիստոնէութիւնը բաժնած է, եւ ատելութեան, կռուոյ ու հալածանաց նոր աւիթ տուին անանկ կրօնի մը հետեւողներուն մէջ, որուն նպատակն է ընդհանուր խաղաղութիւն, ընկերսիրութիւն ու լաւակամութիւն քարոզել։ ..... Հասարակօրէն բողոքող մատենագիրները աս եկեղեցական մեծ բաժանման անընդմիջական պատճառը՝ Լեւոն Ժ-ին դէշ վարմունքն ու ընչասիրութիւնը կը համարին։ ... Անոր հակառակ՝ հին եկեղեցւոյն կողմն ըլլողները կը ջանան ցուցընել թէ Լեւոն շատ աւելի գովութեան արժանի դիտաւորութիւն մ'ունէր, եւ թէ ներողութիւն ծախելով (այսինքն՝ ներողութիւն շնորհելով. հոս մէկ անգամ միայն ծանուցանելը բաւական կը սեպենք որ բողոքող մատենագիրները գրեթէ միշտ ներողութիւնը՝ վաճառք կ'անուանեն, եւ ներողութիւն տալ ըսելու տեղ՝ ներողութիւնը ծախել կամ վաճառել կ'ըսեն.) քրիստոնէից օգնութիւնը խնդրելուն բուն իրական պատճառը՝ իր հրատարակած. կոնդակին մէջ

Տեցըլ շուտ մը սկսաւ ուրիշ ընկերներով՝ որոնք ըստ մեծի մասին իր կրօնակիցներէն էին, Գերմանիայի ամէն կողմերը ներողութիւնը քարոզել, ու հաւատացեալները յորդորել որ իրենց օգնութեամբը Ս. Պետրոսի եկեղեցւոյն շինութեան գործուած վախճանն էր, այս ինքն՝ Ս. Պետրոսի եկեղեցւոյն հոյակապ շէնքը լմնցընել,,: Այսպէս երկու կողման կարծիքները գնելէն վերջը՝ ինք վերջիններուն խրատուինք կու տայ: "Լեւոնին՝ բոլոր իր քահանայապետութեան ատեն՝ աս դիտաւորութիւնն ունենալը, կ'ըսէ, հաստատուն յիշատակարաններով կը ցուցուի. եւ աս բանիս համար ըրած արտաքոյ կարգի ծախքերը՝ զինքը ստիպած էին որ նոր օգնութեան աղբիւր մը գտնէ: Կուիչչարտինիին ու Եղ. Պօղոսին (Սարբիին) կարծիքը, որոնք կ'ըսեն թէ աս ներողութենէն ժողվուած ստըկին մէկ մասը՝ քահանայապետը իր քրոջը Մագդաղինոյին որոշած էր, ... երեւելի հռոմայեցի եկեղեցական մը (Փելիքս Գոնդելորի), որն որ բոլոր քահանայապետական դիւանին մուտք ունէր, մանաւանդ կերպով մը քննեց. եւ ինք աս կարծեցեալ պարգեւատուութեան սուտ ըլլալը՝ որոշակի հաստատեց (who has positively asserted the falsity of this pretended donation), որուն վրայ նոյն ժամանակուան մատենագիրներէն եւ ոչ մէկը յիշատակութիւն կ'ընէ: Աւելի եւս վստահութեամբ կրնայ ժխտուիլ ան աստիճանի նորութեան ամբաստանութիւնը՝ իբրեւ թէ աս քահանայապետը եկեղեցւոյ մէջ առաջին ներողութիւն շնորհողն եղած ըլլայ, որպէս զի անով եկեղեցւոյ մուտքերուն ժամանակաւոր օգնութիւն գտնէ: Ռոպերդսոն յայտնի կը ցուցունէ որ արդէն 1100ին Ուրբանոս Բ. Քրիստոսի գերեզմանը անհաւատներուն ձեռքէն ազատելու համար խաչակրաց արշաւանքին հետ գացողներուն լիակատար ներողութիւն տուած էր: Առաջ սովորութիւն եղած էր որ ներողութիւնը նաեւ անոնց ալ կը տրուէր, որոնք անձամբ չէին երթար, հապա ստըկով զինուոր մը կը բանեցնէին: Եւ աս սկիզբէն դիւրութեամբ սովորութիւն եղաւ ներողութիւն տալ նաեւ ան ամէն նպատակներուն համար՝ զորոնք Հռոմայ եկեղեցին կը գիտէր,,: Ռոսկոյ, Գլ. ԺԵ. Հատ. Գ. 138. 149, 150: — Նմանապէս Ռոպերդսոն ալ, որն որ բողոքողութեան մէջ ընդհանրապէս Ռոսկոյէն շատ աւելի խիստ է, Կուիչչարտինիին ու Սարբիին կարծիքները գնելէն ետեւ՝ անոնց սուտ ու անհիմն ըլլալը զանազան պատճառներով կը ցուցընէ: Տես Գիրք Բ. Հատ. Բ. 86. Ծանօթ:

Թէպէտ եւ աս բողոքող հեղինակները Լեւոն քահանայապետին դէմ եղած զրպարտութիւնները կը հերքեն, բայց ներողութիւն ծախել բառը գործածելէն, եւ ընդհանրապէս բանեցուցած բացատրութիւն՝ յայտնապէս կը ցուցընեն որ իրենց աղանդակիցացը մէջ հասարակօրէն ներողութեանց վրայ տիրող նախապաշարումէն ազատ չեն: Աս նախապաշարումը փարատելու եւ ներողութեանց վրայ ճիշդ գաղափար մը տալու համար պէտք է որ վրան քիչ մը խօսինք:

Քրիստոնէութեան առաջին դարերը՝ եկեղեցին մեղաւորներուն կամ ապաշխարողներուն հետ շատ խստութեամբ կը վարուէր: Ապաշխարողներուն համար սահմանին օրէնքներ կային. եւ երէցները կամ եպիսկոպոսները՝ մեղքերնուն մեծութեան համեմատ՝ անոնց վրայ տարիներով երկայն ու սաստիկ ապաշխարութեան գործքեր կը դնէին, որոնց ժամանակը կատարուելէն վերջը՝ ապաշխարողները նորէն ուրիշ հաւատացելոց կարգը կը մտնէին: Բայց շատ անգամ երբ որ ապաշխարող մը չափէ դուրս եռանդ կամ սաստիկ զղջում կը ցուցընէր նէ, եկեղեցւոյ առաջնորդները՝ ապաշխարութեան սաստկութիւնը կը չափաւորէին. մեղքերուն թողութիւնը տրուելէն վերջը մնացած ժամանակաւոր պատժոյն համար՝ ապաշխարողին վրան դրուած սաստիկ ապաշխարութեան գործքերուն մէկ մասը կը վերցընէին, կամ ապաշխարութեան ժամանակը կը կարճեցընէին: Աս սովորութիւնը նոյն իսկ առաքելոց ատենէն սկսած էր.

ծակից ըլլան։ Բայց գժբախտութեամբ թէ Դէցը եւ թէ իր ընկերները քարոզութիւններնուն մէջ անանկ խօսքեր կը գործածէին, որոնց՝ պարզամիտ կամ չարամիտ մարդիկ գէշ մեկնութիւններ տալով՝ ներողութիւնը ի նախատինս կրօնի կը դար-

աս կերպով Պօղոս առաքեալ Կորընթացւոց աղաչանքին լսելով՝ իրենց նշանաւոր քաղաքակցին յուցած պատիժը ներեց։ Նոյնպէս առաջին եպիսկոպոսները՝ մարտիրոսի մը բարեխօսելուն համար՝ ուրացողներուն ապաշխարութեան ժամանակը համառօտելով՝ զանոնք հաղորդութեան մէջ կ'առնէին։ Աս սովորութիւնը՝ որ միշտ եկեղեցւոյ մէջ կար, չէ թէ միայն հին քահանայապետները իրենց խօսքերովը ու գործքերովը հաստատեցին, հապա նաեւ զանազան ժողովքներ, ինչպէս Նիկիայի, Անկիւրիայի, Նէօկեսարիայի, Լաւոդիկէի, Կարքեդոնի, Գլերմոնի ժողովքները, եւ միւս ազգային ժողովքներուն մէջէն Շահապիվանու ժողովքն ու Ս. Սահակայ կանոնները։ Եկեղեցւոյ սկիզբէն մինչեւ հիմա եղած աս սովորութիւնն է, որ Ներողութիւն կ'անուանուի։

Ասով կը տեսնուի որ ներողութիւն տալու սովորութիւնը՝ բողոքականներուն բարբանջածին պէս՝ եկեղեցւոյ մէջ նոր մտած բան մը չէ. հապա շատ հին ու գրեթէ եկեղեցւոյ հետ միասին սկսած։ Աս նիւթին վրայ եկեղեցւոյ հանապազօրեայ հաստատուն վարդապետութիւնն աս է որ, երբ որ Քրիստոս եկեղեցւոյ առաջնորդներուն՝ մեղաւորները կապելու եւ արձակելու իշխանութիւն տուաւ. նէ, չէ թէ միայն իրենց զօրութիւն տուաւ որ իր չարչարանացը արդիւնքովը զանոնք մեղաց կապանքէն արձակեն, եւ այսպէս նոյն մեղաց համար արդիւնաւորած գժոխքին մշտնջենաւոր պատժէն ազատեն, հապա նաեւ ան իշխանութիւնն ալ տուաւ որ նոյն մեղքերուն համար կամ աս աշխարհքիս մէջ կամ անդին աշխարհքը կրելու ժամանակաւոր պատիժներնէն ալ ազատեն։ Որով կ'իմացուի որ ներողութիւնը չէ թէ միայն ապաշխարողներուն աս աշխարհքիս մէջ կրելու պատիժը կը վերցընէ, հապա նաեւ մահուընէ վերջը քաւարանի մէջ կրելու պատիժներն ալ։ Այս թէ ոչ, որովհետեւ անդին աշխարհք կրուելու պատիժը՝ աս աշխարհքիս մէջ կրուելիքէն շատ մեծ ու սաստիկ է, անոր համար ներողութիւնը մեղաւորին չէ թէ միայն օգուտ մը չէր ընէր, հապա նաեւ մեծ վնաս ալ կը հասցընէր. ինչու որ մարդս աս աշխարհքիս մէջ փոքր ու թեթեւ ապաշխարութեան նեղութենէն ազատելով՝ անդին աշխարհքը սաստիկ նեղութեան ու պատժոց տակ կ'իյնար. որով եւ Պօղոս առաքեալը Կորընթացւոյն ներած ատեն, եւ մարտիրոսները եւ անոնցմէ ետեւ անոնց օրինակին հետեւելով ներողութիւն տուող քահանայապետները ու եպիսկոպոսները՝ մեղաւորները աւելի սաստիկ պատժոյ տակ ձգած կ'ըլլային։

Եկեղեցին ու քահանայապետները աս իշխանութիւնը գործածելով՝ շատ անգամ զանազան պատճառներու համար կամ ապաշխարութեան ու պատժոց ժամանակը կը կարճեցընէին, եւ կամ մէկ ապաշխարութեան գործքի ու պատժոյ տեղ՝ ուրիշ գործ մը կը դնէին։ — Սովորական փոփոխութիւններէն մէկն էր Ս. Երկրին ազատութեան համար զինուորիլ. եւ երբ որ վերջին ատենները աս գործքիս համար այնչափ մարդու հարկաւորութիւն չէր ըլլար՝ որչափ առջի, ներողութիւնը սկսան նաեւ անոնց ալ շնորհել՝ որոնք որ ստըկով աս գործքին կ'օգնէին։ — Աս ալ գիտնալու է որ հարկ չկայ թէ ան գործքը՝ որուն համար ներողութիւն կը տրուի, ըստ ինքեան մեծ կամ դժուարին գործք մ'ըլլայ, հապա բաւական է որ մեծ վախճանի մը ծառայէ, ինչպէս էր Ս. Երկրին ազատութիւնը։

Մինչեւ հիմա ներողութեանց վրայ ըսածներնիս՝ աւելի եւս հաստատելու համար Լեւոն երեւելի բողոքող մատենագրին խօսքը հոստեղս կը դնենք, որն որ գրեթէ մեր ըսածին համառօտութիւնն է։ "Եկեղեցին, կ'ըսէ աս մատենագիրը, ամէն ժամանակ իբրեւ հիմնական թէութիւն ամենայն արձակման՝

ցընէին , եւ եկեղեցւոյն՝ ներողութիւն շնորհելու տեղն ունեցած հոգիէն կը հեռանային : Ասոր վրայ այսպէս կը խօսի Մեմպուր . “Աս քարոզիչներէն ոմանք չպակսեցան իրենց կողմանէ՝ քարոզած նիւթերնին չափէն անդին տանելու , ինչպէս շատ

ճշմարիտ զղջում եւ իրական ուղղութիւն կը պահանջէր . բայց շատ հին ժամանակէ վեր աս սովորութիւնը կար , որ Եկեղեցին (իբրեւ աս ներքին զղջման եւ ուղղութեան նշանակ եւ ցուցիչ) արտաքին ապաշխարութեանց ընդունելութիւն կը պահանջէր . եւ աս ապաշխարութիւնը կամ ուխտագնացութիւն մը եւ կամ նուէր մը կ'ըլլար : Աս վերջին տեսակ ապաշխարութիւնը կամ նուիրումը շատ յաճախեցաւ ան ժամանակէն երբ որ Ուրբանոս Բ . Գլերմոնի ժողովքին մէջ Խաչակրաց արշաւանքին մասնակից ըլլողներուն լիակատար ներողութիւն շնորհեց : (Նոյն քահանայապետին աս բանիս համար լիակատար ներողութիւն շնորհելուն պատճառն ան էր ,) որովհետեւ եկեղեցին կը խնդրէր որ հայրենիքներնէն հեռանան ու Ս . Երկրին ազատութեան ու պաշտպանութեան համար աշխատին . եւ աս տեսակ ապաշխարութիւնը՝ ուրիշ ամէն տեսակ ապաշխարութիւններու հաւասար կը համարէր,, : Մեան Գ . Հտծ Ա . Գւ . Ա . 75 :

Բայց որովհետեւ աշխարհքիս մէջ այնչափ սուրբ ու աղէկ բան մը չկայ , որ մարդուս չարութիւնը կամ տգիտութիւնն ու անզգուշութիւնը չարաչար կարող չըլլայ գործածել , անոր համար զարմանալու բան չէ որ ներողութեանց գործածութեան մէջ երբեմն երբեմն զեղծում եղած ըլլայ : Արդէն Ս . Կիպրիանոս շատ անգամ տրտունջ կ'ընէր որ երբեմն մարտիրոսները առանց զանազանութեան ամէն տեսակ մեղաւորներու , կամ եպիսկոպոսները շատ շուտ ու թուլութեամբ ներողութիւն կը շնորհեն , մանաւանդ թէ երբեմն պարզ քահանաներն ալ ներողութիւն տալու կը յանդգնին , որն որ միայն եպիսկոպոսները կրնան տալ : — Իննովկենտիոս Գ . քահանայապետը (1198 — 1216) շատ աշխատեցաւ որ իր ժամանակները ռամիկներուն մէջ մտած մէկ սխալ կարծիքն ուղղէ , որոնք կը կարծէին որ ներողութիւնը չէ թէ միայն պատժոց թողութիւն է , հապա նաեւ նոյն իսկ մեղքերէն ալ կ'արձակէ . եւ ներողութեանց մէջ տրուած զեղծմունքները վերցընելու կամ տարդել կարելի եղածներուն առջեւն առնելու համար՝ շատ վճիռներ դուրս հանեց : — Բայց հերետիկոսները զեղծմունքներուն դէմ գնելու տեղ՝ նոյն իսկ ներողութեանց դէմ կը կռուին . եւ կամակար կարծելով՝ չեն տեսներ կամ չեն ուզեր տեսնել որ բարի բանի մը մէջ գտնէն տարուած չարիքին համար՝ նոյն բարի բանին դէմ գնելու չէ , հապա անանց միայն դէմ գնելու է , որոնք որ իրենց չարութեամբը կամ տգիտութեամբը չարիքը կը խոթեն կամ բարիքը չարաչար կը գործածեն :

Աս ըսածներնէս մանաւանդ թէ նոյն իսկ իրեն էութենէն՝ բողոքակաց երկու մեծամեծ առարկութիւնները կը լուծուին . այսինքն մէյ մը ան որ կ'ըսեն թէ ներողութիւնները միայն արտաքին գործերու համար կը տրուէր առանց ներքին զղջման կամ սրտի ուղղութեան պահանջելու , ուր որ , ինչպէս յայտնի է եւ ամէն մարդ գիտէ , ներողութեան ամենէն մեծ ու գլխաւոր պայմանն ան է որ ստանալ ուզողը՝ մեղացը վրայ զղջացած պիտի որ ըլլայ : (Ասոր վրայ տես քիչ մը յառաջ Լեւոնէն , ու 19 , 20 երեսին մէջ Մենցլ ու Բլանք բողոքող մատենագիրներէն բերած վկայութիւնները :) Երկրորդ առարկութիւնն ալ ան է որ կ'ըսեն թէ ներողութիւնը չէ թէ իբրեւ պատժոց թողութիւն կը տրուի, հապա իբրեւ մեղաց թողութիւն, մանաւանդ թէ ոմանք այնչափ յառաջ կ'երթան մինչեւ կը զրուցեն որ ներողութիւնը չէ թէ միայն գործուած հապա նաեւ գործուելու մեղաց համար ալ կը շնորհուէր : Աս առարկութիւնն ալ ամենեւին հերքման կարօտութիւն չունի . որովհետեւ եկեղեցւոյ ամէն ատենուան ընդհանուր կարծիքն ու սովորութիւնը ասոր հակառակ է , եւ վերը գրուած Իննովկենտիոս Գ.ին օրինակը բաւական է ցուցընելու համար որ ա-

անգամ կը պատահի, եւ Ներողութիւնց յարգն ու զօրութիւնը ան աստիճանի մեծցուցին, որ ժողովրդեան ուղիղ տրամն կարծելու թէ սակը տուածնուն պէս՝ իրենց փրկութեան ու քաւարանի հոգիներուն ազատութեան վրայ կրնան ապահով ըլլալ„ ²: Գրեթէ նոյն կերպով կը խօսի Մենցլ բողոքող մատենագիրն ալ. "Թէպէտ եւ, կ'ըսէ, ըստ եկեղեցական կանոնաց Ներողութիւնը՝ միայն անոր պէտք էր տրուէր՝ որն որ կը զղջար, եւ դառնալ կամ ապաշխարել կը խոստանար ու խօսքը կը բռնէր, ... ի վերայ այսր ամենայնի Ներողութեան սպասաւորները (Ներողութիւն քարոզողները) հեշտ կողմը եւ չէ թէ դժուարինը յառաջ կը բերէին. եւ գրեթէ բնաւ չէին տաներ ժողովրդեան ... սխալ կարծիքն ուղղելու„ ³: Ուրիշ բողոքող մատենագիր մ'ալ, Բլանք, Դեցլին ու իր ընկերներուն վրայ գրեթէ միայն նոյն պակսութիւնը կը դնէ: Դեցլ, կ'ըսէ, "Դիտմամբ կը մոռնար անթէութիւնն ըսելու, որն որ յառաջագոյն մեղաց վաճառքը (այսինքն՝ Ներողութիւնը) գործածելու ատեն՝ կը դրուէր ....: Քա-

սանկ ողջանդակ կարծիք երբեք եկեղեցւոյ մէջ մտած չէ: Բայց արդէն բողոքողներուն մէջէն քիչ մը խելացիները կամ անկողմնակալները աս բանս չեն ընդունիր. ինչպէս Բրիտանական տեսութիւնը (Հատ. Գ. Ամ 1829, Եղ 101.) ասոր վրայ խօսելով՝ կը զրուցէ որ "Ասանկ Ներողութիւններ չէ թէ միայն չեն տրուիր, հապա իրրեւ Հռոմէական եկեղեցւոյ հիմնական սկզբունքներուն հակառակ՝ արգելուած ու մերժուած են„: — Միայն մէկ տարակուսութիւն մը կը մնայ լուծելու, այսինքն ան որ կը զրուցեն թէ Ներողութիւնը մարդիկները թուլութեան ու բարուց ապականութեան կը տանի, ուստի եւ ամենեւին օգուտ մը չունենալէն զատ՝ վնասակար ալ է: Աս տարակուսութիւնը լուծելու համար բաւական էր հերետիկոսներուն առջեւը՝ Ներողութիւնը եկեղեցւոյ հոգւոյն ընդունիլ ջանացողները դնել, որով իրենք իրենցմէ խօսքերնուն սուտութիւնը կը տեսնէին: Բայց թէ որ իրենց համար աւելի անկասկածելի վկայութիւն մը կ'ուզեն նէ, թող եկեղեցւոյ սատանիկ թշնամի եղող Տ'Ալանպերին ու Վոլդերին խօսքերը կարդան: Առաջինը 1776ին Փարիզ շնորհուած Յոբելեան Ներողութեան համար ըսաւ որ իրենց խորհած ապստամբութիւնը քսան տարի ուշացուց. իսկ

Վոլդէր կը դրէ որ եթէ մէյ մ'ալ Յոբելեան մը շնորհուելու ըլլայ նէ՝ ապստամբութիւնն օդը կ'ելլէ: Աս վկայութիւններէն յայտնի է ուրեմն որ Ներողութիւնները ժողովուրդը թուլութեան մէջ ձգելու տեղ՝ եռանդնին ու աստուածպաշտութիւննին աւելի եւս կը սաստկացընէ ու ապաշխարութեան եւ դարձի պատճառ կ'ըլլայ:

2. Գիրք Ա. 10: Մեմպուրին խօսքին բնագիրն աս է. "Quelques-uns de ces prédicateurs ne manquèrent pas aussi de leur côté, *comme il arrive assez souvent,* d'outrer le sujet qu'ils traitaient, et d'exagérer tellement le prix et la valeur des indulgences, *qu'ils donnèrent occasion au peuple de croire* qu'on était assuré de son salut et de délivrer les âmes du purgatoire, aussitôt qu'on aurait donné l'argent ....„. Աս խօսքերը Լուտերի Ջատագովներէն մէկը այսպէս կը թարգմանէ. "Ոմանք ալ քարոզիչներէն պակաս չէին ճգներ իրենց առջի ատենուան սովորութեանը պէս իրենց նիւթը չըջելու, ու Ներողութեանց զօրութիւնը այնպէս մեծցընելու, որ ժողովրդին կը հաւատացընէին թէ ....„: Պատմ. ԺԱ. դարու Եկեղեցականութեան. Զմիւռն. Հատ. Ա. 92:

3. Հատ. Ա. Գլ. Ա. 11:

Երբ որ Լութեր աս բաները տեսաւ, սկսաւ թէ գրով եւ թէ խօսքով, հրապարակաւ եկեղեցւոյ մէջ ու առանձին՝ ներողութեանց դէմ դնել։ — Իրեն աս բանիս մէջ մտնելուն պատճառը՝ բողոքող մատենագիրներուն մէջ փնտռելու ըլլանք նէ, կը գտնենք որ իբրեւ միակ պատճառ՝ իր ճշմարտասիրութիւնն ու սաստիկ եռանդը կը դնեն. իսկ եթէ ուղղափառ հեղինակներուն նայելու ըլլանք, հասարակօրէն իր մեծ փառասիրութիւնն ու Դոմինիկեանց դէմ ունեցած նախանձը կը դնեն [6]։ Մենք չենք ուզեր իր պատճառն ու վախճանը քննել եւ վրան դատաստան ընել. թող ամէն մարդ Լութերին՝ իր վախճանին հասնելու համար բանեցուցած միջոցներուն նայելով՝ դատաստան ընէ թէ արդեօք ուղղափառ հեղինակները չէ նէ բողոքողները իրաւունք ունին։ — Լութեր ներողութեանց դէմ ելլելը միտքը դրածին պէս՝ Մոգունտիայի արքեպիսկոպոսին նամակ մը գրեց, որուն մէջ այսպէս կը խօսի. "... Քու մեծապայծառ անուամբդ Ս. Պետրոսի (եկեղեցւոյն) շինութեան համար չորս կողմը պապական ներողութիւններ կը պտըտին։ Ես այնչափ չեմ ամբաստաներ քարոզիչներուն աղաղակը, որն որ լսած չեմ, որչափ կը ցաւիմ ժողովրդեան ու ռամիկներուն ներողութեանց վրայ ունեցած սխալ կարծեաց վրայ, այս ինքն անկարծիքին վրայ՝ որ թշուառականներն ունին թէ ներողութեան թղթերը գնելնուն պէս՝ փրկութիւններնուն վրայ ապահով կրնան ըլլալ։ Դարձեալ թէ քաւարանի հոգիներուն համար ստակը արկեղ մէջ ձգելնուն պէս՝ անոնք անմիջապէս կը թռչին քաւարանէն դուրս կ'ելլեն։ Վերջապէս՝ թէ աս շնորհքը այնչափ մեծ է, որ չիկրնար ամենեւին մեղք մը գտնուիլ... որն որ չկրնայ արձակել։ Նոյնպէս թէ մարդը աս ներողութիւններով ամէն պատժէն ու յանցանքէն ազատ կ'ըլլայ։

"Ամենակալ Աստուած. քեզի յանձնուած հոգիները, մեծապատիւ Հայր, ասանկ մահացու վարդապետութիւններով կը

ու գիտութեան վրայ ըրած զրպարտութիւնները յիշատակել, եւ անոնք մերժելու ջանալ. արդէն գործքիս ընթացքին մէջ շատ անգամ առիթ կ'ունենանք ասանկ բաներու վրայ խօսելու եւ Լութերին ու իրեններուն ճշմարտասիրութեան վրայ զարմանալու։

6. Թէպէտ ըսինք որ բողոքող մատենագիրները՝ Լութերին ներողութեանց դէմ ելլելուն պատճառը՝ իրեն ճշմարտասիրութիւնը կը դնեն. բայց նոյն իսկ իրենց մէջէն իմաստուն ու անկողմնակալ մարդիկ կը գտնուին, որոնք ասոր հակառակը կը զրուցեն։ Բաւական ըլլայ մեզի Գոթայէն՝ երեւելի անգղիացի մատենագրին վկայութիւնը։ 'Նոյն ժամանակները, կ'ըսէ, քահանայապետը հրամայած էր որ ամպիոններուն վրայէն ներողութիւններ մը քարոզուի։ Աս պաշտօնը Դոմինիկեանց յանձնուած ըլլալուն եւ ոչ թէ Օգոստինեանց կրօնին՝ ուսկից էր Լութեր, եւ որուն որ յառաջագոյն միշտ յանձնուած էր, հետեւաբար աս նախապատուութեան վրայ նեղացաւ, ու միտքը դրաւ որ քահանայապետին դէմ ելլելով՝ ոխ առնէ"։ Թուղթ Գ։

հրահանգին. եւ աս բաներուս վրայ քու տալու համարդ եր-թալով կը սաստկանայ ու կը մեծնայ: Անոր համար ասոնց վրայ ալ չկրցայ լռել: Մարդս եպիսկոպոսին ամենեւին մէկ պաշտօ-նովը չիկրնար իր փրկութեանը վրայ ապահով ըլլալ, մանաւանդ թէ ես ալ խիղճս Աստուծոյ ողորմութեան շնորհօքը կրնայ ապահով ըլլալ. հապա Առաքեալը մեզի կը հրամայէ որ միշտ ահիւ եւ դողութեամբ մեր փրկութիւնը գործենք: Եւ արդարը, կ'ըսէ Պետրոս, հազիւ կը փրկուի: Վերջապէս կենաց տանող ճամբան այնչափ նեղ է, որ Աստուած Ամովս ու Զաքարիա մարգարէներուն բերնովը՝ փրկութեան հասնողները՝ կրակէն ելած կամ յափշտակուած խանձող կ'անուանէ. եւ ամէն տեղ Աստուած՝ փրկութեան դժուարութիւնը կը յայտնէ:

"Սուրբին ներողութիւն քարոզողները ինչո՞ւ սուտ թողու-թեան առասպելներով եւ խոստմունքներով ժողովուրդը ապա-հով ու առանց երկիւղի կ'ընեն: Որովհետեւ ներողութիւնները՝ փրկութեան կամ սրբութեան համար հոգիներուն ուրիշ բա-րիք մը չեն ըներ, բայց եթէ ան արտաքին պատիժը կը վերցը-նեն, որն որ յառաջագոյն կանոնական կերպով դնելու սովորու-թիւն կար:

"Վերջապէս բարեպաշտութեան ու սիրոյ գործքերը՝ նե-րողութիւններէն անսահման լաւագոյն են[7]: Ի վերայ այսր ա-

7. Լուտեր իսկզբան ներողու-թիւններուն դէմ ելլելուն գլխաւոր պատճառներէն մէկն ալ ան կը դնէր, որ նոյն ներողութիւնները՝ բոլոր բարեգործութիւններուն, ու մեղաց համար պատիժ քաշելուն արգելք կ'ըլլան: Ահաւասիկ իր նոյն ժամա-նակուան գրուածներէն քանի մը հատուած, որոնք որ ըսածնիս կը հաստատեն: Ներողութեան ու շնոր-հաց վրայ տուած քարոզին մէջ այս-պէս կ'ըսէ. "Հազար անգամ աւելի աղէկ է որ ամենեւին քրիստոնեայ մը ներողութիւն առնելու եռեւէ չըլնայ, հապա գործքը կատարէ ու պատիժը կրէ. ինչու որ ներողու-թիւնն ուրիշ բան չէ ու չիկրնար ըլլալ, բայց եթէ բարեգործութիւն-ները ու օգտակար պտուղները կ'ելլէ թո-ղուլ, որոնք որ աւելի պէտք էր ըն-դունիլ առնել քան թէ թող տալ,,: Գործք Լութ. Եէն. Հատ. Ա. 58. Բ: — Ինք՝ ապաշխարութիւն բա-ռին վրայ գրած գրուածքի մը մէջ, ներողութիւն քարոզողներուն վրայ կը տրտնջէ որ իրենց խօսքերուն մէջ "ճշմարիտ ապաշխարութեան վար-դապետութեան վրայ ամենեւին եւ ոչ բառ մը կը լսուի. հապա կը յան-դըգնին բարձրացընելու եւ գովելու չէ թէ ապաշխարութիւնն ու անոր ամենէն անարգ մասը՝ որն որ հա-տուցում կ'անուանուի, այլ ան ամե-նէն անարգ մասին թողութիւնը կամ մէկդի թող տրուիլը,,: Աս բանէն վերջը վրան կ'աւելցընէ թէ ես ասոնց դէմ ելայ ու վարդապետութիւննին տարակուսի տակ ձգեցի "ամէն վար-դապետներուն ու բոլոր եկեղեցւոյ վճռոյն վրայ ապաւինելով, որոնք որ կը վարդապետեն թէ հաւատացեալ ըլլալը՝ հաւատացեալը թող տալէն, այս ինքն՝ ներողութիւն առնելէն աւելի աղէկ է, եւ չկայ մէկը՝ որ ուրիշ կերպ վարդապետէ,,: Գործք Լութ. Լութ. Հատ. Ա. 100: — Ուրիշ տեղ մըն ալ այսպէս կը գրէ. "Որովհե-տեւ ուսուցիչներս բացուելէն վերջը տեսայ որ ամէն վարդապետները միա-բան կը վարդապետեն թէ ներողու-թիւնը մէկդի թող տալը՝ ներողու-թիւն առնելէն աւելի աղէկ է, եւ թէ իրենք իրենցմէ հատուցում ընողները՝ ներողութիւն առնողնե-

մինայնի աս բաները այնչափ հուչակով ու փութով չեն քարո-զեր, մանաւանդ թէ թողութիւն (ներողութիւն) քարոզելու համար ասոնք կը լռեն, ուր որ ամէն եպիսկոպոսներուն առա-ջին ու միակ պաշտօնն ան է որ ժողովրդեան՝ Աւետարանը եւ Քրիստոսի սէրը սորվեցընեն: Քրիստոս ամենեւին տեղ մը պա-տուիրած չունի որ ներողութիւն քարոզուի: Ուրեմն եպիսկո-պոսի մը որչափ ահագին ու վտանգաւոր բան է 8 որ աւետարա-րէն աւելի երջանիկ են, եւ միան-գամայն թէ ներողութիւնն ուրիշ բան չէ բայց եթէ ան եկեղեցակա-նութեանները թողուլ՝ որոնցմով հրապարակա-մը կը պատժուէր. անոր համար շու-տով մը մեռնող դրի որ անկից կրնայ հետեւիլ թէ մարդս ներողութիւնը կրնայ արհամարհել, եւ թէ աւելի աղէկ է մեծ բանի տեղ չդնել, մա-նաւանդ թէ բոլորովին մէկդի թող-տալ„: Քահանայապետին՝ առ Կայե-տանոս գրածին վրայ Լութերին ըրած Ծենութեան դէմ. Գործք Լութ. Գերմ. Հատ. Ա. 105. Բ:

8. Աս խօսքերուն սկզբնագիրն աս է. "Non enim *fit* homo per ullum munus episcopi *securus de salute*, cum nec per gratiam Dei infusam fiat securus, sed semper in timore et tremore jubet nos operari salutem nostram Apostolus. Et justus, inquit Petrus, vix salvabitur. Denique tam arcta est via, quæ ducit ad vitam, ut Dominus per prophetas Amos et Zachariam, salvandos appellet torres raptos de incendio, et ubique Dominus difficultatem salutis denunciat.

Cur ergo per illas falsas veniarum fabulas et promissiones prædicatores earum faciunt populum securum et sine timore? Cum Indulgentiæ prorsus nihil boni conferant animabus ad salutem aut sanctitatem, sed tantummodo pœnam externam, olim canonice imponere solitam, auferant.

Denique opera pietatis et charitatis sunt in infinitum meliora indulgentiis. Et tamen hæc non tanta pompa nec tanto studio prædicant. Imo propter venias prædicandas, illa tacent, cum tamen omnium Episcoporum hoc sit officium primum et solum, ut populus evangelium discat et charitatem Christi. Nusquam enim præcepit Christus Indulgentias prædicari. Quantus ergo horror est, quantum periculum Episcopi....„!

Աս է, ինչպէս ըսինք, Լուտերին խօսքերուն սկզբնագիրը, որն որ իր Վիդդենպերկ տպուած գործքերէն ա-ռած ենք, եւ որուն հետ՝ քանի մը անտարբեր տեղերէն զատ՝ բոլորովին համաձայն է նաեւ գերմաներէն թարգմանութիւնը, եւ համեմատու-ղը՝ վերը դրած թարգմանութիւն-ներնուս հաւատարմութիւնը կը տես-նէ: Բայց որովհետեւ աս գրուած-քին մէջ շատ խօսքեր կան, որոնք որ ուղղափառ վարդապետութեան համաձայն ու Լուտերին ետքը վար-դապետած մոլորութիւններուն ուղ-ղակի հակառակ են, ինչպէս որ ետ-քը պիտի տեսնենք, անոր համար բողոքող հեղինակներէն ոմանք աս խօսքերը յառաջ բերել եւ բառ առ բառ թարգմանել ձեւացընելու ա-տեննին՝ կէս մը մէջէն թող կու տան, կէս մ'ալ կը փոխեն: Ինչպէս Մեռլ Տ'Օպինեէին մէջ վերի խօսքը այս-պէս թարգմանուած է. "Մարդս իր եպիսկոպոսին գործովը կամ պաշ-տօնովը չփրկուիր: Արդարը անգամ հազիւ կը փրկուի, ու կենաց տա-նող ճամբան նեղ է: Ուրեմն ինչո՞ւ համար ներողութեանց քարոզիչները սնոտի առասպելներով մարմնաւոր ապահովութեան մէջ ժողովուրդը կը քնացընեն: — Թէ որ ասոնց ա-կանջ դնեմք, միայն ներողութիւնը քարոզելու ու հռչակելու է: Ի՛նչ, եպիսկոպոսին գլխաւոր եւ մի միայն պարտաւորութիւնը Աւետարանը ու Յիսուսի Քրիստոսի սէրը ժողովուր-դին սորվեցընել չէ՞: Քրիստոս ինքը տեղ մը չըսաւ մեզի ներողութիւն-ները քարոզել, բայց պատուիրեց մեզի որ Աւետարանը քարոզեմք: Ուրեմն ինչպէս ....„: Հատ. Ա. 134:

նը լսել տայ, եւ թողու որ իր ժողովրդեան մէջ ներողութիւններէն ուրիշ բան մը չտարածուի, եւ ասոնց՝ աւետարանէն աւելի հոգ ունենայ....:

"Աստ վրայ ան ալ աւելցընելու է, մեծարգոյ Հայր ի Տէր, որ ներողութիւն քարոզողներուն քու մեծարգոյ Հայրութեանդ անուամբը հանած Հրահանգին մէջ կ'ըսուի, (անշուշտ առանց մեծարգոյ Հայրութեանդ գիտութեանն ու հաւանութեանը,) որ գլխաւոր շնորհքներուն մէկը՝ ան Աստուծոյ անզուգական պարգեւն է, որով մարդս Աստուծոյ հետ կը հաշտուի ու քաւարանին ամէն պատիժները կը ջնջուին,, [9]:

Ասոնք գրելէն ետեւ՝ Լուտեր արքեպիսկոպոսին կ'աղաչէ որ նոյն գրուածքը վերցընել տայ եւ ներողութիւն քարոզողներուն հրամայէ որ ուրիշ կերպ քարոզեն: Ապա թէ ոչ, կ'ըսէ, կրնայ ըլլալ որ մէկը ելլէ ու գրքեր դուրս հանելով անոնք հերքէ, որով քեզի նախատինք ըլլայ [10]:

Լուտեր ներողութեանց վրայ 95 նախադասութիւն ալ գրեց, որոնց մէջ՝ աս նիւթին վրայ ունեցած կարծիքը համառօտ կերպով մը կը յայտնէր [11]: Աս նախադասութիւններն ալ նամակին հետ մէկտեղ արքեպիսկոպոսին խաւրեց: Բայց անոր որոշմանն ու պատասխանին չսպասելով, նամակը գրած օրը (Հոկտեմբերի 31ին) նոյն նախադասութիւնները՝ Վիդդենպերկի Ամենայն սրբոց եկեղեցւոյն դրան վրայ փակցուց, ծանուցանելով որ ճշմարտութիւնը երեւան հանելու համար Վիդդեն-

Աս թարգմանութեան մէջ գրեթէ բոլոր դուրս թող տրուած խօսքերն ու փոխուած բառերը՝ Բորե-Ֆործոռնեան Ֆոլիոյ ու Ֆրկնոռնեան անփոյթ ըլլալուն վրայ, այս ինքն Լուտերին մոլորութիւններուն հակառակ եղող տեղերն են. ուստի եւ միտադրութեամբ ու նենգութեամբ դուրս թող տրուած կամ փոխուած են: Ասոր մէկ նշանն ալ ան է որ հերքնակը ուրիշ անտարբեր խօսքեր թող տուած ատենը՝ ըստ սովորութեան երկու երեք կէտ դնելով կ'իմացընէ, իսկ ասանկ տեղերը ամենեւին նշան չիտար: Բայց ասոնք զարմանալու բաներ չեն. ամէնն ալ իրենց վարդապետէն սորված են, որն որ նոյն իսկ աստուածաշունչին՝ յայտնապէս իր մոլորութեանց դէմ ըլլող խօսքերը թարգմանելու ժամանակ՝ կամ բոլորովին դուրս կը ձգէ կամ կը փոխէ, եւ դարձեալ աստուածաշունչին խօսքերը իր մոլորութիւններուն յարմարցընելու համար մէջը բառեր կը խոթէ. ինչպէս իր տեղը կը տեսնենք: Աս Մեսլ տ'Օպինէէին թարգմանութեանց անհաւատարմութիւնը ցուցընելու համար մինչեւ հիմա բերած երեք օրինակնիս (տես երես 5 եւ 19) բաւական կը սեպենք, եւ թող կուտանք որ ուրիշ տեղ ալ մեր եւ իր թարգմանութեան մէջ տարբերութիւն գտնուելու ըլլայ նէ՝ ընթերցողները իրենք իրենցմէ դատաստան ընեն:

9. Վերը (5 Ծանօթ. Դ.Լ) տեսանք թէ ինչպէս Դեցել իր Հրահանգին մէջ ներողութիւնը առնելու համար հարկաւոր թէութիւն կը դնէր ներքին զղջումն ու ցաւը:

10. Գործք Լուտ. լատ. Հատ. Ա. 92. Բ. եւ 93. գերմ. Հատ. Ա. 1. եւ 2:

11. Աս նախադասութիւններուն սկզբնագիրը տես ի Գործս Լուտ. լատ. Հատ. Ա. 51—53. իսկ գերմաներէն թարգմանութիւնը՝ ի Գործս Լուտ. գերմ. Հատ. Ա. 2. Բ.—6. Բ:

պերկի մէջ աս Նախադասութիւններուն վրայ վիճաբանութիւն պիտ'որ ըլլայ. միանգամայն կ'ըսէր թէ ով որ կ'ուզէ նէ՝ կրնայ գալ ատոնց վրայ հետս վիճաբանիլ, եւ թէ որ մէկը չիկրնար գալ ու խօսքով վիճիլ նէ՝ թող հետս գրով վիճի [12] ։ — Այսպէս ուսումնական վիճման հրաւիրելը, կ'ըսէ Ռիֆէլ [13], անսովոր բան մը չէր. բայց բանը արքեպիսկոպոսին իմացընելէն ու անոր դատաստանին տակը ձգելէն վերջը՝ առանց պատասխանին սպասելու ըլլալուն համար՝ ամբարտաւանական գործքի մը պէս եւ իբրեւ յանձնապաստանութեամբ եղած բան մը կ'երեւայ [14] ։

Աս կերպով եղաւ աս Ներողութեանց վիճման սկիզբը ։ — Լուտեր ինկզքան Ներողութեան զօրութիւնը կամ Ներողութեան գոյութիւնը չէր ուրանար, մանաւանդ թէ իր Նախադասութիւններուն մէջ յայտնապէս դրած էր թէ "Ով որ քահանայապետական կամ առաքելական Ներողութեանց ճշմարտութեան դէմ կը խօսի, անիծեալ ու Նզովեալ ըլլայ" [15] ։ Միայն քարոզիչներուն ու ռամկին պակսութեամբն եղած անկարգութիւններուն դէմ կը խօսէր. դարձեալ բոլոր ըսածները երկբայելով կ'ըսէր, կամ գոնէ երկբայելով ըսել կը ձեւացընէր. որովհետեւ, իր ըսածին Նայելով՝ Ներողութեանց ինչ ըլլալը չէր հասկընար ու չէր գիտեր [16] ։ Բայց ետքը կամաց կա-

12. Նախադասութեանց սկիզբը ։ Կուստաւ Փֆիցեր, Գլ. Ե. 63 ։

13. Մասն Ա. Գլ. Բ. 32 ։

14. Բողոքող մատենագիրներ կը գտնուին, որոնք Լուտերին Մագունտիայի արքեպիսկոպոսին գրած Նամակին վրայ կը զրուցեն թէ Նախադասութիւնները դուրս հանելուն ընելու յանդգնութիւնը կերպով մը ծածկելու համար աս թուղթը գրեց ։ Բլանք (Գեշ. Ա. Հատ. Ա. 75, 76.) Լուտերին՝ իր Նախադասութիւններուն մեկնութեան սկիզբը դրած յայտարարութիւնը բերելէն վերջը (որուն մէջ Լուտեր կը գրէ թէ "Ուրիշ բան չեմ ուզեր ըսել կամ կարծել, բայց եթէ ան՝ որն որ Նախ Ս. Գրոց ու երկրորդ եկեղեցւոյ տուքը Հարց. մէջ հաստատուած, Հռոմայ Պապէն ընդունուած ու մինչեւ հիմա պահուած է, եւ որն որ քահանայապետական իրաւանց եւ վճռոց մէջ կը գտնուի եւ կամ ժամանակաւ պիտի գտնուի" ։ Գործք Լուտ. լատ. Հատ. Ա. 101. Բ. Գերմ. Հատ. Ա. 48. Բ.) կը զրուցէ որ "Աս յայտարարութիւնը ան ժամանակները հասարակօրէն աստուածաբանական վիճաբանութիւններէն յառաջ կ'ըլլուէր, եւ ձեւի պէս բան մըն էր, որն որ երեւելի Նշանակութիւն մը չունէր. բայց՝ միայն ձեւի պէս ալ առնելով՝ կրնար եղած գործքը մեղմացընել" ։ Անկից ալ Լուտերին՝ աս արքեպիսկոպոսը գրած Նամակին անցնելով՝ այսպէս կը գրէ. "Հաւանական է որ ըստ Լուտերի կարծեաց՝ Նոյն մեղմացուցիչ զօրութիւնը պիտ'որ ունենար Նաեւ ան խոնարհական թուղթը, որն որ Նախադասութիւնները կըղցընել տուած օրը Մագունտիայի արքեպիսկոպոսին գրեց" ։

15. Contra Veniarum apostolicarum veritatem qui loquitur, sit ille anathema et maledictus. Նախադասութիւն 71. Գործք Լուտ. լատ. Հատ. Ա. 52. Բ ։ Լուտերին լատիներէն սկզբնագրին մէջ առաքելական ըսածին միտքը՝ իր բուն աշակերտը Յուստոս Թարգմանելով „des päpstlichen Ablaßes" պապական, քահանայապետական Ներողութեան՝ կը դնէ ։ Գործք Լուտ. գերմ. Հատ. Ա. 5. Բ ։

16. "Չէի գիտեր ու չէի հասկը-

մաց յառաջ երթալով՝ սկսաւ Ներողութեան զօրութիւնն ու գոյութիւնը մերժել. եւ իր ամէն ըսածները՝ իբրեւ յայտնի ճշմարտութիւն եւ իբրեւ Աւետարանէն ու Ս. Գրքէն առնուած հաւատոյ մասունք պաշտպանել։ Անոր համար ալ միշտ թէ ինք եւ թէ իր աշակերտները իր վարդապետութեանցը ուրիշ անուն չէին տար, բայց եթէ Բան կամ Խօսք Աստուծոյ եւ Աւետարան, եւ աս մոլորութիւններուն դէմ դնողները՝ միշտ Աստուծոյ խօսքին եւ Աւետարանին թշնամիները կ'անուանէին։

Այս երբ յիշած Նախադասութիւններնիս եկեղեցւոյ դրան վրայ փակցընելը բաւական չսեպելով՝ Լուտեր տպել ալ տուաւ ու չորս կողմը տարածեց։ — Դեցլ՝ որ նոյն ատենը Ֆրանգֆուրդ (Օտերի քով) կը գտնուէր, աս Նախադասութիւնները ձեռքը հասածին պէս, կամ ինքը եւ կամ, ինչպէս ոմանք կ'ըսեն, իր անուամբը՝ նոյն Ֆրանգֆուրդի համալսարանին վարդապետներէն Վիմբինա անունով մէկը, անոնց դէմ 106 Նախադասութիւն հրատարակեց։ Եւ որովհետեւ Դեցլ՝ հերետիկոսական գրուածներու քննիչ էր, անոր համար Լուտերին Նախադասութիւնները հրապարակաւ այրեց։ Ասոր փոխարէն մ'ընելու համար՝ իրեն Նախադասութիւններն ալ Վիդդենպերկ հասածին պէս, համալսարանին աշակերտները՝ որոնք իրենց վարդապետին օրինակովը մեծ յանդգնութիւն ստացած էին, գրքածախի մը քովէն 800 օրինակի չափ յափշտակելով հրապարակի մը մէջ այրեցին [17]։

Բայց Լուտերին Նախադասութիւնները ամէն կողմ տարածուելով Դեցլէն ուրիշ ալ իրեն դէմ գրողներ ելան։ Նախ՝ Սեղբեստրոս Փրիերաս, Դոմինիկեան կրօնաւորն ու սրբազան

նար, կը գրէ ինքը, թէ Ներողութիւնն ինչ է, ինչպէս նաեւ բոլոր պապականներն ալ ճշմարտել չէին գիտեր, որոնք՝ միայն սովորութեամբ կը յարգէին ու մեծ բանի տեղ կը դնէին։ Ուստի եւ վիճելու ատենս՝ վախճանս ան չէր որ մերժեմ, հապա՝ որովհետեւ զօրութիւնը չէի գիտեր, կը բաղձայի որ ուրիշներէն սորվիմ,,։ Նախադասութեանց յառաջաբանին մէջ. Գործք Լուտ. Վիթեմ. Հատ. Ա. Ալդենպուրկ. տպ. Հատ. Ա. 49. Բ։

17. Աս բանս գրեթէ ամէն պատմագաններովը կը պատմէ Լուտեր՝ իր բարեկամը Յովհ. Լանկէին գրած թղթին մէջ։ Տես առ Կոսսոլ. Փէյերէ, Գլ. Ե. 70, 71։ Տես Նաեւ Մէնզըլ, Հատ. Ա. Գլ. Ա. 34. Ծանօթ։ — Իսկ Բլանք (Գիրք Ա. Հատ. Ա. 109.) այսպէս կը գրէ. "Վիդդենպերկի ուսանողները՝ որոնք որ գրեթէ բոլոր արտաքոյ կարգի Լուտերին յարած էին, երիտասարդական թեթեւամտութեամբ մը Դեցլին Նախադասութիւնները հրապարակաւ ու շատ Նախատալից կատակերգութեամբ այրեցին,,։ — Եթէ որ Լուտերին հաւատալու ըլլանք, ինք համալսարանին աշակերտներուն աս գործքին մէջ ամենեւին մաս չունէր։ Ինչու որ Եռազմոսին ատոր վրայ այսպէս կը գրէ. "Կը կարծեմ որ ես միայն ան աստիճան կորսընցուցած ըլլամ, որ իբրեւ կրօնաւոր եւ աստուածաբան, անանկ տեղ մը՝ որ իմս չէ, անանկ պաշտօնի մէջ ըլլող մարդու մը այնպիսի յայտնի Նախատինք հասցընեմ,,։ Առ Եռազմ., Հատ. Ա. Հրթ Դ. Համ. Դ։

պալատին վերակացուն 18, տրամախօսութեան ձեւով շինուած գրուածքով մը աս Նախադասութիւններուն դէմ գրեց։ Եաքը Գոլոնեայի մէջ Հոխշդրատէն անունով ուրիշ Դոմինիկեան մըն ալ անոր դէմ գիրք մը դուրս հանեց։ Ասոնք թէպէտ ճշմարտութիւնը կը պաշտպանէին. բայց որովհետեւ գրուածներնուն մէջ թէ քիչ մը չափը կ'անցընէին եւ թէ աս բանս աղէկ առիթ սեպելով՝ նոյն ժամանակուան բանասէրներուն ալ կը դպչէին, անոր համար պաշտպանած ճշմարտութիւններովնին՝ ընթերցողաց մտքին վրայ ըրած ազդեցութիւննին՝ մէկալ կողմանէ շատ նուազեցուցին։ Ասոնցմէ զատ՝ ճշմարտութեան չորրորդ պաշտպան մ'ալ ելաւ, որն որ Լուտերին սիրտը շատ նեղացուց, ու իր բարձրամտութիւնն ու յանդգնութիւնը քիչ մը վար իջեցուց։ Ասիկա Ինկոլշդատի համալսարանին վարդապետներուն երեւելիներէն մէկը՝ Յովհ. Էքն էր, որուն ինչ մարդ ըլլալը Լուտեր ալ կը խոստովանի, զինքը "Երեւելի ու ճշմարտապէս հանճարաւոր հմտութիւն եւ հմուտ հանճար ունեցող մարդ" կանչելով 19։ Արդ աս երեւելի մարդը տեսնելով որ Լուտեր օրէ օր աւելի յանդգնութիւն կը ստանայ, ու անկարգութիւններու դէմ խօսելու տեղն՝ ճշմարտութիւններու դէմ ալ մա-

**18**. Magister sacri palatii; maître du sacré palais. Ասիկա միշտ Դոմինիկեան կրօնաւոր մը կ'ըլլայ, որն որ քահանայապետին պալատը կը բնակի, ու մէջի անձինքներուն հոգեւոր առաջնորդութիւն ընելէն զատ՝ գրքերը քննելու եւ տպելու հրաման տալու իշխանութիւն ունի։

**19**. Insignis vereque ingeniosæ eruditionis et eruditi ingenii homo, կը գրէ Լուտեր Սիլ. Եկրանոսին, 1518ին Մայիսի 24ին։ Տես առ Տը Վէդդէ, Հատ. Ա. 59։ "Անձնքս ալ աս մարդուն հանճարը կը սիրենք ու իր գիտութեանը վրայ կը զարմանանք" կը գրէ Լուտեր նոյն տարին Յունիսի 15ին, Քրիստափ. Շէօրլին։ Տես Թոռողնէ Լոսք. Հատ. Ա. 26։ — Էքին իմաստուն ու հմուտ մարդ ըլլալը՝ գրեթէ բոլոր բողոքող մատենագիրներն ալ կը վկայեն։ Մեռլ տ'Օպինեէ վրան այսպէս կը գրէ. "Ասիկայ բարեկամ էր Լուտերի, որ մեծապէս կը յարգէր անոր տաղանդները ու տեղեկութիւնը։ Հանճարաւոր միտք մը ունէր, ընթերցման մէջ քաջակիրթ էր, ու չնաշխարհիկ յիշողութեան ձիրքով զարդարուած էր։ Իր գիտութեանը հետ ունէր եւ պերճախօսութիւն. իր շարժուածքը ու ձայնը կը յայտնէին իր բնութեանը աշխուժութիւնը։ Տաղանդի կողմանէ հիւսիսային Գերմանիայի մէջ ինչ որ էր Լուտեր, հարաւայիններին մէջ նոյնն էր Էք։ Ասոնք անդարուն երկու երեւելի աստուածաբաններն էին, թէպէտ եւ իրենց ընթացքը մեծապէս տարբեր էր։ Ինկոլշտադ գրեթէ կը հաւասարէր Վիդդէմպէրկի։ Աս երկու վարժարաններուն գերահռչակ համբաւը ամէն կողմերէ բազմաթիւ աշակերտներ կը բերէր իւրաքանչիւրին համալսարանը՝ անոնց դասատուութիւնը լսելու փափաքով։ Իրենց անձնական որպիսութիւնները իրենց իմաստութեանը հաւասար՝ սիրելի կընէին զիրենք իրենց աշակերտներուն։ — Վասն որոյ Լուտեր հարաւային գաւառներուն մէջ իր նախադասութիւնները հրատարակելու համար Էք վարժապետը ընտրեց։ Բայց ուղղակի անոր չխրկեց զանոնք, այլ իրենց հասարակաց բարեկամին՝ Նիւռնպէրկի դատաւորին մեծարու Քրիստափոր Շէօրլին, խնդրելով որ Էքին խրկէ զանոնք՝ Ինկոլշտադ, որ հեռի չէր Նիւռնպէրկէ։ "Կըխըր-"կեմ ձեզի, կըսէ, իմ նախադասու-"թիւններս, ասոնկապէս նորափառ,

քաւելու եւ մոլորութիւններ վարդապետելու կը սկսի, ու չկըրցաւ լռել, ու Հաւատքի պաշտպանութիւնը՝ իր յառաջագոյն Լութերի հետ ունեցած բարեկամութենէն վեր բռնելով՝ միտքը դրաւ որ անոր դէմ ելլէ։ Ուստի եւ Լութերին նախադասութիւններուն վրայ Կոխոսչ անուամբ ծանօթութիւններ գրեց, որոնց մէջ անոր մոլորութիւնները մէկիկ մէկիկ խայտառակելով՝ մեղքերուն թողութեան ու ներողութեանց վրայ եկեղեցւոյ վարդապետութիւնը կը հաստատէ։

Լութեր՝ անհնարին խիստ ոճով ու սաստիկ կիրքով շինուած զանազան գրութիւններով աս ամէն իր հակառակորդներուն ետեւէ ետեւ պատասխան տուաւ։ Նոյնպէս ուրիշ շատ գրուածքներ ալ հրատարակեց, որոնց մէջ նորանոր մոլորութիւններ ու այլանդակ կարծիքներ կը վարդապետէ։ Նոյն մոլորութիւններէն ոմանք կը գտնուին նաեւ Հայտելպերկ քաղաքը Ապրիլի մէջ (1518) պաշտպանած նախադասութեանց մէջ[20], որոնցմէ մէկ քանին հոս կը դնենք։

Գ. "Մարդիկներուն գործքերը որչափ որ ալ գեղեցիկ ըլլան ու բարի երեւան, ի վերայ այսր ամենայնի հաւանական է որ մահուչափ մեղք են։

Է. "Արդարոց գործքերը մահուչափ մեղք կ՚ըլլային, թէ որ նոյն իսկ արդարները Աստուծոյ բարեպաշտական երկիւղովը չվախնային որ մահուչափ ըլլան։

Ը. "Աւելի եւս մահուչափ են նոյն գործքերը, երբ որ միանգամայն առանց վախի ու չարաչար ապահովութեամբ կը գործուին։

Թ. "Առանց Քրիստոսի գործուած գործքերը մեռեալ են բայց մահուչափ մեղք չեն ըսելը՝ Աստուծոյ երկիւղը չարաչար մոռնալ է։

ԺԲ. "Աստուծոյ առջեւը մեղք երբ ան ատեն ներելի են, երբ որ մարդը կը վախնայ որ մահուչափ ըլլան։

"կամ ինչպէս որ շատերուն կերեւայ "յաւէտ չարափառ։ Առաջէ զանոնք "մեր սիրելի Էքին՝ ան գիտնական եւ "կարողամիտ մարդուն, որ խմանամ "թէ ինչ կըխորհի անոնց վրայ„։ Լուտեր այսպէս կըխօսէր անաստանէնը Էք վարժապետին վրայ. այսպիսի էր ան բարեկամութիւնը որ մէկ ատեն կապեր էր զանոնք։ Աս պատուական բարեկամութեանս գաղափարը առաջ Լութերէն չեղաւ„։ Հատ. Ա. 86, 87։ Տես նաեւ Բլանք, Գիրք Ա. Հատ. Ա. 105։ Ռանքէի, Գիրք Բ. Գլ. Գ. Հատ. Ա. 399 — 401։ Մենցլ, Հատ. Ա. Գլ. Ա. 43։

20. Տարւոյն սկիզբը նոյն Հայտելպերկ քաղաքը Օգոստինեանք իրենց կրօնքին ընդհանուր ժողովք մ՚ըրին, որուն Լութեր ալ ներկայ էր։ Ժողովքին մէջ իրենց կրօնքին վերաբերած նիւթերուն վրայ խօսուելէն ետեւ՝ Լութեր աս իր նախադասութիւնները հրապարակաւ պաշտպանեց։ Տես Բլանք (Գիրք Ա. Հատ. Ա. 119 — 121.), ասոնք ընդարձակ՝ Սեքենտորֆ (Գիրք Ա. Հատ. ԻԳ. Եւ Յաւել. Ա. 28, 29.) եւ Մեռլ տ՚Օպինէ (Հատ. Ա. 185 — 194)։ Իսկ բուն նախադասութիւնները՝ Գործք Լութ. լատ. Հատ. Ա. 141. Բ։

ԺԳ. "Մեղքէն վերջը՝ անձնիշխանութիւնը սոսկ անուն մըն է, եւ մարդս ձեռքէն եկածն ընելու ատեն՝ մահուչափ մեղք կը գործէ։

ԺԴ. "Մարդը երբ որ կը կարծէ որ իր ձեռքէն եկածն ընելով՝ շնորհաց կը հասնի, մեղք մեղքի վրայ կը դիզէ, որ կրկին յանցաւոր ըլլայ,,։

Աս ու ասոր նման պղանդակ կարծիքները՝ որոնց համար ներկայ եղողներէն մէկն ըսաւ թէ "Գերմացիները ասոնք լսելու ըլլան նէ՝ զմեզ կը քարկոծեն 21,, եւ որոնք բոլոր քրիստոնէական կրօնից բարոյականին հիմունքը տակնուվրայ կ'ընեն, Լութեր, ինչպէս ըսինք, Հայտելպերկ իբրեւ ճշմարտութիւն հրապարակաւ պաշտպանեց։ Դարձեալ նոյն ատենները կամ քիչ մը վերջը ժողովրդեան առջեւը խօսած ճառերուն մէջ ուրիշ պղանդակ մոլորութիւն մ'ալ հանեց, այս ինքն՝ ապաշխարութեան խորհրդին եւ ուրիշ ամէն խորհուրդներուն զօրութիւնն ուրանալով՝ սկսաւ վարդապետել որ մեղաց թողութիւնը՝ միայն իւրաքանչիւր մարդու հաւատքին կամ վստահութեան վրայ կայացեալ է։ Աս նիւթին վրայ խօսած ու գրած անհամար խօսքերուն մէջէն միմիայն քանի մը հատ օրինակի համար հոստեղ կը դնենք։

"Մեղաց թողութիւնը, կ'ըսէ Լութեր, ոչ պապին, ոչ եպիսկոպոսին, ոչ քահանային եւ ոչ երկրի վրայ ուրիշ մարդու մը պաշտօնին եւ իշխանութեան տակն է, հապա միայն Քրիստոսի խօսքին եւ անձնական հաւատքին վրայ կայացեալ է։.... Քահանայք, եպիսկոպոսք եւ պապերը՝ միայն ծառայք են, որոնք Քրիստոսի խօսքը առջեւդ կը դնեն։.... Եւ ասկից կը հետեւի որ ապաշխարութեան խորհրդին եւ մեղաց թողութեան մէջ՝ պապ մը կամ եպիսկոպոս մը՝ ամենէն ստորին քահանայէն աւելի բան մը չ'ըներ. մանաւանդ թէ քահանայ չեղած տեղ՝ նոյն գործը իւրաքանչիւր քրիստոնեայ, կին եղեր է, տղայ եղեր է, նոյնպէս կրնայ կատարել (այս ինքն մեղաց թողութիւն կամ արձակում տալ.)։ Ինչու որ ամէն քրիստոնեայ քեզի կրնայ ըսել "Աստուած յանուն Քրիստոսի մեղքերդ կը ներէ,,. եւ թէ որ դուն աս խօսքին այնպէս հաստատութեամբ կը հաւատաս՝ իբրեւ թէ Աստուած քեզի կը զրուցէ կոր, ստուգիւ նոյն հաւատքով մեղքերէդ կ'արձակիս։ Այսպէս ամէն բան բոլորովին՝ Աստուծոյ խօսքին հաւատալուն վրայ կայացած է,, 22։ Դարձեալ կը զրուցէ. "Ամենեւին մէկը չիկրնար պակսիլ ոչ զղջման եւ խոստո-

21. Սեքէնտորֆ, Գիրք Ա. Համ. ԺԳ. Յաւել. Ա. 29։ Մեալ տ'Օպինեէ, Հատ. Ա. 189։

22. Քարոզ ապաշխարութեան վրայ. Գործք Լութ. գերմ. Հատ. Ա. 66. Թիւ 8, 9։

վանութեան եւ ո՛չ ալ հատուցման մէջ, թէ որ խորհրդոյն հաւատքն (այս ինքն՝ վստահութիւնն) ունենայ։ Եւ թէ որ (ասոնց մէջ) պակսելու ալ ըլլայ, ամենեւին վնաս չունի,, 23։ Ուրիշ տեղ մ'ալ այսպէս կը գրուցէ. "Հաստատունեամբ հաւատա՛ որ արձակուած ես, եւ ստուգիւ արձակուած կ'ըլլաս..., զղջմամբ ինչպէս որ կ'ուզէ նէ՝ ըլլայ 24...։ Անոր համար շատ աւելի պէտք է անոր միտ դնես որ ամենեւին աս հաւատքդ պակսութիւն չունենայ, քան թէ ուրիշ ամէն բաներուն։ Ուստի եւ անկարելի դրութեամբ՝ ինէ որ խոստովանողն ըլլողը զղջացած չըլլայ 25, եւ կամ քահանան չէ թէ իսկութեամբ հապա կատակի համար արձակէ 26, ինք հաստատուն ըլլայ որ արձակուած է, ճշմարտապէս արձակուած կ'ըլլայ,, 27։ Նոյնպէս հաղորդութեան խորհրդին համար միայն նոյն հաւատքը կը պահանջէ։ "Մեծ եւ վնասակար մոլորութիւն մըն է, կ'ըսէ, որ մարդս ան վստահութեամբ խորհրդին մերձենայ, իբր թէ խոստովանանք եղած է, եւ խղճին վրայ մահուչափ մեղք մը չունի, եւ թէ յառաջագոյն աղօթքներն ըրած եւ ուրիշ պատրաստութիւն տեսած է։ Ինչու որ աս կարծիքով խորհրդին մերձեցողները՝ իրենց անձին դատաստանը կ'ուտեն եւ կ'ըմպեն. որովհետեւ աս վերը յիշուած ամէն միջոցներով արժանի եւ մաքուր չեն ըլլար, մանաւանդ թէ նոյն մաքրութեան վստահութեամբ՝ շատ աւելի անմաքուր ու պիղծ կ'ըլլան ու հաւատքով կը մաքրուին։... Միայն աս հաւատքը՝... զմարդ ճշմարտապէս մաքուր եւ արժանաւոր կ'ընէ...։ Ինչու որ հաւատքն է որ կ'արդարացընէ, կը մաքրէ, արժանաւոր կ'ընէ,, 28։ — Աս պլանդակ մոլորութիւնը՝ որն որ, ինչպէս ըսինք, Լուտերին գրուածներուն մէջ անհամար տեղեր կը գտնուի, չէ թէ միայն խորհուրդներուն զօրութիւնը բոլորովին կ'ոչընչացընէ, հապա նաեւ ամէն տեսակ չարիքներուն եւ օրինազանցութիւններուն դուռ կը բանայ։ Եւ արդէն աս մոլորութեան մէջ ըստ ինքեան իմացուածը՝ թէ աս նորահնար հաւատքը ամէն բանի տեղ կը բռնէ, եւ նոյն հաւատքն ունեցողին ամենեւին բան մը վնաս չիկրնար տալ, ինք բացայայտ ալ կը վարդապետէ, վերը մէջէն վկայութիւն բերուած գրուածքներէն մէկը այսպէս վերջացընելով. "Բովանդակութիւն բովանդակութեան. Հաւատացողին ամէն բան օգտակար է, եւ ոչինչ բան մը իրեն վնաս չէ-

23. Նոյն տեղը, 68. Բ. Թիւ 19։
24. Crede fortiter, te absolutum, et absolutus vere eris, ... quicquid sit de tua contritione.
25. Confessus non sit contritus.
26. Sacerdos non serio sed joco absolvat.
27. Ճառ ի վերայ ապաշխարութեան. Գործք Լուտ. Լատ. Հատ. Ա. 61. Բ։
28. Ճառ հաղորդութեան խորհուրդն ընդունելու համար (ըլլալու) պատրաստութեան վրայ. Գործք Լուտ. Լատ. Հատ. Ա. 64. Բ։

կընար փալ. չհաւտացողին՝ ամէն բան վնասակար է, եւ ամենեւին բան մը օգուտ չունի[29]„:

Այս թէպէտ Լուտեր իր գրուածներուն ու խօսքերուն մէջ աս մոլորութիւնները յայտնապէս կը վարդապետէր ու կը պաշտպանէր, ի վերայ այսր ամենայնի տեսնելով որ շատերը իրեն հերետիկոս կը կանչեն, ու դեռ բաները կատարեալ հաստատած չըլլալով եւ իշխաններուն պաշտպանութեան վրայ բոլորովին չկրնալով ապահով ըլլալ, երբեմն երբեմն կը կեղծաւորէր ու մեծ խոնարհութիւն եւ հնազանդութիւն կը ձեւացընէր: — Հայտելպերկի վիճաբանութենէն դառնալէն ետեւ՝ իր 95 նախադասութեանց վրայ Մեկնութիւն կամ Լուծում մը շինեց[30], ու նամակով մը Հերոնիմոս՝ Պրանտենպուրկի եպիսկոպոսին խաւրեց, որն որ իր թեմական եպիսկոպոսն ու զինքը ձեռնադրողն էր, եւ որն որ բողոքող մատենագիրներն ալ շատ կը գովեն[31]:

Լուտեր աս թղթին մէջ այսպէս կը խօսի. “Քիչ մը ատենէ վեր մեր կողմերը առաքելական ներողութեանց վրայ նոր ու չլսուած վարդապետութիւններ սկսան տարածուիլ. այնպէս որ գիտունները ու տգէտները առհասարակ զարմացան, եւ շատերը՝ թէ ծանօթներէն եւ թէ անծանօթներէն՝ թղթով ու խօսքով իմէ խնդրեցին որ աս բաներուն նորութեան (չըսեմ թէ յանդգնութեան) վրայ կարծիքս յայտնեմ: Իսկզբան ես չլսելու զարկի ու քիչ մը ատեն ձայն չհանեցի. բայց ետքը զիս անանկ վիճաբանութիւններով ստիպեցին, որ քահանայապետին պատիւն ու յարգութիւնը վտանգի մէջ մտաւ:

“Իսկ ես ինչ ընելու էի. աս բանիս մէջ ինծի ամենեւին բան մը հաստատել չէր կրնար: . . . Արդ որպէս զի երկու կողմն ալ գոհ ընեմ, ամենէն աղէկ աս երեւցաւ որ ամենեւին բան մը ոչ ընդունիմ ոչ ալ մերժեմ. հապա ասանկ երեւելի նիւթի մը վրայ՝ միայն վիճեմ, մինչեւ որ սուրբ եկեղեցին որոշէ թէ նոյն նիւթին վրայ ինչ կարծիք ունենալու է: Անոր համար ներողութեանց վրայ վիճաբանութիւն մը (իր 95 նախադասութիւնները կ'իմանայ,) դուրս հանեցի, ու հրապարակաւ ամէնքը եւ առանձինն ճանչցած գիտուններս հրաւիրեցի եւ աղաչեցի որ

29. Քարոզ ապաշխարութեան վրայ. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ա. 69:

30. Տես Գործք Լուտ. լատ. Հատ Ա. 102 — 141:

31. Մեռլ տ'Օպինեէ (Հատ. Ա. 135.) զինքը “Գիտնական եւ բարեպաշտ մարդ„ կ'անուանէ. իսկ Բլանք (Գիրք Ա. Հատ. Ա. 127.) “Գիտուն ու ճշմարտութիւն սիրող մարդ„: — Լուտեր ալ նոյն ժամանակը զինքը շատ կը յարգէր. բայց ետքը երբ որ տեսաւ թէ իր բռնած ճամբան չիհաւնիր, ըստ սովորութեան՝ բերանը փոխեց, սկսաւ վրան շատ գէշ խօսիլ ու “Անոր բերնովը սատանան կը խօսէր„ կ'ըսէր: Խօսք սեղանոյ, 378:

եթէ բերնէ բերան խօսակցութեամբ ալ չէնէ, գոնէ հեռուէն գրով՝ Ներողութեանց վրայ ունեցած կարծիքնին յայտնեն։ Մանաւանդ որ կը տեսնէի թէ աս բանիս մէջ ո՛չ Ս. Գիրքը, ո՛չ եկեղեցւոյ վարդապետները եւ ո՛չ իսկ կանոնական իրաւունքը ինծի կը նպաստէին[32]. ու միայն քանի մը իրաւագէտներ կային, որոնք առանց Ս. Գրքի կը խօսէին, եւ քանի մ'ալ դպրոցական վարդապետներ, որոնք նմանապէս միայն կարծիքնին կը զրուցեն, բայց բան մը չեն ցուցըներ...։

"Արդ որովհետեւ ես ամէնքը վճռման հրաւիրեցի, եւ մէկը չերեւցաւ[33], ու կը տեսնեմ որ վիճաբանութիւններս (Նախադասութիւններս) ուզածէս աւելի չորս կողմը կը տարածուին, եւ ամէն տեղ չէ թէ իբրեւ վիճաբանելու համար գրուած, հապա հաստատուած ու որոշուած բան կը կարծեն, անոր համար ակնկալութեանս ու բաղձանքիս դէմ ստիպուեցայ որ տղայութիւնս ու տգիտութիւնս յայտնեմ, ու անոնց մեկնութիւնն ու ցուցմունքը դուրս հանեմ։ Աւելի լաւագոյն սեպեցի որ տգիտութիւնս խայտառակի քան թէ որ ուրիշները մոլորութեան մէջ իյնան՝ կարծելով որ գրածներուս ամէնն ալ հաստատելով գրած եմ. ուր որ ես անոնց մէջէն ոմանց վրայ կը տարակուսիմ, ոմանք չեմ գիտեր, ոմանք կը մերժեմ ալ, եւ ամենեւին բան մը յամառութեամբ չեմ հաստատեր. հապա ամէնն ալ եկեղեցւոյ ու իր դատաստանին տակ կը ձգեմ։

"Նաեւ որովհետեւ դուն, մեծարգո՛յ Տէր, Քրիստոսի ողորմութեամբը մեզի թեմական եպիսկոպոս տրուած ես,... անոր համար աս ձեռքս ունեցած գրուածքս՝ քու տուըններուդ առջեւը կը դնեմ։ Արդ, յաճախագո՛ւթ Տէր, աս իմ անարգ գրուածքս ընդունէ։ Եւ որպէս զի ամէն մարդ իմանայ որ ես ամենեւին բան մը յանդգնութեամբ չեմ հաստատեր, չէ թէ միայն յանձն կ'առնեմ, հապա նաեւ կ'աղաչեմ որ քու մեծարգոյ Հայրութիւնդ գրիչը ձեռքն առնէ, եւ ուզածին պէս աւրէ,

**32.** In iis rebus neque scripturas, neque doctores ecclesiasticos ... suffragari mihi viderem. Weder die Schrift, noch die Lehrer der Kirche... in dieser Sach für mich hatte.

**33.** Լուտեր աս բանս իբրեւ պատճառ բերելու ամենեւին իրաւունք չունէր. ինչու որ թէպէտ մէկը իրեն հետ խօսքով վիճելու եկած չէր, բայց իր խնդրածին պէս՝ շատերը, ինչպէս վերը տեսանք, իրեն դէմ գրելով՝ ունեցած կարծիքնին յայտնած էին. միանգամայն իրեն ցուցուցած էին որ իր Նախադասութիւնները՝ եկեղեցւոյ ու վարդապետաց կարծեացը հակառակ է։ Եւ թէպէտ ինք Նախադասութիւնները դուրս հանելէն ետեւ՝ եկեղեցին յայտնապէս իր կարծիքը չէր իմացուցած, բայց Լուտեր ո՛չ տասր եւ ո՛չ վիճաբանութեան եկողի մը սպասելով՝ Նախադասութիւնները դուրս հանելուն պէս՝ սկսաւ իր կարծիքները չորս կողմը տարածել ու յամառութեամբ պաշտպանել. ինչպէս մինչեւ հիմա գրածներնէս յայտնի կ'երեւայ։

մանաւանդ թէ բոլորն ալ կրակի մէջ այրէ....: Գիտեմ որ Քրիստոս իմ գործակցութեանս կարօտ չէ, եւ առանց ինծի կրնայ իր եկեղեցւոյն բարիքը հոգալ:

"Ասոր համար յայտնի ու բացայայտ խօսքերով կը վկայեմ ու կը յայտնեմ որ աս ներողութեանց նիւթին մէջ կը վիճեմ ու բան մը չեմ հաստատեր. դարձեալ կը զրուցեմ՝ միայն կը վիճեմ, բան մը իբրեւ ստոյգ ու ճշմարիտ չեմ հաստատեր, ու վիճածս ալ վախով է...."[34]:

Լուտեր աս նամակը Մայիսի 22ին գրեց: Քանի մը օր ետքն ալ (նոյն ամսոյն 30ին) Լեւոն քահանայապետին նոյն կերպով նամակ մը գրեց, ու նոյն օրը Լուծմանցը հետ մէկտեղ թղթով մը Ստաւպիցին խաւրեց, որ անիկա երկուքը մէկտեղ քահանայապետին ձեռքը հասցընէ[35]: — Լուտեր քահանայապետին այսպէս կը գրէ:

"Սրաս շատ գէշ լուր մը լսեցի, ամենասուրբ Հայր, ուսկից կը մակաբերեմ որ քանի մը բարեկամներ իմ անունս քու Սրբութեանդ ու քուկիններուդ առջեւը շատ աւրեր են, իբրեւ թէ բանալեաց ու քահանայապետին իշխանութիւնը նուազեցընելու ետեւէ ինկած ըլլամ: Ուստի եւ զիս հերետիկոս, ուրացող, նենգաւոր կ'անուանեն, եւ հազարումէկ ուրիշ նախատական անուններով կը բամբասեն":

Անանկ սկիզբ դնելէն ու իր խղճմտանքին մաքրութիւնը գովելէն ետեւ՝ ուզածին պէս ներողութիւն քարոզողներուն, ու ներողութիւն քարոզելէն ծագած անկարգութիւններուն վրայ կը խօսի. իր ըրածները կը պատմէ, ու կը ջանայ ցուցընել որ անոնք՝ ըրած ատեն՝ դիտաւորութիւնը շատ բարի էր, եւ միայն աստուածպաշտութեան եռանդէն շարժելով՝ աս բանիս ձեռք զարկած է: Ասոնք գրելէն վերջը խօսքը այսպէս յառաջ կը տանի: "Բայց հիմա ի՞նչ ընեմ. ըսածներս չեմ կրնար ետ առնել[36], եւ կը տեսնեմ որ վիճաբանութիւնս դուրս հանելուս համար ամէն մարդ վրաս մեծ նախանձ ու ատելութիւն ունի:.... Ուստի որպէս զի թէ հակառակորդներս հանդարտեցընեմ եւ թէ շատերուն բաղձանքը կատարեմ, ահաւասիկ աս չնչին գրուածքս դուրս կը հանեմ, որուն մէջ վիճաբանութիւններս կը մեկնեմ. դուրս կը հանեմ, ամենասուրբ Հայր,

34. Գործք Լուտ. լատ. Հատ. Ա. 98. Բ. — 99. Բ. գերմ. Հատ. Ա. 43—44. Բ:

35. Տես Գործք Լուտ. լատ. Հատ. Ա. 99. Բ. գերմ. Հատ. Ա. 44. Բ: Եւ Սեքենտորֆ, Գիրք Ա. Համ. ԺԹ. 32:

36. Լուտերին լատիններէն ինքնագրին մէջ՝ միայն չեմ կրնար գրուած է. իսկ գերմաներէն թարգմանիչը՝ կարծես թէ հեղինակին բուն միտքն իմացընել ուզելով՝ չեմ կրնար ու չեմ ուզեր (widerruffen kan und wil ich nicht) թարգմանած է:

որպէս զի քու անուանդ պաշտպանութեանն ու քու պաշտպանութեանդ հովանւոյն տակ ապահով ըլլամ։ Աս լուծման կամ մեկնութեան մէջ ուզողը կրնայ տեսնել թէ ես որչափ պարզմտութեամբ ու անկեղծութեամբ՝ եկեղեցական իշխանութիւնը եւ բանալեաց զօրութիւնն ու պատիւը խնդրած ու յարգած եմ, եւ հակառակորդներս ինչչափ անօրէնութեամբ ու ստութեամբ իմ անունս կ'աւրեն։ Թէ որ ես անանկ մարդ մ'ըլլայի, ինչպէս որ անոնք զիս կ'ուզեն ցուցընել, եւ թէ որ ամէն ըսածներս՝ միայն վիճելու համար օրինօք եւ կարգով ըրած չըլլայի, ինչպէս որ ամէն վարդապետ իրաւունք ունի, չէր կրնար ըլլալ որ մեծաշուք Փրեդերիկոս Սաքսոնիայի դուքսն ու կայսերութեան կայսրընտիրը՝ աս ժանտախտը իր համալսարանին մէջ թող տար, որովհետեւ ինք ուղղափառ կամ կաթուղիկէ եւ առաքելական ճշմարտութիւնը շատ կը սիրէ։...

"Ասոր համար, ամենասուրբ Հայր, ահաւասիկ քու Սրբութեանդ ոտուըներն ինկած՝ ինքը զինքս,· ինչ որ ունիմ ու ինչ որ եմ, բոլոր քեզի կը նուիրեմ։ Կենդանացուր, մեռցուր, կոչէ, ետ կանչէ, հաւանութիւն տուր, մերժէ, ինչպէս որ կ'ուզես. քու ձայնդ՝ քեզմով հրամայող ու քեզմով խօսող Քրիստոսի ձայնը կը համարիմ[37]։ Թէ որ մահուան արժանի եմ, մեռնելէն չեմ հրաժարիր...,,[38]։

Թէ որ մէկը Լուտերին ասոնք գրած ատենը՝ ինչ մտքի վրայ ըլլալուն վրայ տարակուսի երթայ, կամ թէ կարծէ որ սրտանց ու անկեղծութեամբ կը գրէր, անոր նոյն ատենները գրած ուրիշ գրուածներէն կրնայ տարակոյսը լուծել ու սրտին մէջ ինչ ըլլալը ճանչնալ։ Ներուի մեզի Սեղբեստրոս Փրիերասին դէմ գրածներէն կտոր մը հոս բերել, ուսկից ուրիշ գրածները կրնայ իմացուիլ։ Արդ աս գրութեան մէջ Հռոմայ Աթոռոյն, եպիսկոպոսներուն, կարդինալներուն եւ մանաւանդ քահանայապետին դէմ (զորն որ պիղծ բերնով՝ Ներոն կ'անուանէ,) զանազան հայհոյութիւններ գրելէն ետեւ՝ խօսքը այսպէս յառաջ կը տանի. "Ինծի այնպէս կ'երեւայ որ եթէ Հռոմայեցիներուն կատաղութիւնն աս կերպով յառաջ երթալու ըլլայ նէ՝ ուրիշ ճար չիմնար, բայց եթէ որ կայսրը, թագաւորներն ու իշխանները զօրքով ու զէնքով աս աշխարհի ժանտախտներուն վրայ յարձակին, ու բանը խօսքով չէ հապա սրով որոշեն...։ Որովհետեւ թէ որ գողերը՝ կախաղանով, աւազակները՝ սրով ու հերետիկոսները կրակով կը մեռցընենք

37. Vocem tuam, vocem Christi, in te præsidentis et loquentis agnoscam.

38. Գործք Լուտ. լատ. Հատ. Ա. 100. Բ. — 101. Բ. գերմ. Հատ. Ա. 46. Բ. — 48. Բ։

նէ, ինչո՞ւ աւելի զէնքով աս կորստեան վարդապետներուն վրայ չենք յարձակիր, այսինքն կարդինալներուն, պապերուն, ու ամէն Հռոմայեցւոց սողոմական անպիտան մարդիկներուն վրայ, որոնք որ Աստուծոյ եկեղեցին անդադար կ՚ապականեն. ինչո՞ւ ձեռուընիս իրենց արեան մէջ չենք լուար,, 39:

Մ՝արդ՝ Լուտերի աս մի եւ նոյն ժամանակները դրած խօսքերը իրարու հետ համեմատած ատեն՝ չիգիտեր ինչ ըսելիքը. կը տեսնէ որ Լուտեր մէյ մը խոնարհութեամբ քահանայապետին ոտքն ինկած ու ձեռուըներն իրարու միացուցած՝ հնազանդութիւն կը խոստանայ. մէյ մ՚ալ իբրեւ կատաղի՝ կը բաղձայ որ նոյն ձեռուըները քահանայապետին արեան մէջ թաթխէ: Կը լսէ որ քահանայապետը մէյ մը Քրիստոս կ՚անուանէ ու Քրիստոս քու բերնովդ կը խօսի, կ՚ըսէ. մէյ մ՚ալ Ներոն եւ վարդապետ կորստեան կը կանչէ: Աս երկքի խօսքերը յայտնի կը ցուցընեն որ առջինները անկեղծութեամբ չէր ըսեր, ու սիրտը՝ խօսքերէն շատ տարբեր էր: Անոր համար այնպէս կ՚երեւայ որ խոնարհութիւն ու հպատակութիւն ձեւացընելովը՝ մարդիկները իրեն քաշելու եւ հերետիկոս անունը վրայէն վերցընելու կը նայէր. որպէս զի մինչեւ որ բաները աղէկ մը հաստատէ նէ՝ իր կեղծաւորեալ խոնարհութեամբն ու հպատակութեամբը՝ քահանայապետը վրան նզովք կարդալէն արգելէ, որ չըլլայ թէ դեռ բոլորովին իր կողմը չշահուած մարդիկը աս նզովքէն սարսափելով՝ իրմէ հեռանան:

39. Գործք Լուտ. լատ. Հատ. Ա. 195:



## ԳԼՈՒԽ Գ

### Լութեր Աւկսպուրկի մէջ

Մաքսիմիլիանոս կայսրը քահանայապետին նամակ մը կը գրէ։ Քահանայապետը՝ Լութերը Հռոմ կը կանչէ, որ ինքը զինքն արդարացընէ. բայց ետքը կը զիջանի որ Աւկսպուրկ քննուի։ Լութերի Աւկսպուրկ երթալն ու Կայետանոսի հետ խօսիլը։ Լութեր կարդինալին նամակ մը կը գրէ ու տեղէն ծածուկ կը փախչի։ Լութերին երկրորդ բողոքը։ Քահանայապետը կոնդակով մը՝ ներողութեանց վրայ եկեղեցւոյն ուսուցած կարծիքը կը յայտնէ։

## 1518

ԱՍ բաները եղած ատեն՝ Մաքսիմիլիանոս Բ. Գերմանիայի կայսրը Աւկսպուրկ քաղաքը աւագաժողով մ՚ընելով, ու հոնտեղը լսածներէն՝ իր տէրութեանը մէջ կրօնքին ինչ աստիճանի վտանգի մէջ ըլլալը տեսնելով, աս չարիքներուն շուտով դարման մը տանելու համար Լեւոն քահանայապետին նամակ մը գրեց, որուն մէջ այսպէս կը խօսի։ “Ամենասուրբ Հայր, մեծարգոյ Տէր։ Շատ ժամանակ չէ իմացանք որ Մարտինոս Լուտեր անունով Օգոստինեան կրօնաւոր մը ներողութեանց վրայ՝ դպրոցական կերպով վիճելու համար՝ քանի մը նախադասութիւններ տարածեր է, եւ իր ճառերուն մէջ աս նիւթին վրայ. . . խեւ մը բաներ կը վարդապետէ, որոնցմէ շատերը դատապարտելի ու հերետիկոսական կ՚երեւան։. . . Աս բանս զմեզ աւելի անոր համար կը վշտացընէ, որ կը լսենք թէ նոյն կրօնաւորը իր վարդապետութիւնները յամառութեամբ կը պաշտպանէ ալ, եւ իր մոլորութիւններուն շատ պաշտպաններ ու ջատագովներ գտեր է, որոնցմէ ոմանք նաեւ երեւելի մարդիկ են։ Արդ՝ որովհետեւ կասկածելի կարծիքներուն ու վտանգաւոր վարդապետութիւններուն վրայ՝ ամենեւին մէկը հրամանոցը Սրբութենէն աւելի լաւագոյն, ուղղագոյն ու ճշմարտագոյն դատաստան չիկրնար ընել, անոր համար ինչպէս որ մինակ դուք կրնաք, այսպէս դուք պէտք է որ զսպէք ընդունայն խնդիրներ, իմաստակական պատճառանքներ ու շատախօս վէճեր հանողները„։ Հոստեղս Լուտերին անպիտան վարդապետութիւններուն ու մոլորութիւններուն վրայ խօսելէն ետեւ՝ թուղթը այսպէս յառաջ կը տանի։ “Թէ որ ձեր Սրբութեան ու մեծարգոյ հարց իշխանութիւնը աւոր վերջ տալու չըլլայ, աոնք քիչ ատենուան մէջ չէ թէ միայն ոգէտ բազմութիւնը կը խաբեն, հապա նաեւ մեծամեծ մարդիկներէն ալ պաշտպանութիւն եւ օգնութիւն կը գտնեն, որով թէ իրենց եւ թէ

անոնց վնաս կ՚ըլլայ։ Աս ամէն բանը՝ առաքելական Աթոռոյն ունեցած յարգութիւններնուս համար՝ ձեր Սրբութեանն իմացուցինք. որպէս զի չըլլայ որ քրիստոնէական միամտութիւնը ասանկ յանդուգն վէճերէն ու նենգաւոր պատճառանքներէն վնաս կրէ ու գայթակղի։ Եւ աս բաներուն վրայ ձեր իմաստութեամբը ինչ որ վճռէք նէ, մենք ալ մեր իշխանութեամբը՝ Աստուծոյ ամենակալին փառաց ու պատուոյն եւ հաւատացելոց փրկութեան համար՝ կը նայինք որ ամէնքը կատարեն,, [1]։

Կայսրը աս թուղթը Օգոստոսի 5ին գրեց. բայց քահանայապետը արդէն յառաջագոյն իրերուն վիճակն իմացած ըլլալով, բանը հանդարտութեամբ լմնցընելու համար՝ զանազան միջոցներ բանեցընելէն ետեւ [2], անոնցմէ օգուտ մը չտեսնելով՝ Հերոնիմոս Ասգուլանի եպիսկոպոսին հրաման տուած էր որ Լուտերը՝ վրան եղած ամբաստանութեան պատասխան տալու համար՝ Հռոմ կանչէ։ Հերոնիմոս առած հրամանն ի գործ դնելով՝ շուտ մը Լուտերին գիր մը գրած էր, որուն մէջ իրեն կը հրամայէր որ Հռոմ գայ ու ինքը զինքը ջատագովէ. եւ աս հրամանը կատարելու համար իրեն 60 օր ժամանակ կու տար [3]։

1. Ռայնալտ, Տարեգր. Հատ. Ի. 263։ Գործք Լուտ. լատ. Հատ. Ա. 203։

2. Ուրիշ միջոցներէն զատ՝ Փետրուարի 3ին քահանայապետը Գաբրիէլ Օգոստինեանց ընդհանուր մեծաւորին առանձին նամակով մը յանձնած էր, որ ամէն ճիգն ի գործ դնէ Լուտերը իր մոլորական կարծիքներէն ուղղութիւն բերելու։ Տես նամակը առ Ռայնալտ. Տարեգր. Հատ. Ի. 264։

3. Աս գիրը Յուլիսի մէջ գրուած էր, եւ Օգոստոսի 7ին Լուտերին ձեռքը հասաւ։ Սեքենտորֆ, Գիրք Ա. Հատ. ԼԳ. 41։ Բրունս, Գիրք Բ. Հատ. Ա. 135։ — Ռոսգոյ՝ ըսելէն ետեւ որ Լուտերին պատճառաւ եղած խռովութիւնները՝ քահանայապետը իսկզբան մեծ բանի տեղ չէր դներ եւ անոր համար ալ մէջը խառնուիլ չէր ուզեր, այսպէս կը գրէ. "Բայց երբ որ Լեւոն վերջապէս իր մէջ մտնելը հարկաւոր սեպեց նէ, իսկզբան անդ աւելի միտեալ էր խռովարար քահանան հաճոյելով ու քաղցրութեամբ ցածուցանել, քան թէ խստութեամբ զինքը նոր անհնազանդութեան գրգռել։ (His first impulse was rather to soothe and pacify the turbulent priest, than to irritate him by severity to further acts of disobedience.) Անոր համար Օգոստինեանց գաւառապետը կամ ընդհանուր փոխանորդը Յովհ. Ստաւփիցին (մատենագիրը Գաբրիէլ Օգոստինեանց ընդհանուր մեծաւորին ըսելու տեղ, սխալմամբ Յովհաննէս Ստաւփիցին կ՚ըսէ.) նամակ մը գրեց, ու իրեն յանձնեց որ ջանայ իր անհնազանդ եղբայրը յորդորանաց թղթով մը հանդարտեցընել,,։ Եւ քիչ մը վերջը վրան կ՚աւելցընէ որ "Քահանայապետին չափաւորութեան՝ Լուտերին վրայ ընելու բարի ազդեցութիւնը՝ եկեղեցին պաշտպանողներուն սաստկութեամբն ու չափ չպահելովը՝ պարապի գնաց,,. եւ Բալլաւիչինիին խօսքը (Գիրք Ա. Գլ. Ջ. Հատ. Ա. 44.) իրեն սեպհականելով՝ "Եւ աս նախանձաւորները, կ՚ըսէ, ինչպէս որ շատ իմաստուն մատենագիրներ մակաբերեցին, Լուտերը ժամանակէն յառաջ հերետիկոս կանչելովնին՝ զինքը հերետիկոս ըլլալու ստիպեցին,,։ (And who also ... by prematurely representing Luther as a heretic, forced him at length to become one.) Գլ. ԺԵ. Հատ. Գ. 157, 158։

Աս բողոքող մատենագրին վկայութիւնը, որն որ իրական գործքեր յառաջ կը բերէ, բաւական կը սե-

Երբ որ Լուտերին Հռոմ կանչուելու հրամանը Վիտդենպերկ հասաւ, նոյն իսկ ամենէն յանդուգն ըլլողներն ալ սկսան վախնալ եւ իրենց յանդգնութիւնն ու անամօթութիւնը չափաւորել։ Ատեն մը ժողովրդեան մէջ մոլորական գրքեր ու գրուածներ տարածելէն ետ կեցան, եւ լեզունին քիչ մը իրենց քաշեցին։ Իսկ Լուտեր մեծ շփոթութեան ու տարակուսի մէջ մնալով՝ ինչ ընելիքը չէր գիտեր։ Հռոմ երթալն ապահով չէր սեպեր, որովհետեւ միտքը դրած էր որ ըսածները ետ չկանչէ. իսկ յայտնապէս չեմ երթար ըսել ալ չէր վայլեր, ինչու որ ինքը զինքն ու իր դատը, վերը ըսածնուս պէս[4], քահանայապետին դատաստանին տակ ձգած էր. չէր ուզեր ոչ վախկոտ երեւնալ ոչ ալ իր խօսքին դէմ ընող ու անհնազանդ[5]։ Դարձեալ, ինչպէս Ռոսգոյ կը գրուցէ, գիտէր որ "իր անհնազանդութիւնը յայտնապէս ցուցընելու ըլլայ նէ՝ մինչեւ նոյն ատեն իր կողմը բռնողներէն կամ իր բարեկամներէն շատերը՝ որոնք... դեռ եկեղեցիէն ելլելու որոշուած չէին, ստուգիւ իրմէ կը բաժնուէին, եւ ինք անոնց օգնութենէն կը զրկուի"[6]։ Ասոր իրեններուն առջեւը ձեռքէն եկածին չափ՝ Ճամբուն վտանգները, թշնամիներուն նենգութիւնը, իր աղքատութիւնն ու հիւանդութիւնը պատճառ բերելով՝ զիրենք համոզեց որ չիկրնար Հռոմ երթալ։ Բայց աս բաւական չէր. քահանայապետն ալ համոզելու եւ սիրտն առնելու էր, որպէս զի չըլլայ որ գլուխը մեծագոյն չարիք գայ, երբ որ իմացուի որ հրամանին չուզեր հնազանդիլ։ Աս վախճանին հասնելու համար՝ համալսարանին վարդապետներուն դիմեց[7]։ Անոնք ալ քահանայապետին թուղթ մը գրեցին (Սեպտեմբերի 25ին), որուն մէջ Լուտերին մեծամեծ գովութիւններ տալէն, եւ Հռոմայ եկեղեցիէն դատապարտուած մոլորութիւն մը վարդապետած չունի՝ ըսելէն ետեւ, կ'աղաչէին որ աս իրենց վկայութիւնը բաւական սեպէ ու Լուտերին քաղցրութեան աչքով նայի[8]։

պէնք ուրիշ շատ բողոքող մատենագիրներուն բերանը գոցելու, որոնցմէ ոմանք կը զրուցեն որ Եթէ Լեւոն Ժ. իսկզբան Լուտերին հետ խստութեամբ ու սաստկութեամբ վարուած չըլլար նէ՝ անիկա Հռոմայ եկեղեցիէն չէր բաժնուեր. իսկ ուրիշները ասոնց հակառակ կ'ըսեն թէ Լեւոն անհոգութեամբ մը երկայն ժամանակ անգործ կենալով՝ թող տուաւ որ Լուտեր իր գործքը ուզածին պէս յառաջ տանի։ Ուր որ գործքերէն կը տեսնենք, եւ Ռոսգոյ իր վկայութեամբը կը հաստատէ, որ քահանայապետը իսկըզբան՝ բանը չմեծցընելու համար քիչ մը ատեն խոհեմութեամբ լուռ կեցաւ. իսկ մէջը մտած ատեն՝ շատ քաղցրութեամբ ու չափաւորութեամբ վարուեցաւ, որն որ դեռ ասկէ ետքը պատմելիքներնէս ալ աւելի աղէկ կրնայ տեսնուիլ։

4. Տես էջ 34։

5. Ուլէնպերկ, Գլ. Գ. Համ. Ա։

6. Գլ. ԺԵ. Հատ. Գ. 161։

7. Սէկէնտան, Գիրք Ա. 5։ Կուստաւ Ֆիցէր, Գլ. Ե. 83։ Ուլէնպերկ, Գլ. Գ. Համ. Ա։

8. Նամակը տես ի Գործս Լուտ. լատ. Հատ. Ա. 206. Բ. գերմ. Հատ.

Սակայն չգիտնալով որ արդեօք աս միջոցը քահանայապետը հանդարտեցընելու բաւական կ'ըլլայ թէ չէ, Լուտեր կայսրընտրին միջնորդութիւնն ալ ուզեց ձեռք առնել: Բայց աս բանիս մէջ աւելի մեծ նենգութիւն բանեցուց. այս ինքն թէպէտ մէկ կողմանէ Սփալադինին գրեց որ կայսրընտիրը միջնորդութիւն ընէ որ իր վրան ըլլալու քննութիւնը Գերմանիայի մէջ ըլլայ, սակայն մէկալ կողմանէ ալ քանի մը օր վերջը ուրիշ նամակով մը Հռոմ երթալու համար իշխանէն ապահովութեան թուղթ [9] ուզեց, խնդրելով միանգամայն որ իշխանը աս թուղթը չտայ, որպէս զի աս պատճառը ձեռքն ունենալով՝ համարձակ քահանայապետին հրամանին դէմ դնէ [10]: Իշխանն ալ բոլորովին Լուտերին մտացը համաձայնելով՝ չէ թէ միայն ապահովութեան թուղթը չտուաւ, հապա նաեւ ամէն ճիգն ի գործ դրաւ որ վրան ըլլալու քննութիւնը՝ Հռոմ չըլլայ, այլ Գերմանիայի մէջ: Քահանայապետը իսկզբան շատ դէմ դրաւ, բայց վերջապէս կայսրընտրին աղաչանքին զիջաւ, ու հրաման տուաւ որ Լուտեր Աւկսպուրկի աւագաժողովին մէջ գտնուող քահանայապետական դեսպան՝ Կայետանոս կարդինալին երթայ, եւ Հռոմ ըլլալու քննութիւնը՝ անոր առջեւն ըլլայ [11]:

Ա. 107. Բ: — Աս թուղթը գրած օրերնին՝ ուրիշ թուղթ մ'ալ Միլգից՝ քահանայապետին սենեկապետին (որուն վրայ ետեւի գլխուն մէջ կը խօսինք) գրեցին. աոր մէջն ալ կը ջանան Լուտերն արդարացընելու, եւ թէ՛ զանիկա թէ՛ իրենք զիրենք Հռոմայ եկեղեցւոյն եւ ուղղափառ կրօնին հաւատարիմ ցուցընելէն վերջը՝ կ'աղաչեն որ իբրեւ Գերմանացի՝ իր օգնութիւնը Գերմանացւոյ մը չզլանայ, եւ իրեն կը յանձնեն որ ետեւէն իյնայ որ Լուտերի վրայ ըլլալու քննութիւնը Գերմանիայի մէջ ըլլայ: Տես ի Գործս Լութ. լատ. Հատ. Ա. 206. գերմ. Հատ. Ա. 106. Բ:

9. Sauf-conduit.

10. Ասիկա այնչափ յայտնի բան է որ նոյն իսկ բողոքող մատենագիրներուն մէջ ամենէն աւելի Լուտերին ջատագովներն ալ չեն կրնար ուրանալ: Սեքենտորֆ (Գիրք Ա. Հատ. ԼԳ. 41.) աս բանիս վրայ այսպէս կը գրէ. Լուտեր իր Հռոմ կանչուելուն "թուղթը Սփալադինին խրկեց որն որ Փրեդերիկոս կայսրընտրին հետ Աւկսպուրկի աւագաժողովն էր, եւ խնդրեց որ զինքը լսելու համար Գերմանիայի մէջ մարդիկներ որոշուին: ... Չորս օր վերջը աւելի եւս ստուգութեամբ նոյնը խնդրեց եւ հնարքը ցուցուց որով քննութեան նիւթը հարցափորձներէն կրնար զատուիլ. այս ինքն՝ թէ որ կայսրընտիրը իրեն ապահովութեան թուղթը կամ տեղէն ելլելու հրամանը զլանալու ըլլար նէ՝ ինք [illegible] Վիթթենպերկ[illegible],,: Նոյն բանը կը հաստատեն նաեւ Կուստաւ Փիցեր (Գլ. Ե. 82.) եւ Բլանք (Գիրք Բ. Հատ. Ա. 136.): — Բուն Լուտերին թղթին խօսքերն ասոնք են. "Մեր բարեկամներուն անանկ աղէկ երեւցաւ որ... ես մեր իշխանէն ապահովութեան թուղթ ուզեմ... որպէս զի ինք որ չտալու ըլլայ, ինչպէս կ'երեւի որ չի տար, ձեռքս Հռոմ չերթալու իրաւացի պատճառ մ'ունենամ,,: Առ Օրինի, Հատ. Ա. Գլ. Թ. 99:

11. Քահանայապետը՝ Փրեդերիկոս կայսրընտրին առանձին թուղթ մը գրելով՝ աս բանս իրեն իմացուց. եւ միանգամայն խրատ տուաւ որ Լուտերին ու անոր մոլորութիւններուն պաշտպանութիւն չընէ: Նամակը տես ի Գործս Լութ. լատ. Հատ. Ա. 203. Բ. գերմ. Հատ. Ա. 102: Տես նաեւ Բլանք, Գիրք Բ. Հատ. Ա.

Լուտեր բաղձացածին հասնելով՝ կայսրընտրէն յանձնաբարական թղթեր առած՝ ելաւ Աւկսպուրկ գնաց, ուր որ Հոկտեմբերի 7ին հասաւ [12]: Երկրորդ օրը՝ իր հոն հասնիլը՝ ընկերը Վենկեսլաւ Լինքին ձեռքովը կարդինալին իմացուց. եւ երբ որ Կայետանոս զինքը հրաւիրեց որ իրեն գայ, Լուտեր պատասխան տուաւ որ կայսրմէն ապահովութեան թուղթ չառած՝ չեմ կրնար գալ [13]: Կարդինալին սիրտը թէպէտ աս պատասխանէն քիչ մը նեղացաւ, տեսնելով որ Լուտեր վրան վստահութիւն չունի. բայց զինքը աւելի չխրտուցանելու համար ձայն չհանեց: Ոմանք Լուտերին խրատ տուին որ վստահութեամբ ու որդիական համարձակութեամբ ելլէ Կայետանոսին երթայ. Կարդինալը ստուգիւ զքեզ հօր պէս կ'ընդունի, ըսին, ուստի վրան ամենեւին կասկածելու պատճառ մը չունիս. եւ աս կասկածոտովդ բաւական կը ցուցընես որ կարդինալին ու նոյն իսկ քահանայապետին վրայ վստահութիւն չունիս: Բայց Լուտեր միտքը դրածէն չէր շարժեր, ու միշտ առջի պատճառը կը բերէր. Ես ալ, կ'ըսէր, կ'ուզեմ որ երթամ կարդինալին իմ յարգութիւնս ընեմ. բայց ան մարդիկները՝ որոնց որ կայսրընտիրը զիս յանձնած է, ինծի ապսպրած են որ կայսրմէն ապահովութեան թուղթ չառած՝ իր առջեւը չելլեմ:

Վերջապէս սպասած ապահովութեան թուղթը հասնելով Լուտեր ելաւ (Հոկտեմբերի 12ին) վստահութեամբ կարդինալին գնաց: Կայետանոս զինքը մեծ սիրով ու բարեկամութեամբ ընդունեցաւ [14]: Սիրելի որդեակ, ըսաւ, զքեզ վիճաբանելու հա-

138, 139: — Նոյն մատենագիրը քիչ մը վերջը (140) Կայետանոսին վրայ այսպէս կը գրէ. “Չէ թէ միայն իր գիտութեամբը զինքը Գերմանիայի մէջ ծանօթ ըրած էր, հապա նաեւ իր անդողդողդ վարուցն ու բարուց մաքրութեանը համար նոյն տեղը... սրբութեան համբաւ մը տարածած էր,,:

12. Քիչ մը յառաջ աւագաժողովը լմընցած եւ կայսրն ու աւագանին քաղքէն գացած էին:

13. Աս կարդինալին հետ տեսնուելուն ու բոլոր Աւկսպուրկ եղած բաներուն պատմութիւնը կը գտնուի Լուտերի Գործոցը մէջ. Լատ. Հատ. Ա. 208 — 214. Գերմ. 109 — 115: Լատիններէնը Լուտերին բերնէն գրուած է. իսկ գերմաններէնը՝ ուրիշ երրորդի մը բերնէն:

14. Մաթեսիոս, Ճառ. Բ. 14: Սէկենտորֆ, Գիրք Ա. 5. Բ: — “Կարդինալը տաղանդի տէր ու չափաւորեալ մարդ մըն էր (was a man of talents and moderation), կ'ըսէ Ռոսգոյ, որն որ անտարակոյս զԼուտեր եկեղեցւոյն համար շահիլ կ'ուզէր...: Անոր համար ալ զինքը առաջին տեսութեան չէ թէ միայն մեծ սիրով (kindness), հապա նաեւ յարգութեան նշաններով ընդունեցաւ,,: Գլ. ԺԵ. Հատ. Գ. 164: — “Կարդինալը Լուտերին հետ սիրով ու բարեկամութեամբ վարուեցաւ,, կ'ըսէ Կուստաւ Փֆիցեր, Գլ. Ե. 86: — “Կարդինալը զԼուտեր խոհեմական քաղցրութեամբ շահիլ կ'ուզէր,, կը գրէ Լէօն, Մատն. Գ. Հտ. Ա. Գլ. Ա. 84: Իսկ Բլանք (Գիրք Բ. Հատ. Ա. 143) այսպէս կը գրէ. Կարդինալը “ԶԼուտեր յառաջին տեսութեան՝ չէ թէ պատուոյ մը խստութեամբ, հապա հօր մը քաղցրութեամբ ընդունեցաւ,,: — Նոյն իսկ Լուտեր ասոր հակառակը չկրնար ուրանալ, ուստի եւ իր

մար կանչած չեմ, հապա սիրով եւ բարեկամութեամբ կարգի դնելու համար ան բաները՝ որոնք եթէ չշիտկուելու ըլլան, կը կասկածիմ որ չարաչար հետեւութիւններ կ՚ունենան։ Բայց որովհետեւ քու հլութեանդ ու հնազանդութեանդ վրայ վըստահ եմ, անոր համար կը յուսամ որ սանկ բան չիպատահիր։ Աս ալ գիտցած ըլլաս որ, ըսաւ, ես քեզի հետ դատաւորի պէս վարուիլ չեմ ուզեր, հապա մեր հասարակաց հօրը՝ Լեւոն քահանայապետին փոխանորդին պէս, որուն դուն գրեցիր թէ քու խօսքդ՝ քեզմով հրամայող եւ քու բերնովդ խօսող Քրիստոսի խօսքին պէս կը լսեմ։ Արդ քահանայապետը քեզմէ երեք բան կը խնդրէ. Նախ որ բոլոր ճառերուդ ու գրուածներուդ մէջ գտնուած մոլորութիւնները ետ կանչես. երկրորդ որ մէյ մ՚ալ անանկ մոլորական վարդապետութիւններ չսորվեցընես, եւ երրորդ որ ասկից ետքը ընդհանրապէս ուղիղ հաւատքի դէմ եղող ու եկեղեցւոյ խաղաղութիւնն աղմկող բաներէն ետ կենաս։ Լուտեր պատասխան տուաւ որ Գրքերուս մէջ մոլորութիւն ըլլալը ես չեմ գիտեր. բայց թէ որ անանկ բան մը կայ նէ, կ՚աղաչեմ որ ցուցընէք։ Ան ատեն Կայետանոս անոր Նախադասութիւններուն մէջէն երկու մոլորութիւն առջեւը դրաւ. Նախ ան՝ որ Ներողութեանց զօրութեան՝ Քրիստոսի արդիւնքներէն բխելը կ՚ուրանար. երկրորդ ան՝ որ խորհուրդներուն մէջ Նորատեսակ հաւատք մը կը պահանջէր, այսինքն թէ խորհուրդներուն մերձեցողը՝ հաստատութեամբ միտքին մէջ դնէ որ մեղքերուն թողութիւնն ընդունեցաւ, եւ միայն աս վստահութիւնը՝ զորն որ հաւատք կ՚անուանէր, պատրաստութեան ու զղջման միտ չդնելով, մարդը արդարացընելու բաւական կը սեպէր[15]։ Լուտեր դէմ դարձաւ ու սկսաւ իր ըսածները պաշտպանել, որով մէջերնին վէճ մը ծագեցաւ։ Վերջապէս մտածելու ժամանակ խնդրեց, եւ աս առջի տեսութիւնը ասանկով լմնցաւ[16]։

պատմութեան մէջ կը գրէ որ "Շատ քաղցրութեամբ ու գրեթէ յարգութեամբ ընդունուեցայ"։ Գործք Լութ. ըստ. Հատ. Ա. 208. Բ։

15. Լուտեր կը գրէ թէ կարդինալին՝ իբրեւ մոլորական իր առջեւը դրածն ան էր, որ ինք "Խորհրդի մերձեցողին՝ հաւատք հարկաւոր է" ըսած է։ Գործք Լութ. ըստ. Ա. 208. Բ։ Իսկ Մաթեսիոս (Ճառ Բ. 14. Բ.) ինչպէս նաեւ ուրիշ շատ բողոքող մատենագիրներ կ՚ըսեն թէ կարդինալը իրեն առջեւը աս խօսքը դրաւ որ "Մարդ՝ առանց յատուկ կամ տեսպհական հաւատքի՝ սուրբ խորհուրդները չիկրնար աղէկ ընդունիլ". եւ իրմէ պահանջեց որ աս խօսքը ետ կանչէ։ Բայց ինչպէս որ յայտնի է թէ Լուտերին վարդապետութիւնն աս չէ, հապա դրածնիս. այսպէս ալ ինք իրմէ կը հետեւի որ կարդինալին իր առջեւը իբրեւ մոլորական դրածը՝ աս չէր։ Իսկ թէ Լուտերին վարդապետութիւնը վերը դրածնիս է, տես Բ. Գլխոյն մէջ, եր. 29, 30։

16. Գործք Լուտ. ըստ. Հատ. Ա. 209։

Երկրորդ օրը Լուտեր՝ հետը չորս կայսերական խորհրդական, դպիր մը եւ Սղաւփիցն ալ առած՝ նորէն Կայետանոսին առջեւն ելաւ. եւ աս յայտարարութիւնը կարդաց. “Ես... Հռոմէական սուրբ եկեղեցին կը պատուեմ, եւ կը վկայեմ որ իմ ամէն՝ անցած, հիմնական ու ազգազգի խօսքերուս ու գործքերուս մէջ անոր հետեւած եմ ու կը հետեւիմ: Թէ որ երբեք աս եկեղեցւոյն դէմ ըլլող կամ անոր վարդապետութենէն օտար բան մը ըսած եմ կամ կ'ըսեմ նէ՝ կ'ուզեմ որ չըլլուցած ըլլամ:... Մինչեւ հիմա բան մ'ըսած չեմ որ Ս. Գրոց, եկեղեցւոյ հարց, քահանայապետաց վճիռներուն եւ ուղիղ մտաց հակառակ ըլլայ....: Բայց որովհետեւ ես մարդ եմ ու կրնամ սխալիլ, անոր համար ինքը զինքս՝ օրինաւոր սուրբ եկեղեցւոյ ու ամէն ուղղութեամբ խորհողներուն դատաստանին եւ որոշման տակ ձգած եմ եւ կը ձգեմ:... Ասկից զատ՝ Բասիլէայի, Ֆրիպուրկի, Լովանիայի հոյակապ կայսերական համալսարանաց վարդապետներուն դատաստանն ու վճիռը լսելու (պատրաստ եմ): Եւ թէ որ աս ալ բաւական չէ նէ՝ նաեւ Փարիզի համալսարանին ալ, որն որ ծնող է ուսմանց եւ հին ժամանակէն վեր ամենաքրիստոնեայ ու աստուածաբանութեան մէջ շատ ծաղկած„[17]: — Լուտեր աս յայտարարութիւնը կարդալու ատեն՝ կարդինալը առջի օրը քահանայապետին անուամբ իրմէ խնդրած երեք բանը նորէն մէյ մը յիշեցուցած էր, ինքն ալ պատասխան տուած էր որ Մոլորած ըլլալս ինծի ցուցուած չէ: Բոլոր յայտարարութիւնը լմըննալէն վերջը Կայետանոս թէպէտ Լուտերին հետ վիճել չէր ուզեր, ի վերայ այսր ամենայնի Սղաւփիցին աղաչանքին զիջանելով՝ հրաման տուաւ որ գրով պատասխան տայ, եւ թէ որ կրնայ նէ՝ ինքը զինքն արդարացընէ[18]:

Լուտեր բոլոր գիշերը նստեցաւ երկայն բարակ գրուածք մը շինեց, որուն մէջ իր կարծիքը պաշտպանելու համար ինչ որ գտած էր նէ՝ յարմար անյարմար ամէնը ժողված դրած էր[19]: Եւ երկրորդ օրը՝ երրորդ անգամ կարդինալին առջեւն ելած ատեն՝ աս գրուածքը մէկտեղ բերաւ: Կայետանոս ասիկա քիչ մը կարդալուն պէս՝ իմացաւ որ ամենայն ինչ խաբէութիւն է. որովհետեւ “Ես քահանայապետաց վճիռներուն դէմ բան մը վարդապետած չունիմ„ ըսող մարդը՝ հիմա “Անոնց վճիռներուն

17. Աս յայտարարութեան սկըզբնագիրը տես ի Գործս Լուտ. լատ. Հատ. Ա. 209: — Աս յայտարարութեան մէջ Լուտերին՝ Փարիզի համալսարանին վրայ ըսածը՝ ուրիշ անգամ հարկաւոր կ'ըլլայ:

18. Սէքէնտորֆ (Գիրք Ա. Համ. Լէ. 47.) կը զրուցէ թէ Սղաւփից աղաչեց որ Լուտեր ինքը զինքը գրով կարենայ պաշտպանել, նոյնը Լուտեր ալ խնդրելով՝ կարդինալը զիջաւ:

19. Աս երկայն գրուածքը կը գըտնուի ի Գործս Լուտ. լատ. Հատ. Ա. 209. Բ. — 212. Բ:

մէջ Ս. Գրոց դէմ բան կայ,, կ՚ըսէր. ու "Ինքը զինքս եւ բոլոր իմ գրուածներս եկեղեցւոյ դատաստանին տակը կը ձգեմ,, ըսողը՝ հիմա իր ամէն ըսածները իբրեւ Ս. Գրոց մէջէն առնուած հաստատուն ճշմարտութիւն կը պաշտպանէր։ Անոր համար հօր պէս իրեն խրատ տուաւ ու յորդորեց որ իր անձին վրայ վստահանալով՝ Առաքելոյն խրատին հակառակ՝ հարկաւոր ու պատշաճ եղածէն աւելի գիտուն չըլլայ, եւ նոր վարդապետութիւններ հանելով՝ եկեղեցին տակն ու վրայ չընէ, որով թէ ինքը զինքը թէ ուրիշները յաւիտենական դատապարտութեան տակ չձգէ. հապա գլուխը եկեղեցւոյ առջեւը խոնարհեցընէ։ Աս խօսքերը Լուտերին հետ քաղցրութեամբ խօսելէն վերջը՝ վրան աս ալ աւելցուց որ եթէ աս ըսածներս պիտի չընես նէ, մէյ մ՚ալ առջեւս ելլելդ աւելորդ է. եւ աս ըսելով՝ թող տուաւ որ դուրս ելլէ [20]։

Նոյն օրը կարդինալը՝ Սդաւփիցն ու Վինկեսլաւ Լինքը իրեն կանչեց, ու հետերնին երկայն ատեն խորհեցաւ թէ ինչ ճամբով կարելի է արդեօք աս խռովութիւնները դադրեցընել, այնպէս որ ո՛չ եկեղեցւոյ խաղաղութիւնն աւրուի, ո՛չ քահանայապետին իշխանութեան վնաս մը հասնի, եւ ո՛չ ալ Լուտերին անարգանք մ՚ըլլայ։ Վերջը իրենց յանձնեց որ իրենք ալ փորձեն ու ջանան որ իրենց յամառ եղբօրը սիրտը կակղեցընեն եւ ուղղութեան բերեն։ Քահանայապետին անուամբը, հասարակաց խաղաղութեան ու Սաքսոնիայի հանգստեան համար այնչափ աղաչեց ու թախանձեց, որ իրենց տուած հրամանը կա-

20. Մեծաւ իրաւամբ կարդինալը զԼուտերը մերժեց, կ՚ըսէ Ռիֆէլ (Գիրք Ա. Գլ. Գ. 65). որովհետեւ աս յանդուգն մարդը իր անձնական կարծիքը՝ քրիստոնէական ճշմարտութեան հետ բացարձակապէս նոյն, ու ինքը զինքը՝ երկրորդ Երեմիայի կամ երկրորդ Պօղոսի տեղ կը դնէր։ Ու թէպէտ ինքը զինքը եկեղեցւոյ վճռոյն հնազանդելու պատրաստ կը ցուցընէր, բայց մինչեւ նոյն ատենը բռնած ճամբէն ու նոյն ժամանակը բանեցուցած բերնէն կը հասկցուէր որ աս հնազանդութիւնը ան մտօք միայն կը խոստանայ եթէ որ եկեղեցին իր (Լուտերին) անձնական կարծիքը իբրեւ ճշմարիտ ընդունի եւ հաստատէ նէ։ Աս ըսելէն վերջը՝ ծանօթութեան մէջ Լուտերին մէկ քանի խօսքերը կը բերէ, որոնցմով անիկա ինքը զինքը Երեմիա մարգարէին ու Պօղոս առաքելոյն կը համեմատէ. աս խօսքերէն մինակ մէկ հատը օրինակի համար հոստեղս կը թարգմանենք։ "Ես ալ Երեմիային հետ նոյն կռիւներու եւ անմիաբանութեան մարդն եմ, որ օր ըստ օրէ (ինչպէս կ՚ըսեն) նորանոր վարդապետութիւններով Փարիսեցիները կը զայրացընեմ։ Իսկ ես՝ ինչպէս որ գիտակ եմ որ սորվեցուցածս ամենազուտ աստուածաբանութիւն է, նոյնպէս ալ արդէն յառաջագոյն գիտէի որ ամենասուրբ Հրէից գայթակղութիւն եւ ամենագէտ Յունաց յիմարութիւն պիտի քարոզեմ։ Բայց կը յուսամ որ Քրիստոսի պարտական եմ, որն որ գուցէ ինծի ալ կ՚ըսէ. Իրեն ցուցընեմ որ իմ անուանս համար որչափ պէտք է որ չարչարուի։ Իսկ թէ որ չ՚ըսեր նէ, ինչո՞ւ զիս աս պաշտօնին մէջ անյաղթելի ըրաւ. Նաեւ ինչո՞ւ ուրիշ կերպով չսորվեցուց որ ան խօսիմ. իր սուրբ կամքն եղաւ,,։ Թուղթ առ Լինք, առ Տը Վէթէ, Հատ. Ա. 129։ — Աս խօսքերը ամենեւին մեկնութեան կարօտ չեն։

տարելու խօսք տուին 21 ։ Ասոնք գացին Լուտերին հետ խօսեցան․ որուն հետեւութիւնն ան եղաւ որ մէկ երկու օր վերջը (ամսոյն 17ին) Լուտեր կարդինալին աս նամակը գրեց ։

“Մ՚եծարգոյ Հայր ի Քրիստոս ։ Դարձեալ նորէն (քեզի) կու գամ … ։ Ցովհ․ Ստաւպից մեր գաւառապետը հետս խօսեցաւ որ աւելի խոնարհութեամբ վարուիմ, անձնական կարծիքներս մէկդի դնեմ… եւ քու մեծարգոյ Հայրութեանդ ինծի ունեցած մեծ սէրը ցուցուց ։ … Նոյնպէս հետս խօսեցաւ իմ սիրելի եղբայրս Վենկեսլաւ Լինք վարդապետը ։ … Քու մեծարգոյ Հայրութիւնդ զիս աւելի զօրաւոր եւ աւելի քաղցր կերպով չէր կրնար շարժել … ։ Ստուգիւ մեծ է քու մեծարգոյ Հայրութեանդ մարդասիրութիւնն ու խոհեմութիւնը, որով կը տեսնեմ թէ ուրիշ բան չէ՝ հապա միայն զիս կը փնտռես, որովհետեւ կրնայիր միայն իշխանական կերպով հետս վարուիլ … ։ Արդ կը խոստովանիմ որ քահանայապետին անունը առանց ակնածութեան, սաստկութեամբ ու առանց յարգութեան բանեցուցի … աս բանիս մէջ շատ աւելի խոնարհութեամբ, քաղցրութեամբ ու յարգութեամբ վարուելու էի ։ … Հիմայ եղածին վրայ մեծապէս կը ցաւիմ ու շնորհք կը խնդրեմ ։ Ասկից վերջը Աստուծոյ օգնականութեամբը … կը ջանամ որ ինքը զինքս ուղղեմ եւ ուրիշ կերպով խօսիմ ։ … Ալ ներողութեանց վրայ բան մը չեմ ուզեր խօսիլ․ եւ թէ որ աս բանս լմըննալու ըլլայ նէ, մէկ կողմը կը քաշուիմ․ միայն թէ ինծի աս գործքերուն ձեռք զարնել տուողներուն բերնին ալ չափ դրուի … ։ Իսկ … վարդապետութեանս ճշմարտութեանը գալով՝ թէ քու եւ թէ գաւառապետիս հրամանին եւ խորհրդին համեմատ՝ շատ սիրով ամէնն ալ ետ կը կանչէի, թէ որ կերպով մը խիղճս թող տար ։ Բայց գիտեմ որ ամենեւին մէկու մը հրամանին, խրատին, շնորհքին այնչափ պարտական չեմ որ խղճիս դէմ բան մ՚ըսեմ կամ ընեմ ։ … Միայն աս կը մնայ որ լաւագոյն պատճառէ մը յաղթահարիմ, այսինքն թէ որ արժանի ըլլամ հարսին (եկեղեցւոյ) ձայնը լսելու, որովհետեւ ստոյգ է որ ինքն ալ փեսային (Քրիստոսի) ձայնը կը լսէ ։ Անոր համար ամենայն խոնարհութեամբ կ՚աղաչեմ որ քու մեծարգոյ Հայրութիւնդ աս բանս մեր ամենասուրբ տէրը Լեւոն Ժ․ին իմացընէ, որպէս զի եկեղեցւոյն ձեռքովը աս տարակոյսները լուծուելով՝ ստուգութեամբ կարող ըլլայ իմացուիլ թէ ինչ բան ետ կանչելու եւ ինչ բանի հաւտալու է ։ Ուրիշ բանի չեմ բաղձար բայց եթէ եկեղեցւոյն լսելու եւ անոր հետեւելու„ … 22 ։

21․ Կուստաւ Փէյեր, Գլ․ Ե․ 88 ։ Օտէն, Գլ․ Ժ․ 111 ։

22․ Գործք Լուտ․ լատ․ Հատ․ Ա․ 215․ Բ․ գերմ․ Հատ․ Ա․ 120 ։

Այս ամէն պատմածներէս յայտնի կը տեսնուի որ Կայետանոս՝ մոլորեալը ուղիղ ճամբու բերելու համար՝ ամէն կարելի միջոցները բանեցուց, եւ նոյն իսկ Լուտերին ըսածին նայելով՝ հայրական խրատներով, խաղաղութեան խօսքերով ու իմաստուն յորդորանքներով ջանաց անոր խելքը գլուխը բերելու։ Աս ամէն բան ընելէն ետեւ՝ կը յուսար որ գուցէ Լուտեր մտածելով ինք իրեն կու գայ ու սխալմունքը կը ճանչնայ. բայց երբ որ աս վերը դրուած թուղթն առաւ, որն որ խաբէութեամբ լեցուն է, եւ որուն մէջ Լուտեր բացայայտ կ'ըսէ թէ վարդապետութիւնս ետ չեմ կանչեր, մանաւանդ երբ որ իմացաւ որ իրմէ (Կայետանոսէն) քահանայապետին բողոք մը գրեր ու մայր եկեղեցւոյն վրայ կպցուցեր է[23], ալ ան ատեն բոլոր յոյսն ու ակնկալութիւնը կորսնցուց, եւ յայտնի իմացաւ որ Լուտերին բոլոր ըրածն ու ըսածը խաբէութիւն ու նենգութիւն է։ Աւելի եւս իմացաւ խաբէութեան մեծութիւնը եւ արդար բարկութեամբ լեցուեցաւ, երբ որ մէկ երկու օր վերջը լսեց թէ Լուտեր գիշերով գաղտուկ քաղքէն ելեր գացեր է[24], յառաջ հրամայելով որ իր բողոքման թուղթը երկրորդ օրը քաղքին հրապարակները կպցընեն, եւ թէ արդէն իր ընկերները իրմէ յառաջ քաղքէն ելած են եղեր։

Ոտոգդոյին գրածին պէս “Թէպէտ Լուտերին այսպէս յանկարծակի ճամբայ ելլելը՝ կարդինալին դէմ յարգութեան պակսութիւն մը կը ցուցընէր, ի վերայ այսր ամենայնի ինք՝ իրեն ու իր կողմնակիցներուն դէմ ան խստութիւնը չբանեցուց, որուն որ իշխանութիւն ունէր, ու զէնքը չնզովեց. հապա բաւական սեպեց Սաքսոնիայի կայսրընտրին գրելը„[25]։ Արդ՝ Կայետանոս աս Փրեդերիկոս կայսրընտրին գրած թղթին մէջ իր

23. Բողոքումը՝ որ ընդարձակ գրուած մըն է, (Ցեօբ Գօրծօ Լութ. լութ. Հատ. Ա. 217 — 219.) Լուտեր աս բառերով լրած է. Աղէ՛ նըեղմէնքոյած փահանոյոդերէն՝ բանը ողէ՛ էմայած ու տեղմէնքոյած փահանոյոդերէն կը բողոքեմ։ Աս բողոքումը Հոկտեմբերի 16ին գրուած է, այս ինքն Կայետանոսին նամակ գրելէն օր մը յառաջ։ Լուտեր ամսոյն 18ին Կայետանոսին երկրորդ նամակ մ'ալ գրած է, որուն մէջ բողոք ընելը եւ Աւկոսպուրկէն ելլել ուզելը կը ծանուցանէ։ (Ցեօ է Գօրծօ. Լութ. լութ. Հատ. Ա. 216. Յէրմ. Հատ. Ա. 191. Բ։) Բայց ամէն պարագաները մէկդի առնելով եւ նոյն իսկ բողոքող մատենագիրներուն՝ Լուտեր գողունի փախուստ ընելուն նայելով, յայտնի կ'երեւայ որ Լուտեր ամէն բան անանկ կարգի դրած եւ այնպէս յարմարցուցած էր որ ինք Աւկոսպուրկէն ելլելէն վերջը՝ աս երկրորդ նամակը Կայետանոսին ձեռքը հասնի։

24. Լեւոն կը զրուցէ որ “Լուտեր՝ ... Օգոստինեանց գաւառապետը Ստաւփիցին եւ Աւկսպուրկի խորհրդականը Լանկեննմանդլին օգնականութեամբը, Հոկտեմբերի 20ին, կանուխ դեռ չլուսընցած՝ պարտէզի դռնէ մը ձիով փախաւ, ու միօրինակ ութը մղոն տեղ յառաջ գնաց„։ Մոան Գ. Հռծ Ա. Գլ. Ա. 84։ Գրեթէ նոյն բառերով կը պատմէ նաեւ Մենցլ, Հատ. Ա. Գլ. Ա. 39։

25. Գլ. ԺԵ. Հատ. Գ. 169։

Լութերին հետ ըրածները մէկիկ մէկիկ կը պատմէ, կը յայտնէ որ ինչպէս զինքը սիրով ընդունեցաւ, եւ որչափ ջանք ըրաւ ուղղելու եւ եկեղեցւոյ ու քահանայապետին հետ հաշտեցընելու։ Բայց աս ամէն բան, կ'ըսէ, փուճ տեղ գնաց. ինչու որ Լութեր իր մոլորութիւններուն մէջ յամառած մնաց, ու դեռ բան մը չորոշուած՝ գաղտուկ ձգեց փախաւ։ Վերջը իշխանը կը յորդորէ որ կամ Լութերը Հռոմ երթալու ստիպէ, ուր որ պատասխան տալու կանչուած էր, եւ կամ իր տէրութեան երկիրներէն դուրս հանէ. որպէս զի չըլլայ որ եկեղեցւոյ դէմ ելլող մարդու մը պաշտպանութիւն ընող սեպուի ու նախատուի[26]։ Բայց աս թուղթը իշխանին վրայ մեծ ազդեցութիւն մը չէր կրնար ընել. որովհետեւ բոլորովին Լութերին կողմը միտած էր, ու բոլոր զօրութեամբ անիկա պաշտպանելու կը ջանար։ Ուստի եւ կարդինալին նամակը շուտ մը Լութերին խաւրեց[27]. ան ալ իշխանին թուղթ մը գրելով՝ Աւկսպուրկ իր ու կարդինալին մէջ եղած բաներուն ուզածին պէս պատմելէն ետեւ՝ խրատ տուաւ որ զինքը Հռոմ չխրկէ։ Աւելի եւս իշխանին աչքը մտնելու համար՝ թղթին վերջերը կը զրուցէր թէ որպէս զի իմ պատճառաւս քեզի վնաս մը չհասնի, միտքս դրի որ երկիրներէդ դուրս ելլեմ. եւ ճամբայ ելլելու պատրաստ եղածի պէս՝ բոլոր իրեն ըրած բարերարութիւններուն համար շնորհակալ կ'ըլլար ու հրաժարական ողջոյնը կու տար[28]։

Լութեր աս թղթով միտքը դրածին հասաւ. որովհետեւ իշխանը քիչ մը ետքը Սփալադինին ձեռքով զինքը քաջալերեց որ չվախնայ, ու իր երկիրներէն ելլելու խորհուրդը մէկդի ձգէ, մինչեւ որ տեսնէ թէ բաները ինչպէս կը դառնան[29]։

26. Աս նամակը տես ի Գործս Լութ. լատ. Հատ. Ա. 219. Բ. գերմ. Հատ. Ա. 122։

27. Բլանք, Գիրք Բ. Հատ. Ա. 152։ — Սեքենտորֆ՝ պատմածներուն վրայ աս պարագան ալ կ'աւելցընէ որ կայսրընտիրը կարդինալին նամակին տուածին պէս՝ աղէկ սեպեց որ ամէն բանէն յառաջ կայսեր հետ բանը յարմարցընէ։ Ուստի եւ շուտ մը Ֆեֆինկերին թուղթ մը գրելով (Նոյեմբերի 19ին) եղածները պատմելէն վերջը՝ իրեն յանձնեց որ կայսրը յորդորէ ու ստիպէ որ Հռոմ գրէ, եւ իր իշխանութիւնը բանեցընէ որ գործը բարեկամաբար կարգի դրուի, եւ կամ կասկածաւոր չեղած մարդիկներու ձեռքով Գերմանիայի մէջ քննուի. Լութեր՝ հաստատուն հարցափորձի տակ մտնելու պատրաստ է, ըսաւ, եւ առանց տար՝ յետս կոչելու չփկրնար ափպուիլ։ Գէրբ Ա. Հատ. ԽԱ. 53։ Կայսրընտիրին բուն նամակը տես ի Գործս Լութ. գերմ. Հատ. Ա. 134։

28. Գործք Լութ. լատ. Հատ. Ա. 221. Բ. գերմ. Հատ. Ա. 123. Բ։

29. Մենցել (Հատ. Ա. Գլ. Ա. 40.), Լեւոն (Մասն Գ. Հտծ Ա. Գլ. Ա. 85.) եւ ուրիշ քանի մը երեւելի մատենագիրներ կը պատմեն որ Լութեր աս նամակը գրելէն ու ճաշի մը մէջ Վիդդենպերկցիներուն մնաք բարով ըսելէն ետեւ՝ օր մը սեղանի վրայ նստած տանն՝ կայսրընտիրէն թուղթ մ'առաւ, որուն մէջ իշխանը իր տժգոհութիւնը կը ցուցընէր որ դեռ իր երկիրներէն դուրս չէ ելած։ "Ասոր վրայ, կ'ըսէ Մենցել, Լութեր արտաքոյ կարգի

Կայետանոսին ալ անանկ կերպով մը պատասխան տուաւ որ բոլորովին Լուտերին կողմը միտած ըլլալը յայտնի կը ցուցընէր [30]. այնպէս որ կարդինալը ալ անկէ վերջը իրմէ ակնկալութիւնը բոլորովին կտրեց [31]:

շատ տրամեցաւ, եւ սա խօսքս ըսաւ. Հայր իմ եւ մայր իմ թողին զիս, այլ Տէր ընկալցի զիս: Բայց դեռ ամղանէն չելած՝ իշխանին կողմանէ երկրորդ հրաման մ'եկաւ որ Վիրգինպերկ մնայ,, : — Գուցէ սա ալ կայսրընտրին խոհեմութեան գործքերէն մէկն էր:

**30**. Աս նամակը տես ի Գործս Լուտ. լատ. հատ. Ա. 220. Բ. գերմ. հատ. Ա. 132:

**31**. Մինչեւ հիմա գրածներնէս հարկաւ ամէն մարդուն մտքին մէջ սա հարցումը կու գայ թէ կայսրընտրին այսպէս սաստիկ Լուտերին կողմը բռնելուն պատճառն ինչ էր: Մեր հաստատուն սովորութեան հետեւելով՝ հոս ալ մեր տեղը երեւելի բողոքող մատենագիրները խօսել կու տանք, որոնց վկայութիւնը չի կրնար կասկածելի ըլլալ: Ռոպերդսըն սապէս կը գրէ. "Փրեդերիկոսին, մինչեւ նոյն ատենը (մատենագիրն ալ ըստ ամենայնի աս ատենուան վրայ կը խօսի) զԼուտեր պաշտպանելը՝ աստուածաբանական նկատմունքներու պատճառաւ չէր, որովհետեւ կ'երեւայ որ սանկ վիճաբանութիւններէն բոլորովին հեռու էր եւ հոգը չէր: Աս պաշտպանութիւնը, ինչպէս ուրիշ անգամ ալ ըսինք, գրեթէ բոլորովին՝ քաղաքական պատճառներէ կը ծագէր (his protection flowed almost entirely... from political motives), եւ շատ ծածուկ կերպով ու զգուշութեամբ կը շնորհուէր: Ինք ո՛չ Լուտերի ճառերը լսած եւ ո՛չ ալ անոր գրքերը կարդացած էր. եւ թէպէտ բոլոր Գերմանիայի մէջ անունն ելած էր, ի վերայ այսր ամենայնի զինքը եւ ո՛չ աչքերը հանած ունէր, (ինչպէս Սեքենտորֆ եւ Ալեքսանտ կը զրուցեն),, : Եւ քիչ մը ետքը՝ քաղաքական պատճառներ ըսածին ինչ ըլլալը մեկնելով՝ սապէս կը գրէ: Կայսրընտիրը "Մեծ ծախքերու տակ մտած ու շատ ջանացած էր նոր համալսարան մը կանգնելու, որն որ ամէն գերմանացի իշխանի առջեւ մեծ ու երեւելի բան մըն էր. եւ յառաջագոյն տեսնելով որ Լուտերը հեռացընելը նոյն համալսարանին համբաւին ինչ վնասակար հարուած է, (ինչպէս Սեքենտորֆ կ'ըսէ,) զանազան պատճառանքներով (under various pretexts)... չէ թէ միայն Կայետանոս կարդինալին ըրած երկու խնդիրներուն հաւանելէն հրաժարեցաւ, հապա նաեւ Լուտերին ապահովութեան համար մեծ հոգ ցուցուց, (ինչպէս որ Ալեքսանտ կը գրէ),, : Քիչ մը վերջն ալ նոյն կայսրընտրին վրայ խօսելով՝ կ'ըսէ թէ "Աւելի քաղաքականութեան համար իրեն (Լուտերին) պաշտպանն էր, քան թէ համոզուած ըլլալուն համար՝ իր աշակերտը,, (was rather his protector from policy, than this disciple from conviction). Գիրք Բ. Հատ. Բ. 90—92: Ռոպերդսընին ըսածը ուրիշ երեւելի բողոքող մատենագիր մ'ալ կը հաստատէ: Կայսրընտիրը "իր հաստատած համալսարանը՝ իրեն սիրոյն գլխաւոր առարկան ըրած էր, եւ ամենեւին չէր յօժարեր սա համալսարանին երեւելի զարդն եղող մարդ մը (այսինքն զԼուտեր) Դեցլի ու անոր կողմն ըլլող Ֆրանգֆուրդցոց զոհելու, որոնք որ իր սիրական ծնունդին (Վիդգենպերկի համալսարանին) թըշնամիներն էին, որովհետեւ Ֆրանգֆուրդի եւ Վիդգենպերկի համալսարանները իրարու սաստիկ նախանձաւոր էին: Մէնցլ, Հատ. Ա. Գլ. Ա. 35: Աս երկու մատենագրէն աւելի Լուտերին կողմը բռնող բողոքող հեղինակ մ'ալ նոյնը կը զրուցէ: Ասիկա՝ ըսելէն վերջը որ Սաքսոնիայի կայսրընտրին՝ իսկզբան մէկէն ի մէկ Լուտերին դէմ չելլելուն պատճառը՝ իր խոհեմութիւնն էր, որով ուզեց նախ բանը աղէկ մը հասկընալ, իբրեւ անտեղի կը համարի ան կարծիքը՝ որն որ ոմանք կը հաստատեն թէ Սաքսոնիայի կայսրընտիրը՝ Մօգունտիայի կայսրընտրին հետ աղէկ չըլլալով՝ անոր դէմ ըլլալու համար Լուտերը պաշտպանած ըլլայ: Եւ ետքը վրան սա

Այս բաները Գերմանիա եղած ատեն՝ Քահանայապետը Լուտերը իր մոլորութիւններէն ուղղելու եւ խելքը գլուխը բերելու համար ուրիշ միջոց մըն ալ ի գործ դրաւ, եւ անոր շատ

ալ կ'աւելցընէ որ նէթէ Փրեդերիկոսին բռնած ճամբուն՝ (խոհեմութենէն զատ) ուրիշ երկրորդական պատճառ մ'ալ տալ հարկ ըլլայ նէ, աս է որ "Կայսրընտիրը իր հաստատած Վիդդենպերկի համալսարանին պայծառութեան մեծ հոգ ունենալով՝ ստուգիւ աս բանս զինքը իր կարծիքին մէջ հաստատեց որ Լուտերին դէմ աս կռիւներուն մէջ չխառնուի. որովհետեւ աս կռիւներուն մէջ մտնալուն թէ անոնց պատճառաւ համալսարանը զարմանալի կերպով մը կը յառաջանար„: Բլանք, Գիրք Ա. Հատ. Ա. 116, 117:

Աս բողոքող մատենագիրներուն ըսածին բոլորովին հակառակը կը գրուցէ Մեռլ տ'Օպինեէ, որն որ կը հաստատէ թէ կայսրընտիրը մասնաւոր տեսիլքով մը Լուտերին կողմը բռնելու կը ստիպուէր: Նոյն տեսիլքը գրքիս սկիզբը (Գիրք Ա. Գլ. Ա. Ծանօթ. 1.) ըրած խոստմունքնիս կատարելու համար՝ հատուածս նոյն մատենագրին խօսքերովը բառ առ բառ կը դնենք:

"Ամենայն Սրբոց տօնախմբութիւնը կըմօտենար, ու աս ատենիս քանի մը ժամանակագիրները դիպուած մը կը պատմեն՝ որ թէ եւ կարեւորութիւն մը չունի ալ նէ աս թուականիս պատմութեանը, կրնայ սակայն ծառայել զանիկայ բացայայտելու: Աս դիպուածն է կայսրընտրին մէկ երազը, որն որ արժան կը սեպեմք աս տեղս պատմել. քանզի թէպէտեւ կարելի է թէ անիկայ պատմողները քանի մը պարագաներ աւելցուցած ըլլան. բայց իր գլխաւոր մասերը անտարակոյս ճշմարիտ են:

"Սաքսոնիայի Փրիդերիկոս կայսրընտիրը անատենը իր Շվէյնիցի բերդն էր՝ կըսեն ժամանակագիրները, Վիդդէմպերկէն վեց մղոն հեռու: Հոկտեմբերի 31ին առաւօտուն իր եղբօրը Յովհաննէս դքսին հետ՝ (որ անատենը իր հետը իշխանութիւն կըվարէր, ու իր մահուանէն ետեւ առանձին թագաւորեց,) ու իր ատենադպրին հետ ըլլալով, կայսրընտիրը ըսաւ դուքսին.

"Եղբայր, քեզի երազ մը պիտի պատմեմ որ աս գիշեր տեսայ, որուն նշանակութիւնը գիտնալու շատ կըցանկամ: Այնպէս խորին տպաւորուած է ան իմ մտքիս մէջ, որ նէթէ հազար տարի ապրելու ըլլամ պիտի չմոռնամ զանիկայ, վասն զի երեք անգամ տեսայ, ու ամէն մէկ անգամին մէկ մէկ նոր պարագաներով„:

Յովհաննէս Դուքս. "Աղէ՞կ երազ է նէթէ գէշ„:

Կայսրընտիր. "Չեմ գիտեր. Աստուած գիտէ„:

Յովհաննէս Դուքս. "Դուն ալ քեզ անհանգիստ մի ըներ անոր վրայ. պատմէ անիկայ ինծի„:

Կայսրընտիր. "Երեկ իրիկուն պառկելու երթալով յոգնած ու տրտմած, իմ աղօթքս ընելուս պէս քունս տարաւ, ու երկուք ու կէս ժամ հանգիստ քնացայ: Ետքը արթընցայ, ու մինչեւ կէս գիշեր բազմակերպ խորհուրդներով անհանգիստ եղայ: Կըմտածէի թէ Ամենայն Սրբոց տօնախմբութիւնը ինչպէս կատարեմ. քաւարանի խղճալի հոգիներուն համար աղօթեցի, ու խնդրեցի Աստուծմէ որ զիս՝ իմ խորհրդականներս ու նաեւ իմ ժողովուրդս ճշմարտութեան առաջնորդէ: Վերստին քնացայ, ու անատենը երազիս մէջ տեսայ որ Ամենակարողն Աստուած վարդապետ մը խրկեց ինծի, որ Պօղոս առաքեալին ճշմարիտ որդին էր: Բոլոր սուրբերը անոր հետն էին՝ Աստուծոյ հրամանովը, որ վարդապետին վրայով վկայութիւն տան ինծի, ու իմացընեն թէ խաբէական դիտաւորութիւնով եկած չէր ան, հապա անոր բոլոր ըրածը Աստուծոյ կամացը համեմատ էր: Նոյն ատենը խնդրեցին ինծմէ որ բարեհաճիմ թոյլ տալ անոր Վիդդեմպերկի բերդին եկեղեցւոյն դրանը վրայ բան մը գրել. աս խնդիրը ատենադպրին բերնովը շնորհեցի: Անոր վրայ վարդապետը գնաց ու սկսեց գրել, բայց անանկ մեծ գրերով որ Շվէյնիցէն կրնայի կարդալ իր գրածը: Իր գործածած գրիչը այնչափ երկայն էր՝ որ անոր ծայրը մինչեւ Հռովմ հասաւ, հոն բաղ-

անգամ խնդրածին պէս՝ վէճի տակ եղած նիւթին վրայ կոն-
դակով մը միտքը յայտնեց (Նոյեմբերի 9ին)։ Այս բանիս վրայ
Ռոսգոյ այսպէս կը խօսի. “Լեւոն՝ յամառ կամ անստոյգ քա-
“մած տափածի (Ծան. Այն ժամանակի
պապին անունն էր Leon, որ կը-
նշանակէ առիւծ։) մը ականջները
“վիրաւորեց, ու պապին գլխու երկը-
“պատկեան թագը շարժեց։ Բոլոր
“կարդինալները ու իշխանները ար-
“տարինօք վազելով ջանացին բանել
“թագը։ Մնացեալներուն հետը գուն
“ու ես ալ՝ ճղքայր, ջանացինք օգ-
“նել անոր։ Իմ թեւս երկընցուցի,
“բայց այն նոյն րոպէին արթընցայ
“թեւս երկընցուցած, մեծ շփոթու-
“թեան մէջ ինկած, ու խիստ
“սրտմտած այն վարդապետին՝ որ
“անանկ ամբարշտութեամբ բաներ էր
“իր գրիչը։ Քիչ մը ինքզինքիս ե-
“կայ. — միայն երազ է եղեր ա-
“սածս„։

“Բայց տակաւին կէս քուն էի, ու
“կրկին իմ աչքերս գոցեցի, եւ ահա
“երազս շարունակեցաւ։ Առիւծը տա-
“կաւին անհանգստութիւն կրելով
“այն գրիչէն՝ իր բոլոր զօրութիւնովը
“սկսեց մռնչել, անանկ որ բոլոր
“Հռովմ քաղաքը ու կայսերութեան
“բովանդակ վիճակները վազեցին իմա-
“նալ թէ ինչ է բանը։ Պապը հրա-
“ման ըրաւ մեզի որ այն վարդապետը
“զսպենք, եւ յատկապէս ինծի ուղ-
“ղեց իր խօսքը, վասն զի իմ երկրիս
“մէջ կը բնակէր ան։ Նորէն արթըն-
“ցայ. “Հայր մեր„ մը ըսի։ Աղաչեցի
“Աստուծոյ որ սրբազան հայրը պահ-
“պանէ, ու ետքը նորէն քնացայ„։

“Անատենը տեսայ որ Տէրութեան
“բոլոր իշխանները, ու անոնց հետ
“գուն եւ ես, բազմութեամբ Հռովմ
“կերթայինք, ու իրարու ետեւէ կը
“ջանայինք աս գրիչը կոտրել. բայց
“մենք որչափ որ կաշխատէինք՝ ան
“այնչափ կը պնդանար, ու անանկ կը-
“դիմանար որ կարծես թէ երկաթէ
“շինուած էր. վերջապէս յոգնեցանք
“մնացինք։ Անատենը վարդապետին
“հարցուցի՝ (վասն զի ինծի կը թուէր
“որ երբեմն Հռովմ եւ երբեմն Վիտ-
“դեմպերկ էի,) թէ ո՞ւր գտաւ ինքը այն
“գրիչը, եւ ինչո՞ւ համար այնպէս զօ-
“րաւոր է ան։ Աս գրիչը, պատաս-
“խան տուաւ, առնելով Պոհեմիայի
“սագի (Ծան. Լուտերէն հարիւր տա-
րիի չափ առաջ Պոհեմիայի մէջ ծաղ-
կեցաւ Յովհաննէս Հուս, որ ճշմար-
տութեան համար նահատակուե-
ցաւ։ Իր անունը Հուս՝ կընշանակէ
սագ։) մը թեւէն էր, հարիւր տա-
“րեկան։ Ես իմ հին վարդապետնե-
“րուս մէկէն ընդունեցի զանիկայ,
“անոր զօրութիւնը աս է որ մարդ
“չիկրնար հանել անոր միջուկը, ու
“ես ինքս ալ զարմացած եմ ասոր
“վրայ։ — Մէյմալ յանկարծ ձայն
“մը լսեցի. վարդապետին երկայն գրի-
“չէն ուրիշ շատ գրիչներ ելան. Եր-
“րորդ անգամ արթընցայ, եւ ահա
“առաւօտ էր„։

Յովհաննէս Դուքս. “Պարոն ատե-
“նադպիր, ինչ կըսես հրամանքդ։
“Երանի թէ Յովսէփ մը կամ Դանիէլ
“մը ըլլար հոս Աստուծմէ լուսաւո-
“րուած„։

Արխիդուքսը. “Վեհափառ տէրը,
“գիտէք հասարակաց այն առածը,
“թէ օրիորդներուն՝ ուսման հետե-
“ւողներուն ու մեծ իշխաններուն
“երազները ընդհանրապէս գաղանի
“նշանակութիւն մը ունին։ Բայց մենք
“ասոր նշանակութիւնը առեն մը
“պիտի չիմանանք, մինչեւ որ անով
“նշանակուած բաները պատահին։
“Վասն որոյ անոր կատարումը Աս-
“տուծոյ յանձնեցէք, ու անիկայ անոր
“ձեռքը ձգեցէք„։

Յովհաննէս Դուքս. “Կըմիաբանիմ
“քեզի՝ պարո՛ն ատենադպիր. չվայլեր
“որ մեր մտքերը ամբոխեմք ասոր նշա-
“նակութեանը վրայ։ Աստուած բո-
“լորը իր փառքին պիտի դարձընէ„։

Կայսրընտիրը. “Աստուած իր ողոր-
“մութիւնովը այնպէս ընէ։ Բայց ես
“ընաւ չպիտի մոռնամ աս երազը։
“Մէկ մեկնութիւն մը մտածեցի, . . .
“բայց անիկայ ինծի համար կը պա-
“հեմ։ Ժամանակը պիտի ցու-
“ցընէ թէ արդեօք շիտակ իմացած եմ
“անիկայ„։

“Այսպէս էր այն խօսակցութիւնը՝
ինտոր որ պատմագիրները կըվկայեն,
որ պատահեցաւ Հոկտեմբերի 31ին՝
Շվէյնիցի մէջ„։ Հատ. Ա. 123
— 124։

Ստուգիւ Լուտերի եւ իր նորո-
գութեան արժանի տեսիլք։ Բայց
զարմանք որ ո՛չ վերը յիշուած մա-
տենագիրները զանիկա կը յիշեն, եւ
ո՛չ ալ նոյն իսկ կայսրընտիրը այս-

հանայքին[32] դէմ նզովից հասու միջոցը գործածելու տեղ, անոր անկեղծութիւնը փորձի մէջ դնել ուզեց. ու զինքը անանկ վիճակի մը մէջ դրաւ, որով՝ եթէ ստուգիւ եկեղեցւոյ անսխալութեան կը հաւատար նէ, դառնալն ու իր պարտքը կատարելը՝ իրեն դիւրին բան մը կ'ըլլար. իսկ թէ որ ասիկա չընելու ըլլար նէ՝ ան ատեն պէտք էր որ իր ամրացած տեղէն դուրս ելլէր, եւ անկէ ետքը ալ եկեղեցւոյ հնազանդ անդամ ըլլալէն կը դադրէր„[33]: Արդ քահանայապետը աս իր կոնդակովը կը յայտնէր որ եկեղեցւոյ գանձին մէջ Քրիստոսի ու սրբոց արդիւնքները ժողվուած են, եւ քահանայապետք՝ բանալեաց զօրութեամբ՝ կրնան ներողութեան ձեռքով աս արդիւնքը կենդանի մարդիկներուն ու ննջեցեալներուն մերձեցընել: Աս ըսելէն ետեւ՝ առանց Լուտերը յանուանէ յիշատակելու՝ աս վարդապետութեան դէմ խօսողներուն ու գրողները ընդհանրապէս կը նզովէր[34]:

Լուտեր քահանայապետին կոնդակը դեռ չտեսած՝ Կայետանոսին առ Փրեդերիկոս գրած թղթէն իմանալով որ իր վրայ ըլլալու քննութիւնը Հռոմի մէջ յառաջ պիտ'որ երթայ, որովհետեւ հաստատութեամբ գիտէր որ պիտի դատապարտուի, անոր համար քահանայապետէն՝ ընդհանուր ժողովքի բողոքեց: Աս բողոքման թղթին մէջ, որն որ Նոյեմբերի 28ին թուականն ունի, Լուտեր կ'ըսէ թէ Ես քահանայապետին իշխանութեան դէմ դառնալ չեմ ուզեր, ինչու որ ճշմարիտ ու սուրբ վարդապետութեան մէջ եմ եւ ոչ ալ եկեղեցիէն բաժնուիլ կ'ուզեմ: Բայց որովհետեւ քահանայապետը ուրիշ մարդիկներու պէս մոլորական մարդ մըն է, անոր համար ընդհանուր ժողովքի կը դիմեմ. եւ վերջին հարկը՝ զիս աս բանս ընելու բռնադատեց[35]: Բողոքման վերջերը խօսքը Կայետանոսին վրայ դարձընելով՝ իրեն դէմ կը տրտնջէր, իբրեւ թէ հետը խըստութեամբ ու անագորոյնութեամբ վարուած ըլլայ, ան մարդը՝ որուն քաղցրութիւնը ինք քանի մը օր յառաջ կը գովէր[36]:

պէս առանձինն աստուածային տեսլեամբ ազդեցութիւն առնողի մը պէս կը վարուի:

32. The refractory priest.

33. Գւ. ԺԵ. Հատ. Գ. 170:— Գրեթէ նոյն կերպով, բայց աւելի համառօտ կը խօսի Լեւոն ալ, Մատն. Գ. Հտծ Ա. Գլ. Ա. 85:

34. Աս կոնդակը տես ի Գործս Լուտ. լատ. Հատ. Ա. 229:

35. Լուտերի բողոքումը տես ի Գործս Լուտ. լատ. Հատ. Ա. 231:

36. Տես Լուտերի առ Կայետանոս գրած թուղթը, եր. 44: Դարձեալ առ նոյն կարդինալը գրած երկրորդ թղթին մէջ, որուն վրայ աս Գլխոյն 23. ծանօթ. մէջ յիշատակութիւն ըրինք, այսպէս կ'ըսէ. "Քրիստոսի գթոյն ու ինծի ցուցուցած ստորին մեծ գթութիւններուդ համար կ'աղաչեմ...„: (Per Christi viscera, et insignem tuam mihi exhibitam clementiam.) Գործ. Լուտ. լատ. Հատ. Ա. 216. Բ: Ասկից զատ՝ առ Սփալադին Հոկտեմբերի 31ին գրած մէկ թղթին

Բայց երբ որ քահանայապետին կոնդակը ձեռքը հասաւ-նէ, ալ բոլորովին կատղեցաւ, եւ մինչեւ նոյն ատեն պահած քիչ մը չափաւորութիւնն ալ մէկդի ձգելով՝ սկսաւ յայտնապէս իր մոլար վարդապետութիւնները գրով ու խօսքով քարոզել եւ ամէն կողմ տարածելու ջանալ։ — Ժողովուրդը՝ որ միշտ նորութիւն կը սիրէ եւ ազատութեան կը ցանկայ, մեծ մտադրութեամբ կը լսէր աս մոլորութիւնները, որոնք մինչեւ նոյն ատենները անլուր բաներ էին, եւ զիրենք հոգեւոր իշխանութեան լծոյն տակէն կը հանէին։ — Լուտերի աս վարդապետութիւնները սրտանց ընդունողներուն մէջ երեւելի եղան Փիլիպպոս Մելանքթոն, որն որ քիչ մը յառաջ Վիդդենպերկ եկած երիտասարդ մըն էր [37], ու համալսարանին մէջ յունարէն լեզու կը սորվեցընէր. եւ Անդրէաս Գարլշդատ, որն որ Լուտերին՝ վարդապետութեան խոյրը տուած էր [38]։ Ասոնք երկուքն ալ Լուտերին ներքին ու մտերիմ բարեկամներն էին։

մէջ Կայետանոսին վրայ խօսելով՝ "ինծի հետ շատ մեծ ու առատօրէն քաղցրութեամբ եւ գթութեամբ վարուեցաւ„ (Benevolentia et clementia in me eximia fuit et copiosa.) կ'ըսէ։ Աո. Օրէնք, Հատ. Ա. Գլ. Ժ. 112։ Նոյնպէս Աւկսպուրկէն ետ դառնալէն վերջը առ կայսրընտիրը՝ գրած թղթին մէջ (տես եր. 46.) թէպէտ եւ կարդինալին դէմ կը տրտնջէ, բայց միանգամայն՝ հետը քաղցրութեամբ ու սիրով վարուած ըլլալը կը խոստովանի։ Ահաւասիկ իր խօսքերը. "Ա... [continues] ճշմարտապէս եւ աստուծոյ մարդասէր մարդուն ունեցած յարգութիւնս ու մեծարանքս չէս կը ստիպէ որ սըրտիս ամբողջ բոլորը զգալեմ։ Գերմաներէն բնագրին մէջ "gütig und freundlich„ կը գրէ, որն որ լատիներէն թարգմանիչը՝ "Optimus et humanissimus„ կը թարգմանէ։ Գործք Լութ. Ենէր. Հատ. Ա. 128. Բ. լաթ. 225։

37. Մելանքթոն նոյն (1518) տարին Օգոստոսի մէջ Վիդդենպերկ եկած էր։

38. Տես էջ 11, 12։



# ԳԼՈՒԽ Գ

## Միլթիցին ըրածները

Քահանայապետը Միլթիցը Գերմանիա կը խրկէ։ Միլթից խաղաղութիւնները դադրեցնելու համար Լութերին առջեւ քաղցրութիւն կը բանեցնէ։ Լութեր՝ Միլթիցին յորդորելովը քահանայապետին նամակ մը կը գրէ։ Լութերին բուն միտքը։ Լութեր յանձն կ'առնէ որ Դրիերի արքեպիսկոպոսին առջեւը քննուի, եւ ետքը դէմ կը դառնայ։ Լութերի մէջ գրաւածքը։

# 1519

ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԸ տեսնելով որ Լութերին կողմը օրէ օր կը զօրանայ ու մոլորութեան հերձուածը շարունակ չորս կողմը կը տարածուի, ինքն ալ քաղցր հովիւ՝ իր ոչխարներն ազատելու համար սկսաւ ամէն կարելի միջոցները ի գործ դնել։ Եւ որովհետեւ Լութերին այսչափ յանդգնելուն գլխաւոր պատճառը՝ Սաքսոնիայի կայսրընտրէն գտած պաշտպանութիւնն էր, անոր համար Լեւոն ամէն բանէն յառաջ Փրեդերիկոսը շահիլ ուզեց։ Աս բանս գլուխ հանելու համար "Որոշեց, կ'ըսէ Ռանքէ [1], որ կայսրընտրին առաքելական շնորհաց նշանակ մը խաւրէ, որուն իշխանը միշտ բաղձացած էր [2], այս ինքն ոսկի վարդը,,։ Աս ոսկի վարդը քահանայապետները ամէն տարի մեծ պահքին չորրորդ կիրակին կ'օրհնեն ու եկեղեցւոյ առջեւ արդիւնք ունեցող մեծ իշխանի մը կը խաւրեն [3]։ Քահանայապետը աս ոսկի վարդը կայսրընտրին տանելու պաշտօնը՝ իր սենեկապետը Միլթիցին յանձնեց, որն որ Սաքսոնիայի ազնուական տնէ մըն էր, ու կայսրընտրին պալատը եւ Վիդդենպերկ մեծ համարում ունէր [4]։ Լեւոն ասոր հրաման տուաւ որ Փրեդերիկոսին առջեւը դնէ, որ եթէ եկեղեցիէն ապստամբող միայնակեցի մը պաշտպանութիւն ընելու ըլլայ նէ, եկեղեցւոյն ինչ վտանգ կը հասնի, եւ

1. Գիրք Բ. Գլ. Գ. Հատ. Ա. 387։

2. Կուստաւ Ֆիցեր (Գլ. Ա. 96.) կը զրուցէ որ կայսրընտիրը աս վարդը 1515ին խնդրած էր։ Իսկ Սեքքենտորֆ (Գիրք Ա. Համ. Խէ. 61.) կ'ըսէ որ "Շուրջ 1515ին կայսրընտիրը նոյն Միլդիցին (որուն ձեռքով քահանայապետը խրկեց) յանձնած էր որ իրեն ոսկի վարդին պարգեւը հոգայ,,։

3. Լութեր (էր լաթ. Գործոց յառաջաբանին մէջ) եւ քանի մը բողոքող մատենագիրներ քահանայապետին աս գործքը իբրեւ շողոքորթութիւն ու խաբէութիւն կը պարսաւեն. բայց Բալլաւիչինի (Գիրք Ա. Գլ. ԺԳ. Հատ. Ա. 64.) կը ցուցընէ որ քահանայապետին աս գործքը ամենեւին անպատշաճութիւն մը չունէր։ Ինչու որ Փրեդերիկոս մինչեւ նոյն ատեն ըրածներովը՝ ստուգիւ եկեղեցւոյ առջեւը մեծ արդիւնք ունէր, որովհետեւ Վիդդենպերկի մէջ Ամենասրբոց փառաւոր եկեղեցին շինել տուած ու մեծ մասունք կապած էր, միանգամայն նոյն քաղաքը երեւելի համալսարան մը հաստատած էր, որուն մէջ թէ՛ աստուածաբանական եւ թէ՛ արտաքին ուսմունք կը սորվեցընէին։

4. Տես Գ. Գլխոյն 8. Ծանօթ։

իր տանը ինչպիսի մեծ նախատինք կ'ըլլայ։ Դարձեալ յանձնեց Միլդիցին որ մեծ փութով ետեւէ ըլլայ Լուտերին Գերմանիայի մէջ գրգռած խռովութիւնները խաղաղցընելու։ Երկու թուղթ ալ տուաւ ձեռքը, որոնք կայսրընտրին պալատին երկու երեւելի պաշտօնատէրներուն ուղղուած էին, այս ինքն Փեֆինկէր՝ կայսրընտրին խորհրդականին ու Սփալատին՝ մատրանապետին։ Աս թղթերուն մէջ քահանայապետը իրենց կ'աղաչէր ու կը յորդորէր որ Փրեդերիկոսը համոզեն որ Լուտեր եկեղեցւոյ հնազանդիլ չուզէ նէ՝ զինքը իր տէրութեան երկիրներէն դուրս հանէ [5]։

Երբ որ Միլդից Գերմանիա հասաւ, Փրեդերիկոս՝ ինչ միտք գալը գիտնալով՝ զինքը պատշաճ սիրով ու յարգութեամբ չընդունեցաւ։ Մանաւանդ թէ իմացուց որ բոլորովին Լուտերին կողմը հակած է. վասն զի թէպէտ յայտնի չէր ըսեր որ Լուտերին քարոզած վարդապետութիւնները կ'ուզեմ պաշտպանել, կամ թէ վարդապետածները աղէկ ու ճշմարիտ բաներ են, բայց անանկ լեզու մը կը բանեցընէր, որով միտքին մէջինը կը յայտնէր, որովհետեւ կ'ըսէր թէ Ես իրեն դատաւոր ըլլալ ու զինքը դատապարտել կամ հարստահարել չեմ ուզեր [6]։ Եւ ասով Լուտերին այնչափ իշխանութիւն ու ազատութիւն թող կու տար, որչափ որ անոր հարկաւոր էր իր գործքը՝ ուզածին պէս առանց արգելքի յառաջ տանելու։ Մանաւանդ որ Մաքսիմիլիանոս կայսրը մեռած ըլլալով [7], կայսրընտիրը՝ մինչեւ նոր կայսեր մը ընտրուիլը՝ տէրութեան մէջ գլխաւոր իշխանութիւնն ունէր, որովհետեւ կայսեր փոխանորդը կը սեպուէր. ուստի եւ Լուտեր ամենեւին առանց վախի եւ համարձակ ուզածը կ'ընէր [8]։ Իշխանը եւ ոչ ուզեց քահանայապետին ընծան անոր դեսպանին ձեռքէն անձամբ առնել. հապա վրան շատ ժամանակ անցնելէն վերջը (Սեպտեմբերի վերջը կամ Հոկ-

5. Աս թղթերը տես ի Գործս Լուտ. լատ. Հատ. Ա. 233. եւ 234. գերմ. Հատ. Ա. 138 եւ 139։

6. Ռոսգոյ, Գրլ. ԺԹ. Հատ. Դ. 6։

7. Կայսրը նոյն տարին Յունուարի 12ին մեռած էր։ Լուտեր (իր Լատ. Գործոց յառաջաբանին մէջ) Փետրուարի մէջ մեռաւ, կ'ըսէ։

8. Աս բանս Լուտեր ինքն ալ կը խոստովանի։ Մաքսիմիլիանոսին մեռնելէն վերջը՝ Փրեդերիկոս կայսրընտրին փոխանորդութեան ժամանակը "կամաց կամաց մրրիկը զիջաւ, կ'ըսէ ... եւ աս իշխանին հովանաւորութեան տակը Աւետարանը (այս ինքն իր մոլար վարդապետութիւնը) երջանկութեամբ յառաջ կ'երթար եւ ընդարձակ կը տարածուէր. իր իշխանութիւնը շատերը կը շարժէր"։ Լատ. Գործոց յառաջաբանին մէջ։ Նոյն խօսքը յառաջ կը բերէ ու կը հաստատէ Սեքենտորֆ ալ (Գիրք Ա. Հատ. ԽԶ. 60.)։ Իսկ Բլանք (Գիրք Բ. Հատ. Ա. 217.) Լուտերին աս խօսքը յառաջ բերելէն վերջը՝ աս ալ կը զրուցէ որ Աս պատճառաւ՝ Լուտերի "հակառակորդները չէին կրնար համարձակիլ իրեն դէմ բռնական միջոցներ բանեցընել"։

տեմպերի սկիզբը) ուրիշները իր անուամբ ընդունեցան[9]։ Չէր ուզեր, կ'ըսէ Բալլաւիչինի[10], ընծային յարգութիւն մը ցուցընել, որովհետեւ անոր փոխարէն բան մը պիտ'որ չընէր։

Արդ Միլդից աս բաներէն մակաբերելով որ Լուտերի հետ իշխանութեամբ ու խստութեամբ վարուելով՝ չկրնայ պիտի բան մ'ընել[11], միտքը դրաւ որ հետը քաղցրութեամբ ու ողոքելով խօսի, որ գուցէ անով կարենայ զինքը շահիլ։ Ուստի եւ հետը խօսած ատեն՝ (առջի անգամ Ալդենպուրկ 1519ին Յունուարի մէջ իրարու հետ տեսնուեցան,) միշտ իրեն գովութիւններ կու տար, ու ըլած շփոթութիւններուն յանցանքը՝ հակառակորդներուն վրայ կը ձգէր[12]։ Բայց ասանկ վարուելովը՝ օգուտ մը չընելէն զատ՝ Լուտերին բնական հպարտութեան աւելի եւս ճարակ տուաւ։ Սակայն Լուտեր իր յամառութիւնն

9. Սեքենտորֆ, Գիրք Ա. Համ. խէ. 63։ Կուստաւ Ֆիցեր, Գլ. Ջ. 120։ Բլանք, Գիրք Գ. Հատ. Ա. 276։

10. Գիրք Ա. Գլ. ԺԳ. Հատ. Ա. 65։

11. «Կայսրընտիրը յայտնեց ու Միլդից ալ ինք իրմէ տեսաւ որ Լուտերի հետ բռնութեամբ բան մը չիկրնար ընել»։ Լիտոն, Մատն Գ. Հտծ Ա. Գլ. Ա. 86։

12. Լուտեր շատ տեղ իր ու Միլդիցին մէջ եղած խօսքերը կը գրէ, որոնք թէպէտ չինծու կամ գէթ չափազանց բաներ կ'երեւան, բայց որովհետեւ բոլոր բողոքող մատենագիրները զանոնք վեր վար կը կրկնեն, անոր համար մէկ հատը միայն կ'ուզենք հոստեղս թարգմանել. մանաւանդ որ Բալլաւիչինիին եւ ուրիշ երեւելի մատենագիրներուն բառերէն կրնանք իմանալ որ Միլդից՝ Լուտերին հետ շատ անզգուշութեամբ կը խօսէր։ Արդ Լուտեր (Էր լոփ. Գործոց յառաջաբանին ԺԷ) այսպէս կը գրէ։ «Միլդից հետս շատ երկայն խօսեցաւ, որ պապին հետ հաշտուիմ։ Անիկա 70 առաքելական կոնդակ ունէր, որպէս զի թէ որ Փրետերիկոս իշխանը զիս իրեն մատնելու ըլլայ նէ, ինչպէս որ պապը վարդին ձեռօքը կը խնդրէր, ամէն մէկ քաղաքը մէյ մէկ հատ կպցընէ, եւ այնպէս ապահովութեամբ զիս Հռոմ տանի։ Իմ առջեւս սրտին խորհուրդը դուրս կը հանէր ու կ'ըսէր. Ո՛վ Մարտինոս, ես կը կարծէի որ դուն ծեր աստուածաբան մըն ես, որ կրակարանին առջեւը նստած՝ այնպէս ինք իրմէդ կը վիճաբանիս։ Բայց հիմա կը տեսնեմ որ դեռ երիտասարդ եւ առողջ ես։ Թէ որ հետս 25,000 զինաւորեալ մարդիկ ունենայի, վստահութիւն չէի ունենար որ կարենամ զքեզ Հռոմ հասցընել։ Բոլոր ճամբուն վրայ մարդիկներուն միտքը քննեցի, որ նայիմ վրադ ինչ կարծիք ունին. եւ ինչ կը տեսնեմ, ուր որ պապին կողմը մէկ հոգի կը գտնէի, հոն քու կողմդ պապին դէմ երեք հոգի կը գտնուէր։ Բայց ան ծիծաղական բան է, որ պանդոկներուն մէջ ստորին կանանց ու աղջկանց կարծիքը կը քննէ եղեր, թէ Հռոմայ Աթոռոյն վրայ ինչ համարում ունին. իսկ անոնք՝ որովհետեւ աս բառը չեն հասկընար եղեր, կարծելով թէ հասարակ գործածուած աթոռի վրայ կը խօսի, պատասխան կու տան եղեր, որ Մենք ինչ գիտնանք՝ դուք Հռոմ ինչ տեսակ աթոռ ունիք, փայտէ՛ թէ քարէ»։ — Ինչպէս վերը ըսինք, ասոնք չինծու կամ գոնէ չափազանցութեամբ պատմուած բաներ կ'երեւան. բայց եւ այնպէս Միլդիցը բոլորովին արդարացընելու բաւական փաստ մը չկայ։ Եւ արդէն յայտնի է որ աս դեսպանը իր աստիճանին եւ առած հրամանին համեմատ չվարուելով՝ թէ՛ իրեն եւ թէ՛ զինքը խրկողին պատիւ ըլլալու տեղ՝ նախատինք եղաւ իրեն ալ զինքը խրկողին ալ։ Տես Բալլաւիչինի, Գիրք Ա. Գլ. ԺԳ. Հատ. Ա. 65, 66։

ու յանդգնութիւնը դեռ յայտնի չէր ցուցըներ, հապա Միլդիցին իրմէ խնդրածներուն՝ կեղծաւորութեամբ քիչ մը կը զիջանէր ու կատարելու խօսք կու տար, որով Միլդից աւելի կը խաբուէր, ու կը կարծէր որ անիկա միտքը փոխած ըլլայ։ Նախ առաջին Միլդիցին խնդրածին համեմատ՝ Լուտեր խոստացաւ որ քահանայապետին խոնարհական նամակ մը գրէ, եւ ամէն բան տեղն ի տեղը պատմելէն ետեւ՝ զինքն ու իր դատաստանը անոր յանձնէ եւ անոր կամացը տակ ձգէ[13]։ Եւ աս իր խոստումը կատարելով՝ Մարտի 3ին Լեւոնին աս նամակը գրեց։

«Ամենասուրբ Հայր։ Դարձեալ հարկը կը ստիպէ որ ես՝ մարդիկներուն մէջ ամենէն անպիտանը ու երկրի հողը, ձեր Սրբութեան ու անչափ փառաւորութեանը հետ խօսիմ։ Անոր համար հաճեցէք գթութեամբ՝ հայրենի ու Քրիստոսի տեղը բռնող ականջներուդ[14] մտուցանել ինծի՝ ձեր փոքրիկ ոչխարին, ու մարդասիրութեամբ՝ իմ մայելս լսեցէք։ — Կարոլոս Միլդից՝ ձեր Սրբութեանը սենեկապետն ու պատուական մարդը հոս մեր քովն եկաւ, եւ ձեր Սրբութեանն անուամբը մեր ամենապայծառ իշխանը Փրեդերիկոսին առջեւը՝ Հռոմայ եկեղեցւոյն ու ձեր Սրբութեանը դէմ իմ ըրած անպատուութեանս ու յանդգնութեանս վրայ մեծապէս տրտնջելէն ետեւ՝ ուզեց որ հատուցում ընեմ։ Երբ որ ես աս բանս լսեցի նէ՝ շատ ցաւեցայ որ իմ հաւատարիմ ծառայութիւնս այնպէս գէշի առնուեր է, որ Հռոմէական եկեղեցւոյ պատուոյն պաշտպանութեան համար ըրածս՝ նաեւ անոր գլխոյն առջեւը՝ անպատուութիւն եւ ամէն չարիքներուն առիթ սեպուի։ — Բայց հիմա ինչ ընեմ, ամենասուրբ Հայր։ Ո՛ր կողմը դառնալիքս չեմ գիտեր. ձեր բարկութեան ծանրութիւնը չեմ կրնար տանիլ, եւ չեմ գիտեր թէ ինչ կերպով ազատիմ։ Իզմէ կը պահանջեն որ վիճաբանութիւնս (95 նախադասութիւններս) ետ կանչեմ։ Թէ որ ետ կանչելովս՝ յուսացուած վախճանին հասնիլ կարելի ըլլար նէ, առանց դանդաղելու ետ կը կանչէի։ Բայց որովհետեւ հակառակորդներուս դէմ դառնալովս ու ղսպել ջանալովը՝ գրուածներս յուսացածէս շատ աւելի տարածուած[15] ու շատերուն սրտերուն մէջ սաստիկ խորունկ տպաւորած են, անոր համար ետ չեմ կրնար կանչել։ Հիմա Գերմանիան՝ խելացի, հմուտ ու խոհեմ մարդիկներով զարմանալի կերպով մը ծաղկած է. արդ՝ թէ որ Հռոմայ եկեղեցին պատուել կ՚ուզեմ նէ, կարծեմ թէ աղէկ հոգ տանելու եմ որ ամենեւին ետ չկան-

13. Սէքէնտորֆ, Գիրք Ա. Համ. ԽԷ. 61։ Ուլէնպերկ, Գլ. Գ. Համ. Դ։

14. Paternas ac vere Christi vicarias aures.

15. Quam unquam speraveram.

չեմ: Ինչու որ ետ կանչելս ուրիշ բան չէ, բայց եթէ Հռոմայ եկեղեցին աւելի արատաւորել եւ ամենուն ոտնակոխ տակը ձգել,,:

Հոսատեղս՝ Ներողութիւն քարոզողներուն վրայ ամբաստանութիւններ ընելէն ետեւ՝ նամակը այսպէս յառաջ կը տանի: "Եւ արդ, ամենասուրբ Հայր, Աստուծոյ եւ բոլոր իր արարածներուն առջեւը կը վկայեմ, որ երբեք ուզած չեմ եւ հիմայ ալ չեմ ուզեր կերպով մը Հռոմէական եկեղեցւոյ ու ձեր Սրբութեան իշխանութեան դպչիլ, եւ կամ նենգութեամբ մը եղծանել. մանաւանդ թէ կատարելապէս կը խոստովանիմ որ նոյն եկեղեցւոյն իշխանութիւնը՝ ամէն բանէն վեր է, ու երկինքը եւ երկրի վրայ ամենեւին բան մը անկէ վեր բանելու չէ, բայց միայն Յիսուս Քրիստոս՝ ամենուն տէրը [16]: Անոր համար ձեր Սրբութիւնը ականջ չդնէ ան չարախօսներուն՝ որոնք Լուտերին վրայ ուրիշ կերպ կը խօսին,,:

Ու ամէն բան գրելէն ետեւ՝ կը սկսի քահանայապետին խոստմունքներ ընել, եւ այսպէս կը խօսի: "Միայն մէկ բան մը՝ որն որ աս նիւթիս մէջ կրնամ ընել՝ յօժարութեամբ ձեր Սրբութեանը կը խոստանամ, այս ինքն որ ներողութեանց նիւթին վրայ ասկէ վերջը ամենեւին չխօսիմ ու լռութիւն պահեմ, (բաւական որ հակառակորդներս ալ իրենց ընդունայն շատխօսութիւններէն ետ կենան,) գրուած մը տարածեմ ժողովրդեան մէջ, որով յորդորուին Հռոմայ եկեղեցին ճշմարտութեամբ յարգելու, եւ ներողութիւն քարոզողներուն անկարգութիւնը՝ Հռոմայ եկեղեցւոյն չտան. դարձեալ իմ Հռոմայ եկեղեցւոյն հետ չարաչար բանեցուցած սաստկութեանս չհետեւին . . . : Թէ որ ասկէ աւելի բան մը կարենամ ընել կամ ճանչնամ նէ՝ անտարակոյս պատրաստ կ'ըլլամ ի գործ դնելու: Քրիստոս ձեր Սրբութիւնը յաւիտեան պահէ,, [17]:

Միլդից Լուտերէն աս ալ խնդրած էր որ բոլոր աս բաներուն քննութիւնը Գերմանիայի եպիսկոպոսի մը յանձնէ. խոստանալով որ ինք քահանայապետէն հրաման կ'ընդունի, որ իր դատին քննութիւնը նոյն եպիսկոպոսին յանձնուի. եւ մինչեւ որ ան եպիսկոպոսը բան մը որոշէ նէ՝ երկու կողմն ալ նոյն նիւթերուն վրայ լռութիւն պահեն: Լուտեր աս ալ յանձն առաւ, եւ խօսք տուաւ որ եթէ որոշուած եպիսկոպոսը իր վարդապետութիւնը մոլորական գտնելու եւ իր մոլորած ըլլալը ցուցընելու ըլլայ

16. Լուտերին խօսքերուն սկզբնագիրն աս է. Plenissime confiteor hujus Ecclesiae potestatem esse super omnia, nec ei præferendum quidquam sive in cœlo sive in terra, præter unum Jesum Christum Dominum omnium.

17. Լուտերին նամակը տես ի Գործս Լուտ. լատ. Հատ. Ա. 235. գերմ. Հատ. Ա. 144:

նէ՝ ինք եւս կանչէ։ Այս ամէն բաները մէջերնին որոշելէն ետեւ երկուքին հաւանութեամբը՝ Դրիերի կայսրընտիր արքեպիսկոպոսը դատաւոր ընտրուեցաւ 18։

Քահանայապետին սենեկապետը այս ամէն բաները տեսնելով մեծապէս կ՚ուրախանար, կարծելով որ երեւելի գործք մը գործած ու Լուտերը ճամբու բերած ըլլայ. մտքէն ալ չէր անցըներ որ անոր գործքերուն ու խօսքերուն մէջ կեղծաւորութիւն կամ նենգութիւն մ՚ըլլայ։ Անոր համար անգամ մը մէկտեղ կերակուր ուտելէն ետեւ՝ ամէն բան լմնցածի պէս՝ Լուտերի համբոյր տուաւ։ — Բայց մէյ մը տեսնենք թէ Լուտեր նոյն ատենները ինչ մտքի վրայ էր, ու Միլթիցին վրայ ինչ կարծիք ունէր։ Ստոյգ է առ քահանայապետը գրած թղթին մէջ մեծ խոնարհութիւն ու հպատակութիւն կը ցուցընէ. բայց արդէն աղէկ միտ դնողը նոյն թղթոյն մէջի խօսքերէն ալ իր մեծ հպարտութիւնն ու ինքը զինքը անսխալական դնելը յայտնի կը տեսնէ։ Սակայն նոյն ատենները իր բարեկամներուն գրած նամակները իր սիրտը աւելի բացայայտ կը ցուցընեն։ Քահանայապետին նամակը գրելէն քանի մը օր ետքը՝ առ Սպալատին գրած մէկ թղթին մէջ այսպէս կը խօսի 19. "Պէտք է որ քու ականջդ գաղտուկ ըսեմ, որ չեմ գիտեր թէ պապը՝ բուն Նեռն է, չէ նէ անոր առաքեալը։ Այս ստոյգ է որ իր վճիռներուն մէջ Քրիստոսի մեծամեծ նենգութիւններ կ՚ընէ ու զինքը խաչ կը հանէ 20։ Սիրտս կը լռուի ու աղէքս կտոր կտոր կ՚ըլլայ, երբ որ կը տեսնեմ որ Քրիստոսի ժողովուրդը այսպէս կը խաբուի"։ Ուրիշ նամակի մը մէջ Միլթիցին վրայ այսպէս կը խօսի. "Իր հրաւէրն ընդունեցայ, ու իրիկունը մէկտեղ անցընելէն վերջը՝ ինծի համբոյր տուաւ եւ իրարմէ բաժնուեցանք։ Ես այնպէս վարուեցայ իբրեւ թէ այս իտալական խաբէութիւններն ու կեղծաւորութիւնները չեմ հասկընար" 21։ Նոյնպէս ուրիշ մէկ բարեկամին՝ Միլթիցին վրայ այսպէս կը գրէ. "Խոնութիւնը՝ սաստիկ խաբէութեամբ կեղծաւորեալ բարեկամութեան դարձաւ..."։

18. Բլանք, Գիրք Բ. Հատ. Ա. 176։ Լեւոն, Մասն Գ. Հատ Ա. Գլ. Ա. 86։ Ռանքէ, Գիրք Բ. Գլ. Գ. Հատ. Ա. 389, 391։

19. Քահանայապետին թուղթը, ինչպէս վերը տեսանք, Լուտեր Մարտի 3ին գրած էր, իսկ Սպալատինին թուղթը՝ նոյն ամսոյն 13ին գրած է։ Տես առ Օդինի, Հատ. Ա. Գլ. ԺԱ. 130։

20. Լուտերին՝ այս բանս ինչչափ սաստութեամբ գրելը՝ իր քիչ մը յառաջ ըսածէն յայտնի կ՚երեւայ. "Պէտք է որ, կ՚ըսէ, ամենայն հաւատքը՝ Հռոմայ եկեղեցւոյ պատուած հաւատքին հետ համաձայնի։.. Յիսուսի Քրիստոսի շնորհակալ կ՚ըլլամ որ մեծ հրաշքով մը այս միակ եկեղեցին աշխարհքիս վրայ կը պահէ... այնպէս որ երբեք ճորով մը ճշմարիտ հաւատքէն հեռացած չանի"։ Փրիէրասին դէմ գրածին մէջ. Գործք Լուտ. լատ. Հատ. Ա. 176։

21. Այս թուղթը Փետրուարի 20ին գրուած է։ Տես առ Սեքէնտորֆի, Գիրք Ա. Համ. ԽԷ. 63։

Այսպէս իրարմէ բարեկամութեամբ ու համբուրիւ, այս ինքն Յուդայի համբուրիւ, բաժնուեցանք. Նաեւ զիս յորդորելու առեն արցունք ալ կը թափէր: Իսկ ես ընդհակառակն այնպէս կը ձեւացընէի որ աս կոկորդիլոսի արցունքը չեմ հասկընար,, 22 :

Աս մնաց վրայ էր Լուտեր. բայց միամիտ Միլտիցը, վերը ըսածնուս պէս, անոր կեղծաւորութիւններէն խաբուելով՝ ձեռք զարկածը շուտով կատարել կ'ուզէր: Ուստի աւելի եւս Լուտերին աչքը մտնելու եւ սիրտն իրեն շահելու համար, գիտնալով որ Ներողութիւն քարոզողները՝ վրանին եղած ամբաստանութիւններէն բոլորովին ազատ չեն, Դեցլը իրեն կանչեց, ու սաստիկ յանդիմանութիւն տուաւ, որ անփութութեամբ՝ իր իշխանութեան տակ Ներողութիւն քարոզողներուն անկարգութիւնը չխափանեց. մանաւանդ թէ քահանայապետին իշխանութեան վրայ ապաւինելով՝ անանկ բաներ ըրաւ, որոնք չեն կրնար պաշտպանուիլ, եւ անոնցմով տաճարական Գահին նախատինք բերաւ, ու մեծամեծ խռովութիւններու պատճառ եղաւ 23 : Ետքը ելաւ Դրիէր գնաց, արքեպիսկոպոսին հետ խօսեցաւ, ու Լուտերի հետ ըրածներն առջեւը դնելով՝ զանիկա մոլորութիւններէն ազատելու ունեցած յոյսն իմացուց: Կայետանոսն ալ նոյն առենը հոն ըլլալով՝ Միլտից անոր ալ աղաչեց որ արքեպիսկոպոսին հետ իրեն օգնէ, որպէս զի ձեռք զարկած գործքը յաջողութեամբ գլուխ տանին: Երկուքն ալ սիրով խոստացան որ ձեռքերնէն եկածն ընեն. եւ ետքը որոշեցին որ Լուտեր գայ ու Գոպլէնց քաղաքը իրարու հետ տեսնուին ու խօսին 24 :

Ան առեն Միլտից եղածը բոլոր Լուտերին գրեց, ու տուած խոստումը յիշեցընելով՝ սիրով աղաչեց որ որոշուած քաղաքը

22. Առ Սիլուիոս Եկրանոս, փետրուարի 2ին գրած նամակին մէջ: Տես առ Օտէնէ, Հատ. Ա. Գլ. ԺԱ. 129:

23. Բալլաւիչինի, Գիրք Ա. Գլ. ԺԴ. Հատ. Ա. 66: Ռիֆէլ, Գիրք Ա. Գլ. Գ. 75: — Աս երկու մատենագիրները եւ ուրիշ շատ թէ ուղղափառ եւ թէ բողոքող մատենագիրներ կը պատմեն, որ Դեցլ՝ Միլտիցէն առած յանդիմանութենէն ան աստիճան այլայլեցաւ, որ ծանր հիւանդութեան մէջ իյնալով՝ քիչ մը ետքը մեռաւ: Օտէն կը զրուցէ որ Դեցլ՝ Աստուծոյ դատաստանին առջեւն ելլելէն (մեռնելէն) քիչ մը յառաջ Միլտիցին նամակ մը գրելով յայտնեց որ թշնամիներուն իր վրայ ըսածները սուտ խօսք ու զրպարտութիւն է: Հատ. Ա. Գլ. ԺԱ. 126. Ծանօթ: — Լուտեր (իր լատ. Գործոց յառաջաբանին մէջ) կը զրուցէ որ Դեցլին հիւանդ ըլլալը "իմացածիս պէս՝ մեռնելէն յառաջ իրեն շատ քաղցր թուղթ մը գրեցի, մխիթարեցի, ու քաջալերեցի որ իմ վրէժխնդրութենէս բան մը չվախնայ,,: — "Թող կարդացողները իրենք իրենցմէ գատեն, կ'ըսէ Ռոսգոյ, որ արդեօք աս բանս իրօք իբրեւ մխիթարութիւն դիտուած էր,,: (Whether this was really intended as a consolation, the reader will judge.) Գլ. ԺԹ. Հատ. Դ. 7. Ծանօթ:

24. Ուլէնպերկ, Գլ. Գ. Համ. Դ: Բլանք, Գիրք Բ. Հատ. Ա. 179:

դալ. աս ալ իմացուց իրեն որ Կայետանոսն ալ հոն պիտի գըտնուի: Լուտեր կամ արդէն խօսք տուած ատեն՝ կատարելու միտք չունեցած ըլլալով, եւ կամ ետքէն միտքը փոխած ըլլալով՝ յանձն չառաւ երթալ: Բայց որպէս զի խոստման դէմ ըրած չսեպուի, պատճառ կը բերէր որ Լիփսիա՝ Էքին հետ վիճաբանութիւն պիտ'որ ընեմ. արդէն ժամանակը մօտիկցած է, եւ ես չեմ կրնար աս վիճաբանութենէն ետ կենալ: Սակայն աս պատճառն ըլլալու ալ չըլլար, կ'ըսէր, ի վերայ այսր ամենայնի աս իզմէ խնդրածդ չէի կրնար կատարել, որչափ որ Կայետանոս հոն է. ինչու որ Աւկսպուրկ հետս անանկ վարուեցաւ, որ կը տարակուսիմ թէ արդեօք քրիստոնեայ է[25]: — Ասանկով Միլթիցին բոլոր յոյսն ու ակնկալութիւնը փուճ ելաւ, եւ ամէն իր աշխատութիւններն անպտուղ եղան: Եւ թէպէտ ետքը Լուտերին հետ նորէն տեսնուեցաւ, եւ զանազան միջոցներ բանեցուց զինքը Ճամբայ բերելու համար, բայց անոնք ալ օգուտ մը չըրին:

Լուտեր նոյն ատենները[26] դուրս հանեց ան գրուածքը՝ որն որ առ քահանայապետը գրած թղթին մէջ խոստացած էր[27], եւ որուն մէջ այնպէս կը խօսի որ կարծես թէ մինչեւ նոյն ատենը յայտնապէս պաշտպանած մոլորութիւններուն մեծ մասը ետ կը կանչէ, կամ անոնց բոլորովին հակառակը կը վարդապետէ: Աս գրուածքով միանգամայն իր վրան եղած հերետիկոսութեան կասկածը կը ջանայ վրայէն վերցընել: "Լսեցի, կ'ըսէ գրուածքին սկիզբը, որ ոմանք իմ գրուածներս, եւ մանաւանդ անոնք՝ որոնց մէջ գիտուններուն հետ սաստկութեամբ կը վարուիմ, միամիտ մարդիկներուն առջեւը սխալ կը մեկնեն, եւ զիս քանի մը նիւթերու մէջ անոնց առջեւը կասկածելի կ'ընեն. ոմանք ալ՝ որոնք հաւատոյ մէջ խախուտ են, ասանկ խօսքերէն առիթ առնելով՝ սրբոց բարեխօսութեան, քաւարանի, բարեգործութեանց, աղօթից, պահոց..., Հռոմայ եկեղեցւոյ իշխանութեանը

25. Լուտեր իր Թղթին մէջ ուրիշ պատճառներ ալ կը բերէ, ինչպէս Ճամբուն վտանգաւոր ըլլալը, իր աղքատութիւնը, եւ այլն. բայց կ'ուզէ ցուցընել որ գլխաւոր պատճառը՝ Կայետանոսին հոն ըլլալն է: "Ըսենք թէ աս ամէն արգելքները վերնան, կ'ըսէ, ի վերայ այսր ամենայնի չեմ ուզեր որ աս դատը մեծարգոյ տէր կարդինալին առջեւը քննուի, չեմ ուզեր որ ինք ներկայ ըլլայ, եւ ոչ ալ արժանի է. որովհետեւ Աւկսպուրկ զիս քրիստոնէական հաւատքէն հեռացընելու փորձեց: Կը տարակուսիմ որ ինք ուղղափառ քրիստոնեայ ըլլայ: Կը ցաւիմ որ առաքելական դատաւորներն անանկ մարդիկներ կ'ըլլան, որ զՔրիստոս մերժելու կը ջանան,,: Առ Ռէֆֆլէ, Գիրք Ա. Գլ. Գ. 79, 80. Ծանօթ:

26. Բլանքին (Գիրք Բ. Հատ. Ա. 218. Ծանօթ. 129.) եւ Կուստաւ Ֆիցերին (Գլ. Զ. 99.) ըսածին նայելով՝ Լուտեր աս գրուածքը նոյն (1519) տարին Փետրուարի մէջ հրատարակած է:

27. Տես երես 56:

վրայ արհամարհելով կը խօսին, [illegible] բաներ ըլլան: Անոր համար ես՝ որչափ որ կարելի է նէ՝ պէտք է որ անոնց ընտ-[illegible] դէմ դնեմ եւ ինքը զինքս յայտնեմ: Միան-գամայն ամէն բարեպաշտ քրիստոնէից կ'աղաչեմ որ զիս աղէկ հասկընան, եւ զիս իմ կամացս դէմ մեկնողներուն՝ իմէ աւելի չհաւտան„:

Ըս յառաջաբանութիւնն ընելէն ետեւ՝ գրուածքը վեց գլուխ կը բաժնէ, ու անոնց մէջ վերը յիշուած նիւթերուն վրայ համառօտիւ կը խօսի:

Ա. "Սրբոց բարեխօսութեան վրայ: — Բոլոր քրիստոնէից հետ կը հաւտամ ու կը խոստովանիմ որ, կ'ըսէ, սուրբերը [illegible] անոնց [illegible] է: Ինչու որ ով կրնայ ասոր դէմ դնել թէ մինչեւ ասօրուան օրը սրբոց մարմիններուն ու գերեզմաններուն քովը Աստուած յայտնապէս իր սրբոց անուամբը հրաշքներ կը գործէ„: Անիկա ըսելէն ետեւ՝ վրան կ'աւելցընէ որ սուրբերը՝ աւելի հոգեւոր կարօտութիւններուն քան թէ մարմնաւոր բաներու համար օգնութեան կանչելու է, եւ կը տրտնջէ որ հիմակուան ժամանակը մարդիկ սուրբերէն շատ մեծի մասին մարմնաւոր բաներ կը խնդրեն: Դարձեալ վար կը զարնէ անոնք՝ որոնք կը կարծեն թէ սուրբերը աս բաները իրենք իրենց զօրութեամբը կ'ընեն, եւ ոչ թէ Աստուած անոնց բարեխօսութեամբը:

Բ. "Քաւարանի վրայ: — Պէտք է հաստատութեամբ հաւատալ եւ [illegible] որ ճշմարիտ է թէ (քաւարանի) խեղճ հոգիները [illegible] կը [illegible], եւ մարդը՝ աղօթքով, պահքով, ողորմութեամբ եւ ամէն կերպով բանով անոնց օգնութիւն ընելու պարտական է„: Հոս՝ տանջանքին տեսակն անյայտ է, ու չենք գիտեր որ քաւարանի հոգիները կրած տանջանքներումնին՝ միայն հաստա-ցում կ'ըլլան, չէ նէ քաշածնին իրենց օգուտ մ'ունի, ըսելէն վերջը, "Մեզի այնչափ միայն հրամայուած է որ իրենց օգնենք„ կ'ըսէ, եւ թէպէտ ներողութեանց՝ քաւարանի հոգիներուն օգուտ մ'ունենալը կ'ուրանայ, սակայն խօսքը կը լմնցընէ ըսելով որ "Բայց... [illegible] ըլլայ„:

Գ. "Ներողութեան վրայ: — Հասարակ մարդու մը բաւական է գիտնալը որ ներողութիւնը՝ [illegible] է. այնպէս որ (ներողութիւնը) [illegible] շատ վար է, որոնց հրամայուած են եւ մենք կը պարտաւորինք ընելու: Ներողութիւնը ազատ ու կամայական բան մըն է, ներողութիւն չառնողը՝ մեղք չ'ըներ, առնողն ալ բան մը չի վաստըկիր...: Ներողութեան վրայ ասկից աւելի ինչ գիտնալու բան կայ նէ՝ գիտնոց ու դպրոցներուն թող տալու է„:

Դ. «Ս. Եկեղեցւոյ պատուիրաններուն վրայ: — Աստուծոյ հրամանները եկեղեցւոյ հրամաններէն վեր բռնելու է,... բայց երկուքն ալ կատարելու է»:

Ե. «Բարեգործութեանց վրայ: — Ըսած եմ եւ դարձեալ կ'ըսեմ, մէկը չիկրնար բարեպաշտ ըլլալ եւ բարիք գործել, թէ որ Աստուծոյ շնորհքը զինքը բարեպաշտ չ'ըներ նէ. մէկը գործքերով բարեպաշտ չ'ըլլար, հապա բարեգործութիւնները՝ միայն բարեպաշտ մարդէն կը գործուին, ինչպէս որ պտուղները ծառը չեն շիներ, հապա ծառը պտուղ կը բերէ, եւ ինչպէս որ Քրիստոս ալ կ'ըսէ թէ Գէշ ծառը աղէկ պտուղ չիկրնար բերել: Անոր համար ամէն գործքերը՝ որչափ որ ալ բարի ըլլան, որչափ որ ալ գեղեցիկ երեւան, թէ որ շնորհքէն չեն ծագիր նէ՝ պարապ են. բոլորովին պարապ չեն, ինչու որ Աստուած շնորհքէն դուրս եղած բարեգործութիւնները ժամանակաւոր բարիքներով, հարստութեամբ, պատուով, զօրութեամբ, իշխանութեամբ, ուրախութեամբ, բարեկամութեամբ, ճարտարութեամբ, խելացութեամբ, եւայլն, կը վարձատրէ. հապա յաւիտենական կեանքը չեն տանիր: ... Աստուծոյ երկիւղը՝ Աստուծոյ պարգեւ մըն է, եւ մէկը ինք իրմէ չիկրնար ունենալ. անոր համար ուր որ շնորհք ու երկիւղ չկայ՝ հոն ամէն բարեգործութիւնները չար գործք են»:

Զ. «Հռոմէական եկեղեցւոյն վրայ: — Անհերքելի փաստ կայ որ Աստուած Հռոմայ եկեղեցին ամէն եկեղեցիներէն աւելի պատուած է. ինչու որ հոն Պետրոս ու Պօղոս առաքեալները, 46 քահանայապետ ու հարիւր հազարներով մարտիրոսներ արիւննին թափեցին, դժոխք ու աշխարհք յաղթուեցան. այնպէս որ մարդ կրնայ դիւրաւ իմանալ որ Աստուած՝ աս եկեղեցւոյն շատ մասնաւոր կերպով մը կը նայի: Եւ թէպէտ դժբախտութեամբ Հռոմ քաղաքը հիմա անանկ վիճակի մը մէջ է որ աւելի աղէկ կրնար ըլլալ, ի վերայ այսր ամենայնի ոչ աս բանը եւ ոչ ուրիշ պատճառ այնչափ մեծ է եւ կամ կրնայ ըլլալ՝ որ մարդուն հարկ ըլլայ նոյն եկեղեցիէն ելլել կամ բաժնուիլ. մանաւանդ թէ որչափ որ բաները հոն աւելի գէշնան՝ այնչափ աւելի պէտք է մերձենալ ու յարիլ. ինչու որ բաժնուելով ու արհամարհելով չ'աղէկնար: Նաեւ սատանային համար զԱստուած պէտք չէ թող տալ, եւ ոչ ալ չարերուն բաժնուելուն համար ուրիշ բարեպաշտներէն հեռանալու է: Մանաւանդ թէ ամէնուն մէկ մեղաց կամ չարեաց համար... սէրը կտրելու եւ հոգեւոր միութիւնը բաժնելու չէ: ... Բայց թէ Հռոմայ Աթոռոյն իշխանութիւնն ու գլխաւորութիւնը որչափ է... թող ասոր վրայ գիտունները իրենց մէջերնին վիճեն...: Մենք՝ միայն միաբանութեան միտ դնելու ենք, եւ

ամենեւին ինչ կերպով որ ըլլայ նէ՝ ժամանակաւորական հրամաններուն դէմ դնելու չենք : — Ահաւասիկ կը յուսամ որ յայտնի եղաւ թէ ես Հռոմէական եկեղեցիէն բան մը վերցընել կամ առնել չեմ ուզեր, ինչպէս որ իմ սիրելի բարեկամներս (Հակառակորդներս) վրաս կը զրուցեն : Բայց թէ որ քանի մը շողոքորթներու տեղի չեմ տար, կարծեմ թէ աղէկ կ'ընեմ... : Հռոմէական եկեղեցւոյն՝ ամէն բանի մէջ հետեւելու կամ հնազանդելու է. բայց երբեք ամենեւին մէկ շողոքորթի հաւատալու չէ,, : 28

Լուտերին աս խօսքերը թէպէտ տեղ տեղ մոլորութիւններով խառն են, ի վերայ այսր ամենայնի՝ ըստ մեծի մասին ուղղափառ վարդապետութեան շատ զօրաւոր փաստ են, եւ իր սորվեցուցած մոլորութեանց դէմ սաստիկ եւ աղդու վկայութիւն : Եւ թէպէտ ինք նոյն տարին աս գրուածքը ետ կանչած ալ ըլլայ 29, բայց այնպէս ալ զօրութիւնը չինուազիր. որովհետեւ ետքը ինչ ըսէ նէ ըսէ, յայտնի է որ գրած ատենը բոլոր ըսածները իբրեւ յայտնի ճշմարտութիւն կը գրէր, եւ կը խոստովանէր որ ամենէն ընդունուած ուղղափառ վարդապետութիւն է, եւ ներքին համոզմամբ կը պաշտպանէր :

28. Բոլոր գրուածքը տես ի Գործս Լուտ. գերմ. Հատ. Ա. 167. Բ. — 169. Բ:

29. Այսպէս կը զրուցէ Բլանք. Գիրք Բ. Հատ. Ա. 218. Ծանօթ. 129:



# ԳԼՈՒԽ Ե

## Լիփսիայի վիճաբանութիւնը

Լութէր Գարլշդատին հետ Լէփսիա կ'երթայ։ Ինչպէս Գարլշդատ Էքին Հետ կը վիճի, ետքը՝ Լութէր եւ վերջապէս Գարլշդատ երկրորդ անգամ։ Վիճաբանութեան ատեն քաղքին մէջ պատահածները։ Վիճաբանութեան ինչ վախճան ունեցաւ։ Երասմոսին մէկ նամակը։

# 1519

ԼՈՒՏԵՐԻՆ՝ առ Միլդից գրած թղթին մէջ յիշած վիճաբանութիւնը, որուն վրայ անցած գլխին մէջ խօսեցանք [1], աս էր։ Գարլշդատ, որն որ բոլորովին Լութերին մոլորութիւններուն ետեւէն կ'երթար, զանոնք պաշտպանելու համար՝ Էքին դէմ քանի մը նախադասութիւններ դուրս հանած էր. Էք ալ նոյն կերպով իրեն պատասխան տուած էր։ Քիչ մը ժամանակ տանկ յառաջ երթալէն ետեւ՝ մէջերնին խօսք ըրած էին որ ասուածնական վիճաբանութիւն մ'ընեն [2]։ Էք տեսնելով որ Լութեր միշտ բոլոր ուղղափառ աստուածաբանները վիճաբանութեան կը հրաւիրէ, եւ մինչեւ նոյն ատենը մէկը երեւցած չըլլալով՝ ինքը զինքը անյաղթ մարդու մը տեղ կը դնէ եւ ուղղափառները կ'արհամարհէ, ուզած էր որ սն ըլլալու վիճաբանութեան մէջ Լութեր ալ մտնէ։ Անիկայ ալ՝ աս բանս իրեն փառասիրութիւնը յագեցընելու յարմար առիթ մը սեպելով՝ չէ թէ միայն սիրով հաճութիւն տուած էր, հապա ամէն կերպով ետեւէն իյնալով՝ հաւանութիւն առած էր որ նոյն վիճաբանութեան մասնակից ըլլայ [3]։ — Վիճաբանութեան տեղւոյն համար Լիփսիա քաղաքը որոշուած էր, Գէորգ Սաքսո-

1. Տես երես 59։
2. Սեքէնտորֆ, Գիրք Ա. Համ. ԾԳ. 72։ Ռանգը, Գլ. Ժ. Հատ. Դ. 8։
3. Բլանք (Գիրք Բ. Հատ. Ա. 182, 183.) կը ցուցնէ որ Էք, իր վիճաբանելու վարժութեան վրայ վստահանալով, ետեւէն կ'իյնար որ Գարլշդատէն զատ՝ Լութերին հետ ալ վիճաբանի, ու զինքը աւելի եւս դրդելու համար 13 նախադասութիւն ալ դուրս հանեց, որոնցմով Լութերին գլխաւոր վարդապետութիւններուն հակառակը հաստատելով՝ խօսքը աւելի Լութերին քան թէ Գարլշդատին ուղղած ըլլալը կը ցուցնէր։ — Աս միտքը ատկէն վերջը, որն որ ինչպէս ամէն մարդ կը տեսնէ, պարզ մակաբերութիւն մըն է, խօսքը այսպէս յառաջ կը տանի. "Աս բանով, կ'ըսէ, Լութեր անտարբեան գրգռուեցաւ, որ չէ թէ միայն Էքին նախադասութիւններուն դէմ անմիջապէս 13 նախադասութիւն դուրս հանեց; հապա ամէն ճիգն ի գործ դրաւ Գէորգ Սաքսոնիայի դքսէն... իրեն համար ապահովութեան թուղթ ու հրաման առնելու, որ ինքն ալ վիճաբանութեան մէջ կարող ըլլայ երեւալ,,։ Քիչ մը վերջն ալ կը պատմէ որ ինչպէս կայսրընտրին պալատին մէջ աս վիճաբանութեան՝ Լութերին վրայ ունենալու հետեւանքներէն շատ կը վախնային, եւ մանաւանդ Սփալադին ահու դողու մէջ ինկած էր։ "Նոյն իսկ Լութեր, կ'ըսէ, կ'իմանար որ առիկա՝ իր մըն-

նիայի դքսին՝ Ֆրետերիկոս կայսրընտրին հօրեղբօրորդւոյն հրամանաւը, որն որ իր խոհեմութեան եւ ուրիշ զանազան առաքինութիւններուն համար մեծ անուն ունէր։ Արդ աս երեւելի իշխանը բաղձալով որ նոյն ատեններ սաստկացած խռովութիւնները վերջանան, չէ թէ միայն վիճաբանութեան հաւանութիւն տուած էր, հապա նաեւ վիճողներուն ճամբու ստակը ինք վճարեց, եւ վիճման միշտ ներկայ գտնուելով՝ երկու կողման հետ ալ շատ սիրով ու մեծարանքով կը վարուէր [4]։

Արդ երեք վիճողները, Էք, Լուտեր ու Գարլշդատ, Յունիս ամսոյն մէջ եկան Լիփսիա ժողվուեցան։ Այնպէս կը պատմուի որ Լուտեր կառքին մէջ Գարլշդատին ու Մելանքթոնին մէջտեղը նստած՝ մեծ փառաւորութեամբ քաղաք մտած ըլլայ։ Կառքին ետեւէն կ'երթային Վիդդենպերկի համալսարանին աշակերտներէն 300 հոգի՝ զանազան զէնքեր առած, ասոնց հետ մէկտեղ կ'երթային նաեւ նոյն համալսարանին վարդապետներէն չորս հոգի, շատ ուսուցիչներ ու քաղքին տղաքները [5]։ Աս վիճաբանութիւնը մեծ ու երեւելի դէպք մը կը սեպուէր. բոլոր քաղաքը ոտք ելած տակն ու վրայ կ'ըլլար. ամէն

չէու նոյն ատեն ըրած գործքերուն ամենէն յանդուգն է . . . ու չէր ծածկեր որ ինքն ալ աս բանիս վրայ քիչ մը կը վրդովէ։

4. Մենցլ, Հատ. Ա. Գլ. Ա. 46։ — Բողոքող մատենագիրները աս Գէորգ դքսին վրայ սաստիկ զրպարտութիւններ կ'ընեն, ըսելով որ Լուտերին դէմ մեծ ատելութիւն ու մահուչափ թշնամութիւն ունէր. աս ալ բաւական չէ՝ իր առաքինութիւնները կ'ուրանան, եւ սաստիկ ատէր ու Ս. Գրոց եւ կրօնական նիւթերու անտեղեակ էր, կ'ըսեն։ Նոյն խօսքերուն սուտութիւնը թէպէտ ետքը (Գիրք Բ. Գլ. Ը.) իր առ Լուտեր գրած իմաստուն ու բարեկամական թղթէն յայտնի կը տեսնենք, բայց հոստեղս ալ մէկ երկու խօսք ըսելն աւելորդ չ'երեւար։ "Աս իշխանը, կ'ըսէ Մենցլ, որն որ իր ժամանակին ամենէն աւելի գիտուն եւ արդար իշխաններէն մէկն էր . . . արդէն յառաջագոյն Լուտերին Ցրեդտայի մէջ քարոզ տալ տուած էր, եւ հիմա ալ վիճաբանութիւնն անոր համար ուզեց, որովհետեւ կը յուսար որ աս կերպով՝ իրաւունքն ու ճշմարտութիւնը կը հաստատուի, ու կարծեաց երկպառակութիւնը կը վերջանայ,,։ Հատ. Ա. Գլ. Ա. 47։ Դարձեալ կը գրէ որ "Թէպէտ եւ Լուտեր աս գործքիս (վիճաբանութեան) ունեցած վախճանին վրայ բոլորովին գոհ չէր, ի վերայ այսր ամենայնի առ Սփալադին գրած մէկ թղթին մէջ . . . . դքսին վրայ աս վկայութիւնը տալու չկրցանար, որ աս ամենաբարի ու սուրբ աստուածապաշտ իշխանը՝ (optimus et piissimus princeps) . . . ստուգիւ իշխանի մը վայլածին պէս կը խօսի,,։ Նոյն տեղը, 51։ Կուստաւ Ֆիցեր ալ (Գլ. Զ. 109.) դքսին վրայ այսպէս կը գրէ. "Թէպէտ եւ աւելի Էքին կողմը միտած էր, ի վերայ այսր ամենայնի երեք վիճաբանողներն ալ սեղանի կը հրաւիրէր, սիրով ու բարեկամութեամբ ամէնուն հետ կը խօսէր. անգամ մ'ալ Լուտերը առանձին իրեն կանչեց ու հետը երկայն ատեն իր գրքերուն վրայ խօսեցաւ,,։ — Նոյն իսկ Լուտեր նոյն իշխանին վրայ կը զրուցէր որ "կարծեմ թէ Գէորգ դուքսը՝ Ս. Գիրքը մեր ամէն ազնուականներէն աւելի փութով կարդացած է,,։ Խօսք սեղանոյ, 622։

5. Ռանքէ, Գիրք Բ. Գլ. Գ. Հատ. Ա. 401։ Կուստաւ Ֆիցեր, Գլ. Զ. 107։ Օտէն, Հատ. Ա. Գլ. ԺԲ. 138։

պանդոկները՝ աստուածաբաններու եւ համալսարանաց աշակերտներու բազմութեամբ լեցուած էին. այնպէս որ երկայն ատենէ վեր քաղքին մէջ նոյնչափ օտարական տեսնուած չէր։ Ամէն բան կարգի դրուելէն ետեւ՝ վիճաբանութիւնը սկսաւ Գէորգ դքսին պալատան մէկ սրահին մէջ, որն որ շատ գեղեցիկ եւ ազնիւ կերպասներով ու գորգերով զարդարուած էր։ Սրահին չորս կողմը՝ զէնքով զինուորներ շարուած կը կենային, որ չըլլայ թէ վիճողներուն նախատինք կամ վնաս մը ըլլայ, ինչու որ թէ՛ քաղքին բնակիչներէն եւ թէ՛ օտարականներէն շատ բազմութիւն կու գար միշտ սրահին մէջ կը լեցուէր խօսուածները մտիկ ընելու համար։

Վիճաբանութիւնը Յունիսի 27ին սկսաւ։ Սկսելէն յառաջ՝ 200 երաժիշտ նուագարաններ զարկին, ու Հոգւոյն սրբոյ օգնութիւնը խնդրելու համար՝ Եկ Ս. Հոգի նուագը երգուեցաւ։ Երգը լմըննալուն պէս՝ Էք ու Գարլշդատ սկսան շնորհաց, մարդկային կամաց ազատութեան, եւ բարեգործութեանց զօրութեանը վրայ իրարու հետ վիճել։ Էք մեծ իմաստութեամբ ու Ս. Գրոց շատ վկայութիւններով ցրեց Գարլշդատին մոլար կարծիքները, որն որ Լուտերին մոլորութիւններուն ետեւէն երթալով՝ կը վարդապետէր թէ մարդը առանց շնորհաց, այս ինքն առանց աստուածային սիրոյ, ինչ որ կը գործէ նէ՝ մեղք է. կամքը՝ մարդուն գործած բարւոյն մէջ այնչափ միայն գործակից կ'ըլլայ, որ շնորհքը կ'ընդունի. եւ միայն առանձին շնորհքն է՝ որ ի մարդն կը գործէ։ Ասոնց վրայ աս այլանդակութիւնն ալ կ'աւելցընէր թէ ամէն մարդ՝ որչափ որ արդար ու սուրբ ալ ըլլայ նէ ըլլայ՝ միշտ ամէն գործերուն մէջ մեղք կը գործէ, նաեւ ան բարի գործքերուն մէջ՝ զորոնք որ Աստուած ի նմա կը գործէ. եւ մէկ խօսքով ըսելու համար՝ մարդկային կամաց ազատութիւնը բոլորովին կ'ուրանար[6]։ Էքի պէս մարդուն՝ ասանկ այլանդակութիւնները ցրելը եւ Գարլշդատը յաղթելը՝ շատ դիւրին բան էր. եւ արդէն չէ թէ միայն ուղղափառ մատենագիրները հապա նաեւ շատ բողոքող մատենագիրներ կը հաստատեն որ Գարլշդատ Էքէն յաղթուեցաւ։ "Լուտեր ... առողջ մտաց դէմ ու մթին կարծիքով մը (մարդկային) կամաց ազատութիւնը կ'ուրանար, կ'ըսէ Մենցլ. Գարլշդատ՝ որն որ Լուտերին աս կարծիքը կը պաշտպանէր, սաստիկ շատ նեղը մտաւ Էքէն, որն որ թէ՛ եկեղեցւոյ վարդապետութիւնը եւ թէ՛ ուղիղ բանը իր կողմն ունէր, ու Գարլշդատէն աւելի ճարտար ու հմուտ էր„[7]։

6. Մեմպուր, Գիրք Ա. 32, 33։ Մենցլ, Հատ. Ա. Գլ. Ա. 50։

7. Հատ. Ա. Գլ. Ա. 47։ Տես նաեւ Լեւոն, Մասն Գ. Հատ Ա.

Մ իմաստութեան ատեն՝ Գարլշդատ, առանց կարծեացն իր գիտութեան վրայ վստահութիւն չունենալով, գիրք ու թուղթ կը գործածէր, անոնց մէջէն վկայութիւններ կը բերէր կամ կը կարդար, ու հակառակորդին ըրած առարկութիւնները լուծելու համար՝ շատ անգամ երկայն բարակ գրքերուն մէջ կը փընտըռէր [8]: Էք իսկզբան աս բանս չտեսնելու զարկաւ. բայց մէկ անգամ երբ որ Գարլշդատ գրքէ մը երկայն հատուած մը կարդալու սկսաւ, Էք ընթերցուածն ընդհատել տուաւ, եւ ըսաւ իրեն որ աս բանս ճեմարաններու սովորութեան հակառակ է. գրքերն ու թղթերը մէկդի թող, ու ճեմարաններու մէջ վիճողներուն սովորութեան համաձայն՝ բերնուց վիճենք, որպէս զի երկու կողմն ալ հաւասար ըլլայ: Բայց հակառակորդը դէմ դնելով՝ ոտք կը կոխէր որ գիրք ու թուղթ գործածելը՝ իրեն չիկրնար արգելուիլ: Ինկոլշդատի աստուածաբանը աս չհաւանելով՝ բանը ներկայ եղող աստուածաբաններուն ու դքսին խորհրդականներուն դատաստանին տակը ձգեցին. անոնք ալ մէջերնին քիչ մը խորհրդակցելէն ետեւ՝ որոշեցին որ ան օրն ալ Գարլշդատ կարող ըլլայ գիրք ու թուղթ գործածել, բայց անկէ ետքը ինքն ալ՝ միայն բերնուց խօսի: Աս որոշման վրայ Գարլշդատ սկսաւ տրտնջել, որով ան օրուան ժողովքը լուծուեցաւ, վասն զի Լուտերի կողմնակիցները տեսնելով որ իրենց կողմանէ վիճողին դէմ որոշում տրուեցաւ, սրդողեցան ու սկսան դուրս ելլել: Ան օրուընէ ետեւ երեք անգամ ալ Գարլշդատ Էքին հետ վիճեց, բայց ամենեւին չուզեց գիրք ու թուղթ գործածելէն ետ կենալ. մանաւանդ որ վերջին անգամ վիճելու ատեններն՝ յայտնապէս ալ ըսաւ թէ Գիրք չգործածելու վճիռը բանի տեղ չեմ դներ, հապա ինծի պարծանք կը սեպեմ որ գրքով վիճեցի եւ անոր համար յանդիմանութիւն առի, ու կը բաղձամ որ մեզմէ ետքը եկողներն ալ աս բանս իմանան [9]:

Գլ. Ա. 88: Ռանքէ, Գիրք Բ. Գլ. Գ. Հատ. Ա. 402:

8. Ռանքէ, Գիրք Բ. Գլ. Գ. Հատ. Ա. 402: Մենցլ, Հատ. Ա. Գլ. Ա. 50:

9. Ուլենպերկ, Գլ. Դ. Համ. Բ: — Բայց թէ իրմէ ետքն եկողները աս բանս իրեն պատիւ չեն սեպեր՝ բաւական ըլլայ միայն մէկ երկու բողոքող մատենագիրներու խօսքը: ‟Գարլշդատ թող չտուաւ որ, կ՚ըսէ Ռանքէ, ուրիշը իրմէ յառաջ վիճաբանի. բայց աս բանէս՝ քիչ պարծանք քաղեց: Հետը գրքեր կը բերէր, մէջէն կը կարդար, նորէն կը փնտռէր, նորէն կը կարդար. հակառակորդին այսօրուան ըրած առարկութիւններուն՝ երկրորդ օրը պատասխան կուտար: Որչափ ասկից տարբեր վիճող էր Յոհ. Էք, որն որ իր գիտութիւնը անմիջապէս կրնար գործածել,,: Գիզէլ Բ. Գլ. Գ. Հատ. Ա. 402: ‟Գարլշդատ, կ՚ըսէ Մենցլ, արդէն առջի օրերը շատ անգամ գրքերու դիմելովը ու անոնց մէջէն երկայն հատուածներ կարդալ ուզելովը՝ ունկնդիրներուն համբերութիւնը այնչափ աւելի կորսնցուցած էր, որչափ որ Էք իր փաստերն ու վկայութիւնները շուտ մը բերնուց բերելով՝ անոնց համբերութիւնը առած էր,,: Հատ. Ա. Գլ. Ա. 50:

Ըս կերպով լմընցաւ առաջին կամ Գարըզդատի հետ եղած վիճաբանութիւնը, որուն ետեւէն եկաւ երկրորդ վիճաբանութիւնը՝ Էքին ու Լուտերին մէջ։ Ամէն մարդ, նաեւ անոնք որ Գարըզդատին՝ Էքին հետ վիճած ատեն կը քնանային կամ ձանձրանալով դուրս կ'ելլէին, մեծ բաղձանքով աս երկրորդ վիճաբանութեան կը սպասէին, որն որ Յուլիսի 4ին սկսաւ։ Շատ երկայն կ'ըլլար թէ որ աս վիճաբանութեան վրայ մանրամասն խօսիլ ուզէինք. մանաւանդ որ, ինչպէս քիչ մը վերջը պիտ'որ ըսենք, երկու կողման աս վիճաբանութեան վրայ տուած տեղեկութիւններն իրարու հակառակ են, ինչու որ ուղղափառներն ընդհանրապէս յաղթութիւնը Էքին կուտան, իսկ բողոքողները՝ հասարակօրէն Լուտերին։ Անոր համար բաւական կը համարինք Մենցլին աս նիւթին վրայ գրածը բառ առ բառ թարգմանել։ Արդ աս մատենագիրը այսպէս կը գրէ։ "Լուտեր մեծ սաստկութեամբ կռուեցաւ իր աս կարծիքին վրայ թէ եկեղեցւոյ գլուխը՝ Հռոմայ եպիսկոպոսը չէ, հապա Քրիստոս, եւ միանգամայն թէ Հռոմայ եպիսկոպոսին՝ եկեղեցւոյ մէջ ունեցած գլխաւորութիւնը՝ աստուածային իրաւամբ չէ, հապա մարդկային իրաւամբ։ Քրիստոսի՝ Պետրոս առաքելոյն ըսած խօսքը թէ "Դու ես վէմ, եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ,, այնպէս մեկնեց որ իբրեւ թէ Քրիստոս աս խօսքին առաջին մասը (այս ինքն՝ Դու ես վէմ) Պետրոսին վրայ ըսած է, իսկ երկրորդ մասը (այս ինքն՝ եւ ի վերայ ԱՅԴՐ վիմի շինեցից զեկեղեցի իմ) իր անձին վրայ, ու ինքը զինքն անուանեց ան վէմը՝ որուն վրայ եկեղեցին պիտի հիմնէր 10։

10. Աս մեկնութեան որչափ անհամ բան ըլլալը Լուտերին ուրիշ տեղ մը ըսած խօսքերովը Մենցլ զատ տետրի մը մէջ կը ցուցընէ, ուրն որ մենք ալ բուն տեղը (Գիրք, Բ. Գլ. Ե.) կը դնենք։ Բայց Լուտեր նոյն ատենը աս իր մեկնութիւնն այնչափ հաւնած էր, որ երբ որ Էք նոյն վկայութիւնը բերելէն վերջը ըսաւ որ Ս. Օգոստինոս եւ ամէն հին Հարք աս վկայութիւնը՝ Պետրոսի եւ անոր յաջորդներուն գլխաւորութիւնը ցուցընելու համար կը բերեն, եւ իմ տուած մեկնութիւնս կուտան. Լուտեր պատասխան տուաւ որ "Թէպէտ եւ Ս. Օգոստինոս եւ ուրիշ ամէն Հարք՝ Քրիստոսի վէմ ըսելը Պետրոսի վրայ առնեն, ես միայն՝ Պօղոս առաքելոյն իշխանութեան վրայ հաստատուելով՝ անոնց դէմ կը կենամ,,։ Որով իբրեւ թէ ըսել կ'ուզէր որ Քրիստոսի ու Առաքելոյն խօսքը ես բոլոր Հայրերէն աւելի աղէկ կը հասկընամ։ Բայց Էք կարճ խօսքերով Լուտերին յանդգնական հպարտութիւնը յանդիմանելէն ետեւ՝ բերանը այսպէս գոցեց։ Ամէն հերետիկոս, ըսաւ, կը ջանայ որ Ս. Գիրքը իր կողմը քաշէ ու իր մոլորութիւնները Ս. Գրքին վկայութիւններովը հաստատէ. նոյն իսկ Արիոս այսպէս ըրաւ, որն որ Որդւոյն Աստուծոյ աստուածութիւնն ուրանալով՝ իր ամպարշտութեան վկայութիւն կը բերէր Քրիստոսի աս խօսքը թէ "Հայր իմ մեծ է քան զիս,,։ Արդ յայտնի է որ երկու կողմն ալ Ս. Գրքին կը դիմէ. բայց ուղղափառներուն ու հերետիկոսներուն մէջ աս տարբերութիւնը կայ, որ առաջինները՝ Ս. Գրքին ըստ Հոգւոյն սրբոյ մեկնութիւն կուտան, իսկ

"Էք վերջապէս աս պատասխանը տուաւ որ Լուտերին կարծիքները, ինչպէս որ արդէն յառաջագոյն ալ ծանուցած էր, Վիքլէֆին ու Հուսին՝ 11 եկեղեցիէն դատապարտուած վարդապետութիւններուն ըստ ամենայնի նման են։ Լուտեր ի սկըզբան աս բանիս սաստկութեամբ դէմ դրաւ, եւ որոշակի ու բացայայտ մերժեց, ըսելով որ ասիկա ինծի անհնարին մեծ նախատինք է. "Հուս եւ Բոհեմիացիք, ըսաւ, իբրեւ եկեղե-"ցւոյ միաբանութեան թշնամիք ու վրդովիչք՝ ինծի միշտ ատելի "են,,։ Բայց երբ որ Էք յայտնապէս ցուցուց որ Կոստանդեայ ժողովքին մէջ Հուսին ու Բոհեմիացւոց դէմ տրուած դատապարտութեան վճռովը՝ Լուտերին հիմայ նորէն պաշտպանած կարծիքները բացայայտ նզովուած են, ան ատեն Լուտերին բերնէն աս խօսքն ելաւ որ Հուսին ու Բոհեմիացւոց կարծեաց մէջ

վերջիններըը՝ իրենց մոլորական մտքին համաձայն մեկնելու կը ջանան։ Եւ ուրիշ եղանակաւ չիկրնար մարդ իմանալ թէ ո՛ր մեկնութիւնը ըստ Հոգւոյն սրբոյ է եւ ո՛ր մեկնութիւնը մոլորական, բայց եթէ առաջին հին հարց հաւանութենէն։

**11.** Յովհ. Վիքլէֆ անգղիացի հերձուածապետը (Ծն. 1324ին) Օքսֆորդի անուանի համալսարանին մէջ պզտիկ պաշտօն մ'ունէր, որն որ իրեն տալու համար աբեղաներու ձեռքէն առած էին. բայց քիչ մը վերջը՝ իրմէ առնելով նորէն նոյն անձանց տուին։ Աս բանիս դէմ Վիքլէֆ՝ քահանայապետին բողոքեց. եւ երբ որ քահանայապետը աբեղայից կողմը վճիռ տուաւ, ան ատեն կատղելով՝ Հռոմայ Աթոռոյն դէմ ելաւ։ Իսկզբան քահանայապետին աշխարհական իշխանութեան դէմ միայն կը խօսէր. բայց ետքը հոգեւոր իշխանութեան ալ դէմ զինեցաւ։ Հոն ալ չհանդարտելով՝ սկսաւ ուրիշ զանազան մոլորութիւններ վարդապետել, որոնց գլխաւորներն ասոնք են. Հաղորդութեան խորհրդոյն մէջ՝ սրբագործութենէն ետեւ հացին ու գինւոյն գոյացութիւնը ամբողջ կը մնայ. Քրիստոս նոյն խորհրդոյն մէջ ճշմարտապէս ու իրօք չիգտնուիր. եպիսկոպոսի կամ քահանայի մը՝ մահուչափ մեղաց մէջ եղած ատեն՝ մատակարարած խորհուրդները խորհուրդ չեն. բաւական զղջացած մարդու մը համար արտաքին խոստովանութիւնն աւելորդ է. Աստուած պէտք է որ սատանային հնազանդի։ Դարձեալ մարդկային կամ ստեղծեալ կամաց ազատութիւնը բոլորովին կ'ուրանար. նոյնպէս գրեթէ Աստուծոյ ազատութիւնն ալ բոլորովին կը մերժէր։ Աս հերձուածապետը 1384ին մեռաւ։ Իր գրուածները Գերմանիա եւ մանաւանդ Բոհեմիա շատ տարածուեցան, ուր որ Յովհ. Հուս Բոհեմիացին (Ծն. 1373) աս գրուածներուն մէջ եղած մոլորութիւնները սկսաւ յայտնապէս քարոզել, եւ շատ մարդիկ իր կողմը ձգեց, որոնք որ Հուսեանք անուանուեցան։ Ասիկա իր մոլորութիւններուն մէջ յամառած մնալուն համար, 1415ին, Կոստանդեայ ժողովքին մէջ, իր կողմնակիցներուն ու Վիքլէֆին հետ մէկտեղ դատապարտուեցաւ։ Ժողովքը զինքը նզովելէն ետեւ՝ եկեղեցական աստիճանէն ալ վար առաւ եւ աշխարհական ատեանին ձեռքը տուաւ, որն որ նոյն ատենուան սովորութեան համաձայն՝ զինքը ողջ ողջ այրել տուաւ։ — Բողոքողները ասիկա իրենց վարդապետին կարապետը կ'անուանեն. եւ առասպել մ'ալ կը պատմեն թէ Հուս մեռնելու ատեն ըսած ըլլայ որ Դուք հիմա սագ մը կը սպաննէք, (Հուս, Hus կամ Husa, բոհեմերէն՝ սագ կը նշանակէ,) բայց հարիւր տարի վերջը իմ մոխրէս կարապ մը պիտի՛ որ ելլէ, որն որ իմ վարդապետած ճշմարտութիւններս պիտի պաշտպանէ. եւ աս սքանչելի մարգարէութիւնը Լուտերի վրայ կ'առնեն։

շատ բաներ կան, որոնք բուն քրիստոնէական եւ աւետարանա-
կան կարծիքներ են 12. ինչպէս է նաեւ ան կարծիքը, ըսաւ,
որուն դէմ կը զէնի Էք, այս ինքն թէ փրկութեան հասնելու
համար Հռոմայ եկեղեցւոյն գլխաւորութեան հաւատալը հար-
կաւոր բան չէ. որովհետեւ Յունաց եկեղեցին ալ շատ դարեր
(նոյն կարծիքով) կեցաւ, ու իր մէջը շատ սուրբեր ունեցաւ 13:
Էք թող չտուաւ որ Լուտեր աս խօսքէն ու անոր հետեւութիւն-
ներէն դուրս ելլէ, եւ ցուցուց որ Կոստանդիայի ընդհանուր
ժողովքին հեղինակութիւնը կը մերժէ: Ասով մէջերնին՝ Բո-
հեմիացւոց ու Յունաց վրայ կռիւը երթալով աւելի սաստկա-
ցաւ, եւ Լուտեր ան իր խօսքին հետեւութիւնը (այս ինքն թէ
իր կարծիքները Հուսին դատապարտեալ կարծեաց հետ նոյն
են) որուն իսկզբան բացայայտ դէմ դարձած էր, հիմա ալ ա-
մենեւին տարակուսի տակ չէր ձգեր: Աս բանս Գէորգ դքսին
վրայ ան աստիճանի մեծ ազդեցութիւն ըրաւ, որ գլուխը շար-
ժելով ու երկու ձեռուըները կողերուն վրայ հաստատած՝ բո-
լոր սրահին մէջ լսուելու չափ բարձր ձայնով մը իր այլայլու-
թիւնն ու տհաճութիւնը ցուցուց. ի վերայ այսր ամենայնի թող
տուաւ որ վիճաբանութիւնը քանի մը օր ալ յառաջ երթայ....:

"Իսկ Լուտեր քահանայապետին գլխաւորութեան վրայ ու-
նեցած կարծիքը յայտնելով ըսաւ թէ կ'ընդունիմ որ Պետրոս
առաքեալը պատուոյ գլխաւորութիւն ունենայ, բայց իշխանու-
թեան ու կառավարութեան գլխաւորութիւն՝ չէ, որովհետեւ
ուրիշ ամէն առաքեալներն ալ Պետրոսին հաւասար եպիսկո-
պոսական պաշտօնն ընդունեցան. միանգամայն Ս. Օգոստինոսին
հետ աս ալ կ'ընդունիմ որ, ըսաւ, Առաքելական Աթոռոյն

12. "Էք՝ նոյն տեղը նորէն Լուտերին երեսը զարկաւ որ Հուսին կարծիքներն ունի, որն որ Լուտեր դեռ գարշելով՝ իրմէ մերժեց. դեռ եկեղեցւոյ միութիւնը մեծ բանի տեղ կը դնէր ու միայն իր պատիւը կ'ուզէր պահել": Աւդին, Մատն Գ. Հտծ Ա. Գլ. Ա. 88: Աս ըսելէն վերջը՝ նոյն հեղինակն ալ Մենցլին պէս կը զրուցէ թէ Բայց երբ որ նեղը մտաւ ու չկրցաւ ուրանալ որ իր կարծիքներուն մէջ՝ Հուսին դատապարտուած նախադասութիւնները կը գտնուին, ան ատեն բերանը փոխեց, եւ սկսաւ Հուսին մոլորութիւնները ճշմարիտ եւ աւետարանական կարծիքներ կոչել:

13. Ասիկա բողոքողներուն մեծ զէնքն է. բայց չեն տեսներ կամ չեն ուզեր տեսնել որ Յունաց եկեղեցին՝ սուրբեր ունեցած ժամանակը Հռոմայ եկեղեցիէն բաժնուած չէր, եւ անոր գլխաւորութիւնը չէ թէ միայն խօսքով հապա նաեւ գործքով կը ճանչնար. եւ նոյն իսկ ան յունական եկեղեցւոյն սուրբերն ու երեւելի հայրապետները զանազան մեծամեծ խնդիրներու մէջ քահանայապետին կը դիմէին, եւ կամ իրենց անիրաւութիւն եղած ատեն՝ անոր կը բողոքէին, որն որ յայտնապէս անոր իշխանութիւնն ու գլխաւորութիւնը ճանչնալ էր: Իսկ Հռոմայ եկեղեցիէն բաժնուելէն եւ անոր գլխաւորութիւնն ուրանալու սկսելէն վերջը՝ մէջերնին չէ թէ միայն իրաւ ամենեւին սուրբ. մը չկայ, հապա եւ ոչ իրենք ալ ան ժամանակէն ետեւ եղող մէկու մը՝ սուրբի անունը տուած են:

գլխաւորութիւնը միշտ Հռոմայ եկեղեցւոյն մէջ կար։ Բայց տղէկ միտ դնողը կը տեսնէ որ Լուտերին աս խոստովանութիւնը ե֊րեւելի բան մը չինշանակեր, եւ կ'ոչընչանայ իր պաշտպանած մէ֊կալ կարծիքին առջեւը, թէ Ս. Գահին գլխաւորութիւնն ու իշխա֊նութիւնը՝ միայն մարդկային իրաւանց վրայ հաստատուած է։

"Լուտերին ու Էքին մէջ եղած վիճաբանութեան շարու֊նակութիւնը՝ քաւարանի, ներողութեան, զղջման, ապաշխա֊րութեան ու արձակման վրայ էր։ Էք կը պաշտպանէր որ պարզ քահանայի մը բերնով մեղաւորին ծանուցուած՝ մեղաց թողու֊թիւնը ՝զանիկա ժամանակաւոր պատիժներէն բոլորովին չ'ա֊զատեր, եւ աստուածային արդարութիւնը՝ նաեւ մեղաց թո֊ղութենէն վերջը՝ մարդէն դեռ հատուցում կը պահանջէ։ Ասոր վրայ կը հաստատուի, կ'ըսէր, եկեղեցւոյ պարտքը՝ որ մեղաւո֊րաց վրայ պատիժ դնէ, բայց միանգամայն նաեւ նոյն պատիժ֊ները մեղմացընելու եւ անոնցմէ արձակելու իրաւունքը։ Ասոր հակառակ Լուտեր կը հաստատէր թէ մեղաց թողութեան վար֊դապետութիւնը կը խանգարուի նոյն յաւելուածով՝ որն որ մեծ ղեղծմանց տակ ինկած է (կ'ըսէր). եւ կը պաշտպանէր որ քահանան՝ որն որ Աստուծոյ տեղը մեղքերուն թողութիւն կու տայ, թէ՛ պարտքին (յանցանքին) եւ թէ՛ միանգամայն պատ֊ժոյն թողութիւն կու տայ։ Չէր տեսներ որ եկեղեցական պատ֊ժոյ ու թողութեան իրաւանց չարաչար գործածութեան տեղ՝ (որն որ իր ըսածին նայելով՝ Հռոմայ եկեղեցւոյն մէջ կը գըտ֊նուէր,) կարելի է որ (իր ուզածին պէս մեղքերու թողութիւն դնելով՝) զարհուրելի խաբէութիւն ու ամպարշտական անտար֊բերութիւն մը մտնէ, ու օր մը նոյնը (Լուտերին դրած թողու֊թիւնը) ոմանք իբրեւ իրենց անձնական ուղղութեան տեղը լեցընող բան մը առնեն, ոմանք ալ իբրեւ պարզ խօսա֊կցութեան ձեւ մը զրուցեն եւ ընդունին։ Որչափ որ իր կրօ֊նական դրութիւնը բարձրէն բռնած էր նէ (°), այնչափ ալ դիւրաւ աչքէն հեռացած էին մարդկան մտածելու կերպը, տկարութիւնն ու անզգայութիւնը, որոնց որ միտ դրած էր ե֊կեղեցին իր կարգադրութիւններն ընելու ատեն...,, 14։

Ասանկ կը պատմէ Մենցլ Լուտերին ու Էքին մէջ եղած վիճաբանութիւնը, որն որ մինչեւ Յուլիսի 14ը տեւեց։ Անկից վերջը Գարլշդատ նորէն սկսաւ Էքին հետ վիճել. եւ ուզեց աս կարծիքները թէ "Մարդկային կամքը բարի գործե֊լու բոլորովին անկարող է, եւ մարդս ընդհանրապէս իր առա֊քինութիւններովն ու գործածներովը Աստուծոյ հաճոյ ըլլալ չիկրնար, եւ արդարը նաեւ իր բարի գործքերուն մէջ կը մե֊

14. Հատ. Ա. Գլ. Ա. 47 — 50։

ղանչէ, եւ ասոնց նման մէկալ կողմն անցած վարդապետութիւնները այնպիսի հակառակորդի մը (Էքին) դէմ պաշտպանել, որն որ ամէն կողմանէ իրմէ վեր էր,,[15]։ Ասոնք ալ քանի մը օր վիճելէն վերջը՝ բոլոր աս երեւելի վիճաբանութիւնք լմնցաւ (Յուլիսի 16ին)։

Վիճաբանութիւնն եղած ատեն՝ Լուտերի կողմն ըլլողները, որոնց մէջ կ'ըսուի որ քանի մը Հուսեանք ալ կային [16], իրենց անագորոյն միտքը, լրբութիւնը եւ ուղղափառաց դէմ ունեցած ատելութիւննին շատ անգամ յայտնի կը ցուցընէին։ Ոմանք՝ իրենց հաճելի չեղած բան մը լսածնուն պէս՝ շուտ մը ձեռուըննին սրերնուն կը տանէին, ու իրենց վարդապետին հակառակորդներուն սպառնալիքներ կ'ընէին։ Ասոնք եւ մանաւանդ Վիդդենպերկէն եկող ուսանողները, ճամբան Լուտերը տեսածնուն պէս՝ իրեն մեծ յարգութիւն կը ցուցընէին, յայտնելով որ ամէն կերպով զինք պաշտպանելու պատրաստ ենք։ Գիշերը ամէնքը մէկտեղ ժողվուած՝ Էքին բնակարանին առջեւը կ'երթային, ու պոռալով՝ կորսուի Էք, կեցցէ Լուտեր, կը կանչէին։ Այնչափ յանդգնեցան մինչեւ անգամ մը Էքին պատուհանէն ներս թուղթ մը նետեցին, որուն մէջ զինքը սպաննելու սպառնալիքներ կ'ընէին։ Եւ թէ որ դուքսը զգուշութեան համար բնակարանին չորս կողմը զինուոր դրած չըլլար նէ՝ գուցէ սպառնալիքնին իրօք ալ կը կատարէին [17]։

Դեռ վիճաբանութիւնը չսկսած՝ Էք խնդրած էր որ վիճմանց վրայ դատաստան ընելու ու վճիռ կտրելու համար դատաւորներ ընտրուին։ Լուտեր գիտնալով որ ունկնդիրներուն մէջ իր կողմնակիցներէն շատ մարդ կայ, կ'ուզէր որ վիճաբանութեան ամէն ներկայ գտնուողները դատաւոր ըլլան. բայց Էք անոնց անբաւական ըլլալը ցուցընելով՝ խնդրեց որ աս գործքը՝ կողմնակալութեան կասկածի տակ չեղող համալսարանի մը յանձնուի. երկու կողմն ալ ասոր հաճեցաւ, եւ ամենուն հաւանութեամբը որոշուեցաւ որ Փարիզի ու Էրֆուրդի համալսարանները դատաստան ընեն եւ վճիռ տան թէ ո՛ր կողմն իրաւունք ունի [18]։ Աս ալ հաստատեցին որ նոյն համալսարանները վճիռ չտուած՝ վիճաբանութեան մէջ եղած խօսքերը դուրս չտարածուին [19]։ Բայց որովհետեւ վիճաբանութիւնը հրապա-

15. Մէնցլ, Հատ. Ա. Գլ. Ա. 50։

16. „Կ'ըսուի որ Բոհեմիացւոց (Հուսեանց) կողմանէ պատգամաւորներ եկած էին, որոնք վիճաբանութեան՝ սա ունենալու վախճանը գուշակելով, ներկայ կը գտնուէին,,։ Ռանքէ, Գէրմ. Բ. Գլ. Գ. Հատ. Ա. 407։ Տես նաեւ Ուլէնպէրկ, Գլ. Դ. Համ. Դ։ Ռիֆէլ, Գէրմ. Ա. Գլ. Գ. 88. Ծանօթ։

17. Ուլէնպերկ, Գլ. Դ. Համ. Դ։ Օտէն, Հատ. Ա. Գլ. ԺԲ. 141, 142։ Մէնցլ, Հատ. Ա. Գլ. Ա. 46։

18. Կուստաւ Ֆիցէր, Գլ. Զ. 113։

19. Նոյնը, Գլ. Զ. 108։

բակաւ եղած էր, եւ ամէն ուզողը կու գար մօտիկ կ'ընէր, չէին կրնար արգելք դնել որ լուրերը դուրս չհանեն ու չորս կողմը չտարածեն: — Իրօք ալ վիճաբանութիւնը ըմբռնալէն անմիջապէս վերջը՝ աս նիւթին վրայ սկսան անհամար գրուածքներ դուրս ելլել. մանաւանդ Վիդդենպերկցիք շատ աղմուկ ու շփոթութիւն հանեցին, եւ իրենց բարեկամներուն գրած թըղթերովին, զանազան ծանօթութիւններով, ջատագովութիւններով, յայտարարութիւններով ու լուծմունքներով կը ջանային ցուցընել որ յաղթութիւնը իրենց կողմն է: Ուր որ ասոր հակառակ Գէորգ դուքսը, իր խորհրդականները, Լիփսիայի համալսարանը եւ ներկայ գտնուողներէն շատերը՝ հաստատուն մտքերնին դրին որ յաղթութիւնը Էքին կողմն է[20]. եւ աս բանս իրենց գործքովն ալ ցուցուցին, մանաւանդ Գէորգ դուքսը: Ինչու որ թէպէտ աս իշխանը վիճաբանութենէն յառաջ չէր գիտեր թէ ո՛ր կողմը յարի, եւ թէ ո՛ր կողման կարծիքը եկեղեցւոյ վարդապետութեան համաձայն է[21]. բայց վիճաբանութենէն ետքը, որուն ինչպէս ըսինք՝ գրեթէ միշտ ներկայ գտնուած էր, հաստատութեամբ ուղղափառաց կողմը մնաց, եւ մինչեւ մահը գրով ու գործքով հարցը կրօնքը պաշտպանեց, ինչպէս գործքիս ընթացքին մէջ շատ անգամ պիտի տեսնենք: Լիփսիացիք վիճաբանութենէն յառաջ Լուտերին թող տուած էին որ հրապարակաւ քարոզ տայ. բայց վիճաբանութենէն ետեւ՝ որչափ որ ալ ետեւէ ինկաւ նէ՝ չկրցաւ հրաման առնել[22]:

20. «Լուտերին նեղը մնալը՝ որով պարտաւորեցաւ անանկ բաներ ընդունելու, զորոնք ինք իսկզբան ուրացած էր, Էքը իբրեւ յաղթող ցուցուցին ներկայ ըլլողներուն սաստիկ շատ մեծ մասին աչքին առջեւը: Վերջի ատենները գրեթէ մի միայն Գէորգ դուքսը մնաց, որ Վիդդենպերկցի աստուածաբաններուն պատիւ կ'ընէր, ու Լուտերին հետ առանձին խօսակցութեան մէջ զանազան նիւթերու վրայ խօսեցաւ»: Աւտոն, Մոան Գ. Հրծ Ա. Գլ. Ա. 89: Նոյնը կը զրուցէ նաեւ Մենցլ ալ, Հատ. Ա. Գլ. Բ. 51: Աս բանս Բլանք ալ (Գիրք Բ. Հատ. Ա. 203.) կը խոստովանի, բայց այնպիսի խօսքերով, որոնց իմաստը աղէկ մը չենք հասկընար: Ահաւասիկ իր ըսածը. «Եւ այսպէս բոլոր վիճաբանութիւնը, գոնէ ըստ արտաքին երեւութին, անոր համար Լուտերին շատ ձեռնտու եղանակաւ լմնցաւ, որովհետեւ ինք հակառակորդէն յայտնապէս գերազանց էր»: Տես Նախ. 4. ու 24. Ծանօթ:

21. Բլանք (Գիրք Բ. Հատ. Ա. 185. — 187.), Մենցլ (Հատ. Ա. Գլ. Ա. 46.) եւ ուրիշ շատ պատմագիրներ կը պատմեն որ Մերզեպուրկի եպիսկոպոսը՝ որուն եկեղեցական իշխանութեան տակ էր Լիփսիա քաղաքը, չէր ուզեր թողուլ որ աս վիճաբանութիւնն ըլլայ. բայց Գէորգ դուքսը առջ կոխեց եւ ուզեց որ ըլլայ, ըսելով որ հին ատեններն ալ ճշմարտութիւնն իմանալու համար ասանկ վիճաբանութիւններ կ'ըլլային, եւ հիմա ալ հարկաւոր է, որպէս զի իմացուի թէ արդեօք ստուգիւ ներողութեանց զօրութիւնը՝ Լուտերի հակառակորդներուն ըսածին պէս մեծ է, չէ նէ վախճանն ուրիշ բան չէ բայց եթէ ժողովուրդը՝ ստըկի համար խաբել:

22. Մենցլ, Հատ. Ա. Գլ. Ա. 51, 52:

Նոյն իսկ Վիտտենպերկցիք եւ Լուտերին կողմն ըլլողները՝ թէպէտ արտաքուստ այնչափ աղմուկ կը հանէին, բայց ներքուստ իրենց կողման յաղթուած ըլլալն իրենք ալ կը ճանչնային. այնպէս որ Լուտերին ու Գարլշտատին "բարեկամները կ'երեւար որ անոնց այցելութիւն ըրած ատեննին անանկ կը յարմարցընէին որ չտեսնուէին,, կ'ըսէ Մենցլ[23]. իբրեւ թէ ասանկ յաղթուած ու խայտառակ եղած մարդիկներու կողմն ըլլալնուն վրայ կ'ամչնային։ Լուտեր ալ աս վիճաբանութեան վրայ շատ նեղացաւ, եւ անով աւելի եւս կատղելով՝ միտքը որոշակի դրաւ որ Հռոմայ եկեղեցիէն բոլորովին բաժնուի[24]։

Վիճաբանութիւնը լմըննալէն քիչ մը վերջը Էք տեսնելով որ Լուտերին կողմն ըլլողները ամէն կողմ գրուածքներ կը հրատարակեն, իրեն պարտք սեպեց որ եղածներուն վրայ Սաքսոնիայի կայսրընտրին ճիշդ տեղեկութիւն տայ։ Անոր համար Յուլիսի 23ին անոր թուղթ մը գրեց, որուն մէջ Լուտերին ու Գարլշտատին կարծիքներուն ինչ աստիճանի վտանգաւոր, մոլորական ու հերետիկոսական վարդապետութիւններ ըլլալը կը ցուցընէր, եւ իշխանին առջեւը կը դնէր որ Քրիստոսի, քրիստոնէական կրօնին, իր տէրութեան եւ հպատակներուն համար ինչ պարտական է ընելու[25]։ Որովհետեւ Լուտեր ու Գարլշտատ վիճաբանութեան վրայ կայսրընտրին ուղղակի բան մը չէին գրած, անոր համար իշխանը Էքին նամակն անոնց խաւրեց, որպէս զի իրենք զիրենք ջատագովեն։ Ասոնք Օգոստոսի 18ին պատասխաննին գրեցին[26], զորն որ կայսրընտիրը անմիջապէս Էքին խրկեց։ Էք՝ Լուտերին եւ Գարլշտատին՝ իրենց ջատագովութեան համար գրածները ընդարձակ գրուածքի մը մէջ ցրեց, եւ նորէն անոնց վարդապետութիւններուն՝ մոլորական ու հերետիկոսական ըլլալը ցուցուց, եւ կայսրընտրին խաւ-

23. Հատ. Ա. Գլ. Ա. 51։

24. "Լուտեր՝ իր բարեկամն ու պաշտպանը Սփալադինին գրած մէկ նամակին մէջ, կ'ըսէ Լեւոն, խոստովանեցաւ թէ վիճաբանութիւնը իրեն համար գէշ վերջ ունեցած էր։ Ա՛լ Լուտերին ունայնամտութիւնը վշտացած էր...։ Անոր համար արտաքոյ կարգի գրգռութեամբ Լիփսիայէն ելաւ,,։ Մօան Գ. Հրծ Ա. Գլ. Ա. 89։ "Որչափ որ աս վիճաբանութեան մէջ Լուտեր քիչ բախտ ունեցած էր նէ, կ'ըսէ նոյն մատենագիրը, այնչափ ալ աւելի նոյնը իր գրգռուելուն պատճառ եղաւ, եւ անով բուն որոշակի մղուեցաւ Հռոմայ եկեղեցւոյ դէմ յայտնի ապստամբութեան ելլելու,,։ Նոյն տեղը, 87։ Լուտեր ան ատեն Սփալադին գրած նամակին մէջ, որուն վրայ Լեւոն յիշատակութիւն կ'ընէ, այսպէս կը խօսի. "Ինք (Էք) հաճելի կ'ըլլայ, կը յաղթանակէ ու կը թագաւորէ, բայց մինչեւ որ մենք մեր կողմանէ եղածները հրատարակենք. ինչու որ որովհետեւ գէշ վիճաբանուեցաւ (quia male disputatum est), պէտք է որ ես ալ Որոշմունքները նորէն տպել տամ,,։ Տես ալ Լեւոնի, վերը յիշուած տեղը, 89. եւ ալ Մենցլի, Հատ. Ա. Գլ. Ա. 51։

25. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ա. 147. Բ։

26 Նոյն տեղը, 151. — 156։

րեց։ Աս գրուածքին մէջ Էք կայսրընտրին շատ կ՚աղաչէր որ ծախքին չխնայէ ու դատաւորական (եկեղեցական) ժողով մը գումարել տայ, որպէս զի Լուտերին վարդապետութիւնները քննուի. եւ չըլլայ որ տասնե երեւելի բանը անհոգութեամբ թող տրուելով՝ միամիտ մարդիկները խաբուին[27]։

Ուրիշ աս գրուածքը իշխանին վրայ մեծ ազդեցութիւն ըրաւ. բայց նոյն ժամանակը Երազմոսէն՝ Լուտերին նպաստաւոր մէկ նամակ մ՚ընդունելով՝ մինչեւ նոյն ատենը բռնած ընթացքին մէջ աւելի եւս հաստատուեցաւ, եւ գրեթէ առջինէն աւելի Լուտերին կողմը սկսաւ բռնել։ "Երազմոս Լուտերին ասանկ նպաստաւոր կերպով գրելու շարժեցաւ, կ՚ըսէ Մենցլ, չէ թէ անոր համար որ Լուտերին գրուածքներն ու գործքերը կը հաւնէր. հապա անոր համար որովհետեւ կրօնաւոր աստուածաբանները՝ աս Լուտերի ըրածներէն առիթ առնելով՝ նոյն ժամանակուան բանասէրներուն եւ իբրեւ անոնց գլուխը՝ Երազմոսին դէմ ելած էին....։ "Երազմոս հաւկիթը դրաւ, կ՚ըսէին, "Լուտեր թխսեց. բոլոր հերետիկոսութիւնը՝ յունարէն գիտ-"ցողներէն եւ զարդախօս ճարտարաբաններէն կը ծագի,,։ Ասանկ խօսքերուն իր վրայ ըրած ազդեցութեամբը գրգռուած՝ գրեց Երազմոս նոյն թուղթը... զորն որ աս խօսքերով կը լմնցընէ։ "Այնչափ աւելի անկողմնակալութեամբ կրնամ գրել, "որչափ որ Լուտերին իրողութիւնը ինծի օտար է, եւ դեռ ժամանակ "չեմ ունեցեր իր գրքերը կարդալու։ Բայց կը կարծեմ որ ձեր թէ "աստուածպաշտութեան եւ թէ իմաստութեան չիվայլեր որ թող-"տաք թէ՝ կրօնի պատճառանքով կամ պատրուակով՝ անմեղ "մարդ մը անպիտան մարդիկներու ձեռքն իյնայ. Լեւոն քահա-"նայապետն ալ աս մտաց վրայ է, եւ կ՚ուզէ որ անմեղութիւնը "պաշտպանուի, եւ չիսիրեր զանոնք՝ որոնք իր եկեղեցւոյն ան-"դամներուն հետ բռնական հարստահարութեամբ վարուիլ կը "բաղձան,,։ Աս թղթին ազդեցութիւնը բաւականէն աւելի էր Էքին պահանջմունքներուն դիմացը բռնելու, եւ Լուտերին՝ իր իշխանին պաշտպանութեան տակ Վիդդենպերկի մէջ ազատութեամբ գործել տալու,,[28]։

27. Նոյն տեղը, 157.—167։ 28. Հատ. Ա. Գլ. Ա. 54, 55։



## ԳԼՈՒԽ Զ.

### Լութերի զանազան գրուածներն ու մոլորութիւնները ։

Լութեր հաղորդութեան վրայ գրուած մը դուրս կը հանէ ։ Մէյնէյի եպիսկոպոսին ու Գոլոնիայի եւ Լովանիայի համալսարաններուն դէմ կը գրէ, որոնք իր մոլորութիւնները դատապարտած էին ։ Մէկտեղ կը դնէ որ Բոհեմացիներուն ու իւրը խորհուրդը կը փոխէ եւ աւելի յանդգնութեամբ գրելու կը սկսի ։ Քրիստոնէութեան կարգերը փոխելու եւ Եկեղեցւոյ Բաբելոնական գերութիւն անուամբ գրած գիրքը ։ Քահանայապետին՝ յանդուգն ու անամօթ նամակ մը կը գրէ ։ Վասն քրիստոնէական ազատութեան ըրած գիրքը ։

## 1519 — 1520

Լիփսիացի վիճաբանութենէն դառնալէն վերջը Լութեր սկսաւ զանազան գրուածներով, ինչպէս որ անցած գլխոյն մէջ ըսինք, ինքը զինքը ջատագովել ու յաղթութիւնն իր կողմը ցուցընելու ջանալ ։ Դարձեալ ետեւէ ետեւ ուրիշ գրուածներ ալ դուրս հանեց, որոնց մէջ երեւելի է Հաղորդութեան խորհըրդոյն վրայ հրատարակած ճառը [1], որուն պատճառաւը մեծ շփոթութիւններ ելան ։ Իր հակառակորդները կ'ըսէին որ աս գրուածքը Հուսեանց մոլորութիւններուն հոտն ունի ․ եւ աս կարծիքներնուն մէջ անով աւելի կը հաստատուէին, որ Լութեր՝ Լիփսիայի վիճաբանութեան մէջ Հուսին կարծիքները գովելէն վերջը՝ սկսած էր Հուսեանց հետ թղթակցիլ ու հետերնին սիրով եւ բարեկամութեամբ վարուիլ, մինչեւ անոնք իրեն նամակներ կը գրէին ու պատգամաւորներ կը խաւրէին [2] ։ Արդ՝ որովհետեւ Հուսեանց պատճառաւը առջի դարուն մէջ մեծամեծ խռովութիւններ, պատերազմներ, արիւնհեղութիւններ եղած ըլլալով՝ անուննին Գերմանիայի մէջ շատ ատելի էր, անոր համար Գէորգ դուքսը՝ մէկ կողմանէ աս գրուածքէն կրօնին հասնելու վնասը մտածելով, մէկալ կողմանէ ալ տէրութեան մէջ պատճառելու վրդովմունքներէն վախնալով՝ շատ պղպղեցաւ ։ Եւ նոյն չարիքները խափանելու համար՝ Սաքսոնիայի կայսրընտրին նամակ մը գրեց, որուն մէջ թէ իրեն (դքսին) եւ թէ իր աստուածաբաններուն՝ Լութերին աս գրուածքին վրայ ունեցած կարծիքն իմացընելէն ու անկից ծագելու չարիքները առջեւը դնելէն վերջը՝ կ'աղաչէ որ անոնց առջեւն առնելու յարմար միջոցներ բանեցը-

1 . Աս ճառը, որն որ ըստ Բլանքայ (1519ին) Դեկտեմբերի մէջ դուրս ելաւ, տես ի Գործս Լութ. Եէնմ. Հատ. Ա. 204. Բ. — 210. Բ ։

2 . Բլանք, Գիրք Բ. Հատ. Ա. 223, 224 ։ Ուլէնպերկ, Գլ. Ե. Համ. Ա ։ Ռիֆէլ, Գիրք Ա. Գլ. Դ. 101 ։

նէ [3]: Կայսրընտիրը քանի մը օր վերջը "փախուստ տալով մը պատասխանեց որ, կ'ըսէ Կուստաւ Ֆիցէր, չեմ կրնար յանդըգնիլ անանկ բանի մը մէջ խառնուելու, որն որ արդէն քննութեան ու հարցափորձի տակ է„ [4]:

Լուտերի նոյն գրքին վրայ ուրիշ շատերն ալ պըլպլեցան ու արգելելու համար զանազան միջոցներ բանեցընելու սկսան, եւ մանաւորապէս Միսնիայի եպիսկոպոսը հրովարտակով մը հրամայեց որ նոյն գրուածքը իր թեմին մէջ չտարածուի, տարածուած օրինակներն ալ ժողվուին եւ իրեն բերուին [5]: — Լուտեր աս բանս իմանալուն պէս՝ սկսաւ եպիսկոպոսին դէմ նախատական ու անարժան կերպով մը գրել [6]: Ան ատենուան Միսնիայի եպիսկոպոսը՝ Ալպնիդներուն ազնուական տնէն էր, ու Սաքսոնիայի կայսրընտրին պալատին մէջ շատ ազգականներ ունէր, որոնք աս բանիս համար Լուտերին դէմ սաստիկ բարկացան ու թշնամացան: Արդէն Գէորգ դքսին գրած թուղթն ու Միսնիայի եպիսկոպոսին հրովարտակը բոլոր պալատականներուն վրայ մեծ ազդեցութիւն ըրած էին, եւ կայսրընտիրը կը բաղձար որ աս շփոթութիւններուն բոլորովին դադրելը կարելի չէ նէ՝ գոնէ Լուտերին ձեռքովը աւելի եւս չմեծնան ու չսաստկանան: Սփալադին նոյն բաները Լուտերին իմացուցած ու իրեն խրատ տուած էր որ աս իր սաստկութեանն ու կատաղութեանը չափ մը դնէ, եւ Բլանքին ըսածին նայելով՝ մինչեւ սպառնալիք ալ ըրած էր. "Բայց Լուտեր, կ'ըսէ նոյն մատենագիրը, ասով ամենեւին գիտցածէն ետ չկեցաւ, մանաւանդ թէ սկսաւ սաստիկ զարմանալ որ Սփալադին ու պալատին մէջիններն իր բռնած ճամբան բաւական չափաւոր չէին սեպեր„ [7]: Սփալադինին գրածներուն տուած պատասխանին մէջ՝ Լուտեր իր մինչեւ նոյն ատենը ցուցուցած չափաւորութեանն ու համբերութեանը (*) վրայ խօսելէն եւ ըսելէն վերջը որ ասով թշնամիներս աւելի յանդուգն եղան, խօսքը այսպէս յառաջ կը տանի: "Կ'աղա-

3. Նամակը՝ որ 1519ին Դեկտեմբերի 27ին գրուած է, տես ի Գործս Լութ. գերմ. Հատ. Ա. 213:

4. Գլ. Ձ. 117, 118: — Բուն նամակը տես ի Գործս Լութ. գերմ. Հատ. Ա. 214:

5. Եպիսկոպոսին հրովարտակը՝ որն որ 1520ին Յունուարի 24ին թուականն ունի, տես ի Գործս Լութ. գերմ. Հատ. Ա. 217:

6. Կուստաւ Ֆիցէր, Գլ. Ձ. 118: Բլանք, Գիրք Բ. Հատ. Ա. 233: Աս վերջին հեղինակը խօսելով որ Սփալադին եւ ուրիշները իրեն խրատ կու տային որ չափաւորութեամբ վարուի, վրան կ'աւելցընէ որ Լուտեր "նոյն (չափաւորութեան) առաքինութիւնը շատ չցուցուց հակառակութեան ճառին վրայ շինած մեկնութեան մէջ . . . եւ ասկից ալ շատ քիչ ցուցուց (Միսնիայի) եպիսկոպոսին հրովարտակին դէմ գրած պատասխանին մէջ„: Լուտերի մեկնութիւնն ու հրովարտակին դէմ գրածը՝ տես ի Գործս Լութ. գերմ. Հատ. Ա. 214. Բ. — 216. Բ. եւ 218. — 220:

7. Գիրք Բ. Հատ. Ա. 233, 234: Տես նաեւ Կուստաւ Ֆիցէր, Գլ. Ձ. 118. եւ Ուլենպերկ, Գլ. Ե. Հատ. Ա:

չեմ ու կը պաղատիմ, թէ որ Աւետարանին վրայ պատշաճ գաղափար ունիս նէ՝ մի կարծեր որ անոր իրողութիւնը առանց խռովութեան, գայթակղութեան, ապստամբութեան կարող ըլլայ գործուիլ: Սուրը չես կրնար գրչի դարձընել, եւ ոչ պատերազմը՝ խաղաղութեան: Բանն Աստուծոյ՝ սուր է, պատերազմ է, ապականութիւն է, գայթակղութիւն է, կործանում է, թոյն է,,: Աս ըսելէն վերջը կը խոստովանի որ երբեմն հարկ եղածէն աւելի սաստկութեամբ վարուած է, բայց ասոր ալ յանցանքը հակառակորդներուն վրայ կը ձգէ, ըսելով որ "Իրենք աս բանս արդէն աղէկ գիտեն, անոր համար ալ պէտք չէր որ շունը կատղեցընէին,,: Եւ ի փախճանի ինքը զինքը կ'արդարացընէ, Քրիստոսի ու Պօղոս առաքելոյն օրինակները բերելով, եւ ըսելով որ անոնք ալ ըստ տեղւոյն՝ խստութեամբ վարուած, եւ իրենց դէմ դնողները՝ կեղծաւոր, որդի սատանայի, մոլորեցուցիչ, շուն եւ այլն անուանած են [8]:

Բայց թէպէտ եւ այսպէս մէկ կողմանէ ինքը զինքը արդարացընելու կը ջանար, բայց մէկալ կողմանէ ալ վախնալով որ չըլլայ թէ կայսրընտիրը զինքը երեսէ ձգէ ու պաշտպանութիւնը վրայէն վերցընէ, որով վտանգի մէջ իյնայ, սկսաւ մտածել որ ինչ ընէ, մանաւանդ որ իր ներքին բարեկամներէն ոմանք կը գրէին թէ քաղքին մէջ քեզի դէմ դաւաճանութիւն մը կը պատրաստուի: Աս մտածմունքը քանի մը պարագաներով աւելի եւս սաստկացաւ: Նախ՝ Գոլոնիայի ու Լովանիայի համալսարանները յայտնապէս իրեն դէմ ելած էին. յառաջ՝ Գոլոնիայի համալսարանը Լուտերին դէմ վճիռ մը տուած էր, որով անոր գրուածքները կը դատապարտէր, ըսելով թէ անոնց մէջ հաւատոյ ու բարոյից դէմ մոլորութիւններ կան, եւ անոր համար նոյն գրուածներն այրելու եւ մատենագիրը ստիպելու է որ ետ կանչէ. ասոր հետեւելով Լովանիայի համալսարանն ալ՝ Լուտերի գրուածքներուն մէջէն 22 նախադասութիւն հանած, իբրեւ մոլորական, գայթակղեցուցիչ եւ հերետիկոսական՝ դատապարտած եւ բոլոր գրքերն ալ այրելու արժանի են, ըսած էր [9]: Արդ թէպէտ Լուտեր աս վճիռներուն դէմ սաստիկ կատղելով՝ առանձին գրուածքի մը մէջ նոյն երկու համալսարաններուն վարդապետները մեծապէս կը նախատէր ու կը թշնամանէր, զիրենք՝ յիմար ու անպիտան կոճղէ մը աւելի անմիտ կը կանչէր [10], բայց ի վերայ այսր ամենայնի տեսնելով որ այսպէս ամէն կող-

8. Առ Բլանքայ, Գիրք Բ. Հատ. Ա. 234. Ծանօթ. 161. եւ առ Կուստ. Ֆիցերի, Գլ. Զ. 118, 119:

9. Աս երկու համալսարաններուն տուած վճիռները տես ի Գործս Լութ. լատ. Հատ. Բ. 34.—38. Բ: Տես Նաեւ Բլանք, Գիրք Բ. Հատ. Ա. 236, 237:

10. Գործք Լուտ. լատ. Հատ. Բ. 38. Բ.—44:

մանէ իրեն դէմ կ՚ելլէն, եւ իր վարդապետութիւնները՝ որոնք որ ինք կը կարծէր թէ ամէն մարդ ուրախութեամբ ու զարմացմամբ պիտ՚որ ընդունի, իբրեւ հերետիկոսական կը դատապարտեն, շատ պլպլեցաւ ու վհատեցաւ[11]: — Երկրորդ պատճառն ալ ան էր, որ Կարոլոս Ե. Գերմանիայի նոր ընտրուած կայսրը[12], որուն որ տարւոյն (1520ին) սկիզբները շողոքորթական ու խոնարհական նամակ մը գրած եւ իր կողմը շահելու ջանացած էր[13], իրեն ամենեւին պատասխան չէր տուած. որով Լու-

11. Ասոր վրայ Բլանք (Գիրք Բ. Հատ. Ա. 237.) այսպէս կը խօսի. "Նոյն ատենները համալսարանի մը վճիռը՝ հիմակուան ժամանակը ունեցածէն շատ աւելի ազդեցութիւն ու զօրութիւն ունէր. անոր համար Լուտեր սրտին մէջ շատ կը ցաւէր որ երկու համալսարան մէկտեղ իր հետը այնպէս անիրաւութեամբ կը վարուէին": Եւ քիչ մը ետքը կ՚ըսէ որ Լուտեր անոնց պատասխան տալու ատեն յայտնապէս խոստովանեցաւ որ աս բանէս "իրօք շատ վհատած ու ներքսուստ խռովւած է":

12. Կայսրը 1519ին, Յունիսի մէջ ընտրուած էր:

13. Լուտերին՝ առ Կարոլոս կայսր գրած նամակն աս էր. "Շնորհք եւ խաղաղութիւն ի Տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ: Ամէն մարդ իրաւամբ պէտք է որ զարմանայ, որ ես, ամենաբարի իշխանակալ Կարոլոս, ձեր կայսերական փառաւորութեան նամակ գրելու կը յանդգնիմ: Ինչու որ ասկէց աւելի ինչ արտաքոյ կարգի ու անպատշաճ բան կրնայ ըլլալ՝ որ ստորին եւ անարգ մարդ մը թագաւորաց թագաւորին ու տերանց տէրին հետ խօսիլ համարձակի: Բայց թէ որ մէկը խօսելու նիւթիս մեծութեանը միտ դնէ եւ իմանայ որ խօսքը՝ աստուածային ճշմարտութեան վրայ է, անկէ վերջը ալ այնչափ շատ չիզարմանար. ինչու որ եթէ նոյնը Աստուծոյ աթոռոյն առջեւն ելլելու արժանի է նէ՝ աւելի եւս արժանի է երկրաւոր ու մահկանացու թագաւորի մը առջեւն ելլելու: ... Անոր համար ես աղքատ ու ողորմելի մարդս կու գամ ձեր կայսերական փառաւորութեան ոտքը կ՚իյնամ, մէկ կողմանէ՝ իբրեւ անարժան, մէկալ կողմանէ՝ իբրեւ ամէն բանէն աւելի արժանի բան մը առջեւնիդ հանող:

"Ես քանի մը գրքեր հրատարակեցի, որոնցմով շատերուն ու մեծ մարդիկներուն նախանձը, բարկութիւնն ու սրտմտութիւնը վրաս գրգռեցի, ուր որ անոնց համար շնորհակալութեան ու կրկին պաշտպանութեան արժանի էի: Ինչու որ նախ՝ իմ կամացս դէմ հարկադրեցայ դուրս ելլելու. եւ ստուգիւ ալ ամենեւին բան մը գրելու ձեռք չէի զարներ, թէ որ հակառակորդներս բռնութեամբ ու նենգութեամբ զիս ստիպած չըլլային. ուստի եւ դրածս՝ իրենցմէ բռնադատեցայ գրելու: Եւ թէ որ ինծի մնալու ըլլար՝ ես խցիս անկիւնը ծածուկ մնալէն ուրիշ բանի մը չէի բաղձար: Երկրորդ՝ իմ խղճմտանքիս վկայութեան ու շատ երեւելի մարդիկներուն դատաստանին նայելով՝ ես ուրիշ բան չուզեցի, բայց եթէ մարդկան սնոտի աւանդութիւններուն եւ ընդունայն կարծիքներուն դէմ աւետարանական ճշմարտութիւնները քարոզել: Եւ աս բանիս համար է որ գրեթէ երեք տարի է՝ միշտ բարկութիւն, նախատինք, վտանգ ու հակառակորդներուս ձեռքէն եկած ամէն տեսակ չարիքները կը կրեմ: Թէպէտ շնորհք ու թողութիւն կը խնդրեմ, թէպէտ կը խոստանամ որ լուռ կենամ, թէպէտ խաղաղութեան պայմաններ կ՚առաջարկեմ, թէպէտ կը խնդրեմ որ սխալմունքս ցուցընեն, ամենն ալ փուճ է: Խնդրածնին՝ միայն աս է, որ ես Աւետարանին ու աստուածային ճշմարտութեան հետ մէկտեղ, որն որ միշտ պիտի մնայ, կորսուիմ ու ջնջուիմ:

"Արդ որովհետեւ մինչեւ հիմա փորձած ամէն միջոցներս պարապ ելան, աղէկ սեպեցի որ Ս. Աթանասին օրինակին հետեւելով՝ ձեր կայսերական փառաւորութեան դի-

տեր սկսաւ վախնալ որ չըլլայ թէ ինքնակալը քահանայապետին հետ միանալով՝ զինքը զսպելու ջանայ կամ մոլորութիւնները եւ կանչելու ստիպէ:

Արդ աս ամէն բաները տեսնելով, վտանգէն ազատելու համար երկայն ատեն զանազան միջոցներ մտածելէն ետեւ, միտքը դրաւ որ Վիդդենպերկէն ելլէ, ու փախչի Բոհեմիա Հուսեաններուն քովն երթայ, գիտնալով որ անոնցմէ աղէկ ընդունելութիւն ու պաշտպանութիւն կը գտնէ[14]: Բայց ինք աս խորհուրդներուն մէջ եղած ատեն՝ Փրանկոնիայէն թուղթ մ՚առաւ, որուն մէջ հոնտեղի ազնուականներէն ոմանք իրեն խրատ կու տային ու կը յորդորէին որ քաջալերուի եւ սկսած գործքը համարձակութեամբ յառաջ տանի: Թէ որ, կ՚ըսէին, զքեզ Սաքսոնիայէն վռնտելու ըլլան, մեր բերդերը քեզի բաց են. եւ չէ թէ միայն մենք, հապա ուրիշ հարիւր ասպետներ մեզի հետ մէկտեղ՝ զքեզ պաշտպանելու պատրաստ ենք: Եւ թէ որ հարկ ըլլայ նէ՝ զքեզ պաշտպանելու եւ քու վարդապետութիւնդ հաստատելու համար՝ մենք զէնքով ու զօրքով կեցած ենք, մինչեւ ինչքերնիս ու կեանքերնիս ալ քեզի համար կը դնենք[15]: — Լուտեր աս թուղթն առածին պէս՝ ուրախու-

մեմ, որ գուցէ Աստուած ձեր ձեռքովը չէ թէ ինծի՝ հապա իր դատին կ՚օգնէ: Անոր համար ձեր կայսերական փառաւորութեան ոտուըները կ՚իյնամ, ով Կարոլոս՝ երկրի թագաւորներուն իշխանը, եւ ամենայն խոնարհութեամբ ու հպատակութեամբ կ՚աղաչեմ որ չէ թէ զիս՝ հապա աստուածային ճշմարտութեան դատը ձեր թեւերուն տակն առնէք, որուն համար ալ որ ձեր կայսերական փառաւորութեան՝ սուրը կրելու իշխանութիւնը տրուած է, չարագործներէն վրէժ առնելու եւ բարեպաշտներուն օգնելու. իսկ զիս այնչափ միայն պաշտպանէք, մինչեւ որ վրաս քննութիւն ըլլալով՝ կամ յաղթեմ կամ յաղթուիմ: Թէ որ ամպարիշտ ու հերետիկոս գտնուելու ըլլամ նէ՝ ալ անկէ վերջը պաշտպանութիւն չեմ ուզեր. միայն մէկ բան մը կը խնդրեմ, այս ինքն թէ ո՛չ ճշմարտութիւնը եւ ո՛չ սուտութիւնը առանց քննութեան ու հարցափորձի դատապարտուի:

"Ձեր թագաւորական ու կայսերական գահին ասիկա կը վայլէ, ասիկա զարդ կ՚ըլլայ ձեր կայսերութեան, ասիկա պատճառ կ՚ըլլայ որ մեր յաջորդները ձեր կառավարութեան ժամանակը գովեն ու յարգեն, այս ինքն ձեր օրքաղան փառաւորութիւնը թող չտայ որ ամպարիշտը՝ իրմէ անմեղ ըլլողը կլլէ: . . . Այնպէս ինքը զինքս կը յանձնեմ, այնպէս կը վստահիմ, այնպէս կը յուսամ ձեր օրքաղան փառաւորութեան, զորն որ Տէր Յիսուս մեզի պահպանէ եւ բարձրացընէ, իր Աւետարանին յաւիտենական փառացը համար. ամէն,,:

Տուեալ ի Վիդդենպերկ, ի 15 Յունուարի, 1520: — Աս նամակը տես ի Գործս Լութ. Գերմ. Հատ. Ա. 220. լութ. Բ. 44. Բ:

14. Ուլէնպերկ, Գլ. Ե. Համ. Բ: Բլանք, Գիրք Բ. Հատ. Ա. 246:

15. Կուստաւ Փիցեր, Գլ. Ը. 145.—147. Բլանք, Գիրք Բ. Հատ. Ա. 247: Մենցլ, Հատ. Ա. Գլ. Բ. 63: — Աս ազնուականներուն մէջ գլխաւորներն էին Ուլրիխ Հուդդէն ու Փրանկիսկոս Սիքինկէն, որոնցմէ առջինին գլխաւոր զէնքը՝ նախատական ու ապստամբութեան յորդորող գրուածքներն էին. իսկ երկրորդը՝ միշտ քովը իր ամէն հրամաններուն հնազանդ բանակ մ՚ունէր, որն որ իրենց յանցանացը համար տներնին տեղերնին կորսնցու-

թեամբ լեցուեցաւ, եւ չէ թէ միայն Բոհեմիա փախչելու խորհուրդը մէկդի ձգեց, հապա նաեւ քահանայապետին եւ ուղղափառներուն հետ աւելի եւս յանդգնութեամբ ու անամօթութեամբ վարուելու սկսաւ: Թուղթն ընդունելէն քիչ մը ետքը՝ Սփալադինին այսպէս կը գրէ. "Իմ քուէս ձգուեցաւ, հռոմէական կատաղութիւնը կամ շնորհքը արհամարհեցի. ասկէ վերջը հետերնին չեմ ուզեր հաշտուիլ եւ յաւիտեան չեմ ուզեր հաղորդակցութիւն ունենալ: Ուզեն գրքերս այրեն, ուզեն դատապարտեն: Ես ալ անոր տեղը, թէ որ կրակ չիպակսիր նէ՝ բոլոր պապական իրաւունքը կը դատապարտեմ ու հրապարակաւ կ'այրեմ. մինչեւ հիմա ցուցուցած խոնարհութիւնս՝ որն որ անպտուղ մնաց, պէտք է որ ա՛լ վերջ մ'ունենայ,,[16]: Քանի մը օր վերջն ալ նոյն Սփալադինին այսպէս կը գրէ. Ուոլֆհեռտեւ Փրանկիսկոս Սիքինկէն եւ ուրիշները "դիէ մօրգէնրէօթէ վոխեն թագհօվլցույէն, պէտք է որ ետեւէն սատանային կատաղութիւնը գայ,,[17]:

Մինչեւ նոյն ատենները Լուտեր կը ջանար որ իր բուն փախճանը ծածկէ, եւ ամէն բան կէս մը գաղտուկ կը գործէր. բայց երբ որ տեսաւ որ շատ իշխաններ ու ազնուականներ իր կողմը միտած են, ու ռամիկ ժողովրդեան մէկ մասն ալ զինքը սիրով կը լսէ, ա՛լ անկէ ետքը կեղծաւորութիւնն ու ծածկութիւնը մէկդի ձգեց, եւ միտքը դրածը յայտնապէս դուրս հանեց: Գուցէ ալ իսկզբան միտքը չեղածը՝ գտած ընդունելութենէն ու պաշտպանութենէն՝ միտքն ինկաւ: Ինչպէս որ է նէ՝ ան ատենները հրատարակած գրուածներուն մէջ միտքը բոլորովին յայտնի ցուցուց: Աս գրուածքներէն մէկն էր Քրիստոնէութեան վիճակը նորոգելու վրայ շինած գիրքը, որն որ Կարոլոս կայսեր ու Գերմանացւոց ազնուականներուն նուիրեց, եւ որուն մէջ, Լեւոնին բսածին պէս, "Ամէն սահմանները՝ որոնք որ պէտք էր յարգել, խորտակեց անցաւ,,[18]: Գրքին սկիզբը Լուտեր այսպէս կը խօսէր. "Լռելու ատենն անցաւ եւ խօսելու ժամանակն եկաւ...: Անոր համար եկեղեցւոյ նորոգութեան վրայ ինծի հարկաւոր երեւցած քանի մը բաները ժողվեցի եւ աս գրքովս Գերմանացւոց ազնուականներուն նուիրեցի. մտածելով որ գուցէ Աստուած աշխարհականներուն ձեռքովը իր եկեղեցւոյն օգնութեան հաս-

ցած ազնուականներէ ու սուրերով բանուած զինուորներէ կազմուած էր, եւ աս բանակով Սիքինկէն մերձաւոր իշխաններուն ու ազնուականներուն երկիրները ուզածին պէս կրնար աւար առնել ու կողոպտել: Ռէնքէ, Գերմ. Ա. Գլ. Դ. 102: — Անոր վրայ տես Նախ. Բ. Գրքին Բ. Գլխուն 22. ծանօթ:

16. Առ Բլանքըս, Գիրք Բ. Հատ. Ա. 247. ծանօթ. 178:

17. Առ Եղբ., Հատ. Ա. Հատ Դ. Համ. ԺԱ:

18. Ռանք Գ. Հատ Ա. Գլ. Ա. 92:

նել կ'ուզէ, որովհետեւ եկեղեցականք՝ որոնց որ սա գործքը կը վայլէր, ամենեւին փոյթ չէին տանիր,, 19: Աս խօսքով յայտնապէս կը ցուցընէր թէ իր վախճանն ան է որ աշխարհական իշխաններուն ձեռքովը քահանայութեան կարգը ջնջէ, որպէս զի ալ անկէ ետեւ ուզածին պէս կրօնքն ու եկեղեցին տակն ու վրայ ընէ: Իսկ բուն գրքին մէջ գլխաւորաբար աս երկու նիւթին վրայ բոլոր զօրութիւնը կը թափէ. մէկ մը կը ջանայ հաստատել որ Նոր օրինաց մէջ աստուծմէ քահանայութիւն կամ քահանայական վիճակ չկայ. հապա ամէն մկրտութիւն ընդունողները՝ թէ այր եղեր են թէ կին՝ նոյնին իսկ քահանայ կ'ըլլան ու մէջերնին ամենեւին զանազանութիւն չկայ 20: Երկրորդ՝ Հռոմայ քահանայապետին համար յայտնապէս կը գրուցէ որ Նեռն է. եւ աս բանը հաստատելու համար՝ առջի դարերէն մինչեւ իր ատենները բոլոր հերետիկոսներուն՝ Հռոմայ եկեղեցւոյն դէմ ըրած զրպարտութիւններն ու թշնամանքները գրքին մէջ կը լեցընէ, խել մըն ալ իր կողմանէ վրան աւելցընելով:

Լուտերին աս գիրքը անանկ նենգութեամբ ու խարդախութեամբ գրուած է, որ շատ բողոքող մատենագիրներ, որոնք որ մէջի վարդապետութիւնները իբրեւ ճշմարիտ կը պաշտպանեն, ի վերայ այսր ամենայնի իր խաբէութիւնն ու նենգութիւնը կը պարսաւեն, եւ պատճառած չարիքները կը խոստովանին: Աշհուարիկ մէկուն խօսքերը: “Յայտնի է որ Լուտեր, թէպէտ եւ ամենայն ինչ միայն հաւատքին վրայ կը հիմնէր, սակայն եւ այնպէս աս գրքին մէջ եկեղեցւոյ համար ըրած հիմնական պահանջմունքներուն վրայ գէշ բան մ'աւելցուց, որպէս զի կայսրը իր կողմը շահի ցուցընելով որ ‘Եթէ Լուտերական կողմը ‘պաշտպանելու ըլլայ նէ՝ եկեղեցւոյ տէրութեան երկիրները եւ ‘Նէապոլսոյ վիճակը կրնայ իրեն սեպհականել,,: Միանգամայն որպէս զի Գերմանիայի մէջ իշխաններն, ազնուականներն ու քաղաքները կարող ըլլայ իրեն որսալ, առջեւնին իբրեւ խայծ աս գրաւ որ Եկեղեցւոյ հիմնկուան ունեցած ինչքերուն հարիւրին մէկը՝ եկեղեցիներուն պահպանութեան բաւական է, եւ թէ քահանայապետներուն՝ Գերմանիայէն առած մուրքերուն արգելելու եւ չտալու է: Դարձեալ որպէս զի ստորին եկեղեցականներն ալ նորոգութեան կողմը շահի, իրենց յոյս տուաւ որ կրնան ամուսնանալ: Ազնուականաց՝ եկեղեցական իշխաններուն դէմ ունեցած ատելութեան սնունդ տուաւ, եւ շահասիրութիւններին գրգռեց առջեւնին դնելով որ կանոնիկոսներուն եկա-

19. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ա. 319:

20. Տես անդ 320.—322: — Աս այլանդակութիւնը Լուտերի գրուածոց մէջ անթիւ անհամար տեղեր կը գտնուի.

մուտքը կլնան իրենց առնել։ Համառօտ ընելու համար՝ Լուտերին աս ... գիրքը անանկ գրուածք մըն է, որուն մէջ շատ աղէկ (՞) ու շատ գէշ պատճառները ... գարշելի խառնուած մը կը շինեն. եւ գլխաւորաբար աս կրօնաւորներն ծածկած են եկեղեցւոյ ան[illegible]ութիւններն ու անտարբերութեան մէջ ինկալը, որ ետեւէն պատահեցան ան կողմերը՝ ուր որ բողոքողութիւնը յաղթեց։ Ստոյգ է որ աս ամէն երեւոյթներն ալ իրենց օգտակար հետեւութիւններն ունեցած են (՞), ինչպէս որ ամէն տեղ նաեւ մեղքն ալ Աստուծոյ փառացը կը ծառայէ. բայց ասոր համար հարկաւոր չէ որ մարդ գէշ բանը՝ գէշ անուանելու վախնայ„[21]։ — Նոյն բողոքող մատենագիրը աս խօսքերը գրելէն վերջը, Լուտերին աս գրքին՝ նաեւ տէրութեան կարգերուն փոխուելուն ու Գերմանիայի կայսրութեան քակուելուն պատճառ ըլլալուն վրայ խօսելով՝ այսպէս կը զրուցէ։ “Բոլորովին անկարելի բան է որ Լուտեր կարող եղած ըլլայ միտքը դնել թէ իր աս գրքին մէջ ուզածները օր մը կատարեալ պիտի գլուխ ելլեն. բայց աս ալ անկարելի է որ կարող եղած ըլլայ բոլորովին միտ չդրած ըլլալ թէ անկից ի հարկէ պէտք էր որ պետութեան շատոնցուընէ եկած իրաւանց վիճակը խառնաշփոթ ըլլայ ու կործանի„։ Եւթէպէտ, կ'ըսէ, աս բանով հաւատքին ստացած կենդանութեան (՞) վրայ նայելով՝ մարդս պետութեան կործանման վրայ կրնայ քիչ մը մխիթարուիլ. “Բայց դժուարաւ կրնայ մէկը ինք իրեն աս հարցումը չընել թէ արդեօք աս նպատակին ուրիշ մէկ նուազ կործանիչ կերպով չէ՞ր կրնար հասնուիլ. եւ դարձեալ (չիկրնար ինք իրեն չհարցընել) թէ Լուտեր՝ որ աս իր գրգռիչ գրուածքովը մէկ կողմանէ եկեղեցւոյ առջեւը մեծ արդիւնք ստացած է (՞), արդեօք մէկալ կողմանէ վրան սաստիկ պատասխանատուութիւն մը առած չէ՞„[22]։

՝Նոյն (1520) տարին Լուտեր եկեղեցւոյ խորհուրդներուն վրայ ալ ուրիշ գիրք մը շինեց, որուն անունն էր Մարտ. Լութերի, Պատրաստութիւն վասն Բաբելոնական գերութեան եկեղեցւոյ[23]։ Ստուգիւ, կ'ըսէ Ուլենպերկ[24], աս գիրքը պատրաստութիւն մըն էր ան հերետիկոսական Բաբիլոնին, զորն որ կանգնելու ատեն Լուտեր՝ Բաբիլոնի աշտարակաշինութեան ժամանակ ծնած լեզուներէն աւելի մոլորութիւններ դուրս հանեց։ Բայց աւելի զարմանալին ան է որ մոլորութեան հոգւով գինովցած՝ ամէն բան տակնուվրայ ընելու բաղձանքով՝ աս գրքին մէջ ինք իրեն դէմ կը խօսի ու իր անձին դէմ կը կռուի։ Գրքին սկիզբները երեք

21. Լեւոն, Մատն Գ. Հատ Ա. Գլ. Ա. 94, 95։

22. Նոյնը, նոյն տեղը, 95, 96։

23. Գործք Լուտ. լատ. Հատ. Բ. 66. Բ. — 93։

24. Գլ. Ե. Համ. Գ.

խորհուրդ կ'ընդունի (այս ինքն մկրտութիւն, ապաշխարութիւն ու հաղորդութիւն), վերջերը՝ երկուք (այս ինքն մկրտութիւն ու հաղորդութիւն, որովհետեւ, կ'ըսէ, ապաշխարութիւնը՝ Քրիստոսէն դրուած տեսանելի նշան մը չունի), իսկ մէջտեղերը՝ մինակ մէկ խորհուրդ (այս ինքն՝ հաւատք, եւ երեք խորհրդական նշաններ). եւ այսպէս կարդացողները տարակուսի մէջ կը ձգէ թէ քանի խորհուրդ ընդունելու է[25]։ Դարձեալ աս գրքին մէջն ալ ընդարձակ կերպով մը կը փաստաբանէ որ եկեղեցւոյ մէջ մի միայն հոգեւոր քահանայութիւն կայ, որն որ ամէն մկրտելոց հասարակ է։ Անկից զատ նոյն գրքին մէջ կը փաստաբանէր որ, կ'ըսէ Բլանք, "Քրիստոնէի մը բոլոր կեանքը՝ իր մկրտուելու ատեն նշանակուածին շարունակեալ գործադրութիւնը պէտք է որ ըլլայ. այս ինքն թէ քրիստոնեան ամէն օր Քրիստոսի հաւատքովը պէտք է որ ապրի ու մեռնի։ Եւ վրան կ'աւելցընէր որ ասով մենք ուրիշ ամէն պարտականութիւններէն, ուրիշ ամէն օրէնքներու լուծէն ազատ ենք,,։ Աս ըսելէն վերջը՝ վրան ետեւի խորհրդածութիւնը կ'աւելցընէ։ "Թէ որ, կ'ըսէ, աս խօսքով՝ միայն ան իմացուէր որ օրէնքներէն ազատ ենք՝ որչափ որ ուրիշ պարտաւորութիւնները կատարելը, օրէնքները պահելը՝ աս բանիս մէջ կը պարունակուի, ստուգիւ Լուտերին փաստաբանութիւնն աղէկ էր. բայց Լուտեր հոն կանգ չէր առներ, հապա աս բանիս հեռաւոր հետեւութիւններն ալ կը հանէր...։ Թէ որ, կ'ըսէր, քրիստոնեայք ազատ են նէ, ուրեմն ո՛չ պապը, ո՛չ եպիսկոպոսը եւ ո՛չ ուրիշ մարդ մը իրաւունք ունի ճշմարիտ քրիստոնէի մը՝ առանց իր (քրիստոնէին) հաւանութեան՝ բառ մըն ալ պատուիրելու, ուստի եւ առանց իր կամացը՝ վրան դրուած ամէն օրէնք՝ բռնաւորութիւն է. աղօթքը, պահքը,... եւ ուրիշ բաները՝ որոնք որ պապը իր վճիռներուն մէջ կը հրա-

25. Նոյն (1520) տարին ինք Լուտեր յայտնապէս կը փաստաբանէր որ եկեղեցւոյ խորհուրդները եօթն են. ինչու որ նոյն ատենները Նոր կտակարանի կամ պատարագի վրայ գրած մէկ ճառին մէջ այսպէս կը խօսի. "Պէտք է որ պատարագը թողունք ինչպէս որ է նէ՝ խորհուրդ եւ կտակ, որն որ չէկրնար զոհ (կամ պատարագ) ըլլալ, ինչպէս որ ուրիշ խորհուրդներն ալ, մկրտութիւնը, դրոշմը, ապաշխարութիւնը, (վերջին) օծումը, այլովքն հանդերձ,,։ Գործք Լուտ. Վիտ. Հատ. Ա. 314։ Արդ Լուտեր աս խօսքին մէջ յայտնապէս կ'ընդունի որ պատարագը խորհուրդ է, ու վրան չորս խորհուրդ ալ կ'աւելցընէ, որով հինգ խորհուրդ կ'ըլլան. այս ինքն՝ Ա. մկրտութիւն, Բ. դրոշմ, Գ. ապաշխարութիւն, Դ. պատարագ կամ հաղորդութիւն եւ Ե. (վերջին) օծումն. եւ՝ ետքը կը դնէ այլովքն հանդերձ, etc. et cætera). բայց որպէս զի կարենար այսպէս յոգնակի (այլովքն, cætera) դնել, հարկ էր որ մէկէն աւելի ու գոնէ երկու բան գտնուի. եւ աս երկուքն ալ յայտնի է որ Զ. ամուսնութիւնը կամ պսակը եւ Է. կարգ քահանայութեանն է։ Ուստի Լուտերին խօսքին նայելով՝ եկեղեցւոյ խորհուրդները եօթը կ'ըլլան։ Ասոր վրայ ետքը ուրիշ տեղ ալ առիթ կ'ունենանք խօսելու։

մայէ եւ կը պահանջէ, անիրաւութեամբ հրամայուած, անիրաւութեամբ պահանջուած բաներ են․ ամէն անգամ ասանկ օրէնք մը տուած ատեն՝ եկեղեցւոյ ազատութեան դէմ կը մեղանչէ,, 26 ։

Ո՛ս ամէն բան գրած ու վարդապետած ատեն՝ Լուտեր դարձեալ Մելանքթոնին յորդորելովը քահանայապետին նամակ մը գրեց 27․ բայց այս նամակը՝ Մելանքթոնին բաղձացածէն շատ տարբեր գրուածք մըն էր ։ Անանկ թուղթ մը ոչ Արիոս, ոչ Նեստոր, ոչ Վիքլէֆ, ոչ Հուս եւ ոչ ուրիշ մարդ մը՝ բաց ի Լուտերէն կրնար գրելու յանդգնիլ, եւ նոյն նամակը՝ գրողին մշտնջենաւոր նախատինք մը պիտի՛ որ ըլլայ 28 ։ Առիկա անանկ նամակ մըն էր, որ "չէ թէ հաշտութիւն, հապա եղածէն աւելի

26․ Գիրք Գ․ Հատ․ Ա․ 296, 297 ։ — Բլանք այս խօսքերը գրելէն վերջը՝ կը ցուցնէ որ Լուտեր ասոնց վրայ կ՚աւելցընէր թէ "Թէպէտ եւ կը խոստովանիմ որ քրիստոնեայք այս նզովեալ բռնաւորութիւնը կրելու պարտական են, ինչպէս որ աշխարհքիս մէջ ուրիշ ամէն հարստահարութիւնները կրելու պարտաւոր են․ բայց ամպարիշտ պապերը պէտք չեն պարծիլ որ իրաւունք ունին վրանիս ասանկ բռնաւորութիւններ դնելու, եւ մենք պէտք է որ գիտնանք թէ մեզի անիրաւութիւն կ՚ընեն,, ։ Եւ ինք իր կողմանէ վրան կ՚աւելցընէ․ "Բայց այս յաւելուածով՝ իր (Լուտերին) վարդապետութեան անորոշ միտքը չփոփոխուեցաւ, եւ չին կրնար խափանել ան չարաչար հետեւանքները՝ որոնք որ մարդկային չարութիւնն ու պարզամտութիւնը կրնար անկէց հանել, եւ որոնք որ հետքը իրօք ալ հանեցին,, ։ 297 ։

27․ Լուտերին այս նամակը երբ գրելուն վրայ վէճ կայ․ Սեքենտորֆ, եւ իրմէ ետքը եկող բողոքող մատենագիրներէն շատերը կը հաստատեն որ թէպէտ Լուտերին Գործոց մէջ այս նամակին թուականը՝ 1520, Ապրիլ 6 գրուած է․ բայց այս թուականը սխալ է, նամակը Սեպտեմբերի մէջ գրուած է․ եւ այս բանս զրուցելնուն պատճառն ան է որ կարենան Լուտերին այս նամակին մէջ գրած նախատական խօսքերը ջատագովել, ըսելով որ իր նզովուելուն կոնդակին ընդունելէն վերջը գրելովը՝ սաստիկ պղպղութեան ու սրտի դառնութեան մէջ էր ։ Թէպէտ եւ մեզի այնպէս կ՚երեւայ որ առիկա վրան խնդիր ընելու բան մը չէ, ի վերայ այսր ամենայնի պատշաճ սեպեցինք իմացընել, եւ լաւ կը համարինք Ռոսգոյին այս բանիս վրայ գրածը հաստատել դնել ։ "Սեքենտորֆ կը ջանայ ցուցընել որ, կ՚ըսէ նոյն մատենագիրը, այս նամակը՝ թէպէտ եւ թուականը 1520ին Ապրիլի 6ին գրուած է, ի վերայ այսր ամենայնի Սեպտեմբերի 6ին կամ աւելի եւս ուշ գրուած ըլլայ, եւ մեծ ճարտարութիւն ի գործ կը դնէ այս կարծիքը հաստատուն ընելու համար ։ Բայց չէ թէ միայն այս նամակին ամէն տպուած օրինակները Ապրիլի 6ը կը հաստատեն, եւ Սլէյտանին ու Բալլավիչինիին միաբան վկայութիւնը առիկա կը ցուցընեն, որոնք երկուքն ալ այնպէս կը դնեն որ Լուտերի նամակը՝ քահանայապետին կոնդակին Յունիսի 15ին հրատարակուելէն յառաջ գրուած էր, հապա նաեւ նոյն իսկ նամակը ներքին շատ նշաններ ունի, որոնք յայտնի կը ցուցընեն որ Հռոմի մէջ Լուտերին ու իր վարդապետութիւններուն վերջնական դատապարտութիւնը չորոշուած՝ այս նամակը գրուած էր ։ Անոր համար նամակին գերմաներէն թարգմանութեան տակը գրուած Սեպտեմբերի 6 թուականը շատ յայտնի սխալ մըն է, (a most evident error,) որովհետեւ անիծեալ կոնդակը, ինչպէս որ Լուտեր կ՚անուանէ, ան ատեն արդէն երեք ամիս էր որ հրատարակուած էր․ եւ հաւանական բան չէ որ Լուտեր իր նամակին մէջ անոր վրայ ամենեւին յիշատակութիւն մը չընէր,, ։ Գլ․ ԺԹ․ Հատ․ Դ․ 16․ Ծանօթ ։

28․ Օտէն, Հատ․ Ա․ Գլ․ ԺԴ․ 160 ։

դառնութիւն պիտի պատրաստէր,, 29 . անանկ նամակ մը՝ որն որ "ուրիշ բան չէր կրնար ըլլալ, բայց եթէ կրակին վրայ եղ լեցընել,, 30 : Անանկ թուղթ մըն էր ասիկա, որուն մէջ Լութեր "Քահանայապետին՝ հնազանդութիւն, յարգութիւն եւ նոյն իսկ սէր կերպարանելով, ամենասաստիկ հակառակութիւն, ամենադառն կատականք եւ շատ յայտնի արհամարհութիւն մը կը ցուցընէր. այնպէս որ Լութերին՝ աս նամակին մէջ զրուցածէն աւելի արհամարհիչ ու նախատական բան մը անկարելի է որ միտք (Քահանայապետին) դէմ կարենայ ըսուիլ,, 31 : Լութերին ոգին աղէկ մը ցուցընելու համար՝ հարկ է որ աս ամպարիշտ թղթին քանի մը կտորները հոստեղս դնենք :

"Ամենասուրբ Հայր, Լեւոն : Երեք տարիէ վեր աս դարուս հրէշներուն հետ ունեցած գործքս ու կռիւս զիս կը ստիպէ որ երբեմն երբեմն քեզի նայիմ ու զքեզ յիշեմ : . . . Բայց յայտնապէս կը խոստովանիմ եւ խիղճս ալ կը վկայէ որ միշտ քու վրադ՝ միայն ան յիշեցի ու ան խօսեցայ որն որ պատուաւոր ու աղէկ էր : Եւ թէ որ ուրիշ կերպով վարուած ըլլայի՝ ամենեւին ինքը զինքս չէի կրնար ջատագովել, անձամբ իմ հակառակորդներուս դատապարտածը հաստատած կ'ըլլայի, եւ աս իմ յանդգնութիւնս ու ամպարշտութիւնս եա կանչելէն աւելի բան մը չէի ուզեր : Զքեզ Դանիէլ ի Բաբիլոն անուանեցի, եւ քու զարմանալի անմեղութիւնդ՝ զքեզ նախատող Սեղբեստրոսին դէմ ինչպիսի հօգաբարձութեամբ պաշտպանած ըլլալս՝ իմ գիրքս կարդացողները կրնան աղէկ տեսնել : . . . Բայց ան ալ ստոյգ է որ քու Գահդ . . . աղտոտ ու համարձակ նախատեցի : Սակայն ո՛չ դուն եւ ո՛չ ալ երկրի վրայ ուրիշ մէկը կրնայք ուրանալ թէ Բաբիլոնէն ու Սոդոմէն աւելի ապականած է : Եւ ինծի անանկ կ'երեւայ որ անոր աղէկնալուն հնարք ու դեղ փնտռելը փուճ է : . . . Դուն ալ գիտես որ ինչպէս շատ տարիներէ վեր Հռոմ քաղքէն՝ միայն մարմնոյ եւ հոգւոյ եւ ընչից ապականութիւն, եւ ամէն չարիքներու չարաչար օրինակներ ելլելով՝ բոլոր աշխարհքիս երեսը կ'ողողեն : Աս ամէն բաները լոյսէն աւելի յայտնի են, եւ ամէն մարդ կը տեսնէ թէ Հռոմայ եկեղեցին՝ որ երբեմն ամենասուրբ էր, հիմա ամէն աւազակներու այրերէն դէշ աւազակաց այր, ամօթալի անառակութեան

29. Մէնցլ, Հատ. Ա. Գլ. Բ. 76:

30. Լեւոն, Մասն Գ. Հատ Ա. Գլ. Ա. 98:

31. Under the pretext of obedience, respect, and even affection for the pontiff, he has conveyed the most determined opposition, the most bitter satire, and the most market contempt; insomuch, that it is scarcely possible to conceive a composition more replete with insult and offence, than that which Luther . . . . Ռոսքոյ, Գլ. ԺԹ. Հատ. Դ. 10, 11:

տուն, մեղաց, մահուան ու դժոխոց թագաւորութիւն եղած է. այնպէս որ չիկրնար մոռածուիլ որ եթէ Նեռը գալու ըլլար նէ՝ անկից աւելի չարութիւն մը կարող ըլլար վրան աւելցընել»:

«...Ո՞վ է պատճառը՝ որուն համար ինծի միշտ ցաւ եղած է որ դուն, ամենաբարի Լեւոն, որ ուրիշ լաւագոյն առեն քահանայապետ ըլլալու արժանի էս, առանկ ժամանակ մը քահանայապետ եղած էս: Հռոմայ աթոռը քեզի ու քու նմաններուդ արժանի չէ. հապա արժանի է որ սատանան հիմա հոն քահանայապետ ըլլայ, որն որ արդէն քեզմէ աւելի ան Բաբիլոնին մէջ կը թագաւորէ:... Ստոյգ չէ՞ մի որ երկնից տակը Հռոմայ արքունիքէն աւելի ապականեալ, աւելի անպիտան, աւելի ատելի բան մը չկայ, մինչեւ իր ամպարշտութիւնը Տաճկըներուն ամպարշտութենէն առանց համեմատութեան աւելի է: Ստոյգ է որ Հռոմ երբեմն երկնից դուռ էր. բայց հիմա դժոխքին բերանն եղած է, եւ այնպէս բացուած է, որ Աստուծոյ բարկութեանը համար՝ ամենեւին մէկը չիկրնար գոցել»:

«Լուտեր աս ու ասոր նման նախատական խօսքեր խօսելէն ետեւ, կ'ըսէ Ռոսգոյ, որոնք որ միշտ քահանայապետին անձին վրայ շատ անարգական գովութիններով խառն են, իր վարմունքին վրայ համառօտիւ խօսելու կ'անցնի, եւ Հռոմայ գահին՝ զինքը լռեցընելու համար ըրած փորձերը կը պատմէ: Էքը՝ սատանայի ծառայ ու Յիսուսի Քրիստոսի հակառակորդ կ'անուանէ, եւ Կայետանոս կարդինալին վարմունքին վրայ անանկ դատանութեամբ մը կը խօսի, որն որ իր առջի յարգութեան խօսքերուն հետ ամենեւին չեն միաբանիր»[32]: Բայց բոլոր նամակին մէջ գրած հենգնական խօսքերը պսակելու համար, այսպէս կը լմնցընէ: «Վերջապէս քու Սրբութեանդ առջեւը ձեռնունայն չելլելու համար՝ հետս աս պզտիկ գիրքը կը բերեմ, որն որ քու անուանդ նուիրուած է, իբրեւ խաղաղութեան եւ բարի յուսոյ նշան եւ սկիզբ, որմէ կրնաս իմանալ թէ ես ինչպիսի զբաղմունքներու կ'ուզէի ու կրնայի աւելի օգտակար կերպով ետեւէ իյնալ, թէ որ քու ամպարիշտ շողոքորթներդ թող տուած ըլլային, կամ թող տային: Աս գիրքը՝ թէ որ չափին նայելու ըլլաս՝ պզտիկ բան մըն է. բայց եթէ իմաստը հասկընալու ըլլաս՝ կարծեմ որ բոլոր քրիստոնէական կենաց բովանդակութիւնը մէջը կը գտնուի: Ես աղքատ եմ եւ քեզի նուիրելու ուրիշ բան մը չունիմ. դուն ալ ուրիշ բանի կարօտութիւն չունիս բայց եթէ հոգեւոր պարգեւով մեծնալու: Ասով ինքը զինքս ալ քու Հայրութեանդ ու Սրբութեանդ կը յանձնեմ. Տէր Յիսուս զքեզ յաւիտեան պահպանէ ամէն»[33]:

32. Գւ. ժԹ. Հատ. Դ. 14: 33. Նամակին բնագիրը տես է

Լուտերին՝ աս իր անամօթ թղթին հետ քահանայապետին խաւրած, եւ իբրեւ խաղաղութեան նշան եւ սէրոյ անոր նուիրած գիրքը՝ Վոն Թրէխոտնէրեան աղաւաղութեան ըսուած գիրքն է. "Այն որ, կ'ըսէ Ռոսգոյ, Հռոմայ եկեղեցւոյն պաշտպանները՝ իբրեւ իր (Լուտերին) հպարտութեան եւ անհնազանդութեան նոր մէկ ցոյցը կը նկատեն,,[34] ։ Եւ իրաւունք ալ ունին այնպէս կարծելու, ինչու որ Լուտեր աս գրքին մէջ՝ կարծես թէ ջանացած է իր մինչեւ նոյն ատենը վարդապետած մոլորութիւնները մէկիկ մէկիկ եւ աւելի բացայայտ ու աւելի յանդուգն կերպով կրկնելու ։ Արդ՝ թէպէտ եւ ենթադրենք որ աս մոլորութիւնները բոլոր ճշմարտութիւններ ըլլան, ի վերայ այսր ամենայնի որովհետեւ Հռոմայ եկեղեցիէն ըստ մասին արդէն դատապարտուած բաներ էին, եւ ըստ մասին նոյն եկեղեցւոյն վարդապետութեանց հակառակ էին, աս բանս գիտնալով՝ նոյն գիրքը Լերա խաղաղութեան ու սիրոյ նշան քահանայապետին նուիրելը՝ եթէ որ աւրիշ բան չէ նէ, գոնէ յանդգնութիւն, անամօթութիւն ու դառն կատականք է ։

Գործոց Լութ. լատ. Հատ. Բ. 1—3 ։ — Ռոսգոյ՝ Լուտերին աս նամակը մէջ բերելու ատեն՝ տեղ տեղ զանազան խորհրդածութիւններով (որոնցմէ մէկ երկուքը բերինք,) դըրազին անամօթութիւնը յանդիմանելէն ետեւ՝ զանիկա եւ իր կողմնակիցները այսպէս կը խոստովանի ։ "Ան բազմաթիւ հեղինակները, կ'ըսէ, որոնք որ հերձուածին կամ բաժանման յանցանքը բոլորովին քահանայապետին ու անոր վաղվաղկոտութեանը վրայ բեռնելու վրայ կը ձգեն, (ինչպէս Մոսհէյմոս, Ռոպերթսըն, եւ այլն,) Լուտերին աս գրգռիչ նամակը (this provoking letter of Luther) բոլորովին լռութեան տակ կը ծածկեն, թէպէտ եւ իր Գործոցը ամենամեծ հաւաքմանց մէջ բառ առ բառ կը գտնուի ։ Ուրիշները (ինչպէս Սլէյտան ու Սէքէնտորֆ) որոնք աս նամակը կը բերեն, այնպէս կը կարծեն որ Լուտերին՝ առ քահանայապետն ըրած ծաղրանաց ու սիրոյ խօսքերը՝ ճշմարիտ ու սրտանց ըսուած բաներ են. եւ պէտք էր որ քահանայապետը աւելի խաղաղութիւն կամ հաշտութիւն խնդրելու տեղ գտնէր ։ Բայց մարդս պէտք է որ նախապաշարմունքներով ըմբռնուած ըլլայ կամ շատ կարճ խելք ունենայ, որպէս զի չտեսնէ որ բոլորը դառն կատակ է. (But it requires a great share either of prejudice or of dullness, not to perceive that the whole is a bitter satire.) որն որ անով մանաւանդ աւելի տարօրինակ կ'ըլլայ, որ Լուտեր այնպէս կը ձեւացընէ թէ քահանայապետին ժամանակաւոր ու մշտնջենաւոր երջանկութեան վրայ հոգ ունի,, ։ Գրլ. Ժթ. Հատ. Դ. 16. ծանօթ ։

34. Գրլ. Ժթ. Հատ. Դ. 17 ։ — "Թէ որ Լուտեր աս գիրքը խաւրելով՝ պապին վրայ ծիծաղելու գիտում չունենար նէ ալ, կ'ըսէ Բլանք, ի վերայ այսր ամենայնի պէտք է խոստովանիլ որ շատ դժուար էր որ Հռոմի մէջ կարծէին թէ ուրիշ վախճան մ'ունէր,, ։ Պիէռ Գ. Հատ. Ա. 321 ։



նուած 41 նախադասութիւններ՝ իբրեւ մոլորական, գայթակղեցուցիչ եւ հերետիկոսական կը դատապարտէ, եւ նոյն նախադասութիւնները վարդապետողներուն վրայ նզովք կը կարդայ։ Իսկ Լուտերին վրայ դեռ գթութիւն բանեցընելով՝ յանձնանէ կամ որոշակի չհնազանդեր, որ է ըսել՝ քրիստոնեից հաղորդակցութենէն բոլորովին չհեռանար, հապա մտածելու համար 60 օր ժամանակ կու տայ, որպէս զի խելքը գլուխը բերէ, մոլորութիւնները ճանչնայ եւ ետ կանչէ, եւ աս բանիս համար ապահովութեան թղթով Հռոմ երթայ. բայց աս թէութեանց որ անմիջապէս վարդապետելէն, քարոզ տալէն եւ գիրք հրատարակելէն ետ կենայ, եւ իր գրուածները այրէ կամ ձեռք տայ որ այրուին։ Սակայն միանգամայն կ'որոշէ որ եթէ յամառած մնալու ըլլայ նէ, 60 օրուան ժամանակին անցնելուն պէս՝ նոյն իսկ կոնդակին զօրութեամբը իբրեւ հերետիկոս ու նզովուած պէտք է որ սեպուի[4]։ — Քահանայապետը աս կոնդակը երկու դեսպանի (Ալէանդրոյ ու Գարաչչոլի) ձեռքով Մագոնտիայի արքեպիսկոպոսին խաւրեց, որպէս զի Գերմանիայի մէջ տարածէ ու մէջը հրամայուածները կատարել տայ։ Անոնց հետ մէկտեղ Գերմանիա եկաւ Յոհ. Էք ալ, որն որ առջի օրերը Հռոմ գացած էր։

Կոնդակը Գերմանիա չհասած՝ Լուտեր խնդրեց որ Հռոմ իր վարդապետութեանց վրայ քննութիւն կ'ըլլայ, եւ Քահանայապետը իրեն դէմ վճիռ պիտի տայ։ Եւ որովհետեւ նոյն ատենները Վասն Բաբելոնական գերութեան նախերգանք ըսուած գիրքը հրատարակելու վրայ էր, նոյն գրքին վերջը աս խօսքը աւելցուց։ "Ականջս լուր մը կը հասնի, որ ինծի դէմ նորէն կոնդակ մը ու պապական նզովքներ կը պատրաստուին եղեր, որպէս զի ետ կանչելու ստիպուիմ կամ հերետիկոս հրատարակուիմ։ Աս բաները ստոյգ են նէ, կ'ուզեմ որ աս գիրքս իմ վերջէն ետ կանչելուս առաջին մասն ըլլայ, որպէս զի չըլլայ որ իրենց բռնակալութիւններուն պարապի երթալուն վրայ տրտնջեն. իսկ երկրորդ մասը մնացեալը դուրս կու տամ, որն որ Քրիստոսի օգնականութեամբը անանկ բան մը պիտ'որ ըլլայ, որ Հռոմայ Գահը մինչեւ հիմա ոչ տեսած եւ ոչ լսած ունի, որով միանգամայն իմ հնազանդութիւնս շատ աղէկ պիտի ցուցուի. յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ամէն„[5]։

Բայց երբ որ բուն դատապարտութեան կոնդակն ալ հա-

բերք եղածին չափ քաղցրութիւն եւ զգուշութիւն գործածուած էր, Լուտերը աւելի չգրգռելու համար։ Գիէզ Գ. Հատ. Ա. 273։

4. Բուն կոնդակը դիր է Ռայնալդ, Տարեգր. Հատ. Ի. 303—306. իսկ գերմաներէն թարգմանութիւնը՝ է Գործք Լուտ. Էրլ. Հատ. Ա. 349. Բ. — 355. Բ։

5. Գործք Լուտ. լատ. Հատ. Բ. 93։

տաւ, եւ լսեց որ Գերմանիայի քանի մը համալսարանները ուրախութեամբ ընդուներ ու մէջը հրամայուածները կատարեր են, ալ անկէ ետեւ ինքը Լուտեր եւ իր մտերիմները չափը բոլորովին կորսնցուցին ։ Լուտեր նախ անանկ ձեւացուց որ նոյն կոնդակին վաւերականութեան կամ բուն քահանայապետէն գրուած ըլլալուն վրայ կը տարակուսի․ ետքը՝ երբ որ տեսաւ որ ալ աս հնարքը չիկրնար բանիլ, Նոյեմբերի 17ին, քահանայապետէն՝ առ ընդհանուր ժողովքը բողոքեց[6] ։ Անկից զատ՝ կոնդակին դէմ այլանդակ գրուածք մը դուրս հանեց[7], որուն մէջ այսպէս կը խօսի ։ “Բարեպաշտ ընթերցող․ ականջս լուր մը հասաւ որ ինծի դէմ կոնդակ մ'ելած է ։ Աս կոնդակը իմ ձեռքս հասնելէն յառաջ՝ գրեթէ բոլոր աշխարհք տարածուեցաւ, ուր որ միայն ինծի դէմ ըլլալուն համար՝ ամենէն յառաջ ինծի գալու էր ։ Գուցէ գիշերուան ու մթութեան աս դուստրը՝ իմ երեսիս լոյսէն վախցաւ ։ Բայց վերջապէս նոյն չղջիկը՝ իմ բարեկամներուս օգնականութեամբը՝ իր բոլոր գեղեցկութեամբը տեսայ ։ Ստուգիւ դեռ կը տարակուսիմ որ արդեօք պապականները զիս կատակել կ'ուզեն...., չէ նէ Հռոմայեցիք աս աստիճանի յիմարութեան հասած են ։... Ի վերայ այսր ամենայնի չեմ հաւատար որ Լեւոն Ժ․ Հռոմայ եպիսկոպոսը իրեն հմուտ կարդինալներովը աս յիմարական գրուածքին հեղինակն ըլլայ․ եւ այսպէս կարծելուս պատճառն ան չէ որ Հռոմայեցւոց պատիւը պահեմ, հապա ան է որ չըլլայ թէ մեծ հպարտութեամբ ուռիմ, եւ ինքը զինքս արժանի սեպեմ Աստուծոյ ճշմարտութեանը համար ասանկ գեղեցիկ ու փառաւոր (նախատինք) կրելու ։ Բայց թէ որ ստուգիւ Հռոմայ եպիսկոպոսը հետս այսչափ յիմարութեամբ կը վարուի, Աստուծոյ առջեւը ո՞վ Լուտերէն աւելի երջանիկ է, որն որ ասանկ յայտնի ճշմարտութեան համար այնպիսի բարձր տեղէ կը դատապարտուի ։ Եւ ինծի անկից աւելի ի՞նչ բաղձալի բան կրնայ գտնուիլ, որ ան ամենատգէտ, ամէնամպարիշտ, ամենակատաղի Նեռէն երբեք արձակում չընդունիմ, երբեք հետը չհաշտուիմ, երբեք հետը հաղորդութիւն չունենամ ։... Աս կոնդակը գրողն ո՛վ որ կ'ուզէ նէ ըլլայ, ես զինքը Նեռ կը համարիմ...։ Եւ որպէս զի իմ ուզած բաներէն ամենեւին մէկը չընդունի, նախ՝ Աստուծոյ ու Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ իր սուրբ հրեշտակներուն ու բոլոր աշխարհքիս առջեւը կը յայտնեմ որ բոլոր սրտանց աս դատապարտութեան կոնդակին հետ ամենեւին չեմ միաբա-

6․ Մենցլ, Հատ․ Ա․ Գլ․ Բ․ 80 ։

7․ Սեքենտորֆին (Գիրք Ա․ Հատ․ ՀԱ․ 117․) ըսածին նայելով՝ Լուտեր աս գրուածքը նոյն (1520) տարին Դեկտեմբերի 1ին հրատարակեց ։ Նոյն օրը դուրս հանեց նաեւ կոնդակին մէջ դատապարտուած 41 յօդուածներուն պաշտպանութիւնը ։

նիր, մանաւանդ թէ կ'անիծեմ ու կ'ատեմ, իբրեւ Քրիստոսի Որդւոյն Աստուծոյ եւ Տեառն մերոյ դէմ գրուած հայհոյութիւն. ամէն։ Երկրորդ՝ նոյն կոնդակին մէջ դատապարտուած ամէն յօդուածները հոգւոյս բոլոր վստահութեամբը կը խոստովանիմ ու կը դաւանիմ. եւ յաւիտենական անիծից պատիժ սպառնելով՝ ամէն քրիստոնէից կը յայտնեմ որ նոյները պէտք է խոստովանիլ, եւ կոնդակին հաւանութիւն տուողները՝ նեռ սեպելու է։... Աս ըլլայ իմ ետ կանչելս...8։

“Կ'աղաչեմ քեզի, ով ամենատգէտ Նեռն, այնչափ սաստիկ տգիտութեան եւ անհնարին յանդգնութեա՞ն համար, որ կը կարծես թէ բոլոր աշխարհք ապշութեան մէջ ինկած է, եւ պիտի կարծէ որ քու ցուրտ խօսքերովդ՝ Ս. Գրոց զօրաւոր խօսքերուն կը յաղթես։ Այսպէս դատապարտելու կերպը Գոլոնիայի ու Լովանիայի վարդապետներէ՞ն սորվեցար։ Թէ որ մոլորութիւնները եկեղեցական կերպով դատապարտելն աս է, որ Ասիկա հաճելի չէ, կ'ուրանամ, չեմ ուզեր՝ ըսուի, ան ատեն ո՞ր խենթը, ո՞ր էշը, ո՞ր խլուրդը, ո՞ր կոճղը չէկրնար դատապարտել։ Լիրբ երեսդ չ'ամըչնար 9 որ այսպէս հրապարակաւ եկեղեցւոյ մէջ ցուրտ ու տկար խօսքերուդ միտքը՝ երկնաւոր խօսից կայծակներուն դէմ դնելու կը յանդգնիս։... Սակայն ասոր պատճառն ուրիշ բան չէ... բայց եթէ սաստիկ տգիտութիւն, որով մէկ կողմանէ իմ ըսածներուս ճշմարիտ ըլլալը տեսնելով, եւ մէկալ կողմանէ ոչ թող տալ ուզելով եւ ոչ հերքել կրնալով՝ փուճ թղթի վախով մը զիս սարսափեցընել կ'ուզեն։ Բայց Լուտեր պատերազմի վարժած ըլլալով՝ կոնդակներէ ամենեւին չիվախնար 10։

“Հասարակօրէն կ'ըսուի որ էշը անոր համար անպիտան կ'երգէ, որովհետեւ շատ բարձր կը սկսի երգելու. Նոյնպէս աս կոնդակն ալ լաւագոյն կ'երգէր, թէ որ իսկզբան հայհոյիչ լեզուն մինչեւ երկինք չվերցընէր։... Չէք վախնար, ով կընքեալ Նեռինք, որ քարերն ու փայտերը աս ձեր զարհուրելի եւ այլանդակ ամպարշտութիւններն ու հայհոյութիւնները լսելով՝ արեան քրտինք թափեն։ Իսկ դուն ո՞ւր ես, ամենաբարի Կարոլոս կայսր. ո՞ւր էք, քրիստոնեայ թագաւորներ ու իշխաններ։ Մկրտութեամբ ինքը զինքնիդ Քրիստոսի տուած էք, ու Նեռին աս դժոխական ձայնին կրնա՞ք համբերել։ Ո՞ւր էք, եպիսկոպոսք, ո՞ւր էք, վարդապետք, ո՞ւր էք դո՛ւք ամէնքդ՝ որ

8. Գործք Լուտ. լատ. Հատ. Բ. 93. Բ. 94։

9. Լուտերին բուն գործածած բառերն ասոնք են. Non pudescit frons tua *meretrica?* որն որ ըստ ամենայնի ճիշդ թարգմանելու կ'ամըչնանք։

10. Գործք Լուտ. լատ. Հատ. Բ. 94։

զՔրիստոս կը խոստովանինք. ատ պապական զարհուրելի հրէշները լսելով՝ ինչպէս կրնանք լուռ կենալ :[11] . . .

‹‹Դուն, Լեւոն Ժ. եւ դուք, Հռոմայ կարդինալք եւ ամէն Հռոմ եղողներ, համարձակութեամբ երեսնիդ կը զարնեմ, թէ որ ատ կոնդակը ձեր անուամբն ու ձեր գիտութեամբն ելած է, եւ կը խոստովանիք որ ձերն է, ես ալ մկրտութեան ատեն Աստուծոյ ողորմութեամբը ինծի տրուած իշխանութիւնը՝ որով Աստուծոյ որդի եւ Քրիստոսի ժառանգակից եղած եմ, կը գործածեմ: Հաստատուն վէմին վրայ հիմնուած ըլլալով՝ որ ոչ դժոխքին դռներէն, ոչ երկինքէն եւ ոչ երկրէն կը վախնայ, կը խօսիմ, կը խրատեմ եւ կը յորդորեմ զձեզ ի Տէր, որ դառնաք, ատ սատանայական հայհոյութիւններնուդ, յանդըգնութիւններնուդ ու ամպարշտութիւններնուդ չափ դնէք, եւ շուտով: Եւ թէ որ ատ բանս չէք ըներ նէ՝ գիտցած ըլլաք որ ես բոլոր քրիստոսապաշտներուն հետ մէկտեղ, ձեր գահը՝ որն որ սատանայէն բռնուած ու ճնշուած է, Նեռին դատաստանին տեղ կը դնեմ, որուն չէ թէ միայն չենք հնազանդիր կամ հպատակ եւ միաբան ըլլալ չենք ուզեր, հապա կ'ատենք եւ կը գարշինք ալ, Քրիստոսի գլխաւոր ու մեծ թշնամւոյն տեղ դնելով. եւ պատրաստ ենք ատ մեր վճռոյն համար ձեր անմտական նզովքները չէ թէ միայն ուրախութեամբ տանելու, հապա նաեւ աղաչելու որ երբեք զմեզ անկից չորձակէք:... Եւ թէ որ Քրիստոսի Հոգին ու մեր հաւատքին սաստկութիւնը զօրութիւն մ'ունի նէ՝ ատ գրուածքով, թէ որ ձեր կատաղութեան մէջ յառաջ երթալու ըլլաք, զձեզ կը դատապարտենք, եւ ատ կոնդակովնիդ ու բոլոր վճիռներովդ մէկտեղ կը մատնենք սատանայի, ի կորուստ մարմնոյ, որպէս զի հոգինիդ Աստուծոյ օրը մեզի հետ ազատի, յանուն Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ, որն որ դուք կը հալածէք. ամէն,,[12] :

Լուտեր ատ ամպարշտական մանաւանդ թէ յիմարական գրուածքը հրատարակելէն քանի մը օր վերջը՝ իրեն գրուածներուն ասդին անդին այրելուն վրէժն առնելու համար, յառաջագոյն առ Սպալադին գրածը[13] ուզեց իրօք կատարել: Դեկտեմբերի 10ին առտուանց Վիդդենպերկի հրապարակներուն մէջ թղթեր կպցընել տուաւ, որոնցմով կ'իմացընէր որ նոյն օրը ժամը 9ին կանոնական իրաւանց գրքերը պիտի այրին ու մոխիր դառնան, եւ բոլոր քաղաքացիներն ու մանաւանդ համալսարանին ուսանողները կը հրաւիրէր որ գան հանդիսութեան

11. Գործք Լուտ. լատ. Հատ. Բ. 95. Բ:
12. Նոյն տեղը, 96:
13. Տես էջ 46:

ներկայ գտնուէին։ Որոշուած ատենը ստուարիկ բազմութիւն Լուտերին ըսած տեղն եկան ժողվուեցան։ Հնատեղը համալսարանին վարդապետներէն մէկը՝ դիզուած փայտերուն Լուտերին ակնարկութեամբը կրակ տուաւ. Ինքն ալ տօնի զգեստները հագած ու ձեռքը քահանայապետին կոնդակը բռնած՝ յառաջ եկաւ, ու կոնդակը վեր վերցընելով եւ ամենուն ցուցընելով՝ վառուած խարոյկին մէջ նետեց եւ ըսաւ. «Որովհետեւ դուն Աստուծոյ Սուրբը խռովեցիր, զքեզ ալ մշտնջենաւոր կրակը խռովէ ու այրէ»։ Աս որ եղաւ, հնատեղը մօտ ըլլողները՝ Լուտերին հրամանովը հոն ժողվուած կանոնական իրաւանց գրքերը, քահանայապետաց վճիռներուն հաւաքմունքները, եւ իրեն դէմ գրուած բոլոր գրքերը կրակին մէջ ձգեցին ու այրեցին։ Բազմութեան մէջէն ոմանք այրած գրքերուն կտորները կրակէն հանելով՝ օդին մէջ կը նետէին ու բարձր ձայնով կը կանչէին. կեցցէ՛ Լուտեր, կորիցե՛ն պապականք[14]։

Նոյն օրը Լուտեր ժողվուած բազմութեան իմացուց որ երկրորդ օրը եկեղեցւոյ մէջ աս բանիս վրայ իրենց ճառ մը պիտի խօսի։ Որոշուած ժամանակը եկեղեցւոյն մէջ ստուարիկ բազմութիւն եկաւ ժողվուեցաւ. ինքն ալ բեմ ելլելով՝ ըսաւ. «Երէկ պապերուն սատանայական գրքերն այրեցինք. բայց անիկա տղու

14. Համառօտ պատմութիւն թէ ինչպէս Պապին վճռոց գրքերը Մ. Լուտերին ձեռքովը այրեցան. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ա. 399։ Բլանկ, Գիրք Գ. Հատ. Ա. 351։ Կուստաւ Ֆրեյթակ, Գլ. Է. 134։ Մենցել. Հատ. Ա. Գլ. Բ. 81։ Ռոպերտ Գլ. ԺԹ. Հատ. Գ. 22, 23։ Օտէն, Հատ. Ա. Գլ. ԺԵ. 179։ — Լուտերին աս անօրէն գործքին վրայ — ուրուն համար Մաթեսիոս (ճառ Բ. 19. Բ.) հաւանականապէս բուն Լուտերին գրածէն (տես աս Գլխոյն 17. ծանօթ.) առնելով՝ կ'ըսէ որ «Աստուծոյ Հոգւոյն իր վրան իջնալովը գործեց», — Նոր մատենագիր մը աս խորհրդածութիւնը կ'ընէ։ Բողոքականներէն ոմանք՝ ինչպէս որ ամբաստանութիւն ունին միշտ Լուտերին ամէն գործքերն արդարացընելու, նոյնպէս աս ամպարիշտ գործքն ալ ջատագովել կ'ուզեն. մանաւանդ թէ գիւցազնական գործքի մը պէս կը գովեն ու մինչեւ երկինք կը բարձրացընեն։ Բայց իրենցմէ մէկն ալ մինչեւ հիմա չկրցաւ ցուցընել թէ Լուտեր ինչ իրաւամբ աս գործքը կրնար գործել։ Դարձեալ ամենուն մէկը չէկրնար ցուցընել թէ երբ որ մէկը իր մեծերուն դէմ ելլէ, եւ անոնք իրեն հետ ուզածին պէս չվարուին նէ՝ ինք իրաւունք կ'ունենայ ինքը զինքը անոնց հնազանդութենէն ազատ կացուցանելու, եւ անոնց հրամաններն ու ընդհանուր օրէնքները հրապարակաւ աչքի առջեւ տանելու եւ այրելու։ Արդեօք Քրիստոս եւ առաքեալները այսպէս վարուեցան, կամ թէ Ս. Գրոց մէջ ատանկ հրաման մը ունի՞ն։ Լուտեր ինքը զինքն արդար եւ անմեղ կը սեպէր նէ՝ իր իրաւունքը ուրիշ կերպով մը չէ՞ր կրնար արդեօք հաստատել։ Թէ որ հիմակուան ատենս ատանկ յանդգնութեան գործք մը պատահելու ըլլար նէ՝ ընողը ջատագովող մարդ կը գտնուէ՞ր, թէպէտ եւ արդար բան մը պաշտպանելու համար ըրած ըլլար, եւ ոչ թէ Լուտերին պէս պարզապէս վրէժ առնելու համար։ Լուտերին ամենէն ստուարիկ պաշտպանները կը հարցընեմ, յանձն կ'առնէ՞ն արդեօք անոր օրինակին հետեւիլ։ Կարծեմ թէ չէ. եւ աս բանիս վրայ նախապաշարմանէ ազատ մտածողն ու կարգաւորութեան եւ խաղաղութեան սէր ունեցողը, թէ որ բերնով ալ չէ

խաղալիկ էր, հիմա անկից աւելի մեծ ու հարկաւոր գործք մը կայ ընելու, այս ինքն նոյն ինքն պապն այրել,,։ Սակայն տեսնելով որ աս խօսքը շատ սաստիկ է, վրան շուտ մը աւելցուց. "Ո՛ւզեմ ըսել՝ Հռոմայ գահը։ Թէ որ բոլոր սրտանց պապին հայհոյական իշխանութեան դէմ չէք խօսիր նէ՝ չէք կրնար երանութեան հասնիլ։ ... Անոր համար ամէն քրիստոնեայ, թէ որ հոգւոյն փրկութիւնը կ'ուզէ նէ՝ պէտք է զգուշանալ որ զՔրիստոս չուրանայ, որն որ ստուգիւ կը պատահի թէ որ պապականներուն հետ հաղորդակցութիւն ունենայ նէ,,[15]։

Քիչ մը վերջը Լուտեր գրուածք մ'ալ դուրս հանելով՝ քահանայապետին կոնդակը եւ ուրիշ գրուածներն այրելուն պատճառները կը ցուցընէր։ "Ես, կ'ըսէ, Մարտինոս Լուտեր, Ս. Գրոց վարդապետ, Վիդդենպերկցի, Օգոստինեան, ամենուն կը ծանուցանեմ որ իմ կամքովս, խորհրդովս ու գործակցութեամբս ... Հռոմի պապին ու իր քանի մը աշակերտներուն գրքերն այրեցան։ Թէ որ մէկը աս բանիս վրայ զարմանալու ըլլայ, ինչպէս կը կարծեմ, եւ հարցընելու ըլլայ որ ինչ պատճառի համար եւ որուն հրամանաւը աս բանս ըրի, ահաւասիկ աս է պատասխանս,,[16]։ Աս ըսելէն վերջը հինգ պատճառ կը բերէ, որոնց մէջ ըսածները՝ Մենցլ այսպէս կը համառօտէ։ "Հնուցմէ մնացած, նաեւ Գործոց առաքելոց մէջ գովուած սովորութիւն մը կայ, որ գէշ ու վնասակար գրքերը կ'այրեն. իսկ ես՝ որովհետեւ մկրտեալ քրիստոնեայ, Ս. Գրոց երդուեալ վարդապետ եւ միանգամայն քարոզիչ եմ, կը վայլէր որ իմ անուանս, վիճակիս, պաշտօնիս ու փութոյս համար՝ խաբէական, մոլորեցուցիչ ու քրիստոնէութեան դէմ եղող վարդապետութիւնները ջնջեմ ու խափանեմ։ Բայց աս գործքս չէի կատարեր, թէ որ պապն ու պապական մոլորեցուցիչները՝ կուրութիւննին ու անպիտանութիւննին ան աստիճանի հասցուցած չըլլային, որ իրենց մոլորական վարդապետութիւններուն դէմ գրած հերքումներուս ականջնին գոցելէն զատ՝ իմ գրքերուս մէջի աւետարանական վարդապետութիւնն ալ չդատապարտէին ու չայրէին[17]։ Եւ որպէս զի ցուցընէ որ այրած գրքերուն մէջ ստուգիւ վնասակար ու թունաւոր վարդապետութիւններ կան, անոնց մէջէն երեսուն նախադասութիւն կը բերէ, որոնք

նէ՝ զանէ սրտին մէջէն ինծի պէս դատաստան կ'ընէ։ Հին Լութերականութեան ու նոր բողոքականութեան [illegible] [illegible] Ռէյխենպաուրկ, 1844. էր. 73։ — [illegible] Գլուխն 18. Ծանօթ։

15. Համառօտ պատմութիւն թէ ինչպէս Նէաւին վճռոց գրքերը Մ. Լուտերին ձեռքը այրեցան. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ա. 399։

16. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ա. 394. Բ։

17. Հատտեզա Մենցլին ըսածներուն վրայ աս միայն հարկ է աւելցընել որ Լուտեր հինգերորդ պատ-

գլխաւորաբար Հռոմայ աթոռոյն՝ եկեղեցւոյ վրայ ունեցած գլխաւորութիւնը կը հաստատեն„[18]։

Ա՛նցլ ասոնք գրելէն վերջը՝ խօսքը Լուտերին իբրեւ մոլորական բերած նախադասութիւններուն վրայ կը դարձընէ, եւ այսպէս կը գրէ։ "Բայց գլխաւոր աչքի զարնողն ան է, որ Լուտեր ուրիշ բաներու մէջ նաեւ աս վարդապետութիւնն ալ թէ Քրիստոնեայ մը բռնութեան դէմ բռնութիւն բանեցընելով՝ ինքը զինքը կրնայ պաշտպանել, (իբրեւ մոլորական) ի մէջ կը բերէր, որովհետեւ, կ'ըսէր, աս վարդապետութիւնը՝ Քրիստոսի "Որ առնուցու ի քէն զբաճկոն քո՝ տուր նմա եւ զշապիկս քո„ ըսածին դէմ է. ուր որ ինք (Լուտեր) աս (քահանայապետական գրքերն) այրելու գործողութեամբը եւ աս ինքը զինքը ջատագովելու համար հանած գրուածքին վերջը գրած Սամփսոնին խօսքովը՝ թէ "Որպէս արարին ընդ իս, նոյնպէս արարի ընդ նոսա„ բացայայտ եղանակաւ կը ցուցընէ որ Հռոմայ գահին դէմ լոկ ինքը զինքը պաշտպանելէն աւելի բան ալ օրինաւոր կը սեպէ„ [19]։

ճառին մէջ կը զրուցէ թէ աս գըրքերն այրելը՝ "Հոգւոյն (սրբոյ) ազդեցութեամբն եղաւ„։ Գործք Լութ. եր. Հատ. Ա. 395։

18. Հատ. Ա. Գլ. Բ. 82։ — Լուտերին աս բերած պատճառները անանկ անհիմ բաներ են, որ իրեն հետեւողներէն շատերն ալ չեն հաւնիր, եւ իր գործքին ապօրինաւոր ըլլալը խոստովանելէն զատ՝ յայտնապէս կը զրուցեն որ միայն վրէժխնդրութեան համար ըրած է։ "Արդեօք Լուտերին աս գործքը աղէկ եւ իրաւացի էր՝ թէ չէ, կ'ըսէ Բլանք, կամ աւելի բացայայտ խօսելու համար՝ արդեօք իրաւանց համաձայն էր՝ թէ ապօրինաւոր, տարակոյս եւ ոչ քննութեան տակ ձգելու բան է„։ Գիրք Գ. Հատ. Ա. 354։ Աս խօսքը գրելէն ետեւ՝ նոյն բողոքող մատենագիրը կը զրուցէ որ ասոր վրայ մեր (բողոքական) եկեղեցւոյն մէջ շատ մեծ վէճ կայ. բայց պէտք է քննել որ, կ'ըսէ, արդեօք Լուտեր աս բանս ընելու ատեն՝ ինչ վախճան ունէր, եւ միանգամայն թէ արդեօք աս բանիս մէջ խոհեմութեամբ վարուեցաւ։ Եւ աս հարցումներուն ինք այսպէս պատասխան կու տայ։ "Թէպէտ եւ Լուտեր իր գրուածքին մէջ խել մը պատճառներ կը բերէ, ի վերայ այսր ամենայնի շատ հաւանական եւ գըրեթէ ստոյգ է որ ըստ ինքեան ուրիշ պատճառ կամ վախճան չունէր, բայց եթէ իր [illegible] համար եղանակաւ մը վրէժ առնել։ Բոլոր կենացը մէջ իրեն անտանելի էր թող տալը որ իր հակառակորդներէն մէկը իր վրան յաղթութեան նաեւ փոքր ստուերն ունենայ։ . . . Ուրեմն Լուտերին վախճանն ուրիշ բան չէր, բայց եթէ վրէժխնդրութիւն ընել։ . . . Աս բանս ուրիշ հետեւութիւն չէր կրնար ունենալ, բայց եթէ իր կողմնակիցներուն ոգին աւելի եւս բորբոքել, բայց անանկ կերպով մը՝ որն որ շուտով պիտի մարէր, իսկ իր հակառակորդներուն ոգին աւելի եւս իրեն դէմ դառնացընել եւ զիրենք աւելի եւս անհաշտ ընել։ Արդէն երկուքն ալ հետեւեցաւ. բայց առաջինը իրեն ճշմարիտ օգուտ մը չըրաւ. իսկ երկրորդը՝ շատ զգալի վնաս ըրաւ։ . . . Բայց ասկից զատ՝ ամենեւին հարկաւորութիւն չկար որ Լուտեր կրակին վրայ աւելի եղ թափէր, ցուցընելու համար որ կրակէն չիվախնար. որովհետեւ արդէն յառաջագոյն այնչափ թափած էր, որ նոր ցուցումը ստուգիւ աւելորդ էր„։ 154. — 156։

19. Հատ. Ա. Գլ. Բ. 88։ —

Լուտերին աշակերտները վարդապետներէն աւելի պարկեշտ չէին։ Քանի մը քաղաքներու մէջ ուսանողները քահանայապետ մը կը ձեւացընէին, եւ իշու վրայ հեծցուցած՝ ուղեւնէն քշելով կը տանէին, ու ետեւէն կը պոռային Թէ Մա՜հ պապականութեան։ Իշուն ետեւէն կարդինալի զգեստներ հագած ուրիշ մարդիկներ կու գային, իշուն վզէն քահանայապետական կոնդակին օրինակը կախուած կ'ըլլար, եւ երբ որ գիմացնին՝ ցեխոտ տեղ մը կամ կոյանոց մը կու գար, մէջը կը Թաւալէին[20]։ Ասանկ անամօԹ ու անվայել գործողուԹեանց դէմ Լուտեր բերան մ'ալ չէր բանար. ի՞նչ կ'ըսեմ՝ բերան բանալ ու դէմ խօսիլ, իրենց իրաւունք ալ կու տար։ Ահաւասիկ իրեն՝ աս կամ ասոր նման բաներուն վրայ առ Սփալադին գրած խօսքերը. «Աս շուայտութեան օրերը մեր երիտասարդները այսպէս կը զբօսնուին. պապը իրեն բոլոր զգեստներովը ու զարդերովը կը ներկայացընէին, ետքը իրեն հետ մէկտեղ կ'ելլէին փողոցները կը պտըտէին. եւ քաղքին երեւելի մէկ հրապարակը հասած տեղնին՝ նախատական ու ծաղրելի խօսքերով պապին ետեւէն վազելով՝ կը հալածէին, որն որ իր կարդինալներովը, եպիսկոպոսներովն ու անոնց կողմնակիցներովը աչքերնէն կը փախչէր։ Քրիստոսի Ծնունդին ատենը կատակերգական ողբերգոյ ուրախի Ի. որովհետեւ ինքն ալ Թագաւորները եւ նոյն իսկ Քրիստոս կը Թշնամանէ»[21]։

Լուտեր եւ իր կողմնակիցներն ու աշակերտները աս ամէն բաները կ'ընէին Սաքսոնիայի կայսրընտրին ու Գերմանիայի ազնուականներուն պաշտպանութեան վրայ ապաւինելով, որոնք Լուտերէն խաբուած եւ կամ աչքերնին՝ վանքերուն ու եկեղեցիներուն ինչքերը յափշտակելու տնկած ըլլալով, եւ կամ աս շփոթութիւնները՝ իրենց իշխանութիւնը մեծցընելու յարմար առիթ սեպելով, ամէն կերպով իրեն եւ իր կողմնակիցներուն ձեռք կը բռնէին, պաշտպանութիւն ու օգնութիւն կը խոստանային, եւ չէին Թողուր որ քահանայապետին կոնդակը Սաքսոնիա եւ ուրիշ մօտ տեղեր հրատարակուի եւ ի գործ դրուի[22]։

նոյն խորհրդածութիւնը Ռիֆէլ ալ կ'ընէ եւ հեգնելով վրան աս խօսքը կ'աւելցընէ. Բայց Լուտերին դէմ եղածը՝ Աստուծոյ Սրբոյն (Քրիստոսի) դէմ եղած նախատինք է. իսկ Լուտերին ըրածը՝ ուրիշ բան չէ, բայց եԹէ տաճարին մէջէն վաճառականներն ու գնողները վռնտել, եւ իր վարդապետական պաշտօնը կատարել. ինչպէս ինք Լուտեր կը գրէ։ Գիրք Ա. Գլ. Ե. 179։

20. Օտէն, Հատ. Ա. Գլ. ԺԵ. 224։ — «Քահանայապետական նզովից կոնդակը, կ'ըսէ Բլանք, ժողովրդեան երգերու մէջ խոԹուեցաւ, հրապարակական ծանուցման Թղթերով նախատուեցաւ, եւ ամէն կարելի միջոցներով արհամարհուեցաւ»։ Գիրք Գ. Հատ. Ա. 376։

21. Առ Օտէնի, Հատ. Ա. Գլ. ԺԵ. 178։

22. Բլանք, Գիրք Գ. Հատ. Ա. 337.—344։ Ռիֆէլ, Գիրք Ա. Գլ. Ե. 162.—168։

Կ'երեւայ որ նոյն առենները կատարուած ըլլայ Լուտերին վրայ այն դէպքը՝ որուն որ ինք պարծելով մը կը պատմէ։ «Ինծի դէմ եղած ամէն հակառակութիւններն ու առարկութիւնները յաղթելէն ետեւ, կ'ըսէ, միայն մէկ ընդդիմութիւն մը կը մնար յաղթելու, որն որ Յիսուսի Քրիստոսի օգնութեամբը մեծ դժուարութեամբ հազիւ կրցայ յաղթել. այս ինքն թէ պէտք է եկեղեցւոյ անսալ» 23։ — Պտուղէ՝ Լուտերին աս ամպարիշտ խօսքը յառաջ բերելով՝ վրան հետեւեալ խորհրդածութիւնը կ'ընէ 24։ «Կարծես թէ, կ'ըսէ, շնորհքը աս չուառականը չէր կրնար թողուլ հեռանալ 25։ Բայց վերջապէս ինք (Լուտեր)

23. Նախադասութեանց յառաջաբանին մէջ. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ա. Սկիզբները։

24. Գիրք Ա. Հատ. ԻԶ։

25. Լուտեր իր բրած նորոգութեան վրայ երկայն ժամանակ ունեցած տարակոյսներուն ու անհանգստութիւններուն վրայ ուրիշ տեղ մը այսպէս կը խօսի. «...Ո՜հ, որչափ մեծ նեղութիւն ու աշխատութիւն կրեցի, մինչեւ որ Ս. Գրոց հաստատուն վկայութեամբ հազիւ կրցայ խիղճս հանդարտեցընել, որ ես միայն առանձին կրնամ պապին դէմ ելլել, զինքը Նեռին տեղ դնել, եպիսկոպոսները՝ անոր առաքեալները սեպել, ու համալսարանները՝ անոր անառակութեան տները (lupanaria)։ Ո՛րչափ անգամ սիրտս դող կ'ելլէր, տարակուսի մէջ կը մնայէր եւ զիս կը յանդիմանէր։ Ամենէն զօրաւոր առարկութիւնն աս էր. Դո՞ւն միայն խոհեմ ես, ուրիշները ամէնն ալ մոլորութեան մէջ են եւ այնչափ երկայն ժամանակ մոլորեա՞լ մնացին. ի՞նչ կ'ըլլայ թէ որ դո՛ւն կը մոլորիս եւ այնչափ մարդիկ քու մոլորութեանդ ետեւէն կը ձգես, որոնք որ յաւիտեանս դատապարտուին։ Ասիկա այնչափ տեւեց, մինչեւ որ Քրիստոս իր անպահական հաստատուն խօսքովը զիս հաստատեց, այնպէս որ սիրտս ա՛լ չերերբիր, հապա պապականներուն ամէն իմաստակութեանց դէմ հաստատուն կը կենայ, եւ ժայռերով ամրացած ծովափի մը պէս՝ ալիքներուն մրրիկը կ'արհամարհէ»։ Պատարագի անհարկաւորութեան վրայ. Գործք Լուտ. գերմ. Հատ. Բ. Ց. Բ. լատ. Հատ. Բ. 257։

Բայց աս վերջին բանը՝ որ ա՛լ սիրտս չերերէր, սուտ է. ինչու որ անկից ետքն ալ խղճմտանքին ձայնը բոլորովին չէր կրնար ճնշել. ինչպէս յայտնի կ'երեւայ այն խօսքերէն՝ որոնք 11 տարի վերջը (1532ին) նոյն կերպով տարակոյսներու մէջ եղողի մը կը գրէ։ Թուղթք Լուտ. Հատ. Ա. 324։ — Ուիֆէլ (Գիրք Ա. Գլ. Ջ. 232. — 243.) Լուտերին զանազան գրուածքներէն, եւ գլխաւորաբար Խօսք սեղանոյ ըսուած գրքէն առնելով՝ կը ցուցընէ որ աս տարակոյսները իր բոլոր կենացը մէջ կը տեւէին, եւ երբեմն երբեմն այնպէս կը սաստկանային որ Լուտեր արեան քրտինքի մէջ կը մնայէր, եւ յուսահատութեան ու անձնասպանութեան խորհուրդներ կ'ունենար։ Մասնաւորապէս կը ցուցընէ որ աս տարակոյսները աւելի իր գլխաւոր մոլորութեան վրայ էր, այս ինքն թէ մարդը՝ միայն հաւատքով կ'արդարանայ, եւ աս տարակոյսը չէր կրնար գրեթէ երբեք բոլորովին յաղթել։ Բայց Լուտեր աս խղճին զարնելովը՝ խելքը գլուխը բերելու տեղ՝ նոյն տարակոյսները միշտ սատանայի փորձութիւն կամ սատանայական երեւոյթ կը սեպէր, եւ յաղթելու համար զանազան հնարքներ կը բանեցընէր։ Իր խոստովանածին նայելով՝ շատ անգամ աս տարակոյսներէն կամ փորձութիւններէն ազատելու կամ անոնց յաղթելու համար՝ պտըտելու կ'երթար, կ'ուտէր, կը խմէր, կը խաղար, կը խնդար, կը զրօսնուր, եւ ուրիշներուն ալ խրատ կու տար որ նոյն դէպքերու մէջ իրենք ալ անանկ վարուին, ըսելով որ աւանք՝ ծոմ բռնելէն ու պահք պահելէն շատ աւելի աղէկ ու զօրաւոր միջոցներ են (՛)։ Բայց գլխաւոր զէնքը՝ որով այն տարակոյսներուն դէմ, կամ իր

յաղթեց. սակայն ան աստիճանի կուրութեան հասած էր, որ իրմէ նախատուած Քրիստոսէն թող տրուիլն ու մերժուիլը՝ անոր ձեռաց օգնութիւնը կը սեպէր։ Ո՞վ կրնար կարծել որ Քրիստոսի հրամանին հակառակ՝ իր եկեղեցւոյն չանսալու յանդգնութիւնը՝ իրեն շնորհացը գործքը սեպուի։ Լուտեր աս այնչափ դժուարութեամբ ստացած չարաչար յաղթութիւնն ընելէն ետեւ՝ նեղացուցիչ լծէ մը ազատածի պէս, կը սկսի Սաղմոսին խօսքը բերանն առնել ու կանչել. "Խզեսցուք զկապանս նոցա եւ ընկեսցուք ի մէնջ զլուծ նոցա,,. եւ իրօք ալ աս խօսքերը գործածեց կոնդակին դէմ գրած ատեն, վերջին ճգամբ մը եկեղեցւոյ իշխանութիւնը վրայէն թօթափելով։ Եւ ամենեւին միտ չդրաւ որ ասիկա ան զարհուրելի երգն է, որն որ Դաւիթ՝ ան ապստամբներուն բերանը կը դնէ, որոնք չար ժողովքներ ժողվելով՝ Աստուծոյ եւ անոր Օծելոյն դէմ դաւաճանութեան խորհուրդներ կ՚ընէին,, 26։

Արդ այսպէս Լուտեր թէ սրտանց, թէ իր գրուածներովը, եւ թէ գլխաւորաբար քահանայապետին կոնդակն ու կանոնական իրաւունքները հրապարակաւ այրելով, դեռ յանուանէ չնզովուած՝ ինքը զինքը բոլորովին եկեղեցիէն բաժնեց 27։ Ուստի թէպէտ մէկ կողմանէ հարկաւոր չէր երեւար որ քահանայապետը զինքը նորէն յանուանէ նզովէ. բայց որպէս զի չըլլայ որ պարզամիտները՝ զինքը յանուանէ նզովուած չտեսնելով՝ խա-

խօսքը գործածելու համար՝ սատանային դէմ կը կռուէր, եւ զորն որ ուրիշներուն ալ մեռնաւոր կերպով մը կը յանձնէ, աս էր որ սաստիկ պիղծ ու աղտեղի խօսքեր կը զրուցէր, եւ պատճառ կը բերէր որ սատանան շատ հպարտ ըլլալով՝ աս տեսակ խօսքերուն չիկրնար դիմանալ ու կը ձգէ կը փախչի։

26. Ստոյգ է որ աս խօսքը Լուտերին Գործոցը մէջ (լատ. հատ. Բ. 66.) ծանօթութեամբ տպուած քահանայապետական կոնդակին տակ դրուած է. բայց որովհետեւ նոյն ծանօթութիւնները բուն Հուդդենին՝ Լուտերին արժանի պաշտպանինն են, անոր համար աւելի հաւանական է որ ինք Հուդդէն դրած ըլլայ, քան թէ Լուտեր։ Բայց ով որ կ՚ուզէ նէ՝ գրած ըլլայ, որովհետեւ կամ Լուտեր կամ Լուտերականք աս խօսքը իրենց կը սեպհականեն, անոր համար Պաւիէին խորհրդածութիւնը իր զօրութիւնը բոլորովին չիկորսունցըներ։ Աս խօսքին վրայ նոյնպէս տհաճութեամբ կը խօսի Մենցել ալ։ Հուդդէն, կ՚ըսէ, "Քահանայապետին կոնդակը դառն ծանօթութիւններով ու ցրումներով տպել տուաւ, անանկ անմիտ եռանդեամբ մը, որ աս գրուածքին վերջը "Խզեսցուք զկապանս նոցա եւ ընկեսցուք ի մէնջ զլուծ նոցա,, խօսքը դնելովը՝ արդարացուց հակառակորդներուն՝ զինքն անոնց կարգը դնելը, որոնց համար Սաղմոսերգուն կ՚ըսէ թէ Աստուծոյ ու անոր Օծելոյն դէմ ելան,,։ Հատ. Ա. Գլ. Բ. 85։

27. Մոսհեմիոս կը զրուցէ թէ Ով որ իշխանի մը օրինաց գրքերը կրակի մէջ կը ձգէ, նոյն իսկ ան գործքով կը ցուցընէ որ ալ անկէ ետեւ անոր իշխանութիւնը բանի տեղ չիդներ. եւ Լուտեր, կ՚ըսէ, անոր համար քահանայապետական օրինաց գրքերն այրեց, որպէս զի յայտնապէս ցուցընէ թէ անկէ ետեւ Հռոմայ քահանայապետին քաղաքացին կամ հպատակը չ՚ուզեր ըլլալ։ Դար ԺԶ. Հատ Ա. Գլ. Բ. Համ. ԺԳ։

բուլին, անոր համար՝ մոռածելու համար իրեն տրուած ժամանակը լեցուելէն ետքը՝ Լեւոն Ժ. զինքը առանձին կոնդակով մը (1521ին, Յունուարի 3ին) յանուանէ եւ բոլորովին նզովեց[28]:

28. Բոլլաւիչինի, Գիրք Ա. Գլ. ԻԵ. Հատ. Ա. 95: Կոնդակը տես առ Ռայնալտի, Տարեգր. Հատ. Ի. 318: — Քահանայապետին աս կոնդակը՝ դեռ բոլորովին չխառատցողներուն վրայ մեծ ազդեցութիւն ըրաւ, որով եւ Լուտերէն բաժնուեցան: Առաջինը մէկն էր Սղաւափից, որն որ ինչպէս շատ անգամ տեսանք՝ մինչեւ նոյն ատենները Լուտերին վրայ մեծ համարում ունէր ու զինքն ամէն կերպով կը պաշտպանէր: Բայց վերջապէս Լուտերին վրայ ուղղակի տրուած դատապարտութեան վճռէն զարհուրելով՝ եկեղեցւոյ դատաստանին հպատակեցաւ, եւ Լուտերէն հեռանալէն զատ՝ նաեւ սկսաւ ջանալ որ անիկայ ալ ճամբայ բերէ. եւ աղէկ գիտնալով որ Լուտերին ան տարաճանի համնելուն գլխաւոր պատճառը՝ հպարտութիւնն է, իրեն խրատ կու տար որ խոնարհի: Բայց Լուտեր անոր օրինակին ու խրատներուն հետեւելու տեղ՝ ետեւէն կ'ելնէր որ զինքը նորէն մոլորեցընէ, ուստի եւ իրեն նամակ մը գրեց (1521ին, Փետրուարի 9ին), որուն մէջ ըսելէն վերջը որ անոր (Սղաւափիցին) ըրածը՝ վախկոտութիւն ու Քրիստոսի մատնութիւն է, բառ առ բառ աս ամպարիշտ խօսքերն ալ կը գրէ. "Երբ որ Քրիստոս մեր տէրը կը դատապարտուի, կը մերժուի ու կը հայհոյուի, ան ատենը՝ վախնալու ժամանակ չէ, հապա ձայնը բարձրացընելու ժամանակ է: Ուստի որչափ որ դուն զիս խոնարհութեան կը յորդորես, ես ալ զքեզ նոյնչափ հպարտութեան կը յորդորեմ: Դուն չափէ դուրս խոնարհութիւն ունիս, ես ալ չափէ դուրս հպարտութիւն:... Ըստուգիւ ես հպարտ, ... պապին թշնամի, եւ ամէն մոլութիւններուն յանդգնաբար կը գտնուիմ. բայց միայն թէ Քրիստոսի չարչարուած տանն ամպարիշտ լռութեան յանցաւոր չգտնուիմ,... կը յուսամ որ աս իմ Քրիստոսի խոստովանելովս՝ ուրիշ բոլոր մեղքերուս թողութիւնը կրնամ դիւրաւ ընդունիլ,,: Առ Տը Վէթէ, Հատ. Ա. 556:



# ԳԼՈՒԽ Ը

## Վորմսի աւագաժողովը

Աղեքսանդրոսին ճառը։ Կայսրը հրաման կու տայ որ Լութեր ժողովի կանչուի։ Լութեր՝ կայսեր հրամանին վրայ՝ ճամբան ելլել կու տայ։ Երկու անգամ ժողովի կու գայ ու մեղադրութիւնները յանդգնութեամբ կը պաշտպանէ։ Կայսրը կ'ուզէ Լութերը անմիջապէս ետ խաւրել։ Ասպետներ մեծերը կ'ըլլան ու կ'ուզեն որ Լութերը հետը խօսին, բայց օգուտ մը չ'ըլլար։

# 1521

ԳԵՐՄԱՆԻԱՑԻ Նոր կայսրը Թագադրութենէն քիչ մը վերջը ըստ սովորութեան Վորմս քաղաքը աւագաժողով մ'ըրաւ[1], որուն մէջ չափէն աւելի շատ բազմութիւն գտնուեցաւ, որովհետեւ բոլոր աւագանին (ամէն կայսրընտիրներն ու իշխանները եւ ազատ քաղաքներուն պատգամաւորները) մէկ կողմանէ Նոր կայսրը տեսնելու, մէկալ կողմանէ ալ Լութերին պատճառաւ եղած խռովութիւններուն ինչ վախճան ունենալիքն անձամբ իմանալու համար ջանացած էին Ներկայ գտնուիլ։ Աս աւագաժողովը 1521ին Յունուարի 28ին սկսաւ։ Իսկզբան տէրութեան զանազան գործքերուն վրայ խօսելէն եւ որոշմունքներ ընելէն վերջը, Նոյն ատենուան կրօնի խռովութիւններուն վրայ խօսք բացուեցաւ, որոնք կայսրը եւ աւագանւոյն մեծ մասը հանդարտեցընել շատ կը բաղձային։ Ասոնց մասնաւոր կերպով մը յորդորիչ եղաւ Աղէքսանդրոյ՝ քահանայապետին դեսպանը, որն որ շատ անգամ աս Նիւթին վրայ մասնաւոր խօսակցութիւններ ընելէն զատ՝ անգամ մը երկայն ճառ մը խօսեցաւ, որուն գլխաւոր մասունքներն ասոնք են։

"Մ՝եծափառ կայսր, հզօր իշխանք եւ մեծարգոյ պատգամաւորք։ Երբեք ժողովքի մը մէջ ունկնդիրները ատենախօսէն խաբուելու վտանգէն այնպէս ազատ եղած չեն, ինչպէս աս աւագաժողովին մէջ։ Ատենախօսները հասարակօրէն իրենց ունկնդիրներն անով կը խաբեն, որ կը ձեւացընեն թէ բոլոր իրենց փոյթը՝ ժողովականներուն օգտին համար է, եւ խօսած Նիւթերնէն՝ իրենց համար ամենեւին օգուտ մը կամ ակնկալութիւն մը չունին. անոր համար ալ շատ անգամ աւելի ուրիշներուն՝ իրենց վրայ ունեցած վստահութեամբն ու սիրովը կը յաղթեն քան թէ փաստերնուն զօրութեամբը։ Իսկ ես յայտնապէս կը խոստովանիմ որ խօսած Նիւթէս ինծի մեծապէս օ-

1. Նոյն աւագաժողովը բուն ժամանակին ըլլալուն համար՝ Վորմս Նիւրնպերկ պիտի որ ըլլար. բայց հոն քաղաքը ժողվուեցաւ։

դուռ կայ, եւ միանգամայն ան ալ կը զգուշցնեմ որ մեծ յօժարութեամբ ու սիրով կը խօսիմ. որովհետեւ վախճանս ան է որ իմ իշխանիս գլուխը իր պատուական թագը հաստատուն պահեմ. անանկ որ իմ առանձնական յօժարութեանս ալ նայելով՝ աս բանիս համար յանձն կ'առնէի կենդանի կենդանի այրիլ, թէ որ գիտնայի որ նորածին հերետիկոսութեան հրէշն ալ ինծի հետ մէկտեղ կ'այրի[2]: Բայց միանգամայն յանձն կ'առնեմ որ մէջերնէդ ամենեւին մէկը խօսքերուս չհաւանի, թէ որ բերած պատճառներս աղէկ մը եւ զգուշութեամբ քննելէն ետքը՝ միտքը համոզուած չինար: Եւ չէ թէ միայն չեմ վախնար որ խօսքերս այսպէս զգուշութեամբ քննուին, հապա մանաւանդ կը բաղձամ որ քննուին. ինչու որ բերելու պատճառներուս հաստատութիւնն ան ատեն աւելի կ'երեւայ, երբ որ աւելի մտադրութեամբ ու սուր աչքով կը քննուին, որն որ ճշմարտութեան յատուկ է:...

«Մէկ բանէն յառաջ՝ մինչեւ հիմա շատերուն միտքին մէջ տիրած սխալ կարծիք մը կ'ուզեմ փարատել. աս սխալ կարծիքն ան է իբրեւ թէ Լուտերին ու Հռոմայ մէջ եղող բոլոր հակառակութիւնը՝ միայն քահանայապետին նպաստաւոր եղող քանի մը չնչին բաներու վրայ է, որոնք Լուտեր չ'ընդունիր: Բայց աս կարծիքն ան աստիճանի սխալ բան է, որ քահանայապետին՝ իր կոնդակովը դատապարտած 41 յօդուածներուն մէջ՝ քահանայապետական իշխանութեան դէմ եղող միայն քանի մը յօդուած կայ: Եւ մէկը չկարծէ որ մէկալ դատապարտուած ամպարիշտ յօդուածները՝ զրպարտութեամբ Լուտերի վարդապետութիւնը սեպուած են: Ես հոստեղս իր լատիներէն ու գերմաներէն լեզուաւ գրած, տպել տուած ու տարածած գրքերը բերած եմ. բաւական է որ մէկը աչք ունենայ, որպէս զի տեսնէ թէ ինչպէս նոյն ամպարշտութիւնները իր գրքերուն մէջ կրկին կրկին կը վարդապետէ[3]: Բայց արդեօք ասոնք թեթեւ

2. Խօսքին սկզբնագիրն աս է. **Mi lascerei arder vivo, se meco insieme dovesse arder il mostro della nascente eresia.** Բալլաւիչինի. Գիրք Ա. Գլ. Իե. Հատ. Ա. 98: Աս գեղեցիկ խօսքը Մեալ ա'Օպինեկէին մէջ այսպէս թարգմանուած է. «Պատրաստ եմ իմ մարմինս կրակի մէջ այրելու, միայն թէ՝ աս նորաբոյս հերետիկոսութեան ծնունդ հրէշը՝ որուն հետ ես հիմա կը մաքառիմ, կարենայ նոյն կրակին մէջ այրիլ ու սպառիլ, ու անոր մոխիրը իմինիս հետ խառնուիլ». Հատ. Ա. 462. որով Լուտերին հերետիկոսութեան վրայ ըրուածը՝ անոր անձին վրայ տանելով՝ սաստիկ անիրաւութենէ ելած խօսքի մը պէս յառաջ բերուած է: — Թէպէտ աս գրքին խարդախ թարգմանութենէն քանի մը օրինակ բերելով (տես երես 5. 19. 23, 24.) մտքերնիս դրած էինք որ ալ չյիշենք, եւ իրաւ ալ թէ ուրիշ շատ տեղեր եւ թէ առանձին՝ աս ճառին մէջ ըրած փոփոխութիւնները, աւելցուցած ու պակսեցուցած խօսքերը չյիշատակեցինք. բայց աստիկա չկրցանք ընել:

3. Բալլաւիչինի կը պատմէ որ

ու չնչին բաներու՛ վրայ են։ Ինք կը հաստատէ թէ բարեգործութիւնները երկինք առնալու համար ամենեւին հարկաւորութիւն եւ օգուտ մը չունին. կը հաստատէ որ մարդը բնական եւ աստուածային օրէնքները կատարելու ազատութիւն չունի. մանաւանդ թէ կը պնդէ որ ամէն գործքերնուս մէջ հարկաւ մեղք կը գործենք։ Խղճմտանքին խայթերը շլացընելու, ամօթոյն երասանակը քակելու եւ յուսոյն գեղեցիկ գրգիռը տկարացընելու համար ասկից աւելի սատանայական վարդապետութիւն մը կրնա՞յ գտնուիլ։ Նոյն իսկ առասպելներուն մէջ՝ մարդիկներն անասուն դարձընելու համար ասկէ աւելի վնասակար թոյն կը գտնուի՞ արդեօք։...

“Արդ ասանկ գարշելի մոլորութիւն քահանայապետին օգտի՞ն կը վերաբերի. քահանայապետին շահո՞ւն կը վերաբերի արդեօք խորհուրդներուն շնորհք հեղուլը, զորն որ Լուտեր խորհուրդներուն վրայէն կը վերցընէ. որով հաւատացելոց՝ աս Քրիստոսի խաչին վրայ իր արեամբը պատրաստած երկնային դեղերուն ունեցած վստահութիւնը կը քակէ կ'եղծանէ։ Չեմ գիտեր ինչ ըսեմ ան մինչեւ հիմա եկեղեցւոյ մէջ չլսուած՝ մեղքերուն թողութիւն տալու իշխանութեան վրայ, որն որ Լուտեր կը յանդգնի չէ թէ միայն աշխարհականներու՝ հապա նաեւ կանանց ալ շնորհելու. որով քահանայական կարգին ունեցած գլխաւոր պատիւը կը վերցընէ, եւ ապաշխարութեան խորհրդոյն ազդեցութիւնը կը խախտէ։...

“Բայց ա՛լ աւելի յառաջ երթանք։ Քրիստոնէական ժողովրդեան մէջ ինչ աւելի սրբապղծական ու խռովայոյզ ամպարշտութիւն կրնայ ըլլալ, քան կրօնաւորական ուխտերուն զօրութիւնն ուրանալը, եւ կրօնաւորները վանքերուն մէջ հաստատուն եւ անփոփոխ պահող սրբազան կապերը քակելը։ Միայն աս վարդապետութիւնը՝ Լուտերին ինչ տեսակ մարդ ըլլալը ցուցընելու բաւական է։ Ամէն մարդ գիտէ որ ապստամբութիւն հանող խաբեբաներուն ու չարագործներուն առաջին հնարքն ան է որ իրենց ետեւէն գացողներուն՝ ամէն բան ընելու թոյլ կու տան, եւ ասիկա թօշակի մը պէս կ'ըլլայ, որով ամէն տեսակ չարիք գործելու համար՝ ուզածնուն չափ բազմութիւն գլուխնին կը ժողվեն։ Ամէն տեղ ինչ խռովութիւն, ինչպիսի՛ գայթակղութիւն, ո՛րչափ կռիւներ կ'ըլլան, թէ որ տեսնուելու ըլլայ որ մինչեւ հիմա իրենց քարոզութեամբն ու բարի օրինակներովը

Աղէանտրոս Լուտերին քանի մը գըրքերը մէկտեղ բերած էր, որոնց մէջ մոլորական տեղերը նշանակած ըլլալով՝ երբ որ ճառը խօսելու ատեն հարկ կ'ըլլար, գիրքը կը բանար ու մօտ եղողներուն մէկիկ մէկիկ կը ցուցընէր. եւ ասոնք իր խօսքերուն հաստատուն վկայութիւն կ'ըլլային։ Գիրք Ա. Գլ. ԻԵ. Հատ. Ա. 97։

ժողովրդեան աստուածպաշտութիւնը պահողներն ու աւելցընողները՝ հիմա սանկ զգայութիւններու համաձայն վարդապետութիւններէ խաբուելով՝ մեծարելի զգեստներին մէկդի թող կու տան, երբեմն իրենց ձեռքովը շէն եղող եկեղեցիներէն կ'ելլեն, եւ անարժան ու պիղծ ամուսնութեամբ աշխարհք կը մտնեն : . . .

“Այսչափ վարդապետութեան վրայ բաւական է. հիմա իշխանութեան ու իրաւանց վրայ խօսինք : Լուտեր տրտունջ կ'ընէ որ քահանայապետը բոլոր եկեղեցւոյ գլխաւորութիւնը յափշտակած իրեն առած է : — Ի՞նչ կերպով. արդեօք Աղեքսանդրին գնդերո՞վը կամ Կեսարին զօրքերո՞վը : Մարդիկ՝ որոնք բնութեամբ հրամայել կ'ուզեն եւ ամենեւին մէկու մը իշխանութեան տակ մտնել չեն ուզեր, եւ ամենուն ալ ախորժակներն ու սովորութիւնն իրարմէ տարբեր է, ի՞նչպէս աշխարհքիս ամէն կողմը իրարու հետ միաբանելով՝ յանձն առին որ պզտիկ երկրի մը տէր եղող Հռոմայ անզէն եպիսկոպոսը՝ Աստուծոյ փոխանորդ ճանչնան. ի՞նչպէս ուրիշ եպիսկոպոսները իրեն հնազանդութեան տակ մտան. ի՞նչպէս այնչափ թագաւորներ՝ որոնք իրարու թշնամի ալ էին, դէմ չդրին, հապա աս բանիս մէջ իրարու հետ համաձայնելով՝ անոր ոտքը խոնարհեցան. աս ամէն բաները կ'ըլլայի՞ն արդեօք թէ որ հին աւանդութիւնը իրենց չցուցընէր որ Քրիստոսի կտակն ու կարգադրութիւնն աս է : Բայց աւելի խորունկ թափանցենք եւ գտնենք որ Քրիստոս պատրաստ ըլլայ իր եկեղեցւոյն կարգադրութիւնը մեր կամացը համաձայն փոխելու, եւ աս իմաստուն ժողովքին յանձնէ որ քահանայապետը՝ ունեցած գլխաւորութենէն մերկացընէ : Նայինք որ ասկից օգուտ մը յառաջ կու գա՞յ. եւ երբ որ կը տեսնենք որ ասով ամենեւին շահ մը կամ օգուտ մը չ'ըլլար, ան ատեն կ'իմանանք որ Քրիստոս իր եկեղեցին անանկ կարգաւորեց՝ ինչպէս որ հաւատացելոց նաեւ երկրաւոր երջանկութեան յարմար էր : Կ'աղաչեմ սանկ երեւելի նիւթը աղէկ մտադրութեամբ մտիկ ըրէք : Երբ որ քահանայապետին գլխաւորութիւնը վերցուելու ըլլայ, եկեղեցին ի՞նչպէս պիտի կառավարուի : Ամէն մէկ եպիսկոպոս իր թեմին մէջ ինքնագլուխ տէ՞ր պիտ'որ ըլլայ : Թէ որ այսպէս ըլլայ նէ՝ մէկ բռնաւորութիւն վերցընենք ըսելու ատեն՝ անթիւ անհամար բռնաւորութիւններ կը դնենք : Ինչպէս որ ըլլայ նէ՝ կրնայ յուսացուիլ որ մի միայն քահանայապետը գրեթէ միշտ անանկ մէկն ընտրուի, որն որ իմաստութեամբը, բարութեամբը, փորձառութեամբը, եւ թէ որ ասոնք չունենալու ալ ըլլայ՝ իր պաշտօնեաներուն գործակցութեամբը կամ մարդկային պատուոյ համար՝ Քրիստոսի հօտն աղէկ կառա-

վարէ, կամ գտնէ իր կառավարութիւնը հանդուրժելի ըլլայ։ Բայց ո՛վ կրնայ աս բանս այնչափ անթիւ անհամար փոքր եպիսկոպոսներէն յուսալ, որոնք չէ թէ կարդինալներու ժողովքին մէջէն եւ անոնց ձեռօքը կ՚ընտրուին, հապա անանկ մարդիկներու մէջէն՝ որոնք քիչ եկամուտքով մը պզտիկ երկիր մը քաշուելու գոհ կ՚ըլլան, եւ ընտրողներն ալ նոյն պզտիկ երկրին քանի մը քահանաներն են։ Եկեղեցւոյ քահանայապետութիւնը այնչափ ազատ առաջնորդներու բաժնել տալը՝ ուրիշ բան ըսել չէ, բայց եթէ ամէն մէկ պզտիկ սեպուհն իր առանձին կալուածին կամ երկրին վրայ ազատ եւ ինքնիշխան աշխարհական տէր ընել։

«Պիտի ըսէք որ եպիսկոպոսները ժողովոյ իշխանութեան տակ կ՚ըլլան։ Ես ալ կը հարցընեմ. Ան ժողովքը միշտ ժողվուա՞ծ պիտի մնայ. այս ինքն արդեօք եպիսկոպոսները միշտ իրենց եկեղեցիներէն հեռո՞ւ պիտի կենան։ Թէ որ ըսուելու ըլլայ որ Չէ, ան ատեն կը հարցընեմ. Ժողովքը չժողվուած ատեն պատահած դժուարութիւններուն կամ խնդիրներուն համար որո՞ւն պիտի դիմուի։ Նոյն ժողովքը որո՞ւն հրամանաւը պիտի ժողվուի, երբ, ի՞նչ կերպով. ժողովքին մէջ գահերէց ո՛վ պիտ՚որ ըլլայ։ Աս համառօտ հարցմունքներէն ամէն մարդ դիւրաւ կրնայ իմանալ թէ ո՛րչափ խառնակութիւն, ո՛րչափ շփոթութիւն, ո՛րչափ հակառակութիւններ բոլոր եկեղեցին տակն ու վրայ կ՚ընէին։.... Դարձեալ թէ որ ամէն մէկ հասարակութիւն իր մղորական եպիսկոպոսին՝ իբրեւ Ս. Գրոց համաձայն՝ իրեն առջեւը դրածին հաւատալու ըլլար, ո՛րչափ հակառակութիւններ չէին ելլեր օրինաց, ծէսերուն եւ մինչեւ հաւատոյ բաներուն վրայ։ Ստուգիւ անկէ վերջը եկեղեցին չէր կրնար եկեղեցի, այս ինքն ժողով կոչուիլ, երբ որ այնչափ անդամներու կը բաժնուէր ու զինքն առաջնորդող եւ ուղղիչ ոգիէ մը միութիւն չէր ընդունէր։ Անկից ալ զատ՝ երբ որ ամէն եպիսկոպոս իր թեմին մէջ ազատ ու ինքնիշխան ըլլար նէ, ան ատեն ամէն մէկ աւագերէց ալ՝ անկից օրինակ առնելով՝ եպիսկոպոսին իշխանութիւնը կ՚ուզէր իրեն սեպհականել ու ինքնիշխան եւ անկախ ըլլալ, նոյնպէս ամէն մէկ քահանայ՝ իր աւագերէցին իշխանութենէն կ՚ուզէր ազատ ու անկախ ըլլալ, որով իրօք ան Բաբիլոնը կը ծագէր, որն որ Լուտեր ամբարշտութեամբ Հռոմ կը դնէ։....

«Արդ միութեան ու կառավարութեան համար եկեղեցւոյ մէջ միննակ մէկ գլխաւոր գլուխ ու կառավար մը հարկաւոր ըլլալը ցուցուելէն ետքը՝ ինք իրմէ կը հետեւի թէ հարկ է որ աս գլխաւոր անձը ուրիշ իշխանի մը տէրութեան կամ երկրին մէջ

չընտակի, Հապա ինչ իրեն տէրութիւն ու երկիր ունենայ, իրեն առանձին արքունիք ու պաշտօնեաներ ունենայ. որպէս զի կարող ըլլայ առանց աչառութեան ու կողմնակալութեան ամենուն Հայր ըլլալ: Իսկ ատոնց համար հարկաւոր եղած ծախքերն ո՞վ պիտ'որ ընէ: Ամէն քաղաք իր քահանան կը պահպանէ, ամէն թեմ՝ իր եպիսկոպոսը, ամէն ազգ՝ իր տէրը, ամէն տէրութիւն իր իշխանը, եւ շատ տէրութիւններ ու թագաւորութիւններ մէկտեղ՝ իրենց թագաւորը կամ կայսրը:... Ուրեմն ինչո՞ւ բոլոր քրիստոնեայք իրենց գլուխն ու Հայրը պիտի չպահեն„ [4]:...

Ալէանտրոյ աս կերպով երկայն խօսելէն ետեւ՝ ճառը լմնցուց ըսելով որ Աս չարիքներն արմատէն խլելու համար ուրիշ

4. Աս հատուածը գրածնիս՝ Ալէանտրոյին ճառին միայն քանի մը հատուածներն են: Բայց Բալլաւիչինին (Պէրք Ա. Գլ. ԻԵ. Հատ. Ա. 98.— 108.) ընդարձակ կերպով մը ամբողջ կը դնէ, եւ կը զրուցէ որ ինք աս ճառը Վատիկանեան գրքատան մէջ եղող գրքէ մը առած է. բայց "Որպէս զի, կ'ըսէ, անշուշտ արձանի մը պէս չըլլայ, հապա կենդանի ձեւով, ուղղակի Ալէանտրոյին բերանը կը դնեմ„. այս ինքն թէ գրքին մէջ պատմութեան պէս գտնուածը՝ ինք ճառի պէս ամբողջ ի մէջ կը բերէ, իբրեւ թէ Ալէանտրոն ըստ ամենայնի նոյն բառերով, նոյն կարգաւ եւ նոյն ձեւով խօսած ըլլայ: Ատոր ստուգութիւնը շատ բողոքող մատենագիրներ կը հաստատեն: Տես Մեռլ տ'Օպինեէ, Հատ. Ա. 462. Ծանօթ: Բլանք, Պէրք Գ. Հատ. Ա. 389: Մենցլ, Հատ. Ա. Գլ. Բ. 88: Աս վերջին մատենագիրը կը զրուցէ որ Ալէանտրոյ աս ճառին մէջ "Մանրամասն ցուցուց կամ հաստատեց (beweisen, démontrer) որ Լութեր՝ իրօք եկեղեցիէն դատապարտուած նախադասութիւններ կը վարդապետէ, ... քրիստոնեաներն օրինաց հնազանդութենէն բոլորովին ազատ կը կացուցանէ . . .„: — Ի վերայ այսր ամենայնի դեռ անանկ բողոքող մատենագիրներ կը գտնուին, որոնք Սեքէնտորֆին հետեւելով՝ կը զրուցեն որ աս ճառը Ալէանտրոյ ժողովքին մէջ խօսած չէ, եւ Բալլաւիչինի ալ Վատիկանեան գրքատան մէջ եղող գրքէ մը առած չէ. Հապա ինք իրմէ մտածելով թէ Ալէանտրոյ նոյն առթին մէջ ինչ կրնար խօսիլ, բոլոր իր գլխէն չինած է: Թէպէտ եւ աս ըսածնին առանեւին կերպով մը չեն կրնար հաստատել, եւ արդէն վերը յիշուած բողոքող մատենագիրներն ալ աս բանս չեն ընդունիր, եւ Մեռլ տ'Օպինեէ յայտնապէս կ'ըսէ որ "Ասիկայ (Բալլաւիչինիին ըսածը) բոլորովին մերժելը՝ կողմնակալութիւն կ'ըլլար„. ի վերայ այսր ամենայնի ենթադրենք որ այնպէս ըլլայ. ասով իրենց ինչ օգուտ կ'ըլլայ. ճառին մէջ եղած խօսքերուն ճշմարտութիւնը ասով կը նուազի՞ արդեօք. իրենց վարդապետը միակերպ չի՞ խոստովանէր թէ՛ Ալէանտրոյ խօսած ըլլայ, թէ՛ Բալլաւիչինիին չինած ըլլայ:

Բայց Ռոսգոյ (Գլ. ԺԹ. Հատ. Դ. 27, 28.) եւ Մեռլ տ'Օպինեէ (Հատ. Ա. 467, 468.) Լութերը ուրիշ կերպով մը կը ջանան ջատագովել: Թէ որ, կ'ըսեն, Լութեր կամ իր նախանձաւոր ու իմաստուն աշակերտներէն մէկը ժողովքին մէջ գտնուելով՝ Ալէանտրոյին ամբաստանութիւններուն պատասխան տուած ըլլային, իր ճառին՝ ունկնդիրներուն վրայ ըրած ազդեցութիւնը շատ կը նուազէր: Ստուգիւ զարմանալի՛ ջատագովութիւն: Թէ որ նոյն ատենը ժողովքին մէջ անանկ մէկը չգտնուեցաւ նէ, (որն որ ստոյգ չէ, վասն զի ժողովքին մէջ իր աշակերտներէն ու կողմնակիցներէն շատ մարդ կը գտնուէր.) արդեօք ետքն ալ նոյն գործքը կատարել կրցող մէկը չգտնուեցա՞ւ. ինչո՞ւ գոնէ իրենք Լութերին մոլորութիւնները չեն արդարացըներ ու Ալէանտրոյին ամբաստանութիւններէն չեն սրբեր:

հնարք չկայ, բայց եթէ աս որ կայսրը աւագաժողովին հաւանութեամբ զԼուտեր տէրութենէն տարագիր ընէ: — Ժողովքին մէջ ըլլողներէն շատերը Ալէանտրին խօսածներուն վրայ հաւանելով, ու Լուտերին ամպարշտութիւններէն եւ անոնցմէ ծագած ու ծագելու չարիքներէն սոսկալով՝ կ'ուզէին որ ատենախօսին խնդրածին պէս՝ կայսեր վճռովը Լուտեր տէրութենէն տարագիր ըլլայ: Բայց Լուտերին կողմն ըլլող քանի մը իշխաններ խնդրեցին որ անիկա ժողովքը կանչուի եւ իրեն հարցուի որ "Արդեօք ան մեր ու նախնեաց Ս. հաւատքին դէմ եղող կարծիքները կ'ուզէ պաշտպանել՝ չէ նէ ետ կը կանչէ: Թէ որ ետ կանչելու ըլլայ նէ, ըսին, ան ատեն ուրիշ բաներու վրայ ալ լսուի ու պատշաճ սեպուածն որոշուի: Իսկ թէ որ քրիստոնէական եկեղեցւոյ ու մեր Ս. հաւատքին դէմ եղող կարծիքներուն կամ բոլորին կամ մէկ քանի մասին մէջ... յամառած կենալու ըլլայ, ան ատեն բոլոր կայսրընտիրներն ու իշխանները... մեծափառ կայսեր հետ մէկտեղ՝ իրենց հարց ու նախնեաց հաւատքին մէջ... առանց վիճմանց հաստատուն մնան, եւ նոյն հաւատքը հաստատուն պահելու ջանան,, [5]: Թէպէտ Ալէանտրոյ շատ ջանաց որ կայսրը աս բանիս չհաւանի [6], ի վերայ այսր ամենայնի կայսրը՝ աւագանւոյն խնդիրքին զիջաւ, կարծելով որ աս

5. Այսպէս բառ առ բառ կը գտնուի ի Գործս Լութ. ֆենըմ. Հատ. Ա. 481: — Կայսրը գեռ Վորմս չհասած՝ կայսրընտրին հրաման խաւրած էր որ Լուտերը մէկտեղ ժողովք բերէ. բայց կայսրընտիրը աս բանը չուզելով՝ կայսրմէն խնդրած էր որ հրամանը ետ առնէ. եւ արդէն ինքնակալը նոյն միջոցին իմանալով որ Լուտերին՝ մտածելու եւ խելքը գլուխը բերելու համար տրուած ժամանակը լմնցած եւ որոշակի նզովքի տակ ինկած էր, ինք իրմէ կայսրընտրին նորէն հրաման խաւրած էր որ մէկտեղ չբերէ: Սակայն եւ այնպէս՝ կայսրընտիրը նոյն միջոցներուն թղթով մը Լուտերին հարցուցած էր որ արդեօք աւագաժողովը գալ յանձն կ'առնէ: Լուտեր ալ իրեն պատասխան տուած էր որ Կանչուելու ըլլամ նէ, թէպէտ հիւանդ ալ ըլլամ, կու գամ: Կայսրընտիրը Վորմս հասնելէն ետեւ Լուտերին նորէն հարցուց: Լուտեր աս երկրորդ անգամ ալ պատասխան տուաւ որ Կ'երթամ. միայն վրան աւելցուց որ Երթալու համար պէտք է որ ինծի ապահովութեան թուղթ տրուի: Ուստի եւ աս կողմանէ Լուտերին կողմնակիցներն ապահով էին որ ինք ժողովք կու գայ: Տես ի Գործս Լութ. ֆենըմ. Հատ. Ա. 480: Սէքէնտորֆ, Գիրք Ա. Համ. Ղ. 147: Բլանք, Գիրք Գ. Հատ. Ա. 377. — 382: Ռէֆէլ, Գիրք Ա. Գլ. Ե. 181, 182: Կոտոփոտ Ֆէյեր, Գլ. ԺԱ. 186. — 191:

6. "Ալէանտրոյ վախցաւ որ, կ'ըսէ Բալլաւիչինի, Լուտերին հետ ժողովքին մէջ հրապարակաւ վիճաբանութիւն կ'ըլլայ, որուն Լուտեր շատ կը բաղձար իր լեզուանութեան ու սրտոտութեան եւ ունկնդիրներուն տգիտութեան վրայ վստահանալով: Անոր համար (Ալէանտրոյ) դէմ դրաւ, ըսելով որ պէտք չէ նորէն վէճի ու քննութեան տակ ձգել ան դատաստանը՝ որուն վրայ քահանայապետը, կրօնական նիւթերու մէջ գերագոյն դատաւորը, արդէն վճիռ տուած էր: Բայց աս չըլլայ ալ նէ, ըսաւ, ի վերայ այսր ամենայնի աւագաժողովը չիկրնար աս նիւթին մէջ դատաւոր ըլլալ, որովհետեւ աս բանը ամենեւին աշխարհականներու դատաստանին տակ չ'իյնար,,: Գիրք Ա. Գլ. ԻԶ. Հատ. Ա. 108:

փոքր զիջումն ընելով՝ կրնայ հակառակորդները շահիլ, եւ վախնալով որ եթէ դէմ դնելու ըլլայ նէ՝ գուցէ չարիքն աւելի կը մեծնայ[7]. միայն թէ յայտնապէս ըսաւ որ Լուտերը ժողովք կանչելը՝ իր վարդապետութիւնները քննելու համար չէ, հապա առջեւը միայն մէկ հարցում դնելու համար, այս ինքն թէ արդեօք իր վարդապետութիւնները ետ կը կանչէ՛, թէ չէ[8]:

Այս որոշումն ըլլալուն պէս՝ Գասպար Շդուրմ կայսեր պատգամաբերը Վիդդենպերկ խաւրուեցաւ, որ Լուտերին առնէ Վորմս բերէ: Կայսրը Լուտերին համար ըստ սովորութեան՝ պատուաւոր կերպով գրուած ապահովութեան թուղթ տուաւ, որով կը խոստանար որ իրեն ամենեւին վնաս մը չհասնիր. նոյնպէս Փրեդերիկոս կայսրընտիրը՝ իր ու եղբօրը Յովհաննէս դքսին անուամբը, ու Գէորգ դուքսը զատ զատ ապահովութեան թղթեր տուին, որոնց մէջ իրենց հպատակներուն կը հրամայէին որ Լուտերին թէ Վորմս գալու եւ թէ ետ դառնալու ատեն ամենեւին արգելք մը չդրուի ու վնաս չըլլայ[9]:

Պատգամաբերին Վիդդենպերկ հասնելէն մէկ երկու օր վերջը Լուտեր՝ իր ընկերներէն ու սիրելի եւ հաւատարիմ աշակերտներէն քանի մը հոգի հետը մէկտեղ առած՝ ճամբայ ելաւ: Շդուրմ ձի հեծած ասոնց առջեւէն կ'երթար: — Լուտերին ան ատեն ինչ մտքի վրայ ըլլալը՝ ճամբայ ելլելէն յառաջ առ Սփալադին գրած մէկ թղթէն կ'իմանանք: Սփալադին իրեն նամակ մը գրած ու կայսրընտրին հրամանաւը առջեւը իր մոլորութիւններէն քանի մը բան դրած էր, որոնք, կ'ըսէր, խաղաղութեան համար կրնաս ետ կանչել: Արդ Լուտեր՝ առ կայսրընտիրը գրելէն վերջը որ "Պատրաստ եմ ամենայն խոնարհութեամբ Հռոմայ եկեղեցին յարգելու, եւ ամենեւին ոչ երկինքը եւ ոչ երկրի վրայ իրմէ վեր բան մը չթողնելու, բաց Աստուծմէ եւ իր խօսքէն, եւ անոր համար ալ սիրով ետ կը կանչեմ ան ամէն բաները՝ որոնց մէջ մոլորիլս ինծի կը ցուցուի„[10], Սփալադինին այսպէս կը գրէ. "Սիրելի Սփալադին. Ընդունեցայ

7. Ռիֆֆէլ, Գիրք Ա. Գլ. Ե. 199: — Նոյն մատենագիրը կը զրուցէ որ կայսրն աս բանս ընելով՝ եկեղեցւոյ ու քահանայապետին իրաւանց դէմ չգործեց. ինչու որ, ինչպէս ետքը ժողովքին վճռոյն մէջ կը զրուցէ, Լուտերը՝ միայն ան վախճանաւ բերել տուաւ, "որպէս զի հակառակութեան պատճառանքը վերցընէ, որովհետեւ շատերը կ'ըսէին որ Լուտերին անուամբը տարածուած գրքերը՝ իրենը չէն„. եւ աս ալ կ'աւելցընէ կայսրը որ առած չէինք ուզեր ամենեւին "իր դատը քննել կամ վրան դատաստան ընել, որն որ առանց տարակուսի՝ Հռոմէական քահանայապետին եւ առաքելական Գահին գործքն է„:

8. Բլանք, Գիրք Գ. Հատ. Ա. 391: Ռօսգոյ, Գլ. ԺԹ. Հատ. Բ. 28, 29:

9. Աս գրուածքները տես ի Գործս Լուտ. գերմ. Հատ. Ա. 485. Բ. — 487:

10. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ա. 481. Բ.

ան յօդուածները՝ որոնք որ (կ'ըսես թէ) ետ կանչելու եմ...։ Բայց ամենեւին մի՛ կարծեր որ բան մը նոր կանչեմ. որովհետեւ կը տեսնեմ որ պապականները ուրիշ պատճառի համար ետ կանչելս չեն ուզեր, բայց եթէ անոր համար որ... ես եկեղեցւոյ անկարգութիւններուն ու սովորութիւններուն դէմ գրեցի։ Ուստի եւ Կարոլոս կայսեր պատասխան կու տամ որ եթէ միայն ետ կանչելու համար զիս կը հրաւիրէ նէ՝ չեմ գար, ինչու որ... եթէ ետ կանչել ուզէի նէ՝ հոս ալ կրնայի ետ կանչել։ Իսկ թէ որ կայսրը զիս անոր համար կը կանչէ որ մեռցընել տայ,... դէմ չեմ կենար ու գալու պատրաստ եմ։ Ամենեւին չեմ փախչիր ու Քրիստոսի խօսքը վտանգի մէջ չեմ ձգեր. հապա մինչեւ ցմահ կ'ուզեմ խոստովանիլ, միայն թէ Քրիստոս ինծի օգնէ։ Գիտեմ որ արեան ծարաւած շները, այս ինքն պապականները՝ զիս չմեռցուցած պիտի չհանգչին,,[11]։... Դարձեալ ուրիշ մէկու մը այսպէս կը գրէ. "Վորմսէն կը լսես թէ ինչպէս ետ կանչեցի։ Աս պիտ'որ ըլլայ ետ կանչելս. Իսկզբան պապը՝ Քրիստոսի փոխանորդ կ'անուանէի, հիմա խօսքս ետ կ'առնեմ ու կ'ըսեմ որ պապը՝ Քրիստոսի թշնամին է եւ սատանայի փոխանորդը,,[12]։

Արդ այսպէս ընելիքը մտքին մէջ հաստատած՝ ճամբայ ելաւ Լութեր։ Էրֆուրդ հասած ատեն՝ գնաց Օգոստինեանց վանքն իջաւ, ուր որ նորընծայութեան ժամանակն անցուցած էր։ Եւ թէպէտ կայսրը սաստիկ արգելած էր որ ճամբորդութեան ատեն ամենեւին քարոզ չտայ, ի վերայ այսր ամենայնի Լութեր՝ աս հրամանը բանի տեղ չդնելով՝ կիրակի օրը հոն եկեղեցւոյ մէջ քարոզ տուաւ[13], ու ետքը նոյն քարոզը տպել տալով՝ ամէն կողմ տարածեց։ Քարոզ տուած ատեն՝ եկեղեցին սաստիկ շատ մարդիկ ժողվուած էին, որոնք առտուանց կանուխ եկած գիզուած էին, եւ հետաքրքրութեամբ կը սպասէին տեսնելու եւ լսելու ան մարդը՝ որուն անունը երեք տարիէ վեր ամենուն բերանն ինկած էր։ Լութեր քարոզին մէջ բարեգործութեանց, մարդկան աւանդութեանց, կրօնաւորաց կարգերուն դէմ շատ բաներ խօսելէն զատ՝ ուղղափառ քահանայից ու ժառանգաւորաց դէմ ալ երկայն խօսեցաւ[14]։

11. Նոյն տեղը, 482։ Աս թուղթը Մարտի 19ին գրուած է։

12. Առ Օտենի, Հատ. Ա. Գլ. Ժթ. 237։ Անանուն մէկու մը՝ Մարտի 24ին։

13. "Նոյն (Էրֆուրդ) քաղաքը եւ ուրիշ տեղեր ժողովրդեան առջեւը ճառեր խօսեցաւ. որովհետեւ հետը գացող պատգամաւորները՝ թէպէտ եւ պատուէր ունէր որ ճամբան իրեն քարոզ տալ չտայ, ի վերայ այսր ամենայնի աչք կը գոցէր,,։ Ռոսքոյ, Գլ. Ժթ. Հատ. Դ. 30։

14. Լութերին աս գրգռիչ խօսքերը շուտ մը պտուղնին բերին։ Քիչ մը ետքը ժողովրդեան մէջէն անպիտան մարդիկ քաղքին ուսանողներուն հետ մէկտեղ միանալով՝ գիշերով կանոնիկոս քահանայից տներուն վրայ յարձակեցան, շատ տակ ընելու բաները թալլեցին, մնացած կահերքը ըստ մեծի մասին

Ընկեր ճամբորդութիւնը յառաջ տանելով՝ Ապրիլի 16ին Վորմս հասաւ[15]: Քաղքին մէջէն իրեն կողմն ըլլողներէն շատերը եւ ուրիշ խել մը հետաքրքիր մարդիկներ առջեւն ելան, եւ ուրախութեամբ առին զինքը քաղաքը խոթեցին եւ Լուտեր գնաց Հռոդացի ասպետներուն տունը բնակեցաւ: Երկրորդ օրը աւագաժողովին կողմանէ երկու հոգի եկան, եւ ըսին որ նոյն օրը կէսօրէն ետքը ժամը չորսին ժողովքը գայ: Լուտեր իրենց աս պատասխանը տուաւ. Աստուծոյ կամքն ըլլայ, հրամանին կը հնազանդիմ. ետքը ծնկան վրայ իջաւ աղօթք ըրաւ:

Երբ որ որոշուած ժամանակն եկաւ նէ, զինքը հրաւիրող երկու հոգին նորէն եկան, եւ առին ժողով տարին, հրամայելով որ միայն իրեն հարցուած բաներուն պատասխան տայ եւ ամենեւին ուրիշ բան չխօսի: Լուտեր ժողովքին մէջ մտածին պէս՝ Տրիերի արքեպիսկոպոսին դպրապետը Էք (Յովհ. Էք՝ Ինկոլշդատի աստուածաբանը չէ.) քովն եկաւ ու ըսաւ իրեն նախ լատիներէն ետքը գերմաներէն. Կայսրը քեզի երկու բան կը հարցընէ. Նախ՝ արդեօք քու անուամբդ չորս կողմը տարածուած գրքերը գո՞ւն գրած ես. եւ երկրորդ՝ անոնց մէջ եղած վարդապետութիւններուն վրայ հաստատուն կը կենա՞ս, չէ նէ ետ կը կանչես: Լուտեր պատասխան տալու չսկսած՝ Հերոնիմոս Շուրֆ՝ իրաւագիտութեան վարդապետը, որն որ Վիդդենպերկէն Լուտերին հետ մէկտեղ եկած էր, եւ հոն ալ քովը կը կենար, խնդրեց որ ան յիշած գրքերուն անուններն ըսէ: Էք ալ բոլոր գրքերուն անունները կարդաց, որոնք թղթի մը վրայ նշանակած էր: Ան ատեն Լուտեր լատիներէն եւ գերմաներէն պատասխան տուաւ թէ կը խոստովանիմ որ բոլոր ըսած գրքերդ իմս են: Բայց երբ որ երկրորդ խնդրոյն եկաւ նէ, "կարծես թէ, կ'ըսէ Մենցլ[16], ան վստահութիւնը՝ որով եկած էր, զին-

պատուհաններէն վար նետեցին, եւ անոնց կրակ տալէն այրեցին: Ասիկա Լուտերին քարոզութիւններէն ծագած չարիքներուն գրեթէ երախայրիք մ'եղաւ: Նոյն դէպքը՝ ըստ մասին բազմաթիւ մատենագիրներէ առնելով՝ տեղն ի տեղը կը պատմէ Ռուլենպերկ, Գլ. Զ. Համ. Բ:

15. Ասկէ մինչեւ աս գլխոյն վերջը գրածնիս՝ բոլոր ետեւի գրուածքներէն առած ենք: Լոտփրիդ Ֆեյրմ. Գործոց Մէլ Խաղած Ճեպափոխարանը, Հատ. Ա. 487. — 496: Մելանխթոն, Լուտերի Վորմսի, էլ 29.—50: Մաթեզիոս, Ճառ Գ. 22. — 28: Սեքենտ. Գիրք Գ. 32. — 35: Սեքէնտորֆ, Գիրք Ա. Հատ Խ. — Հատ ԽԲ: — Եւ Ռուլենպերկ, Գլ. Զ. Համ. Գ. Դ. — Ռոբերե, Գիրք Ա. Գլ. Ե. 201. — 210, որոնք ըստ մեծի մասին զանազան հին բողոքող մատենագիրներէ քաղած են: Ասոնց հատուածը գնելը բաւական սեպելով՝ ամէն մէկ մատենաւոր հատուածին տակը տեղը չենք նշանակեր:

16. Հատ. Ա. Գլ. Բ. 92: — "Կ'երեւայ որ, կ'ըսէ Լեւոն, ճամբորդութիւնը զինքը այլայլած, ընդունած պատիւները զինքը յոգնեցուցած ու միտքը ցրուած, եւ վերջապէս իշխանաց բազմութիւնը վրան մեծ ազդեցութիւն ըրած էր. որով քիչ մը ատենն իր վստահութիւնն ու համարձակութիւնը կորսընցուց, եւ մտածելու ժամանակ ուզեց": Մաուր Գ. Հատ Ա. Գլ. Ա. 103:

քը թող տուաւ,, 17 . ուստի եւ պատասխանեց թէ Ասոր պատասխանը հիմա շուտ մը չեմ կրնար տալ. հապա պէտք է որ վրան աղէկ մը մտածեմ, որպէս զի չըլլայ որ ասանկ մեծ ու դժուարին նիւթի մէջ չափէն աւելի կամ պակաս խօսիմ:

Լուտեր աս խօսքն ըսածուն պէս՝ լսողները սկսան շշնջել ու տրտնջել, մանաւանդ անոնք՝ որոնք կը յուսային ու մտքերնուն մէջ հաստատութեամբ դրած էին թէ Հոգին սուրբ շուտ մը անոր միտքը պիտի լուսաւորէ, եւ ժողովք մտած ատեն՝ զինքը կը քաջալերէին Քրիստոսի խօսքն ըսելով թէ Մի հոգար որ ինչ պիտի խօսիս, վասն զի խօսելու ատեն՝ ինչ ըսելիքդ քեզի իմաց կ'ըլլայ[18] : Իրաւունք ալ ունէին տրտնջելու. ինչու որ աս Լուտերի տուած պատասխանը, կ'ըսէ Մեմպուր[19], ամենեւին չիհամաձայնիր ան մարգարէութեան Հոգւոյն հետ, որմէ ինքը զինքը լուսաւորուած կը կարծէր, եւ անոր համար ալ Սփալատինին գրած էր. "Ես ի յիս Աստուծոյ ազդեցութիւնը կը զգամ. Հոգին սուրբ զիս ստացած է, եւ անիկա է որ զիս կը վարէ,,[20] : Աս խօսքերէն յայտնի կ'իմացուի թէ Լուտեր այնպէս կը ձեւացընէր որ բոլոր ըսածները Հոգւով սրբով լուսաւորուած՝ կ'ըսէ, եւ իր աշակերտներէն շատերն ալ մտքերնուն մէջ այսպէս դրած էին: Եւ որովհետեւ հիմա մտածելու ժամանակ ուզելովը այնպէս կ'իմացուէր որ իր վարդապետութիւններուն վրայ բոլորովին ապահով չէ, եւ կարելի է որ քանի մը բան ետ կանչէ, անոր համար լսողներուն վրայ գէշ ազդեցութիւն ըրաւ[21].

17 . Լուտեր ճամբայ ելած՝ ան տարիճանի վստահութիւն ու հաստատութիւն կը ցուցընէր, մինչեւ աս խօսքն ալ ըսաւ. "Թէպէտ եւ Վորմսի մէջ այնչափ սատանայ ըլլար, որչափ որ յարկերուն վրայ կղմինտր կայ, ի վերայ այսր ամենայնի հոն երթալէն ետ չէի քաշուէր,, : Մելանքթոն, Կէ 20 : Մոֆեսիոս, Ճառ. Գ. 23 : Բլանք, Գիրք Գ. Հատ. Ա. 397: Ցը Վերդ, Հատ. Բ. 139 :

18 . Ռոսգոյ, Գլ. ԺԹ. Հատ. Դ. 31, 32 : Կուստաւ Փիցեր, Գլ. ԺԲ. 212 :

19 . Գիրք Ա. 52 :

20 . Առ Օտենի, Հատ. Ա. Գլ. ԺԹ. 245 :

21 . Օտէն, վերը յիշուած տեղը՝ — Սեքենտորֆ (Գիրք Ա. Համ. ՂԴ. 153.) եւ ուրիշ բողոքող մատենագիրներ, որոնց մէջ է նաեւ Ռոսգոյ (Գլ. ԺԹ. Հատ. Դ. 32.) իրենց վարդապետին աս վարմունքն արդարացընելու համար կը զրուցեն որ Լուտեր երբեք այնպէս համարած չունէր որ Հոգւով սրբով լուսաւորուած, կամ թէ երկնային յայտնութիւններ ունեցած ըլլայ: Մենք անոր վրայ չենք ուզեր պնդել որ Լուտեր աս համարումն ունեցած է. բայց ամենեւին տարակոյս չկայ որ ուրիշներուն շատ անգամ հաւատացընել ուզած է: Վերը գրուած խօսքէն զատ՝ որն որ մինչեւ հիմա իր նամակներուն մէջ կը կենայ, իր գրուածոց մէջ անթիւ անհամար խօսքեր կան, որոնք կը ցուցընեն թէ Լուտեր միշտ այնպէս կը ձեւացընէր որ Հոգւով սրբով լուսաւորուած է, եւ իր վարդապետութիւնները երկնային յայտնութեամբ առած է. որոնց մէջէն մէկ քանին քիչ մը ետքը (Բ. Գրքին Ա. Գլխոյն մէջ) պիտի տեսնենք: Եւ նոյն խօսքերուն բուն միտքը մեր իմացածն ըլլալը՝ այնչափ յայտնի է որ Լուտերի Գործոց զանազան հին տպագրութիւններուն մէջ մասնաւորապէս լուսանցքին վրայ կը նշանա-

ուղղափառները վրան ունեցած փոքր համարումին ալ բոլորովին կորսընցուցին, իսկ իր կողմնակիցներուն սիրտը շատ նեղացաւ։

Հաւաքանին աս բանին վրայ մէջերնին քիչ մը մտածելէն ետեւ՝ Էք նորէն Լութերին քովը եկաւ եւ ըսաւ. Դուն յառաջագոյն իմացած էիր որ կայսրը դքեզ ինչ պատճառաւ հոս կը կանչէ, եւ տալու պատասխանիդ վրայ մտածելու բաւական ատեն ունէիր, անոր համար ալ խնդիրդ կրնար մերժուիլ. ի վերայ այսր ամենայնի կայսրը իր բարերար խնամքովը կը զիջանի ու մինչեւ վաղը քեզի ժամանակ կու տայ։ Արդ պատրաստ եղիր որ վաղը աս ատեն նորէն ժողովքին առջեւը գաս պատասխան տաս, բայց գրով չէ՝ հապա բերնով։ Եւ աս ըսելով դուրս հանեց։

Երկրորդ օրը (Ապրիլ 18ին) Լութեր նորէն ժողովքը կանչուեցաւ, եւ Էք իրեն այսպէս խօսեցաւ. Որովհետեւ երէկ կայսեր քեզի ըրած հարցման պատասխան տալ չուզեցիր, եւ ինքը քեզի օր մը ժամանակ շնորհեց, (թէպէտ եւ կրնար աս շնորհքը չընել, ինչու որ ամէն մարդ պատրաստ պիտ'որ ըլլայ իր հաւատքին վրայ պատասխան տալու, մանաւանդ դուն որ աստուածաբան ես՝ հարկաւորութիւն չունէիր ըսելիքիդ վրայ մտածելու.) արդ՝ այսօր ի՞նչ պատասխան կու տաս. գրքերուդ մէջ գտնուած վարդապետութիւնները կը պաշտպանե՞ս՝ թէ չէ։ — Աս խօսքին Լութեր նախ գերմաներէն ու ետքը լատիներէն պատասխան տալով՝ փոքր յառաջաբանութենէ մը ետեւ այսպէս խօսեցաւ. Իմ գրուածներս երեք կարգ կրնան բաժնուիլ։ Առաջին կարգինները՝ քանի մը բարեպաշտական գրքեր են, որոնց մէջ հաւատոյ ու բարուց վերաբերեալ նիւթերու վրայ պարզ ու յայտնի կերպով կը խօսիմ, եւ ատոնց վրայ պէտք է որ նոյն իսկ հակառակորդներս ալ աղէկ վկայութիւն տան. արդ ատոնք

կեն։ Ենեայի տպագրութեան մէջ (որն որ Լութերին մահուընէ 9—10 տարի վերջը հրատարակուած է) նոյն խօսքերէն մէկուն սկիզբն այսպէս գրուած է. "Ասիկա սքանչելի գրուածք մըն է, որուն մէջ սուրբ այրն Աստուծոյ Մ. Լութեր վարդապետը, ճշմարիտ երրորդ ու վերջին Եղիան, յայտնի խօսքերով կը ցուցնէ որ իր վարդապետութիւնը մարդկըներէն ընդունած չէ, հապա երկնային Յիսուսէ Քրիստոսէ յայտնուեր։" Գործք Լութ. Գերմ. Հատ. Բ. 56. Բ։ — Ինք Սեքենտորֆ (Գիրք Ա. Հատ. ՂԹ. 162.) Լութերին աս Մելանքթոն գրած մէկ թուղթը բերելով՝ կ'ըսէ թէ Լութեր գրեց որ "Թէպէտ ես կորսուիմ (մեռնիմ) ալ նէ՝ աւետարանը կորուստ մը չ'ըներ". եւ վրան կ'աւելցընէ թէ որովհետեւ "Կը յուսար որ Փիլիպպոսը (Մելանքթոնը) Եղիսէ պիտ'որ ըլլար, ու Եղիային (Լութերին) պիտի յաջորդէր"։ Որմէ յայտնապէս կը տեսնուի որ Լութեր ինքը զինքը Եղիայի տեղ կը դնէր։ Դարձեալ Լութեր ինքը զինքը Մովսէսի տեղ կը դնէր, եւ Յուստոսին կը գրէր թէ Աստուծոյ կ'աղաչեմ որ իմ հոգիս քեզի ալ տայ. դուն ալ, կ'ըսէր, Ահարոն եղիր, եւ իմ տեղս խօսէ ու գործէ։ Ա— Ցը Վիթէ, Հատ. Բ. 19։ Ցես Նաեւ Ա. Գրքին Գ. Գլխոյն 20 Ծանօթ։

եւ կանչերը՝ աւրիշ բան չէ, բայց եթէ ճշմարտութիւնը մտանել եւ հաւատքն ուրանալ։ Երկրորդ կարգիններն անոնք են, որոնց մէջ պապերուն եւ անոնց վարդապետութեանց դէմ կը խօսիմ. եւ որովհետեւ աս բանս ընելու պատշաճ եւ իրաւացի պատճառներ ունիմ, անոր համար ինծի կ՚երեւայ որ անոնց մէջ բառերս ալ ետ չեմ կրնար առնել, ապա թէ ոչ՝ ես ինքս հակառակորդներուս բռնութիւններն ու ամպարշտութիւնները աւելի հաստատած կ՚ըլլամ։ Երրորդ կարգիններն ան գրքերն են, որոնց մէջ քանի մը՝ Հռոմէյեցիներուն բռնութիւնները պաշտպանողներուն դէմ բաներ գրած եմ. արդ թէպէտ կը խոստովանիմ որ ասոնց մէջ շատ խստութեամբ ու դաժնութեամբ խօսեցայ, որն որ քրիստոնէի մը չվայլեր. սակայն եւ այնպէս եւ ոչ անոնք ետ կը կանչեմ, որպէս զի չըլլայ որ հակառակորդներուս բռնութեանց ու մոլորութեանց հետ միաբանած երեւամ։ Բայց որովհետեւ ես մարդ եմ ու մոլորական, անոր համար կրնայ ըլլալ որ սխալած ըլլամ. ուստի ան միայն կ՚ըսեմ որն որ Քրիստոս քահանայապետին ծառային ըսաւ. “Եթէ չար ինչ խօսեցայ, վկայեա վասն չարին„։ Արդ թէ որ ինք՝ որ Աստուած էր եւ բոլորովին անմոլորական, յանձն առաւ որ մարդիկ իրեն վկայութիւն տան, ո՞րչափ եւս առաւել ես պէտք է որ լսեմ, թէ որ մէկը վարդապետութեանցս դէմ բան մ՚ունի։ Եւ թէ որ մէկը ստուգիւ Ս. Գրոց խօսքերովը ցուցընելու ըլլայ որ ես ճշմարտութենէ հեռացած ու գրքերուս մէջ մոլորութիւն սորվեցուցած եմ, ամենէն յառաջ ես իմ ձեռօքս անոնք կրակի մէջ կը ձգեմ[22]։

Լուտեր ասոնք ըսելէն ու խօսքը քիչ մ՚ալ յառաջ տանե-

22. Թէպէտ հոս, ինչպէս նաեւ ասկէց յառաջ շատ անգամ, Լուտեր այնպէս կը ձեւացընէր որ յանձն կ՚առնէ թէ իր վարդապետութիւնները քննուին, եւ խօսք կու տար որ եթէ սխալածը ցուցուի նէ՝ ետ կը կանչէ. բայց քիչ մը ետքը սկսաւ ասոր վրայ ամըչնալ, ու տեղ մը ասանկ կը գրէ. “Շատ կը ցաւիմ որ Վորմս՝ կայսեր առջեւն ան աստիճանի նուաստացայ, մինչեւ ուզեցի որ վարդապետութեանս վրայ դատաւոր ունենամ, եւ խոստացայ որ եթէ մէկը իմ սխալած ըլլալս կրնայ ցուցընել նէ՝ լսեմ։ Որովհետեւ պէտք չէր ասանկ յիմարական խոնարհութիւն ցուցընել, մանաւանդ որ բառերուս վրայ ստոյգ էի, ու բռնաւորներուն ալ օգուտ մը չունէր։ Մարդս իր բաներուն վրայ այնպէս ստոյգ ու ապահով պէտք որ ըլլայ, որ բոլոր աշխարհք ալ անոր դէմ դնելու ըլլայ նէ՝ ի վերայ այսր ամենայնի ինք հաստատուն կենայ„։ Գործք Լութ. Ենէր. Հատ. Բ. 135. Բ։ Ընդհանրապէս Լուտեր աս ժողովքին մէջ ցուցուցած խոնարհական կերպարանքին ու զիջման վրայ միշտ ցաւելով կը խօսէր, եւ կը զղջացէր որ նորէն նոյն վիճակին մէջ գտնուելու ըլլայի նէ՝ աւելի չիտակ կը խօսէի։ Բայց տեղ տեղ ալ կը զարմանայ թէ ինչպէս կրցաւ այնչափ համարձակութեամբ խօսիլ, եւ չեմ գիտեր որ, կ՚ըսէ, հիմա նոյն համարձակութիւնն ու արիութիւնը կ՚ունենայի, թէ չէ։ Սեքենտորֆ, Գիրք Ա. Հատ. ՂԴ. 152։ Ռոպէրդ, Գլ. ԺԹ. Հատ. Դ. 36։

լէն վերջը՝ Էք իրեն պատասխան տուաւ որ Աս ըսածներդ՝ քեզի եղած հարցմունքին հետ կապակցութիւն չունին. կայսրը քեզմէ ուրիշ բան չ'ուզեր, բայց եթէ աս՝ որ յայտնի եւ որոշ կերպով մը պատասխան տաս որ արդեօք գրքերուդ մէջ՝ ընդհանուր ժողովքներուն ու կաթուղիկէ եկեղեցւոյն դէմ վարդապետածներդ կ'ուզե՞ս ետ առնել թէ չէ։ Ասոր Լուտեր պատասխան տուաւ թէ Որովհետեւ կայսեր կամքն ան է որ յայտնի եւ որոշ պատասխան տամ, ահաւասիկ ըսածը կ'ընեմ. Թէ որ Ս. Գրոց խօսքերով ու հաստատուն պատճառներով չիցուցուիր որ ես մոլորած եմ, գրածս ու վարդապետածս չեմ կրնար ու չեմ ուզեր ետ կանչել. ինչու որ ոչ պապին եւ ոչ ընդհանուր ժողովքներուն կը հաւատամ, որոնք, ինչպէս յայտնի է, շատ անգամ ճշմարտութենէ հեռացան եւ իրենք իրենց հակառակ բաներ հաստատեցին[23]։ Եւ երբ որ Էք աս խօսքիս անպատշաճութիւնն ու յանդգնութիւնը ցուցուց, եւ գլխաւորաբար աս ըսաւ որ եթէ ամէն մարդ՝ եկեղեցւոյ վարդապետութեան ու ժողովոց վճիռներուն դէմ ունեցած կարծիքներուն սխալ ըլլալուն հաւանելու համար՝ պահանջէր որ Ս. Գրոց խօսքերը իրեն հասկըցածին պէս հասկընալով եւ իրեն մեկնածին պէս մեկնելով՝ զինքը համոզեն, ամենեւին բան մը հաստատուն չէր մնար, Լուտեր ըսածը նորէն կրկնեց, ու կայսեր աղաչեց որ զինքը խղճմտանքին դէմ խօսելու չստիպէ։ Եւ որովհետեւ գիշերը կոխած էր, դեռ բան մը չորոշուած՝ նոյն օրը ժողովքը լմնցաւ[24]։

23. Հոս ամէն մարդ ինք իրմէ կրնայ տեսնել թէ Լուտեր ինչպէս աստիճան աստիճան վեր կ'ելլէր, եւ ամպարշտութիւնն ու յանդգնութիւնը երթալով միշտ կ'աւելցընէր։ Իսկզբան յանձն առաւ ինքը զինքը քահանայապետական դեսպանի մը դատաստանին տակ ձգելու. անոր համար ալ Աւկսպուրկ գնաց ու Կայետանոսին առջեւն ելաւ։ Բայց երբ որ տեսաւ թէ կարդինալը զինքը մոլորութիւնները ետ կանչելու կը ստիպէ, ալ ան ատեն անոր իշխանութիւնը ճանչնալ չուզեց, եւ բուն քահանայապետին դիմելով ու քահանայապետին դեսպանէն կամ աղէկ չտեղեկացած քահանայապետէն՝ աղէկ տեղեկացած քահանայապետին բողոքելով, ցուցուց որ քահանայապետին՝ իր վրայ ունեցած իշխանութիւնը կը ճանչնայ։ Ետքը երբ որ իմացաւ որ քահանայապետը՝ իր մոլորութիւնները դատապարտելու վրայ է, անկէ ետեւ անոր իշխանութիւնն ալ մերժեց, եւ սկսաւ ընդհանուր ժողովքին բողոքել. որով յայտնեց որ ընդհանուր ժողովքին իշխանութիւնը կ'ընդունի։ Բայց վերջապէս երբ որ տեսաւ որ արդէն յառաջագոյն եղած ընդհանուր ժողովքները՝ իր մոլորութիւնները մերժած են, ալ ընդհանուր ժողովքն ալ աչքին առջեւը բան մը չերեւցաւ։ Եւ այսպէս սկսաւ միայն ինքը զինքը՝ քահանայապետէն, ընդհանուր ժողովքէն ու եկեղեցիէն վեր բռնել, եւ աշխարհքիս մէջ անմոլար ու անսխալական՝ միայն ինքը զինքը դրաւ։ Որով ցուցուց թէ յառաջագոյն ալ մեկէ մը մեկալին բողոքած ատեն՝ վախճանը ճշմարտութիւն փնտռել չէր, հապա իր անձնական կարծիքները իբրեւ միակ աւետարանական ճշմարտութիւն ընդունել տալ։

24. Բողոքող մատենագիրները

Սպանիայի թագաւոր, Գերմանիայի կայսր ու Աւստրիայի արքիդուքս եղողները՝ միշտ ուղղափառ հաւատոյ պաշտպան ու պատսպարան եղած, եւ իրենց արեամբն ու մահուամբը կրօնքին անարատ մնալուն փոյթ ունեցած են. ասկից զատ՝ անոր ալ զգուշութեամբ հոգ կը տանէին որ ամէն մարդ՝ եկեղեցւոյ ու քահանայապետաց վճիռներուն պատշաճ հնազանդութիւնն ընէ: Արդ մենք ալ աս գեղեցիկ օրինակները առջեւնիս ունենալով՝ մեր քաջ ու երեւելի նախորդներուն ետեւէն երթալ ու ժառանգութեամբ մեզի եկած հաւատքը ձեռքերնէս եկածին չափ պաշտպանել կ'ուզենք: Եւ որովհետեւ հիմա Օգոստինեան կրօնաւոր մը յանդգնութեամբ՝ հաւատոյ եւ եկեղեցւոյ հրամաններուն ու կարգերուն դէմ ելեր է, եւ բոլոր քրիստոնէից գլխոյն դէմ կը դնէ, մոլորութիւնները յամառութեամբ կը պաշտպանէ, եւ ըսածները ետ չ'առներ. անոր համար մեզի աղէկ երեւցաւ որ աս չարիքներուն առջեւն առնենք, թէպէտեւ հարկ ըլլայ արիւննիս, ինչքերնիս, պատիւնիս, նաեւ տէրութեան օգուտը վտանգի մէջ դնել. որպէս զի չըլլայ որ Գերմանիան՝ ստերդմնութեան անօրէնութեամբ աղտեղի: Արդ ասկէ վերջը չենք ուզեր լսել Մարտինոս Լուտերը, որուն յամառութեան ու խստապարանոցութեան անբժշկելի ըլլալը աւագանին իմացաւ. եւ հրաման կու տանք որ քաղքէս ելլէ եւ ինչպէս որ եկաւ նէ՝ նոյն ապահովութեամբ տեղը դառնայ, միայն թէ ճամբան քարոզ չտայ ու խռովութիւն մը չհանէ [25]:

Թէպէտ եւ կայսեր աս թուղթը ժողովքին մէջ եղողներուն վրայ տարբեր տարբեր ազդեցութիւն ըրաւ, որովհետեւ Լուտերին կողմն ըլլողները կը տրտնջէին որ կայսեր աս ըրածը խստութիւն է, իսկ հակառակորդները կ'ըսէին թէ ասիկա չարեաց առջեւն առնելու համար բաւական զօրաւոր միջոց մը չէ,

տեսանք, եւ ասկէ վերջը պիտի տեսնենք) կրնայ արդեօք ըսուիլ որ խղճմտանքին խայթերը եւ Աստուծոյ անհաճոյ ըլլալը բանի տեղ կը դնէ:

Ասկից ալ զատ՝ թէ որ յանդըգնութեամբ ու յամառութեամբ՝ օրինաւոր իշխանութեան դէմ դնելը եւ ժողովքի մէջ իր կարծիքներուն վրայ յամառած մնալը՝ գովութեան արժանի բան է ու մտաց հաստատութիւն եւ արիութիւն սեպուելու է նէ, ապա ուրեմն նոյն գովութիւններուն արժանի են ամէն դարերու մէջ եղող հերձուածապետները: Ուրեմն գովութեան ու յարգանաց արժանի է Արիոս, որ Նիկիայ ժողովքին մէջ հայրապետներուն ու կայսեր դէմ կեցաւ. գովութեան ու յարգանաց արժանի են Մակեդոն, Նեստոր, Եւտիքէս, Փոտ եւ այլն, վասն զի ամէն մէկերնին իրենց մէկ ժողովքի եւ կայսեր դէմ յամառած մնացին: Իսկ թէ որ բողոքողք ասոնք չեն յանդըգնիր գովել ու յարգել, եւ Լուտեր զիրենք շատ տեղ կը պարսաւէ եւ հերձուածապետ կ'անուանէ, ուրեմն ինչ երեսով իրենք Լուտերը մինչեւ երկինք կը վերցընեն:

25. Ռայնալտ, Հատ. Ի. 321: Ռոսգոյ, Գլ. ԺԹ. Հատ. Դ. 37: Տես նաեւ Գործք Լուտ. գերմ. Հատ. Ա. 492:

ինչու որ Լուտեր՝ իր տեղը դառնալէն վերջը ուզածը կրնայ ընել. ի վերայ այսր ամենայնի կայսեր հրամանին դէմ չկրցան դնել: Ուստի եւ անկից վերջը ալ Լուտերին հետ ժողովքին մէջ հրապարակաւ գործք մը չգործուեցաւ: Բայց աւագանին մէջերնին խորհուրդ ընելով՝ որոշեցին որ խաղաղութեան համար պէտք է որ առանձին ամէն ջանքն ի գործ դնեն, որ գուցէ Լուտերին յամառութիւնը կրնան յաղթել ու զինքը համոզել որ քահանայապետին հնազանդի եւ եկեղեցւոյ ծոցը դառնայ: Անոր համար կայսեր աղաչեցին որ իրենց հրաման տայ վերջին փորձ մ'ալ ընելու[26]. ան ալ խնդիրքներնուն հաւանութիւն տուաւ, բայց պայման դրաւ որ Լուտեր անկէ ետեւ քաղքին մէջ երեք օրէն աւելի չկենայ[27]: Աս ալ ըսաւ որ եթէ ամէն մոլորութիւնները մէկդի ձգելով՝ եկեղեցւոյ հետ հաշտուելու չըլլայ նէ՝ ես ձեզի գրով իմացուցած առջի կարծիքէս ետ չեմ դառնար:

Ն[·]ն ատեն Դրիերի կայսրընտիր արքեպիսկոպոսը Լուտերն իրեն կանչելով՝ շատ անգամ թէ առանձին եւ թէ ուրիշներու առջեւ հետը խօսեցաւ, եւ ուրիշներուն ալ խօսել տուաւ: Իրեն ցուցուցին որ թէ ինքը զինքը եւ թէ ուրիշները ինչ մեծ վտանգի մէջ կը դնէ. առջեւը կը դնէին իր յանդգնութիւնը միանաւանդ թէ յիմարութիւնը, որով աշխարհքիս մէջ եղած ամենէն մեծ ու սրբազան բաներուն դէմ կ'ելլէր, եւ թէ եկեղեցական թէ աշխարհական իշխանութիւնը ոտքի տակ կ'առնէր: Մեծ սիրով իրեն խրատ կու տային որ մոլորութիւնները մէկդի ձգէ, քահանայապետին հրամաններուն հնազանդի եւ ընդհանրական ժողովքներուն վարդապետութիւնն ընդունի: Բայց ինչպէս կրնային աս իմաստուն խօսքերը՝ հպարտութեամբ ու անձնահաճութեամբ կուրցած հերձուածապետին վրայ ազդեցութիւն ընել: Լուտեր ամենուն դէմ կը դնէր, ու միշտ բերանը աս խօսքն ունէր թէ "Աւելի Աստուծոյ հնազանդելու է քան թէ մարդու,,. չեմ կրնար ես յանձն առնել որ, կ'ըսէր, Աստուծոյ խօսքը կապանքի տակ ձգեմ: Վերջապէս անգամ մը արքեպիսկոպոսը իրեն ըսաւ որ Դուն մեզի հնարք մը ցուցուր, որով կարծես թէ չարիքներուն առջեւը կրնան առնուիլ: Լուտեր ալ անամօթութեամբ պատասխան տուաւ որ Ես ան հնարքը պատշաճ կը տեսնեմ, որն որ Գամաղիէլ Հրէից առջեւը

26. Ռոստոյին պատմածին նայելով բոլոր իշխանները, թէ Լուտերին կողմն ըլլողները եւ թէ իրեն հակառակորդները, մէկտեղ կայսեր աղաչեցին որ Լուտերը մէյ մ'ալ լսէ. "Պատճառ բերելով որ եթէ նոյն ատենն ալ ինք իր հերետիկոսութեան մէջ յամառելու ըլլայ (if he persevered in his heresy,) ան ժամանակը անոր դէմ ի գործ դրուելու միջոցները աւելի եւս կըրնան արդարանալ,,: Գլ. Ժթ. Հատ. Դ. 38:

27. Անկէ ետքը կայսրը նորէն երկու օր ալ, մինչեւ Ապրիլ 25ը, ժամանակ շնորհեց:

դրան ըսելով. «Թէ որ աս գործքը (այս ինքն ուխտերուց քաւրոզութիւնն ու Քրիստոսի վարդապետութեան տարածուիլը) մարդիկներէն է նէ՝ ինք իրմէ կը կործանի, իսկ եթէ Աստուծմէ է նէ՝ դուք չէք կրնար կործանել» 28։ Որով աս կ'ուզէր իմացընել թէ պէտք չէ որ քահանայապետը կամ կայսրը կամ ուրիշ մէկը իրեն դէմ դառնայ, որովհետեւ ինք՝ եկեղեցին նորոգելու համար Աստուծմէ սահմանուած առաքեալ կամ մարգարէ է։ Ասոր վրայ արքեպիսկոպոսը իրեն հարցուց որ ի՞նչ կ'ընէիր եթէ որ գրքերուդ մէջէն քանի մը խօսքեր ժողվէին, որպէս զի ասկէ վերջը ժողվուելու ընդհանուր ժողովքին դատաստանին տակ ձգեն, մինչեւ որ նոյն ժողովքը անոնց վրայ վճիռ մը տայ նէ՝ անոնք վարդապետելէն ետ կը կենայի՞ր։ Լուտեր պատասխան տուաւ որ Այո, միայն թէ աս ժողվուած խօսքերը՝ Կոստանդեայ ժողովքին մէջ դատապարտուած բաները չըլլան։ Եւ երբ որ արքեպիսկոպոսը կրկնեց թէ կարծեմ որ անոնք կ'ըլլային. ան ատեն Լուտեր պատասխանեց որ Եթէ այնպէս է նէ՝ չեմ կրնար լռել, ինչու որ յայտնի գիտեմ թէ ան ժողովքին մէջ Աստուծոյ խօսքը դատապարտուեցաւ։ Աս որ լսեց արքեպիսկոպոսը՝ իմացաւ որ բոլոր աշխատութիւնը պարապ գացեր է, եւ Լուտերը ուղղութեան բերելու ամենեւին յոյս չկայ, ուստի եւ գնաց բոլոր եղածը կայսեր պատմեց (Ապրիլի 25ին).

28. Թէ որ Լուտերին աս կանոնը ամէն տեղ ստոյգ ըլլար նէ, կ'ըսէ Բալլաւիչինի, կը հետեւէր որ կռապաշտութիւնն ու ամէն տեսակ ամպարիշտ աղանդներն ալ, որոնք շատ դարեր հաստատուն մնացին ու կը մնան, Աստուծմէ են։ Բայց ան ալ ստոյգ է որ Լուտերին վարդապետութեանցը նայելով՝ աս բանս ալ ընդունելու ենք. որովհետեւ ինք կը վարդապետէ որ ամէն ամպարշտութիւնները Աստուծոյ գործքն են։ Գիրք Ա. Գլ. ԻԷ. Հատ. Ա. 114։ Նոյն խորհրդածութիւնը նաեւ բողոքող մատենագիր մ'ալ կ'ընէ։ Լուտեր աս խօսքով, կ'ըսէ, «Երկար տեւողութեան անանկ մեծ զօրութիւն մը կու տայ, որն որ չափէն աւելի է. ինչու որ յայտնի է թէ Աստուած իր ծածուկ խորհուրդներովը թող կու տայ որ նաեւ մոլորութիւնները, ինչպէս օրինակի համար Մ...ին վարդապետութիւնը, դարերով աշխարհքիս վրայ մնան...։ Բայց Լուտեր իր եռանդեան սաստկութեամբը սանկ խորհրդածող մտաց պատճառին միտ չէր դներ»։ Մէնցլ. Հատ. Ա. Գլ. Բ. 97։



# ԳԼՈՒԽ Թ

## Լուտեր Վարդպուրգի մէջ

Կայսրը կը հրամայէ որ Լուտեր իր տեղը դառնայ։ Սաքսոնիայի կայսրընտրին հրամանաւը Լուտեր ճամբան կը բռնուի ու բերդի մը մէջ կը պահուի։ Աստուածաշունչը Լուտեր կը թարգմանէ։ Լուտերին Վարդպուրգի մէջ անցուցած կեանքը եւ շինած գործերը։ Փարիզի համալսարանը Լուտերին գործերը կը դատապարտէ։ Հենրիկոս Ը. Անգղիայ թագաւորը Լուտերին դէմ գիրք մը կը շինէ։ Լուտեր Փարիզի համալսարանին եւ Անգղիայ թագաւորին դէմ կը գրէ։

## 1521—1522

ԵՐԲ որ կայսրը Լուտերին յամառութիւնն իմացաւ, իրեն ըսել տուաւ թէ Որովհետեւ դուն մեր եւ աւագանւոյն խրատները ոտքի տակ առիր արհամարհեցիր ու չուզեցիր ուղղութեան գալ, մենք ալ՝ կրօնին փաստաբանն ու պաշտպանն ըլլալով՝ պէտք է որ մեր պաշտօնին պահանջածը կատարենք։ Արդ կը հրամայենք քեզի որ շուտ մը տեղէդ ելլես, ու 21 օրուան մէջ տեղդ երթաս. եւ աս բանիս համար քեզի նորէն ապահովութեան թուղթ կու տանք, բայց աս պայմանով որ ճամբան բան մը չգրես ու քարոզ չտաս[1]։ Լուտեր պատասխան տուաւ թէ կայսեր հրամանը կը կատարեմ, բայց չեմ կրնար յանձն առնել որ Աստուծոյ խօսքը կապուած մնայ. եւ երկրորդ օրը (Ապրիլի 26ին) իր ընկերներովը մէկտեղ դէպ ի Վիդդենպերկ ճամբայ ելաւ։ Երբ որ Ֆրիտպուրկ հասաւ, հոն երկու նամակ գրեց, մէկ մը կայսեր մէկ մ'ալ աւագանւոյն։ Աս երկու նամակին միտքն ալ գրեթէ նոյն է. Լուտեր անոնց մէջ աւագաժողովը եղածները պատմելէն ետեւ՝ իր յամառու-

1. Քանի մը բողոքող մատենագիրներ կը գրուցեն որ Թէպէտ եւ ոմանք կ'ուզէին որ կայսրը՝ տուած ապահովութեան թուղթը բանի տեղ չդնէ, ու Լուտերի հետ բանտութեամբ վարուի. բայց աւագանին ընդհանրապէս դէմ դրաւ, եւ կայսրն ալ չուզեց որ Գերմանիայի մէջ հրապարակաւ գործած աւաջին գործքը՝ խոստման դէմ վարուիլն ըլլայ։ Աս առթին մէջ կայսրը սա նշանաւոր խօսքը գրուցեց, կ'ըսեն, զորն որ Սեքենտորֆ կը բերէ. այս ինքն որ "Եթէ հաւատարմութիւնն ու խօսք բանելը՝ բոլոր աշխարհքիս մէջէն վերցուած ալ ըլլային, պէտք էր որ իմ քովս (ըստ ոմանց՝ իշխաններուն քովը) ապաստանարան մը գտնէին,,։ — Հաստատուս զարմանալու բանն աս է որ նոյն իսկ աս բողոքող մատենագիրները՝ որոնք միշտ կը գրուցեն թէ Գէորգ դուքսը՝ Լուտերին մահուչափ թշնամին էր, հոս կը խոստովանին որ անիկա աւանձին կերպով մը եւ մէկալ իշխաններէն աւելի՝ վերը գրուած աւաջարկութեան դէմ կեցաւ, եւ պնդեց որ Լուտեր ազատ իր տեղը դառնայ։ Մէրլ տ'Օպինեէ, Հատ. Ա. 540։ Կոստորստո Ֆէյէր, Գլ. ԺԲ. 224։ Մէնցլ, Գլ. Բ. 94։ — Ռոպէրլ բոլոր աս դէպքը տարակուսի տակ կը ձգէ, ըսելով որ Լուտերէն ուրիշ ժամանակակից մը տար վրայ յիշատակութիւն չ'ըներ։ Գիրք Ա. Գլ. Ե. 225. Ծանօթ։

թիւնն ու կայսեր եւ աւագանւոյն խորհրդեանը դէմ դնելը կը ջատագովէ ։ Գրքերս՝ աւագանւոյն կամ ընդհանրական ժողովքի դատաստանին տակ ձգել չուզելս, կ՚ըսէ, իմ օգտիս համար չէ, հապա հասարակաց օգտին ու հոգւոց փրկութեան համար ։ Նաքը կ՚աղաչէ որ թող չտան որ հակառակորդները զինքը հարըստահարեն, եւ խօսք կու տայ որ զինքը քննութեան ու հարցափորձի կանչելու ըլլան նէ՝ դէմ չիգներ, որոշուած դատաւորներուն առջեւը կ՚ելլէ, միայն թէ անոնք արդար ըլլան [2] ։ Նոյն թղթերը Շպալատին ձեռքը տուաւ ու քովէն խրկեց, ինչու որ չէր ուզեր անկէ ետեւ զանիկա հետն ունենալ, որպէս զի՛ միտքը դրածն ու որոշուածը կարենայ դիւրաւ կատարել ։

Ընկից նորէն ճամբայ ելաւ, եւ Թուրինգիայի Այզենախ քաղաքը՝ որն որ Սաքսոնիայի կայսրընտրին իշխանութեան տակն էր, քալով տուաւ, ու կայսեր եւ աւագանւոյն խաւրած նամակները տպեց ու չորս կողմը տարածեց ։ Երբ որ նոյն քաղքէն ելած՝ ճամբան յառաջ կը տանէր, թանձր անտառի մը մէջէն անցնելու ատեն՝ մէկէն վրան երկու դիմակաւոր ձիաւորներ եկան, որոնք հետերնին երկու ալ ծառայ ունէին ։ Նոյն ժամանակը Լուտերին քովը միայն Ամսդորֆ կար, ինչու որ մէկալ ընկերները յառաջագոյն զանազան պատճառներով քովէն հեռացուցած էր [3], նոյնպէս ապահովութեան համար քովը դրուած ձիաւորներն ալ ետ խրկած էր, ըսելով որ իրենց հարկաւորութիւն չունի ։ Արդ վրան եկող չորս հոգին՝ Լուտերին ու Ամսդորֆին նստած կառքին վրայ յարձակելով՝ նախ կառապանը գետինը ձգեցին ու քիչ մը ծեծեցին. ետքը Լուտերը բռնութեամբ մը կառքէն քաշեցին հանեցին, զգեստները փոխեցին՝ ասպետի զգեստ հագցուցին, եւ հետերնին պատրաստ ունեցած ձիերնուն վրայ հեծցընելով՝ առին մէկտեղ տարին, կառապանին հրաման տալով որ ուզած տեղն երթայ ։ Եւ քիչ մը ատեն Լուտերը նոյն անտառին մէջ ասդին անդին պտըտցընելէն ետեւ՝ գիշերով առին կայսրընտրին նոյն տեղերը գտնուող բերդերէն մէկը տարին, որն որ Վարդպուրկ կը կոչուի [4] ։

Աս ամէն բաները պարզապէս ձեւ մըն էր. երկու դիմակաւոր ձիաւորներն ու անոնց ծառաները՝ Սաքսոնիայի կայսրընտրին կողմանէ խաւրուած մարդիկներ էին, որոնք՝ յառա-

2. Լուտերին աս երկու նամակները տես ի Գործս Լուտ. գերմ. Ա. 497. եւ 499 ։

3. Կուստաւ Ֆիցէրին (Գւ. ԺԳ. 231, 235.) ըսածին նայելով՝ ինք Ամսդորֆին հետ իր ազգականներուն այցելութեան ուզեց երթալ, որոնք հոն մօտերը կը բնակէին, իսկ մէկալ ընկերները շիտակ Վիգենպերկ տանող ճամբէն գացին ։ Աս այցելութենէն ետ դարձած ատեն եղաւ յարձակումը ։

4. Մաթեսիոս, Ճառ. Գ. 28 ։ Ասանկ կը գրէ նաեւ Լուտեր իր զանազան բարեկամներուն ։ Տես առ Տը Վէթ, Հատ. Բ. 3. 7. 89 ։

ջագոյն Լուտերին ու կայսրընտրին մէջ որոշուածին համեմատ՝ զէնքը ապահով տեղ մը պիտի պահէին[5]։ Կայսրընտրին աս զգուշութիւնն ընելուն պատճառն ան էր, որ գիտէր թէ կայսրը քիչ մը վերջը հրովարտակով մը Լուտերը տարագիր պիտ՚որ ընէ. ուստի առանց մեծ շփոթութիւն մը հանելու՝ զէնքը վտանգէն ազատելու համար աս միջոցը յարմար գտաւ։ Ան միայն չէր գիտեր կայսրընտիրը թէ իր գործակալները Լուտերը իր ո՛ր բերդին մէջ պիտի պահեն, որպէս զի թէ որ ետքը կայսրը իրեն ատոր վրայ բան մը հարցընելու ըլլայ նէ, կարենայ ճշմարտութեամբ՝ Չեմ գիտեր, ըսել. ինչպէս նաեւ ըրաւ ալ[6]։

Երբ որ Լուտերին բռնուելուն լուրը Վորմս հասաւ, աւագանւոյն մէջէն իմաստունները եւ մանաւանդ կայսրը իմացան որ աս բանս անոր հակառակորդներուն գործքը չէ, հապա անոր բարեկամներուն։ Բայց Լուտերի կողմնակիցները ամէն կողմ գոյժ կը տարածէին որ հակառակորդները զէնքը մեռցուցած են. ոմանք աս իրենց յանդուգն ստութիւնը այնչափի հասցուցին, մինչեւ սկսան ըսել թէ վէրքերով ծածկուած մարմինը աչքովնիս տեսանք. ոմանք ալ կ՚ըսէին թէ թշնամիները զէնքը շղթաներու զարկած կը պահեն եւ չարաչար նեղութիւններ ու տանջանքներ կու տան։ Ժողովրդեան մէջ Լուտերին կողմն եղողները աս խօսքերէն այնչափ կատղեցան, մինչեւ Ալէանտրոյ ու եպիսկոպոսները մեծ վտանգի մէջ էին։ Աս բաներուն վրայ կայսրը աւագանւոյն հետ խորհրդի մտնելով՝ հաստատեցին որ Լուտերին դէմ հրովարտակ մը հանեն. եւ քիչ մը վերջը աս հրովարտակը Վորմսի մէջ Մայիսի 26ին տրուեցաւ ու գերմաներէն եւ լատիներէն լեզուաւ տպուած հրատարակուեցաւ[7]։ Հրովարտակին միտքը համառօտիւ աս է։ Իսկըզ-

5. Մենցլ (Հատ. Ա. Գլ. Բ. 98.) կ՚ըսէ որ "Կայսրընտիրը արդէն Վորմս իրեն (Լուտերին) հետ աս բանիս վրայ խորհրդակցութիւն մ՚ըրել տուած էր,,։ — Կուստաւ Փիցեր ալ (Գլ. ԺԳ. 233.) Լուտերին՝ ճամբուն վրայ գրած մէկ նամակը կը բերէ, որուն մէջ այսպէս կը գրէ. "Թող կու տամ որ զիս գոցեն ու ծածկեն, բայց չեմ գիտեր թէ ո՛ւր։ Ես թէպէտ աւելի կ՚ուզէի որ բռնաւորներուն ձեռքովը... սպաննուիմ, ի վերայ այոր ամենայնի պէտք է որ մինչեւ որ ժամանակը գայ նէ՝ աղէկ մարդիկներուն խրատը չարհամարհեմ,,։ Նոյն մատենագիրը աս նամակը դնելէն ետեւ՝ բացայայտ կը զրուցէ թէ "Կայսրընտիրը Լուտերին առաջարկած էր որ քիչ մը ատեն ծածկուի եւ ան ալ յանձն առած էր,, (234.)։ — Նոյնպէս Սեքենտորֆ կը պատմէ որ կայսրընտիրը քանի մը հոգւոյ հետ խորհուրդ ընելով՝ որոշեց որ Լուտերը քիչ մը ատեն ծածկէ. եւ երբ որ աս բանս Լուտերին իմացուց նէ, ան ալ՝ կայսրընտրին սիրտը չնեղացընելու համար՝ հաւանեցաւ, բայց միանգամայն ըսաւ որ Ես աւելի կ՚ուզէի յայտնապէս գործել։ Գիէլ Ա. Հատ. ՂՋ. Յաւել. Ա. 175։ Տես նաեւ Լեւան, Մատն Գ. Հատ Ա. Գլ. Ա. 104։

6. Մաթեսիոս, Ճառ Գ. 28։

7. Թէպէտ եւ հրովարտակին վրայ Մայիսի 8ի թուականը գրուած է, եւ Ալէյանտրն ալ (Գիէլ Գ. 36.) նոյն թուականը կը դնէ, բայց բո-

միշտ սիրով կապուած են։ Ետքը մէկիկ մէկիկ կը պատմէ թէ ինչպէս երեք տարիէ վեր Լուտեր զանազան մոլորական վարդապետութիւններով ուղիղ հաւատքը խանգարելու կը ջանայ, թէ քահանայապետը զինքն ուղղութիւն բերելու համար որչափ բաներ ըրաւ, թէ ինչպէս հերձուածապետը ամէն բան ոտքի տակ առնելով ու մոլորութիւններուն մէջ յամառած մնալով՝ դատապարտութեան տակ ինկաւ։ Բայց դատապարտուելէն ետքն ալ, կ'ըսէ, ուղղութեան նշան մը չցուցընելէն զատ՝ օրէ օր աւելի գէշնալով՝ շատոնցուընէ դատապարտուած մոլորութիւնները զանազան գրուածներով նորէն դուրս հանեց, վրան իր անձնական մոլորութիւններն ալ աւելցընելով՝ որոնք երբեք լսուած չէին։ Այնչափ յանդգնեցաւ, մինչեւ բոլոր աշխարհքիս մէջ երեւելի ու անուանի կոստանդեայ ժողովը՝ սատանայի ժողով կանչեց, եւ Սիկիսմունդ ինքնակալն ու բոլոր Գերմանիայի իշխանները՝ որոնք նոյն ժողովքն ընդունեցան, սատանաներուն առաքեալները, մարդասպան ու փարիսեցի անուանեց։ Անկէ ետեւ Կարոլոս կայսեր՝ Լուտերին ուղղութեան համար ըրածները մանրամասն կը պատմէ, եւ կը յայտնէ որ նոյն կայսրը՝ բոլոր աւագանւոյն հաւանութեամբն ու իր կայսերական իշխանութեամբը՝ զԼուտեր տէրութենէն տարագիր կ'ընէ, եւ սաստիկ սպառնալիքներով պատուէր կու տայ որ ամենեւին մէկը զինքը չընդունի ու գործքով կամ խօսքով չպաշտպանէ։ Եւ որպէս զի, կ'ըսէ, ասկէ վերջը նոյն մոլորութիւնները չտարածուին, կայսրը կը հրամայէ որ մէկը անոր գրուածները չկարդայ, մանաւանդ թէ ուր որ գտնուին նէ՝ այրուին, միանգամայն մէկը չկարենայ հաւատոյ նիւթերուն վրայ՝ առանց տեղւոյն եպիսկոպոսին հրամանին՝ գիրք մը տպել[8]։

բողոքողաց կողմը դառնալով՝ ինքը զինքը պաշտպանելու համար գրուածք մը հանեց, որուն մէջ այսպէս կը գրուցէ. ''Գանք հիմա Վորմսի վճռոյն՝ որով որ Լուտեր դատապարտուեցաւ, կ'ըսեն։ Այս վճիռը չտպուած՝ ես ամենեւին բան մը իմացած չէի։ Ուստի եւ այս վճիռը իշխաններուն հաւանութեամբը տրուած է ըսելնին՝ ինծի ամենեւին չիվերաբերիր, որովհետեւ ատոր վրայ ինծի ամենեւին բան մը չէին հաղորդած,,։ Սլէյտան, Գիրք ԺԶ. 252. Բ։ — Բայց այս խօսքին որչափ անհիմն ըլլալը Մէնցլին գրածներէն կ'երեւայ, որն որ այս Գոլոնիայի կայսրընտրին՝ բողոքողաց կողմը դառնալը յիշատակելու ատեն՝ այսպէս կը գրուցէ։ ''Դաւեւ Հերման՝ Գոլոնիայի կայսրընտիրը, . . . սկսաւ (1539ին) փորձել ցուցընել նոր եկեղեցւոյն՝ զորն որ [illegible] հալածած էր։ Իր հաւանութեամբը Գոլոնիայի մէջ Ատոլփոս Քլարենպախ ու Պետրոս Ֆլիչդէդ նորոգողները՝ իբրեւ հերետիկոս այրուած էին։ Վորմսի մէջ քահանայապետին (Լուտերին դէմ տուած) դատապարտութեան վճռոյն, ու [illegible] փոխանած էր։ Աւգսպուրկի մէջ (բողոքողաց) Դաւանութիւնը տրուած ատեն՝ անոր [illegible] էր,,։ Հաւ. Բ. Գլ. Է. 135։

8. Այս վճիռը տես ի Գործս Լուտ. գերմ. Հատ. Ա. 504. — 511. եւ առ. Ռայնալտի, Տարեգր. Հատ. Ի. 323. — 327։

Թէ որ աս հրովարտակը ինչպէս որ փութով տրուեցաւ, այնպէս ալ փութով ի գործ դրուելու ըլլար՝ կրնար յուսացուիլ որ օգուտ մ'ընէ ու խռովութիւնները դադրին. բայց գործունեայ կերպով մը աս բանին ետեւէն ինկող չեղաւ։ Անոր պատճառն ան եղաւ որ կայսրը ստիպուեցաւ շուտ մը Գերմանիայէն ելլել. իսկ իր բացակայութեան ատեն տէրութեան երեւելի գործքերը հոգալու համար դրուած կառավարութիւնը շատ տկար էր, մանաւանդ որ անոր անդամներէն ոմանք Լութերին կողմը միացած էին։ Անկից զատ՝ Լութերին գլխաւոր պաշտպանը՝ Սաքսոնիայի կայսրընտիրը, ինչպէս շատ անգամ ըսած ենք, տէրութեան մէջ մեծ իշխանութիւն ունենալով՝ անոր կողմնակիցներուն շատ զօրութիւն կու տար։ Աս ամէն բան մէկտեղ գալով՝ հրովարտակը շատ թուլութեամբ ի գործ կը դրուէր. ոմանք հրովարտակին հնազանդելու չէին համարձակեր, ոմանք ալ չէ թէ միայն չէին հնազանդեր, հապա կատարել ուզողներն ալ կ'արգելէին [9]։ Աս այսպէս ըլլալով՝ թէպէտ Լութեր Վարդպուրկի բերդին մէջ կայսեր հրովարտակը տեսաւ նէ՝ շատ բարկացաւ, բայց բանի մը տեղ չդրաւ, ու իր իշխանին եւ ուրիշ իր կողմն ըլլող ազնուականներուն պաշտպանութեան վրայ վստահանալով՝ հանգստեամբ իր գործքը յառաջ տանելու կը նայէր։

Նոյն Վարդպուրկ բերդին մէջ (զորն որ Յովհաննէս աւետարանչին աքսորուած Պատմոս կղզւոյն նմանցընելով՝ Լութեր իւր Պատմոս կ'անուանէ,) իրեն համար առանձին սենեակ մը պատրաստուած էր, ուր որ մեծ հանգստութեամբ ու ամէն կերպ դիւրութեամբ կը բնակէր. սեղանին վրայ միշտ աղէկ որսի մսեր ու ազնիւ գինիներ անպակաս էին. այնպէս որ բերդին պահապանը՝ որուն որ յանձնուած էր Լութերին հարկաւոր եղած բաները հոգալ, կը զարմանար որ բանտարկեալի մը պէս հոն բերուած մարդը ինչու այնչափ պատուով ու փառաւորութեամբ կը նայուի [10]։ Մանաւանդ որ իրեն ազատութիւն ալ տրուած էր դուրս ելլելու. ուստի եւ Լութեր ուզած ժամանակը ասպետի հագուստովը բերդէն կ'ելլէր ու մերձաւոր տեղերը կը պտըտէր, երբեմն երբեմն ալ որսի կ'երթար [11], անգամ մը նաեւ գաղտուկ Վիդդենպերկ գնաց եւ հոնտեղը քանի մը օր Ամսդորֆին տունը պահուըտած մնալով՝ իրեններուն հետ տեսնուեցաւ [12]։ Անոր համար՝ զարմանալու բան մը չէ որ

9. Բլանք, Գիրք Դ. Հատ. Բ. 2։
10. Մաթեսիոս, Ճառ Գ. 28. Բ։ Կուստաւ Փֆիցէր, Գլ. ԺԳ. 235։
11. Լութեր՝ առ Սփալադին գրած մէկ նամակին մէջ ասիկա կը պատմէ։ Ցեօ առ Ցը Վէդդէ, Հատ. Բ. 43, 44. Եւ առ Կուստ. Փֆիցէր, Գլ. ԺԴ. 249։
12. Սեքենտորֆ, Գիրք Ա. Համ. ՃԺԱ. 188։ Կուստաւ Փֆիցէր, Գլ. ԺԵ. 288։ Բլանք, Գիրք Դ. Հատ. Բ. 17. Նոթ. 25։

Լուտեր՝ իր բարեկամներուն գրած թղթերուն մէջ շատ անգամ կը յայտնէ որ մեծ դիւրութեան ու հանգստեան մէջ է, եւ բոլորովին գոհ ըլլալու համար ուրիշ բանի չէր բաղձար, բայց եթէ իր սիրելի բարեկամները, Մելանքթոն, Ամստորֆ եւ ուրիշ ասոնց նմանները քովն ունենալու [13]։

Ըս իր առանձնութեան մէջ Լուտեր զանազան գրքեր շինեց, որոնց մէջ երեւելիններն են Պատարագի անհարկաւորութեան վրայ շինածը՝ որն որ Վիդդենպերկի Օգոստինեաններուն նուիրեց, ու Կրօնաւորական ուխտերուն դէմ շինածը՝ որն որ լատիներէն լեզուաւ գրեց եւ իր հօրը նուիրեց։ Առաջին գրքին գլուխը Ամովս մարգարէին աս խօսքը դրաւ թէ "Առիւծ գոչեց, եւ ո՞վ իցէ որ ոչ սարսիցէ,, [14]. որով իբրեւ թէ կ'ուզէր իմացընել որ անանկ ձայն մը պիտ'որ հանէ ինք, որ բոլոր աշխարհք պիտի սարսեցընէ։ Եւ ստուգիւ, կ'ըսէ Ուլենպերկ [15], նոյն գրքին մէջ ամենասուրբ հաղորդութեան խորհրդին եւ սուրբ պատարագին դէմ անանկ կը մռնչէ, որ աստուածապաշտ մարդ մը առանց սարսելու ու դողալու չիկրնար կարդալ. եւ կարդալու ատեն այնպէս կը կարծէ մարդ որ ան առիւծուն ձայնը կը լսէ կոր, որուն համար Պետրոս առաքեալ կ'ըսէ թէ "Շրջի եւ խնդրէ թէ զո՛ կլանիցէ,,։ Եւ զարմանալու բան մը չէ, ինչու որ, եթէ Լուտերին պատմածին հաւատալու ըլլանք, դժոխական առիւծին խրատին համեմատ է Լուտերին աս գիրքը, որուն հետ վիճաբանելով՝ յաղթուեցաւ, ինչպէս ինք Լուտեր տասուերկու տարի վերջը մանրամասն կը պատմէ, եւ մենք ալ տեղը իր խօսքերը յառաջ կը բերենք։ Երկրորդ գրքին մէջ Լուտեր կը ջանայ ցուցընել թէ կրօնաւորական ուխտերն անվաւեր մանաւանդ թէ ոչինչ են, եւ Աստուծոյ որդւոց ազատութեան բոլորովին հակառակ [16]։ Աս գրքով Լուտեր ամէն տեսակ պղծութեանց

**13**. Թղթի մը մէջ Լուտեր Սփալատինին այսպէս կը գրէ. "ինծի այնպէս կ'երեւայ որ ես հոս մեր կայսրընտրին ծախքովը կ'ապրիմ. ասա թէ ոչ՝ եւ ոչ ժամ մը յանձն կ'առնէի հոս մնալ, եւ աս մարդուն (այս ինքն բերդին պահապանին) տակն ուտել։ Աղէկ գիտես դուն որ եթէ մէկուն ինչքը գործածել եւ սպառել պէտք է նէ, իշխաններուն ինչքը գործածելու եւ սպառելու է. ինչու որ անկարելի է որ իշխան մը կամ բոլորովին կամ գոնէ ըստ մասին յափշտակիչ ու աւազակ չըլլայ. մանաւանդ թէ որչափ որ մէկը աւելի մեծ ու երեւելի իշխան է, այնչափ ալ մեծ աւազակ է։ Աղէկ կ'ըսես թէ որ ատանց վրայ ինծի հաստատուն եւ որոշ բան մը գրես նէ,,։ Ա. Սէքէնտորֆէ, Գիրք Ա. Համ. ՃԹ. 178. Եւ առ Ցը Վէթէ, Հատ. Բ. 43։ — Յայտնի է որ Սփալատին ասանկ թղթերը կայսրընտրին չէր ցուցըներ, որն որ այնչափ հոգով ու փութով Լուտերը կը խնամէր, եւ ինք զինքը յափշտակիչ ու աւազակ կ'անուանէր։

**14**. Գործք Լուտ. լատ. Հատ. Բ. 257։

**15**. Գլ. Ը. Համ. Ա.

**16**. Գործք Լուտ. լատ. Հատ. Բ. 284. Բ։ — Աս բանիս վրայ Մենցլ այսպէս կը խօսի. "Լուտեր իրիկըրան մերժած էր Գարլըշտատին ան կարծիքը թէ ամէն եկեղեցական առանց զանազանութեան կրնայ

դուռ բացաւ, ու Գերմանիայի վանքերուն մեծ մասը պարպեց, ինչպէս որ քիչ մը ետքը [17] կը տեսնենք։ Նոյն առանձնութեան մէջ սկսաւ Լուտեր նաեւ աստուածաշունչը գերմաներէն թարգմանել [18]։

կորզուիլ. ինք կրօնաւորներն ալ ազատութենէն դուրս հանած էր, եւ իրենց ուխտերը պարտաւորիչ կը սեպէր, միայն անոր համար՝ որ իրենք իրենց կամքովը նոյն ուխտերը ըրած են։ Բայց անմիջապէս վերջը ուրիշ տեսակ սկսաւ խօսիլ, երբ որ միտքը եկաւ թէ ուխտին վախճանն ան է որ քրիստոնէական կատարելութեան բարձրագոյն աստիճանի մը ու երանութեան վերին գահի մը հասցընէ, ան որ իր՝ միայն հաւատքին տուած զօրութեան, ու գործքերուն անօգուտ ըլլալուն վրայ ունեցած կարծիքին յայտնապէս հակառակ է։ Ուստի եւ շուտ մը բոլոր կրօնաւորական ուխտերը մերժելի մանաւանդ թէ պարշելի երեւցան իր աչքին։ Աս նիւթին վրայ գրած գրքի մը մէջ ըսաւ որ ըսա ամենայնի նոյն է Աստուծոյ ըսելը՝ Տէր Աստուած կ'ուխտեմ քեզի որ բոլոր կեանքիս մէջ քեզի դէմ հայհոյեմ, եւ ըսելը որ Քեզի կ'ուխտեմ որ բոլոր կեանքիս մէջ աղքատութիւն կամ ողջախոհութիւն պահեմ; ան յուսով որ անով երանութեան հասնուի,,։ — Հոփ. Ա. Գրլ. Գ. 132։

17. Տես Բ. Գրքին Բ. Գլուխը։

18. Շատ բողոքող հեղինակներ մեծամեծ գովութիւններ կու տան Լուտերին՝ աստուածաշունչը գերմաներէն թարգմանելուն համար։ Ստոյգ է Լուտեր աս թարգմանութեամբ գերմաներէն լեզուին պայծառութեան մեծ օգուտ ըրած, մանաւանդ թէ նոյն լեզուն՝ ռամկականութենէ վերցընելով՝ գրաւոր լեզուներու կարգ խոթած է։ Բայց բողոքողք առով գոհ չըլլալով՝ կ'ուզեն աս գործքը կրօնական կողմանէ ալ շատ երեւելի բանի մը պէս ցուցընել։ Կ'ըսեն թէ Լուտերէն յառաջ աստուածաշունչը բոլորովին մէկդի ձգուած էր, միայն հին լեզուներով գրուած էր, ու նոր լեզուներու ամենուն չէր թարգմանուած։ Նոյն իսկ Լուտեր վեր վար աս բանիս վրայ կը պարծի ու կ'ըսէ որ աստուածաշունչը գրուածին տակէն ես հանեցի։ — Բայց պատմութիւնը բոլորովին տար հակառակը կը սորվեցընէ եւ կը ցուցընէ որ տպագրութեան արուեստին գտնուելէն մինչեւ Լուտերին թարգմանութեան ատենը, որ ութսուն տարուան չափ միջոց է, զանազան նոր լեզուներով աստուածաշնչի թարգմանութիւններ տպուած էին։ Ասոր վրայ Ուայզմէն Անգղիացի երեւելի վարդապետը այսպէս կը գրէ. "Մինչեւ հիմա աստուածաշնչի թարգմանութիւն մը կը գտնուի, որուն մէջ ո՛չ տպուած տարին եւ ո՛չ տեղը գրուած է. աս թարգմանութիւնը պէտք է որ շատ հին ըլլայ, որովհետեւ ինչպէս յայտնի է՝ պինտ յառաջ տպուած գրքերուն մէջ՝ ո՛չ տարին եւ ո՛չ տեղը կը դնէին։ Երկրորդ՝ Ֆուստին ձեռօքը աստուածաշնչի ուղղափառ թարգմանութիւն մը տպուած էր, 1472ին, Լուտերին թարգմանութենէն գրեթէ վաթսուն տարի յառաջ. ուրիշ թարգմանութիւն մ'ալ արդէն 1467ին տպուած էր. ասոնցմէ զատ՝ չորրորդ ու հինգերորդ թարգմանութիւն մը կայ 1472ին եւ 1493ին տպուած։ Նիւրէնպէրկ 1477ին տպուած թարգմանութիւն մը՝ Լուտերին թարգմանութիւնը դուրս չելած՝ ինն անգամ նորէն փոխուած էր։ Նոյն տարին ուրիշ թարգմանութիւն մ'ալ Աւկսպուրկ տպուեցաւ, որն որ ութը անգամ ալ նորէն փոխուած էր, երբ որ Լուտերին թարգմանութեան եւ ոչ խօսքը կար,,։ Աս ամէն թարգմանութիւնները գերմաներէն էին։ Նոյն վարդապետը ուրիշ շատ գերմաներէն թարգմանութիւններ ալ կը յիշէ, որոնց վրայ չենք ուզեր մէկիկ մէկիկ խօսիլ, որ չըլլայ թէ կարդացողները ձանձրացընենք։ Ետքը ուրիշ շատ լեզուներու թարգմանութիւններու վրայ ալ կը խօսի, որոնք Լուտերի թարգմանութեան դուրս ելլելէն շատ յառաջ տպուած էին. Թարգմանութիւն մը Սպանիացւոց լեզուաւ, որն որ 1478ին տպուած էր. վեց Իտալերէն թարգմանութիւն, որոնցմէ մէկը մինչեւ 1500՝ տասնուեօթը անգամ նորէն տպուած էր. չորս Գաղղիերէն թարգմանութիւն, որոնք

Այս միջոցներուն՝ Լուտերին մոլորութիւններուն դէմ Գերմանիայէն դուրս նոր ախոյեաններ ելած էին։ Մինչեւ հիմա տեսանք որ Լուտեր մէկ քանի տարիներու մէջ իր դատն ու իր վարդապետութիւններուն քննութիւնը Փարիզի համալսարանին դատաստանին տակը ձգած էր, յուսալով որ նոյն համալսարանը իր կողմը կը բռնէ։ Բայց իր ակնկալութեան բոլորովին հակառակն եղաւ. ինչու որ համալսարանին աստուածաբանները իր վարդապետութիւնները՝ իբրեւ մոլորական, գայթակղեցուցիչ ու հերետիկոսական՝ դատապարտեցին 19։ Դարձեալ Հենրիկոս Ը. Անգղիայի թագաւորը նոյն ատենները Լուտերի վարդապետութիւններուն դէմ գիրք մը հրատարակեց։ Աս թագաւորը իսկզբան շատ ջանաց որ Լուտերի մոլորութիւնները իր տէրութեան մէջ չմտնեն. եւ որովհետեւ երիտասարդութեան ժամանակը աստուածաբանութիւն սորված էր, անոր համար ուզեց նոյն մոլորութեանց դէմ գրել։ Իր բաղձանքին միայն մէկ արգելք կար, այս ինքն թէ քահանայապետը Լուտերը դատապարտելու ատեն՝ անոր գրքերը կարդալն արգելած էր, եւ ինք ան գրքերը չկարդացած՝ չէր կրնար անոնց դէմ գրել. ուստի քահանայապետէն հրաման խնդրեց որ Լուտերին դէմ գրել ուզողները՝ անոր գրքերը կարենան կարդալ։ Եւ հրաման առածին պէս՝ եկեղեցւոյ խորհուրդներուն վրայ գիրք մը գրեց, որուն մէջ Լուտերին դէմ կը ցուցընէ որ աս խորհուրդները եօթը հատ են, եւ ուրիշ բաներէն զատ՝ Հռոմայ քահանայապետին գլխաւորութեան վրայ աղէկ կը խօսի։ Աս գիրքը թագաւորը քահանայապետին նուիրեց, որն որ շատ ուրախութեամբ ընդունեցաւ, թագաւորը կարդինալներուն ժողովքին մէջ գովեց, եւ անոնց հաւանութեամբը առանձին կոնդակով մը հրա-

մինչեւ 1512 տպուած էին, եւ այլն, եւ այլն։ Եւ խօսքը այսպէս կը վերջացընէ. "Իսկ թէ որ Ս. Գիրքը ան ատենները հիմակուան պէս շատ տարածուած չէր նէ, պատճառը՝ տպարաններուն ու կարդալ գիտցողներուն քիչութիւնն էր"։ Անոր կը վկայեն քանի մը բողոքող մատենագիրներ ալ, որոնցմէ մինակ մէկուն վկայութիւնը բաւական կը սեպենք. "Իրմէ (Լուտերէն) յառաջ, կ'ըսէ Մենցլ (Հատ. Ա. Գլ. Գ. 134.) աստուածաշունչը վուլկադային վրայէն շատ անգամ գերմաներէն թարգմանուած ու տպուած էր. բայց կ'երեւայ որ շատ տարածուած չէր"։ — Ուայզմէնի պէս երեւելի ու գիտուն մարդու մը խօսքը, որն որ հաստատուն գործքեր յառաջ կը բերէ, եւ Մենցլին վկայութիւնը բաւական են ցուցընելու որ աստուածաշունչը Լուտերին եւ իր աշակերտներուն ըսածին պէս՝ այնչափ անծանօթ բան չէր։ — Բայց թէ որչափ Լուտեր իր գերմաներէն թարգմանութեամբը կրօնին օգուտ ըրած է՝ թէ վնաս, ան ալ Բ. Գրքին Ա. Գլխոյն մէջ ընթերցողներնիս աղէկ ու բացայայտ կը տեսնուի։

19. Համալսարանին վարդապետները աս վճիռը տուած են 1521ին, Ապրիլ 15ին։ Լատիներէն օրինակները տես ի Գործս Լուտ. լատ. Հատ. Բ. 194. Բ. — 201. Բ. իսկ գերմաներէնը՝ որն որ Լուտեր անձամբ թարգմանած է, ի գերմ. Գործոցը մէջ, Հատ. Ա. 572. Բ. — 581.

ման տուաւ որ թէ ինք եւ թէ յաջորդները՝ իրենց ուրիշ տիտղոսներուն վրայ կարենան Պաշտպան Հաւատոյ տիտղոսն աւելցընել:

Երբ որ Լուտեր իր առանձնութեան մէջ աս բաները իմացաւ նէ՝ շատ պղպղեցաւ, եւ անկէ ետքը ալ միայն իր կատաղութեան ետեւէն երթալով՝ բոլոր իր բարկութիւնը աս նոր հակառակորդներուն վրայ թափեց: Եւ թէպէտ Մելանքթոն ջանացած էր իր վարդապետը պաշտպանել, ուստի եւ Փարիզի համալսարանին դէմ գրուածք մը դուրս հանած էր, որն որ ջատագոված մարդուն ու վարդապետութիւններուն արժանի էր[20]. բայց Լուտեր աշակերտին գրուածքովը գոհ չըլլալով՝ ինք անձամբ ալ համառօտ բան մը գրեց Փարիզի համալսարանին աստուածաբաններուն դէմ, որն որ ամէն կարելի հենգնութեան, նախատանաց ու թշնամանաց խօսքերով լեցուն է[21]: Նոյնպէս Անգղիայի թագաւորին դէմ գրած գրքին մէջ՝ անանկ մեծ թագաւորէ մը ամենեւին ակնածութիւն չըրաւ, հապա բոլորովին նախատական ու ամօթալի խօսքերով լեցուց: Եւ զարմանք ալ չէ, ինչու որ գրքին սկիզբը կ'ըսէ թէ երբ որ Աւետարանին ճշմարտութիւնը պաշտպանել հարկ կ'ըլլայ, պէտք չէ ամենեւին ակնառութիւն ընել, հապա թագաւորի մը հետ այնպէս խօսելու է, ինչպէս որ հասարակ մարդու մը հետ կը խօսուի: Ուստի եւ բոլոր գրքին մէջ աս սկզբան հետեւելով՝ անանկ խօսքեր կը գրէ եւ այնպիսի կերպով կը խօսի, մինչեւ նոյն իսկ իր բարեկամներն ու պաշտպանները սկսան իրեն դէմ տրտնջել եւ խրատ տալ որ բերնին քիչ մը չափ դնէ[22]:

20. Գործք Լուտ. լատ. Հատ. Բ. 202. — 207:

21. Լուտեր աս գրուածքին մէջ Փարիզի համալսարանին եւ մէջի աստուածաբաններուն տուած զանազան ուրիշ նախատական եւ աղտեղի անուններէն, եւ խօսած անամօթ ու պիղծ խօսքերէն զատ՝ որոնք որ կ'ամըչնանք դնելու, աս ալ կը զրուցէ որ նոյն համալսարանը "ամէն մոլորութեանց մայրն է": Գործ. Լուտ. գերմ. Հատ. Ա. 581. Բ: Աս խօսքը համեմատէ Լուտերին ուրիշ անգամ մը նոյն համալսարանին վրայ ըրած դատաստանին հետ. Իբ. 42:

22. Սեքենտորֆ, Գիրք Ա. Համ. ՃԺԴ. 187: Կուստաւ Փիցեր, Գլ. ԺԸ. 370: — Լուտերին բարեկամներէն ոմանք իրեն խրատ կու տային որ քրիստոնէական սիրոյն աւելի տեղ դնէ ու բերանը քիչ մը բանէ, եւ գոնէ իշխաններու վրայ խօսած ատեն՝ այնչափ նախատական խօսքեր չգործածէ: Անոնցմէ մէկը սաստիկ խրատներ գրելէն ետեւ՝ կը հարցընէր իրեն թէ Անգղիայի թագաւորը ինչո՞ւ այնպէս սաստիկ ու խստութեամբ նախատեցիր: Անոր պատասխան տուած ատեն՝ Լուտեր կ'ըսէ թէ Զըլլայ որ կարծես թէ առանց միտ դնելու կամ փոփոխելով Տէրոջս համար՝ ան կերպով գրեցի. չէ, մտածելով ու խորհրդով դրած եմ. եւ չըլլայ որ մէկը յուսայ որ Հակառակորդներուս հետ ասկէ ետեւ աւելի անուշութեամբ վարուիմ: Մեր կայսրերնուն (?) եւ ուրիշները ինծի խրատ տուին որ նախատական խօսքերը չափաւորեմ. բայց ես քաջութեամբ ու հաստատութեամբ դէմ կեցայ. ինչու որ պաշտպանած բաներս չեն ներեր ինծի որ [illegible] [illegible] կամ [illegible] [illegible] [illegible] խոնարհեցընեմ: Մինչեւ հիմա

Լուտերին աս գրքէն՝ օրինակի համար մէկ երկու հատուած կը դնենք։ "Երկու տարի յառաջ, կ'ըսէ, Բաբելոնական գերութիւն անուամբ լատիներէն գիրք մը հանեցի, որն որ պախենթ եմ եղեր որ այնպէս վարուեր եմ։ Ար. Ռոլինսընէլ, Գլ. Թ. Հատ. Գ. Եւ տր. Կոտոփ. Փէյիրէ, Գլ. ԺԲ. 374։ — Բայց թէպէտ նոյն տառնները իր աշակերտներէն ոմանք աս իրենց վարդապետին գրած նախատասական կերպը եւ իրեն բարկութիւնը չէին հաւնէր. սակայն քիչ մը եաքը տասնկ խօսքերը չէ թէ միայն չէին պարսաւեր, հապա մինչեւ Հոգւոյն սրբոյ ազդեցութեամբ գրուած կը սեպէին։ "Քիչ մը ժամանակ այնպէս կը կարծէի, կ'ըսէ Փամեր՝ Լուտերին երեւելի աշակերտներէն ու մեծ բարեկամներէն մէկը, որ Լուտեր մեր հայրը՝ Անգղիայի թագաւորին հետ չափէն աւելի սաստկութեամբ վարուած ըլլայ։ Բայց հիմա կը տեսնեմ որ սխալեր եմ, մանաւանդ թէ չափէն աւելի անուշութեամբ վարուեր է եղեր. իր բոլոր խօսքերը՝ երկնաւոր հոգի մը իրեն չնչած է, որբութեան, ճշմարտութեան ու հաստատութեան հոգին,,։ Սեքենտորֆ (Գիրք Ա. Հատ. ՃԺԵ. 188.) Փամերին աս խօսքը իբրեւ Լուտերի շնորհագրութեան վկայութիւն կը բերէ։

Հաստեղս պատշաճ կը սեպենք նոյն եւս Լուտերին գրուածոցը մէջէն խօսք մը բերել, որմէ ընթերցողները յայտնապէս կը տեսնեն թէ իր հակառակորդներուն հետ ինչպիսի հոգւոյ ազդեցութեամբ կը վարուէր եղեր, եւ իր պաշտպաններն ու վախճանն ինչ է եղեր։ "Մարդիկ կան, կը գրէ Լուտեր, որոնք կ'ըսեն թէ անուանն ու պատիւը՝ միայն Աստուծոյ կը վայլէ... եւ թէ ամէն ըրածներնուն մէջ միայն Աստուծոյ փառքը կը փնտռեն, ու դրեթէ երդում ալ կ'ընեն որ իրենց անձնական փառքը չեն փնտռեր...։ Բայց իրենց պաղլյն ու գործոցը մտա դիր, եւ կը տեսնես որ եթէ ձեռք զարկած բաներնին չյաջողիր նէ, կը սկսին տառտրիկ տրտնջել... այնպէս որ հետեւանքին մէկը չկրնար խօսիլ։ Կ'ըսեն թէ զերենք արդելողները դէշ կ'ընեն, եւ աս իրենց եղած նախատինքը՝ չեն կրնար մոռնալ, եւ տրտնջին որ Աստուծոյ փառքը չ'որքինլայ եւ իրենց ուզած ու փնտռած բարւոյն դէմ կը դրուի...։ Ասով կը տեսնուի թէ իրենց փնտռածն ինչ էր. կ'իմացուի թէ ասոր համար չէին ճարշանար որ ճարքին ու Աստուծոյ փառքը կը խափանուի, հապա անոր համար՝ որ իրենց փառքին ու դատաստանը յառաջ չ'երթար. իբրեւ թէ կարելի չըլլար որ իրենց կարծիքը դէշ ըլլայ. եւ այնպէս աղէկ ըլլար՝ որ եւ ոչ Աստուած կարենար մերժել։ Աստն շի ինչ որ ան ճարքին իրենց անձնական չհամարիին նէ, հնդայն համբերել որ ուրիշները իրենց փառքին արգելին։ Սակայն խարին բարձրամտութիւնը չ'ուզեր դէշին ու յիմարի տեղ դրուիլ. անոր համար պէտք է որ ուրիշները դէշ ու յիմար ըլլան։... Թէ որ... մէկը իրենց պատրոյն դէմ խօսի, զիրենք մեծ բանի տեղ չդնէ, իրենցմէ բան մ'ուանէ, կամ իրենց ինչ եւ իցէ հակառակ բան մը պատահելու ըլլայ նէ, մ'ալ ան ժամանակը արուեստը շուտ մը կը մոռցուի, ու փոխ տուեալը՝ իր պտուղը կը բերէ, այսինքն փառք ու տառապանք։ Ան ատեն իշխան սկսնողները տաքցնելն մորթին տակէն երեւնալու կը սկսին. կը սկսին կանչել. Տէր Աստուած, նայէ երկինքէն, աս ինչ մեծ անիրաւութիւն է որ ինծի կ'ըլլայ։ Եւ ան տառապանքի մեծ յիմարութեան մէջ կ'իյնան, մինչեւ կ'ըսեն թէ Աստուծոյ համար իրենց անիրաւութիւն կ'ըլլայ։ Ո՞ւր է ձեր մեծ խոնարհութիւնը որ կ'ըսէիք թէ Ամէն բան Աստուծոյ ու Աստուծմէ է։ Ո՛վ ողորմելի մարդ. թէ որ միայն Աստուծոյ է նէ, ինչո՞ւ համար պիտի չկրնայ առանց արգելքի քեզմէ առնել, ուրիշին տալ եւ ուզածին անգին նետել։ Թէ որ իրենն է նէ, պէտք է որ դուն հանդարտ կենաս ու թողուս որ ինք ուզածին պէս գործէ. ինչու որ իրեն բանն առնելու ըլլայ նէ, քեզի անիրաւութիւն եղած չ'ըլլար,,։ Մեկնութիւն Հայր մերի, Ա. Հայցուածք. Գործք Լուտ. Լեյբ. Հատ. Ա. 73. Բ. 74։ — Կարծես թէ Լուտեր աս խօսքով իրեն անձին ստորագրութիւնը կ'ընէ եւ իր բռնած ճամբուն

պակասները անմնացուցց...: Եւ թէպէտ ես լոյսը չեմ առեր, ի վերայ այսր ամենայնի նոյն գրքին գերմաններէն թարգմանութեան չհանդիպայ, աս պատճառաւ որ իմ ամենէն սաստիկ թշնամիս թարգմանեց՝ զիս նախատելու համար...: Վերջապէս Հենրիկոս՝ Աստուծոյ բարկութեամբը՝ Անգղիացւոց թագաւորը լատիններէն լեզուաւ սոր դէմ գրուածք մը հանեց։... Կը զրուցուի որ Անգղիայի թագաւորին աս գրուածքին վարձք ըլլալու համար՝ Հռոմէն իրեն տիտղոս տուած ըլլան որ Պաշտպան եկեղեցւոյ անուանուի։... Իսկ ես Աստուծոյ կ'աղաչեմ որ զիս ան եկեղեցւոյն անդամ չընէ՝ որուն պաշտպանն է Անգղիայի թագաւորը։ Որովհետեւ երբ որ ես Վիդգենպերկ եմ ու ինք՝ Անգղիա, կամ երբ որ կը քնանայ եւ կամ ուրիշ գործքի մէջ է, իմ հոգիս ինչ կ'ըլլայ։... Շատերը այնպէս կը կարծեն որ նոյն գիրքը Հենրիկոս թագաւորը գրած չէ։ Սակայն իմ հոգս չէ. կ'ուզէ Հենրիկոս թագաւորը, կ'ուզէ Կոնրատոս թագաւորը գրած ըլլայ, սատանան կամ դժոխքը շինած ըլլայ, ամէնն ալ նոյն է։ Ով որ սուտ կը խօսի՝ սուտզրուց է, եւ ես անոր համար իսկ չեմ վախնար։... Թէ որ ես թագաւորի մը ինծի դէմ գրելէն վախնալու ըլլայի նէ, աւելի եւս պէտք էր որ վախնայի պապի մը ինծի դէմ գրելէն։... Բայց ես իմ վարդապետութիւնս Աստուծոյ շնորհօքը չէ թէ միայն երկինքէն ընդունեցայ, հապա անանկ մէկէ մը՝ որն որ իր պզտիկ մատովը հազար պապէ, թագաւորէ, իշխանէ ու վարդապետէ աւելի կարող է գործել[23]։ Անոր համար ալ պէտք է որ իմ վարդապետութիւնս յաւիտեան հաստատուն կենայ, եւ ես կ'ուզեմ Աստուծոյ անուանը իրենց ամենուն ալ դէմ դնել[24]։...

“...Թէ որ Անգղիայի թագաւոր մը կրնայ անամօթութեամբ իր ստութիւնները դուրս ժայթքել, ես ալ կրնամ զանոնք իր վիզը փաթթել։ Եւ որովհետեւ ինք իմ բոլոր քրիստոնէական վարդապետութիւններս կը հայհոյէ, եւ (թողութիւն ընեն ընթերցողները՝ Լուտերին անամօթ ու ամպարիշտ խօսքերուն համար) իր աղբը իմ փառաց թագաւորիս, այս ինքն Քրիստոսի, թագին վրայ կը քսէ, որուն վարդապետութիւնն ունիմ ես, չզարմանայ որ ես ալ աղբը իմ թագաւորիս թագէն առնելով՝ անով իր պսակն օծեմ, ու բոլոր աշխարհքին առջեւ

դատապարտութեան վճիռը կու տայ։ Երանի թէ մտադրութեամբ կարդային Լուտերին այս խօսքը անոնք՝ որոնք որ կ'ըսեն թէ Լուտերին պաշտպանած բանը իր բանը ըլլալով՝ հապա Աստուծոյ, չէր կրնար թողուլ որ հակառակորդները իրեն դէմ դնեն եւ Աստուծոյ գործքն արգելլեն, եւ գրածները՝ աստուածային նախախնամութեանը կը դրեր։

23. Տես առ Գրքին Ը. Գլխոյն 21. Ծանօթ։

24. Գործք Լուտ. գերմ. Հատ. Բ. 132. Բ. 133. Բ։

ըսեմ որ Անգղիայի Թագաւորը տուաղոյց է։... Զիս կը յանդիմանէ որ ատելութենէն ու նախանձէն դրդուելով՝ պապին դէմ գրած ըլլամ։... Բայց ասիկա ի՞նչ վերաբերութիւն ունի...։ Պաշտպանութիւնն անոր համար աղէկ կ'ըլլայ, վասն զի ես դէշ եմ եւ անոր դէմ կը դնեմ։ Թէ որ այնպէս ըլլար նէ՝ ան ատեն պէտք էր որ Անգղիայի Թագաւորին իմաստուն մարդ մ'ըլլար, որովհետեւ ես զինքը խենթի տեղ կը դնեմ։ Եւ թէ որ աշխարհք ուզելու ըլլար նէ՝ զատատանան կրնար սուրբ ըսել, միայն թէ զինքը շատ ատէր ու դէմ ելլէր։ Ասոր հակառակ թէ որ բանն անով աղէկ եւ օրինաւոր կ'ըլլայ՝ որ պապը գովուի, ան ժամանակը Աստուծոյ օգնականութեան կարօտութիւն չունի, հապա բաւական է որ Անգղիայի Թագաւորը զինքը գովէ եւ իրեն պաշտպանն ըլլայ[25]։...

"Բայց ես Հենրիկոս Թագաւորին այսպէս վարուելուն չեմ զարմանար, որով կը ցուցընէ թէ հաւատոյ ու բարեգործութեան ինչ ըլլալուն վրայ՝ հաստ կոճղէ մը քիչ ծանօթութիւն ունի, որն որ գոնէ բնութեամբ զԱստուած կը զգայ. որովհետեւ պէտք է որ Հենրիկոս Թագաւորն ալ ան տուականին հաստատուն ու ճշմարիտ ըլլալը ցուցընէ, որն որ կ'ըսէ թէ "Թագաւորներէն եւ իշխաններէն աւելի մեծ խենթ չկայ„։ Հապա սատանային վրայ կը զարմանամ որ իր Հենրիկոսին ձեռքովը ինծի դէմ այսպէս կը ճամարտակէ, ուր որ գիտէ թէ ասիկա իմ առջեւս բան չէ։ Զինքը կուրցընողն ու յիմարցընողը՝ Աստուծոյ գործքն է, որպէս զի իմ ձեռքովս ինք եւ իր յիմարութիւնը դուրս ելլէ։... Պէտք է որ հիմա այսչափով գոհ ըլլամ, ու զինքը թողում. ինչու որ աստուածաշնչին գերմաններէն թարգմանութիւնը եւ ուրիշ գործքերը զիս կը ստիպեն, ուստի եւ չեմ կրնար աւելի երկայն ատեն Հենրիկոսին աղբին մէջ խառնուիլ։ Բայց թէ որ Աստուած կ'ուզէ նէ՝ ժամանակ մը կը գտնեմ, ու Հենրիկոս հայհոյիչ Թագաւորին ստախօս բերանը կը գոցեմ եւ կատարեալ պատասխան կու տամ։... Ես այնպէս կը կարծեմ որ ինք աս գիրքը անոր համար գրած է, որպէս զի խղճմտանքը հանդարտեցընէ։ Վասն զի գիտէ թէ ինչ խղճով Անգղիայի Թագաւորութիւնը ստացած է, Թագաւորական ցեղը սպաննելէն ու Թագաւորական արիւնը ջնջելէն ետեւ։ Իր կեանքին համար կը վախնայ, որ չըլլայ թէ արեան վրէժն իրմէ խնդրուի։ Անոր համար կ'ուզէ պապին հետ միանալ ու զինքը շողոքորթել, որպէս զի հաստատուն մնայ։ Յառաջ աս կերպով կայսեր հետ կապուած էր, հիմա ալ Գաղղիայի Թագաւորին հետ. ինչպէս որ բռնաւորներուն ու դէշ խիղճ ունեցող-

25. Նոյն տեղը, 135. Բ. 136. Բ։

ներուն ազատութիւնն է․ Շատ աղէկ կը յարմարին իրարու պապն ու Անգղիացի Հենրիկոսը․ ինչու որ առջինն ալ նոյնպէս աղէկ խղճով տուած է իր պապութիւնը, ինչպէս որ Հենրիկոս՝ իր թագաւորութիւնը։ Անոր համար իրար կը քորեն, ինչպէս որ ջորիները միմեանց կը քորեն։

‘‘Կուզէ մէկը զիս յանդիմանել որ թագաւորական փառաւորութեան հետ այսչափ անխնայ վարուեցայ ու շատ խստութեամբ գացի․ բայց գիտնայ որ ասոր համար եղի, որովհետեւ բանն ինք (թագաւորն) ալ իր անձին չխնայեց։ Այնպէս յայտնի եւ կամօք սուտ կը զրուցէ, ինչպէս որինակները․ այնպէս սաստիկ, դաժան, թունաւոր կերպով կը վարուի, որ հրապարակական բարեկամութեան բան մը չէկրնար ընել․ այնպէս որ յայտնի կը տեսնուի թէ երանելներուն մէջ թագաւորական արիւն չկայ։ . . . Իսկ դուք, պաշտպանիչք, ինչ ըլլաք ըլլաք՝ ազատնիդ չէք կըրնար զլուխ տանիլ։ Պէտք է որ պապը, եպիսկոպոսք, քահանայք, կրօնաւորք, իշխանք, սատանան, մահը, մեղքը, եւ ինչ որ Քրիստոս եւ ի Քրիստոս չէ, տեղի տան եւ յաղթութիւն տան Աւետարանէն՝ զոր որ ես Մարտինոս Լութեր քարոզեցի,,[26]։ — Մասունքն Աւագերէցոյ եւ Նորոգչի արժանի գրուածք։

26․ Դարձեալ նոյն տեղը, 147, 148։



# Գ Ի Ր Ք Ը

## ԼՈՒՏԵՐԻ ՎԱՐԴՊՈՒՐԿԷՆ ԵԼԼԵԼԷՆ

### Մ Ի Ն Չ Ե Ւ

## ԱՒԿՍՊՈՒՐԿԻ ԱՒԱԳԱԺՈՂՈՎԸ.

## 1522 — 1530

# Գ Ի Ր Ք Բ

## ԼՈՒՏԵՐԻ ՎԱՐԴՊՈՒՐԿԷՆ ԵԼԼԵԼԷՆ ՄԻՆՉԵՒ ԱՒԿՍՊՈՒՐԿԻ ԱՒԱԳԱԺՈՂՈՎԸ



## Գ Լ Ո Ւ Խ Ա

### Լուտեր Վիդդենպերկ կը դառնայ

Գարլշդատ: Լուտերի հեռաւորութեան ատեն Վիդդենպերկի մէջ պատահածները: Լուտեր՝ կայսրընտրին կամացը դէմ Վարդպուրկէն կ'ելլէ: Ճամբան ու Վիդդենպերկ հասնելէն ետեւ՝ կայսրընտրին նամակ կը գրէ: Գարլշդատին եւ անոր կողմնակիցներուն դէմ քարոզներ կու տայ: Գարլշդատը կը հալածէ: Նոր կտակարանին գերմաներէն թարգմանութիւնը դուրս կու տայ: Անգլիոյ թագաւորը Սաքսոնիոյ իշխաններուն խրատ կու տայ որ Լուտերին դէմ դնեն: Լուտեր եկեղեցական կարգին դէմ կատաղի գրուածք մը կը հանէ:

## 1521 — 1522

Մ՚ԻՆՉԵՒ հիմա Լուտերը միշտ իբրեւ առանձնական մարդ տեսանք. ո՛չ ուրիշները եւ ո՛չ ալ ինք՝ գոնէ դրսանց՝ մինչեւ Վարդպուրկէն ետ դառնալը իրեն հրապարակական անձի նկարագիր չէին տար. հապա ամէն գործածները ու գրածները՝ իբրեւ միայն իր կողմանէ եւ միայն իր անուամբն եղած կամ գրուած բան կը սեպուէր: Բայց Վարդպուրկէն ելլելուն պէս՝ ալ զինքը իբրեւ Նոր աղանդի գլուխ կը տեսնենք, մանաւանդ թէ նոյն իսկ Վարդպուրկէն՝ իբրեւ աղանդի գլուխ դուրս կ'ելլէ. եւ անկէ ետեւ իր ըրածները՝ առանձնական մարդու մը պէս չ'ըներ, հապա իբրեւ կողմնակցութեան մը գլուխ, եւ ուրիշներն ալ զինքը իբրեւ իրենց առաջնորդն ու գլուխը կը նկատեն: Լուտեր՝ մինչեւ նոյն ատեն յարգած եւ դեռ աւրելու չյանդգնած կարգերն ու սովորութիւնները՝ աս իր առաջնորդութեան աստիճանաւը կը կործանէ, եւ նորանոր կարգադրութիւններ կ'ընէ, որոնց իր կողմնակիցները յարգութեամբ կը հպատակին. աս իր աստիճանին զօրութեամբը զանազան հրամաններ կու տայ ու վճիռներ կը հանէ, եւ կը պահանջէ որ ամէն մարդ կուրօրէն անոնց հնազանդի, եւ դէմ դնողները պատժոյ տակ կը ձգէ: — Բայց աս բաները մեր ընթերցողներուն առջեւը չդրած՝ հարկ է որ իր առանձնութենէն ելլելուն պատճառ ըլլող դէպքերը պատմենք:

Լուտերին Վարդապետի եղած ատենը՝ Միջնադարի շատ շփոթութիւններ ու խռովութիւններ պատահած, եւ կրօնի վերաբերեալ նիւթերու մէջ շատ փոփոխութիւններ եղած էին։ Այս խռովութիւններուն պատճառ եղողը՝ գլխաւորապէս Գարլշդատն էր։ Այս մարդը Լուտերէն աւարեւոր, մանաւանդ թէ անոր վարդապետութեան խոյրը առած ըլլալով՝ սկսաւ անոր գտած պատուոյն եւ հասած իշխանութեան վրայ նախանձիլ. եւ թէպէտ Լուտերին մոլորութեանց կը հետեւէր, բայց չէր ուզեր որ անոր աշակերտն երեւայ ու հնազանդի։ Լուտերին լուծը ծանր կու գար իրեն փառասիրութեանը, անոր համար ուզեց նոյն լուծը վրայէն նետել [1]։ Այս բանը յաջողութեամբ գլուխ տանելու համար ամենէն յարմար ժամանակն Լուտեր իրեն առվեցուցած էր, եւ Գարլշդատին ուրիշ բան չէր մնար, բայց եթէ ճշդիւ անոր ընթացքին հետեւիլ, որն որ ըրաւ ալ։ Տեսնելով որ անիկա քահանայապետին եւ եպիսկոպոսաց տասնահինգ դարէ վեր հաստատուած օրինաւոր իշխանութեան դէմ ելլելու յանդգնած էր, գիտցաւ անկից հետեւցնել որ ինքն ալ Լուտերին քանի մը ամիսէ վեր յափշտակած իշխանութեան դէմ կրնայ ելլել։ Շատ անգամ Լուտերին բերնէն լսած եւ անոր գրուածքներուն մէջ կարդացած ըլլալով որ կրօնի վերա-

1. «Գրեթէ ընդհանրապէս ընդունուած նախապաշարում մըն է, կ'ըսէ Բլանք, թէ Լուտերին գտած պատուոյն ու հասած իշխանութեանը վրայ ունեցած նախանձն էր, որն որ աս փառասէր մարդը (զԳարլշդատ) կը դրդէր որ . . . ինքը զինքը երեւելի ընելու ջանայ, որպէս զի անով կամաց կամաց անոր (Լուտերին) անունը մոռցընել տայ, կամ գոնէ անոր համբաւը մթընցընէ։ (Աս նախապաշարման ունեցողները) որպէս զի բոլորովին անկողմնակալ երեւան, ասոր ալ կը զրուցեն որ Գարլշդատին ըրածներուն դէմ Լուտերին ունեցած դժկամակութիւնն ալ նոյն պատճառէն (նախանձէն) կը ծագէր. եւ ասով կը ջանան մեկնել թէ ինչու համար Լուտեր իր յառաջնուան բարեկամին հետ այնպէս սաստիկ դառնութեամբ կը վարուէր»։ Գիզէ Գ. Հատ. Բ. 37։ Աս ընդհանուր կարծիքը յառաջ բերելէն ետեւ՝ նոյն մատենագիրը կը զրուցէ թէ «Արշաւ որ ստոյգ է թէ եսքը աս երկու հոգւոց պատուասիրութիւնը իրենց միջերուն մէջ մասն ունեցաւ, նոյնչափ ալ ստոյգ է (*) որ եսկըրան ու խռովութիւններն ելլելու ատեն՝ նոյն վախճանը կամ նպատակը չունէին»։ Բայց Բլանք ինչ որ ըսէ նէ ըսէ, Գարլշդատին աս բաներուն ձեռք զարնելուն պատճառը՝ Լուտերին վրայ ունեցած նախանձն ու իր պատուասիրութիւնն էր։ Մելանքթոն կը պատմէ որ Գարլշդատ ըսած ըլլայ թէ «Ես ալ կը բաղձամ որ մեծ ըլլամ եւ մեծ սեպուիմ, ու Լուտերէն վար չմնամ»։ Եւ վրան կ'աւելցընէ որ «Անիկա փառասիրութեան, նախանձու եւ հպարտութեան ձայնին էր»։ Ա՛ս Ռէֆեր, Գերմ Ա. Գլ. Զ. 270. Ծանօթ։ Լուտեր նոյն Գարլշդատին վրայ կը գրէ որ «Ինքն ալ շուտ մը նոր վարդապետ ըլլալու կը բաղձար, եւ իմ իշխանութիւնս ոտքի կոխելով ժողովրդեան մէջ իր հրամաններն ու վարդապետութիւնները բանեցընել կ'ուզէր»։ Առ-ըն Վիթէ, Հատ. Բ. 178։ Մեալ ս'Օդինեէ (Հատ. Բ. 45.) Գարլշդատին ըրածներուն վրայ խօսելու չեկած՝ իբրեւ անոնց պատճառը գտնելով՝ կը զրուցէ որ «Քիչ մը [illegible] կը սիրէր»։ Տես նաեւ ինչ որ ետքը (Եր. 137.) Ռոսե-[illegible] [illegible]։

բերելով նիւթերու մէջ չափաւորութեամբ վարուելով բան մը չփկլոնար դուրս ելլել, եւ տեսնելով որ Լութեր մինչեւ նոյն ատեն աս սկզբունքին համեմատ եւ ամենուհին առանց ակնածութեան գործելով՝ ուզածը դուրս կը տանի. ինքն ալ միտքը դրաւ որ ամենուհին մէկէ մը նկատուած չըլլայ եւ ամենուհին առանց վախի գործէ։ Մէկ խօսքով ըսելու համար՝ Լութերին սկզբունքներուն վրայ հիմնելով եւ անոնց հետեւելով՝ անոր անձին եւ վարդապետութիւններուն հետ այնպէս վարուեցաւ, ինչպէս որ անիկա եկեղեցւոյ հետ եւ հաւատոյ վարդապետութիւններուն հետ վարուած էր[2]։ Արդէն ալ սաստիկ գործքի մը ձեռք զարնելու շատ յարմար բնութիւն ունէր. ինչու որ, ինչպէս Ռանքէ կը գրուցէ, "Ան մարդիկներէն էր, որոնք մէկ կողմանէ սեւամաղձութեան բնական բերում մը կ'ունենան, եւ մէկալ կողմանէ այնպէս յանդգնութեան տէր են, որ ամէն հաստատուած բաները կը մերժեն եւ ամէն մերժուած բաները կը հաստատեն"[3]։ Գարլշդատ սաստիկ մարդ մ'ըլլալով՝ մանաւանդ թէ զարմանալու բան է որ այնչափ ատեն համբերած ըլլայ. բայց ասոր ալ պատճառը նոյն Ռանքէ կ'իմացընէ ըսելով որ թէպէտ եւ 1520էն զանազան արատաւոր կարծիքներ ունէր, բայց "նոյն ատենները դեռ Լութերի ներկայութիւնն ու առաւելութիւնը զինքը կը բռնէին. իսկ հիմա (Լութեր հեռու ըլլալով) ալ մէկը չկար որ զինքը ետ կեցընէր, եւ իր ճառախօսութեան համար ազատ դաշտ մ'ունէր"[4]։

Արդ Գարլշդատ սաստիկ յարմար ատեն գտնելով, մանաւանդ որ նոյն ատենները Վիդդենպերկ ու մօտ տեղերն եղող Կրթնակնութիւնները եւ մասնաւորին Մունցեր[5] իրեն մեծապէս օգնու-

2. Երբ որ մէկը Գարլշդատին դէմ կը կենար եւ կամ զինքը կը յանդիմանէր որ Լութերի վարդապետութիւններուն դէմ կը գործէ կամ կը խօսի, ինք շուտ մը Լութերին սաստիկ տաքութիններու մէջ բերանէն ունեցած խօսքը կը կրկնէր թէ Աւելի Աստուծոյ հնազանդելու է քան թէ մարդու։ Եւ երբ որ մէկը իրեն կ'ըսէր թէ աս ըրածներդ մեր հաւատակից հօրը (Լութերին) ականջը հանելու ըլլայ նէ՝ շատ պիտի խռովի, ինք շուտ մը պատասխան կու տար թէ նոր բան մը չէ որ Աստուծոյ խօսքը աշխարհքիս խռովութեան ու չխաղաղութեան պատճառ ըլլայ. եւ Լութերին սաստիկ տաքութիններու մէջ բռնած ուրիշ ատոնց նման խօսքերը կը գործածէր։ Այսպէս ամէն առթի մէջ Լութերին խօսքերը բանեցընելով՝ անոնցմով ինքը զինքը ջատագովելու եւ բռնած ճամբան արդարացընելու կը ջանար. եւ կը ցուցընէր որ ինք իր ամէն ըրածներուն եւ ըսածներուն մէջ Լութերը իրեն օրինակ առած է եւ անոր դրած սկզբունքը կը հետեւի։ Տես Նախ– 10 ծանօթ։

3. Գիրք Գ. Գլ. Ա. 18։

4. Նոյն տեղը, 19։ Գրեթէ նոյն կերպով կը խօսի նաեւ Մերլ տ'Օպինեէ, Հատ. Բ. 45։

5. Մունցեր՝ իսկզբան Լութերին նախանձայոյզ աշակերտներէն մէկն էր, եւ Սաքսոնիայի մէջ անոր մոլորութիւնները սաստիկ մեծ եռանդով կը տարածէր, որ անոնք Լութերին փոխանորդը դրած էին. բայց ետքը իրմէ բաժնուեցաւ ու

թիւն կ՚ընէին, Լուտերի աշակերտներէն ոմանք իրեն հետ միաբանեց, եւ անոնց հետ մէկտեղ իր կատաղի ու բարբարոսական նորոգութեան սկսաւ։ Խումբ մը ուսանողներու եւ բանուորներու գլուխն անցած՝ եկեղեցիներուն մէջ կը մտնէր, խաչերն ու որձանները կը կոտրէր, պատկերներն ու քահանայական զգեստները կը պատռէր, ոտքի տակ կ՚առնէր կը կոխկռտէր։ Ինք եւ իր կողմի ըլլողները սկսան նոր կերպով գերմաներէն պատարագ ընել. վերացուցած չէին ընէր, հաղորդութիւնը երկու տեսակաւ կը մատակարարէին, սրբութիւնը՝ աշխարհականներուն ձեռօք շօշափել կու տային, խոստովանանք չեղած՝ սրբութիւն առնել կու տային, եւ ամենուն խրատ կու տային որ պահքի օրեր միս ուտեն [6]։ «Գարլշդատ... սա կարծիքն ալ ունեցաւ որ, կ՚ըսէ վերը յիշուած մատենագիրը, անկէ վերջը ալ գիտուն մարդ, համալսարաններու մէջ ուսում եւ մանաւանդ աստիճան հարկաւոր չէ։ Դաս առած ժամանակը ունկնդիրներուն խրատ կու տար որ ամէն մարդ տեղն երթայ ու երկրագործութեան ետեւէն իյնայ. որովհետեւ, կ՚ըսէր, մարդը պէտք է որ երեսին քրտինքովը հացն ուտէ։ Իրեն հետեւողներէն մէկը... ժողովուած քաղաքացիներուն՝ դպրատան պատուհանէն վար կը պոռար որ զաւկըներնին դպրատնէն հանեն։ Անկէ վերջը ուսումնականութիւնն ինչ բանի կը ծառայէ, կ՚ըսէր» [7]։ «Նոյն իսկ համալսարանք սկսաւ լուծուիլ, կ՚ըսէ Մենցլ, որովհետեւ Գարլշդատ բոլոր աշխարհային կամ արտաքին գիտութեանց դէմ պատերազմ հրատարակած էր, ու կը վազէր խաղախորթներուն ու կօշկակարներուն խանութները կ՚երթար, որպէս զի Ս. Գիրքն անոնց մեկնել տայ։ Եւ երբ որ անոնք կ՚ըսէին թէ մենք տգէտ մարդիկ ենք, չենք հասկընար, ինք աւետարանին խօսքը ձեռք կ՚առնէր թէ իմաստուններէն ու գիտուններէն ծածուկ մնացած բաները՝ Աստուած պարզամիտներուն յայտնած է։ Կ՚ըսէր թէ բոլոր եկեղեցականք՝ Պօղոս առաքելոյն օրինակին համաձայն՝ պէտք է որ հացերնին իրենց ձեռքի աշխատութեամբը վաստըկին. ուսանողներուն խրատ կու տար որ տուննին պարապ ուսումնականութեամբ կորսունցընելու տեղ՝ երթան արուեստ մը կամ ճարտարութիւն մը սորվին» [8]։

Աս բաներէն գրգռուելով՝ քանի մը քաղաքներու մէջ ուսանողները դպրոցներէն կ՚ելլէին, եկեղեցիներուն բակերուն

Կրկնակնքականներուն գլխաւորներէն մէկն եղաւ։ — Կրկնակնքաց եւ Մունս-գերին վրայ ուրիշ անգամ խօսելու առիթ կ՚ունենանք։

6. Աս բաները գրեթէ բառ առ բառ կը պատմէն Մաթեսիոս (Ճառ. Դ. 33. Բ.), Մենցլ (Հատ. Ա. Գլ. Գ. 114.), Բլանք (Գիրք Դ. Հատ. Բ. 34.), Ռոֆֆէլ (Գիրք Ա. Գլ. Զ. 267, 268.)։

7. Ռանքէ, Գիրք Գ. Գլ. Ա. 23։

8. Հատ. Ա. Գլ. Գ. 124, 125

մէջ ուսմանց գրքերը ժողվելով՝ կ'այրէին ու մոխիրն օդին մէջ կը ցրուէին. եւ նախատական խօսքերով չէ թէ միայն քահանայապետն ու եպիսկոպոսները, հապա նոյն ինքն Լուտերը կը թշնամանէին: Ասոնք ան երիտասարդներն էին, որոնք քիչ մը յառաջ Լուտերը Աստուծմէ խաւրուած աւետարանչի կամ մարգարէի պէս կը յարգէին, եւ անոր խօսքերէն գրգռուելով՝ քահանայապետը ամէն կարելի եղանակներով կը նախատէին, Լուտերի դատապարտութեան կոնդակը կրակներու մէջ կը խոթէին, ու քահանայապետական գրուածներն եւ կանոնական գրքերն այրելու առեն՝ կեցցէ Լուտեր, կը կանչէին. եւ Լուտեր իրենց անամօթութիւնն ու յանդգնութիւնը գովութեան արժանի կը համարէր: Արդ հիմա նոյն նախատինքը Լուտերին ալ կ'ընէին, եւ մէկը չէր կրնար կամ չէր ուզեր դէմ կենալ ու արգելել[9]:

Թէպէտ եւ աս բաները Լուտերին վարդապետած կրօնական ազատութեան ճշմարիտ պտուղը եւ իր սկզբանցը ուղիղ ու ճիշդ հետեւութիւններն էին[10], ի վերայ այսր ամենայնի ինք Վարդպուրկին մէջ ասոնք լսած առեն՝ սաստիկ կատղեցաւ, ու միտքը դրաւ որ առանձնութենէն դուրս ելլէ, որպէս զի թէ իրմէ ապստամբած աշակերտներուն յանդգնութիւնը զսպէ, եւ թէ թող չտայ որ Գարլշդատ կրօնը կործանելու պատիւն իր ձեռքէն յափշտակէ: — Երբ որ կայսրընտիրը Լուտերին միտքն իմացաւ, սիրտը նեղանալով՝ թղթով մը խրատ տուաւ որ ինքը զինքը վտանգի մէջ չդնէ, եւ քիչ մը ժամանակ ալ առանձնութեան մէջ կենայ: Բայց բոլոր խրատներն ու սպառնալիքները փուճ եղան. վասն զի Լուտեր նոյն առեններն անանկ յանդըգնութիւն ու յանձնապաստանութիւն մը ստացեր էր, որ ամենեւին չէր կրնար իր կամքը ուրիշին կամացը տակ ձգել կամ մէկուն զիջանիլ[11]: Արդ իր իշխանին հրամանը բանի տեղ չդնելով՝ ճամբայ ելաւ Վիդդենպերկ դառնալու: Բայց ճամբան

9. Օտէն, Հատ. Ա. Գլ. ԻԲ. 365:

10. Լէօն (Մատ Գ. Հտ Ա. Գլ. Ա. 109.) աս բաներուն վրայ խօսած առեն՝ կը ցուցնէ որ ասոնք ընողները Լուտերին ընդհանուր սկզբունքներուն՝ նոյն իսկ Լուտերէն աւելի ճշդիւ կը հետեւէին. որովհետեւ Լուտեր շատ անգամ իր սկզբունքներուն՝ աս կամ ան առանձին դէպքին մերձենալուն անպատեհութիւնը տեսնելով՝ նոյն դէպքերուն մէջ իր սկզբանցը դէմ կը գործէր: Եւ խօսքը Մելանքթոնին վրայ դարձընելով՝ կը գրէ թէ «Տեսնելով որ աս մարդիկները անոր (Լուտերին) սկզբանցը շատ համաձայն կը գործեն, չէր կրնար անոնց դէմ բան մ'ընել»: Նոյնպէս Կուստաւ Փֆիցեր ալ (Գլ. ԺԵ. 288, 289.) նոյն նիւթերուն վրայ խօսելով՝ կը ցուցնէ որ աս բաները Լուտերին սկզբունքներէն ծագած էին, միայն թէ Գարլշդատ եւ անոր կողմնակիցները քիչ մ'ալ մէկալ դին կ'անցնէին: Տես Նախ. 2. Ծանօթ:

11. Մենցլ, Հատ. Ա. Գլ. Գ. 125, 126:

քը համառօտիւ աս է։ Ամէն բանէն յառաջ, կ՚ըսէ, զիս ան յորդորեց, որ Վիդդենպերկի եկեղեցին զիս գրով կանչեց. եւ որովհետեւ ես Աստուծմէ ան եկեղեցւոյն պաշտօնեայ դրուած եմ, անոր համար չէի կրնար երբեք ձգել իմ հօտս՝ որն որ ինծի կը բաղձայ։ Դարձեալ իմ հեռաւորութեանս առանց սատանան ինծի յանձնուած փարախը մտեր եւ շատ խռովութիւն ու շփոթութիւն հաներ է, որն որ միայն իմ ներկայութեամբս կրնայ հանդարտիլ։ Այլ որովհետեւ սաստիկ երեւելի ու մեծ պատճառներ զիս կը ստիպէին, իշխանի մը շնորհացը կամ բարկութեան եւ կամ աշխարհքիս ցասման միտ չէի կրնար դնել։ Ասկից զատ՝ ինծի կ՚երեւայ մանաւանդ թէ ստուգիւ գիտեմ որ Գերմանիայի մէջ մեծ ապստամբութիւն մը պիտ՚որ ելլէ։ Եւ թէպէտ մինչեւ հիմա այնպէս կը կարծէի որ ան ապստամբութիւնը՝ միայն քահանայից եւ հոգեւոր առաջնորդաց դէմ ըլլայ, եւ ես իմ գրքերուս մէջ՝ միայն անոր միտ կը դնէի որ անոնց բռնաւորութիւնը փճանայ. բայց հիմա կը տեսնեմ որ աշխարհական իշխանութիւնն ալ՝ ուզէ չուզէ՝ պէտք է որ աւետարանէն կարգի գրուի։ Անոր համար հարկ եղաւ որ հոս դառնամ ու մերիններուն հետ խորհուրդ ընեմ, որպէս զի ճար մը գտնենք եւ կերպով մը Աստուծոյ վերահաս դատաստանը ետ դարձընենք։ Թղթին վերջերը իշխանին կ՚աղաչէր որ իր կամացն ու հրամանին դէմ քաղաքը դառնալուն վրայ շատ չբարկանայ. բայց միանգամայն իբրեւ թէ ցուցընելու համար որ անոր բարկութիւնն ալ բանի տեղ չէր դներ, վրան կ՚աւելցընէր. Իշխանք՝ ընչից ու մարմիններուն տէր են, իսկ Քրիստոս հոգիներուն տէրն է, որոնց որ առաջնորդելու համար ես եկած եմ 15։

Լութեր Վիդդենպերկ հասնելուն պէս՝ սկսաւ ետեւէ ետեւ քարոզ տալ, ու եղած խռովութիւններուն եւ իր հակառակորդներուն դէմ խօսիլ (Մարտի 9 — 13.)։ Ան ճառերուն մէջ այնպէս կը հասկցընէր որ իր հոն չեղած ատենն եղած փոփոխութիւններն ըստ ինքեան չպարսաւէր, մանաւանդ թէ շատ կը հաւնի. եւ սիրտը միայն անոր նեղացած է որ Գարլշդատ եւ ուրիշները՝ իր իշխանութիւնը ոտքի տակ առնելով՝ իրենք

վրաս ծիծաղին ու կեղծաւորի տեղ դնեն, քան թէ իշխանին (կայսերընտրին) դժգոհութեան զինուորը ըլլամ. իսկ խիղճս աս կեղծաւորութեան վրայ անով կը հանդարտեցընեմ թէ սովորութիւնն ան է, որ կայսերը իբրեւ իր սեպհական անունովը կամ տիտղոսովը այսպէս անուանեն, նաեւ անոնք՝ որոնց ինք սաստիկ թշնամի է,,։

15. Հոս գրածնիս՝ Լութերին առջի անգամ գրածն է. տես ի Գործս Լութ. Եէրմ. Հատ. Բ. 59. Բ. իսկ ուղղագրուելէն ու փոփոխուելէն վերջը երկրորդ անգամ խմբագրածը՝ նոյն տեղը, 63. Բ։

իրենց գլուխներուն ան բաները ըրած են 16 ։ Նոյն ժամանակները խօսած ճառերը շատ մտադրութեան արժանի են, անոր համար հոստեղս անոնցմէ քանի մը համառօտ հատուած կը դնենք ։ “Ես առաջինն եղայ, կ՚ըսէ Լութեր, որն որ Աստուած աս ասպարէզին մէջ հաստատեց․․․ ։ Ես առաջինն եղայ, որուն Աստուած հաճեցաւ յայտնել՝ ձեզի քարոզուած բաները, եւ սույգ գիտեմ որ Աստուծոյ անպատրաստ խօսքն ունիք„ 17 ։ — “Պատարագը վերցընելու խրատ տուողներին ու օգնական ըլլողները՝ մեծ սխալմունք ըրին․ չէ թէ անոր համար որ ըրած գործքերնին աղէկ չէր, հապա անոր համար որ աղէկ ու կարգաւորութեամբ չըրին„ 18 ։ — “Գիտրաւ կրնամ պապին․․․ առջեւը զձեզ ջատագովել․․․ բայց չեմ գիտեր սատանային առջեւը ինչպէս պաշտպանեմ, երբ որ անիկա մահուան ատենը Ս․ Գրքին խօսքը աս բաներուն գլուխ ըլլողներուն առջեւը դնէ թէ “Խլեցի ամենայն տունկ՝ զոր ոչ տնկեաց Հայր իմ„․ եւ դարձեալ ան խօսքը թէ “Ընթանային՝ եւ իմ չէր առաքեալ զնոսա„ ։ Ի՞նչ պիտ՚որ ըսեն ան ատեն, ամենեւին տալու պատասխան մը չունին, ու պէտք է որ դժոխքը կործանին„ 19 ։ — “Աս բաներուն վրայ կրնայիք ինծի խորհուրդ հարցընել․ ձեզմէ այնչափ փարսախներով հեռու չէի, որ կամ նամակով կամ պատգամաւորի ձեռքով հետս չկարենայիք խօսիլ„ 20 ։ — “Թէ որ ուզելու ըլլաք այսպէս ամենուն խորհրդովը գործել, ես առանց դէմ դնելու՝ բոլոր գրածներս ու վարդապետածներս թող կու տամ, ամէնն ալ ետ կը կանչեմ, ու զձեզ կը ձգեմ կ՚երթամ ։ Ասիկա մէկ անգամ ընդ միշտ կ՚ըսեմ ձեզի, դուք ալ մտքերնուդ մէջ հաստատուն պահեցէք„ 21 ։ — “Իզմէ օրինակ առէք ։․․․ Ես Աստուծոյ խօսքը՝ միայն աւետարանեցի ու գրեցի, ուրիշ բան չըրի ։ Աս խօսքը իմ քնացած, Փիլիպպոսին (Մելանքթոնին)

16․ Ռանքէ, Գիրք Գ․ Գլ․ Ա․ 31 ։

17․ Գործք Լութ․ լատ․ Հատ․ Է․ 274 ։

18․ Նոյն տեղը ։

19․ Դարձեալ նոյն տեղը ։ — Լութեր միշտ աս կը զրուցէր որ հակառակորդները սատանայէն գրգռուելով կը գործեն, սատանային առաքեալներն են ։ Ռանքէ կը պատմէ որ Լութեր Վիթդէնպէրկ դառնալէն ետեւ՝ երբ որ անգամ մը հանդէպը գանուողները խրատել կ՚ուզէր, որոնք կը պարծէին թէ տեսիլքներ կը տեսնենք, “Անոնք իրեն պատասխան տուին թէ մեր երկնաւոր առաքելութիւնը ցուցընելու համար՝ հիմա մտքէդ ինչ անցածը քեզի կրնանք զրուցել ․ Ես երբ որ Լութեր իրենց ըսածին հաւանեցաւ նէ, ըսին որ հիմա սրտիդ մէջ մեզի միտում մը կ՚ունենաս ։ Լութեր աս լսելուն պէս՝ վեր ցատքեց, եւ սկսաւ պոռալ թէ Աստուած զքեզ պատժէ, սատանայ ։ Եղաքեն խոստովանեցաւ․ որ ստուգիւ նոյն ատենը սրտին մէջ նոյն խորհուրդը կ՚ունենար․ բայց նոյն իսկ իր խորհուրդը գտնելնին՝ սատանայական զօրութեան եւ ոչ եթէ աստուածային զօրութեան նշան սեպեց„ ։ Գիզէ Գ․ Գլ․ Ա․ Հոփ․ Բ․ 13 ։

20․ Գործք Լութ․ լատ․ Հատ․ Է․ 274․ Բ ։

21․ Հոն, 275․ Բ ։ Տես Ա․ Գրքին Ը․ Գլխոյն 24․ Ծանօթ․ վերջերը ։

ու Ամսդորֆին հետ Վիդդենպերկի գարեջուրը խմած ատենս՝ պապականութեան՝ ամէն ինքնակալներէն ու իշխաններէն աւելի վնաս հասցուց։... Թէ որ ես խռովութիւն հանել ու գործքը բռնութեամբ յառաջ տանիլ ուզէի, Գերմանիայի մէջ շատ արիւն կրնայի թափել տալ, մանաւանդ Վորմս անանկ խաղ մը կը սկսէի, որ եւ ոչ կայսրը հոն ապահով կ'ըլլար,,[22]։

Աս խօսքերը՝ Լութերին փառաւորութիւնը, ամէն բանի մէջ առանձին հրամայել ուզելը, մէկ խօսքով ըսելու համար՝ կրօնական նիւթերու մէջ բռնակալութիւն ընել ուզելը՝ այնպէս յայտնի կը ցուցընեն, որ ամենեւին մեկնութեան կարօտութիւն չունին։ Աս խօսքերուն համաձայն էին իր գործքերն ալ, որով իրեն իշխանութեան դէմ դնողներուն կամ զինքն ուզածին չափ չյարգողներուն հետ սաստիկ խստութեամբ ու բռնութեամբ կը վարուէր։ Եւ որովհետեւ իր հեռաւորութեան ատենն՝ իրենք իրենցմէ կրօնական փոփոխութիւններ ընողներուն մէջ գլխաւորը Գառլշդատն էր, ինչպէս վերը տեսանք, որն որ նաեւ Լութերին Վիդդենպերկ գալէն եւ իր ապստամբ աշակերտներուն մեծ մասը նորէն իր կողմը վաստըկելէն ետեւ ալ[23], չէր ուզեր իրեն

22. Նոյն տեղը։

23. Ինչպէս աս գլխուս սկիզբները (եր. 138.) ըսինք Լութերի աշակերտներէն շատերը՝ իրենց վարդապետին Վարդպուրկ եղած ատենը՝ Գառլշդատին կը հետեւէին։ Նոյն իսկ Մելանքթոն, Լութերին Թեւ Թիկունքը եւ ամէն աշակերտներէն աւելի սիրելին, թէ որ բոլորովին ալ չէ նէ՝ գոնէ բաւ մասին իրենց հետ միաբանած էր, ինչպէս որ Մենցլ (Հատ. Ա. Գլ. Գ. 123.) յայտնապէս կը զրուցէ, եւ Սեքէնտորֆ (Գիրք Ա. Համ. ՃԺԸ. Յաւել. 192. — 195.) ու Բլանք (Գիրք Դ. Հատ. Բ. 35, 36. եւ 47, 48.) ծածուկ խօսքերով կը խոստովանին։ Բայց երբ որ Լութեր Վիդդենպերկ դարձաւ նէ, մեծ մասը նորէն իրեն հետ միացան։ Լութեր զիրենք աւելի եւս իր հետը կապելու համար՝ հետեւողներին շատ սիրով կը վարուէր, եւ մանաւանդ Մելանքթոնին հետ, որն որ արտաքոյ կարգի կը շողոքորթէր ալ, ինչու որ գիտէր թէ Մելանքթոնի պէս մարդ մը իր կողմն ունենալը՝ իրեն շատ օգտակար է։ Հոստեղս Լութերի շողոքորթութիւններէն մէկ հատը դնենք։ Մելանքթոն՝ Լութերին հետ բարեկամանալուն պէս՝ Համայեցւոց Թղթին վրայ մեկնութիւններ գրած էր. եւ յունարէն լեզուի ու քերականութեան ուսուցիչը, յառաջագոյն աստուածաբանական գիտութիւն մը չսորված ու Ս. Հարց գրքերը չկարդացած, Լութերի աշակերտածին պէս՝ մէկէն հոգւով սրբով լուսաւորուելով՝ աստուածաշունչի մեկնիչ եղած էր։ Արդ Լութեր զինքը շատ անգամ կը յորդորէր որ իր մեկնութիւնները տպել տայ. եւ որովհետեւ մեկնիչը միշտ դէմ կը դնէր, Լութեր գաղտուկ տպել տուաւ, եւ յառաջաբան մ'ալ շինելով՝ մէջը աշակերտին այսպէս կ'ըսէր. Մեկնութիւններդ տպել տալուս վրայ մի նեղանար։ Թէ որ դուն քու գրիչդ չես հաներ նէ, աղէկ կ'ընես. բաւական որ մենք հանենք։ Բայց անորէն Թովմայականներուն՝ իրենց վարդապետին վրայ ստութեամբ ըսածը թէ "Պօղոսին վրայ իրմէ (Ս. Թովմասէն) աղէկ մէկը գրած չէ,, ես քու վրադ ճշմարտութեամբ կ'ըսեմ։ Դուն կ'ըսես որ Ս. Գիրքը առանձին առանց մեկնութեան կարդալու է. աս խօսքը Հերոնիմոսին, Որոգինեսին, Թովմասին եւ անոնց նմաններուն մեկնութեան վրայ ստոյգ է, ինչու որ անոնք անանկ մեկնութիւններ գրեցին, որոնց մէջ աւելի իրենց վարդապետութիւնները սոր-

Անցած գլխուն մէջ ըսինք որ Լուտեր Վարդապետին եղած ատեն՝ աստուածաշունչը գերմաներէն թարգմանելու սկսած էր. արդ աս ատենները Նոր կտակարանը ալեց՝ դուրս հանեց: — Ասոր վրայ Օսէն կ'ըսէ թէ Որովհետեւ Լուտեր կը վարդապետէր որ Նոր օրինաց քահանայութիւնը՝ ամէն մկրտեալ մարդիկներուն, արանց ու կանանց, իմաստուններուն ու տգէտներուն հասարակ է, կամ թէ ամէն մկրտեալ մարդ քահանայ է, պէտք էր որ ձեռքերնին տար ան գիրքը՝ որուն մէջ իրենց պաշտօնին պարտքերը Աստուծոյ ձեռօքը գրուած էին: Անոր համար իր թարգմանութիւնն ամենուն առջեւը դնելով, ըսաւ. Ահաւասիկ կենաց գիրքը. ասկէ ետքը աս գրքին միտքը ձեզի մթին կամ ծածուկ չէ, անոր իմաստներուն դատաւորը դուք էք[26]: — Բայց Լուտեր Ս. Գիրքը ինչպէս որ է նէ՝ այնպէս չտուաւ իրենց ձեռքը. ինչու որ իր թարգմանութեան մէջ շատ տեղ Ս. Գրոց խօսքերը՝ բուն իրենց իմաստէն բոլորովին տարբեր, մանաւանդ թէ հակառակ կը դնէ. շատ տեղ Ս. Գրոց բացայայտ խօսքերը կամաւ եւ մտադրութեամբ կը փոխէ ու կը խանգարէ, եւ իրեն մոլորութիւններուն կը համաձայնցընէ[27], որուն

26. Հատ. Ա. Գլ. ԻԵ. 325:

27. Ասոր բանը կէս մը ծածուկ խօսքերով կէս մ'ալ յայտնապէս կը խոստովանին Բողոքականք (Գէօթէ Գ. Հատ. Բ. 95, 96.) "Դիւրաւ կրնայ ցուցունել որ, կ'ըսէ, Լուտերին ըրած թարգմանութիւնը՝ մէջի ամէն սխալներովը... Նորագոյն յառաջադիմութեան, որով եւ գանէ անուղղակի՝ ճշմարտութեան տարածման շատ աւելի օգնեց քան զոր աւելի հաստատչանաբիւրման ու ճշդաբանութեամբ եղած թարգմանութիւն մը կրնար ընել": Քիչ մը վերջն ալ կ'ըսէ որ Լուտերի թարգմանութիւնը "կարելի եղածին չափ՝ հաւատարիմ" է. բայց "միայն իր (Լուտերին) խորհուրդներուն համաձայն՝ կարելի եղածին չափ հաւատարիմ": Դարձեալ կ'ըսէ թէ "Այսպէս է որ (Լուտեր) ճշմարտութիւնը շատ անգամ Ս. Գրքին այնպիսի տեղերովը կը ցուցընէր, որոնք ցուցուած բաներէն հեռ ամենեւին կապակցութիւն չունէին կամ քիչ կապակցութիւն ունէին... բայց աս միտքը՝ միայն անցողական միտք մըն էր":

Հարկաւոր կը սեպենք աստուածաշունչին մէջ Լուտերին՝ ուղղելով ու գիտութեամբ ըրած փոփոխութեանց ու խանգարմանց մէկ քանին հոս դնել, որպէս զի յայտնապէս տեսնանք թէ ինչպէս իր սխալ ու ծուռ թարգմանութիւններովը՝ իր մոլորութիւնները կ'ուզէր հաստատել ու տարածել: — Յայտնի է որ Լուտերին գլխաւոր վարդապետութիւններէն կամ մոլորութիւններէն մէկը մանաւանդ թէ ամենէն գլխաւորն ու ամենուն հիմն աս է որ մարդս՝ միայն հաւատքով կ'արդարանայ, բարեգործութեան ամենեւին հարկաւորութիւն չունի, մանաւանդ թէ բուն ինքեան ամենեւին բարեգործութիւն չկայ, հապա նոյն իսկ արդար մարդիկներուն աղէկ գործքերն ալ մեղք են: Բայց Ս. Գրքին մէջ անթիւ անհամար տեղեր աս հակառակը կը քարոզուի: Լուտեր աս ճարը կը գտնէ, եւ "բոլոր վարդապետութիւնները՝ միայն Ս. Գրքէն կ'առնեմ" ըսողը՝ Ս. Գիրքը խանգարելով՝ իր մոլորութիւնները անոր մէջ կը խօթէ: Ահաւասիկ քանի մը օրինակ:

Յակոբոս առաքեալ իր կաթուղիկէ թղթին մէջ ցուցընելով որ հաւատքն առանց գործոց մեռեալ է, օգուտ մը չունի, "Ցոյց ինձ զհաւատսն քո առանց գործոց" կ'ըսէ: Յակ. Բ. 18: Լուտեր տեսնելով որ աս խօսքը իր վարդապետութիւնը ի հիմանց կը կործանէ, այնպիսի ճարտարութեամբ մը կը

Չիկրնար խօսքով բացատրուիլ թէ ռամիկը ինչպէս յօժարութեամբ Լուտերին աս թարգմանութիւնն ընդունեցաւ. Ս. Գիրքը ամենուն նաեւ կանանց ձեռքը կը պտըտէր, եւ բոլորն ալ Լուտերին տուած իշխանութեան համաձայն՝ սկսան աստուածային խօսքերուն՝ ուզածնուն պէս մեկնութիւն տալ: Շատ կանայք կը յանդգնէին կրօնի վրայ վիճաբանութիւններ ընել, չէ թէ միայն իրենք իրենց մէջ, հապա նաեւ երեւելի ուղղափառ վարդապետներուն հետ, զորոնք սաստիկ կը նախատէին, ըսելով թէ Որովհետեւ դուք ոչ եբրայեցերէն եւ ոչ յունարէն գիտէք, Ս. Գրոց միտքն աղէկ չէք կրնար հասկընալ, եւ Լուտեր միայն է որ Ս. Գրոց գիտութիւնն ունի[28]:

Արդ աս կերպով Լուտեր շատերուն իր կողմը որսաց, որոնք Ս. Գրոց մէջ անոր վարդապետած մոլորութիւնները տեսնելով,

ալ տալով երթալով՝ կրնայի պարծիլ եւ ըսել... որ սաղմոսն ու մարգարէները կը թարգմանեմ ու կը մեկնեմ, որ արուեստին որ իրենք բոլորովին անտեղեակ են...: Եւ որպէս զի աւելի եւս իրենց մերձենամ՝ կը զրուցեմ որ իրենց վճռողութիւնն ու փիլիսոփայութիւնը աւելի աղէկ գիտեմ, աւելի աղէկ սորված եմ, քան թէ բոլոր ան էշերը մէկտեղ....: Կ'աղաչեմ քեզի ան էշերուն՝ նոյն բառին վրայ ըրած հակառակութիւններուն ուրիշ պատասխան մի տար, բայց աս միայն որ Լուտեր այնպէս կ'ուզէ, այնպէս կը հրամայէ, եւ թէ ինքը՝ բոլոր պապականութեան մէջ գտնուած վարդապետներէն մեծ եւ երեւելի վարդապետ մըն է,,: Թուղթ Լուտերի, Հատ. Ե. 211, 212:

Աղէկ կարդան ու մտադրութեամբ քննեն աս խօսքը անոնք՝ որոնք կ'ըսեն թէ Լուտեր ճշմարիտ ու արտանց կը խօսէր՝ երբ որ կը պարծէր թէ ես՝ ան միայն կը վարդապետեմ որն որ Ս. Գրոց մէջ կայ. ուր որ յայտնի կը տեսնենք, եւ ինքն ալ վերը գրած խօսքերնուս մէջ կը խոստովանի, թէ ան միայն կը վարդապետէ ինչ որ ինք կ'ուզէ, եւ Ս. Գիրքն ալ անոր կը համաձայնցընէ: (Տես նաեւ աս Գրքիս Ե. Գլխոյն 23. Ծանօթ:) — Դարձեալ ըսեն աս խօսքը անոնք՝ որոնք կը կարծեն թէ Լուտեր արտանց կը խօսէր երբ որ կը գրէր. "Հակառակորդներուս կ'աղաչեմ որ ներքին սրամտութեանս՝ որով սաստիկ կը նեղեմ ու կը սպանայիմ երբ որ կը տեսնեմ թէ Քրիստոսի եկեղեցւոյն մէջ անանկ բաներ կը վարդապետուին, որոնք երբեք գրուած ու հաստատուած չեն. ինչու որ կը տեսնենք թէ Ս. Հայրք յառաջագոյն շատ հարկաւոր բան կը սեպէին չգրուած բան մը վարդապետել, ինչպէս Ս. Հիլարիոս կը գրէ: Եւ Ս. Օգոստինոս՝ Կիպրոսի եպիսկոպոսը նոյն բանին այնպէս սաստիկ ջատագով էր, որ անգամ մը իր աշկերտը քարոզ տալով քահանան ըսեցընել տուաւ, միայն անոր համար որ Առ զմահիճս քո եւ գնա ըսելու տեղ՝ Առ զմահճակալս քո եւ գնա, ըրած էր, ու յանդիմանութիւն տուաւ քահանային այնպիսի բանի մը համար՝ որն որ խօսքին նշանակութիւնն ամենեւին չէր փոխեր,,: Աս խօսքերը գրողը Լուտերն է. իսկ Սեքենտորֆ (Գիրք Ա. Հատ. ԻԳ. 34, 35.) առիկա վկայութիւն կը բերէ իր վարդապետին ինչ պատճառի ճշմարտասէր ու երկիւղած ըլլալը ցուցընելու համար: Սակայն աս խօսքն ուրիշ բանի չէր ծառայեր, բայց եթէ Լուտերին չարութիւնը աւելի եւս յայտնելու. որովհետեւ ասով կը ցուցուի որ Ս. Գրոց նաեւ անտարբեր խօսքերը փոխելն ինչպէս մեծ յանցանք ըլլալը ճանչնալէն ու խոստովանելէն ետեւ՝ ինք այնչափ անգամ այնպէս յանդգնութեամբ ու անամօթութեամբ կամակար կը փոխէ ու կը խանգարէ:

28. Օտէն, Հատ. Ա. Գլ. ԻԵ: 328, 329:

(որովհետեւ, վերը ըսածներնուս պէս, Լուտեր իր մոլորութիւնները Ս. Գրոց մէջ խոթելու ջանացած էր, մանաւանդ թէ ասով ալ գոհ չըլլալով՝ շատ տեղ լուսանցքը դրած հաստատ մեկնութիւններովը նոյները կը հաստատէր,) իրենց նախնեացը սուրբ կրօնքը թող տալով՝ կու գային անոր մոլորութիւններուն կ՚աշակերտէին։ Եւ թէպէտ Հենրիկոս Անգղիոյ թագաւորը՝ Փրեգերիկոս կայսրընտրին, անոր եղբօրը Յովհաննէս դքսին ու Գէորգ դքսին թուղթ գրելով՝ վտանգն աչքերնին դրաւ. բայց արդէն բանը բանէն անցած, եւ Լուտերի թարգմանութիւնը ամէն տեղ տարածուած ու ամենուն ձեռքն էր. մանաւանդ որ երկու առաջին իշխանները բոլորովին Լուտերին կողմը ըլլալով՝ Հենրիկոսին իմաստուն խրատները բանի տեղ չդրին։ Միայն Գէորգ դուքսը իր հպատակներուն Լուտերի թարգմանութիւնը կարդալն արգելեց, եւ անոր տեղը ուրիշ ուղղափառ թարգմանութիւն մը տարածեց։

Անգղիոյ թագաւորը՝ իշխաններուն գրած թղթին մէջ Ս. Գրոց թարգմանութեան վրայ՝ միայն վեր ի վերոյ մը կը խօսէր. իսկ բուն թղթին միտքն աս էր. Լուտերին վարդապետութիւններուն ամպարշտութիւնն ու մոլորական ըլլալը կը յայտնէր, եւ կը ցուցընէր որ աս վարդապետութիւններէն ինչպիսի չարիքներ կրնան յառաջ գալ։ Անոնց վրայ մէկիկ մէկիկ խօսելէն ետեւ՝ իշխաններուն կ՚աղաչէր որ փոյթ տանին որ աս անիծեալ աղանդը՝ եթէ կարելի է նէ՝ առանց արիւն թափելու՝ ջնջուի վերնայ։ Իսկ թէ որ, կ՚ըսէ, հակառակորդներուն յամառութեան համար՝ ասիկա անկարելի կ՚ըլլայ նէ, ամէն կերպով ջանալու է որ ջնջուի, եւ պէտք չէ թողուլ որ օրէնքն ու իշխանութիւնը, եւ ամէն աստուածային ու մարդկային կարգադրութիւնները ոտքի տակ իյնան ու կործանին։ — Բայց, ինչպէս վերը զրուցեցինք, թագաւորին խրատները՝ իշխանները մի եւ նոյն կերպով չառին։ Գէորգ դուքսը թագաւորին խօսքերէն աւելի եւս յորդորուելով՝ ամէն ճիգն ի գործ կը դնէր որ հերետիկոսութեան թոյնն իր երկիրներուն մէջ չմտնէ. իսկ կայսրընտիրն ու իր եղբայրը ամենեւին առջի վարմունքնին չփոխեցին եւ Հենրիկոսին թղթին վերիվերոյ պատասխան մը տուին[29]։

Անգղիոյ թագաւորէն զատ՝ ուրիշ երեւելի մարդիկ ալ գտնուեցան, որ կայսրընտիրը աս բաներուն վրայ զգուշացուցին։ Ասոնցմէ մէկն էր Լուդովիկոս Հունգարիոյ թագաւորը,

29. Թագաւորը նամակը 1523ին Փետր. 20ին գրած էր, իսկ իշխանները նոյն տարին Ապրիլ մէջ պատասխան տուին։ Առջի նամակը տես Գործք Լութ. հեր. Բ. 187. Բ. իսկ երկրորդը՝ նոյն տեղը. 191։ Տես Նաեւ Բլանէ, Գիրք Դ. Հատ. Բ. 105. 106։

այն որ առանձին թղթով մը իրեն խրատ տուաւ որ ա՛լ Լուտերը չպաշտպանէ, եւ թող չտայ որ արձակ համարձակ ու լրբութեամբ ամէն մարդ նախատէ, եւ կրօնի դէմ մոլորութիւններ վարդապետէ ու հայհոյութիւններ խօսի. հապա քան արժանւոյն զինքը պատժէ, եւ աւելի եկեղեցւոյ խաղաղութեան միտ դնէ քան թէ հաւատքն ուրացող մարդու մը: Բայց աս թուղթն ալ կայսրընտրին վրայ երեւելի ազդեցութիւն մը չըրաւ. անոր համար ալ Թագաւորին գրած պատասխանին մէջ՝ կը ջանար ցուցընել որ ինք Լուտերին պաշտպանը չէ, եւ թէ մինչեւ նոյն ատենը Աստուծոյ շնորհօքը՝ եկեղեցւոյ հնազանդ եւ հաւատարիմ որդի եղած է, եւ անկէ ետքն ալ նոյնպէս հաստատուն պիտի մնայ 30:

Բայց թէպէտ եւ այսպէս կը ջանար Փրեդերիկոս որ Լուտերի պաշտպան ըլլալու դէշ անունը վրայէն վերցընէ, ի վերայ այսր ամենայնի ինքն ալ կը տեսնէր որ կարելի չէ, եւ թէ նոյն պատճառին համար բոլոր բարեպաշտ մարդիկներուն աչքէն կ՚իյնէ: Անոր համար թղթով մը Լուտերին հրամայեց որ անկէ ետեւ բերնին չափ դնէ եւ ամենուն մէկու մը դէմ, մանաւանդ իշխաններուն դէմ, նախատական խօսքեր չխօսի ու չգրէ: Սակայն Լուտեր պատասխան տուաւ որ Թէպէտ ես անոնց դէմ շատ դառնութեամբ ու խստութեամբ խօսեցայ ու գրեցի, բայց առիկա առանց պատճառի չէր: Աս ալ աղէկ գիտեմ որ, ըսաւ, շատ անգամ ինծի հրամայեցիր որ նախատական ու խածատող խօսքերէն ետ կենամ. բայց հակառակորդներս՝ զիս հետերնին միշտ աս կերպով վարուելու կը ստիպեն: Ի վերայ այսր ամենայնի ինչպէս որ ըլլայ նէ՝ հաստատուն գիտեմ որ իմ վարդապետութիւններս ու գրքերս Աստուծմէ են, եւ բոլոր սատանաներուն դէմ կրնամ զանոնք պաշտպանել 31:

Լուտերին աս ժամանակները դուրս հանած գրքերը աս իր դառնութեան ու ամբարտաւանութեան հոգւովը տպաւորուած են. անոնց մէջը՝ ա՛լ իսկզբան ըրածին պէս՝ միայն նախատելով գոհ չ՚ըլլար, այլ ամէնքը յայտնապէս ուղղափառաց եւ մանաւանդ եպիսկոպոսաց դէմ կը գրգռէ: Նոյն գրուածոց մէջ ամենէն աւելի յիշատակելու արժանի է Քանոնական կարգին դէմ գրածը: Կարծես թէ աս գրուածքին մէջ ըսածներուն հաստատութիւն մը տալու համար՝ ինքը զինքը "Մարտինոս Լուտեր՝ շնորհօքն Աստուծոյ՝ եկղեսիաստես ի Վիդդենպերկ" կ՚անուանէ. եւ աս հպարտական անունն արդարացընելու համար

30. Սեքենտորֆ, Գիրք Ա. Հատ. մէջ. 378:

31. Իշխանին նամակը տես ի Գործս Լութ. Եէն. Հատ. Բ. 364. Իսկ Լուտերին պատասխանը՝ նոյն տեղը, 364. Բ.

պարզապէս կը խօսի. «Աստուած գիտէ որ Քրիստոս ալ ինծի ան անունը կու տայ եւ զիս այսպէս կը համարի. ինք իմ վարդապետութիւններուս վարդապետն է, եւ վերջին դատաստանին օրը վկայ պիտի որ ըլլայ. որ ասոնք իմս չէին, հապա իր զուտ Աւետարանինը։... Եւ թէպէտ երբեմն ես ալ մոլորութեան մէջ... ստախօս, խաբեբայ, մոլորեցուցիչ եւ հայհոյիչ էի Աստուծոյ զուտ վարդապետութեան դէմ, ինչպէս որ դուք հիմա էք, բայց երբ որ մէկ մը Հայրն ողորմութեանց աս իմ անպիտանութեանս, հայհոյութեանս ու ամէն տեսակ մեղքերով լեցուած չար վարքիս չնայելով՝ իր շնորհաց առատ հարստութեամբը՝ իր որդին Յիսուս Քրիստոս ինծի ճանչցընել տուաւ եւ իմ ձեռօքս ուրիշներուն ալ սորվեցուց, այնպէս որ ալ իր ճշմարտութեան վրայ ապահով եղանք[32], ալ պէտք չէ որ առանց անուան մնամ։... Անոր համար հիմա ձեզի կ՚իմացընեմ որ... ասկէ վերջը չեմ ուզեր որ ոչ դուք եւ ոչ երկինքէն իջած հրեշտակ մը իմ վարդապետութեանս վրայ քննութիւն ընէ։... Որովհետեւ ապահով եմ որ ես անով թէ ձեր եւ թէ հրեշտակներուն դատաւորն եմ. այնպէս որ ով որ իմ վարդապետութիւնս չ՚ընդունիր նէ՝ անկէց չիկրնար փրկութեան հասնիլ. ինչու որ (նոյն վարդապետութիւնը) Աստուծոյ է եւ չէ թէ իմս։ Անոր համար ալ իմ պատասխանս՝ իմս չէ, հապա Աստուծոյ է»[33]։

Ղուտերը ատանկ հպարտական եւ յանձնապաստանական կերպով սկսելէն ետեւ՝ սաստիկ պղծագործութիւններ եւ եկեղեցականաց դէմ ապստամբութեան գրգռող խօսքեր կը գրէ, որոնցմէ երկու հատուած հոստեղս կը դնենք։ «...իսկ եթէ մէկը ըսելու ըլլայ. Բայց չըլլայ որ եկեղեցականներուն դէմ ապստամբութիւն ելլէ, այսպէս պատասխան կու տամ. Անոր համար պէտք է որ Աստուծոյ խօսքը ետ մնայ եւ բոլոր աշխարհք կործանի։ Պատշաճ բա՞ն է որ բոլոր հոգիները յաւիտենական մահուան տակ իյնան, որպէս զի ան խաբեբաներն իրենց չքեղութեան մէջ հանդարտ մնան։ Աւելի լաւագոյն էր որ բոլոր Եպիսկոպոսները սպաննուէին եւ ամէն քաղաքները հիմնայատակ կործանէին, քան թէ մինակ մէկ հոգի կորսուէր, թող թէ ամէն հոգիները կորսուէին։ Ի՞նչ բանի օգուտ ունին (եպիսկոպոսք), բայց եթէ ուրիշներուն քրտինքէն եւ աշխատութենէն՝ շռայլութեամբ ապրելու, եւ Աստուծոյ խօսքն արգելելու. մարմնաւոր ապստամբութենէ կը վախնան, եւ հոգեւոր ապականութիւնը բանի

32. Կարծեմ Ղուտեր աւելի բացայայտ չէր կրնար խօսիլ, ցուցընելու համար որ ինքը զինքը Պօղոս առաքելոյն տեղ կը դնէ։ Տես նաեւ Ա. Գրոց Գ. Գլուխն 20. Տունը. եւ Ը. Գլուխն 21. Տունը։

33. Գործք Ղուտ. Գերմ. Հատ. Բ. 107։

տեղ չեն դներ։... Թէ որ Աստուծոյ խօսքն ընդունելին եւ հոգւոց փրկութիւնը փնտռելին նէ, Աստուած մօտ կ'ըլլար. եւ որովհետեւ Աստուած խաղաղութեան է, ան ատեն ամենուն ապստամբութենէ մը վախ չէր ըլլար։ Իսկ թէ որ Աստուծոյ խօսքը լսել չեն ուզեր, հապա կատաղութեամբ կը վարուին, ու աղմկով նզովքներ կը դնեն, կ'այրեն, կը մեռցընեն եւ ամէն կերպ չարիքը կը գործեն, իրենց [illegible] յարմար քան [illegible] ըլլալ, [illegible] որ [illegible] [illegible]. եւ թէ որ ատենի քան մը պատահելու ըլլար նէ՝ մինակ [illegible] էր„[34]։

"Լսեցէք, եպիսկոպոսներ, մանաւանդ թէ սատանային պատրուակները. Լուտեր վարդապետը ձեզի կոնդակ ու Նորոգութեան պատճէն մը պիտի կարդայ, որն որ ականջներնուդ քաղցր պիտի չգայ։

"Լուտեր վարդապետին կոնդակն ու Նորոգութեան պատճէնը։ — Որոնք որ աս բանին գործակից կ'ըլլան, կեանքերնին, ինչքերնին ու պատիւնին աս բանին կը բանեցընեն, որ "եպիսկոպոսութիւնը կործանի եւ եպիսկոպոսաց կառավա-"րութիւնը ջնջուի, անոնք Աստուծոյ սիրելի որդիքը, ճշմարիտ "քրիստոնեայք, Աստուծոյ օրէնքները պահող եւ սատանային "հրամաններուն դէմ քաջ պատերազմողներ են։ Իսկ որոնք "որ աս բանը չեն կրնար ընել, բայց նոյն կառավարութիւնը "կը դատապարտեն եւ անկից կը զգուշանան, անոնք ալ աւելին-"ներուն կարգը կրնան սեպուիլ։ Ասոր հակառակ՝ որոնք որ ե-"պիսկոպոսներուն կառավարութիւնը կը պաշտպանեն, անոնց "կը հպատակին եւ կամօք կը հնազանդին, անոնք սատանային "բուն պաշտօնեաներն են, եւ Աստուծոյ օրէնքներուն ու հրա-"մաններուն հակառակորդ„[35]։ — Աս ապստամբեցուցիչ խօսքերուն եւ գրգռիչ կոնդակին դառն պտուղները շատ չ'երթար կը տեսնենք։

34. Նոյն տեղը, 109. բ։ 35. Դարձեալ նոյն տեղը, 120։



## ԳԼՈՒԽ Բ

### Լուտեր վանքերը ջնջելու կը ջանայ

Լուտերին Մարդկային վարդապետութիւններէ զգուշանալու վրայ գրած գիրքը։ Այս գրքին ըրած ազդեցութիւնը։ Լուտերի հետեւողներէն մէկը վանքէ մը ինը կուսանք կը փախցնէ։ Փլորենթինին վանքէն փախչիլը։ Կարգաւորաց կրօնաւորները Լուտերի մոլորութիւնները տարածելու կ'օգնեն։ Լուտեր անոնց ազատարար հովանաւոր կը ըլլայ։ Վանքերուն եւ ուրիշ եկեղեցական ինչքերուն վրայ գրածը։ Իշխանք վանքերուն ու եկեղեցիներուն ինչքերը կը յափշտակեն։

## 1522 — 1524

ԼՈՒՏԵՐ աղէկ գիտնալով որ կրօնաւորական կարգերուն հաստատուն մնալը՝ իր ջանքերուն ու վախճանին որչափ վնասակար է, մանաւանդ որ իրեն դէմ գրողներուն շատերը կրօնաւոր էին, սկսաւ մեծ փութով ետեւէն իյնալ որ վանքերը ջնջէ։ Այս վախճանին հասնելու համար՝ մինչեւ նոյն տարին կրօնաւորաց դէմ գրածները բաւական չսեպելով՝ առանձին գիրք մ'ալ հրատարակեց (1522ին), որուն անունն էր Մարդկային վարդապետութիւններէն զգուշանալու վրայ։ Յառաջաբանութեան մէջ կ'ըսէ թէ Այս գիրքս անոնց համար գրեցի, որոնք որ իրենք զիրենք մարդկային օրէնքներով (կրօնաւորական ուխտերով) կապելով՝ տեղ տեղ վանքերուն մէջ կը բնակին [1]։ Իսկ բուն գրքին մէջ անոնց ազատ ու ընդարձակ դուռ մը կը բանայ, եւ կը վարդապետէ որ առանց մեղք գործելու կրնան ուխտերնուն կապանքը խզել, եւ վանքերնէն դուրս ելլելով՝ իրենք զիրենք մարմնական հեշտութիւններու տալ, մանաւանդ թէ կը ջանայ ցուցընել որ կրօնաւոր ըլլալը՝ աշխարհքիս մէջ ամենէն մեծ մեղքերէն մէկն է։ — Լուտերին աս խօսքերը պարապ չգացին. ինչու որ շատ կրօնաւորներ եւ ուխտաւոր կուսանքներ անոր տուած խրատներուն հետեւելով՝ ետեւէ ետեւ վանքերնէն կ'ելլէին ու կու գային Վիդդենպերկ կը լեցունէին. այնպէս որ իրաւամբ շատ հեղինակներ նոյն քաղաքը՝ աղքատնոց կը կանչեն, ուր որ, կ'ըսեն, մօտաւոր վանքերուն աղտն ու ժանտութիւնը կը լեցունէր [2]։

Էրազմոս՝ որ նոյն ժամանակները Գերմանիա կը գտնուէր, Լուտերին գրքին պատճառած անպիտանութիւններն ու անառակութիւնները կը պատմէ։ Քանի մը քաղաքներու մէջ, կ'ըսէ, ուրացող ու Լուտերի վարդապետութեանց ետեւէն գացող քահանաներն ու կրօնաւորները գունդ գունդ ժողվուելով կուսանաց

1. Գործք Լուտ. գերմ. Հատ. Բ. 96։

2. Ուլէնպերկ, Գլ. Ժ. Համ. Գ։ Տես նաեւ Ց. Ծանօթ։

վանքերուն վրայ կը յարձակէին, եւ կուսանքները յափշտակելէն ետեւ՝ յիմարի պէս պոռալով եւ անառակ երգեր երգելով քաղաքին հրապարակներէն ու փողոցներէն առած կը տանէին։ Շատ անգամ Լուտերի հետեւող կրօնաւորներ ալ, կ'ըսէ, որ եկեղեցիներէն յափշտակուած զարդերով զարդարուած ու գինովցած՝ ճամբաներէն անցնող կանանց վրայ կը յարձակէին։ Շատերը՝ զիրենք ներսէն մղող հոգւոյն դէմ չկրնալով դնել՝ բարձր անզէր կ'ելլէին, եւ իրենց վարդապետին՝ կրօնաւորական ուխտից դէմ վարդապետածը՝ հոն ժողովրդեան կը քարոզէին։ Աղօթքներնուն մէջ ուրիշ բան չէին խնդրեր, բայց այնչափ առատ որ բաղոր կեանքերնին կարող ըլլան հեշտութեամբ անցընել, եւ իրենց ցանկութիւնները կատարելու համար կանայք։ Կուսաստաններուն մէջ բաւական կին կը գտնէին, եւ թէ որ անոնցմով գոհ չէին ըլլար նէ՝ կ'երթային անպիտան տներուն մէջ իրենց կին կ'ընտրէին։ Քահանայի ալ կարօտութիւն չունէին որ զիրենք ամուսնացընէ, բաւական էր որ ամուսնացողները հաւանէին. շատ անգամ ան ալ հարկաւոր չէր սեպուեր, հապա հերիք էր որ զօրաւոր կողմն ուզէր, եւ անկէ ետքը ան անօրէնութեան կապակցքն՝ օրինաւոր ամուսնութիւն կը սեպուէր։ Ան սարքմանի յանդգնեցան ոմանք, մինչեւ երկու կին միասին կ'առնէին, կամ ուզածնուն պէս կիներնին կը փոխէին[3]։ Երազմոս ասանկ պատմելէն ետեւ՝ խօսքը կը լմնցընէ ըսելով որ Հիմա աւետարանը ծաղկած ու պայծառացած կը սեպուի, երբ որ կրօնաւոր մը աշխարհիկ մնալու ըլլայ[4]։

Նոյն բաներուն վրայ Մենցլ[5] այսպէս կը խօսի։ "Շատ քիչերը կ'իմանային, կ'ըսէ, ան կրօնական (*) գաղափարը՝ որուն համար Լուտեր կրօնաւորական կեանքը կը մերժէր. բայց որովհետեւ վանքերու մէջ բնակողներէն շատերը կապանքէն ձանձրացած էին... անոր համար նաեւ փախչելու պատճառներնին հաճոյքով խումբ խումբ վանքերէն դուրս կ'ելլէին[6]։ Շատերուն առաջին գործը՝ կին առնել կ'ըլլար. եւ շուտ մը նոյն իսկ Լու-

3. Ասոր վրայ տես նաեւ սա գրքին Բ. գլխոյն 20. ծանօթ.

4. Թուղթք Երազմոսի, առ Օ-ատնի, Հատ. Բ. Գլ. ԺԱ. 156. — 158.

5. Հատ. Ա. Գլ. Գ. 183.

6. "Զինքինար ազատցուցիլ, կ'ըսէ Փլանք, եւ նոյն իսկ Լուտեր ասոր վրայ տարտամիլ կ'ընէ, որ ասոնցմէ շատերը չէ թէ համոզմամբ... հապա կրօնաւորական կապանքներէն ձանձրացած ըլլալնուն եւ ամենայն ազատութիւն սիրելնուն համար՝ վանքերէն դուրս կ'ելլէին եւ աշխարհիկ կը մնային"։ Փլանք Գ. Հատ. Բ. 88։ Այս մտածմունքը նոյն իսկ Վիտգէնպերկի Օգոստինեանց վրայ խօսելով՝ կը ցուցնէ որ իրենց "մեծ մասը՝ որ փոքր վանական կարգերուն խստութենէն ազատիլ կ'ուզէր, Լուտերի վարդապետութիւնը իբրեւ պատրուակ առնելով՝ ուզեց լուծը վրայէն նետել... եւ մէկէրնէն ոմանք վանքը թող տալով՝ ասդին անդին կը պտըտէին"։ Փլանք Գ. Հատ. Բ. 7։

ներ՚ սկսաւ պաշտպանել, որ ան անձնական գործքի մը չյարմարող մարդիկ, որոնք որ միայն իրենց որովայնէն ու մարմնոյ ցանկութիւնէն կ՚առաջնորդուէին, Աւետարանին քաղցրահամութեան մէջ սատանին չարահամութիւն կը խառնեն,, 7 :

Թէպէտ աս խօսքէն այնպէս կ՚երեւայ որ Լութեր իր գրուածքներուն ու խրատներուն բոլոր ապշեցութեան եւ ունեցած հեռաւորութեանց վրայ ուժգին ըլլայ. բայց չէ, մանաւանդ թէ սատանի կ՚ուրախանար 8. ասիկա եղաւ քանի մը տասնամեակն դէպքերէն աղէկ կը յայտնուի — կուսաստանի մը մէջ գտնուող աղջնակական տնէ քանի մը կուսանքներ Լութերին գըրքերէն գրգռուելով՝ մտքերնին դրին որ վանքէն ելլեն. եւ իրենց ազգականներուն նամակ գրեցին որ զիրենք կրօնաւորական կենաց ծանրութիւններէն ազատեն: Մենք, կ՚ըսէին, ալ չենք կրնար ասանց խղճմտանքնիս արատելու եւ հոգիներնուս փրկութիւնը վտանգի մէջ դնելու հոս կենալ: Բայց որովհետեւ իրենց ազգականները խօսքերնուն միտ չդրին. անոր համար Լէոնարտ Գոբ անունով մէկը՝ որն որ Լութերի վարդապետութեանը սոգորուած եւ անոր մտերիմ բարեկամն էր, իր վարդապետէն խրատուելով՝ գիշեր մը գաղտուկ կուսաստանը մտաւ, ու նոյն կուսանքներէն ինը հոգի հետը առնելով՝ փախցուց Վիդդեմպերկ բերաւ: Ասոնց մէջն էր Կատարինէ Պորէ, որուն հետ երկու տարի վերջը Լութեր ամուսնացաւ, ինչպէս վերջը պիտի պատմենք: Աս կուսանքներուն վանքէն փախչիլը՝ 1523ին աւագ շաբթուն մէջ պատահեցաւ 9: Լութեր շուտ մը գրուածք մը դուրս հանեց, որուն մէջ աս դէպքը՝ սուրբ եւ արդիւնաւոր գործքի մը պէս կը գովէր, յափշտակիչը մեծ վարձուց արժանի կը սեպէր ու երանելի աւազակ կ՚անուանէր, որովհետեւ, կ՚ըսէր, բարեպաշտ օրիորդները ծանր ու անտա-

7. Լութերին բուն խօսքն աս է. «Կը տեսնեմ որ կրօնաւորներէն շատերը ուրիշ պատճառի համար չէ . . . հապա միայն որովայնի եւ մարմնական ազատութեան համար վանքերէն կ՚ելլեն: Եւ սատանան իրենց ձեռքովը՝ մեր խօսքին քաղցրահամութեան դէմ սատանի ժանտահամութիւն մը պիտի հանէ,, : Ար- Ցէլվիղէ, Հատ. Բ. 154. 157: Մելանքթոնն ալ գրեթէ նոյն խօսքերով նոյնը կը ցուցնէ:

8. Կոստաւ Փինցեր (Գլ. ԺԷ. 333, 334.) աս բանիս վրայ կը գրէ որ թէպէտ Լութեր կրօնաւորներուն ու կուսանքներուն վանքէն ելլելուն վրայ շատ կ՚ուրախանար, բայց մէկալ կողմանէ ալ սաստիկ կը տրտմէր, տեսնելով որ անոնց մէջէն խիստ շատերը՝ բարի ու գովելի վախճանաւ վանքերէն չէին ելլեր, հապա ձանձրացած ըլլալնուն համար: Վիդդեմպերկ, կ՚ըսէ, ասոնցմով լեցուեցաւ, որոնք վանքէ ելլելնին՝ իբրեւ աւելուստ ընդունելու արժանաւորութիւն մը կը սեպէին, եւ ամուսնանալ կ՚ուզէին. բայց ինչպէս նոյն ինքն Լութեր ալ կը ցուցնէ՝ անձնական գործքի մը չէին գար:

9. Սէքէնտորֆ, Գիրք Ա. Համ. ՃԺԳ. 272: Կոստաւ Փինցեր, Գլ. ԺԷ. 334: Ուլէնպերկ, Գլ. Ժ. Համ. Գ.

նելի շղթաներէն ազատեց[10]։ Մանաւանդ թէ ան աստիճանի ամպարշտութեան հասած էր, մինչեւ աս կուսանաց յափշտակութիւնը՝ Քրիստոսի չարչարանքը հոգիներուն ազատուելուն կը նմանցընէր։ Եւ կարգուրաց կուսանքներուն անունները, նոյնպէս զիրենք փախցընողին անունը մէկիկ մէկիկ զգուշութեամբ նոյն գրուածքին մէջ նշանակեց, որպէս զի իրենց մշտնջենաւոր պարծանք ըլլայ[11]։

Բայց իր անամօթութիւնն ու ամպարշտութիւնը անով աւելի յայտնի կ'ըլլայ, որ սաստիկ գործքերը հրաշքի տեղ կը դնէր, ինչպէս իր (1524ին) գրած Փլորենտինէին պատմութիւնը կը ցուցընէ։ Աս Փլորենտինէն՝ որն որ կուսանաց վանքի մը մէջ ուխտաւոր էր, շատ անգամ Լուտերին գրքերը կարդալով՝ սկսաւ կրօնաւորական կեանքէն ձանձրանալ, ու միտքը դրաւ որ վանքէն փախչի. անոր համար ալ գաղտուկ Լուտերին թուղթ մը գրեց եւ միտքն անոր յայտնեց։ Վանաց մայրը աս բանս իմանալով՝ զգուշութիւն ընել կու տար որ վանքէն չփախչի։ Բայց երբ որ վրայէն քիչ մը ժամանակ անցաւ, յուսալով որ խելքը գլուխն եկած է, ալ անկէ ետեւ զգուշութիւնը մէկդի թող տուաւ։ Ան ատեն աս Լուտերի գրուածներուն ձեռքով լուսաւորուած կոյսը՝ վանքէն ստակ ու ազնիւ բաներ գողնալով՝ փախաւ դուրս ելաւ։ Արդ Լուտեր ասոր վանքէն փախչելուն պատմութիւնը շուտ մը գրեց չորս կողմը տարածեց. եւ նոյն պատմութեան մէջ սաստիկ բաներ կը զրուցէ, որոնցմով յայտնի կը ցուցընէ որ աս դէպքը հրաշքի տեղ դրած է. եւ աս վերջին ժամանակները, կ'ըսէ, Աստուած աս տեսակ հրաշքներ շատ բրաւ։ Եւ թէպէտ, կ'ըսէ, Աւետարանը չճանչցողները՝ ասոնք հրաշքի եւ աստուածային բաներու տեղ չեն դներ, հապա սատանայական բան կը սեպեն. բայց հոգ չէ։ Ինծի եւ Աւետարանին զօրութիւնն աղէկ ճանչցողներուն՝ արեւուն լոյսէն աւելի լուսաւոր կ'երեւայ որ աս գործքը՝ Աստուծոյ մեծվայելչութեան հրաշքն է[12]։

Լուտեր մեծապէս իրաւունք ունէր աս բաներուն վրայ ուրախանալու եւ հրաշքի տեղ դնելու, որովհետեւ իր վարդապետութիւններուն տարածուելուն եւ իր աշակերտներուն շատնալուն գլխաւոր նպաստող բաներէն մէկն ալ աս էր։ Ասոր վրայ ·

10. Թէ որ Լուտերին աս խօսքերուն դատապարտութեան համար ուրիշ բան չգտնուէր նէ, միայն քիչ մը յառաջ իրմէ եւ իրեն հետեւող բողոքող մատենագիրներէն բերուած վկայութիւնները բաւական էին։

11. Աս գրուածքը՝ որ նոյն Լեանարտ Գոպէին նուիրուած է, փնտռէ Գործք Լուտ. Ենէ. Հատ. Բ. 221. — 224։

12. Գործք Լուտ. գերմ. Հատ. Բ. 378. — 381։ Տես նաեւ Ուլէնպերկ, Դրլ. ԺԱ. Համ. Գ։

բողոքող մատենագիր մը սապէս կը խօսի. «Այս բանս (քահա-նայից ու կրօնաւորաց ամուսնանալը) քահանայից մէջէն Լուտե-րին շատ կողմնակիցներ կը ստանար. որովհետեւ չինկրնար ուրա-ցուիլ որ շատերը՝ միայն անոր համար իր կողմը կը բռնէին, որով-հետեւ անով ձեռուընին առիթ կ'անցնէր՝ զիրենք ճնշող լու-ծէն ազատելու: Բայց անով խղճն եղած շահին ամենէն մեծն աս չէր. նոյն կերպով իր ստացած կողմնակիցները՝ անհամեմատ հաստատութեամբ իր կողմը կը կապուէին, իրենք իրենցմէ մեծ եռանդեամբ ետեւէ կ'իյնային որ իրենց կողմն ուրիշ մարդիկ-ներ ալ սասանան եւ Լուտերի կարծիքները տարածեն,, 13: — Այս կարգուրացները Լուտերականութեան տարածուելուն տար-բեր կերպով մ'ալ կ'օգնէին: Մէկերնէն շատերը ուրիշ միջո-ցով ապրուստ չկրնալով գտնել՝ տպարանները կը մտնէին, Լու-տերականներուն գրքերը կը տպէին, կամ ան գրքերը քաղքէ քաղաք պտըտցընելով կը ծախէին: Ան ատենուան տպարաննե-րէն շատերուն մէջ՝ Լուտերին եւ անոր կողմնակիցներուն գրքե-րէն ուրիշ բան մը չէր տպուեր: Եւ երբ որ մէկը անոնց դէմ գիրք մը տպել տալ ուզէր նէ, յանձն չէին առներ տպելու, կամ թէ տպելու ալ ըլլային նէ՝ այնչափ սխալներով կը լեցը-նէին եւ անանկ անպիտան կերպով կը տպէին, որ ամէն ձեռք առնողը կը սկսէր ուղղափառ մատենագրին վրայ ծիծաղել եւ անոր ագիտութիւնը ծաղր ընել [14]:

Բայց որովհետեւ անկարելի էր որ վանքերէն ելլող ամէն կրօնաւորները աս կերպով տպարաններու մէջ գործելով կամ Լուտերականներուն գրուածները ծախելով ապրուստնին կարենային հոգալ, մանաւանդ որ մէջերնէն շատերը կարդալ ալ չէին գիտեր, անոր համար շատերուն ապրուստնին գտնելու հա-մար մուրալէն ուրիշ ճար մը չէին գտներ: Արդ Լուտեր աս բանս տեսնելով՝ ուզեց դարման մը ճարել եւ իրենց ապրուստ հոգա-լու ետեւէն կ'իյնար, որպէս զի չըլլայ որ ուրիշ կրօնաւորներն ալ անոնց ողորմելութիւնը տեսնելով՝ անոնց հետեւելէն ետ կե-նան: Անոր համար յայտարարութիւն մը դուրս հանեց (1523ին), որուն մէջ կը վարդապետէր որ բոլոր վանքերը ջնջելու, եւ ա-նոնց ամէն ինչքերը ինչպէս նաեւ բոլոր եկեղեցականներուն ստացուածները ձեռուըներնէն առնելու եւ բոլոր ժողովուած ստակը հետեւեալ կերպով գործածելու է: Հասարակաց արկղ մը դնելու է, կ'ըսէր, ուր որ բոլոր վանքերուն, եպիսկոպոսնե-րուն եւ առհասարակ ամէն եկեղեցական ստացուածներուն

13. Բրանդ, Գիրք Գ. Հատ. Բ. 78: — Ռոֆֆէլլ, Գիրք Բ. Գլ. Զ. 263: Տես նաեւ Օսէն, Հատ. Բ. Գլ.

14. Թուղթք Երազմայ, առ ԾԱ. 157. — 160:

մուտքերը ժողվելու. եւ աս առակը եօթնէն եկած մարդիկնե- րուն բաժնելու է: Առաջին մասը կամ բաժինը՝ հովիւներուն, քարոզիչներուն եւ հասարակաց արկեղ վերակացուներուն տա- լու է. երկրորդը՝ ուսուցիչներուն, որոնք որ, կ՚ըսէր, միջէն կրօնաւորները հանած վանքերը պէտք է որ սկսին վարդապետու- թիւն ընել. երրորդը՝ ծերերուն, հիւանդներուն ու գործքի մը զբաղելու չկրցողներուն. չորրորդը՝ որբերուն ու տուն տեղ չունե- ցողներուն. հինգերորդը՝ աղքատաց ու պարտատէրերնին վճարել չկրցողներուն. վեցերորդը՝ օտարներուն ու պանդուխտներուն. եօթներորդը՝ շինուածներուն նորոգութեան ու պահպանու- թեան. ութերորդը՝ ցորենի շտեմարաններ շինելու[15]: — Ամէն մարդ կրնայ ինք իրեն հասկընալ թէ զինչ կ՚իմանար Լութեր՝ հո- վիւ, քարոզիչ, ուսուցիչ, ծեր, հիւանդ, գործքի մը զբաղել չկրցող, որբ, տուն տեղ չունեցող... ըսելով, ինչու որ աս ամէն բաները կրնայ վանքերէն զուրս ելլող կրօնաւորներուն ու կուսանքներուն վրայ առնուիլ:

Լութեր թէպէտ եւ աս բոլոր հոգացողութիւնն ըրաւ, բայց չկրցաւ բաղձանքին հասնիլ եւ ան ողորմելիները վերջին թշուառութենէ ազատել: Ինք ասոր վրայ այսպէս կը ողբայ (1524ին): Ինծի կ՚երեւայ որ, կ՚ըսէ[16], բանին ան աստիճանի պի- տի հասնի որ դպրոցներուն վարպետները, ժողովրդապետներն ու քարոզիչները՝ կարօտութիւննին լեցնելու եւ ապրուստնին հոգալու համար ձեռագործի պարապելու պիտի ստիպուին: Յա- ռաջագոյն անթիւ անհամար կրօնաւորներուն, կուսանքներուն, քահանաներուն պէտքը՝ ժողովուրդը հարկաւոր եղածէն աւելի կը հոգար. բայց հիմա ճշմարտութեան վարդապետները՝ որոնք Աստուած կը խաւրէ եւ որոնք աշխարհքիս ծայրերէն մեծ ծախ- քերով բերել տալու էր, բոլորովին երեսի վրայ թող տրուած են: Ուր որ յառաջագոյն հարիւր լկտի մարդիկ յղփութեամբ կ՚ապրէին, հիմա կարելի չէ որ նոյն տեղը երեք յարգելի ու գիտուն քարոզիչ կարենան ապրիլ[17]:

Բայց ինչ էր ասոր պատճառը, եւ ինչ բանի գործածուե-

15. Աւ. Օտէնք. Հատ. Բ. Գլ. ԺԲ. 167:

16. Գործք Լութ. գերմ. Հատ. Ը. 386. Բ:

17. Մենցլ՝ Լութերին աս նեղութեան վրայ գրածն՝ ընդարձակ յառաջ կը բերէ եւ վրան աս խօսքը կ՚աւելցնէ: "Որչափ որ յառաջագոյն եկեղեցականաց հարստութեան ու ժամանակաւոր ընչից դէմ առատ- պութեամբ խօսած էր նէ, նոյնչափ ալ հիմա ատոր կը նեղուէր որ աշխարհականներն իրենք զիրենք հա- րստացնելու համար աս ինչքերուն վրայ կը յարձակէին, եւ ամենեւին մէկը պատրաստութիւն չէր ունե- նար եկեղեցւոյն պահպանութեան ... համար բան մ՚ընելու»: Հատ. Ա. Գլ. Զ. 231: — Տես նաեւ աս Գրքին Թ. Գլխոյն մէջ Լութերին աս նեղութեան վրայ գրածները:

ցած կամ ի՞նչ եղած վանքերուն ու եկեղեցիներուն ան մեծա-մեծ հարստութիւնները, որոնց վրայ խօսելով՝ Լուտեր իշխաններուն կ'ըսէր թէ Ձեր երկիրները գտնուած ամենէն աղքատիկ վանքին մէջն ալ՝ ոսկւոյ, արծաթոյ եւ պատուական քարերու ստուարիկ առատութիւն կը գտնուի[18]: Ասիկա պատմութիւնը աղէկ կը ցուցընէ: Թէպէտ եւ Լուտեր իր յայտարարութեան մէջ իշխաններուն՝ աս ստակներէն մասն չէր հաներ, բայց իրենց սպառնալիքներ կ'ընէր թէ որ վանքերուն ու եկեղեցիներուն ստակները կրօնաւորներուն ու քահանաներուն ձեռքէն չվերցընելու ըլլային[19]: Արդ իշխանները՝ որոնք երկայն ժամանակէ վեր Լուտերին խօսքերէն գրգռուելով՝ վանքերուն ու եկեղեցիներուն հարստութեանց աչք տնկած էին, եւ շատերն ալ արդէն անոր համար իր ետեւէն կ'երթային ու իրեն կողման զօրանալուն կը բաղձային, որ աս ստակները կարենան յափշտակել, երբ որ Լուտերին վերջին յայտարարութիւնը դուրս ելաւ նէ, իրենց իրաւունք կը սեպէին աւարին բաժանման անձամբ ընել, եւ արդէն Լուտեր ալ իրենց աս իրաւունքը տուած էր[20]. եւ չէր կրնար ըլլալ որ իրենց ալ մաս չհանէին: Բայց ասոնք չէ թէ միայն իրենց մաս հանեցին, հապա նաեւ բոլորն իրենք յափշտակեցին, եւ հազիւ վանքերէն ելլող կրօնաւորներուն ձեռքը՝ միայն այնչափ ստակ կու տային, որ կրօնաւորական զգեստնին փոխելով՝ կարենան ճամբաները պտըտիլ ու մուրանալ[21]: Աս իշխաններէն շատերը՝ զէնքով ու զօրքով՝ եկեղեցիներուն ու վանքերուն վրայ կը յարձակէին, եւ բոլոր գտած արծաթնին, ոսկիննին եւ ուրիշ ազնիւ բաներնին կը յափշտակէին կ'առնէին, շատ անգամ ստուարիկ արիւն ալ կը թափէին[22]:

18. Ա. Օտենի, Հատ. Բ. Գլ. ԺԲ. 167:

19. Նոյն տեղը:

20. Գործք Լուտ. գերմ. Հատ. Բ. 249:

21. Լսենք դարձեալ հոս ալ՝ շատ անգամ յիշուած բողոքական մատենագրին խոստովանութիւնը: "Երբ որ, կ'ըսէ, մեծամեծ ու ստորին մարդիկներուն աչքերը այնչափ անգամ քարոզուած էր որ եկեղեցական կարգին՝ Քրիստոսի եւ առաքելոց օրինակին համեմատ՝ միայն խոնարհութիւն ու աղքատութիւն կը վայլէ, եւ թէ եկեղեցականք՝ անիրաւութեամբ իշխանութիւն ու հարստութիւն ստացած են. զարմանալու բան մը չէր որ մեծամեծները ական եկեղեցականներուն ինչքերը՝ իբրեւ անիրաւութեամբ ստացուած բաներ՝ կրցածնուն չափ յափշտակել. իսկ ստորին մարդիկները՝ նաեւ եկեղեցականներուն աղքատիկ ապրուստին համար հարկաւոր եղած տուրքերն ու հարկերը չտալ": Մենցլ, Հատ. Ա. Գլ. Ձ. 231:

22. Փրանկ. Սիքինկէն՝ Լուտերին մեծ բարեկամն ու բողոքողութեան ստուարիկ պաշտպանը, որն որ Վորմսի ատենաժողովին ատեն՝ Հուդդենին եւ ուրիշ ազնուականներուն հետ մէկտեղ՝ Լուտերը պաշտպանելու պատրաստ կեցած էր (տես Գիրք Ա. Գլ. Ը. Ծանօթ. 34.) տասներկու հազար հոգւով Գրիերի արքեպիսկոպոսին երկրին վրայ ինկաւ, շատ արիւն ըրաւ ու ստուարիկ աւար առած տեղը դարձաւ: Սիքինկէնին եւ ուրիշ իրեն պէսներ-

Չէին ալ ամըչնար աս կերպով յափշտակած բաներնին վրանին իբրեւ զարդ կրել կամ անոնցմով իրենց կանայքն ու աղջիկները զարդարել, եւ եկեղեցիներուն սրբազան անօթները սեղաններնուն վրայ գործածել:

Արդ Թէպէտ աս բաները մէկ կողմանէ Նորոգչին կամացը դէմ էին, բայց մէկալ կողմանէ ալ իրեն շատ հաճութիւն պէտք էր որ պատճառէին, որովհետեւ աղէկ գիտէր ու կը տեսնէր որ աս եկեղեցիներուն ու վանքերուն ընչից յափշտակութիւնը՝ իր կողմն ըլլողները հաստատուն բռնելու համար ինչ զօրաւոր միջոց է: "Վանքերուն ինչքերը, կ'ըսէ Օտէն[23], Տերտուղիանոսին ըսած արեան սերման կը նմանէին, որոնք Նորոգութեան՝ ամէն օր նոր նոր աշակերտներ կը ծնանէին,,: Աս բանս այնչափ յայտնի է, մինչեւ ինք Լուտեր ալ կը խոստովանի. Շատերը, կ'ըսէ, անոր համար Աւետարանին (իր մոլորութիւններուն) ետեւէն կ'երթան, որովհետեւ եկեղեցիներուն ու վանքերուն մէջ դեռ շատ ինչք ու հարստութիւն կայ[24]: — Ալպերդ Պրանտէնպուրկի սահմանակալ կոմսը՝ որն որ Տեւտոնեան կարգի ասպետներուն գլուխն էր, հաւատքն ուրանալով՝ Լուտերին կողմն անցաւ, միայն անոր համար որպէս զի կարենայ Պրուսիայի մէկ մասը՝ որն որ նոյն կարգին ստացուածքն էր, իրեն սեպհականել. եւ ուզածն ալ ըրաւ: Աս բանս իրեն խրատ տուողը՝ Լուտերն էր. "անգամ մը հետը տեսնուած ատեն՝ Լուտեր "իրեն խրատ տուաւ որ, կ'ըսէ Ռանքէ, կարգին կանոնները մէկդի թողու, կարգուի, եւ Պրուսիան՝ աշխարհական ժառանգական իշխանութեան դարձընէ,,[25]:

դիկներուն՝ որոնց մէջ շատ երեւելի է Հուգգէն, ըրած աւարառութեանց, յափշտակութեանց, եւ ուրիշ անօրէնութեանց, Գերմանիայի քանի մը իշխանաց եւ մանաւանդ եկեղեցական իշխանաց դէմ ըրած անիրաւ պատերազմներնուն, տանց պատճառ՝ անոնց երկիրներուն վրայ յարձակելնուն . . . վրայ երկայն կը խօսի Ռանքէ, Գիրք Գ. Գլ. Դ. Հատ. Բ. 101. — 124: — Ցակհաննէս Ծաքսոնիայի կայսրընտիրը, Փրեդերիկոս կայսրընտրին եղբայրը, եւ անկից ետեւ բողոքողութեան պաշտպանը, զօրքով շատ վանքեր կողոպտեց: Վանքի մը վրայ երթալէն քանի մը օր յառաջ մարդ կը խրկէր ու վանքին մէջ գտնուած ամէն բաներուն ցանկը կ'ուզէր: Ետքը նոյն ցանկը ձեռքն առած՝ զօրքով վանքը կ'երթար, առաջնորդն առջեւը կը կանչէր, եւ թղթին մէջ գրուած բաներէն ուզածը կը յափշտակէր կ'առնէր: Եւ վայ ան առաջնորդին՝ որն որ դէմ դառնալու կը յանդգնէր. յանդգնութիւնն արեամբը պէտք էր որ ջնջէր: Շատ բողոքող մատենագիրներ նոյն ժամանակները Գերմանիան՝ աւազակներու այրի պէս կը ստորագրեն. եւ շատ իշխաններուն վրայ կը պատմեն որ եկեղեցիներէն ու վանքերէն յափշտակած հարստութիւններնուն համար շատ անգամ իրարու հետ կը պատերազմէին:

23. Հատ. Բ. Գլ. ԺԲ. 166:

24. Առ Օտէնի, Հատ. Բ. Գլ. ԺԲ. 166:

25. Գիրք Գ. Գլ. Ե. 180: Տես նաեւ Մէնցլ, Հատ. Ա. Գլ. Ձ. 218. — 221: Կուստաւ Ֆիցեր, Գլ. ԺԸ. 359, 360:

ընտիրը ժողովքի եկած չէր. բայց իր ատենադպիրները խօսուած կամ գործուած բաները շուտ մը գրով իրեն կ'իմացընէին. Սփալադինն ալ անմիջապէս բոլորը Լութերին ականջը կը հասցընէր։

ան. իրենց ազգի թուլութեամբը՝ ու աստիճանի ստորնանալուն եւ զօրանալուն պատճառ եղան. իրենց կը ցուցընէ որ եկեղեցական յեղափոխութեան ետեւէն պէտք է որ ուրիշ սաստիկ քաղաքական յեղափոխութիւն մ'ելլէ։ "Չէ՞ք տեսներ, կ'ըսէ, որ աս ամէն բաները՝ Լութերի եւ իրեն հետեւողներուն դիտած չարիքներուն սկիզբն է։ Կը կարծէ՞ք որ ան ամպարշտութեան որդիքը ուրիշ բան մը կը գիտեն, քան թէ ազատութեան անունովը՝ բոլոր հնազանդութիւնը մէկդի նետել, եւ ամէնքն ալ ան աստիճանի յանդգնութեան հասցընել որ ամէն մարդ իր ուզածն ընէ։ Ի՞նչպէս կրնայ ըլլալ որ ձեր օրէնքներն ու հրամանները յարգեն ու պահպանեն անոնք՝ որոնք Ս. Հարց որոշմունքները եւ նոյն իսկ Ս. Ժողովքներուն կանոնները չէ թէ միայն կ'արհամարհեն, հապա նաեւ սատանայական կատաղութեամբ կը պատռեն ու կ'այրեն, որոնք որ քահանայից, եպիսկոպոսաց, քահանայապետին հնազանդիլ չեն ուզեր։ Կը յուսա՞ք որ Աստուծոյ նուիրուած ինչքերը ձեր աչքին առջեւ կողոպտողները՝ սրբապիղծ ձեռքերնին նաեւ աշխարհականաց ինչքերուն ալ չեն երկընցըներ։ Ի՞նչպէս կրնան ձեր գլուխներուն խնայել անոնք՝ որոնք որ զՕծեալն Տեառն անարգեցին"։ Ասոնք մէկիկ մէկիկ առջեւնին դնելէն ետեւ՝ կը յորդորէ որ գոնէ իրենց անձնական շահին համար՝ Լութերն ու անոր հետեւողները կամ ուղիղ ճամբու բերեն եւ կամ տէրութեան օրէնքները անոնց դէմ ի գործ դնեն։

Իսկ երկրորդ նամակին մէջ նոյնպէս Լութերին մոլորութիւններուն պատճառած ու պատճառելու մեծամեծ չարիքները յիշելէն ետեւ՝ խօսքն այսպէս յառաջ կը տանի։ "Գուցէ պիտ'որ ըսես. Օձը զիս խաբեց։ Իրօք ալ՝ զինքը ծոցիդ մէջ սնուցանելուդ համար՝ արժանի վարձք մ'ընդունեցար։ Բայց ի՞նչպէս կրնաս անանկ անմիտ ու անխիղճ ըլլալ, որ մանաւանդ աս կերպ նիւթերու մէջ՝ որոնց մէջ մոլորութիւնը յաւիտենական դատապարտութեան կը տանի, մեղքով աղտոտուած մարդու մը աւելի հաւատք կ'ընծայես քան թէ հնուցմէ մինչեւ հիմա եղած այնչափ Ս. Հարց, որոնք որ գիշեր ցորեկ յօրէնս Տեառն կը խորհէին, քան թէ այնչափ ընդհանուր ժողովքներուն՝ որոնց դէմ ան հայհոյիչ բերանը՝ բաց գերեզմանի մը պէս՝ անամօթութեամբ թշնամանք կը թափէ, քան թէ սուրբ եւ կաթողիկէ եկեղեցւոյն՝ որուն առաքելոց ժամանակէն մինչեւ հիմա անարատ պահած սովորութիւնները, ծէսերը եւ որոշմունքները ան դեւ հոգին սրբապիղծ յանդգնութեամբ կը դատապարտէ։ Բայց արդեօք անո՞վ խաբուեցար որ ան նենգաւոր Լութերն ու իրեն հետեւողները վարդապետութիւննին Ս. Գրոց վկայութիւններով հաստատելու կը ջանան։ Բայց ո՞ր հերետիկոսը նոյն բանն ըրած չէ։ . . . Ի՜նչ նոր ու չլսուած կուրութիւն։ Կարգուրաց մարդ մը կարո՞ղ ըլլայ համոզել որ իրմէ առաջ եղողները ամէնն ալ մոլորած են, եւ միայն իրեն եւ իրմէ խաբուողներուն տրուած է Աստուծոյ թագաւորութիւնը, աստուածային ողորմութեանց բոլոր հարստութիւնը եւ ընդհանրութեան շնորհքը։ . . . Իր ապականիչ պտուղները դեռ չյայտնուեցա՞ն։ Աստուծոյ քահանայից դէմ կը կատղի, առանց զանազանութեան բոլոր աշխարհականները կը յորդորէ որ ձեռուընին անոնց արեան մէջ լուան . . . եւ ազատութեան պատրուակին տակ ծածկուելով՝ կ'ուզէ անսանձ, ամենեւին օրէնքէ մը չկապուած եւ գրեթէ անասնական կեանք մը խօթել . . .։ Բայց ենթադրենք որ իր գործքերէն եւ անոնցմէ յառաջ եկած պտուղներէն կարող չըլլաս զանազանել թէ ինչ հոգիէ կ'առաջնորդուի. ասկից ալ չէ՞ր կրնար իմանալ որ բոլոր իր խօսքերը՝ դառն ու թիւնաւոր են, եւ անէծքներով, նախատինքներով, հայհոյութիւններով ու ժանտախտական ծաղրաբանութիւն-

Մարդ Լուտեր այս ընդունած տեղեկութիւններէն կասկածի երթալով որ չըլլայ թէ ատգաժողովին մէջ իրեն դէմ բան մը սահմանուի, Աշխարհական իշխանութեան վրայ գիրք մը դուրս հանեց, որուն մէջ գլխաւորաբար անոր ետեւէն կ'իյնայ որ իրեն դէմ դնող իշխաններն անարգ ու արհամարհ ցուցընէ, եւ անոնց իշխանութիւնն ու պատիւը ժողովրդեան աչքէն նուազցընէ։ Աստուած, կ'ըսէ գրքին սկիզբները, Գերմանիայի իշխանները յիմարեցուց, որով կը կարծեն որ ուզածնին հպատակներնուն կրնան հրամայել, պատճառ բերելով որ կայսրը անանկ պատուիրած է, եւ թէ իրենք անոր հրամանը կը կատարեն։ Բայց խելք ունեցողը՝ ատոնց նենգութիւնը կրնայ իմանալ։ Յառաջագոյն այս կերպ մարդիկները՝ սաահակ կամ չարագործ կը կոչուէին. բայց հիմա քրիստոնեայ ու կամակատար իշխան կ'անուանուին։ Արդ ասանկ մարդիկներ են, որոնք Գերմանիան կը կառավարեն. անոր համար ես միտքս դրած եմ որ գոնէ խօսքով իրենց դէմ դնեմ, որ ամպարիշտ խորհուրդնին չկրնան գլուխ տանիլ։ Թէ որ պապէն՝ Հռոմայ կուռքէն՝ չվախցայ նէ, որչափ եւս առաւել անոր թեփերէն ու պղպջակներէն (ուղղափառ իշխաններէն) չեմ վախնար [3]։

Գիրքն այս կերպով սկսելէն վերջը՝ մարդիկները երկու կարգ կը բաժնէ։ Մէկ կարգը, կ'ըսէ, Աստուծոյ թագաւորութենէն կամ արքայութենէն է, ու Քրիստոսի կը հնազանդի, իսկ մէկալը՝ այս աշխարհքիս իշխանութենէն է ու աշխարհական իշխաններուն կը հնազանդի։ Առաջին կարգին մէջ ըլլողները՝ որոնք ճշմարիտ քրիստոնեաները կամ հաւատացեալներն են, աշխարհական իշխաններու, ղէնքի եւ իրաւունքի հարկաւորութիւն չունին, ու մէջերնին մէկը չկայ՝ որ ուրիշներէն վեր ըլլայ, բայց միայն Քրիստոս։ Իսկ քահանաներն ու եպիսկոպոսները ուրիշ հաւատացեալներէն վեր չեն, հապա անոնց հաւասար են, ու միայն իրենց պաշտօնովը անոնցմէ կը զանազանուին. ասոր եւ չեն կրնար օրէնք մը դնել կամ հրաման մը տալ մինչեւ որ հաւատացեալները չհաւանին։ Մանաւանդ որ աստուածային օ-

ներով լեցուն են,,։ Հոս քահանայապետը Լուտերին՝ առաքելական Աթոռոյն, համալսարաններուն, բարձր եւ ստորին աստիճանի եկեղեցականներուն դէմ գրած նախատական խօսքերը կը յիշատակէ, համառօտ խօսքերով՝ անոր կողմէն ըլլողներէն շատերուն բնութեան ու ընթացքին միտ դնել կու տայ, որով աւելի՝ յափշտակիչ սապեաները գիտած կ'երեւայ, եւ խօսքը կը լմընցընէ ըսելով. "Կը պաղատինք քեզի, սիրելի՛ որդեակ ի Քրիստոս, եւ կ'աղաչենք մեր Փրկչին ու Տեառն Յիսուսի Քրիստոսի սիրոյն համար, քրիստոնէական միութեան սիրոյն համար, հայրենեաց սիրոյն համար, քու եւ քուկիններուդ փրկութեան համար, ողորմէ Քրիստոսի եկեղեցւոյն, . . . ողորմէ մեր հայրենեացը, . . . ողորմէ քու անձիդ եւ քու մոլորեալ Սաքսոնիայիդ . . . ,,։

3. Գործք Լուտ. գերմ. Հատ. Բ. 193. Բ. 194։

բէնքներն ալ աս հաւատացեալներուն համար չեն, հապա անհաւատներուն համար, որոնք երկրորդ կարգին մէջ են[4]։

Նա՝ ապստամբութեան, անիշխանութեան եւ անկրօնութեան գրգռող խօսքերը գրելէն ետեւ՝ ալ բարկութեան սանձը բոլորովին կ'արձակէ, ու Անգղիայի Թագաւորին դէմ գրած ատեն քովը պահած նախատական խօսքերը՝ Գերմանիայի իշխաններուն գլուխը կը Թափէ։ "Աշխարհքիս սկիզբէն, կ'ըսէ, քիչ գըտնուող Թռչուն մըն է իմաստուն իշխանը, իսկ բարեպաշտ իշխան՝ աւելի եւս դժուարագիւտ է. վասն զի ամէնքն ալ բոլոր մարդիկներէն աւելի սաստիկ յիմար են, եւ ամենէն աւելի անպիտան չարագործ։ Անոր համար մարդս անոնցմէ միշտ ամենէն գէշ բաները կրնայ վախնալ, եւ քիչ բարիք կրնայ յուսալ, մանաւանդ աստուածային բաներու մէջ, որոնք հոգւոց փրկութեան կը վերաբերին։ Ասոնք Աստուծոյ կալանաւորակապներն ու դահիճներն են, եւ Աստուծոյ բարկութիւնը՝ չարերը պատժելու եւ արտաքին խաղաղութիւնը պահելու համար զիրենք կը գործածէ։ Ինչու որ մեր Աստուածը մեծ տէր մըն է, եւ անոր համար ալ ասանկ ազնուական, երեւելի ու հարուստ դահիճներ կ'ընտրէ իրեն. եւ իր աստուածային կամքն այնպէս կ'ուզէ... որ իր դահիճները՝ բարերար տէր անուանենք։... Աշխարհքս շատ չար է, եւ արժանի չէ որ շատ խոհեմ ու բարեպաշտ իշխաններ ունենայ,,[5]։

"Բայց պիտի ըսեն որ աշխարհական իշխանութիւնը հաւատալու չստիպեր, հապա միայն արտաքուստ կը խափանէ որ մոլար վարդապետութիւններով ուրիշները չմոլորցուին. ապա Թէ ոչ՝ հերետիկոսները ի՞նչպէս կրնային խափանուիլ։ Ասոր պատասխան կու տամ որ աս բանը պէտք է որ եպիսկոպոսներն ընեն, աս պաշտօնն իրենց յանձնուած է, չէ Թէ իշխաններուն։ ...Հերետիկոսութիւնը հոգեւոր բան մըն է, ուստի ոչ երկաԹով կրնայ կործանիլ, ոչ կրակով այրիլ, ոչ ջրով ընկղմիլ։ Հապա միայն Աստուծոյ խօսքը կրնայ աս բանս կատարել[6]...։ Բայց

4. Նոյն տեղը, 195։

5. Դարձեալ նոյն տեղը. 203. Բ. 204։

6. Լուտեր կ'ուզէ որ, կ'ըսէ Ռիֆֆել, հերետիկոսութիւնը՝ միայն խօսքի զօրութեամբ արգելուի. բայց մէկ կողմանէ՝ միայն խօսքով վտարուելու է ըսած ատեն, մէկալ կողմանէ՝ Թէ ինք եւ Թէ իրեն հետեւողները գործքով ամենամեծ անիրաւութիւններ կ'ընէին. եպիսկոպոսներէն դրուած օրինաւոր ժողովրդապետները եկեղեցիներուն մէջէն բռնութեամբ կը հեռացընէին եւ տեղերնին իրենց ուզած ուրիշ մարդիկները կը դնէին, կամ անհաւատարիմ ու կարգուրաց եկեղեցականները անոնց օրինաւոր մեծերուն դէմ բռնութեամբ կը պաշտպանէին. եկեղեցականները կը ստիպէին որ հաղորդութեան խորհուրդը երկու տեսակով մատակարարեն, պատարագի զգեստ չգործածեն, պատարագ չընեն. աստանորդները չէին տար, որոնցմով որ դպրոցները, եկեղեցիները, աղքատները կը պա-

տասնեակ աշխարհքը պէտք է որ տասնեակ ալ իշխաններ ունենայ, որ մէկն ալ իր պաշտօնը չհոգայ: Պէտք է որ եպիսկոպոսները Աստուծոյ խօսքը մէկդի ձգեն, եւ հոգիները անով չկառավարեն. Հապա աշխարհական իշխաններուն հրամայելու են, որ զանոնք անով կառավարեն: Ասոր հակառակ պէտք է որ աշխարհական իշխանները՝ վաշխառութիւնը, յափշտակութիւնը, ... սպանութիւնը եւ ուրիշ չար գործքերը անպատիժ ձգեն եւ իրենք ալ գործեն. եւ թողուն որ եպիսկոպոսները նզովքի կոնդակներով պատժեն... ոգիները երկաթով ու մարմինները կոնդակներով կառավարեն. աշխարհական իշխանները՝ հոգեւորապէս, եւ եկեղեցական իշխանները՝ աշխարհօրէն կառավարեն,, [7] ...:

Խօսքը քիչ մ՚ալ աս կերպով յառաջ տանելէն վերջը՝ բուն իշխաններուն կը դառնայ, եւ անոնց հպատակները յայտնապէս ապստամբելու կը յորդորէ. "Ցաստուած կ՚երդնում, կ՚ըսէ, թէ որ դուք ձեզմէ պատճառ տալու ըլլաք որ (Սաղմոսին) աս խօսքը վրանիդ կատարուի, թէ "Եհեղ անարգութիւն ի վերայ իշխանաց,, կը կործանիք, թէպէտ եւ ամէն մէկերնիդ Ցածկէն չափ զօրաւոր ըլլաք....: Աս չարիքն արդէն շատերուն վրայ հասած է. վասն զի իշխաններուն մէջ շատ քիչերը կան, զորոնք մարդիկ յիմարի կամ չարագործի տեղ չդնեն, ինչու որ իրենք զիրենք այնպէս կ՚երեւցընեն:... Մարդիկ ասկէ վերջը ձեր բռնութիւններն ու անպիտանութիւնները պիտի չտանին, չեն կրնար ու չեն ուզեր տանիլ,... որովհետեւ Աստուած ալ չուզեր որ աս բանս ալ երկայն ատեն տեւէ: Հիմա աշխարհքս առջի ժամանակներուն պէս չէ, որ ժամանակները որ մարդիկներուն հետ իբրեւ անխօս անասուններու հետ կը վարուէիք. հիմա շատ տարբեր է,, [8]:

Ասոր ու ասոր նման ապստամբեցուցիչ խօսքեր կը գրէ Լուտեր աս գրքին մէջ. եւ թէպէտ տեղ տեղ աշխարհական իշխանու-

հեւէին. Ճամբաներու վրայ կրօնաւորներն ու կուսանքները կը նախատէին ու կը չարչարէին, եւ զիրենք իրենց բնակարաններուն մէջ հանգիստ չէին թողուր: Իրենք աս բաները կործելով կը կատարէին, եւ կ՚ուզէին որ միայն խօսքով իրենց դէմ դրուի. եւ երբ որ տեղ տեղ եպիսկոպոսները՝ աշխարհական իշխաններուն ձեռքով կամ իրենց աշխարհական իշխանութիւնը գործածելով՝ կը ջանային որ հարստահարութիւնները արգելուին կամ նոյն յանցանքները գործողները պատժեն, անմիջապէս Լուտեր կը սկսէր պոռալ. խղճմտանքներու վրայ բռնութիւն կ՚ըլլայ, հոգիները կը մեռնին, աւետարանական ազատութիւնը կը ճնշուի. իր կողման իշխանները կը գրգռէր՝ որ իշխանութեան մէջ իրենց հաւասար եղող իշխանները զարնեն, եւ իրաւացի կերպով պատժուողները՝ ճշմարտութեան նահատակ կ՚անուանէր, վրանին գովեստներ, ջատագովութիւններ կը շինէր: Գէրթ Ա. Գլ. Ե. 424, 425:

7. Գործք Լուտ. գերմ. հատ. Բ. 204:

8. Նոյն տեղը, 204. Բ. 205:

թեան՝ Աստուծմէ հաստատուած ըլլալը կը ցուցընէ, ու հաւատացեալները անոնց հնազանդելու պարտական են, կ'ըսէ, գուցէ իրեն հետեւող եւ իր կողմը բռնող իշխանները չբարկացընելու համար. բայց ասոնցմով մէկալ ապստամբեցուցիչ խօսքերուն ըրած ազդեցութիւնը չկրնար ջնջել: Ու արդէն աս ապստամբեցուցիչ խօսքերը քիչ մը ետքը իրենց պտուղները բերին, ինչպէս որ իր տեղը կը տեսնենք[9]:

Բայց Լուտեր իշխաններէն այսչափ վախնալու կամ իրենց դէմ այսպէս կասկածելու եւ սաստիկ բաներ գրելու պատճառ չունէր. որովհետեւ իրենք ժողովքին մէջ անոր դէմ մեծ փոյթ մը չէին ցուցըներ: Աս իշխաններէն շատերը՝ կրօնք բաները երեւելի բանի տեղ չէին դներ, եւ Օտէնին բսածին պէս[10], իբրեւ թէ կը սպասէին որ Լուտերին՝ Դրիէրի արքեպիսկոպոսին ըրած խօսքը կատարուի. այս ինքն "Թէ որ աս գործքս Աստուծմէ է նէ՝ դուք չէք կրնար դէմ դնել, իսկ թէ որ մարդիկներէն է՝ ինք իրմէ կը կործանի"[11]: Դարձեալ շատերը արդէն անոր կողմը միտած էին, ու վանքերուն եւ եկեղեցիներուն աւարը, որոնք որ կողոպտած էին եւ կամ կողոպտելու յոյս ունէին, աչուընին կը շլացըներ: Ոմանք ալ թէպէտ եւ Լուտերին կողմը միտած չէին, մանաւանդ թէ անոր վարդապետութիւններէն ծագած ու ծագելու չարիքները տեսնելով՝ կը բաղձային որ առջեւն առնուի, բայց անոր կողմնակից եղողներէն կը վախնային. մանաւանդ նոյն իսկ Լուտերէն կը դողային, որովհետեւ ինչ բանի որ լեզուն կամ գրիչը կը դպցըներ նէ՝ շուտ մը կ'այրէր կը տոչորէր: Կային ստուգիւ նաեւ ոմանք ալ՝ որոնք ուղղափառութեան ու ճշմարտութեան սիրովը բորբոքած ըլլալով՝ չարիքները խափանելու համար ամէն միջոց գործածել կ'ուզէին, մանաւանդ թէ արդէն ձեռք ալ զարկին աս մտքերնին դրածնին գլուխ տանելու. բայց բազմութիւնն իրենց դէմ կեցաւ: Եւ իրօք ալ ինչ կրնային ընել քանի մը իշխաններ այնչափ բազմութեան դէմ[12]: Ուստի աւագաժողովն ուրիշ բան չկրը-

9. Լուտեր աս իր գիրքն այնչափ կը հաւնի որ տեղ մը վրան յիշատակութիւն ընելով՝ կը գրէ որ "Գրեթէ կրնայի պարծիլ թէ առաքելոց ժամանակէն վեր աշխարհական սուրն ու իշխանութիւնն ամենեւին այնպէս յայտնի նկարագրուած եւ այնչափ շատ գովուած չէ ինչպէս իմ ձեռքովս, եւ ասիկա թշնամիներս ալ պէտք է որ խոստովանին": Բայց անմիջապէս ուրիշներուն նոյն գրքին վրայ ունեցած համարումն ալ կ'աւելցընէ, եւ այսպէս կը գրէ. "Սակայն ասոր փոխարէն իբրեւ վարձք շատ մեծ շնորհակալութիւն կ'ընդունիմ, որովհետեւ վարդապետութիւնս՝ իբրեւ ապստամբեցուցիչ եւ իբրեւ իշխանութեան դէմ գրգռող կը բամբասուի ու կը դատապարտուի": Առ Կոսոփ. Ֆէյնէր, Գլ. ԻԱ. 499. 500: Տես Նախ. ի Գործս Լուտ. երմ. Հատ. Զ. 6:

10. Հատ. Բ. Գլ. Ե. 69:

11. Տես եր. 117, 118:

12. Օտէն, Հատ. Բ. Գլ. Ե. 72. 76:

յաւ կամ չուզեց ընել, բայց աս միայն՝ որ կայսեր անունովը վճիռ մը հանեց, որուն մէջ կը հրամայէր որ աւետարանը՝ Ս. Հարց մեկնութիւններուն համաձայն քարոզուի ժողովրդեան. եպիսկոպոսները՝ Ս. Գրոց հմուտ մարդիկ որոշեն, որոնք մոլորեալները սիրով խրատեն, եւ մոլորութիւններնուն մէջ յամառած մնացողները պատժեն. մինչեւ որ ընդհանուր ժողովք մը ժողվուի նէ՝ ամենեւին գիրք մը չտպուի, առանց յառաջագոյն առաջնորդներուն սահմանած մարդիկներէն քննուելու. իսկ ամուսնացող քահանաներն ու կրօնաւորները՝ կանոններուն համաձայն պատժուին 13։

Լուտեր աս վճիռը տեսաւ նէ՝ շատ ուրախացաւ, ինչու որ մէջի խօսքերը ծռմռտկելով՝ բոլոր իր կողմը կրնար առնել կամ ուզածին պէս մեկնել. եւ իրօք ալ վճռոյն վրայ մեկնութիւններ դնելով՝ շուտ մը տպել տուաւ եւ ամէն կողմ տարածեց։ Եթէ որ, կ՚ըսէր, աս վճիռը կատարուելու ըլլայ նէ, ես պապին նզովքէն ու կայսեր տուած տարագրութեան վճռէն ազատ եմ։ Աս վճիռը, կ՚ըսէր դարձեալ, իշխաններէն չէ, հապա Աստուծմէ է, որ զիրենք աս վճիռը տալու ստիպեց։ — Միայն անոր կը բարկանար որ վճռոյն մէջ՝ ամուսնացող քահանաներուն ու կրօնաւորներուն պատիժ սահմանուած էր 14։

Նոյնպէս Նիւռնպերկի աս աւագաժողովը առանց օգուտ մը ընելու լմննալէն վերջը (1523ին, Մարտի մէջ), երկրորդ տարւոյն (1524ին) սկիզբը նոյն քաղաքը նորէն աւագաժողով մ՚եղաւ։ Աս անգամ կայսեր փոխանորդը՝ իր եղբայրը Փերդինանդոսն էր։ Կղեմէս Է. քահանայապետը՝ որն որ Ադրիանոս Զ.ին տեղը նստած էր (1523ին, Նոյեմբերի 19ին), նոյն աւագաժողովը դեսպան խաւրեց Լաւրենտիոս Գամբեճճիոն, որն որ ժո-

13. Սլէյտան, Գիրք Դ. 47. Բ. 48։ Բլանք, Գիրք Դ. Հատ. Բ. 164, 165։ Ռիֆէլ, Գիրք Ա. Դլ. Զ. 378, 379։ Կուստաւ Ֆիցէր, Դլ. ԺԶ. 322, 323։ Իսկ բուն վճիռը տես ի Գործս Լուտ. լատ. Հատ. Բ. 385. Բ։ — Նոյն ժողովքին մէջ Լուտերին կողմէ եղող իշխանները գրուածք մը տուին քահանայապետին դեսպանին, որն որ Հարիւր զանգատ (Centum gravamina) կ՚անուանուէր։ Ասոր մէջ հարիւր զրկանք կամ անիրաւութիւն գրած էին, որոնք որ, կ՚ըսէին, քահանայապետները Գերմանացւոց ազգին դէմ ըրած են, եւ սաստկութեամբ կը խնդրէին որ աս զրկանքներուն տեղ իրենց հատուցում եւ իրաւունք ըլլայ։ Եւ թէպէտ դեսպանը չուզեց ան գրուածքն ընդունիլ, եւ խնդրեց որ գոնէ խօսքին եղանակը փոխեն ու շատ բաներ մէջէն հանեն, որոնք յայտնապէս քահանայապետին իշխանութիւնը ջնջելու համար գրուած էին, բայց իշխանք ամենեւին ետ առնել կամ մէջէն բան մը փոխել չուզեցին, մանաւանդ որ արդէն տպած եւ ամէն կողմ տարածած էին։ Բողոքողներն աս գրուածքը ետքը շատ անգամ աւագաժողովներուն մէջ կը բերէին, եւ սաստիկ յամառութեամբ կը պահանջէին որ մէջը դրուած բաները կատարուին։

14. Գործք Լուտ. լատ. Հատ. Բ. 387. Բ. — 390։

ողովքին մէջ ճառ մը խօսելով, Նախ քահանայապետին՝ Գերմանացւոց ազգին վրայ ունեցած սէրը ցուցուց․ ետքը Լուտերին մոլորութիւններէն ծագելու մեծամեծ վնասներուն վրայ խօսեցաւ, եւ քահանայապետին անուամբը իշխաններուն խոստատուաւ որ նոյն չարիքներուն առջեւն առնելու ջանան, որոնք, ըսաւ, չէ թէ միայն կրօնին հապա նաեւ տէրութեան կործանման պատճառ պիտ՚որ ըլլան։ Չարիքներուն առջեւն ալ առնելու միակ հնարքն ան է որ, ըսաւ, Լեւոն Ժ․ին կոնդակին ու Վորմսի աւագաժողովին վճիռը կատարուի [15]։ Նոյն բանը կայսեր անուամբը խնդրեց Յովհաննէս Հաւնարդ՝ կայսեր ճարտարախօսը․ եւ անոր կողմանէ իշխաններուն դէմ տրտունջ ըրաւ որ բոլոր Գերմանիայի աւագանւոյն հաւանութեամբը Վորմսի աւագաժողովին մէջ տրուած վճիռը՝ այնչափ ժամանակ կատարելու փոյթ չեն ունենար [16]։

Երկայն ատեն աս բաներուն վրայ խորհելէն ու խօսելէն ետեւ՝ վերջապէս որոշեցին թէ քահանայապետին աղաչեն որ շուտ մը Գերմանիայի քաղքի մը մէջ ընդհանուր (եկեղեցական) ժողովք մը գումարել տայ, որն որ որոշում տայ ան նիւթերուն վրայ՝ որոնց պատճառաւ այնչափ խռովութիւններ ու շփոթութիւններ կ՚ըլլան։ Աս ալ որոշեցին որ իրենք ալ նորէն նոյեմբերի 11ին Շփայէր քաղաքը ժողվուին, եւ հոնտեղը հաստատեն թէ մինչեւ որ ընդհանուր ժողովքը ժողվուի նէ՝ ամէն մարդ ինչպէս պիտի վարուի։ Դարձեալ որոշեցին որ իշխանները, մանաւանդ երկիրներնուն մէջ համալսարան ունեցողները, երեւելի վարդապետներուն քննել տան թէ Լուտերի գրքերուն մէջէն ինչ բան կրնայ ընդունուիլ եւ ինչ բան պէտք է մերժել, որպէս զի Շփայէր ժողվուած ատեննին՝ ասոր վրայ կարենան որոշմունք մ՚ընել։ Իսկ Վորմսի վճռոյն համար ըսին թէ իշխանները կրցածնուն չափ ջանան իրենց երկիրներուն մէջ նոյն վճռոյն հրամանները կատարել [17]։

Աս որոշման դէմ դարձաւ քահանայապետին դեսպանը, եւ իրաւունք ալ ունէր, որովհետեւ անգամ մը Ս․ Աթոռէն դատապարտուած անձը՝ նորէն քննութեան տակ կը ձգէր, ան ալ՝ աշխարհական մարդիկներու քննութեան ու դատաստանին տակ [18]։ Դեռ նոյն որոշմունքը կամ վճիռը չհրատարակուած՝

15․ Սեքենտորֆ, Գիրք Ա․ Հատ․ ճԿԳ․ Յաւել․ Ա․ 289։

16․ Բլանք, Գիրք Գ․ Հատ․ Բ․ 170։ Ուլէնպերկ, Գլ․ ԺԲ․ Հատ․ Ա։

17․ Սլէյտան, Գիրք Դ․ 57։ Ռանքէ, Գիրք Գ․ Գլ․ Դ․ Հատ․ Բ․ 142։ Մենցլ, Հատ․ Ա․ Գլ․ Գ․ 152։ Ուլէնպերկ, Գլ․ ԺԲ․ Հատ․ Ա։

18․ Մենցլ (Հատ․ Ա․ Գլ․ Գ․ 153․) կը ցուցընէ որ աս վճիռը եկեղեցւոյ ազատութիւններուն որչափ հակառակ էր։ — Քահանայապետն ալ՝ կայսեր թուղթ մը գրելով՝ (1524ին, Մայիսի 17ին) աս վճռոյն դէմ տրտունջեց։ Աս թուղթը տես առ Ռայնալտի, Տարեգր․ Հատ․ Ի․ 404։

իրենց ցուցուց որ մէջի բաները անպատշաճ ու միապաղաղ են. աս ալ աւելցնեմ գրաւ որ Վորմսի աւագաժողովին վճիռը կատարուի ըսելնին՝ օգուտ մը չունի, որովհետեւ "Իշխանները կրցածնուն չափ կատարելու ջանան,, ըսելով՝ ամենուն ձեռքը իշխանութիւն կու տային աս վճիռն արհամարհելու։ Բայց աս իմաստուն խրատներուն լսող չեղաւ։ Սակայն եւ ոչ Լութեր նոյն վճռոյն վրայ գոհ եղաւ. ձեռքն առած կարդացածին պէս՝ սկսաւ իշխաններուն ու նոյն իսկ կայսեր դէմ գրել։ Շուտ մը Վորմսի ու Նիւրնպերկի աւագաժողովներուն վճիռները տպել տուաւ, եւ վրան այնպիսի խօսք մ'աւելցուց, "որուն նման ամպարիշտ խօսքեր երբեք կայսեր մը գրուած չէր,, կ'ըսէ Լեւոն[19]։ "Աս կայսերական վճիռներն անոր համար տպել տուի, կ'ըսէր Լութեր, ... որ գուցէ Աստուած իշխաններէն ոմանց սիրտն ատով շարժէ, որպէս զի ձեռքը շօշափեն եւ զգան (չեմ ըսեր՝ տեսնեն, վասն զի խօզն ու էշն ալ կրնայ տեսնել,) թէ որչափ կոյր ու խստապարանոց են։ Ստուգիւ մեծ ամօթ է որ կայսրն ու իշխանները հրապարակաւ սուտ խօսին. սակայն աւելի մեծ ամօթ է որ մի եւ նոյն ժամանակ իրենք իրենց հրամանին հակառակ հրաման կու տան։ ... Աս իշխանները գինով են եւ կը մոլին,,[20]։

Հոսաեղս խել մը ուրիշ խօսքեր խօսելէն ետեւ՝ որոնք զինքը ստուգիւ գինով կամ՝ յիմար կը ցուցընեն, երկու վճիռները կը բերէ, քովերնին զանազան մեկնութիւններ դնելով, ու ետքը բոլոր գրուածքն ասանկ կը լմնցընէ։ "Ամէն քրիստոնեաներուն կ'աղաչեմ որ բոլորը մէկտեղ ասանկ ողորմելի ու կոյրցած իշխաններու համար աղօթք ընեն, որոնց ձեռքովը Աստուած իր սաստիկ բարկութեան մէջ զմեզ կը պատժէ։ Ան- նե-էն իրենց եռ-էն չէրմանէ, թէ պատերազմի երթալու ըլլան, թէ անհաւատներուն դէմ մեր օգնութիւնը խնդրեն, ինչու որ անհաւատները մեր իշխաններէն իմաստուն ու արդար են։ Ինչ կրնան ընել անհաւատներուն դէմ աս խենթերը՝ որոնք այնպէս սաստիկ զԱստուած կը փորձեն ու կը հայհոյեն։ Ահաւասիկ՝ թշուառական, մահկանացու եւ որդանց ծրար՝ կայսրը, որուն կեանքը եւ ոչ մէկ րոպէ մը ապահովութեան մէջ է, անամօթութեամբ կը պարծի որ քրիստոնէական հաւատքին պաշտպանն է....։ Արդ աս ամէն բաներուն համար բոլոր սրտանց հեծութիւնս բոլոր քրիստոնէից առջեւը կը դնեմ, որ ինծի հետ մէկտեղ աս բախած, անմիտ, յիմար, կատաղի ու մոլի մարդիկներուն (այս ինքն իշխաններուն ու կայսեր) ողորմին։... Աստուած

19. Մասն Գ. Հատ Ա. Գլ. Ա. 112։

20. Գործք Լութ. գերմ. Հատ. Բ. 420։

ըներ իրենց յետոյէն աղաչէ եւ էր շնորհօք ուրէշ կատարելոյներ զայ մեղք. ամէն» 21 ։

Նմէն մարդ յայտնի կը տեսնէ որ Լուտեր ամենուն ձեռքը սուր կու տայ որ իրենց օրինաւոր իշխաններուն ձեռքէն ազատելու ջանան ։ Ստոյգ է մէկ կողմանէ իրաւունք ունէր ըսելու որ իշխանները մի եւ նոյն ատեն իրարու հակառակ հրամաններ կու տան․ որովհետեւ Մեմինգուրկին քաղծին պէս՝ Թէ որ իրենց վճռոյն համեմատ՝ Վորմսի աւագաժողովին Լուտերը իբրեւ հերետիկոս դատապարտող վճիռը կատարելու է նէ, ինչո՞ւ ուրեմն միանգամայն կը հրամայեն որ անոր գրքերը նորէն քննուին ։ Իսկ թէ որ վարդապետութիւնը քննելու է նէ, ինչո՞ւ միանգամայն կը հրամայեն որ աս քննութիւնը չեղած՝ Լուտեր պատժուի, ինչպէս որ Վորմսի աւագաժողովին վճիռը սահմանած էր 22 ։ — Բայց թէպէտ եւ Լուտեր աս կողմանէ իրաւունք ալ ունենայ, ի վերայ այսր ամենայնի օրինաւոր իշխաններուն դէմ աս կերպով խօսիլն ու ժողովուրդը անոնց դէմ յայտնապէս ապստամբութեան գրգռելը՝ աւետարանչի, առաքելոյ, նորոգչի գո՞րծք է արդեօք․․․ ։

Իշխանները աս վրան խօսուած վճիռը տուածնուն պէս՝ շուտ մը աւագաժողովը լուծուեցաւ (1524ին, Ապրիլի 18ին), եւ ամէն մարդ իր տեղը դարձաւ․ իսկ Գամբեճճիոյ աղաչհովութեան համար մինչեւ Շդուդկարդ՝ կայսեր եղբօրը հետ գնաց ։ Եւ որովհետեւ, ինչպէս տեսանք, կրօնի բաներուն վրայ աւագաժողովին մէջ պէտք մտադրութեամբ ու փութով մտածուած ու երեւելի բան մը որոշուած չէր, անոր համար Գամբեճճիոյ ու կայսեր եղբայրը մէջերնին խօսք ըրին որ եպիսկոպոսներէն ու անկեղծութեամբ ուղղափառ կրօնքին կողմն ըլլող իշխաններէն քանի մը հոգի մէկտեղ ժողվուին, եւ խորհուրդ ընելով՝ հնարք մը գտնեն, որով կարենան ամէն մէկը իր երկիրը նոր մոլորութեանց թոյնէն եւ անոնց հետեւութիւններէն պահպանել ։ Արդ աս բանիս համար շատ իշխաններ Ռեկենսպուրկ քաղաքը ժողվուելով՝ երկայն ատեն խորհուրդ ընելէն վերջը՝ հաստատեցին որ Վորմսի աւագաժողովին վճիռը իրենց երկիրներուն մէջ ի գործ դնեն․ թող չտան որ աստուածային պաշտամանց, խորհուրդներու մատակարարութեան, եկեղեցւոյ ծէսերուն եւ աւանդութեանց մէջ ամենեւին փոփոխութիւն մ՚ըլլայ․ ամուսնացող քահանաներն ու վանքերէն դուրս ելլող կրօնաւորները օրինաց համաձայն՝ պատժեն․ աւետարանը Ս․ Հարց ու եկեղեցւոյ վարդապետներուն աւանդութեան համե-

21 . Նոյն տեղը, 432. լատ. Հատ. Բ. 452 ։ 22 . Գիրք Բ. 90 ։

մաս քարոզել տան. իրենց հպատակներէն՝ ուսում սորվելու համար Վիդդենպերկի համալսարանը դառնողներին եւ դարձընեն, եւ թէ որ մէկը դառնալ չ'ուզեր նէ՝ բոլոր ստացուածքը ձեռքէն առնուի ու անկէ ետեւ պաշտօնի կամ իշխանութեան մը չկրնայ հասնիլ: Բոլոր խօսքերնին աս բառերով կը լմընցընեն. "Դուք թէ որ մէջերնէս մէկը կամ ոմանք՝ աս մեր քրիստոնէական գործողութեան պատճառաւ՝ հակառակութեան, անհնազանդութեան կամ ապստամբութեան մը պատահելու ըլլայ իր հպատակներուն կողմանէ, ան ատեն կ'ուզենք իրարու օգնական եւ խորհրդակից ըլլալ: Բայց ասով ամենեւին չենք ուզեր վնաս հասցընել ուրիշ իշխաններու հետ կամ ուրիշ որու հետ որ ըլլայ նէ՝ ունեցած միաբանութիւններնուս, նիզակակցութիւններնուս եւ դաշնակցութիւններնուս, որոնք որ հաւատարմութեամբ եւ առանց վնասելու կ'ուզենք հաստատուն պահել"[23]:

Ուղղափառ իշխանք ասոնք Ռեկենսպուրկ ըրած ատեննին՝

23. Սլէյտան, Գիրք Դ. 58: Ռանքէ, Գիրք Դ. Գլ. Ե. Հատ. Բ. 158. — 161: Մէնցլ, Հատ. Ա. Գլ. Գ. 165, 166: Բլանք, Գիրք Ե. Հատ. Բ. 173, 174: Օտէն, Հատ. Բ. Գլ. Ջ. 88: Ռիֆէլ, Գիրք Բ. Գլ. Ը. 342, 343. Ծանօթ: — Ուղղափառ իշխաններուն աս միաբանութիւնը, կ'ըսէ Ռիֆէլ, որն որ ճշդիւ խօսելով եւ ոչ դաշնակցութիւն մը կրնայ ըսուիլ, (որովհետեւ ասով իշխանները տէրութեան օրինաց եւ սահմանադրութեան մէջ հաստատուն մնալով՝ իրենք զիրենք ան բանին միայն կը պարտաւորէին, որուն որ արդէն ամէն իշխան ի բնէ մտաց կը պարտաւորի,) Լութերի կողմնակից եղող իշխաններին առիթ տուին՝ ետքը մէջերնին իրական պաշտպանողական եւ յարձակողական դաշնակցութիւն մը դնելու, որուն զօրութեամբ նաեւ կայսրէն ապստամբեցան եւ անոր դէմ պատերազմի ելան: Աս եղածները աստուգիւ շատ սրտամալի բաներ են. բայց քանի մը բողոքող մատենագիրներուն ըրածն աւելի եւս սրտմտական է, որոնք բոլոր նոյն չարիքներուն պատճառը՝ ուղղափառ իշխաններուն աս միաբանութիւնը կը դնեն: Այսպէս կը գրէ Ռանքէ, որն որ ըսածին ճշմարտութիւնը երկայն խօսքերով կ'ուզէ ցուցընել. սակայն ըսածները՝ պարզ խօսք են, եւ մէջը ամենեւին իրական բան մը չկայ: Եւ շատ ցաւալի բան է որ Ռանքէի պէս երեւելի մատենագիր մը աստանկ ենթադրութիւն մը պաշտպանելէն զատ, առանց հիման՝ ուղղափառ իշխաններուն զանազան վնասակար ու յանցաւոր դիտաւորներ կու տայ, որոնք անոնց մտքէն ալ անցած չէին: — Զարմա՛նք. Գերմանիայի մէջ պատահած բոլոր չարիքներուն ու երկպառակութիւններուն պատճառը՝ միայն ուղղափառ իշխաններուն աս միաբանութիւնը կ'ըլլայ կոր, եւ բողոքող իշխանք ամենեւին յանցանք չեն ունենար կոր: Բողոքական իշխանները ասոնք եկեղեցիէն բաժնուելովին եւ եկեղեցիներուն ու վանքերուն ինչքերը յափշտակելովնին՝ բոլորովին առանց յանցանքի կը դառնուին կոր. իսկ ուղղափառները՝ ուղղափառ մնալ եւ եկեղեցւոյ ու իրենց իշխանութիւնը պաշտպանել ուզելովնին՝ բոլոր յանցանքին տէր կ'ըլլան կոր: Ստուգիւ նոյն իրաւունքով կրնար մարդ գողութեան մը յանցանքը՝ բոլորովին գողցընողին տալ, ըսելով որ յանցաւոր է, որովհետեւ իր ստացուածքը պաշտպանել ուզեց ու չուզեց կամակոր գողին ձեռքը տալ, եւ գողը յանցանքէն բոլորովին ազատ ըսել: Գիրք Բ. Գլ. Ը. 342, 343. Ծանօթ:

Մնացած իշխաններն ալ Շփայեր ժողովուելով՝ կրօնի վրայ զա-նազան բաներ որոշեցին, որոնք ուղղափառութեան շատ վնասա-կար էին: Բայց բան մը չկրցան գլուխ հանել. որովհետեւ կայ-սրը՝ որն որ դեռ Սպանիա էր, Նիւռնպերկի որոշումները լսե-լով՝ շատ բարկացաւ որ եւ ոչ ան անգամ Վորմսի աւագաժո-ղովին վճիռն ի գործ դնել տալու փոյթ ունեցեր են. ուստի եւ Յուլիսի 15ին թուղթ մը գրելով՝ կը յայտնէր որ Նիւռնպերկի աւագաժողովին մէջ հաստատուածները կը ջնջէ ու կ'եղծանէ. նոյնպէս նոյն աւագաժողովին որոշմանը համեմատ՝ Նոյեմբերի 11ին Շփայեր ժողովուելու ժողովքն ալ կ'արգելէ, եւ վերջապէս կը հրամայէր որ անկէ ետեւ մէկը՝ քահանայապետին հրամանն ու հաւանութիւնը չառած՝ կրօնի վերաբերեալ բան մը կարող չըլլայ սահմանել[24]:

24. Սեքենտորֆ, Գիրք Ա. Համ. Բուն նամակը տես առ Ռայնալտի, ՃԿԸ. 293: Սլէյտան, Գիրք Դ. 59: Ցարբեպր. Հատ. Ի. 407: Մենցել, Հատ. Ա. Գլ. Գ. 154:



# ԳԼՈՒԽ Գ

## Բողոքականք, խորհրդականք, եկեղեցականք

Հերետիկոսները զանազան աղանդներու կը բաժնուին։ Մունցեր՝ գեղջուկները ապստամբութեան կը գրգռէ։ Լուտեր Եենա քարոզել կ'երթայ ու Գարլըշտատին եւ Կրկնամկրտիչներուն դէմ կը քարոզէ։ Պանդոկի մը մէջ Լուտեր ու Գարլըշտատ իրարու խօսք կու տան որ մէկը մէկալին դէմ գրեն։ Լուտեր Օրլամունտ քաղաքը քաղաքացիներուն հետ կը վիճի։ Գարլըշտատ վճռման տեղը կու գայ, բայց Լուտեր զինքը դուրս հանել կու տայ։ Լուտեր ամօթով ու խայտառակութեամբ Օրլամունտէն ետ կը դառնայ ու Գարլըշտատը սաստիկ կը հալածէ։ Գարլըշտատ դրամոց Լուտերի հետ կը հաշտուի։

## 1524

ԻՆՉՊԷՍ որ ուղիղ գիծը մէկ հատ է, իսկ կոր գծերը՝ շատ են ու անհամար, կ'ըսէ Բալլաւիչինի [1], նոյնպէս ալ ճշմարտութիւնը մէկ է, իսկ մոլորութիւնները՝ շատ տեսակ։ Երբ որ անգամ մը Լուտեր աս սկիզբը դրաւ որ հաւատոյ բաներուն մէջ՝ միայն Ս. Գիրքն առաջնորդ ունենալու է, եւ անկից դուրս ամենեւին բանի մը միտ դնելու չէ, ոչ աւանդութեան, ոչ Ս. Հարց խօսքերուն եւ ոչ եկեղեցւոյ ու ժողովոց վճիռներուն, եւ իր խօսքերովն ու օրինակովը՝ ամէն մարդուն սորվեցուց Ս. Գրքին՝ ուզածին պէս մեկնութիւն տալ, ալ անկէ վերջը ամէն տեսակ մոլորութեանց դուռ բացուեցաւ, եւ միջոց մ'ալ չէր գտնուեր (եւ նոյն սկիզբն ընդունելով անկարելի էր որ գտնուէր) աս զանազան աղանդաւորներուն բերանը գոցելու [2]։ Երբ

1. Գիրք Բ. Գլ. ԺԲ. Հատ. Ա. 160։

2. Ստուգիւ աս է Լուտերի բուն վարդապետութիւնը, զորն որ յայտնապէս կը քարոզէր, եւ ամէն իր աշակերտներն ու բոլոր Նորոգեալք միաբան կ'ընդունին։ Սեքենտորֆ տեղ մը ատոր վրայ այսպէս կը խօսի. "Մեծապէս, կ'ըսէ, իր աղանդին (ուղղափառներուն) մոլորութեան ետեւէն երթալով, սուրբ Գրքէն քիչ վկայութիւն կը բերէ. իսկ ... Հարց եւ աստուածաբաններու գրքերէն, եկեղեցւոյ սովորութիւններէն, քահանայապետաց ու ժողովոց վճիռներէն՝ շատ կը բերէ ...։ Բայց Լուտեր՝ Հակառակորդներուն հետ ըրած առջի թեթեւ կռիւներէն վերջը՝ երբ որ մէյ մը միտքը բանող նախապաշարմունքներէն ազատեցաւ նէ, ալ անկէ ետեւ Հաւատոյ Հակառակութեանց մէջ՝ Ս. Գրքէն ուրիշ կանոն եւ օրէնք չընդունեցաւ ... եւ աս բանս մինչեւ հիմա բոլոր բողոքականներուն դաւանքը հաստատուն կը պահէ"։ Գիրք Ա. Հատ. Գ. 10։

Աս վարդապետութեան՝ ծուռ ու [illegible] ըլլալը՝ այնչափ յայտնի է որ եւ ոչ զանիկա քարոզողները կ'ուզեն որ բռնուի, իրենք ալ շատ տեղ չեն բռներ, եւ նոյն իսկ Լուտեր իր գրքերուն մէջ տեղ տեղ ատոր հակառակը կը վարդապետէ, եւ աւանդութեան զօրութիւնը գեղեցիկ կերպով կը ցուցընէ։ Բաւական ըլլայ մեզի մինակ մէկ վկայութիւն մը։ "Աս (Քրիստոսի՝ սուրբ Հաղորդութեան մէջ իրական ներկայութեան) վարդապետութիւնը, կը գրէ տեղ մը, ... Աւետարանին մէջ յայտնապէս Քրիստոսի խօսքերուն

իրական ներկայութիւնը բաղարձակէն կ'ուրանար, եւ կ'ըսէր որ Քրիստոսի Այս է մարմին իմ, եւ Այս է արիւն իմ, ըսելը՝ այլաբանական մտքով է, ուստի եւ Է բառը՝ նշանակ է, կը նշանակէ, օրինակ է բառին իմաստն ունի։ Դարձեալ նոյն ատենները Գարլ-

դարձեալ թէ ամենուքն մէկը տասը տեղ եւ տասը մարդիկներու պէտք չէ որ քարոզէ. եւ խօսքն իր վրայ դարձընելով՝ ինքը զինքը կ'արդարացընէ, ըսելով որ ես Ս. Գրոց վարդապետ ըլլալովս՝ կայսրէն ու պապէն իշխանութիւն առած եմ վարդապետելու, եւ թէպէտ Հիմա կայսրն ու պապը աս իշխանութիւնը ինծմէ կը մերժընեն, բայց այնպէս ալ՝ ես չեմ ստիպուիր թող տալու. որ Լատագովութիւնը Մենցլ չ'ընդունիր, ըսելով որ եթէ աս սկիզբն ընդունելու ըլլանք նէ՝ ուրիշներն ալ եւ գտնէ Գարլշտատ՝ որն որ Լութերին պէս Ս. Գրոց վարդապետ էր, իրաւունք կ'ունենան քարոզելու, որն որ Լութեր չ'ընդունիր, եւ այլն.) խօսքը այսպէս կը լմնցընէ. "Այսպէսով նոր եկեղեցին՝ գրեթէ Հին եկեղեցւոյն սկզբունքին դարձած էր, եւ այնպէս կը գտնէր որ հաստատուն ու կարգաւորութիւնը արտաքին օրէնքին (այս ինքն՝ եկեղեցւոյ իշխանութենէն կամ աւանդութենէն) կախում ունի,,: Հաւ. Ա. Գր. ծՊ. 464:

Թէպէտեւ վերը Լութերէն բերուած վկայութիւնը բաւական կը ցուցընէ որ Հաւատոյ նիւթերուն մէջ՝ միայն Ս. Գիրքը չէիրնար կանոն ըլլալ, Հապա եկեղեցին եւ աւանդութիւնն ալ. ի վերայ այսր ամենայնի աղէկ կ'ըլլայ որ Հիմակուան բողոքականներուն բռնած ճամբէն ալ ցուցընենք որ ինչչափ իրենց սկզբունքին դէմ կը գործեն։ Եւ սաստիկ թէ որ իրենց խօսքին կամ սկզբունքին Համեմատ՝ միայն Ս. Գիրքն է Հաւատոյ կանոն, եւ ամէն բան ըստ ամենայնի նոյնպէս եւ նոյն կարգաւ ընելու է, ինչպէս որ Ս. Գրոց մէջ կը գտնուի, եւ ոչ այնպէս՝ ինչպէս որ եկեղեցւոյ սկիզբէն՝ աւանդութեամբ մեզի Հասած է, ինչո՞ւ Համար Հաղորդութենէն յառաջ ոտուըները չեն լուար, ինչո՞ւ Համար յառաջ կերակուր չեն ուտեր ու ետքը Հաղորդութիւն առներ, ինչո՞ւ կէսօրէն յառաջ կը Հաղորդուին եւ ոչ կէսօրէն ետքը. որովհետեւ Ս. Գրոց մէջ յայտնապէս կը տեսնուի որ Քրիստոս այնպէս չըրաւ։ Դարձեալ ինչու բանի Համար Հիւանդներին եղով չեն օծեր, որն որ Ս. Գիրքը բացայայտ կը Հրամայէ. ինչո՞ւ տղաքները կը մկրտեն, ու չեն սպասեր որ չափահաս ըլլան, որպէս զի իրենց քարոզէն ու ետքը մկրտեն, կամ որպէս զի մկրտուողը նախ Հաւատայ ու ետքը մկրտուի, ինչպէս որ Քրիստոս յայտնապէս կ'ըսէ։ Ասոր Հակառակ թէ որ Ս. Գրքին մէջ եղած բանէն ուրիշ բան մը խոթելու կամ Հաւատալու չէ նէ՝ ինչո՞ւ կիրակի ու քանի մը տօն օրերը կը պահեն, ինչո՞ւ իրենցմէ շատերը եկեղեցիներնուն կամ աղօթարաններնուն մէջ խաչ ու խորան ունին, որովհետեւ Ս. Գրոց մէջ ասոնց վրայ բան մը չկայ։ Եւ ամէն բանէն աւելի՝ ինչու Ս. Գրոց ճշմարտութեան կը Հաւատան, կամ թէ ա՛ս կամ ա՛ն գիրքը, օրինակի Համար՝ չորս աւետարանը, կ'ընդունին, եւ ուրիշ գրքերը՝ որոնք Հերձուածողներէն ոմանք Հին ժամանակները դուրս Հանեցին ու Ս. Գիրք է, կ'ըսէին, չեն ընդունիր. արդեօք Ս. Գրոց մէջ տեղ մը կա՞յ որ սորվեցընէ թէ ա՛ս կամ ա՛ն գիրքը իբրեւ աստուածաշունչ ընդունելու է։ Յայտնի է որ ասանկ բան մը չկայ. եւ իրենք ալ միայն անոր Համար Ս. Գիրքը՝ իբրեւ Ս. Գիրք կ'ընդունին վասն զի եկեղեցին կ'ընդունի եւ աւանդութիւնն այնպէս կը սորվեցընէ։ — Ասոր ալ բաւական չէ՝ երբ որ մէկը իրենց դէմ կը դառնայ ու իրենց ընդունած մէկ բանը չ'ընդունիր, շատ անգամ իրենք զիրենք ուրիշ կերպով չկրնալով պաշտպանել՝ աւանդութեան կը դիմեն, եւ անով կը ջանան ցուցընել թէ դիմացինները մոլորութեան մէջ է։ Ինչպէս քիչ մը յառաջ տեսանք՝ Լութեր աւանդութեամբ միայն՝ Խորհրդականներուն բերանը գոցելու կը ջանար, նոյնպէս Արկնակնունքներուն դէմ ալ նոյն զէնքը կը գործածէր։ Հիմա ալ բողոքողները, ուրիշ աղ-

շղատ կը վարդապետէր որ Քրիստոս՝ Այս է մարմին իմ՝ ըսած ատենը՝ բուն իր մարմինը կ'իմանար, որով աշակերտներուն հետ սեղան նստած կերակուր կ'ուտէր, եւ ոչ ան մարմինը՝ որն որ ըստ ուղղափառ վարդապետութեան՝ հացին տեսակին տակ կը գտնուի[3] ։ Եւ աս երկուքին վարդապետութենէն ծնաւ խորհրդականաց[4] աղանդը ։ Նոյն ժամանակները շատ շփոթութեանց եւ մեծամեծ խռովութեանց պատճառ եղան նաեւ Կրկնակնունքները[5], որոնք Լուտերականներէն տարբեր մոլորութիւններ ունէին, եւ գլխաւորաբար աս մոլորութիւնը՝ որ կ'ըսէին թէ բանականութիւննին բացուելէն յառաջ մկրտուողներուն մկրտութիւնը՝ մկրտութիւն չէ, ուստի եւ ասանկները նորէն մկրտելու է, եւ ասոր համար ալ անուննին Կրկնակնունք դրուեցաւ ։ Միանգամայն աս ալ ունէին որ իսկզբանէ յայտնապէս ամենեւին աշխարհական իշխանութիւն մը չէին ուզեր ճանչնալ ։ Աս վերջին աղանդաւորներուն գլխաւոր քարոզիչներէն եւ երեւելի առաջնորդներէն մէկն էր Թովմաս Մունցեր[6] ։

նակները մէկդի ձգելով, Շտրաուս անունով բողոքող վարդապետը՝ առանձնութեամբ կը հերքէն, որն որ կը հաստատէ թէ Աւետարանը՝ շինծու առասպել մըն է, Քրիստոս խաբեբայ մըն էր, որն որ թէպէտ խաչ ելաւ, բայց չմեռաւ, հապա աշակերտները զինքը ծածուկ վար իջեցուցին, եւ այլն ։ — Ասպա ուրեմն թէպէտ եւ խօսքով չեն ընդունիր, բայց գործքով կ'ընդունին որ Ս. Գիրքը՝ միայն առանձին բաւական չէ հաւատոյ նիւթերուն մէջ կանոն եւ առաջնորդ ըլլալու, հապա եկեղեցւոյ ալ աւանդութեան ալ նայելու է ։ Ո՞ւր ձգենք ան ալ որ ինչպէս Մէնցլ (Հատ. Ա. Գլ. Ա. 25. — 30.) գեղեցիկ կը ցուցընէ Եկեղեցւոյ առաջին դարուն մէջ Ս. Գիրք չկար ու ատեն բան՝ միայն աւանդութիւնն կ'ըլլար ։

3. Կարլշդատ կը վարդապետէր որ, կ'ըսէ Մէնցլ (Հատ. Ա. Գլ. Է. 252), Քրիստոս հաղորդութեան խորհուրդը հաստատելու ատեն ըսած խօսքին "Առջին կէս մասովը, այս ինքն "Առէք կերէք" բառերով՝ (առաքեալները) կը յորդորէր որ մատուցած հացն ուտեն ։ Բայց աս բառերը՝ ետեւէն եկած խօսքին հետ, այս ինքն "Այս է մարմին իմ" ամենեւին կապակցութիւն չունի. որովհետեւ Քրիստոս աս վերջին խօսքով ինքը զինքն աշակերտներուն կը ցուցընէր, նշանակել ուզելով որ աս իր մարմինը ... քիչ մը վերջը պիտի մատնուէր. բայց իրենք աս գործքը՝ որով ինք հացը կը բեկանէր, պէտք էր որ իր յիշատակին համար պահէին ու կրկնէին"։ Աս այլանդակ մեկնութիւնը կարդալու ատեն՝ որն որ Լուտեր իրաւամբ իբրեւ բռնաբարեալ ու մոլորական մեկնութիւն կը մերժէ ու ծաղր կ'ընէ, ատուգիւ ամէն մարդուն միտքն եկած պէտ'որ ըլլայ իր (Լուտերին)՝ Քրիստոսի ասոր նման մէկ խօսքին, այս ինքն "Դուն ես վէմ, եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ" տուած այլանդակ մեկնութիւնը ։ (Տես Գիրք Ա. Գլ. Ե. եր. 67. եւ Ծանօթ. 10.) Եւ արդէն Մէնցլ աս բանս կը յիշէ եւ այսպէս կը գրէ. "Լուտեր ալ նոյն կերպով Լիփսիայի վիճաբանութեան ատեն "Դուն ես վէմ, եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ" խօսքին իմաստը՝ երկու տարբերութիւններն իրարմէ բաժնելով ու վերջին մասը Քրիստոսի վրայ առնելով՝ փոխած կամ այլայլած էր"։ Եւ նոյն իսկ Խորհրդականք աս բանս շատ անգամ կը յիշեն, եւ երկու մեկնութեանց ըստ ամենայնի նոյն ըլլալը կը ցուցընեն ։

4. Sacramentaires.

5. Anabaptistes.

6. Աս մարդուն վրայ տես աս Գրքին Ա. Գլխոյն 5. Ծանօթ. եւ Զ. Գլխոյն 19. Ծանօթ ։

Արդ այսպէս ան ատենները Գերմանիայի մէջ երեք գլխաւոր աղանդ կար. առաջինն ու գլխաւորը՝ Լուտերականներունը, երկրորդը՝ Խորհրդականներունը, եւ երրորդը՝ Կրկնակնունքներունը: Թէպէտ եւ վերջին երկու աղանդին հետեւողները Լուտերը կ'անարգէին ու կը թշնամանէին, եւ ինքն ալ իր աշակերտներուն ու հետեւողներուն հետ մէկտեղ զանոնք կը հալածէր ու շարունակ անոնց մոլորութեանց դէմ կը քարոզէր ու գրուածներ կը հանէր, եւ այսպէս մէջերնին միշտ կռիւ կար, ի վերայ այսր ամենայնի ամէնքն ալ կը խոստովանէին թէ հասարակաց ամենուն հայրը ինք Լուտեր է, եւ թէ երկու վերջին աղանդները՝ առաջին աղանդին ծնունդներն են: Մանաւանդ թէ Լուտեր ալ աս բանս չէր ուրանար, անոր համար շատ անգամ Կրկնակնունքներն ու Խորհրդականները՝ իմ որդիքներս ու աշակերտներս կ'անուանէր, բայց՝ ապստամբ ու անհաւատարիմ որդիքներս. դարձեալ զիրենք՝ իմ Աբեսողոմներս եւ Յուդաներս կ'անուանէր, այս ինքն՝ ապստամբ որդիքս եւ մատնիչ կամ անհաւատարիմ աշակերտներս [7]: Շատերը մէջերնին մտնելով՝ կ'ուզէին որ գոնէ Լուտեր ու Գարլշդատ իրարու հետ հաշտուին. բայց անկարելի էր, որովհետեւ հաշտուելու համար հարկ էր որ կամ մէկը կամ մէկալը՝ դիմացինին գլուխ ծռէ, որն որ երկուքն ալ չէին ուզեր: Գարլշդատ չէր ուզեր գլուխ ծռել անանկ մարդու մը՝ որմէ որ տարիքով շատ մեծ էր. իսկ Լուտեր չէր ուզեր անկէ ետեւ Գարլշդատի հետ իբրեւ մեծի հետ վարուիլ:

Ասոնց պատճառաւը բոլոր Գերմանիա տակն ու վրայ կ'ըլլար: Մունցէր իր ընկերներուն ու աշակերտներուն հետ մէկտեղ քաղաքներն ու գեղերը պտըտելով՝ ռամիկ մարդիկները ապստամբեցընելու կը ջանար: Շարունակ թէ՛ ինք եւ թէ՛ իր կողմնակիցները ժողովրդեան առջեւը տեսիլքներ ու յայտնութիւններ կը պատմէին. շատ անգամ բազմութեան առջեւ մեռածի պէս անշունչ ու անշարժ գետինը փռուած կենալէն ետեւ՝ վեր կ'ելլէին ու կ'ըսէին թէ մեզի հրեշտակ երեւցաւ, ու խելքերնին փչածը՝ հրեշտակէ լսածի պէս կը պատմէին: Ռամիկ ժողովուրդն ալ բանը գործքը թող տուած՝ բազմութեամբ չորս կողմերնին կը ժողվուէր եւ զիրենք սիրով մտիկ կ'ընէր: Իրենց մոլորութիւններն ու ապստամբեցուցիչ խօսքերը գլխաւորաբար գեղացիներուն առջեւը կը խօսէին, որոնք արդէն իրենց խօսքերը սիրով ընդունելու պատրաստուած էին, որովհետեւ յառաջագոյն շատ անգամ Լուտերի բուն աշակերտներուն բերնէն լսած եւ իրեն գրուածքներուն մէջ կարդացած էին որ քրիստոնեան՝ մէկու մը իշխանութեան տակ չէ, քրիս-

7. Տը Վէդ, Հատ. Գ. 87. 220:

տանէից մէջ մէկը չկայ որ մէկալէն մեծ կամ վեր ըլլայ։ Ցուցած էին որ Լութեր ինչպէս միշտ աստուածաբաններուն ու իշխաններուն հետ նախատելով կը խօսէր եւ անոնց դէմ կը գրէր, թէ ինչպէս անոնց իշխանութիւնը ոտքի տակ կ'առնէր, մինչեւ կը յանդգնէր ըսել թէ Մարդիկ զձեզ ալ պիտի չքաշեն, եւ դարձեալ թէ Աստուած զձեզ անոնց ձեռքէն ազատէ, եւ ասոնց նման խօսքեր։ Մունցէր եւ իրենները՝ որ արդէն Լութերի աս խօսքերէն օրինակ ու համարձակութիւն առած էին, խօսքերնուն գտած ընդունելութենէն՝ աւելի եւս յանդգնութիւն առնելով՝ սկսան գեղացիներուն աւելի եւս յայտնի խօսքերով քարոզել թէ պէտք է որ զէնք առնէք, ու ձեր հոգեւոր եւ մարմնաւոր տէրերուն մանաւանդ թէ բռնաւորներուն ձեռքէն ազատելու ջանաք, որոնք սաստիկ բեռներու տակ զձեզ կը ճնշեն, ասոր որ Աստուած կը հրամայէ որ ամէն բան հասարակաց ըլլայ, ինչպէս որ էր եկեղեցւոյ սկիզբները։ Գեղացիներն աս խօսքերը լսելով՝ սկսան իրենց տէրերուն դէմ ոտք ելլել[8]։

Որովհետեւ այնպէս խօսք մ'ելած էր որ Գառլշտատ ալ Երկնակնունքներուն կողմն է եւ ինքն ալ գեղացիներն ապստամբութեան կը գրգռէ, անոր համար Սաքսոնիայի կայսրընտիրը Լութերին հրամայեց որ Օրլամունտա երթայ, ուր տեղ որ Գառլշտատ, ինչպէս յառաջ ըսինք, ժողովրդապետ էր, ու ջանայ աս խռովութիւնները դադրեցընել[9]. միաբանամայն նոյն քաղքին գլխաւոր բնակիչները թղթով մը իրեն աղաչած էին որ հոն գայ։ Անոր համար Լութեր շուտ մը ճամբայ ելաւ որ Օրլամունտա երթայ։ Ենա քաղքէն անցնելու ատեն՝ իր սովորութեանը համեմատ՝ Երկնակնքաց դէմ շատ սաստկութեամբ քարոզ մը տուաւ։ Խօսքին մէջ թէպէտ յայտնապէս Գառլշտատին անունը չտուաւ, բայց ծածուկ կերպով իմացուց որ զինքն ալ Երկնակնքաց ու Մունցերի հետ միաբան կը կարծէ։ Նոյն օրը Լութեր հոն պանդոկի մը մէջ կերակուր ուտելու ատեն՝ Գառլշտատ, որն որ իր քարոզը լսած էր, ներս մտաւ, եւ սկսաւ զանիկա՝ իրեն դէմ խօսած խօսքերուն համար յանդիմանել. Ես, ըսաւ, Մունցերին հետ առնելիք տալիք չունիմ, եւ եղած խռովութիւններուն ամենեւին մասնակից չեմ։ Դարձեալ Լութերին երեսը զարկաւ անոր մոլորութիւնները կամ իր (Գառլշտատին)

8. Աս բաներուն վրայ տես աս Գրքին Զ. Գլուխը, ինչ Լութերին մասնակցութեան վրայ՝ նոյն Գլխոյն 1. Ծանօթ։

9. Սաքսոնիայի կայսրընտիրը եւ Վիթդենպերկցիք, անշուշտ Լութերին գրգռելովը, քանի մը անգամ Օրլամունտացւոց տուեւէն ինկած եւ հրամայած էին որ Գառլշտատը մերժեն, եւ պատկերները ու արձանները չխորտակեն. բայց անոնք՝ նոյն ինքն Լութերին խօսքը գործածելով՝ պատասխան կու տային որ Աւելի Աստուծոյ հնազանդելու է քան՝ թէ մարդիկներուն։ Բլանք. Գիրք Ե. Հատ. Բ. 207, 208։

կարծիքներէն տարբեր կարծիքները, մանաւանդ հաղորդութեան մէջ Քրիստոսի իրական ներկայութիւնը քարոզելը: Ետքը խօսքը իր Վիդդենպերկի մէջ ըրածներուն դարձընելով՝ ըսաւ որ Ես անոնք ինք իրմէս չըրի, հապա քաղքին երեք խորհրդականներուն խրատովը եւ քու աշկերտներուդ գործակցութեամբը, որոնք ետքը քեզմէ վախնալով՝ իզմէ բաժնուեցան: Իսկ նոյն տեղերը քարոզութիւնս յառաջ չտանելուս պատճառը դուն ես, որովհետեւ ձեռուըներս եւ ոտուըներս կապեցիր, ու ետքը զիս անդէն զարնելով՝ բոլոր զօրութեամբդ վրաս յարձակեցար. այս ինքն՝ ինծի գրելն ու քարոզելը արգելել եւ գրուածներս տպարաններէն վերցընել տուիր. ուր որ ասոր հակառակ՝ դուն միշտ ինծի դէմ կը գրես: Իմ քարոզութեան պաշտօն ունենալս՝ չիկրնար ուրացուիլ, որովհետեւ ես ալ քեզի պէս Ս. Գրոց վարդապետ եւ աւագսարկաւագ ընտրուած եմ:

Վէճ մը ատեն այսպէս իրարու հետ խօսելէն ու վիճելէն ետքը՝ Գարլշդատ յանձն առաւ որ ըսածները հրապարակաւ ցուցընէ, եւ խոստացաւ որ կարծիքները ետ կը կանչէ թէ որ մէկը իր սխալած ըլլալն իրեն ցուցընէ նէ: Լուտեր սկսաւ զինքը ծաղր ընել. թէ որ կրնաս նէ, ըսաւ, ուզածդ գրէ, եւ եթէ ինծի դէմ գրելու ըլլաս նէ՝ ես քեզի ոսկի դահեկան մը կու տամ: Գարլշդատ աս բանս յանձն առաւ, Լուտեր ալ իրեն ոսկին տալով՝ ըսաւ. "Առ առիկա, եւ ինծի դէմ քաջութեամբ կռուէ": Գարլշդատ ոսկին ձեռքն առաւ եւ պանդոկին մէջ ըլլողներուն ցուցընելով՝ Ահաւասիկ, ըսաւ, Լուտեր վարդապետին դէմ առած իշխանութեանս գրաւականը. կ'աղաչեմ որ ամէնքդ ալ ինծի վկայ ըլլաք: Ետքը դաշնադրութիւնն աւելի հաստատուն ընելու համար ձեռք ձեռքի տուին եւ խոստացան որ իրարու հետ քաջութեամբ կռուին. Լուտեր Գարլշդատին կենդանութեան գինի խմեց, Գարլշդատ ալ՝ Լուտերին կենդանութեան: Եւ այսպէս պանդոկի մէջ հրապարակաւ գինի խմելով կատարուեցաւ աս երկու նորոգողներուն կամ նորոգութեան երկու հիմունքներուն իրարու դէմ կռուելու դաշնադրութիւնը[10]:

Ասկից ճամբայ ելաւ Լուտեր Օրլամունտա երթալու համար, ուր որ անձկանօք իրեն կը սպասէին: Քաղաք չմտած՝ ընկերներէն մէկը առջեւէն խաւրեց, որ իր գալը քաղաքապետին իմացընէ եւ աղաչէ որ իր խորհրդականները ժողվէ, որպէս զի

10. Աս պատմութիւնը ընդարձակ կը գտնուի ի Գործս Լուտ. Գերմ. Հատ. Բ. 491. Բ. — 494. Բ: Ցեռնեաւ Բլանք, Գիրք Ե. Հատ. Բ. 208. — 213: Կուստաւ Փֆիցեր, Գլ. Ի. 436. — 439: Մենցլ, Հատ. Ա. Գլ. Է. 254, 355: Ռիֆել, Գիրք Ա. Գլ. Չ. 305. — 307: Ուլենպերկ, Գլ. ԺԳ. Համ. Գ. Գ: Օտէն, Հատ. Բ. Գլ. Ժ. 139. — 147:

ամէնքը մէկտեղ կամքերնին իրեն յայտնեն: Քաղաքապետն ու խորհրդականները մինչեւ քաղքին դուռը Լուտերին դիմացը գացին ու զինքը պատուով եւ յարգութեամբ ընդունեցան: Լուտեր երեսը կախած էր ու բարկացած դէմք մը կը ցուցընէր․ եւ երբ որ քաղաքապետը հետը խօսիլ սկսաւ նէ՝ ինք պատասխան տուաւ որ Խորհրդեան տեղը խօսելու բաւական ժամանակ կ'ըլլայ, եւ այսպէս լռութեամբ քաղաք մտան: Երբ որ խորհրդեան տեղը հասան, քաղաքապետը նորէն սկսաւ խօսիլ, եւ Լուտերին գալուն համար շնորհակալ ըլլալէն վերջը՝ խորհրդականներուն ու բոլոր ժողովրդեան անունամբ աղաչեց որ Աստուծոյ խօսքը իրենց քարոզէ: Լուտեր պատասխան տուաւ թէ Ես քարոզելու համար հոս եկած չեմ, հապա ձեզմէ ընդունած մէկ թղթիս վրայ հետերնիդ խօսելու: Ան ատեն ամէնքն ալ սեղանին առջեւը նստեցան, գարեջուր բերել տուին, ու սկսան մէկտեղ խմել․ եւ որովհետեւ Լուտերին հասնելուն լուրը ամէն կողմ տարածուած էր, շատ բազմութիւն եկաւ հոն ժողվուեցաւ, ինչու որ ամէնքն ալ զինքը տեսնելու կը բաղձային: Շատերը կ'ուզէին իր քարոզը լսել, անոր համար իրեն ըսին․ Գիտենք որ վրանիս կասկած ունիս ու միտքդ դրած ես որ մենք ճշմարտութենէն հեռացած ենք․ արդ եկ մեզի քարոզ տուր, եւ թէ որ խօսքերդ ճշմարիտ են՝ աչուընիս կը բացուի ու մոլորութիւններնիս կը ճանչնանք: Բայց Լուտեր իրենց ալ՝ քաղաքապետին տուած պատասխանը տուաւ․ այս ինքն թէ Ես հոստեղս քարոզ տալու համար եկած չեմ: Աս ըսաւ ու ծոցէն իրենց գրած նամակն հանելով՝ հարցուց որ Ստուգիւ աս նամակը դո՞ւք գրած էք: Եւ երբ որ իրենցմէ ստուգեց թէ իրենք գրած են եւ Գարլշդատ մէջը ամենեւին ձեռք չունի, սկսաւ նամակը բարձր ձայնիւ կարդալ: Աս թղթին մէջ Օրլամունտացիք զինքը կը յանդիմանէին որ զիրենք հերետիկոսի տեղ կը դնէ, եւ իրենց հոգին չքննած ու հետերնին չխօսած՝ զիրենք մոլորական ու խռովութիւն հանող հոգի կ'անուանէ: Եւ ետքը կը հրաւիրէին որ գայ ու հետերնին աս բաներուն վրայ խօսի[11]:

Թուղթը կարդալէն լմնցընելէն ետեւ՝ Լուտեր այսպէս ըսաւ․ Դուք կ'ուզէք որ ձեզի յայտնեմ թէ ինչ բանի մէջ սխալեր էք: Նախ ասոր մէջ սխալած էք որ Գարլշդատը՝ Սաքսոնիայի կայսրընտիրին ու Վիդդենպերկի համալսարանին իրեն իշխանութիւն չտուած՝ ձեզի առաջնորդ ընտրած էք: Հոն եղողներէն մէկը պատասխան տուաւ որ Եթէ Գարլշդատ մեր ժողո-

11․ Օրլամունտացոց նամակը տես ի Գործս Լուտ․ գերմ․ Հատ․ Բ․ 495․ Բ: Նոյնպէս բոլոր աս Օրլամունտ եղածներուն պատմութիւնը կը գտնուի նոյն տեղը, 494․ Բ․ — 497․ Բ:

վարդապետը չէ նէ, Պօղոսի վարդապետութիւնը սուտ է եւ քու գրուածներդ մոլորական են. ինչու որ մենք քու վարդապետութեանդ համաձայն՝ Գարլշտատը մեզի ժողովրդապետ ընտրեցինք[12], ինչպէս որ աս բանիս վրայ Վիտդենպերկի համալսարանին գրած թղթերնուս մէջ իմացուցինք: Ասով Լութերին բերանը գոցուեցաւ ու չկրնալով պատասխան տալ՝ խօսքն ուրիշ բանի դարձուց եւ ըսաւ. Երկրորդ ասոր մէջ սխալեցաք որ պատկերներն ու արձանները կոտրեցիք հանեցիք:

Աս խօսքը Լութերին բերանէն ելած ատեն՝ մէյ մ'ալ յանկարծ Գարլշտատ ներս մտաւ, Լութերին մօտիկցաւ ու յարգութեամբ մը բարեւ տալով՝ "Ցանձն կ'առնե՞ս արդեօք, տէր վարդապետ, ըսաւ, որ քու գալստեանդ ուրախակից ըլլամ":

Լութ. "Չէ, յանձն չեմ առներ, չեմ կրնար առնել":

Գարլշ. "Կ'ուզես յանձն առ, կ'ուզես մ'առներ, հոգս չէ":

Լութ. "Դուն իմ թշնամիս ես, եւ ես ասոր համար քեզի ոսկի մը տուած եմ":

Գարլշ. "Ստուգիւ յաւիտեան քու թշնամիդ ու հակառակորդդ կ'ուզեմ ըլլալ, եւ չէ թէ միայն քու, հապա ամենուն ալ՝ որոնք Աստուծոյ հակառակ են, որչափ որ ճշմարտութեան ու աստուածութեան դէմ կը դնեն":

Լութ. "Տէր վարդապետ, հօսկէց դուրս պիտ'որ ելլե՞ս. ես չեմ ուզեր որ աս բանիս մէջ դուն քովս ըլլաս":

Գարլշ. "Ասիկա հասարակաց ունկնդրութեան տեղ չէ՞ մի. գործածդ ուղիղ է նէ՝ ինչու՞ իմէ կ'ամչնաս ու կ'ակնածես":

Լութ. "Որովհետեւ ինծի կասկածելի ես, մանաւանդ թէ թշնամի իսկ":

Գարլշ. "Կասկածելի ալ ըլլամ՝ ի վերայ այսր ամենայնի դատաւորդ չեմ, եւ կարծեմ թէ թշնամիդ ալ կրնայ հակառակորդներուդ մէջ նստիլ ու խօսուած խօսքերը մտիկ ընել":

Գարլշտատ աս խօսքս ըսելու ատեն՝ հոնտեղն եղողներուն մէջէն երեւելի մարդ մը ոտք ելաւ ու իրեն ըսաւ. "Դուն մեզի հրաժարական ողջոյն տուիր որ Ենա երթաս, անոր համար ասկից դուրս ել": — Ասոր Գարլշտատ պատասխան տուաւ որ "Դուն իմ իշխանս չես՝ որ հետս այսպէս իշխանութեամբ կարենաս խօսիլ. իսկ թէ որ իշխանէն հրաման ունիս նէ՝ բեր որ տեսնեմ": Ան ատեն Լութեր սկսաւ պոռալ. "Ձիերը լծեցէք, ձիերը լծեցէք. ես Գարլշտատին հետ բան չունիմ, թէ որ ինք դուրս ելլել չ'ուզեր նէ, ես կ'ելլեմ կ'երթամ": Լութեր աս

12. Որովհետեւ Լութեր իր գրքերուն մէջ շատ տեղ վարդապետած էր որ քրիստոնէից ամէն մէկ ժողովը կամ հասարակութիւնը՝ իրեն հովիւը կամ պաշտօնեան ընտրելու իշխանութիւն ունի:

խօսքերուն ըմբռնին պէս՝ հոն եղողներէն մէկ քանի հոգի եկան Գարլշդատին ականջն ի վար քանի մը խօսք ըսին, ան ալ ելաւ դուրս գնաց։

Լուտեր իր թշնամին աս կերպով դուրս վռնտելէն ետեւ՝ նորէն սկսաւ վիճել որ պատկերները վերցընելնին աղէկ էր թէ գէշ։ Աս վիճաբանութիւնը քանի մը ժամ տեւեց, եւ երկու կողմէն ալ կարծիքնին Ս. Գրոց խօսքերով հաստատելու կը ջանային։ Լուտեր իրենց հարցուց թէ Ս. Գրոց մէջ ո՞ւր գրուած է որ պատկերները պատուելու համար է։ Խորհրդականներէն մէկն աս խօսքին պատասխան տուաւ թէ Տէր վարդապետ, կ՚ընդունիս որ Մովսէս օրինաց մեկնիչ է. եւ երբ որ Լուտեր պատասխան տուաւ թէ կ՚ընդունիմ, առաջինը նորէն ըսաւ. Արդ Մովսէս կը գրէ թէ "Մի ունիցիս դու աստուածս օտարս,,. եւ դարձեալ թէ "Մի առնիցես քեզ դրօշեալս,,։ Ասոր Լուտեր պատասխանեց թէ Աս խօսքերը կռոց համար ըսուած է, որոնց երկրպագութիւն կ՚ըլլայ։ Ի՞նչ վնաս ունի, ըսաւ, երբ որ մէկը որմին վրայ խաչի պատկեր կ՚ունենայ, թէ որ անոր երկրպագութիւն չ՚ըներ։ Երբ որ Լուտեր աս խօսքս կը խօսէր, մէյ մ՚ալ անդիէն կօշկակար մը ոտք ելաւ, ու մէջտեղը գալով՝ Շատ անգամ, ըսաւ, ես խաչին պատկերին առջեւը գլուխս կը բանայի, ասիկա կռապաշտութիւն է ու մարդիկներուն մեծ վնաս կու տայ. անոր համար պատկերները ջնջելու վերցընելու է։ Աս կերպով խօսքը յառաջ տարին, բայց մէջերնին չկրցան միաբանիլ ու բան մ՚որոշել. մանաւանդ թէ վերջերը կռիւն ան աստիճանի սաստկացաւ, մինչեւ Լուտեր ստիպուեցաւ ելլելու շուտ մը փախչելու, եւ քիչ մնաց քաղաքացիները զինքը կը քարկոծէին։ Բազմութեան մէջէն ոմանք սկսան ետեւէն պոռալ, Գնա, գնա յանուն հազարաւոր դիւաց. երանի թէ քաղքէն դուրս չելած՝ վիզդ կոտրի։ Ոմանք ալ վրան քար ու տիղմ նետեցին [13]։

Այսպէս Լուտեր խաղք ու խայտառակ եղած՝ Վիդդեն-

13. Սեքքէնտորֆ՝ Լուտերին Գարլշդատի հետ Եէնա եւ Օրլամունտա ըրածներուն վրայ իր սովորութեանը հակառակ՝ համառօտ ու քանի մը խօսքով կ՚անցնի, ուր որ ուրիշ թէ՛ ուղղափառ եւ թէ՛ բողոքող մատենագիրները ընդարձակ կը գրեն, եւ գրեթէ ամէնքն ալ աս պատմութեան գլխաւոր աղբիւր կ՚առնեն Լուտերին գրուածոց մէջ գտնուած նկարագիրը, որն որ վերը (11. Ծանօթ. մէջ) յիշեցինք. — Ուրիշ հեղինակներէն զատ՝ տես Մեռլ տ՚Օպինեէ, (Հատ. Բ. 165. — 169.) որն որ թէպէտ բոլոր պատմութիւնը հաւատարմութեամբ կը պատմէ, բայց վերջը կարծես թէ ըրածին վրայ զղջալով՝ գէթ Լուտերի պատուոյն համար ամենէն աւելի նախատական եղող մասը տարակուսի տակ կը ձգէ եւ ծանօթութեան մէջ այսպէս կը գրէ. "Երկու խիստ երեւելի գերմանացի պատմիչներ կը գրեն թէ Օրլամունտա քաղաքին մարդիկը՝ Լուտերին վրայ քարեր ու տիղմեր նետեցին. բայց Լուտեր բոլորովին ասոր հակառակը կը գրուցէ,,։

պերկ դարձաւ, եւ Օրլամունտացոց իրեն դէմ ըրածին սաստիկ բարկանալով՝ միտքը դրաւ որ ոխ առնէ: Բայց որովհետեւ կը կարծէր թէ բոլոր աս չարիքներուն պատճառը Գարլշտատն է, սկսաւ եաւուէն ջանալ որ քէնը զանէ անկից հանէ[14]: Եւ թէպէտ անոր ասկէ մը տալով՝ իրարու դէմ գրելու դաշնագրութիւն ըրած ատեննին խոստացած էր որ իրեն վնաս մը չըհասցըներ, ի վերայ այսր ամենայնի այնչափ ըրաւ որ վերջապէս Սաքսոնիայի կայսրընտրին երկիրներէն դուրս վռընտել տուաւ: Ասկից ալ զատ՝ ամէն գացած տեղերը իր գրուածներովը ու նամակներովը զինքը հալածեց եւ թող չտուաւ որ տեղ մը հանգիստ գտնէ: Իմանալով որ Ստրազպուրկ փախեր է, շուտ մը հոնտեղաց քաղաքացիներուն նամակ մը գրեց, եւ վրան զանազան չարախօսութիւններ ընելով՝ ջանաց որ զինքն ան թեթեւ մխիթարութենէն ալ զրկէ, որն որ մարդ աքսորանաց մէջ կրնայ գտնել[15]: Ետքը Գարլշտատին մոլորութեանց դէմ գիրք մ'ալ շինեց, եւ գրքին վերջերը ամենուն խրատ կու տար որ զգուշանան ու անկէ եւ անոր մարդիկներէն փախչին. վրան պատճառն ալ աւելցընելով՝ կ'ըսէր թէ Որովհետեւ ատոնք իրենք իրենցմէ վարդապետ եղած են. Աստուած զիրենք ան պաշտօնին խաւրած չէ եւ ոչ ալ մարդիկ զիրենք կանչած են. ուստի եւ յայտնի է որ ատոնք ալ ան մարդիկներէն են, որոնց վրայ Աստուած Երեմիա մարգարէին բերնովը կ'ըսէ թէ “Ոչ առաքեցի զնոսա, եւ նոքա ընթանային, ոչ խօսեցայ ընդ նոսա, եւ նոքա մարգարէանային”. անոր համար ալ Քրիստոս զիրենք գող եւ աւազակ կ'անուանէ[16]:

Գարլշտատ աս բաները տեսնելով՝ իմացաւ թէ քանի որ Լուտեր իրեն՝ թշնամին է, տեղ մը հանգիստ եւ ապահովու-

14. Չէ թէ միայն Գարլշտատէն ոխ առաւ, հապա նաեւ ուրիշներէն ալ. եւ որովհետեւ Ենա եւ մանաւանդ Օրլամունտ պատահածները՝ իրեն մեծապէս նախատական բաներ էին, անոր համար երբ որ ատոնց պատմութիւնը ապուած հրատարակուեցաւ նէ, արտաքոյ կարգի կատղեցաւ, մինչեւ Ենայի քարոզիչներէն մէկը՝ որն որ նոյն քաղաքին մէջ պատահած բաներուն հրատարակողն էր, կայսրընտրին հրամանաւը քարոզչութեան պաշտօնէն վար առնել ու Սաքսոնիայի երկիրներէն աքսորել տուաւ: Մէնցըլ, Հատ. Ա. Գլ. Է. 256: Ռէֆէն, Պէկ+ Ա. Գլ. Զ. 309:

15. Անոր վրայ ինք պարծելով մը Ամստորֆին այսպէս կը գրէ. “Կը տեսնե՞ս, կ'ըսէ, թէ ես՝ որ երբեմն մարտիրոս պիտի՛ որ ըլլայի. հիմա ուրիշները մարտիրոս կ'ընեմ”: Ադ. Մէնցլէ, Հատ. Ա. Գլ. Է. 257. Իւ առ Կոստ. Փէյէրէ, Գլ. Ի. 442:

16. Փորձք Լուտ. գերմ. Հատ. Գ. 101. Բ: — Բայց նոյն խօսքը իր հակառակորդներն ալ իրեն եւ իրեններուն դէմ կ'ըսէին. ինչպէս Սուէնկֆէլտ յայտնապէս կը գրէ որ “Իրենցմէ, այս ինքն Լուտերականներէն, շատերը չեն գիտեր թէ ինչ է Քրիստոս եւ ինչ հոգին սուրբ, եւ իրենց զիրենց ՚ի ստոյգն, որոնց հոգին սուրբին ընդունած ըլլալու, եւ իրենց անձնական օգտին համար ... մէկը մէկալին դէմ կը քարոզէն. ամէն մարդ իր շահը կը փնտռէ, թէ աղօթական եղեր է թէ՛ ժողովրդապետ”: Ադ. Մէնցլէ, Հատ. Ա. Գլ. ԺԴ. 474:

թիւն գտնելիք չունի. անոր համար միտքը դրաւ որ ինչ կերպով որ ըլլայ նէ՝ հետը հաշտուի։ Աս վախճանաւ երկու համառօտ գրուածք դուրս հանեց, որոնցմէ առաջինին մէջ կը ցուցընէր թէ խռովութիւն ու ապստամբութիւն հանողներուն հետ ամենեւին մասն չունի. իսկ երկրորդին մէջ՝ Լուտերին իսկզբան բռնած ընթացքին հետեւելով՝ կ՚ըսէր թէ մինչեւ հիմա հաղորդութեան վրայ գրածներս կամ խօսածներս հաստատելով չըրի, հապա տարակուսելով՝ որպէս զի ճշմարտութիւնն իմանամ։ Լուտեր աս երկու գրուածքը տպել տալով չորս կողմը տարածեց, վրան ալ յառաջաբանութիւն մը աւելցուց, որուն մէջ նոյն գրուածոց գովութիւն կու տար, եւ այնպէս կը ձեւացընէր թէ յաղթած մարդուս հետ շատ գթութեամբ կը վարուիմ, եւ թէ խօսքով թէ գործքով իրեն օգնութիւն կ՚ընեմ 17։ Անկէ ետեւ Գարլշդատին հրաման տրուեցաւ որ տեղը դառնայ, բայց աս թէութեամբ որ հաղորդութեան վրայ Լուտերի դէմ ունեցած կարծիքը ամենեւին ոչ գրով եւ ոչ խօսքով վարդապետէ։ Այսպէս վերջացաւ ան կռիւը՝ որն որ Ենայի պանդոկին մէջ մասնաւոր դաշնադրութեամբ ու գրաւականով սկսած էր։ Գարլշդատ դարձաւ Սաքսոնիա եկաւ, եւ սաստիկ աղքատութեամբ պզտիկ քաղքի մը մէջ կ՚ապրէր, միայն անոր միտ դնելով որ իշխանին հրամանին դէմ բան մը չընէ եւ Վիդդենպերկցիներուն ու մանաւանդ Լուտերին՝ տրտնջման պատճառ չտայ։ Բայց Լուտեր ասկից վերջն ալ զինքը երկայն ատեն խաղաղութեան մէջ չձգեց 18։

17. Գործք Լուտ. գերմ. Հատ. Գ. 164։

18. Մենցլ (Հատ. Ա. Գլ. Է. 268. — 270.) աս վերջին դէպքերը մէկիկ մէկիկ պատմելէն ետեւ՝ Գարլշդատին քանի մը գրուածները յառաջ կը բերէ, որոնց մէջ կը տըրտնջէ որ Լուտեր՝ կրօնական ազատութեան նախահաստակը՝ իր վրայ բռնանալով՝ թող չտար որ կարծիքը յայտնապէս խօսի, եւ թէ վերջին աստիճանի նեղութեան ու աղքատութեան հասած է, մինչեւ շատ անգամ զաւկըներուն հետ անօթութենէն մեռնելու վտանգի մէջ կ՚իյնայ, եւ ամենեւին մէկը չի գտնուիր որ իրենց օգնէ։ Մաթեսիոս (Ճառ Ջ. 53.) կը պատմէ որ Գարլշդատ ստիպուեցաւ մինչեւ խոզարած ըլլալ։ — Լուտերին Գարլշդատին դէմ գրածներուն վրայ ընդարձակ կը գրէ Բլանք ալ, Գէշ. Ե. Հատ. Բ. 249. — 251. Ծանօթ. 83։

# ԳԼՈՒԽ Ը

## Լուտերի բանաւորութիւնն ու յամառութիւնը

[illegible] Լուտերի [illegible] [illegible] Լուտեր [illegible] [illegible] մէկ խօսք : [illegible]՝ Լուտերի բանաւորութեան եւ յամառութեան վրայ ըրած խորհրդածութիւնը :

## 1524

ԹԷՊԷՏ Լուտեր միշտ այնպէս կը ձեւացընէր որ իր նպատակը՝ կրօնական նիւթերու մէջ ազատութիւն խօսելն է, այնպէս որ ամէն մարդ ուզածին հաւատայ, բայց իրօք՝ միայն անոր ետեւէն կ'իյնար որ ինք եկեղեցւոյ մէջ գլխաւոր մանաւանդ թէ միակ իշխանութիւնն ունենայ : Ստոյգ է մէկ կողմանէ Աստուածաշունչը ամենուն ձեռքը կու տար, ամէն նաեւ անուս մարդիկներուն իշխանութիւն կու տար որ նոյնը ուզածին պէս հասկընան ու մեկնեն, Ս. Գիրքը մեկնելու համար՝ եկեղեցւոյ ըրած զգուշութիւնները, դրած կանոնները՝ իբրեւ քրիստոնէական ազատութեան դէմ բան մը, իբրեւ բռնաւորութիւն՝ կը մերժէր, եւ ան բաները՝ Ս. Գիրքը գրուածին տակ ծածկել, Աստուծոյ խօսքն արհամարհել, Քրիստոսի վարդապետութեան տեղ՝ մարդկային աւանդութիւններ խօթել, կ'անուանէր. բայց մէկալ կողմանէ երբ որ մէկը աստուածաշնչին մէկ խօսքին՝ իրմէ տարբեր միտք մը տալու, իրմէ զատ կերպով մը հասկընալու եւ մեկնելու ըլլար նէ, անմիջապէս ան մարդը խաբեբայ, հայհոյիչ, մոլորեալ, ամպարիշտ կը սեպէր. պէտք էր որ միշտ իր մեկնութիւնը՝ Աստուծոյ հոգւոյն համեմատ, ու իր հակառակորդին տուածը՝ սատանայական հոգւոյ մեկնութիւն ըլլար[1] :

1. «Լուտեր՝ իր հետեւողներուն համար՝ ուղղափառ եկեղեցւոյ հեղինակն ու հաստատութիւնը կործանելով, եւ իր անձնական կարծիքները հաստատելու համար՝ միշտ իր խղճին եւ իր ուզածին պէս Ս. Գրոց մեկնութիւն տալու պատուիրելով, ամենուն ձեռքը արտաքոյ կարգի մեծ եւ ընդարձակ իշխանութիւն մը տուաւ որ իրենք ալ իրենց անձնական կարծիքը հաստատելու համար նոյն կերպով վարուին: Բայց ետքը ան իշխանութիւնն անոնց ձեռքէն յափշտակելու ուրիշ հնարք չգտաւ, բայց եթէ, կրօնական նիւթերու վրայ իր ունեցած անձնական կարծիքներն ու վարդապետութիւնը՝ բռնաւորական յանդգնութեամբ մը՝ իբրեւ ըստ ինքեան հաստատուած եւ միայն ճշմարիտ կարծիք ու վարդապետութիւն ամենուն ընդունիլ տալ»: Այտան, Մտան Գ. Հրծ Ա. Գլ. Ա. 108: Դարձեալ նոյն մատենագիրը նոյն բանը քիչ մը ետքը (եր. 139.) ուրիշ խօսքերով կը կրկնէ:

Ստուգիւ կ'ուզէր որ ամէն մարդ ուղղափառ եկեղեցւոյ վարդապետութեանց դէմ դնելու, քահանայապետին եւ եպիսկոպոսներուն իշխանութիւնը ոտքի տակ առնելու ազատութիւն ունենայ. բայց կը պահանջէր որ իրեն անձին ճշդիւ ու սաստիկ հնազանդուի, իր ամէն հրամաններն ու ակնարկութիւնները կատարուին։ Անոր համար երբ որ մէկը իրեն կամացը դէմ բան մ'ընելու կը համարձակէր նէ, ամէն միջոցն ի գործ կը դնէր եւ ամէն կերպ խստութիւնը կը գործածէր, մինչեւ որ դիմացինը՝ ուզէր չուզէր՝ իր վարդապետած մոլորութիւններուն եւ դրած կարգերուն ետեւէն երթար։

Ու թէպէտ ինք շատ անգամ եւ ամէն առիթներու մէջ կը պարծէր որ ամէնեւին բռնութիւն ըրած չունի, իր վարդապետութիւնը՝ միայն կը քարոզէ, եւ մէկը չիբռնադատեր որ իր ուսումն ընդունի. բայց չէ թէ միայն իր գործքերը ըսածին սուտութիւնը կը ցուցընեն, հապա նաեւ իր զանազան գրուածները, որոնց մէջ ետեւէն կ'ելնայ որ իր հակառակորդներուն դէմ բռնութեամբ վարուելով՝ զանոնք լռել տայ։ "Աս բանս Աւետարանին եւ մեզի ամէնուն մեծ նախատինք է, կը գրէ տեղ մը,... որ այսչափ թեթեւամիտ ու սաստահակ քարոզիչներ ելլեն։ Աս անմիտ մարդիկ՝ որոնք պատուասիրութեամբ լեցուած են եւ իրենք զիրենք մեծ բանի տեղ կը դնեն... Նոր հողաթափ չունեցած՝ հինները մէկդի կը նետեն, ու նոր գինին հին տակառի մէջ դնել կ'ուզեն։ Բայց միամիտ ժողովրդեան վրայ մէկէն յարձակելու չէ, յառաջագոյն Քրիստոսը իրեն քարոզելու է։ Անոր համար պէտք է որ [illegible] ու իշխանները ասանկ խռովարարներուն (Գարլշդատին եւ անոր կողմնակիցներուն վրայ կը խօսի) դէմ դնեն եւ հոգան որ զգուշութեամբ վարուին։ Աս բանս յանձն առնել [illegible]՝ [illegible] է որ [illegible]. պէտք է իրենց առջեւն առնել, որովհետեւ բերաննին սուտութենէն ու հայհոյութենէն ուրիշ բան չունին, եւ ճշմարտութիւն ըսած բանդ քովերնին չիգտնուիր։ Պէտք է որ [illegible], կամ [illegible] որ [illegible]... [illegible] կը [illegible]։ Իրենք գործքով կը վարուին. անոր համար հետերնին մինակ խօսքով վարուիլը բաւական չէ, հապա գործքով գործքին դէմ դնելու է. [illegible], ան ատեն սատանան ինքը զինքն ուրիշ կերպ կը փոխէ"[2]։ — Լու-

2. Իր զանազան նամակներուն մէջ. Տես առ Տը Վէթթ, Հատ. Բ. 422. 438, 439. Եւ Հատ. Գ. 257։ — Լութեր՝ իրմէ տարբեր կարծիք ունեցողը՝ չէ թէ միայն բանտերով ու կապանքներով պատժուելու, հապա նաեւ յաւիտենական դատապարտութեան արժանի եղեռն կը սեպէր։ Տեղ մը այսպէս կը գրէ. "Աս բաներուն (այս ինքն՝ հաւատոյ ու բարեգործութեանց, կամաց ազատութեան, ...) մէջ ինչպէս որ

տերին աս վերջին սկզբան համաձայն վարուիլը՝ թէպէտ եւ մինչեւ հիմա գրածներէնս շատ անգամ տեսնուեցաւ եւ ասկէ վերջն ալ պատմութեան ընթացքին մէջ յաճախ պիտի տեսնուի. բայց աս առեններս պատահած մէկ դէպքը շատ երեւելի ըլլալուն համար՝ պէտք է որ հոստեղս մանրամասն պատմենք, պատմութիւնը քիչ մը յառաջուընէ առնելով։

Վերը[3] համառօտ մը յիշած ենք որ Լուտեր Վարդպուրկ եղած ատեն պատարագը ջնջելու վրայ գիրք մը շինած ու Վիտդենպերկի Օգոստինեանց նուիրած էր։ Արդ աս Օգոստինեանք՝ որոնք բոլորովին Լուտերին կողմն էին, նոյն գիրքը շատ սիրով ընդունեցան, որովհետեւ իրենք արդէն քիչ մը յառաջ իրենց եկեղեցւոյն մէջէն պատարագը վերցուցած էին[4]։ Բայց Փրեդերիկոս կայսրընտիրը վախնալով որ աս փոփոխութեան ու նորաձեւութեան համար մեծ խռովութիւն մը չըլլէ, մանաւանդ որ վանքին առաջնորդն եղածներուն դէմ ըլլալով՝ իրեն աղաչանք մը գրած էր[5], Վիտդենպերկի համալսարանին հրամայեց որ քննէ թէ Օգոստինեանք աս բանս ինչ պատճառաւ ըրին, եւ նոյն նիւթին վրայ իր (համալսարանին) կարծիքն ալ իմացընէ։ Համալսարանին վարդապետներէն Յուստոս, Հերոն. Շուրֆ, Գարլշդադ, Նիկող. Ամսդորֆ ու Փիլիպ. Մելանքթոն, որոնք ամէնն ալ Լուտերի հաւատարիմ աշակերտներն ու սիրելի բարեկամներն էին, գացին Օգոստինեանց հետ խօսեցան, եւ պատճառնին լսելէն ետեւ՝ իշխանին տեղեկութիւն տուին. միանգամայն խնդրեցին որ հրաման հանէ թէ իր տէրութեան ուրիշ եկեղեցիներուն մէջէն ալ պատարագը վերցուի. եւ չըլլայ որ, ըսին, աս բանիս համար վրադ գալու նախատինքէն, այս ինքն Հուսեան կամ հերետիկոս անունէն վախնաս. վասն զի Աստուծոյ խօսքին համար ասանկ նախատինքները համբերութեամբ կրելու է[6]։ Կայսրընտիրը աս պատասխանով գոհ չըլլալով՝ իրենց նորէն հրամայեց որ մէյ մ'ալ՝ աւելի զգուշութեամբ քննեն, եւ այնպէս շուտ մը դատաստան չընեն եւ չվերցընեն անանկ սովորութիւն մը, որն որ շատ դարերէ վեր եկեղեցւոյ մէջ հաստատուած էր։ Բայց անոնք դարձեալ առաջին պատասխաննին

վարդապետեցի նէ՝ յաւիտեան կ'ուզեմ հաստատուն մնալ, եւ կը զըրուցեմ թէ Ով որ աս բաներուն մէջ իմ վարդապետութեանս տարբեր կերպով կը վարդապետէ, եւ կամ աս բաներուն մէջ իմ վարդապետութիւնս կը դատապարտէ նէ, անիկա զԱստուած կը դատապարտէ, եւ պէտք է որ դժոխոց որդի մնայ,,։ Գործք Լուտերոս. Հատ. Բ. 134։ Տես նաեւ աս Գրքին Ա. Գլխոյն մէջ Լուտերին գրուածքներէն բերուած ուրիշ վկայութիւն մ'ալ. Եր. 150։

3. Երես 125։

4. Սեքէնտորֆ, Գիրք Ա. Համ. ճԻԹ. 214։ Բլանք, Գիրք Դ. Հատ. Բ. 7, 8։

5. Բլանք, Գիրք Դ. Հատ. Բ. 9։

6. Սեքէնտորֆ, Գիրք Ա. Համ. ճԼ. 215։

տուքին, եւ վրան ալ աւելցուցին թէ Սատանան է որ մեր գործած բարեպաշտութեան գործքը խափանելու համար զքեզ վախցընելու կը ջանայ[7]։ Աս բաները Լուտերին դեռ Վարդպուրկ եղած ժամանակը պատահեցան, եւ "Քիչ մը եաքը Գարլշդատ իր բռնական փոփոխութիւնները... խոթեց„ կ'ըսէ Ցեքէնտորֆ[8]։

Փրետերիկոս թէպէտ աս անգամ ալ համալսարանին վարդապետներուն պատասխանէն չհամոզեցաւ, ի վերայ այսր ամենայնի եղածին դէմ կենալ ալ չուզեց։ Միայն քաղքին ամենայն սրբոց եկեղեցւոյն կանոնիկոս քահանաներուն հրամայեց որ հներուն բռնած ճամբէն չխոտորին, աստուածային պաշտօնին մէջ փոփոխութիւն չընեն եւ նոր բաներ չխօթեն։ Կանոնիկոսները կայսրընտրին հրամանին սիրով եւ ուրախութեամբ հնազանդեցան. բայց Լուտեր եւ իրենները շատ բարկացան, եւ անկէ ետեւ կանոնիկոսներուն դէմ սրտերնուն մէջ միշտ ոխ կը պահէին։ Նորոգիչը՝ կանոնիկոսները միշտ Բահաղու քուրմ կը կանչէր, եւ ամենայն սրբոց անուամբ Աստուծոյ նուիրուած եկեղեցին՝ ամէն սատանաներու մեհեան կ'անուանէր։ Գլխաւոր բարկութեան պատճառն ան էր որ Վիդդենպերկ քաղքին մէջ՝ զորն որ ինք հին եկեղեցւոյն աւերակներուն վրայ շինուած նորոգեալ եկեղեցւոյն կենդրոնը կը սեպէր, հին կրօնին հաւատարիմ հպատակներ եւ նախնեաց սովորութիւններն ու ծէսերը հաստատուն պահողներ կը գտնուէր։ Ուստի ամէն կերպով կը ջանար որ կանոնիկոսները՝ ուզեն չուզեն՝ ուղղափառութիւնը թող տան եւ իրեն հետեւին[9]։

"Քիչ մը ատեն ասանկ պարապ տեղ ջանք ընելէն ետեւ՝ տեսնելով որ քաղցրութեամբ պիտի չկրնայ ուզածը յառաջ տանիլ, միտքը դրաւ որ բռնութեամբ կատարէ։ Իսկզբան Սփալադինին թուղթ մը գրեց (1523ին), որուն մէջ կը զրուցէ որ

7. Աս նիւթին վրայ եղած բոլոր գրուածքները կը գտնուին ի Գործս Լութ. Եէնի. Բ. 1. — 8: Տես Նախ-Ռէֆէւ, Գէէրք Ա. Գլ. Զ. 258. — 261. Եւ Ուլէնպէրկ, Գլ. ԺԱ. Համ. Ա։

8. Գիրք Ա. Համ. ՃԼ. 216։ Տես նաեւ Սլէյտան, Գիրք Գ. 37. Բ. — 38. Բ։ — Ռանքէ կը զրուցէ որ ո՛չ բոլոր Օգոստինեանք եւ ո՛չ ալ համալսարանին ամէն անդամները աս բաներս մէջ միաբան էին։ Նոյնը կը հաստատէ նաեւ Բլանք (Գէէրք Գ. Հատ. Բ. 8.)։ Անոր համար, կ'ըսէ Ռանքէ, կայսրընտրին ալ իրենց զրուցեց որ եթէ նոյն իսկ Վիդդենպերկի մէջ ամէնքդ միկամեղ չէք կրնար միաբանիլ նէ, յայտնի է որ բոլոր աշխարհք ըրած փոփոխութիւններնուդ վրայ տարբեր դատաստան պիտ'որ ընէ։ Ուստի եւ սրոշեց որ աս բաներս վրայ գրքեր կարդան, վիճեն, քարոզեն. բայց միշտ հին սովորութիւնը հաստատուն պահեն եւ մէջը ամենեւին փոփոխութիւն չընեն։ Աս ըսելէն վերջը կը պատմէ որ ինչպէս Գարլշդատ աս հրամանին դէմ սկսաւ անմիջապէս տարբեր նոր կերպով պատարագ ընել։ Գէէրք Գ. Գլ. Ա. Հատ. Բ. 17։

9. Ուլէնպէրկ, Գլ. ԺԱ. Համ. Ա։

միտք ունիմ իմ պաշտօնիս համաձայն՝ արդարանք կանոնիկոսնե-րը զսպելու[10]: Ահա այսպէս Սփալադինին գրեց, որպէս զի անիկա իշխանին սիրտն առնելու ջանայ, որովհետեւ գիտէր թէ կանոնիկոսներուն դէմ ընելիքը՝ կայսրընտրին սիրտը շատ պիտի նեղացընէ: Իսկ քանի մը օր ետքը կանոնիկոսներուն այսպէս թուղթ մը գրեց: Աս օրերս ձեզմէ երկու հոգի մեռան, որոնց զեղջանելու համար ես մինչեւ հիմա ձեր եկեղեցւոյն մէջ Աւե-տարանին դէմ եղած բաներուն կը համբերէի: Բայց հիմա այն-պէս կը կարծեմ որ բաւական ժամանակ ձեր ակարութեանը հետ խնայելով վարուեցայ. եւ որովհետեւ կը տեսնեմ որ իմ խնայելս՝ զձեզ յամառութիւններնուդ մէջ աւելի եւս կը հաս-տատէ, մինչեւ Աւետարանն ալ ծաղր կ'ընէք, անոր համար իմ պաշտօնս զիս կը ստիպէ որ ձեզի աղդարարութիւն ընեմ որ եթէ Աւետարանին դէմ եղող սովորութիւնները չվերցընէք ու խօսքերուս չհնազանդիք նէ, ան ատեն բեմէն ժողովրդեան առ-ջեւը կը խօսիմ, եւ անանկ բաներ կը խօսիմ, որ ձեզի հաճելի չեն ըլլար[11]:

Կանոնիկոսները՝ կայսրընտրին պաշտպանութեան վրայ վըս-տահանալով՝ Լուտերին աս սպառնալիքն ալ բանի տեղ չդրին, եւ իրենց սովորութեան մէջ հաստատուն մնացին: Ան ատեն Լուտեր սպառնալիքը կատարելով՝ եկեղեցւոյ մէջ ժողովրդեան առջեւն այսպէս խօսեցաւ: Կանոնիկոսներուն երկու անգամ աղդարարութիւն ըրի՝ մէյ մը լատիներէն մէյ մ'ալ գերմանե-րէն, որ պապական անպիտան սովորութիւնները մէկդի ձգեն, եւ Աւետարանին համաձայն կարգեր գործածեն: Բայց որովհետեւ անոնք խելքերնին գլուխնին բերել չեն ուզեր, հապա անոր հակառակ՝ անանկ ճամբաներ կը բռնեն, որով կ'երեւայ թէ ամպարշտութիւննին բռնութեամբ ալ կ'ուզեն պաշտպանել, անոր համար աս երրորդ անգամ հրապարակաւ իրենց աղդա-րարութիւն կ'ընեմ, ու զձեզ ամէնքդ ալ վկայ կ'առնեմ: Գու-ցէ կայսրընտրին հրամանը պատճառ կը բռնեն, որն որ աս-տուածային պաշտօնին կերպը փոխելն իրենց արգիլեց. "Բայց աս բանիս մէջ իշխանին հրամանն ի՞նչ գործք ունի: Իշխանը՝ աշխարհական դատաւոր է, որն որ միայն սրոյ հոգն ունի եւ ոչ քարոզութեան: Մանաւանդ որ աս ալ աղէկ գիտեն թէ Աւելի Աստուծոյ հնազանդելու է քան թէ մարդկան....: Եւ որովհե-տեւ ես ձեզմէ աս պաշտօնին կանչուած եմ, եւ Աստուծմէ հրա-ման ունիմ որ աս եկեղեցին սուրբ խօսքով արածեմ, անոր համար ինծի կ'իյնայ ի պաշտօնէ հոգ տանիլ որ կանոնիկոսնե-

10. Գործք Լուտ. գերմ. Հատ. Բ. 275:

11. Նոյն տեղը, 278:

բան եկեղեցւոյն մէջ տիրող գայթակղութիւնը վերցուի, որպէս զի չըլլայ որ օտարին մեղաց ու պատժոյն հաղորդ ըլլանք։ .... Թէ որ մեր խրատներուն հետեւելու ըլլան, զիրենք հարազատ եղբօր պէս կ'ընդունինք. ապա թէ ոչ՝ թէպէտ մենք թող տալու ալ ըլլանք որ աս ամպարիշտ գործքը յառաջ տանին, պէտք է խոստովանին թէ ճշմարիտ Աստուծոյ ծառայութիւն չեն ըներ, հապա չար սատանաներուն պաշտօն կը մատուցանեն,, [12]։

Լուտեր այնպէս կը կարծէր որ ալ կանոնիկոսները իրեն դէմ կենալու չեն համարձակիր, մանաւանդ որ կայսրընտրին հրամանն այնպէս արհամարհած ու ոտքի տակ առած էր, որ յայտնի կը ցուցընէր թէ նոյն իսկ իշխանն ալ իր առջեւը բան մը չէ։ Բայց աս անգամուն ալ ակնկալութիւնը փուճ ելաւ. որովհետեւ կանոնիկոսները հաստատուն կեցան եւ քաջութեամբ իր յարձակմանցը դէմ դրին։ Քիչ մը ժամանակ ալ զիրենք թող տուաւ Լուտեր. բայց վերջը շատ աւելի կատաղութեամբ վրանին յարձակեցաւ ու յաղթեց ալ։ Ասանկէն վերջին փորձն ասիկա եղաւ. իրենց սաստիկ նամակ մը գրեց (1524ին), որուն մէջ այսպէս կը խօսի։ Որովհետեւ յայտնի կը տեսնեմ թէ դուք չարաչար կը զեղծանիք իմ համբերութեամբս՝ որով մինչեւ հիմա ձեր սատանայական սովորութեանց ու ամպարշտութեանց համբերեցի, եւ Աստուծոյ ժողովուրդը իրարմէ կը բաժնէք, ուսկից զանազան խռովութիւնք կրնան ելլել, անոր համար եմ՝ որ աս եկեղեցւոյն օրինաւոր հովիւն ու քարոզիչն եմ, խղճմտանքս հանդարտեցընելու եւ հրդեհը շատ չմեծցած մարելու համար՝ ձեզի դէմ ելլելու կը պարտաւորիմ։ Ուստի կ'աղաչեմ ասանկ բաները վերջացուցէք. պատարագները, ննջեցելոց համար աղօթք ընելը, պահքերը եւ ուրիշ անպիտան սովորութիւնները, որոնք Աւետարանին դէմ են, մէկդի ձգեցէք, եւ անոնց տեղ անանկ սովորութիւններ խօթեցէք, որոնք որ ես իմիններուս հետ Աստուծոյ ու մարդիկներուն առջեւ կարենամ պաշտպանել։ Իսկ թէ որ դէմ դնելու ըլլաք, ամենեւին չեմ դադրիր ու չեմ հանգչիր, մինչեւ որ նաեւ կոմեր- նաւը դէմ գձեղ փմ ոռֆոզեր աս բանս ընելու։ Ձեզի երեք օր ժամանակ կու տամ, որպէս զի մտածէք եւ ինծի պատասխան տաք որ կ'ուզէք հնազանդիլ չէ նէ՝ չէ [13]։

Եւ որպէս զի աս իր բռնաւորական հրամանին աւելի եւս զօրութիւն տայ, համալսարանին վարդապետները, քաղքին ծերակոյտն ու ժողովուրդը գրգռեց որ երթան ամէնքը մէկտեղ աս բանը գլուխ տանելու ջանան։ Ասոր համար համալսարանին

12. Դարձեալ նոյն տեղը, 279։ 13. Նոյն տեղը, 498։

վարդապետներին ու ծերակուտէն անոնք կանոնիկոսաց թուղթ մը խաւրեցին, որուն մէջ Լութերին գրուածքներէն առնուած շատ մը պատճառներ գրած էին, եւ իրենք ալ կը հրամայէին որ շուտ մը մէկտեղ գան եւ խորհուրդ ընելով՝ իրենց պատասխան մը տան [14]: Կանոնիկոսները աս վերջին յարձակմամբ սաստիկ նեղը մնան, ինչու որ իրենց տրուած ժամանակին կարճութեան համար կայսրընտրին ալ չէին կրնար դիմել եւ անկէց օգնութիւն խնդրել: Ասանկով վախէն եւ Լութերի սաստիկ բռնաւորութենէն յաղթուելով՝ գլուխ ծռեցին, եւ իրենց այնչափ ժամանակ հաստատուն պահած հին սովորութիւնները թողտալով՝ Լութերականաց սովորութիւններուն ու կարգերուն սկսան հետեւիլ [15]:

Ահաւասիկ աս է ան ճշմարիտ աւետարանական ազատութիւնը՝ որուն վրայ կը պարծի Լութեր ըսելով թէ ես եկեղեցւոյ մէջ խոթեցի. ահա աս է ան քրիստոնէական երկայնմտութիւնը՝ որն որ, կ'ըսեն նորոգեալք, մենք ամենէն առելի եւ ամենուն հետ կը բանեցընենք: Բայց աս ազատութիւնը միայն խօսքով էր, եւ ազատութեան բաղձալով Լութերին եռանդէն գացողները՝ անհնարին գերութեան մէջ ինկան: "Լութերական եկեղեցին, կ'ըսէ Պոսիւէ, ... օրինաւոր իշխանութեան դէմ ելլելուն պատիժը՝ երկայն ատեն քաշեց. ինչու որ երբեք Լութերի պէս խիստ ու գժնդակ տէր մը եղած չէ, եւ ոչ ալ կրօնի բաներու մէջ իրեն բանեցուցած բռնաւորութեան պէս՝ բռնաւորութիւն: Այնպէս յայտնի էր անոր հպարտական յան-

14. Գործք Լուտ. գերմ. Հատ. Բ. 507. Բ:

15. "Լութեր՝ կայսրընտիրը սոփ-պելէն եւ կանոնիկոսները խիստ խօսքերով հալածելէն չդադրեցաւ, մինչեւ որ իր (կայսրընտրին) եկեղեցւոյն մէջէն ալ պատարագը կատարեալ վերցուեցաւ" կ'ըսէ Բլանք. Գիէք Գ. Հատ. Բ. 147: — Բայց բանը՝ միայն խօսքով չմնցաւ, հապա գործքի ալ նկռուած էր: Մենցլ՝ որն որ Լութերին կանոնիկոսաց դէմ ըրած բռնութեան վրայ պատմածները ըստ մեծի մասին կը պատմէ, կը գրէ որ "Գիշեր մը կանոնիկոսաց գլխաւորին պատուհաններուն ապակիները քարերով կոտրեցին, ցուցընելու համար որ եթէ խօսքերն օգուտ չընելու ըլլան նէ՝ գործքերն ալ պիտի չպակսին": Հատ. Ա. Գլ. Գ. 164: Աս բանը Լեւան ալ կը պատմէ, եւ խօսքը կը լմնցընէ ըսելով որ "Բողոքականութիւնները ազդեցութիւննին ըրին, եւ ... կանոնիկոսաց եկեղեցւոյն մէջն ալ նոր պաշտամանց կերպը մտաւ": Մոսն Գ. Հոծ Ա. Գլ. Ա. 114: — Նոյն դէպքը Սեքենտորֆ ալ կը յիշատակէ. (Գիէք Ա. Համ. ՃԾԳ. Յաւել. Բ. 276.) եւ թէպէտ բուն դիպուածքը կրցածին չափ Լութերին նպաստաւոր կերպով կը ջանայ պատմել ու զինքը բռնաւորութիւն բանեցուցած ըլլալէն կ'ուզէ արդարացընել. բայց ամէն իր ջանքը պարապ է, որովհետեւ չէ թէ միայն գործքերը յայտնի կը ցուցընեն, եւ թէ՛ ուղղափառ թէ՛ բողոքող մատենագիրները յայտնապէս կը գրուցեն որ աս բանիս մէջ Լութեր բռնութեամբ վարուեցաւ. Հապա նոյն ինքն Լութեր ալ կը խոստովանի. "Մեր կանոնիկոսները, կ'ըսէ, վերջապէս բռնադատեցինք որ պատարագը ջնջելու հաւանին": Ացը Վիլէ, Հատ. Բ. 578:

գրգնութիւնը՝ մինչեւ Մունդեր կ'ըսէր թէ Երկու պապ կայ, մէկ մը Հռոմայ պապը մէկ մ'ալ Լութեր, եւ երկրորդը՝ առաջինէն աւելի խիստ է[16]։ Թէ որ Լութերին վրայ աս դատաստանն ընողը՝ միայն Մունդէր ըլլար նէ..., գուցէ Մելանքթոն կրնար մխիթարուիլ. բայց Զուինգլ, Կալուին եւ բոլոր Խորհրդականները յայտնապէս կը զրուցէին թէ Լութեր Նոր պապ մ'եղած է, եւ Մելանքթոն՝ որ զիրենք կը յարգէր, չէր կրնար ըսածնին ուրանալ[17]։ Ամէն մարդ գիտէ Կալուինին՝ իր բարեկամներէն մէկուն գրածը. "Ա՛լ Լութերի բռնութեանց ու գազանութեանց "համբերելը՝ կարելի բան չէ. անձնասիրութիւնը իրեն թող "չիտար որ իրեն պակսութիւնները ճանչնայ եւ յանձն առնէ որ "մէկը իրեն դէմ կենայ,,։... Բանն ան աստիճանի հասաւ, մինչեւ Կալուին նոյն իսկ Մելանքթոնին այսպէս կը գրէ... "Կը "խոստովանիմ որ իրեն (Լութերին) շատ պարտական ենք, եւ "դիւրաւ յանձն կ'առնեմ որ մեծ իշխանութիւն ունենայ, միայն "թէ իր անձին վրայ տիրել գիտնայ...։ Ամէն բան տակն ու "վրայ կ'ըլլայ, երբ որ մէկ հոգի առանձին աւելի կարողութիւն "կ'ունենայ, քան թէ ուրիշներն ամէնքը մէկտեղ, մանաւանդ "երբ որ ան մէկ հոգին չիվախնար իր բոլոր իշխանութիւնը գոր- "ծածել...։ Ստուգիւ մեզմէ ետքը եկողներուն շատ մեծ չար "օրինակ թող կու տանք, եթէ որ աւելի կ'ուզենք մեր ազա-

**16.** Գրեթէ նոյնը տարբեր բառերով կը զրուցէ Մենցըլ ալ (Հատ. Ա. Գլ. ԺԴ. 466. — 469.) թէ Լութերին եւ թէ անոր աշակերտներուն վրայ։ "Օսիանդր, Ամսդորֆ եւ անոնց նմանները, կ'ըսէ, իրենցմէ տարբեր կերպով մտածողներէն կը պահանջէին որ կարծիքնին ետ կանչեն եւ հպատակին, ինչպէս որ երբեմն Կայետանոս (Լութերէն) պահանջած էր։ Լութեր ալ գրեթէ երբեք չհեռացաւ աս կարծիքէն,, այս ինքն՝ թէ պէտք է որ ուրիշները՝ իրմէ տարբեր կարծիքնին ետ կանչեն ու իրեն հպատակին։ Հասարակս Լութերին երկայն մէկ խօսքը յառաջ բերելէն ետեւ (որուն մէջ Նորոգիչը կը պահանջէ որ ամէն մարդ՝ իր (Լութերին) հաղորդութեան վրայ ունեցած կարծիքն ընդունի) խօսքը այսպէս յառաջ կը տանի. "Աս Լութերականաց՝ վարդապետութեան վրայ տիրել ուզելը՝ շատ աւելի խիստ ու շատ աւելի տաղտկալի էր քան թէ Հռոմէական եկեղեցւոյնը, եւ Նորանոր գաղափարներ առաջնելու ու վարդապետութիւնը՝ մտաւորական կերպով ըմբռնելու եւ վրան խօսելու արգելք կը դնէր։ Եկեղեցւոյ առաջին հինգ դարուց մէջ եղող հարց, մանաւանդ թէ նոյն իսկ միջին դարերուն մէջ գտնուող վարդապետներուն շատ անգամ համարձակութեամբ ու ազատօրէն՝ քրիստոնէական կրօնից բարձր մտաւորական իմաստովը խօսածը՝ Նոր եկեղեցւոյն մէջ գրերու կամ բառերու շղթայովը կապուեցաւ. եւ թէ որ մէկը յանդգնելու ըլլար նոյն կերպով (համարձակութեամբ ու ազատօրէն) խօսելու՝ իբրեւ կամայական մեկնութիւններ հանող գրգռիչ, մանաւանդ թէ իբրեւ գժտական ոգիներու զօրութեամբ խօսող կը սեպուէր,,։

**17.** Սուեննկֆելտ անգամ մը կը գրէ որ Լութեր "Քրիստոսի ճշմարիտ ծանօթութեան դէմ կը դնէ ... բռնաւորութիւն կ'ընէ, մարդիկները՝ իր վարդապետութեան կապել կ'ուզէ, եւ Հոգւոյն սրբոյ պաշտօնին դէմ դնելու կը սկսի,,։ Առ Մենցըլ. Հատ. Ա. Գլ. ԺԴ. 472։

«ութիւնը թողուլ քան թէ թեթեւ թշնամանօք մըն ալ զինքը «բարկացընել: (Լուտերին) բնութիւնը սաստիկ է, կ'ըսեն, եւ «իր կիրքերը զօրաւոր. բայց երբ որ ամէնքն ամէն բանի մէջ իրեն «հաճելի ըլլալ կ'ուզեն, ան ատեն ինքն ալ աւելի եւս «սաստկութեամբ ու բռնութեամբ կը վարուի: Համարձա- «կի՛նք գոնէ անգամ մը ազատութեամբ հեծել,, 18: Ինչ- պիսի՜ սաստիկ գերութեան մէջ ինկած կ'ըլլայ մարդ, այսպէս կը վերջացընէ Գոսիւէ իր խօսքը, երբ որ եւ ոչ կը համարձակի ազատութեամբ հեծել...: Ի՛նչ կրնայ յուսացուիլ երբ որ միայն մէկ մարդ, եւ անանկ մարդ՝ որ ուրիշներէն աւելի իշխանութիւն մը գուցէ ալ ուրիշներէն աւելի գիտութիւն մը չունի, չ'ուզեր ամենեւին մէկու մը լսել, եւ հարկ կ'ըլլայ որ ամէն բան իր ուզածին պէս կատարուի,, 19:

18. Բայց Կալուին՝ որն որ ինչպէս ծանօթ է, բողոքականաց ուրիշ մէկ գլխաւոր մասին գլուխն ու առաջնորդն է, թէպէտ Լուտերին բռնաւորութեան վրայ այսպէս կը տրտնջէր, բայց ինքն ալ անկից քիչ բռնութիւն չէր բանեցըներ ամէնքը իր կարծիքին գործըներու: Թէ որ մէկը իրեն դէմ բան մը խօսելու կամ գրելու ըլլար, եւ կամ թէ իր վարդապետածին դէմ կամ իրմէ տարբեր բան մը վարդապետելու յանդգնէր նէ, Կալուին ալ Լուտերին պէս ամէն տեսակ սաստկութեամբ ու զանազան բռնութիւններով ու հարստահարութիւններով կը ջանար ստիպելու որ ան առանձնական կարծիքը թողու եւ իրեն հաւանայնի: Մանաւանդ թէ կրնայ ըսուիլ որ Կալուին Լուտերէն աւելի սաստկութեամբ ու բռնաւորութեամբ կը վարուէր: Ասոր վկայ նշան կրնայ ըլլալ Սերուեդի զարհուրելի մահը, որն որ Կալուին Ժընեւըրա քաղաքը ողջ ողջ այրել տուաւ, միայն անոր համար որ Երրորդութեան վրայ իր կարծիքներէն տարբեր կարծիք վարդապետած էր: Եւ մասնաւոր գիրք մ'ալ շինեց, որուն մէջ՝ ըրածը կը ջատագովէր եւ կ'ուզէր ցուցընել թէ հերետիկոսներին այրելու է: Եւ նոյն իսկ Մելանքթոն՝ առ Կալուին գրած մէկ թղթին մէջ աս գործը մեծապէս կը գովէ: «Կարդացի, կ'ըսէ, քու գրուածքդ՝ որուն մէջ Սերուեդին զարհուրելի հայհոյութիւնը կը մերժես:... Եկեղեցին հիմա ու վերջը քեզի շնորհակալ պէտք է որ ըլլայ:... Նաեւ կը հաստատեմ որ ձեր դատաւորներն աղէկ ըրին որ բանը աղէկ մը քննելէն վերջը՝ աս հայհոյիչը մեռցուցին,,: Առ Մելանքթ. Հատ. Բ. Գլ. Ա. Գ. Ծանօթ: — Բայց աս միայն չէ, ուրիշ շատ մարդիկներ ալ կրօնի բաներուն վրայ իրենց կարծիքը համարձակ քարոզելնուն համար բողոքողներէն տանջուեցան: Յոհ. Ճենդիլէ՝ Կալուինի աշակերտներէն մէկը՝ աս պատճառաւ Բեռնի մէջ գլխատեցաւ. Մատթ. Կրիպալտի անունով մէկը՝ Ժընեւրա նոյն պատճառաւ համար բանտ դրուեցաւ եւ պիտի տանջուէր, բայց մահը վրան հասնելով՝ պատժէն ազատեցաւ. Յոհ. Վալենտինոս՝ նոր կարծիքներ հանելուն համար՝ Բեռն քաղաքը բողոքողներէն բանտադրուեցաւ ու մինչեւ մահը հոն մնաց: Ասոնք մէկիկ մէկիկ կը պատմէ Մէնցլ (Նոյն յիշուած տեղը) եւ կը զրուցէ որ «Պարապ տեղ աս մարդիկները՝ կարծիքնին պաշտպանելու համար Ս. Գրքէն վկայութիւններ կը բերէին, պարապ տեղ կը զրուցէին որ նոյն իսկ նորոգիչները մեզի այսպէս օրինակ տուած են, որովհետեւ անոնք ալ իրենցմէ յառաջ եղած հաւատոյ մասունքներուն ու վարդապետութիւններուն շատը մերժած ու անոնց հակառակ բաներ վարդապետած են: Նոր եկեղեցւոյն գլուխները աւելի կ'ուզէին իրենք իրենց դէմ գործել, քան թէ ամենուն ալ՝ եկեղեցւոյ վարդապետութիւնը փոխելու իրաւունք տալ,,: Նոյն տեղը:

19. Գիրք Ե. Համ. ԺԵ:

Լսենք հոսանեղս մտադրութեամբ երեւելի բողոքող մատենագրի մը աս բանիս վրայ գրածը [20] ։ „Լուտերին վարմանց ու բնութեան վրայ ճիշդ հասկացում մ՚ունենալու համար՝ պէտք է որ զինքը երկու այլեւայլ նկատմամբ տեսնենք ։ Նախ՝ իբրեւ Հռոմայ աթոռին հպարտական կարծիքներուն ու մեծամեծ զեղծմունքներուն դէմ պատերազմող ․ ետքը մ՚ալ իբրեւ նոր եկեղեցւոյ մը հիմնիչ, որուն կրնայ ըսուիլ որ մինչեւ իր մահուան ժամանակը (1546), այս ինքն 30 տարիի չափ, գլուխ եւ առաջնորդ էր ։ Առաջին նկատմամբ միտ դնելու ըլլանք, կը գտնենք որ (եկեղեցական) ժողովոց եւ քահանայապետաց իշխանութեան տեղ՝ Ս․ Գրոց ու մարդկային մտաց իշխանութիւնը հաստատելու կը ջանայ, եւ կը պահանջէ որ ամէն մարդ վերջին ատեանի ազատութիւն ունենայ Ս․ Գիրքը կարդալու եւ մեկնելու ․ որովհետեւ միշտ աս կը զրուցէ որ Ս․ Գիրքը կապելու չէ, հապա թող տալու է որ ամէն մարդ իմացածին պէս մեկնէ․․․ ։ Իսկ իբրեւ նոր եկեղեցւոյ մը հիմնիչ՝ Լուտերի բնութիւնը բոլորովին ուրիշ կերպով մը կ՚երեւայ ։ Ինչու որ երբ որ ետք մը Հռոմայ աթոռէն բաժանումը գլուխ տարաւ, առջեւն ուրիշ աւելի դժուարին գործք մը կար, այս ինքն՝ հաւատոյ ու աստուածային պաշտաման գրութիւն կամ շինուած մը կանգնելու էր, որն որ առանց պապական եկեղեցւոյն հերքուած վարդապետութիւններին ընդունելու, կարենար ազատ մնալ ան անկարգութիւններէն՝ որոնց մէջ կը վախցուէր թէ իյնայ բոլոր եկեղեցական կարգերը փճացնելով ։ Աս գործքին ալ նոյն հաստատութեամբ ձեռք զարկաւ, որով որ Հռոմէական եկեղեցւոյն դէմ ելած էր, բայց աս երեւելի տարբերութեամբ՝ որ առաջին դէպքին մէջ (այսինքն՝ Հռոմայ եկեղեցւոյն դէմ պատերազմելու ատեն) սաստկութեամբ կը հաստատէր թէ հաւատոյ նիւթերուն մէջ ամէն մարդ ազատ դատաստան ընելու իրաւունք ունի, եւ անով յաղթեց․ իսկ երկրորդ դէպքին մէջ (այս ինքն՝ իր եկեղեցին հաստատելու ատեն) կը պահանջէր որ ամէն իր կողմն անցնողները՝ իր բոլոր վարդապետութիւնները առանց զանազանութեան ընդունին ։ Եւ որովհետեւ քանի մը նիւթերու վրայ իր միտքն որոշած էր, ամենեւին բան մը չկրցաւ զինքը աս կարծիքներէն շարժել ։ Աս նիւթերուն երեւելիներն էին սուրբ հաղորդութեան մէջ Քրիստոսի իրական ներկայութիւնը, եւ մարդուն՝ միայն հաւատքով արդարանալը ։ Ով որ աս երկու վարդապետութիւնները չէր ընդունէր նէ, իր եկեղեցւոյն անդամ չէր կրնար ըլլալ ։

20․ Կ՚աղաչենք որ ընթերցողներնիս աս հատուածը կարդալու ատեն՝ բողոքող մատենագիրներէն բերուած վկայութիւններուն վրայ յառաջաբանութեան մէջ ըսածնիս յիշեն, եւ աս մատենագրին խօսքերն ան մտքով կարդան ։

Եւ թէպէտ միշտ պատրաստ էր իր վարդապետութիւնը Ս. Գրքէն առնուած վկայութիւններով պաշտպանելու, բայց երբ որ աս վկայութիւնները բաւականապէս չէին ցուցըներ, շատ անգամ խիղճ չէր ըներ ուժի բռնական միջոցներու դիմելու[21]։ Ասոր կատարեալ օրինակը կը տեսնուի իրեն բարեկամ Գարլշտատին դէմ ըրածովը, որն որ Հռոմայ եկեղեցւոյն վարդապետած գոյացափոխութեան ու Լութերին դրած իրական ներկայութեան մէջ զանազանութիւն չկրնալով գտնել՝ Զուինգլիին պէս ընդունած էր որ հացն ու գինին՝ Քրիստոսի մարմինն ու արիւնը չեն, հապա միայն անոնց նշանը[22]։ Լութեր մեծ յամառութեամբ իր կարծեացը մէջ մնաց, որով մէջերնին դրով սաստիկ կռիւ մը սկսաւ. եւ աս կռուոյն վախճանն ան եղաւ որ Լութեր՝ որուն որ աշխարհական իշխանութիւնը պաշտպան էր, Գարլշտատն աքսորել տուաւ. եւ Գարլշտատ ան աստիճանի խեղճութեան հասաւ որ վերջին ատենները ստիպուեցաւ գործաւորի պէս աշխատելով իր հացը վաստըկիլ։ Լութերին մէկ անգամ ընդունած կարծեացը մէջ սաստիկ յամառութեամբ կենալը՝ Գերմանացի ու Հելուետացի նորոգիչներուն (Լութերին ու Զուինգլիին) իրարու հետ միաբանելուն իրական արգելք դրաւ. եւ հաղորդութեան մէջ՝ Քրիստոսի իրական ներկայութիւնն ուրացողներուն դէմ ունեցած ոխն ան աստիճանի հասցուց, որ Հելուետիայի ու Գերմանիայի ան քաղաքները՝ որոնք Զուինգլիին ու Բուկերին կարծիքն ընդունած էին, չուզեց ամենեւին բողոքական եկեղեցին պաշտպանելու համար դրուած դաշնակցութեան մէջ առնել։ Եւ այսպէս յանձն առաւ աւելի իր բոլոր գործքը կորստեան վտանգի մէջ դնել, քան թէ իրեն օգնական առնել անոնք՝ որոնք հաւատոյ ամէն մասունքներուն մէջ իրեն հետ համաձայն չէին։

“Այնպէս նախասահմանութեան եւ միայն հաւատքով արդարանալու վարդապետութեան մէջ Լութեր այնպէս յամառ էր ինչպէս հաղորդութեան վարդապետութեան մէջ։ Աս վարդապետութիւնը պաշտպանելու համար սաստկութեամբ Երազմոսին դէմ յարձակեցաւ, որն որ մարդկային կամաց ազատութիւնը կը պաշտպանէր. եւ երբ որ աս մեծ իմաստունն ու ճշմարիտ քրիստոնեան՝ իր Պաշտպանէն ըսուած գրքովը՝ Լութե-

21. When these proved insufficient, he seldom hesitated to resort to more violent measures.

22. Լութեր կը զրուցէր որ հաղորդութեան խորհրդոյն մէջ Քրիստոսի մարմինն, արիւնն ու աստուածութիւնը՝ իրօք եւ ամբողջ կը գտնուին. ուստի եւ աս մասին մէջ ուղղափառ վարդապետութեան համաձայն էր։ Միայն աս մոլորութիւնը կ'ունենար թէ նոյն իսկ քահանայագործութենէն վերջն ալ՝ հացին ու գինւոյն գոյացութիւնը խորհրդեան մէջ ամբողջ կը մնայ։

րին պատասխան տուաւ, Լուտեր իր առջի սասանկութեան վրայ ծաղրածութիւն եւ նախատական խօսքեր ալ աւելցուց։... Իսկ մարդուն՝ միայն հաւատքով փրկուելուն վարդապետութեան մէջ՝ բանն աւելի եւս անդին տարաւ. վասն զի աս բանիս մէջ՝ քահանայապետներուն, եկեղեցւոյ ժողովքներուն եւ Ս. Հարց դէմ գնելէն զատ՝ առաքելոյ մը իշխանութեան ալ հակառակ ելաւ, եւ կ'ըսէր թէ Յակոբայ Թուղթը՝ որուն մէջ բարեգործութիւններուն հարկաւոր ըլլալը բացայայտ կը հաստատուի ու գեղեցիկ կերպով մը կը մեկնուի, Պետրոսի եւ Պօղոսի Թղթերուն քով՝ յարդեայ (անպիտան) գիրք մըն է[23]։

«Աս գրքիս սահմանուած չափը կ'անցնէի, թէ որ ուզէի մէկիկ մէկիկ յիշել ան ամէն հակառակութիւնները՝ որոնց պատճառ եղաւ Լուտերին մէկ քանի կարծիքներուն մէջ ունեցած անմեղկելի պնդութիւնը, կամ թէ որ ուզէի նկարագրել ան խստութիւնը՝ որով որ դժբախտութեամբ իրմէ ետեւ մը առնէ

23. Նոյն բանը արդէն Լուտերին ժամանակը ուրիշ մէկ երեւելի բողոքող մը (Սուէնկֆէլտ) իրեն երեսը կը զարնէր։ «Լուտեր, կ'ըսէր. բարեգործութիւններն ու Աստուծոյ օրէնքները շատ կը տկարացընէ, եւ անոր հակառակ (Ս. Գրոց) բառերէն կամ գրերէն՝ մեռեալ եւ անհաստատ հաւատք մը կը կանգնէ. ինչպէս որ Յակոբոս առաքելոյն ատենը ոմանք կ'ընէին, (որոնց դէմ կը գրէ Ս. Առաքեալը,) անոր համար ալ Լուտեր անոր Թուղթը աստուածաշնչին մէջ ընդունիլ չ'ուզեր»։ Առ Մէնցլէ, Հատ. Ա. Գլ. ԺԴ. 472։ — Նոյն բանին վրայ պարապելով կը խօսի նաեւ Բլանք, (Գերք Դ. Հատ. Բ. 97, 98.) եւ կը ցուցնէ որ Լուտեր՝ գրքի մը կանոնական կամ ճշմարիտ Ս. Գիրք ըլլալը՝ անոր մէջի վարդապետութենէն կ'որոշէր, եւ նոյն Գրքին աստուածային ըլլալուն աստիճանը՝ իր (Լուտերին) վարդապետութեանց նոյն Գրքին մէջ գտնուելուն աստիճանաւը կը չափէր։ Ան որ՝ տարբեր խօսքերով ըսելու համար՝ ուրիշ բան չէ, բայց եթէ Ս. Գիրքն իր վարդապետութեանց կանոն առնելու տեղ՝ իր վարդապետութիւնները Ս. Գրոց կանոն առնել։ — Ինչպէս Բլանքին ըսածէն կը տեսնուի, Լուտեր աստուածաշնչին զանազան Գրքերուն մէջ աստիճանաւորութիւն մը կը դնէր, մէկը մէկալէն վեր կամ աղնիւ կը սեպէր։ «Որովհետեւ, կը գրէ տեղ մը, Յովհաննէս՝ Քրիստոսի շատ քիչ գործերը կը գրէ ու շատ խօսքերը, իսկ ուրիշ աւետարանիչները՝ իր գործերուն շատերը կը գրեն ու խօսքերուն քիչերը, անոր համար Յովհաննէսի աւետարանը՝ միակ... ճշմարիտ գլխաւոր աւետարանն է, եւ ուրիշ աւետարաններէն աւելի նախապատիւ ընելու ու բարձր սեպելու է։ Նոյնպէս Պօղոս ու Պետրոս առաքեալներուն Թղթերը՝ Մատթէի, Մարկոսի ու Ղուկասու աւետարաններէն շատ վեր են։ Վերջապէս Ս. Յովհաննէսի աւետարանն ու իր Ա. Թուղթը, Ս. Պօղոսի Թղթերը, եւ մանաւանդ առ Հռոմայեցւոց, Գաղատացւոց եւ Եփեսացւոյ Թղթերը եւ Ս. Պետրոսի Ա. Թուղթը՝ անանկ գրքեր են, որոնք քեզի Քրիստոս կը ցուցնեն, եւ գիտնալու հարկաւոր եղած ամէն... բաները կը սորվեցընեն, թէպէտ եւ ամենեւին ուրիշ գիրք կամ վարդապետութիւն մը չտեսնես կամ չլսես»։ Աս անմիջական խօսքերը գրելէն ետեւ՝ Որոգոյին յառաջ բերած վճիռը կու տայ. «Անոր համար ալ, կ'ըսէ, Ս. Յակոբոսին Թուղթը՝ ասոնց հետ համեմատելով՝ ճշմարտիւ յարդեայ (անպիտան) Թուղթ մըն է, եւ ամենեւին աւետարանական եղանակ չունի»։ Առ Ռէֆնէլ, Գերք Բ. Գլ. Բ. 41. Ծանօթ։

կամ մէկ մը ուխտէ հաւատացողներուն եւ կամ իր ցուցուցած ճամբէն մոլի մը կամ ենթադրովներուն հետ կը վարուէր:... Այս միայն բաւական է ըսել թէ... քանի որ Հռոմայ եկեղեցւոյն դէմ կը պատերազմէր նէ, հաւատոյ նիւթերուն մէջ ամէն մարդուն ազատ դատաստան ընելու իրաւունքը նախահարկի մը քաղքութեամբ ու վստահութեամբ հաստատեց. բայց հազիւ թէ իրեն հետեւողները պապական տէրութեան շղթաներէն ազատած էր, ինք անոնց այնպիսի շղթայ մը շինեց, որն որ շատ նկատմամբ՝ նոյնչափ անտանելի էր. եւ իր կենացը վերջին տարիները գործածեց առաջին տարիներուն մէջ ըրած բարիքն իր ձեռօքը քակելու: Սակայն իր տուած ազատութեան մեծ օրինակը՝ այնչափ շուտով չէր կրնար մոռցուիլ. եւ Հռոմայ աթոռոյն լուծը խզողները՝ չէին ուզեր խղճմտանքնին անմիտ կրօնաւորի մը իշխանութեան տակ ձգել, որն որ Ս. Գիրքը մեկնելու իրաւունքը՝ միայն իրեն կ՚ուզէր սեպհականել, ուր որ ինք վարդապետած էր թէ ամէն մարդ ազատ է Ս. Գիրքն ուզածին պէս հասկընալու եւ մեկնելու: Մելանքթոնին չափաւորութիւնն ու անկեղծութիւնը Լուտերին վարդապետութեան խստութիւնը քիչ մը քաղցրացուցին. բայց Լուտերի օրինակը ժառանգութեամբ իր յաջորդներուն անցաւ:... Մեծ երջանկութիւն կ՚ըլլար թէ որ մեծ նորոգիչը (Լուտեր) միտ դնելու ըլլար որ... մարդկային իրաւանց դէմ եղած բռնաւորութիւններուն մէջ ամենէն վտանգաւորն ու ամենէն տանելին է՝ ասոնց կոչուած ըլլալու ինքը զինքը Աստուծոյ եւ մարդիկներուն խղճմտանքին մէջ միջնորդ ընել,,:

Հատեղս մատենագիրը քանի մը օգուտներ կը յիշատակէ, որոնք կը կարծէ թէ Լուտերականութենէն ծագած ըլլան, ու ետքը խօսքն այսպէս յառաջ կը տանի: "Բայց աս ալ չէկրնար ուրացուիլ թէ աս եւ ասոր նման օգուտներուն դիմացը՝ ասոնց հաւասար չարիքներ ալ կան. այս ինքն ան սաստիկ թշնամութիւնները՝ որոնց որ նորոգութիւնը պատճառ եղաւ՝ չէ թէ միայն բողոքողաց եւ ուղղափառաց մէջ, հապա նաեւ նոյն իսկ բողոքողաց զանազան մասունքներուն կամ բաժիններուն մէջ: Եւրոպայի ան ժամանակուան պատմութիւնները՝ առջեւնիս պատերազմներու, աւարառութիւններու, արիւնհեղութիւններու դժնդակ նկարագիրներ կը դնեն, որոնք աս բաժիններուն՝ իրենց կարծիքը պաշտպանել կամ ընդունելի ընել ուզելէն ծագած են: Երբ որ մէկը յիշելու ըլլայ որ Կրկնակնունքներուն, Սոկինեաններուն եւ ուրիշ քանի մը քրիստոնեաներուն դէմ ինչպիսի անագորոյնութիւններ կ՚ըլլային՝ միայն անոր համար վասն զի երկրի մը մէջ տիրող եկեղեցւոյն կարծիքնե-

րէն կը շեղէին. կամ երբ որ միտ դնելու ըլլայ որ լուտերական ու կալուինական ազգերուն պատմական օրէնքները՝ ... տիրող եկեղեցւոյ վարդապետութենէն քիչ մը հեռացողներուն վրայ ինչպիսի պատիժներ կը դնէին, ... պէտք է որ խոստովանի թէ միայն ազատութիւնը պաշտպանողները՝ դեռ կատարելապէս իրենց վախճանին չեն հասած. եւ թէ մարդկային միտքը՝ որ ամէն դարերու մէջ կապանքի տակ էր, իր տեղը փոխած է, բայց ազատութեան հասած չէ,,[24]:

Նոյնչափ բաւական կը սեպենք Լուտերի բռնաւորութեան եւ յամառութեան վրայ. վասն զի շատ երկայն կ'ըլլար թէ որ ուզէինք մէկիկ մէկիկ ի մէջ բերել ան ամէն բողոքող մատենագիրներուն խօսքերը՝ որոնք որ նոյն բռնաւորութիւնն ու յամառութիւնը եւ անոնց պատճառ եղող կամ անոնցմէ ծագող մոլութիւնները կը խոստովանին, թէ որ ուզէինք նկարել "Ան Լուտերի միայն սաստկութիւնն ու զազանութիւնը, ան իր կարծիքները պաշտպանելու համար գործածած յանձնապաստանութիւնը, ան ամբարտաւանութիւնն ու արհամարհութիւնը՝ որով որ իրմէ տարբեր կարծիք ունեցողներուն հետ կը վարուէր,,[25]. արդէն պատմութիւններնուս մէջ յառաջ բերուած ամէն մէկ դէպքը՝ գրեթէ անոնց մէյ մէկ օրինակ են:

24. Թոռնդայ, Գլ. ԺԲ. Հատ. Դ. 46. — 61:

25. The impetuosity and fierceness of Luther's spirit, his confidence in asserting his own opinions, and the arrogance and contempt wherewith he treated all who differed from him. Ախօսքերը բառ առ բառ կը դնէ Թոպլերդոլն, Գիրք Բ. Հատ. Բ. 114, 115:



## ԳԼՈՒԽ Ը.

### Գիւղացիներու պատերազմը

Գիւղացիները աղքատութենէ ստիպուած ապստամբութեան յայտարարութիւն մը կը ընեն եւ Լութերին խօսքերով՝ կարծէք կը հաւանին։ Լութեր թէ՛ գիւղացիներուն եւ թէ՛ իշխաններուն դէմ գրուած մը դուրս կը հանէ։ Գիւղացիները Միւնցերի եւ անոր նման մարգարէներուն խօսքերէն գրգռուելով՝ աւարի ելլելով կը քանդեն, ու իշխանները կը ջարդուին։ Լութեր իշխանները գիւղացիներուն դէմ կը գրգռէ։

## 1525

ԼՈՒՏԵՐԻՆ քանի մը տարիէ վեր անձամբ եւ իր հաւատարիմ կամ ապստամբ աշակերտներուն ձեռօքը սերմանած խառվութեան ու ապստամբութեան սերմնիկը՝ բուսած, աճած, մեծամեծ ծառեր եղած էին, եւ այս առեններս իրենց դառն ու մահաբեր պտուղները սկսան տալ, որոնք բոլոր Գերմանիան սգով ու տրտմութեամբ պատեցին, եւ ամենուն աչուըները արցունքով լեցուցին։ Լուտերի գրուածքներէն շատերը, նոյն իսկ բողոքող հեղինակներուն ըսածին նայելով, ապստամբութեան գրգռող երգեր էին[1]։ Ինչպէս որ ուրիշ անգամ զգուշցուցինք,

1. Ըսածներնուս ստուգութիւնը ցուցընելու համար՝ քանի մը բողոքող մատենագիրներու վկայութիւնը կը բերենք։ "Լուտեր իր Առ ազնուականս Գերմանացւոց ըսուած գրքին մէջ (տես էր. 80.—82.) այս կարծիքը յայտնած էր որ, կ'ըսէ Լեւօն, աշխարհական իշխանները իրաւունք եւ պարտք ունին եկեղեցւոյ անպիտան կառավարութիւնը ջնջելու...։ Այսպէս այս կարծիքին համեմատ՝ ազնուականաց տրուած իշխանութիւնը . . . եւ ան արհամարհական կերպը՝ որով Լուտեր չէր ամըչնար իշխաններուն մանաւանդ թէ կայսեր հետ վարուելու, երբ որ անոնք իր ուզածին պէս չէին գործեր, հասարակ ժողովրդեան մէջ ընդհանուր գրգռութիւն մը պատճառած էին, եւ Լուտերին կարծիքը հոգեւոր բաներէն նաեւ աշխարհական բաներու կը տարուէր՝ գլխաւորաբար ան տեղերը ուր որ աշխարհական իշխանութիւնը եկեղեցական պզտիկ իշխաններու ձեռքն էր։ . . . (Ժողովուրդն այսպէս կը մտածէր.) Թէ որ եկեղեցական նիւթերու մէջ՝ Եւետէ նաեւ յառաջ եկած ու հիմկուան իրաւանց համաձայն եղած բաները՝ այլ ամենեւին զօրութիւն չունէին նէ, ինչո՞ւ համար աշխարհական նիւթերու մէջ ալ նոյնպէս պիտի չըլլայ։ . . . Թէ որ հոգեւոր նիւթերու մէջ առաջին քրիստոնէից աւետարանական վարդապետութիւնն ու աւետարանական հաւասարութիւնը հիմա իբրեւ հիմն ու օրէնք առնելու է նէ, ինչ բանի համար աշխարհական նիւթերու մէջ ալ պիտի չառնուին։ . . . Անոր համար ամէն տեղ գեղացիները՝ որոնք ընդհանրապէս աղէկ ու հանդիստ վիճակի մէջ էին, սկսան աշխարհական ծանրաբեռնութիւններնուն ու վրանին դրուած չափաւորութիւններուն դէմ գրգռիլ։ . . . Այսպէսով գեղացիները գրեթէ բնականապէս հոն հասան՝ որ սկսան աստուածային իրաւանց օգնել ուզել . . . ,,։ Մատենագիրը՝ նոյն դարուն սկիզբը գեղացւոց քանի մը տեղ փոքր խռովութիւններ հանելով յաղթութենին յիշատակելէն ետեւ՝ խօսքը այսպէս յառաջ կը տանի։ "Նոյն ատեն ատոնց վրայ եկան Լուտերին գրգռութիւնները, որն որ իշխանները՝ յիմար ու գինով մարդիկ, կայսրը՝ մահկանացու որդանց քսակ կ'անուա-

գեղացիներէն շատերը աս խօսքերը սիրով կը լսէին, եւ այնպէս կը կարծէին որ հասած ըլլայ ան աւշալուսը՝ որն որ իշխանաց բռնութենէն ազատուելուն առաւօտը կ'աւետէ. ուստի եւ ներ եւ շատ տարածուած գրքի մը մէջ Աստուծոյ կ'աղաչէր որ Գերմանիան այսպիսի ողորմելի կառավարիչներէն կամ իշխաններէն ազատէ (տես Երես 168, 169.): Ուստի եւ զարմանք չէ որ գեղացիներն առջեւնին առանց օրինակներ ունենալով՝ ... չէին ուզեր եւս կենալ կամ զիջանիլ, եւ գրեթէ Գերմանիայի ամէն կողմերը գեղացւոց մեծ պատերազմին կրակը բորբոքեցաւ,,: Մասն Գ. Հտր Ա. Գլ. Ա. 114. — 116:

"Լուտերին՝ քրիստոնէական ազատութեան վրայ գրած գրքէն (տես Եր. 87.) մասնաւոր կերպով մը գրգռուելով, կ'ըսէ Մենցլ, Գերմանիայի շատ կողմերը մարդիկ ելան, որոնք ան սկզբունքները՝ որոնցմով պապականութեան լուծը մէկդի ձգուած էր, նաեւ աշխարհական հնազանդութեան վրայ ալ գործածեցին,,: Հտր. Ա. Գլ. Գ. 115: Նոյն մատենագիրը քիչ մը վերջը աւելի բացայայտ կը խօսի: "Կարծես թէ, կ'ըսէ, իրարու հետ խօսք բռնծի պէս՝ Գերմանիայի շատ կողմերը ստորին աստիճանի ժողովուրդը՝ մեծերուն, եւ գլխաւորաբար գեղացիները՝ ազնուականներուն դէմ ելան, եւ աւետարանական ազատութեան վարդապետութիւնն ու Ս. Գրոց ազատ գործածութիւնը, որոնցմով Լուտեր ... հոգեւոր իշխանութեան դէմ ելած ու խախտած էր, անանկ կերպով մ'առին, որով նաեւ աշխարհական իշխանութիւնն ալ քահանայութեան հետ մէկտեղ ... կ'ուզէին կործանել: ... Բնական բան էր որ եկեղեցական իշխաններուն հպատակները՝ Լուտերին՝ հոգեւոր իշխանութեան դէմ դուրս հանած սաստիկ գրուածները՝ աշխարհային մաքով առնէին, եւ անոր՝ քահանայից ու կրօնաւորաց լուծը թօթափելու համար տուած յորդորանքները՝ իրենց առ տէրաները եւ առ եպիսկոպոսներն ունեցած պարտականութեանց, առաջու տասանորդներուն ու հարկերուն վրայ գործածեցին: Աս ալ չիկրնար ուրացուիլ որ Լուտեր երբեմն այնպիսի խօսքեր բռնած է, որոնցմէ քաղաքական դիտմունքներ կ'երեւան, եւ որոնք շատ յարմար չէին ժողովրդեան մէջ եղած գրգռութիւնը մեղմելու: Նիւռնպերկի ազգաժողովին վճռէն պատճառ առնելով՝ ժողովրդեան համար հանած գրուածքին մէջ (Լուտեր)՝ Աւետարանը (իր վարդապետութիւնը) հալածող կայսրն ու իշխանները բռնաւոր կը կանչէ, իրենց դէմ սպառնալիքներ կ'ընէ աստուածաշնչին անանկ խօսքերովը՝ որոնցմով հպատակներուն ու զօրաւորներուն՝ իրենց իշխանութեան մերձաւոր կործանումը կը գուշակուի,,: Հտր. Ա. Գլ. Դ. 167. — 169:

"Շատ յայանի ու բացայայտ կը տեսնուի, կ'ըսէ Բլանք, որ (գեղացւոց) ապստամբութիւնը՝ կերպով մը Նորոգութեան շարժմունքներէն յառաջ եկած ու պատճառուած էր. ժողովրդեան ոգին գլխաւորաբար աս շարժմունքներով պատրաստուած էր ապստամբութեան հիւանդութենէն բռնուելու ...,,: Գիրք Ե. Հտր. Բ. 179, 180: Քիչ մը վերջը նոյն մատենագիրը յայանի կը ցուցնէ որ գեղացիներուն ապըստամբութիւնը՝ միայն կրօնական շարժմունքներէն ծագած է, եւ վրան կ'աւելցնէ թէ՝ բոլորովին սուտ ու սխալ խօսք է ըսելը որ աս ապըստամբութիւնը գեղացիներուն կրած բռնաւորութենէն ծագած էր, որովհետեւ ըստ մեծի մասին իրենց տէրերնին զիրենք շատ աղէկ կը նայէին: Նոյն տեղը, 181: Ասոնք գրելէն վերջը խօսքը Լուտերին վրայ կը դարձնէ եւ այսպէս կը խօսի. "Լուտերի ամէն գրուածներուն մէջ տիրող սաստիկ կերպը ... պէտք էր որ ոգիները չափէն աւելի գըրգռէր: Բայց ասկից զատ ինչ շատ օգնեց որ բոցն իրաւ ալ նոյն կողմը դիմէ, որն որ կ'ուզէր խափանել: Քրիստոնէական ազատութեան միայն անունը՝ որն որ ինք նորէն ժողովըրդեան մէջ խօթեց, առոր պատճառ ըլլալու բաւական էր. որովհետեւ ստորին ժողովուրդը չիմնալով անոր (Լուտերին) գաղափարներին ըմբռնել՝ բնական էր որ աս անուան հետ ուրիշ իմաստներ միացնէր:

բռնաւոր գերութեան ու բանտութեան տակ բանող իշխաններուն ձեռքէն ազատիլ կ՚ուզենք։ Սուաբիայի գեղացիները 1525ին սկիզբները տասուերկու յօդուածով յայտարարութիւն մը շինեցին, որուն մէջ ուզածնին մէկիկ մէկիկ կը դնէին։ Ամէն բանէն յառաջ, կ՚ըսէին, կ՚ուզենք որ ասկէ վերջը ազատ ըլլանք եկեղեցական պաշտօնեաները մեզմէ ընտրելու, որոնք Աստուծոյ խօսքն անարատ ու սուրբ պահեն, եւ վրան մարդկային աւանդութիւններ ու վարդապետութիւններ չաւելցընեն. Նոյնպէս ազատ ըլլանք զիրենք մերժելու՝ երբ որ վարքերնին Աւետարանին համեմատ չըլլայ։ Երկրորդ, ասկէ ետեւ տասանորդ չենք տար, բայց միայն ցորենի տասանորդ, ան ալ՝ կ՚ուզենք որ մեզմէ ընտրուած մարդիկները ատորմէ ժողվեն, եւ եկեղեցիներուն, աղքատներուն ու հասարակաց պիտոյից համար գործածեն։ Երրորդ, մինչեւ հիմա կրածնիս՝ շատ անագորոյն ու անվայել բան է, որովհետեւ իշխանները զմեզ ստակով գնուած գերիի տեղ կը դնեն, ուր որ Քրիստոս զմեզ իր արեամբը գերութենէն փրկեց. արդ որովհետեւ Ս. Գիրքը կը ցուցընէ որ մենք ազատ ենք, կ՚ուզենք իրօք ալ ազատ ըլլալ, բայց այնպէս որ Աստուծոյ աւանդութիւններուն հնազանդինք եւ իշխանութիւնը չմերժենք։ Չորրորդ, կ՚ուզենք որ Աստուծոյ՝ աշխարհքիս սկիզբէն անասուններուն, թռչուններուն ու ձկներուն վրայ մարդկան տուած իշխանութիւնը՝ որն որ իշխանները ձեռքերնէս առած են, նորէն ստանանք. բայց թէ որ իշխան մը իր ստակովը տեղայ մը իրաւունքը գնած է նէ՝ թող գրով ցուցընէ։ Ասոր նման ուրիշ եօթը պահանջմունքներ դնելէն ետեւ՝ վերջապէս աս տասուերկուերորդն ալ վրան կ՚աւելցընեն. Թէ որ աս յայտարարութեան մէջ բան մը կայ, որն որ Աստուծոյ խօսքին համաձայն չըլլայ, կ՚ուզենք որ զօրութիւն չունենայ եւ ջնջուի. նաեւ թէ որ ասկից ետքը Աստուծոյ օրինաց դէմ ուրիշ բան մ՚ալ պատահելու ըլլայ նէ, կ՚ուզենք որ ան ալ աս տասուերկու յօդուածներուն վրայ աւելցուի[3]։

Գեղացիները աս յայտարարութիւնը գրելնուն պէս՝ Լութերին խաւրեցին, եւ հարցուցին որ վրան ինչ կարծիք ունի, այնպէս կարծելով որ իր զանազան գրուածքներուն մէջ շատ անգամ բացայայտ վարդապետած սկզբանցը համեմատ՝ ասոր իր

բռնութեամբ զինքը ստիպելով որ իրաւունքներէն հրաժարի։ Պոսսիւէ, նոյնը, հոն։ Այսպիսի դէպքեր շատ պատահեցան. եւ ինչպէս նոյն մատենագիրը կը գրուցէ, երբ որ գեղացիները իշխաններուն կողմէն ստանալիք կամ յանդիմանութիւն մը կը լսէին, պատասխաննին աս կ՚ըլլար թէ «Մեր վախճանը՝ մէկը վշտացընել չէ. հապա Աստուածային հաստատուն պահել եւ տառապեալներուն իրաւունքները պաշտպանել է»։

3. Գարտէք Լուս. գերմ. Հատ. Գ. 115. Բ. — 117. Ա.

հաւանութիւնը կու տայ: "Իւրաքանչիւր քրիստոնէին ազատութիւնը այնպէս ճարտարութեամբ քարոզողէն, ու Ս. Գրոց խօսքերով՝ երկրի վրայ ամենէն բարձր իշխանութիւններուն դէմ դնողէն ամենայն փութահոգութեամբ կը յուսային որ իրենց ձեռք զարկած գործքը կը պաշտպանէ„ կ'ըսէ Մենցըլ[4]: — Աս բանս Լուտերը շատ նեղը խոթեց. բոլորովին գեղացւոց իրաւունք տալ չէր ուզեր, վախնալով որ եթէ մտքերնին դրածնին գլուխ տանիլ չկրնան նէ, ինքն ալ՝ իբրեւ ապստամբ ու գեղացիներուն կամակից՝ իշխաններէն չպատժուի. բայց բացայայտ ալ գեղացիներուն դէմ դնել չէր ուզեր ու չէր կրնար, մէյ մը՝ որ անոնց դէմ խօսելու համար՝ իր անձին ու իր սկզբանցը հակառակ գործելու էր, մէյ մ'ալ որ կը վախնար թէ գեղացիները ձեռք զարկածնին գլուխ տանելու ըլլան նէ՝ ինքն ալ անոնց բարկութեան առարկայ կ'ըլլայ: Անոր համար իսկզբան ինքը զինքն անորոշ ցուցնելու ջանաց, որ ետքը ուզած կողմը կամ աւելի ճիշդ խօսելու համար՝ վրայ ելլող կողմը միանայ, ինչպէս որ ըրաւ ալ: Արդ գեղացիներուն յաղթութիւնը ձեռքը հանելուն պէս՝ շուտ մը տպել տուաւ, ու վրան խօսք մ'աւելցուց, որուն մէջ նախ առանձին իշխաններուն, ետքը առանձին գեղացիներուն, եւ վերջապէս երկուքներնուն մէկտեղ կը խօսի. եւ թէպէտ, ինչպէս ըսինք, աս խօսքերուն մէջ ինքը զինքն անորոշ կը ձեւացընէ եւ երկուքներնուն ալ դէմ կը խօսի, բայց միշտ յայտնի կը տեսնուի որ աւելի գեղացիներուն կողմը միացած է: Իսկզբան իշխաններուն այսպէս կը խօսի: "Աս խռովութիւնն ու ապըստամբութիւնը ուրիշ մէկու մը պէտք չէ տալ, բայց եթէ ձեզի, իշխաններ, եւ մանաւանդ ձեզի, կոյր եպիսկոպոսներ եւ յիմար քահանաներ ու կրօնաւորներ, որ յամառութեամբ սուրբ Աւետարանին դէմ կատղելէն ու մոլեգնելէն մինչեւ հիմա չէք դադրիր, թէպէտ աղէկ ալ գիտէք որ ստոյգ է եւ չէք կրնար հերքել: Ասկից զատ՝ աշխարհական կառավարութիւններնուդ մէջ ուրիշ բան չէք ըներ, բայց եթէ աւար առնել ու գանձ գանձի վրայ դիզել՝ ձեր շռայլութիւնն ու սնափառութիւնը կատարելու համար, մինչեւ աղքատ ու հասարակ մարդը ա՛լ չիկրնար ու չ'ուզեր աւելի երկայն համբերել: Սուրը վզերնուդ վրայ հասած է, եւ դուք կը կարծէք որ տեղերնիդ հաստատուն պիտի կե-

4. Հատ. Ա. Գլ. Դ. 174: — Ռիֆէլ (Գիրք Ա. Գլ. Է. 140. — 150.) Գեղացւոց 12 խնդիրները բերելով, Լուտերին՝ զանազան գրուածներու մէջ նոյն նիւթերուն վրայ ըրածներուն հետ կը համեմատէ, եւ կը ցուցընէ որ ոչ թէ միայն ընդհանրապէս իմաստին կողմանէ նման են, հապա նաեւ շատ անգամ բացատրութիւններն ու խօսքերն ալ նոյն են. այնպէս որ կարծես թէ նոյն խնդիրները բառ առ բառ Լուտերին գրուածներէն հաւաքուած կամ անոնց մեկնութիւնն են:

նաք ու մէկը պիտի չկրնայ զձեզ անկից հանել: Ա՛ռ վստահութիւնն ու յանդուգն ժպրհութիւնը վզերնիդ պիտի խորտակէ: ... Արդ որովհետեւ դուք Աստուծոյ աստնկ բարկութեան պատճառ էք, պէտք է որ ան բարկութիւնը վրանիդ հասնի, թէ որ չէք շտկուիր նէ: ... Աղէկ գիտցէք Աստուած այնպէս հրամայած է որ ըլլայ մը, կրնայ մը որ ասկէ ետեւ մէկը ձեր գազանութեանց համբերէ, եւ մարդիկ ալ չեն ուզեր համբերել: Ասոր համար պէտք է որ բոլորովին փոխուիք եւ Աստուծոյ խօսքը միտիկ ընէք. թէ որ սիրով ու կամքը չէք ըներ նէ, բռնութեամբ եւ չուզելով պիտի ստիպուիք: Եւ թէ որ գեղացիները աս բանս չընեն ալ նէ՝ ուրիշ մարդիկ պէտք է որ ընեն. եւ թէպէտ ամէնքն ալ մեռցընէք, ... անոնց տեղ Աստուած ուրիշները ոտք պիտի հանէ, վասն զի կ'ուզէ յաղթելով տիրել եւ պիտի տիրէ ալ: Եւ մի կարծէք որ ձեզի դէմ ելլողները գեղացիք են, հապա նոյն ինքն Աստուած է, որ ձեզի դէմ ելած է: Մէջերնիդ ոմանք ըսին որ երկիրնին ու մարդիկնին պիտի գնեն Լուտերին վարդապետութիւնը ջնջելու համար: Ի՞նչ կը կարծէք. չի՞կրնար ըլլալ որ աս խօսքով անձամբ ձեր վրայ մարգարէացած ըլլաք, եւ երկիրնիդ ու մարդիկնիդ վտանգի մէջ ըլլայ: Աստուծոյ հետ կատակ չ'ըլլար. Հրեայք ալ ըսին թէ Մենք թագաւոր չունինք. եւ աս խօսքը իրօք կատարուեցաւ, այնպէս որ յաւիտեան առանց թագաւորի պիտի մնան: ... Աստուծմէ վախցէք, եւ ճանչցէք որ իր բարկութիւնը հասած է. թէ որ ինք ուզելու ըլլայ զձեզ պատժել, ինչպէս որ արժանի էք եւ ինչպէս որ կը վախնամ, ստուգիւ կը պատժէ, թէպէտ եւ գեղացիները հիմակ եղածներնէն հարիւր անգամ նուազ ըլլան. մանաւանդ թէ քարերէն գեղացիներ կրնայ հանել, եւ մէկ գեղացւոյ ձեռքով ձեզմէ հարիւր հոգի մեռցընել տալ, այնպէս որ ձեր զրահն ու զօրութիւնը ամենեւին օգուտ մը չունենայ„ 5:

Ա՛ս ամէն բաները եւ ասոնցմէ աւելի սաստիկ խօսքեր խօսելէն ետեւ, որոնք կարծես թէ գեղացիներն աւելի եւս գըրգռելու համար գրուած են, իշխաններուն խրատ կու տայ որ Աստուծոյ բարկութեան զիջանին, գեղացիներուն հետ քաղցրութեամբ վարուին ու խնդիրքնին կատարեն: "Գեղացիները տասուերկու խնդիր հանեցին, կ'ըսէ, որոնցմէ ոմանք այնչափ ուղղած եւ իրաւացի են, որ... ճԻ. (ճԶ.) Սաղմոսին խօսքը կը ճըշմարտեն, այս ինքն թէ "Եկն անարգութիւն ի վերայ իշխանաց„: ... Ինծի մնալու ըլլար նէ՝ առջեւնիդ ուրիշ խնդիրներ կը դնէի, որոնք բոլոր Գերմանիայի ու կառավարութիւններուն կը վերաբերին, ինչպէս որ արդէն ըրի ալ իմ Առ ազնուականս Գեր-

5. Գործք Լուտ. գերմ. Հատ. Գ. 118. Բ. — 119. Բ:

րով կ՚ուզէ ցուցընել, եւ լուս առաքելութեան՝ իր օրինակն ալ բերելով՝ սապէս կը խօսի։ «Պապն ու կայսրը ինծի դէմ ելան ու սկսան աղմուկ հանել։ Բայց ես բաներուն ինչո՞վ ան աստիճան հասցուցի, որ որչափ պապն ու կայսրը աղմուկ հանեցին նէ՝ այնչափ ալ Աւետարանը ծաղկեցաւ։ Ես երբեք սուր չքաշեցի ու վրէժ չխնդրեցի 9. ոչ խռովութիւն եւ ոչ ապստամբութիւն մը հանեցի 10. հապա աշխարհական իշխաններուն՝ նաեւ Աւետարանն ու զիս հալածողներուն ալ՝ պատիւ ու զօրութիւնը ձեռքերնին եկածին չափ պաշտպանելու ջանացի 11. միշտ բաներս Աստուծոյ յանձնեցի, եւ վստահութեամբ ինքը զինքս անոր ձեռքը թողուցի։ Անոր համար ինք ալ պապին ու բռնաւորներուն դէմ զիս պաշտպանեց, եւ չէ թէ միայն կեանքս պահեց, (որն որ մեծ բան է, եւ պատշաճ է որ մեծ հրաշքի տեղ դրուի, եւ ես ալ պէտք է որ սաստիկ խոստովանիմ,) հապա իմ Աւետարանս միշտ ծաղկեցուց ու տարածեց։ Բայց դուք հիմա մէջը կը մտնէք եւ կ՚ուզէք Աւետարանին օգնել, ու չէք տեսներ որ ասով սաստիկ արգելք կը դնէք ու կը ճնշէք» 12։

«...Անոր համար ձեզի նորէն կը զրուցեմ, կը հաւանիմ որ դատերնիդ որչափ որ կ՚ուզէ նէ՝ բարի ու արդար ըլլայ. բայց որովհետեւ կ՚ուզէք անձամբ պաշտպանել, եւ քրիստոնէութիւն ու անիրաւութիւն մէկ տեղ ընել... անոր համար կը զրուցեմ որ... գլուխ պիտի չկրնաք հանել։... Բայց ասով չեմ ուզեր իշխաններն ու մեծերը՝ իրենցմէ կրած անտանելի անիրաւութիւններնուդ մէջ արդարացընել կամ պաշտպանել։ Մանաւանդ թէ կը խոստովանիմ որ սաստիկ անիրաւ են ու խիստ մեծ անիրաւութիւն կ՚ընեն։ Հապա միայն աս կ՚ըսեմ որ եթէ երկու կողմանքդ ալ չէք ուզեր խրատ ընդունիլ, եւ իրարու դէմ կ՚ելլէք ու կը կռուիք (որմէ Աստուած պահէ,) ան ատեն եւ ոչ մէկ կողման մարդիկները քրիստոնեայ ըսուելու արժանի են, ... հապա արժանի են որ հաւասարակօրէն ըսուածը վրանին կատարուի, թէ Աստուած մէկ չարագործն ուրիշ չարագործի ձեռքով կը պատժէ։ Ես ալ զձեզ այսպիսիներու կարգ կը դնեմ. ուստի թէ որ (Աստուած չընէ,) կռիւ բացուելու ըլլայ նէ՝ մեծերը գիտնան որ քրիստոնեաներու դէմ

9. Լութեր կը զգուշանայ յիշատակելու որ իր տեղը իշխաններն ու աշխարհականները սուրը քաշած էին։ Ռէֆիւ. Գիրք Ա. Գլ. Ե. 461։

10. Գեղացիները չէին գիտեր Լութերին՝ Հուգգենին, Սիքինկենին եւ ուրիշ ասանց նման մարդիկներուն հետ ունեցած կապակցութիւնը, եւ Սիքինկենի անիրաւ պատերազմներուն հետ ունեցած մասնակցութիւնը. Լութեր ալ իրենց աս բաներուն վրայ խօսք ընելը պատշաճ չէր սեպեր։ Նոյնը, հոն։

11. Ասոր օրինակ կրնան ըլլալ Ալդենպուրկի կանոնիկոսները, ուղղափառ եպիսկոպոսները, Հենրիկոս՝ Անգղիոյի թագաւորը, Գէորգ՝ Սաքսոնիոյի դուքսը, եւ այլն։ Նոյնը, հոն։

12. Գործք Լուտ. գերմ. Հատ. Գ. 120. Բ. — 123. Բ։

չէիք կռուէիր, հապա հերձուածներու դէմ. եւ դուք ալ գիտնաք որ չէ թէ իբրեւ քրիստոնեայ կը պատերազմիք, հապա հերձուածներու պէս իշխանութեան դէմ կը պատերազմիք,, 13 ։

Լուտեր հռովմէոց գեղացիներուն խնդիրներուն վրայ դատաստան կ'ընէ, զանոնք ընդհանրապէս վար կը զարնէ. կը ցուցնէ որ գրողը բարեպաշտ եւ իրաւասէր մարդ չէ, հապա խռովեցուցիչ մը՝ որն որ գեղացիներուն ձեռքովը Աւետարանը կը թշնամանէ։ Եւ թէպէտ Ս. Գրքէն շատ վկայութիւններ բերած է, կ'ըսէ, բայց բերածները՝ ցուցընել ուզածներուն հակառակը կը ցուցընեն։ Եւ գլխաւորաբար ան խնդիրներուն գալով՝ որոնց մէջ ծառայութենէն ազատութիւն եւ այլն կ'ուզէին, կը ցուցնէ որ աս բաները իրաւագէտներու կը վերաբերին չէ թէ աւետարանչի եւ քրիստոնէի՝ որն որ թող կու տայ որ ուզողը յափշտակէ, առնէ, հարստահարէ, բռնանայ, հալածէ, ուտէ, բարկանայ. որովհետեւ ինք երկրի վրայ մարտիրոս է 14 ։

Նայէ վերջը Լուտեր խօսքը երկու կողման ալ մէկտեղ կը դարձընէ եւ այսպէս կը խօսի։ Երկու կողմանէ ալ ձեռք զարկած գործքերնիդ Աւետարանին չվերաբերիր ու քրիստոնէի վայել բան չէ. թէ գեղացիքդ եւ թէ տէրքդ հերձուածներու պէս իրաւունքի ու անիրաւութեան եւ աշխարհքիս հարստութեանց վրայ կը կռուիք։ Երկու կողմն ալ Աստուծոյ դէմ կը պատերազմի, եւ երկուքն ալ աստուածային բարկութիւնը վրան կը գրգռէ։ . . . Դուք, իշխաններ, բռնաւորներ կ'ըլլաք ու հպատակներնիդ կը հարստահարէք. ուստի եւ ուրիշ բանի ակնկալութիւն չէք կրնար ունենալ, բայց եթէ բռնաւորներու պէս ընկնելու եւ կործանելու։ Իսկ դուք, գեղացիք, որ իշխանութեան դէմ կը դնէք, յիշեցէք Ս. Գրոց խօսքը թէ "Որ սուր առնու, սրով անկցի,,։ Աստուծոյ բարկութիւնը վրանիդ ծանրացած է, անոր համար կ'ուզէ որ իրար մեռցընէք. բայց գիտցէք որ աս բանիս համար ամէն մեռնողները պիտի դատապարտուին։ Ինչու որ "Ես արդէն ձեզի ըսի թէ երկու կողմն ալ իրաւունք չունի եւ անիրաւութեամբ կը կռուի։ Դուք, տէրք, քրիստոնէից դէմ չէք կռուիր, ինչու որ քրիստոնեայք ձեզի դէմ բան մը չեն ըներ, ամէն բան կը կրեն. հապա հրապարակական յափշտակիչներու եւ քրիստոնէի անունը թշնամանողներու դէմ կը կռուիք. ուստի եւ անոնց մէջէն մեռնողները արդէն յաւիտենական դատապարտուած են։ Դարձեալ դուք ալ, գեղացիք, քրիստոնէից դէմ չէք կռուիր, այլ բռնաւորներու, Աստուծոյ ու մարդկան հալածիչներու, եւ Քրիստոսի սուրբերը մեռցընողներու

13. Նոյն տեղը, 123. բ. 124։ 14. Դարձեալ հոն, 126, 127։

դէմ․ ուստի եւ անոնցմէ մեծամեծներն ալ յանցաւորներ պատուհա-սած են ։ Ահաւասիկ երկու կողմն ալ ձեր Աստուծմէ ընդունելու վճիռն ունիք, ասիկա ես աղէկ գիտեմ„ 15 ։

Ինչպէս սա ամէն խօսքերէն յայտնի կ'երեւայ, Թէպէտ Լութեր գեղջուկները հանդարտեցընելու կը ջանար կամ ջանալ կը ձեւացընէր, բայց իրենց ապստամբութեան պատճառներուն ալ իրաւունք տալով, իշխանները՝ բռնաւոր, Աւետարանին հակառակորդ անուանելով, իշխանութիւննիդ պէտք է որ կործանի, դուք պէտք է որ մեռնիք, գեղջուկներուն ձեռքովը գործողն Աստուած է, ըսելով՝ գեղջուկները կը գրգռէր ալ ։ Ուստի թէպէտ ընդունելիք ալ որ սրտանց զիրենք հանդարտեցընել կ'ուզէր, պէտք է ըսենք որ գոնէ խոհեմութեամբ չվարուեցաւ, եւ մէկ ձեռքով շինածը՝ մէկալ ձեռքով աւրեց ։ Եւ այսպէս արդէն յառաջագոյն իր ձեռօքը բռնկցուցած հրդեհը մարելու տեղ՝ աւելի սաստկացուց ։ Բայց թէ որ առուգիւ ամէն կերպով հանդարտեցընելու ալ աշխատէր՝ պարապ էր, ինչու որ արդէն բանը բանէն անցած էր ։ Ո՞վ կրնար չարեաց առջեւն առնել, երբ որ դաշտերը գեղջուկներուն վրաններովը լեցուած էին, անոնք պատերազմական երգերու տեղ՝ հոգեւոր երգեր կ'երգէին, ու Աւետարանին եւ Աստուծոյ պատերազմը կը պատերազմինք ըսելով՝ զինքն օգնութիւն կը կանչէին, ու հաստատութեամբ մտքերնին դրած էին որ պատերազմին ժամանակը Աստուած իրենց պիտի օգնէ, եւ իրենք անտարակոյս թշնամիներնուն պիտի յաղթեն ։ Մանաւանդ որ իրենց քարոզիչները զիրենք միօրինակ կը գրգռէին, եւ շարունակ տեսիլքներ, յայտնութիւններ, գուշակութիւններ կը պատմէին ։ Մունցեր բլուրներուն վրայ ելլելով՝ զիրենք կը քաջալերէր, Աստուծոյ անուամբը իրենց ստոյգ յաղթութիւն կը խոստանար ։ — Աս մարդուն ու իր ընկերներուն հոգին իմացընելու համար՝ իր մէկ յորդորական խօսքին իմաստը հոս կը դնենք ։

Մինչեւ ե՞րբ, կ'ըսէր, թմբիր քնոյ մէջ մնած կը քնանաք․ քաջալերուեցէք, ձեռքերնիդ գործքի զարկէք ու Աստուծոյ պատերազմը պատերազմեցէք․ ժամանակը հասած է ։ Եկէք համրեցէք ան քաջ պատերազմողները՝ որոնք ձեզի հետ միաբան նոյն գործքին եռանդէն բռնկած են, թէ որ կրնաք համրել նէ, վասն զի անթիւ անհամար են ։ Բայց քիչ ալ ըլլայինք, յաղթութեան վրայ ամենեւին տարակուսելու չէինք․ վասն զի թէ որ միայն Աստուծոյ վրայ վստահինք եւ միայն իր փառքը փնտռենք նէ՝ թշնամիներնիս մեր առջեւը չեն կրնար դիմանալ՝ կը յաղթուին ։ Բռնաւորներէն ամենեւին մի վախնաք, սրտերնիդ մի

15․ Նոյն տեղը, 127․ Բ․ — 129 ։

կակղացընէք. Թէպէտ լան, աղաչեն ու աղջիկնիդ խոստմունքներ ղնեն՝ մի հաւտաք։ Սրերնիդ արիւնէ մաքուր մի թողուք. ինչու որ եթէ մէջերնէն մինակ մէկն ալ ազատելու ըլլայ՝ դուք մարդկային վախէ ազատ չէք ըլլար։ Աճապարեցէք փութացէք քանի որ ցորեկ է. Աստուած անձամբ ձեր աղջիկէն կ'երթայ եւ կ'առաջնորդէ, միայն թէ դուք իր ետեւէն երթաք։ Աստուած հետերնիդ է, ամենեւին մի վախնաք, քաջալերուեցէք, զօրացէք ու Աստուծոյ օգնութիւնը յայտնի կը տեսնէք։ Ինչու որ ըրած պատերազմնիդ ձեր պատերազմը չէ, հապա Աստուծոյ, անոր համար ալ պատերազմողը դուք չէք, ինքն է[16]։

Գիւղացիները չորս կողմէն գունդ գունդ Մունցերին եւ անոր նմաններուն գլուխը կը ժողվուէին, յարմար տեղեր բանակ դնելով՝ կառքերով կ'ամրանային, ու անտառիկ բերդերու մէջ նստածի պէս՝ ապահով կը կենային, յուսալով որ Աստուած իրենց օգնական պիտ'որ ըլլայ։ Կարգաւորեալ զէնք չունէին, հապա խոփերն ու գերանդիները զէնքի տեղ առած էին, շատերն ալ միայն գաւազան ունէին։ Ասով բոլոր Գերմանիա սաստիկ ահու դողի մէջ ինկաւ, եւ ամէն կողմ սուգ ու տրտմութիւն կոխեց, ինչու որ ապստամբ գեղացիները ամէն հասած տեղերնին կ'աւրըշտըկէին, եւ չլսուած անագորոյնութիւններ կը գործէին. ինչպէս նոյն ատենուան բոլոր մատենագիրները միաբերան կը վկայեն։ Փռանկոնիա գաւառին մէջ երկուհարիւր վանքէ ու դղեակէ աւելի աւար առին ու քանդեցին։ Ազնուականներէն ու քահանաներէն ոմանք անլուր տանջանքներով կը մեռցընէին. իրենք երկու կարգ բաժնուած կը կենային, եւ զանոնք մէջերնէն անցընելով՝ ամէն մէկերնին ձեռքի գործիքներովնին կամ զէնքովնին կը զարնէին կը վիրաւորէին, եւ այսպէս բոլոր մարմիննին պատառ պատառ կ'ընէին[17]։ — Աս բաներէն ամէն մարդ իմացաւ որ աս Լուտերի Աւետարանին ճշմարիտ աշակերտները բոլոր ձեռքերնին անցած ազնուականներուն հետ ալ այսպէս պիտի վարուին, եւ ամենուն վրայ ալ իրենց վարդապետին սորվեցուցած բաները գլուխ պիտի հանեն։ Եւ թէպէտ երբ որ նոյն վարդապետութիւններուն մինակ առաջին մասը կը կատարէին, այս ինքն երբ որ ուղղափառ քահանաները կը չարչարէին ու երկրի տէր եկեղեցականներուն դէմ կ'ապստամբէին, եւ անագորունութիւննին ու յափշտակութիւննին՝ միայն անոնց վրայ կը բանեցընէին, Լուտեր իրեններովը մէկտեղ կը ծիծա-

16. Դարձեալ հոն, 139։ Սլէյտան, Գիրք Ե. 66, 67։ Բլանք Գիրք Ե. Հատ. Բ. 198. Ծանօթ. 38։ Օտէն, Բ. Հատ. Գլ. Թ. 124, 125։

17. Սլէյտան, Գիրք Դ. 63։ Մէնցըլ, Հատ. Ա. Գլ. Դ. 182։ Բլանք, Գիրք Ե. Հատ. Բ. 198. — 200։

զէր ու կ՚ուրախանար, եւ իշխաններէն մէկն ալ ձայն չէր հաներ[18]. բայց երբ որ Լուտերին՝ իշխաններուն վրայ ալ տուած իշխանութիւնը սկսան բանեցընել նէ, ան ատեն ասոնք սկսան ոտք ելլել ու դէմ դնելու ջանալ: — Գլխաւոր իշխաններէն ոմանք շուտ մը զօրք ժողվելով՝ ապստամբ գեղացիներուն վրայ ելան ու սաստիկ մեծ կոտորած ըրին. կը պատմուի որ միայն մէկ իշխան իր առանձին զօրքովը՝ երեք անգամ գեղացիներուն հետ զարնուելով՝ անոնցմէ տասնուութը հազար հոգի ջարդեց: Բոլոր Գերմանիայի դաշտերը գեղացիներուն արեամբը ներկուեցան, եւ գետերը՝ անոնց մարմինները ուրիշ գաւառները տանելով՝ եղած չարիքներուն ու կոտորածներուն գոյժը կու տային: Մունցէր եւ ուրիշ գլխաւորներն ալ ձեռք իյնալով՝ սպաննուեցան[19]:

Երբ որ ապստամբ գեղացիները եկեղեցականներէն զատ՝ աշխարհական իշխաններու ալ դէմ սկսան կռուիլ ու բաներնին սկսաւ գէշ երթալ նէ, ան ատեն Լուտեր ձայնը փոխեց, եւ ուր որ իսկզբան անորոշ կերպով մը կը խօսէր, մանաւանդ թէ ի ծածուկ գեղացիներուն իրաւունք կու տար եւ անոնց կողմը կը բռնէր, նոյն ատեն իրենց սաստիկ դէմ ելլելու սկսաւ[20]: Ձի-

18. Չէ թէ միայն դէմ չէին դներ եւ կ՚ուրախանային, հապա՝ ինչպէս շատ հեղինակներ եւ մանաւանդ Մենցըլ (Հատ. Ա. Գլ. Դ. 187.) կը գրուցէ, շատ իշխաններ կամակար գեղացիներուն կողմը կ՚անցնէին, յուսալով որ աս միջոցով կը մեծնան ու կը հարստանան, եւ անձամբ անոնց կ՚օգնէին ու կ՚առաջնորդէին: Յառաջագոյն արդէն Սիքինկէն ու Հուգդէն՝ Լուտերի մեծ բարեկամներն ու պաշտպանները՝ զանոնք շատ անգամ եկեղեցականաց դէմ կը գրգռէին, անոր՝ եկեղեցականաց դէմ գրածներն առջեւնին կը կարդային ու կը մեկնէին, եւ եկեղեցիներուն ու վանքերուն ինչքերը կողոպտելու ատեն՝ իբրեւ գործիք զանոնք կը գործածէին:

19. Ինչպէս ուրիշ անգամ (Գիրք Բ. Դլ. Ա. Ծանօթ. 5.) ըսինք, Մունցէր իսկզբան Լուտերին աշակերտելէն ետեւ՝ անկից ապստամբեցաւ, եւ անոր Վարդպուրկ եղած ատեն՝ Գարլշդատին հետ մէկտեղ միանալով՝ Վիդդենպերկի պատահած անկարգութիւններուն գլխաւոր պատճառներէն մէկն էր: Երբ որ Լուտեր Վիդդենպերկ դարձաւ, Մունցէր թող տուաւ փախաւ, եւ քիչ մը վերջը Թուրինգիայի Ալշդատ քաղաքը սկսաւ քարոզութիւն ընել: "Ինքն ալ Լուտերին պէս կը ջանար, կ՚ըսէ Մենցըլ, (Հատ. Ա. Գլ. Ե. 197.) իր կարծիքները ամէն կերպով ուրիշներուն ընդունել տալու: . . . Եւ որովհետեւ Ս. Գրոց մէջ քաջ էր, անոր համար դիւրաւ կրնար ինքը զինքը պաշտպանել": Երբ որ Մունցէր պատերազմին մէջ բռնուեցաւ, ու իշխանները զինքն ըրածներուն վրայ կը յանդիմանէին, պատասխան տուաւ թէ "Շատ աղէկ ըրի, որպէս զի իշխանները պատժուին, որովհետեւ իրենք Աւետարանին դէմ են": Բայց թէպէտ իսկըզբան այսպէս յանդուգն ու յամառ էր, բայց ետքը սխալմունքը ճանչցաւ, ուղղութեան եկաւ. սակայն իբրեւ ապստամբութեան գլուխ՝ գահճի ձեռքով սպաննուեցաւ: Մենցըլ, Հատ. Ա. Գլ. Ե. 209. — 212:

20. Լուտերի սաստիկ ջատագով հեղինակներն ալ աս բանս կը խոստովանին: "Երբ որ գեղացիները, կ՚ըսէ Մաթեսիոս, . . . չէ թէ միայն վանքերուն ու եկեղեցականներուն, հապա նաեւ աշխարհական իշխանութեան ալ դէմ ելլելու սկսան, ան ատեն Լուտեր սկսաւ Աստուծոյ կարգա-

րենք ողջ Հանողն Աստուած է՝ որ անոնց ձեռքովը իշխաններն աթոռներնէն վար առնել կ'ուզէ ըսողը՝ երբ որ տեսաւ որ իշխանք զանոնք կը ջարդեն, ինքն ալ անոնց բախտին չպատահելու համար՝ սկսաւ իշխանները յորդորել որ գեղացիներուն ամենեւին չխնայեն, ջարդեն, կոտրեն ու մէկը չազատեն: Այս նիւթին վրայ մասնաւոր գրուածք մ'ալ հանեց, որուն մէջ այսպէս կը խօսի: Գեղացիները երեք մեծ անօրէնութիւն գործեցին, որոնց համար վրանին եկած չարիքներուն, մանաւանդ թէ յաւիտենական դատապարտութեան արժանի են: Առաջին անօրէնութիւննին ան է որ իրենց իշխաններուն՝ երդմամբ խոստացած հնազանդութիւններնուն դէմ ըրին: Երկրորդ՝ որ իշխաններնուն դէմ ելան, եւ անոնցմէ ապստամբելով՝ անհամար սպանութիւններ, աւարառութիւններ ու աւազակութիւններ ըրին: Երրորդ անօրէնութիւննին ալ ան է որ իրենց ամպարշտութիւնն ու անագորունութիւնը՝ Աւետարանին անուամբ կը ծածկեն, եւ իրենք զիրենք քրիստոնեայ եղբայր կանչելէն զատ՝ ուրիշներն ալ կը յորդորեն մանաւանդ թէ կը բռնադատեն որ իրենց հետ միաբանին, ու անօրէն երդումներով իրարու հետ կը կապուին [21]: Աստնք գրելէն վերջը՝ իշխանները կը յորդորէ որ ինչ եւ իցէ կերպով գեղացիները մեռցընեն: Եւ թէպէտ իսկզբան ըսած էր որ աս բաներուն համար երկու կողմանէ ալ մեռնողները բոլոր պիտի դատապարտուին, բայց հիմա նոյն նիւթին վրայ ալ կարծիքը կը փոխէ: «Ով որ ամենէն յառաջ զիրենք կրնայ խղդել նէ, կ'ըսէ, աղէկ եւ իրաւացի գործք կը գործէ. որովհետեւ հրապարակական ապստամբի մը դէմ ամէն մարդ թէ՛ վերին դատաւոր թէ՛ դահիճ է: Ինչպէս որ կրակ մը ելած ատեն՝ ով որ ամենէն յառաջ կրնայ մարել նէ՝ անիկա ամենէն աղէկ գործ կը գործէ: Ինչու որ ապստամբութիւնը հասարակ սպանութեան

ւորութիւններն ու իշխանութիւնը պաշտպանել, գեղացւոց անպիտան գործքերը սաստիկ խիստ գրքով մը դատապարտեց, եւ իշխանները խրատեց որ այնպիսի ամօթալի բանը որոյ զօրութեամբ կրնան արգելել ու պէտք է որ արգելեն,,: Ճառ Զ. 54: Գրեթէ նոյն կերպով կը խօսի Սէկյոանն ալ. «Գեղացիները, կ'ըսէ, . . . սկսան պատերազմ ընել իր Տէր տէրոջ պաշտօնեաներուն, հոգեւոր աշխատաւորներուն դէմ . . . : Անոր համար Լութեր . . . զամէնքը յորդորեց ու կանչեց կրակի կանչելու պէս՝ որ այս չար աւազակները կոտորեն,,: Գիրք Ե. 76: Իսկ Ռիֆել (Գիրք Ա. Գլ. Է. 468.) կը զրուցէ թէ մարդ անոր շատ կ'ամբաստանէ որ Լութերին՝ գեղացիներուն դէմ առջի գրուածներն հանելէն ետեւ՝ ո՛չ գեղացիները փոխուած էին եւ ո՛չ իշխանները: Գեղացիները՝ արդէն յառաջագոյն սկսած գործքերնին յառաջ կը տանէին. իսկ իշխանները ամենեւին չէին փոխուած, հապա նոյն իշխաններն էին, զորոնք որ Լութեր՝ բռնաւոր եւ անտանելի մարդիկներ կը կանչէր: Ուստի եւ աս խստութեան ուրիշ պատճառ մը չկրնար գտնուիլ, բայց եթէ գեղացիներուն յաղթուելու սկիզբը: Ցես Նոյն 24. ու 29. Ծանօթ:

21. Գործք Լուտ. գերմ. Հատ. Գ. 129, 130:

պէս չէ, հապա մեծ հրդեհի պէս է, որն որ երկիրը կ'այրէ ու անապատ կը դարձընէ: Ապստամբութիւնը՝ հետը սպանութիւններ, արիւնհեղութիւններ կը բերէ, ամէն տեղ որբեր եւ այրիներ կը ձգէ, ամէն բան կ'աւրէ կ'ապականէ ու ամենամեծ դժբախտութիւն է: Անոր համար ով որ կրնայ նէ՝ պէտք է որ զարնէ, խղդէ, խոցէ, ծածուկ եւ յայտնի կերպով, եւ մտածէ որ ապստամբէ մը աւելի թունաւոր, փնասակար ու սատանայական բան չիկրնար ըլլալ, ու կատաղի շան կը նմանի, որն որ չես զարներ նէ՝ զքեզ ալ բոլոր գաւառն ալ մէկտեղ կը զարնէ [22]:

"Պէտք է որ մեծերը քաջութեամբ յառաջ երթան, եւ աղէկ խղճով զարնեն... որովհետեւ աս առաւելութիւնը կայ որ գեղացիները գէշ խիղճ ունին ու խնդիրնին անիրաւ է. եւ աս բանիս մէջ մեռնող գեղացին՝ հոգւով ու մարմնով մէկտեղ կորսուած ու յաւիտեանս սատանայինն է: Իսկ մեծերուն խիղճն աղէկ է ու խնդիրնին իրաւացի... անոր համար կրնայ ըլլալ որ ով որ մեծերուն կողմանէ մեռնելու ըլլայ նէ՝ Աստուծոյ առջեւը ճշմարիտ մարտիրոս ըլլայ:... Հիմա անանկ զարմանալի ատեն է որ իշխան մը արիւն ընելով՝ աւելի դիւրաւ երկինքը կրնայ վաստըկիլ քան թէ ուրիշները աղօթք ընելով [23]:

"Անոր համար, տէրեր, յառաջ գացէք... ով որ կրնայ նէ՝ խոցէ, զարնէ, խղդէ: Թէ որ մեռնելու ըլլաս նէ՝ երանի քեզի. աւելի երջանիկ մահուան մը չէիր կրնար պատահիլ. որովհետեւ Աստուծոյ խօսքին ու հրամանին հնազանդելով կը մեռնիս:... Թէ որ աս բանը մէկու մը շատ խիստ կու գայ նէ՝ թող մտածէ որ ապստամբութիւնն անտանելի բան մըն է, եւ ամէն րոպէ աշխարհքիս կործանումը կրնայ պատճառել" [24]:

Մէկը աս ամէն բաներն անաչառութեամբ եւ առանց նախապաշարման կարդալու ըլլայ նէ՝ բոլոր եղած չարիքներուն եւ այնչափ մարդիկներուն արիւնը թափուելուն առաջին ու սկզբնական պատճառը ո՞վ կրնայ սեպել, բայց եթէ զԼուտեր: Եւ ստուգիւ ալ բոլոր ուղղափառ հեղինակներուն միաբան վկայութենէն զատ՝ շատ բողոքող մատենագիրներ աս կարծիքն ունին [25]. Նոյն իսկ Լուտերի աշակերտները, մանաւանդ թէ ինքն

22. Նոյն տեղը, 129. Բ:

23. Դարձեալ նոյն տեղը, 130. Բ. 131:

24. Նոյն տեղը, 131. Բ: — Բլանք Լուտերին գեղացիներուն դէմ այսպէս սաստիկ վարուելուն պատճառներուն վրայ խօսելով՝ կը զրուցէ, որ մէյ մը անոր համար կ'ընէր որովհետեւ ամէն մարդուն՝ ապստամբութիւնն իր վարդապետութենէն ծագած է ըսելուն վրայ շատ նեղացած էր, մէյ մ'ալ որովհետեւ իմացաւ որ գեղացիներուն առաջնորդներուն մեծ մասը՝ իրեն աշակերտած մարդիկներէն էին, այս ինքն Նորկնունքներէն: Եւ խօսքը կը լմնցընէ ըսելով որ աս բանիս մէջ Լուտեր չափը շատ անցուց: Գերմ. Ե. Հատ. Բ. 189.—192:

25. Աս կարծիքին՝ նոյն իսկ ան

ալ անձամբ միաբան զինքը գեղացիներուն արեան պարտապան կը սեպեն։ «Վերջին դատաստանին օրը, կ՚ըսէ Գոքլէոս, Մունցէր եւ գեղացիները՝ զԱստուած եւ զհրեշտակները Լութերի դէմ վրէժխնդրութեան պիտի կանչեն»[26]։ Երազմոս այսպէս կը յանդիմանէ Լութերը. «Հիմա քու օգուտդ պտուղները կը քաղենք։ Անտարակոյս դուն կ՚ըսես որ առիկա Աստուծոյ խօսքին յաղթութիւնն է. բայց ես կարծեմ որ Աստուծոյ խօսքը քարոզելու կերպէն ալ շատ կախում ունի։ Դուն աս ապըստամբները չես ուզեր ճանչնալ. բայց իրենք զքեզ կը ճանչնան, եւ ամէն մարդ գիտէ որ Աւետարանին անուամբը պարծեցողներուն շատերը՝ աս ահագին ապստամբութեան պատճառ եղան։ Սուտ է գեղացիներուն դէմ գրած խիստ գրքիդ մէջ բոլոր ապստամբութեան կարծիքը վրայէդ նետելու կ՚աշխատիս. բայց փուճ է, պարապ է. ամէն մարդուն մտքէն աս համոզումը չես կրնար հանել որ դուն քու գրքերովդ, մանաւանդ գերմաներէն լեզուաւ՝ աւետարանական ազատութեան անուամբ՝ քահանաներուն, կրօնաւորներուն, եպիսկոպոսներուն եւ մարդկային բռնաւորութեան դէմ գրածներովդ՝ աս ամէն խռովութիւններուն պատճառ եղար»[27]։

Բայց ուղղամիտ եւ բողոքող ամէնքն ալ գլխաւորաբար աս վրայ կը տրտնջէին որ Լութեր գեղացիները գրգռելէն ու ոտք հանելէն ետեւ՝ երբ որ տեսաւ թէ բաներնին գէշ կ՚երթայ, չէ թէ միայն զիրենք թող տուաւ, հապա նաեւ անոնց դէմ գրած խօսքերովը իշխանները սաստիկ գրգռեց, եւ յորդորեց որ ամենէն վերջին գեղացւոյն արիւնը չխնայած՝ սրերնին տեղը չդնեն[28]։ Աս բանիս վրայ նոյն իսկ իր աշակերտանե-

ժամանակներն ինչպէս ընդհանուր ըլլալը շատ բողոքող մատենագիրներ ալ կը խոստովանին։ «Աս բանս Լութեր շատ կը նեղէր, կ՚ըսէ Բլանք, որ եղած ապստամբութիւնն այնպէս ընդհանրապէս իր վարդապետութեան կը տրուէր»։ Գիէլ Ն. Հատ. Բ. 190։ Եւ քիչ մը վերջը կը գրէ որ «Թէպէտ եւ շատ անհիմ խօսք էր աս ամբաստանութիւնը որ ծագած ապստամբութիւնը իր (Լութերին) գործքն ու իր վարդապետութեան պտուղն է, ի վերայ այսր ամենայնի սիրտը շատ կը ցաւէր որ աս խօսքը ամէն կողմէն կ՚ելլէր»։ Նոյն տեղը. 201։ Կուստաւ Ֆիցեր՝ ըսելէն վերջը որ ոմանք Գերմանիայի մէջ պատահած բոլոր քաղաքական չփոթութիւններուն մէջ Լութերին ձեռքը կայ, կ՚ըսէ, խօսքս այսպէս յառաջ կը տանի. «Բայց աս անհիմն կարծեացն աւելի ընդհանուր եւ աւելի ծանր էր՝ 1524ին ու 1525ին պատահած գեղացիներուն ապստամբութեան պատճառն իրեն դէմ եղած տրտունջը»։ Գլ. ԺԹ. 391։ — Սուտ է Լութերին սաստիկ ջատագովն ու կողմնակից մատենագիրները զինքը աս բծէն արդարացընելու կը ջանան. ի վերայ այսր ամենայնի իրենք ալ գոնէ կը խոստովանին որ իր տարածած վարդապետութիւնները աս բանիս շատ նպաստաւոր եղած են։ Տես աս գլխոյն 1. ծանօթ։

26. Առ Օսենի, Հատ. Բ. Գլ. Թ. 136։

27. Աս խօսքս յառաջ կը բերէ Մենցլ, Հատ. Ա. Գլ. Դ. 184։

28. Նոյն տեղը։

լէն շատերն ալ կը տրտնջէին, եւ կ՚ըսէին որ յայտնի կը տեսնուի թէ Լուտերի առաջնորդողը ո՛ր Հոգին է, որն որ զինքը դրդեց որ յառաջագոյն իր խօսքերովն իշխաններուն դէմ ապըստամբելու եւ պատերազմի ելլելու յորդորած խեղճ մարդիկը՝ ետքը կատաղի շներու նմանցընելով՝ մեռցընելու յորդորէ։ Ա՛ս խստութիւնն ու անագորոյնութիւնը, կ՚ըսէին, յայտնի նշան է որ Հոգին սուրբ, ինչպէս երբեմն զՍաւուղ՝ նոյնպէս հիմա ալ զԼուտեր թող տուած է, եւ անոր տեղ՝ մահ ու արիւնհեղութիւն ազդող հոգի մը եկած իր սիրտը մտած է[29]։ — Բայց ինչ հարկ կայ օտարին վկայութեան, Լուտեր ինք իրմէ ալ կը խոստովանի որ բոլոր չարեաց պատճառն ինքն է։ "Անոնց (գեղացիներուն) արիւնը բոլոր իմ վզիս վրայ է„ կ՚ըսէ․ բայց խօսքը այսպէս յառաջ կը տանի․ "Սակայն ես նոյն արիւնը՝ Քրիստոսի Տեառն մերոյ եւ Աստուծոյ վրայ կը ցանեմ, որովհետեւ ինք ինծի հրամայեց որ խօսածներս խօսիմ„[30]։ Ո՛հ անհնարին հայհոյութիւն։

29․ Ուլէնպերկ, Գլ․ ԺԵ․ Համ․ Դ։ Բլանք, Գիրք Ե․ Հատ․ Բ․ 202։ — "Մարդ չիկրնար չխոստովանիլ . . . որ Լուտեր ա՛ս բանիս մէջ ուղիղ չափը կորսընցուցած ու սաստիկ կերպով մը գրած չըլլայ„։ Կուստաւ Փիցեր (Գլ․ ԺԹ․ 428․) ա՛ս խօսքը գրելէն վերջը՝ կ՚ըսէ որ չիկրնար աղէկ մ՚իմացուիլ թէ արդեօք Լուտեր իր սաստիկ խօսքերովը կը պահանջէր որ իշխանք գեղացւոց դէմ պատերազմին եւ զանոնք պատերազմի մէջ մեռցընեն, չէ նէ՝ միանգամայն ան ալ կ՚ուզէր որ ողջ ձեռքերնին ինկածներն ալ մեռցընեն։ Ետքը երկու կողման ալ Լուտերին գրուածքներէն վկայութիւն բերելով եւ տեսնելով որ երկրորդ կարծիքը բոլորովին չիկրնար մերժել, Լուտերի ա՛ս բարբարոսական խստութիւնը կը ջանայ արդարացընել ըսելով՝ որ ինք ապստամբութեան սաստիկ թշնամի ըլլալուն համար՝ բերնէն անանկ սաստիկ խիստ խօսքեր ելան, "որոնցմով պատշաճ սահմաններէն չափէ դուրս անդին անցաւ։ Եւ ստուգիւ, կ՚ըսէ, մարդ պէտք է որ շատ խիստ եւ անպատշաճ սեպէ իր բռնած ճամբան, որ մէկէն ի մէկ եւ իբրեւ թէ իշխանաց ու տէրանց բռնաւորութեան եւ հարըստահարութեան վրայ իր նախատելով ըսածները մոռնալով, (գեղացիներուն) ապստամբութիւնը՝ միայն իբրեւ ստահակութեան եւ անձին դիւրութեան գործք մը կը նկարագրէ . . . ։ Իր եռանդն ան աստիճանի տարաւ մինչեւ կ՚ուզէր որ ազօրմութեամբ վարուիլ խռովողներն ալ պատժուին„։ 428, 429։

30․ Խօսք սեղանոյ, 276․ Բ։ — Լուտեր ա՛ս խոստովանութիւնը միայն մէկ անգամ չըրաւ, հապա շատ անգամ․ բայց իր վարդապետութիւններուն պատճառած խռովութիւնները իբրեւ անոնց ստոյգ ըլլալուն նշանը կը սեպէր։ Ահաւասիկ աղանդապետին բուն խօսքերը՝ որոնք որ 1520ին Սփալադինին կը գրէ։ "Չըլլայ որ մէկը՝ եղած խռովութիւնները երեսս զարնէ։ Մեր ժամանակը հանդարտութեամբ ընել ուզուած բանը շուտ մը կը մոռցուի, ու մէկուն հոգը չ՚ըլլար։ . . . Ես աստուածային գրքին մէջ կը կարդամ թէ ինչպիսի՜ մրրիկ պիտի փրթի . . . բայց ինչ ընենք․ մէկը չիկրնար խաղաղութեան խօսքն առանց խռովութեան ու վտանգի քարոզել . . . ։ Մարդս կամ խաղաղութենէն կամ Աստուծոյ խօսքէն ետ պիտի կենայ։ Քրիստոս պատերազմ ձգելու համար եկած է, չէ թէ՝ խաղաղութիւն ձգելու համար . . . ։ Զարմանալու բա՞ն մըն է որ աշխարհքս Աստուծոյ խօսքէն խռովի․ Հերովդէս ու բոլոր Երուսաղէմացիները՝ միայն Քրիստոսի ծննդեան լուրն առնելով՝ չխռովեցա՞ն․ իրեն մեռնելու ժամանակն ալ արեգակը չխաւարեցա՞ւ, երկիրը

Նոյնպէս լմնցաւ գեղացիներուն ապստամբութիւնը։ Եւ թէպէտ աս խռովութիւնները քիչ տեւեցին, բայց երկու կողմանէ՝ հարիւրհազարէն աւելի մարդ մեռաւ 31։ Եօթը քաղքի պարիսպ կործանեցաւ, հազար վանք քանդեցաւ, ու երեքհարիւր եկեղեցի այրեցաւ։ Անգին պատկերներ, սքանչելի արձաններ, հին ու տեղը չլեցուելու ձեռագիրներ, եւ ուրիշ երեւելի արուեստաւորներու ճարտար գործուածքներ՝ որոնք որ շատ դարերէ վեր ժողվուած էին, աս քիչ ժամանակուան մէջ ապականեցան, կործանեցան, կորսուեցան։ — Աս ամէն բաները՝ Լուտերի եկեղեցւոյն մէջ խոթել ուզած ազատութեան առաջին պտուղներն են. այնչափ մարդիկներուն մահը եւ այնչափ մե-

չսատանեցա՞ւ։ Մանաւանդ թէ աս ամէն բաները յայտնի նշան կը սեպեմ որ իմ վարդապետութիւնս սուրբ է, երբ որ շատերը եւ մանաւանդ մեծամեծներն ու իշխանները դէմ գնելու ըլլան. վասն զի գրուած է թէ "Աս կայ ի գլորումն եւ ի կանգնումն բազմաց ի մէջ Իսրայէլի եւ ի նշան հակառակութեան,,։ Առ Օտէնէ, Հատ. Ա. Գլ. ԺԴ. 156։

Աւրիկա մինակ Լուտեր չէր ըսեր, հապա Զուինգլի ալ, Կալուին ալ, եւ ամէն հերձուածապետներն ալ աս խօսքը բերաննին ունէին թէ Քրիստոս աշխարհքիս մէջ սուր ու բաժանում ձգելու համար եկած է. եւ ասոր միտ չէին դներ որ խռովութիւն եւ ապստամբութիւն հանողները՝ իրենք եւ իրենց աշակերտներն էին, եւ ոչ թէ իրենց դէմ հալածում կ'ըլլէր, ինչպէս աղէկ կը գրէ Պոսիւէ։ "Կո՛յրք, կ'ըսէ, որ չէին տեսներ կամ չէին ուզեր տեսնել թէ Քրիստոսի ձգած սուրը ո՞րն է, եւ թափել տուած արիւնը՝ որո՞ւն արիւնն է։ Ստուգիւ ան յափշտակիչ գայլերը՝ որոնց որ իր աշակերտները կը խաւրէր, անմեղ գառնուկներուն արիւնը պիտի թափէին. բայց տեղ մը ըսա՞ւ արդեօք Քրիստոս որ աս գառնուկը՝ գայլ ըլլալէն թող տալով՝ ապստամբութիւններ պիտի հանեն, ու գայլերուն արիւնը պիտի թափեն։ Բռնաւորներն իր հաւատացեալներուն դէմ սուր կը գործածէին. բայց հաւատացեալները արդեօք երբեք ձեռուըննին սուր առի՞ն, չէմ ըսեր զիրենք հալածողներուն վրան յարձակելու համար, հապա նաեւ իրենք զիրենք պաշտպանելու համար։ Մէկ խօսքով ըսելով՝ ստուգիւ Քրիստոսի աշակերտներուն դէմ շատ ապըստամբութիւններ ելան. բայց Քրիստոսի աշակերտները՝ երեքհարիւր տարի սաստիկ հալածանք կրած ժամանակնին՝ եւ ոչ մէկ խռովութիւն հանեցին։ Աւետարանը զիրենք համբերող եւ խաղաղարար կ'ընէր, իրենց կը սորվեցընէր որ իրենց օրինաւոր իշխանները մեծարեն, թէպէտ եւ անոնք իրենց հաւատքին թշնամին էին. զիրենք ճշմարիտ նախանձաւորութեամբ կը լեցընէր, եւ ոչ թէ ան գոռոզ նախանձաւորութեամբ՝ որն որ գաժանութեան դէմ գաժանութիւն կը գործածէ, զէնքը՝ զէնքով կը մերժէ, եւ զօրութեամբ՝ զօրութեան դէմ կ'ելլէ։ Արդ գնենք թէ՝ հակառակորդներնուս ըսածին պէս՝ ուղղափառներն անիրաւ հալածիչ ըլլան, ի վերայ այսր ամենայնի զանոնք առաքելական եկեղեցւոյն համաձայն ուղղութեան պիտի բերենք ըսողները՝ պէտք էր որ իրենց նորոգութեան եւ ուղղութեան՝ անյաղթելի համբերութեամբ ձեռք զարնէին։ Ասոր հակառակ Երազմոս՝ որն որ Նորոգութեան սկիզբները տեսած է, կը զրուցէ որ կը տեսնէի թէ իրենց քարոզներէն՝ գժնդակ ու վայրենի դէմքով դուրս կ'ելլէին եւ սպառնալից կերպարանքներով, իբրեւ այնպիսի մարդիկ՝ որ սաստիկ թշնամանք եւ ապստամբեցուցիչ խօսքեր լսած ըլլան,,։ Գիրք Ա. Համ. ԼԴ։

31. Բլանքին ըսածին նայելով՝ միայն վերին Գերմանիայի մէջ 50,000էն աւելի մարդ մեռաւ։ Գիրք Ե. Հատ. Բ. 179։

ծամեծ կորուստները՝ պտուղ են այն ազատութեան՝ որն որ Լուտեր իր վարդապետութեանը հետեւողներուն կը խոստանար: Բողոքողութեան պատճառաւ աս ու ատոր նման մանաւանդ թէ ասկէ շատ աւելի մեծ կորուստներն ու ապականութիւնները տեսնելէն վերջը՝ թող անկողմնակալ բողոքողները իրենք իրենցմէ դատաստան ընեն որ ան մինչեւ երկինք բարձրացուցած նորոգութիւննին՝ արդեօք իրենց պարծածին պէս՝ մարդկութեան երջանկութեան եւ գիտութեանց ու արուեստից ծաղկելուն պատճառ եղած է, չէ նէ մարդկան թշուառութեան եւ գիտութեանց ու արուեստից եւս մեռնելուն ու խափանուելուն:



# ԳԼՈՒԽ Ը

## Լութերի կարգուիլը

Լութեր միտքը կը դնէ որ եկեղեցին ոտքէն վեր ունեցած բողոքանքը կատարէ ու կարգուի։ Մոգունտիոյ արքեպիսկոպոսին խրատ կու տայ որ ամուսնանայ։ Իրեն ալ միտքը դրածը կը կատարէ։ Լութերի թշնամիներուն՝ իրենց վարդապետին ու քոյրին վրայ ունեցած կարծիքը։ Լութեր ինքը զինքն արդարացնելու կը ջանայ, ու սաստիկ տրամաբանութեան մէջ կ'իյնայ։

## 1525

ԱՅՆ ԱՏԵՆ որ դեռ բոլոր Գերմանիա գեղացիներուն շփոթութեանց վախին մէջ էր, ամէն կողմը արիւնը վտակի պէս կը վազէր, որբերուն ու այրիներուն արցունքը դէպ ի երկինք կ'ելլէր, եւ ամէն մարդ խոր տրտմութեան մէջ ընկղմած էր, Լութեր աս ամէն իր պատճառած չարիքները բանի տեղ չդնելով՝ իր ցանկութիւնը կատարելու ետեւէն կ'իյնար. ուստի եւ քահանայութիւնն ու կրօնաւորութիւնը մէկդի ձգելով՝ Աստուծոյ նուիրուած կուսի մը հետ կարգուեցաւ։ Աս բանը երկայն ժամանակէ վեր միտքը դրած էր, եւ սաստիկ կը բաղձար որ իր զանազան գրքերուն մէջ գոված եւ ուրիշներուն խրատ տուած բանը՝ ինքն ալ անձամբ կատարէ. ի վերայ այսր ամենայնի Փրետերիկոս կայսրընտրին կենդանութեան ժամանակը չէր յանդգներ, որովհետեւ գիտէր որ աս իշխանը՝ կարգուող քահանաներն ու կրօնաւորները շատ կ'անգոսնէր ու կ'արհամարհէր։ Բայց երբ որ Փրետերիկոս մեռաւ (1525ին, Մայիսի մէջ) Լութեր ալ արգելք մը չունենալով՝ այնչափ բաղձացածը գլուխ տանիլ ուզեց[1]։

Բայց որպէս զի ամպարշտութեան մէջ երեւելի մարդ մ'ալ իրեն հաղորդակից ունենայ, յառաջագոյն Ալպերդ Մոգունտիայի արքեպիսկոպոս կայսրընտրին թուղթ մը գրեց, որուն մէջ ընտանեկան կերպով մը երիտասարդ հայրապետը կը յորդորէր որ քահանայի ու եպիսկոպոսի պաշտօնը մէկդի թողու, եւ աշխարհք մտնելով՝ եպիսկոպոսութեան թեմը՝ աշխարհական ժառանգական իշխանութեան փոխէ։ Որչափ որ

1. Օտէն (Հատ. Բ. Գլ. ԺԶ. 192.) մէկ Լութերական քարոզչի մը խօսքը մէջ կը բերէ, որն որ կը պատմէ թէ Լութեր նորոգութեան ձեռք զարնելէն ետեւ՝ ազնուի մը տան այցելութեան կ'երթար, ուր որ աղջիկ մ'ալ կար. եւ անգամ մը Սփալադինին զրուցեց թէ "Չես գիտեր անիկա որչափ սիրտս կը շարժէ. չեմ ուզեր մեռնիլ մինչեւ որ բաները ան աստիճանի հասցընեմ, որ ես ալ կարող ըլլամ անանկ աղուոր աղջկան մը հետ կարգուիլ"։

ամպարիշտ ըլլայ Լուտերի աս առաջարկութիւնն ու զինքն աս առաջարկութիւնն ընելու գրգռող պատճառը, ի վերայ այսր ամենայնի Թղթին մէջ արքեպիսկոպոսին առջեւը դրած պատճառանքը աւելի եւս իր ամպարշտութիւնն ու անամօթութիւնը կը յայտնէ: Արդ Նորոգիչը՝ արքեպիսկոպոսը ամուսնանալու յորդորելէն վերջը՝ խօսքը այսպէս յառաջ կը տանի: Աս խրատը քեզի անոր համար կու տամ, որպէս զի տեսայ Աստուծոյ բարկութիւնը՝ որ Գերմանիայի վրայ գրգռուած է, ինչպէս, եւ սատանային պատճառ չտրուի աւելի մեծ խռովութիւններ հանելու. որովհետեւ քահանայութեան կարգը՝ ի նախատինս Աստուծոյ հաստատուած է, եւ քանի որ ասանկ գարշելի կարգ մը չիվերնար նէ, պէտք չէ յուսալ որ իր բարկութիւնը վերաներնէս անցնի: Անոր համար պէտք է որ Աստուծոյ բարկութեան առջեւն առնես ու ձեռքէդ եկածին չափ աս կարգին ջնջուելուն օգնես, որովհետեւ մարդիկ ուզեն չուզեն՝ պէտք է որ ջնջուի վերջնայ: Շատերը մինչեւ հիմա նոյն ճամբան բռնեցին, անոր համար ալ Աստուած հետերնին շատ սիրով ու մարդասիրութեամբ վարուեցաւ: Արդ թէ որ դուն ալ՝ որ աս երկրին գլխաւորներուն մէջ առաջինն ես, իրենց գեղեցիկ օրինակին հետեւէն երթալու ըլլաս, շատերուն շինութիւն կ'ըլլաս, եւ ուրիշ շատ եպիսկոպոսներ ալ ասանկ ցանկալի գործքի ձեռք կը զարնեն. որով ստուգիւ մեր երկրին՝ մեծամեծ բարեաց պատճառ եղած կ'ըլլաս: Բայց թէ որ աս հասարակաց բարւոյն ալ միտ չդնելու ըլլաս նէ՝ միայն աս միտքդ բեր որ Աստուած զքեզ անոր համար մարդ ստեղծած չէ, որ աշխարհքիս մէջ առանձին ապրիս, հապա որպէս զի կնոջ ընկերութեամբ ապրիս: Չեմ կրնար ես իմանալ որ ինչպէս մէկը աշխարհքիս մէջ կին չունենալով առանց մեղքի կրնայ ապրիլ[2]: Ահագին բան է երբ որ մարդ մահուան ատեն առանց կնոջ գտնուի, որովհետեւ ինչ պատասխան կրնայ տալ, երբ որ Աստուած իրեն հարցընէ թէ Ես զքեզ մարդ չստեղծեցի՞, կնոջ հետ մէկտեղ ապրելու չորոշեցի՞. արդ ո՞ւր է կինդ: Եւ արդ՝ աս ամէն պատճառները աղէկ մտածէ, եւ խորհուրդս գլուխ տար, որովհետեւ ժամանակը հասած է, որն որ ձեռքէ փախցընելու ըլլանք նէ՝ չենք կրնար նորէն դիւրաւ ձեռք ձգել[3]:

Լուտեր աս նամակը Յունիսի 2ին գրեց, եւ իր բարեկամներէն մէկուն խրկեց որ արքեպիսկոպոսին տայ. եւ թէ որ,

2. Կ'աղաչենք որ Լուտերին աս տարօրինակը անոր անձին վրայ մեկնեն իր աշակերտները, որովհետեւ կարգուած ատենը քառասունեւերկու տարեկան էր, ինչպէս որ քիչ մը ետքը (Երես 219.) պիտի տեսնենք:

3. Ուլէնպէրկ, Գլ. ԺԶ. Համ. Ա: Գործք Լուտ. գերմ. Հատ. Գ. 145. Բ. — 147. Բ:

ըսաւ, «ինք կ'ուզէ նէ՝ ուրիշներուն ալ ցուցուր ու տպել տուր։ Իսկ թէ որ հարցնելու ըլլայ թէ ինչո՞ւ ես՝ որ ուրիշներուն խրատ կու տամ, չեմ ամուսնանար. պատասխան տուր որ մինչեւ հիմա կը կասկածէի թէ գուցէ աս բանիս բաւական յարմար չեմ։ Բայց թէ որ իմ ամուսնանալովս՝ իրեն ալ յօժարելուն յոյս կ'ըլլայ նէ, չեմ դանդաղիր, հապա շուտ մը իրեն օրինակ կու տամ[4]։

Լուտեր մեծ յոյս ունէր որ երիտասարդ արքեպիսկոպոսը դիւրաւ իր որոգայթին մէջ կ'իյնայ, ուստի շատ բարկացաւ երբ որ տեսաւ որ ակնկալութիւնը պարապ ելաւ. մանաւանդ որ Ալպերդ՝ առանց անամօթ գրուածքի մը պատասխան տալը՝ իր եպիսկոպոսական պատուոյն անարժան սեպելով՝ բոլորովին լռեց[5]։ Բայց արքեպիսկոպոսին աս բռնած ճամբան Լուտերին որոշման վրայ ազդեցութիւն մը չըրաւ, մանաւանդ թէ իր անարժան թուղթը գրելէն վերջը ա՛լ երկայն չսպասեց, հապա քանի մը օր ետքը (Յունիսի 14ին) իր մոլորեցուցած ու վանքէ հանած կուսանքներուն մէջէն Կատարինէ Պորէն իրեն կին առաւ ու մինակ քանի մը վկայից առջեւ հետն ամուսնացաւ։ Ան ատեն Լուտեր քառասունուերկու տարուան էր, իսկ կինը՝ քսանուվեց տարուան[6]։

4. Նոյն տեղը, 147. Բ։

5. Ան ժամանակէն ետքը Լուտեր նոյն արքեպիսկոպոսին վրայ սաստիկ նախատական կերպով կը խօսէր ու կը գրէր, իրեն շատ նախատական անուններ կու տար, զինքը՝ Դժոխական կարդինալ, կարդինալական գահիճ, նենգաւոր ծառայ, խենթ, հռոմայեցի սատանայ, մարդասպան եւ արիւնախանձ շուն, կատաղի եւ չարագործ, անամօթ որդ, գող եւ աւազակ, որդի Կայենի... կ'անուանէր. եւ ասոնցմէ ուրիշ ալ անանկ պիղծ ու անամօթ անուններ կու տար, որ չենք համարձակիր հոստեղս կրկնելու։ Դարձեալ վրան խել մը անամօթ առասպելներ կը հնարէր, կամ ուրիշներուն հնարածը ինք գրի կ'անցընէր, որոնց վրայ Մենցել կը զրուցէ թէ "խոստովանելու է որ նորոգչին կիրքերը զինքը աս բանին մէջ չափէն անդին անցուցին, որով ռամկական խօսքերը իրրեւ ճշմարտութիւն առաւ. որովհետեւ անկարելի է որ կարդինալը անանկ բաներով... իր եկեղեցական աստիճանը կամակար անարգանաց տակ ձգած ըլլայ"։ Անկից զատ նոյն մատենագիրը կը զրուցէ որ Լուտերին՝ արքեպիսկոպոսին դէմ հանած սաստիկ գրուածքը՝ նոյն իսկ Սաքսոնիայի կայսրընտրին պալատին մէջ տհաճութիւն պատճառեց, թէպէտ եւ շատ տարիներէ վեր արքեպիսկոպոսին հետ՝ քաղաքական խնդրոյ մը պատճառաւ՝ գժտութեան մէջ էին։ Հօփ. Ա. Գլ. Ջ. 228։

6. Կուստաւ Ֆիցեր, Գլ. ԻԳ. 585։ — Քանի մը ամիս յառաջ (1524ին, Նոյեմբերի սկիզբները) Լուտեր կրօնաւորական զգեստները հանած ու աշխարհականի զգեստ հագած էր։ Բայց չէ թէ միայն մինչեւ նոյն ատենը վանքը կը բնակէր, հապա մինչեւ վերջը հոն բնակեցաւ. ինչու որ բոլոր կրօնաւորներուն վանքէն ելլելէն վերջը՝ Լուտեր ուզեց նոյն շինուածը կայսրընտրին յանձնել, իրմէ խնդրելով որ ան մասը՝ ուր որ ինք կը բնակէր՝ իրեն մնայ։ Բայց կայսրընտիրը բոլորն ալ իրեն բնակելու տուաւ։ Լուտեր այսպէս բնակարան ունենալէն զատ՝ թէ՛ կայսրընտիրն ու իր յաջորդները եւ թէ՛ ուրիշ իր կողմն ըլլող իշխանները իր ապրուստը կը հոգային, այնպէս որ աս կայսրընտիրը զրած

Կարգուրաց կրօնաւորին աս անօրէն գործքը՝ որմէ որ ուղղափառները կը զզուէին ու կը գարշէին, իր աշակերտներուն մէջէն՝ քիչ մը ամօթ ու խելք ունեցողներուն ալ՝ շատ անվայել բան կ'երեւար, եւ զինքը աս բանիս համար, մանաւանդ այնպիսի խռովութեանց ատեն կարգուելուն համար՝ սաստիկ վար կը զարնէին[7]: Արդէն յառաջագոյն Շուրֆ՝ իր երեւելի աշակերտներէն մէկը, որն որ Վորմսի աւագաժողովին ատենը քովը կեցած եւ իրեն օգնած էր, քանի մը նշաններէ մակաբերելով որ պիտի կարգուի, այսպէս ըսած էր. «Թէ որ աս կրօնաւորը կին առնելու ըլլայ, բոլոր աշխարհքս եւ նոյն իսկ սատանան՝ իր վրան ծիծաղել կու տայ, եւ բոլոր ըրածները կ'ոչընչացընէ»[8]: Իսկ ամուսնանալէն վերջը գրեթէ ամէնքն ալ շատ պղպղեցան: Մելանքթոն՝ իր ամենէն սիրելի ու երեւելի աշակերտը, աս բանս լսեց նէ՝ շանթէ զարնուածի պէս երկայն ատեն անշարժ ու լուռ կեցաւ, եւ ամիսներով չէր կրնար մխիթարուիլ: Լուտեր՝ որ իրմէ բան մը ծածուկ չէր պահեր, ամուսնանալուն վրայ յառաջագոյն հետը բան մը խօսած չէր: Մելանքթոն իր վարդապետին աս գործքին վրայ ինչ կարծիք ունենալը՝ քիչ մը ետքը իր Կամերարիոս բարեկամին գրած թղթին մէջ կը յայտնէ: «Լուտեր, կ'ըսէ, չկարծուած ատեն՝ յառաջագոյն բարեկամներուն բան մը չըսած՝ Պորէին հետ կարգուեցաւ: . . . Սուտգիւ ամէն մարդ պիտի զարմանայ թէ ասանկ դժբախտ ատեն՝ որ բոլոր բարի մարդիկ այնչափ նեղութիւն կը քաշեն, ինք անոնց վշտացը վշտակից ըլլալու քաջութիւնը չունեցաւ. մանաւանդ թէ ասոր հակառակ այնպէս ցուցուց որ վրանիս հասած չարիքներն ու թշուառութիւնները բանի տեղ չիդներ: Ասով իր համբաւն ալ շատ նուաստացուց, այնպիսի ժամանակ մը՝ երբ որ Գերմանիա ամէն ժամանակէ աւելի իր իշխանութեան եւ խոհեմութեան հարկաւորութիւն ունի»: Եւ թղթին վերջը այսպէս կը գրէ. Աս ամէն բաները քեզի գրեցի, որպէս զի չըլլայ որ ուրիշներէն լսելով՝ շատ խռովիս ու վհատիս[9]: Յուստոս՝ Լուտերին ուրիշ մէկ երեւելի աշակերտը՝

մէկ թղթին մէջ՝ խրկած զգեստներուն վրայ շնորհակալ ըլլալով՝ կ'ըսէ որ հարկաւոր եղածէն աւելի ունիմ: Կուստաւ Ֆէյեր, Գւ. ԻԳ. 580. 591, 592:

7. «Աս գործքը, կ'ըսէ Ռոպերդսըն, նաեւ իր հետեւողներուն մէջէն շատ ջերմեռանդները անպատշաճ բան մը սեպեցին, այնպիսի ժամանակ մը որ երկիրն այնչափ թշուառութեանց տակ ինկած էր»: Գիրք Գ. Հատ. Բ. 262: Տես նաեւ Բլանք (Գիրք Ե. Հատ. Բ. 203. Ծանօթ. 47.), որն որ Լուտերին աս անօրէն գործքը կես բերնով մը ջատագովելու ատեն՝ կը խոստովանի որ շատ անյարմար ատեն ընտրեց:

8. Մենցլ. Հատ. Ա. Գւ. Ջ. 229: Կուստաւ Ֆիցէր, Գւ. ԻԳ. 582:

9. Աս Պոսիւէի, Գիրք Բ. Համ. ԺԴ: — Մենցլ (Հատ. Ա. Գւ. Ջ. 230. Ծանօթ.) աս թղթին վրայ խօսելով՝ կ'ըսէ որ «Լուտերին ամուսնութեան նաեւ իր բարեկամնե-

Սփալատինին այսպէս կը գրէ. “Այս թուղթս քեզի նոր լուր մը պիտի տայ. Լուտերինիս կատարինէ Պորէին հետ կարգուեցաւ. երէկ ես հարսնիքին ներկայ էի ։ . . . Աս տեսնելով՝ արցունքս չկրցայ բռնել ։ Շատ կը վախնամ ու կը նեղուիմ. չեմ գիտեր արդեօք Աստուած մեզի ինչ պահած է . . . ։ Աստուած իր խորհուրդներուն ու գործքերուն մէջ սքանչելի է„ 10 ։

Լուտեր երբ որ իմացաւ որ նոյն իսկ իր բարեկամներն ու աշակերտներն ալ աս անօրէն ամուսնութեան համար իրեն տարբեր աչքով մը կը նային, սկսաւ զանազան շինծու պատճառանքներով ինքը զինքը ջատագովել ։ Աս պատճառները՝ իր բարեկամներուն գրած թղթերուն մէջ կը գտնենք ։ Շատոնց է որ, կ'ըսէ անոնց մէջ, կ'ուզէի չմեռած՝ կին առնել, թէպէտեւ կնոջս հետ ուրիշ հաղորդութիւն չունենամ, բայց եթէ Յովսեփայ եւ ամենասուրբ կոյս Մարեմայ մէջ եղած հաղորդութիւնը ։ Արդ որովհետեւ հաստատուն գիտեմ որ մահս մօտեցած է, անոր համար հարկ եղաւ որ փութամ, որպէս զի մահը՝ խորհուրդներս պարապի չհանէ 11 ։ Ասկից զատ՝ մինչեւ հիմա խօսքով ու գրով սորվեցուցած վարդապետութիւնս՝ գործքով ալ հաստատուն ընել, ու պապականութենէն՝ դեռ վրաս եղած մնացորդներն ալ իրօք մէկդի ձգել ուզեցի, որպէս զի չերեւայ որ վարդապետածէս տարբեր կը գործեմ ։ Աս կինս մարմնոյ ցանկութեան համար չառի, հապա ամուսնութեան վիճակին ունեցած բարի յօժարութեանս համար 12, ու կատարինէ Պորէ՝

րուն վրայ ինչ ազդեցութիւն ըրած ըլլալը՝ Մելանքթոնին առ Կամերարիոս գրած թղթէն կ'երեւայ ։ Աս նամակը Մելանքթոն ըստ սովորութեան լատիներէն չգրեց, հապա յունարէն„. իբրեւ թէ աս բանս այնչափ ամօթալի կը սեպէր, որ ամենուն ծանօթ եղած լեզուաւ գրել չուզեց, որպէս զի չըլլայ որ շատ մարդիկ իմանան ։

10. Առ Օտենի, Հատ. Բ. Գլ. ՃՂ. 195 ։ — Լուտեր անձամբ կը խոստովանի առ իր աշակերտներուն իր ամուսնութեան վրայ ունեցած կարծիքը ։ “Ըստ աշխարհի իմաստունները, կ'ըսէ անանուն բարեկամի մը գրուած թղթի մը մէջ, նախ՝ ծերբիններուն մէջէն, աս բանիս վրայ սաստիկ բարկացած են ։ . . . . Բայց թէ որ ամուսնութիւնս Աստուծոյ գործքն է նէ, կ'աւելցընէ վրան՝ ինքը զինքը ջատագովելու համար, ինչ զարմանք որ աշխարհքս անոր վրայ գայթակղի„ ։ Գործք Լութ. կերմ. Հատ. Գ. 148. Բ ։ — Թէ որ Լուտերին ինքը զինքը ջատագովելու համար բերած աս պատճառը ստոյգ ըլլար նէ՝ պէտք էր հետեւցընել որ աշխարհքիս մէջ պատահած ամէն ամօթալի եւ անպիտան գործքերը՝ աղէկ ու գովելի գործք կ'ըլլան, միայն թէ մարդիկ պատճառեն ։

11. Լուտեր իր անօրէն ամուսնութենէն ետեւ՝ քանի մէկ տարի ալ ապրեցաւ, ու վեց որդի ունեցաւ ։

12. Աս պատճառին ո՛րչափ սուտ ու շինծու ըլլալը՝ անկէց յայտնի է, որ ինք շատ անգամ թէ՛ իր խօսակցութեանց եւ թէ՛ նամակներուն մէջ խոստովանած է որ մարմնոյ ցանկութիւնը զինքը շատ կը նեղէ ։ Պարկեշտութիւնը չըներեր որ իր պատմած քանի մը դէպքերը, որոնք իրեն աշակերտները գրի անցուցած են՝ հոստեղս յիշենք. միայն Վարդապուրկէն առ Մելանքթոն գրած մէկ

տուաքինի կուսին հետ ըլլանչելի կերպով մը Աստուծոյ ձեռքովը կապուեցայ։ Աս գործքս սուրբ ու աստուածային է. եւ թէպէտ բոլոր աշխարհի միտք ունեցողները ինչ ըլլալը չեն կրնար հասկընալ ու չեն գիտեր, մանաւանդ թէ ամպարշտութիւն ու սատանայական գործք կը սեպեն. բայց ես նոյն իսկ աշխարհքիս այսպէս կարծելուն համար՝ աւելի եւս աս վիճակը կը հաւնիմ։ Ան ալ հոգս չէ որ դեռ մոլորութեան խաւարին մէջ յամառած կեցողները իմ աս գործքիս վրայ կը գայթակղին։ Ստոյգ է մարդիկ զիս իմ ամուսնութեանս համար կարգուրացի տեղ կը դնեն. բայց ես կը յուսամ որ երկինքը հրեշտակներուն մեծ ուրախութեան պատճառ եղած է, եւ չար սատանաներուն՝ սաստիկ խռովութեան եւ դառնութեան առիթ։ Աս ու ասոր նման շատ բաներ գրեց Լուտեր իր բարեկամներուն [13]։

Բայց թէպէտ եւ աս կերպով իր անօրէնութիւնը բարեկամներուն առջեւը ջատագովելու կը ջանար, ի վերայ այսր ամենայնի ինքն ալ աս գործքին վրայ շատ խռոված էր, ու խղճմտանքէն տանջուելով՝ մեծ տրտմութեան ու սրտաբեկութեան մէջ ինկաւ. այնպէս որ նոյն իսկ իր ամուսնութիւնը չհաւնող աշակերտները սկսան զինքը մխիթարել։ Գլխաւորաբար Մելանքթոն ձեռքէն եկածին չափ կը ջանար զինքը մխիթարելու եւ զանազան պատճառներով կ'ուզէր հաւանեցընել որ չխռովի ու վհատութեան մէջ չիյնայ [14]։ Ո՞վ գիտէ, կ'ըսէր Լուտերին եւ

նամակին հատուածը հոս կը դնենք, ուսկից որ ըսածնիս բացայայտ կ'իմացուի։ «Հօս անգործ կը կենամ, քիչ աղօթք կ'ընեմ ու աւելի քիչ կը հեծեմ, որովհետեւ անսանձ մարմնոյս սաստիկ հրովը կ'այրիմ ու կը տոչորիմ։ Ուր որ պէտք էր հոգւով սրբով վառուիլ, ես մարմնով, ցանկութիւններով, . . . ծանծաղութեամբ կը վառիմ . . . ։ Ութը օր է որ բան մը գրած չունիմ, աղօթք մը չեմ ըրած, ու մարմնոյ ցանկութիւններէն կը նեղուիմ»։ Առ Օպինի, Հատ. Ա. Գլ. Ի. 273։ Տես նաեւ աս Գլխոյս 1. ծանօթ։

13. Աս նամակներէն ոմանք կը գտնուին Էր. Գերմ. Գործոց մէջ, Հատ. Գ. 148. Բ. 149. 158. Բ. 159. 159. Բ. 161. Բ։ Կուստաւ Փֆիցէր ալ անոնցմէ՝ ընդարձակ հատուածներ կը բերէ։ Գլ. ԻԳ. 582. — 585։

14. Կուստաւ Փֆիցէր (Գլ. ԻԳ. 586.) թէպէտ կը գրէ որ Մելանքթոն կ'ըսէ թէ Լուտեր տրտմութեան ու սրտաբեկութեան մէջ ինկած ըլլայ. բայց ինք ասոր հաւատալ չուզելով՝ վրան կ'աւելցընէ որ Մելանքթոն կրնայ խաբուած ըլլալ. որովհետեւ ինք Լուտերին կարգուելուն հաճած չըլլալով՝ դիւրաւ կրնար երեւակայել որ Լուտեր ալ տրտմած ըլլայ. սակայն Լուտերին գրուածքներուն ու նամակներուն մէջ անանկ բան ամենեւին չ'երեւար։ — Ի վերայ այսր ամենայնի ինք քիչ մը վերջը Լուտերի եւ ուրիշ մարդիկներուն խօսքերն ի մէջ կը բերէ, որոնցմէ յայտնի կ'երեւայ որ Լուտեր շատ անգամ տրտմութեան ու տխրութեան մէջ կ'իյնար։ Ահաւասիկ աս խօսքերուն մէկ երկուքը. Լուտեր տեղ մը կը գրէ. «Շատերը կը կարծեն թէ որովհետեւ ես երբեմն արտաքին վարմունքիս մէջ ինքը զինքս ուրախ կը ցուցընեմ, միայն վարդերու վրայ կը պառկիմ. բայց Աստուած գիտէ որ իմ վարուցս համար ինչ կը քաշեմ»։ Գլ. ԻԳ. 611։ Յուստոս՝ Լուտերի աշակերտը կը պատմէ որ «Կերակրէն վերջը Լուտեր պարտէզը իջաւ, որպէս

ուրիշներուն , գուցէ ատոր մէջ ծածուկ ու աստուածային բան մը կայ ։ Լուտեր իր աստուածպաշտութեան հաստատուն նշանները ցուցուցած է․ արդ անօգուտ չէ որ երբեմն անանկ բաներ ալ պատահին, որոնք իրեն խոնարհելու առիթ ըլլան, որպէս զի չըլլայ որ ելած բարձր աստիճանին համար հպարտանայ ։ Հին ատեններուան մեծ սուրբերն ալ յանցանքներ չգործեցի՞ն ։ Դարձեալ պէտք է Աստուծոյ խօսքին միայն միտ դնել, առանց նայելու որ խօսողն ով կամ ինչպիսի մարդ է․ ինչու որ անկից աւելի անիրաւ բան մը չկայ, որ մէկը՝ վարդապետողին յանցանքի մէջ իյնալուն համար՝ վարդապետութիւնն անարգէ[15] ։ — Բայց աս պատճառները Լուտերը մխիթարելու բաւական չէին ըլլար ։

զի փրփրամաքիանն ու փնըռանքիանը փաթաթէ ու քիչ մը զուարթանայ„ ։ Նոյն տեղը, 613 ։ Ուրիշ տեղ մը Լուտեր իր տրտմութեան վրայ խօսելով՝ կը գրէ․ "Աստուծոյ բարկութիւնը կը կրեմ, որովհետեւ իրեն դէմ մեղանչեցի„ ։ Դոպլհոֆ նոյն տեղը, 614 ։ — Օտէն (Հատ․ Բ․ Գլ․ ԺԷ․ 222․) աս նեղութիւն վրայ հետեւեալ դէպքը կը պատմէ ։ Գիշեր մը, կ'ըսէ, երբ որ երկինքը պայծառ էր եւ աստղները տատանիկ կը փայլէին, Լուտեր կնոջը հետ պարտէզը պտըտած ատեն, կինն իրեն ըսաւ․ Տե՛ս, աստղները ինչպէս լուսաւոր են ։ Իսկ Լուտեր աչուըները վեր վերցընելով ու հեծելով ըսաւ․ Ո՛հ, կենդանի լոյսը մեզի համար չի ծագիր ։ — Ինչո՞ւ․ արդեօք երկնից արքայութենէն մերժուինք պիտի ։ — Լուտեր նորէն հեծելով պատասխան տուաւ թէ Գուցէ կարգերնիս թող տալերնուս պատժին համար ։ — Ուրեմն պէտք է որ նորէն ե՛տ դառնանք ։ — Ա՛լ ժամանակն անցաւ․ կառքը չափէն աւելի ցեխին մէջ թաթխուած է ։

15․ Ա․ Գարիւէի, Գիրք Բ․ Համ․ 58 ։



# ԳԼՈՒԽ Ը.

## Լուտեր երեւելի թշնամիները ողոքելու կը ջանայ

Անգղիոյ թագաւորին ըղըտօրընական նամակ մը կը գրէ, որուն՝ թագաւորը սաստկութեամբ պատասխան կու տայ։ Գէորգ Սաքսոնիոյ դուքսին ալ խոնարհական նամակ մը կը գրէ։ Իշխանին գեղեցիկ պատասխանը։ Լութեր Երազմոսն ալ հետը հաշտեցընելու կը ջանայ. բայց աշխատանքը պարապ կ'երթայ։ Անկէ խոցուած մղուելով՝ Լութեր յառաջուընէ աւելի սաստկութեամբ կռուելու կը սկսի։

## 1525 — 1527

ԼՈՒՏԵՐ *տեսնելով որ իր սաստիկ կատաղութիւնը ամէն ատեն իր Աւետարանին տարածուելուն չ'օգներ, աս ատենները՝ իր սովորութեան հակառակ՝ սկսաւ խստութեանը չափ դնել ու կեղծաւորիլ, եւ գլխաւորաբար իր զօրաւոր ու երեւելի թշնամիներուն սիրտն առնելու ետեւէ կ'իյնալ։ Ամէն բանէն յառաջ ջանաց որ Անգղիայի թագաւորին բարկութիւնն իջեցընէ, զորն որ, ինչպէս տեսանք, քանի մը տարի յառաջ սաստիկ անարգած ու նախատած էր։ Կը պատմուի որ քանի մը Անգղիացիք զինքը աս բանիս յորդորած ըլլան, ըսելով որ թագաւորը հիմա քու վարդապետութեանցդ շատ միտած է*[1]*։ Արդ Լուտեր ելաւ նոյն թագաւորին աս խոնարհական կամ շողոքորթական նամակը գրեց (1525ին, Սեպտեմ. 1ին)։ "Թէպէտ եւ պէտք է որ քեզի թուղթ գրելէն վախնայի, վեհափառ թագաւոր, որովհետեւ գիտեմ որ զքեզ շատ բարկացուցի ու թշնամանեցի գրքով մը՝ որն որ չէ թէ իմս, հապա քեզի թշնամի ըլլողներուն գրգռելովը՝ շուտ մը ու առանց միտ դնելու գրեցի*[2]*. բայց քու ամէնէն գրով ու խօսքով գովուած թագաւորական գթութիւնդ զիս համարձակեցուց որ գրեմ....։ Անկէց զատ՝ ան ալ զիս յորդորեց գրելու, որ շատ հաւատարիմ մարդիկներ վկայեցին թէ ան քու անուամբդ ինծի դէմ հրատարակուած գիրքը՝ քու գործքդ չէ, ինչպէս որ կը ձեւացընէին նենգաւոր մարդիկ... մանաւանդ ան հրէշն ու մար-*

1. Կուսաստ Քիւցեր՝ Լուտերին աս թուղթը գրելուն պատճառը այսպէս կը պատմէ. "Հեներիկոս՝ քահանայապետին հետ աւրուած էր, եւ կ'երեւար որ նորոգութեան խորհուրդներու մէջ ըլլայ։ Իր՝ Լուտերականներուն կողմն անցնիլը՝ բնականապէս Գերմանական նորոգութեան շատ օգուտ կրնար ընել. անոր համար Լուտեր՝ գլխաւորաբար Դանիայի թագաւորին խօսքին անսալով՝ որոշեց որ ... թագաւորին իրենց կողմն անցնելու արգելք եղած բաները՝ ձեռքէն եկածին չափ վերցընէ,,։ Գր. ԺԸ. 376։ Նոյն բանը Լուտեր ալ կը յիշատակէ. Տես Գործս Լութ. Գերմ. Հատ. Գ. 363. Բ։

2. Աս խօսքերը՝ Ս. Գրքին Թ. Գլխոյն 22. Ծանօթ. սկիզբները գրուած Լուտերին խօսքերուն հետ համեմատելու է։

դիրքներուն եւ Աստուծոյ ատեանին՝ Եբորակի (Եորկի) կարդինալը՝ թագաւորութեանդ ժամանախառն ու ապականութիւնը: Այնպէս որ սաստիկ ամօթէս չեմ համարձակիր աչուըներս քեզի վերցընելու, որ ես անարգ ու անպիտան մարդս, մանաւանդ թէ որդ իսկ, ան ժանտ մարդիկներէն գրգռուելով, թեթեւութեամբ՝ քեզի պէս մեծ թագաւորի դէմ ելայ....: Դարձեալ ան ալ գիս շատ յորդորեց աս թուղթը գրելու, թէպէտ եւ անարգ ու արհամարհ ըլլամ, որ լսեցի թէ դուն հիմա Աւետարանին կողմը միտեալու սկսեր ես եւ ան անպիտան ու չար մարդիկները կ'ատես: Աս լուրը իմ սրտիս աւետում կամ ուրախութեան լուր մ'եղաւ. անոր համար աս թղթովս ամենայն կարելի խոնարհութեամբ քու ոտուըներդ ինկած՝ Քրիստոսի չարչարանաց, խաչին ու փառացը համար կ'աղաչեմ ու կը պաղատիմ որ շնորհք ընես՝ քեզի դէմ ըրածներս բոլոր ներես, ինչպէս որ Քրիստոս ալ աղաչեց ու հրամայեց որ իրարու յանցանքը ներենք: Եւ թէ որ քու վեհափառ տէրութիւնդ կը հաճի որ հրապարակական գրուածքով մը իմ առաջին գիրքս ետ կանչեմ ու քու անուանդ պատիւ տամ, շնորհք ըրէ կամքդ ու հաճոյքդ ինծի իմացուր, եւ ես կը փութամ շատ մը կատարելու. վասն զի թէպէտ քու վեհափառութեանդ հետ բաղդատուելու ըլլամ նէ՝ ես անարգ ու ոչինչ մարդ մըն եմ, ի վերայ այսր ամենայնի Աւետարանին տարածուելուն եւ Աստուծոյ փառացը համար շատ օգտակար բան կ'ըլլայ, թէ որ կարենամ Անգղիոյ թագաւորին՝ Աւետարանին քարոզութեանցը վրայ գրել:

«Աստուած տայ որ ինչպէս սկսար նէ՝ այնպէս յառաջ երթաս, եւ հոգւով լեցուելով՝ Աւետարանին թէ օգնական ըլլաս թէ հովանաւոր, եւ թող չտաս որ ոչ ականջներդ եւ ոչ սիրտդ մտա ունենան ան թունաւոր ու չարախօս քաղցրաբան շողոքորթները՝ որոնք Լութերը հերետիկոս կանչելէն ուրիշ բան չեն գիտեր: Քու մեծափառ տէրութիւնդ ինք իր մտքին մէջ մտածէ, որ ինչ գէշ բան կրնամ ես վարդապետել, որովհետեւ ուրիշ բան չեմ վարդապետեր բայց եթէ աս՝ որ մեզի համար չարչարանք քաշող, մեռնող ու յարութիւն առնող Յիսուսի Քրիստոսի որդւոյն Աստուծոյ հաւատալով՝ պէտք է որ երանութեան հասնինք, ինչպէս որ սուրբ Աւետարաններն ու Առաքելոց գրուածները յայտնապէս կը ցուցընեն: Աս է իմ վարդապետութեանս գլխաւոր մասն ու հիմը, որուն վրայ ետքը կը հիմնեմ ու կը վարդապետեմ ընկերաց սէրը, քաղաքական մեծերուն հնազանդութիւն, մեղանչական մարմինը մահացուցանել, ինչպէս որ քրիստոնէական վարդապետութիւնն ալ կը պա-

տուիրէ։ Այս վարդապետութիւններուն մէջ ինչ գէշ բան կայ։ Թող յառաջագոյն քննեն, լսեն ու ետքը դատեն։ Ինչո՞ւ զիս չլսած ու չյաղթած՝ կը դատապարտեն։

"Իսկ թէ որ եպիսկոպոսներուն չարաչար գործքերուն ու բռնաւորութեան դէմ կ'ելլեմ նէ, որոնք վերը դրուած քրիստոնէական վարդապետութիւններէն տարբեր բաներ մանաւանդ թէ անոնց հակառակը կը վարդապետեն, եւ միանգամայն տասանորդներու, մուտքերու, շքեղութիւններու, մարմնոյ ցանկութիւններու, եւ նոյն իսկ թագաւորութիւններու, իշխանութիւններու եւ բոլոր աշխարհքիս հարստութիւններուն կը բաղձան, զարմանալի բան մը չէ, որովհետեւ նոյն իսկ ռամիկն ալ աս բաներս կը տեսնէ ու կը դատապարտէ. մանաւանդ թէ իրենք ալ խոստովանելու կը ստիպուին։ Թէ որ ատելութենէն ու պատժէն ազատ ըլլալ կ'ուզեն նէ՝ ինչո՞ւ իրենք զիրենք չեն շիտկեր եւ ուղիղ չեն վարդապետեր։

"Անտարակոյս քու մեծափառ տէրութիւնդ կը տեսնէ որ Գերմանիայի մէջ որչափ մեծ իշխաններ, որչափ հասարակութիւններ ու քաղաքներ, եւ որչափ իմաստուն մարդիկներ ինծի հետ միաբան են, եւ Աստուծոյ շնորհքովը անարատ կը պահեն ան աւետարանական վարդապետութիւնը՝ որն որ Քրիստոսի մասնաւոր խնամքովը իմ ձեռքս մաքրուեցաւ։ Անոնց թուին մէջ երանի՜ թէ Քրիստոս զքեզ ալ դնէ եւ ան հոգւոց բռնաւորներէն բաժնէ։

"Բայց ինչ զարմանալու բան է որ կայսրը եւ ուրիշ քանի մը իշխաններ ինծի դէմ ելած են։ Սաղմոսին մէջ գրուած չէ՞ որ "Ընդէ՞ր խռովեցան հեթանոսք եւ ժողովուրդք խորհեցան "ի սնոտիս։ Յանդիման եղեն թագաւորք երկրի եւ իշխանք ժո- "ղովեցան ի միասին վասն (հակառակ) Տեառն եւ վասն Օծելոյ "նորա,,։ Անոր համար մանաւանդ զարմանալու է թէ որ իշխան մը կամ թագաւոր մը Աւետարանին կողմը մտնելու ըլլայ։ Արդ ես մեծապէս կը բաղձամ որ աս զարմանալի բանը քու վրադ կատարուի։ Եւ Աստուած՝ որուն առջեւը եւ որուն ուզելովը աս թուղթս կը գրեմ, իմ խօսքերուս գործակից ըլլայ, որ Անգղիացւոց թագաւորդ շուտ մը Քրիստոսի կատարեալ աշակերտ, Աւետարանի խոստովանող ու Լուտերի բարեգութ տէր ըլլաս. ամէն։ Թէ որ քու մեծափառ տէրութիւնդ կը հաճի նէ՝ գթալիր ու քաղցր պատասխանւոյ մը կը սպասեմ,,[3]։

Աս թղթին պատասխանը չառած՝ տարւոյն վերջը՝ Գէորգ Սաքսոնիայի դքսին ալ, զորն որ շատ անգամ նախատած էր, շողոքորթական՝ բայց միանգամայն յանձնապաստանութեամբ

3. Գործք Լուտ. լատ. Հատ. Բ. 533. Բ. գերմ. Հատ. Գ. 360։

խառն թուղթ մը գրեց[4], որուն գլխաւոր մասերն ասոնք են։ "Գիտենք որ Ս. Գրոց ըսածին համեմատ՝ Աստուած մարդիկներուն հետ ինկզըան խստութեամբ ու սաստկութեամբ կը վարուի. իսկ ետքը՝ հօր պէս ու քաղցրութեամբ։... Նոյնպէս ես ալ շատերուն ու քու բարձրութեանդ հետ վարուեցայ, ու խիստ եւ սաստիկ գրուածներով ձեզի դէմ ելայ։ Բայց միանգամայն շատ ալ աղօթք ըրի. որ Աստուած զքեզ ինծի հետ հաշտեցընէ, եւ շատ աղէկ ու մխիթարական գրուածքներ ալ դուրս հանեցի, որոնցմէ ամէն մարդ կրնայ իմանալ որ ես ամենեւին մէկու մը չարիքը չեմ ուզեր. հապա ամենուն ալ բարիք ընել կ'ուզեմ։ Բայց տեսնելով որ դուն բարկութենէ զիջանիլ չես ուզեր, հապա միօրինակ նոյնպէս կը մնաս, մտքս դրի որ մէյ մ'ալ խոնարհութեամբ ու բարեկամութեամբ աղաչեմ, աս գրովս՝ որն որ գուցէ վերջինը կ'ըլլայ, որովհետեւ ինծի այնպէս կ'երեւայ որ Աստուած մէջերնէս շատերը պիտի կանչէ, եւ ասկից կը կասկածեմ որ գուցէ Գէորգ դուքսն ու Լուտեր ալ անոնց մէջն ըլլան։ Ասոնք քու բարձրութեանդ գրելուս պատճառն ան է որ... պաշտօնիս պարտականութիւնը կատարեմ, որն որ զիս քու հոգւոյդ փրկութիւնը հոգալու կը ստիպէ. որովհետեւ ինքը զինքս պարտաւոր կը ճանչնամ աս բանը նաեւ թշնամիներուս ալ ընելու։ Ուստի թէ խրատներուս հետեւիս թէ չհետեւիս, քիչ մը ետքը պիտ'որ իմանաս որ ես նաեւ խստութեամբ գրած ատենս ալ՝ աւելի քու օգուտդ կ'ուզէի քան թէ զքեզ գովողներն ու շողոքորթողները։

"Ասոր համար եկած՝ սրտիւ քու ոտուըներդ կ'իյնամ, ու ամենայն խոնարհութեամբ կ'աղաչեմ որ մինչեւ հիմա բռնած թշնամութեան ճամբադ թողուս, եւ իմ վարդապետութիւնս չհալածես. չէ թէ անոր համար որ կը կարծեմ թէ քու հալածելովդ՝ իմ վարդապետութեանս մեծ վնաս մը կը հասնի,... ինչու որ արդէն շատ աւելի մեծ թշնամի մը ունիմ, այս ինքն սատանան իր բոլոր հրեշտակներովը, եւ Աստուած մինչեւ հիմա ինծի... սիրտ տուաւ որ իր առջեւը հաստատուն կեցայ։ Եւ թէ որ իմ շահս խնդրելու ըլլամ նէ, ինծի սաստիկ հալածուելէն աւելի աղէկ բան մը չիկրնար ըլլալ. որովհետեւ մինչեւ հիմա հալածանքներուն ինչչափ օգտակար եղած ըլլալը՝ չեմ կըրնար խօսքով բացատրել, այնպէս որ պատշաճ է որ թշնամինե-

4. Կուստաւ Ֆրյեր (Գլ. ԺԷ. 347.) կը զրուցէ թէ Լուտերին աս թուղթը գրելուն պատճառն ան էր որ Փիլիպպոս Հեսսէնի աշխարհատէր կոմսը՝ որն որ Գէորգ դքսին փեսան էր, ու հոգւով եւ մարմնով Լուտերի վարդապետութիւններուն ետեւէն կ'երթար, բաղձալով որ իր աներն ալ իրենց կողմը ձգէ, Լուտերին յանձնեց որ անոր աս թուղթը գրէ. եւ Լուտեր չկրնալով դէմ դնել՝ յանձն առաւ։

բուս շնորհակալ ըլլամ։ Եւ թէ որ քու բարձրութեանդ դժբախտութիւնն ինծի հաճելի ըլլար, պէտք էր որ դքեզ ատելի գրգռէի եւ բաղձայի որ զիս ատելի համարիս։ Բայց մինչեւ հիմա եղածը բաւական է... հիմա ուրիշ տեսակ վարուելու ժամանակ է։... Իմ անձիս նուաստութեան մի նայիր. ինչու որ Աստուած երբեմն իշու մը ձեռքով ալ խօսեցաւ։... Բայց ոչ դուն եւ ոչ ալ ուրիշ մէկը իմ վարդապետութիւնս կրնայք խափանել կամ արգելել. յառաջ պիտի երթայ եւ պէտք է որ երթայ, ինչպէս որ մինչեւ հիմա գնաց. ինչու որ իմ վարդապետութիւնս չէ։ Սակայն շատ կը ցաւիմ տեսնելով որ ինչպէս դուն զՔրիստոս՝ զգլուխ անկեան՝ անագորոյնութեամբ կը հալածես, դուն որ Աստուծմէ այնչափ առաւելութիւններով ու-րիշ ձիրքերով զարդարուած ես։ Աստուած տայ որ աս թուղթս աղէկ տեղն մը ձեռքդ հասնի ու գրութիւնս առջեւդ շնորհք գտնէ. ինչու որ եթէ (Աստուած չընէ) իմ խոնարհական ու սրտէ ելած ազդարարութիւնս չես ընդունիր նէ՝ շատ գէշ կ՚ըլլայ։

"Բայց ես Աստուծոյ ու քու բարձրութեանդ առջեւ խիղճս ասով կը հանդարտեցընեմ որ պարտքս կատարեցի. եւ ասկէ վերջն ալ քեզի ամէն հաճոյ եղած բանը կատարելու կամ զիջանելու պատրաստ եմ, բաց ի վարդապետութենէս՝ որն որ ըստ խղճի մտաց չեմ կրնար թողուլ։ Ասկից զատ՝ կ՚աղաչեմ ու թողութիւն եւ շնորհք կը խնդրեմ, եւ կը պաղատիմ որ քու բարձրութեանդ դէմ գրով կամ խօսքով ըրածներս ներես։ Ես ալ քու բարձրութեանդ ինծի դէմ ըրածներուն սրտանց թողութիւն կու տամ, եւ կ՚ուզեմ Յիսուսի Քրիստոսի աղաչել (ստոյգ ալ գիտեմ որ խնդրածս կ՚ընդունիմ) որ իր խօսքին դէմ ըրածներուդ ներումն շնորհէ։ Միայն աս մէկ բանին մէջ զիջում ըրէ, ու ամէն բան կարգի կը մտնէ. այս ինքն թող տուր որ իմ աշխարհք բերած՝ Քրիստոսի խօսքը ազատ ըլլայ։ Թէ որ աս բանս ընելու ըլլաս, ստուգիւ բոլոր հրեշտակները երկինքը քու բարձրութեանդ վրայ կ՚ուրախանան։ Աս ալ պէտք է որ գիտնաս թէ մինչեւ հիմա քեզի համար եռանդեամբ աղօթք կ՚ընէի եւ հիմա ալ կ՚ընեմ, եւ աս թղթովս կ՚ուզեմ առջեւն առնել որ չստիպուիմ քեզի դէմ աղօթք ընելու. ինչու որ եթէ աս բանս ընելու ըլլամ նէ... ստուգիւ անկէ ետեւ յաջողութիւն չես գտներ. որովհետեւ գիտենք որ Քրիստոս մեզի խոստացածը կը կատարէ[5]։ Եւ դուցէ փորձով կ՚իմանաս

5. Լութեր անշուշտ իր աւետարանէն սորվելով՝ աս սպառնալիքը սկսաւ ետքը ի գործ դնել, որն որ ինք քանի մը տարի վերջը՝ նոյն Գէորգ դքսին դէմ գրած մէկ գրքին մէջ այսպէս կը խոստովանի։ "Չեմ

որ Լուտերին դէմ կռուիլը՝ Մունցերին դէմ կռուելուն հետ նոյն չէ։ Բայց ես կը բաղձամ որ ասոր փորձը չտեսնես։ Ես իմ աղօթքս սատանայէն զօրաւոր կը սեպեմ. եւ թէ որ աս ասանկ չըլլար նէ՝ Լուտերին բանը շատոնց բուսած էր. Թէպէտ եւ ուրիշները Աստուծոյ աս մեծ հրաշքը իմ վրաս չեն տեսներ։

“Ես ամէն բաները մեծ խոնարհութեամբ ու հաւատարմութեամբ գրեցի (եւ Աստուած տայ որ վերջին անգամը չըլլայ)։ Երանի՛ թէ քու բարձրութիւնդ քրիստոնէի վայել կերպով մը աւելի կենդանի գործքով քան թէ մեռեալ նշանագիրներով ինծի պատասխան տայ,,[6]։

Լուտեր աս թուղթը Դեկտեմբերի 22ին գրեց, որն որ Գէորգ դուքսը նոյն ամսոյն 25ին ընդունելով՝ 28ին աս պատասխանը տուաւ։ “Թուղթդ Քրիստոսի ծննդեան օրն ընդունեցանք, եւ իրմէ քեզի համար շնորհք ու խաղաղութիւն կը խնդրենք, ինչպէս որ դուն ալ մեզի համար խնդրած էիր. ասկէց զատ՝ կը խնդրենք իրմէ որ ինքը զինքդ ճանչնաս։ — Ամէն բանէն յառաջ՝ Աստուծոյ փրկչին առջեւը կը վկայենք որ... աս թուղթը ատելութեան հոգւով մը չենք գրեր, հապա բաղձալով որ ինքը զինքդ քեզի ճանչցընենք. եւ ասոր համար բոլորովին առանց շողոքորթութեան կը գրենք։ Եւ որովհետեւ դուն մեր վրայ կասկած ունիս որ չորս կողմերնիս շողոքորթներով լեցուն է, քեզի աս նշանակը կու տանք. թէ որ աս գրուածներնուս մէջ գտնես շողոքորթելու ըլլանք նէ՝ ան ատեն համարձակ ըսէ որ վարձուածներնուս պէս ալ կը վարուինք[7]. իսկ թէ որ չենք շողոքորթեր նէ՝ ան ատեն շողոքորթները ան տեղերը փնտռէ, ուր որ գտնես՝ մարգարէ, Դանիէլ, Գերմանիայի առաքեալ ու աւետարանիչ կ'անուանեն։ Երկրորդ աս ալ կը վկայենք որ աշխարհական մարդ ըլլալով՝ քեզի հետ Ս. Գրոց վրայ

կրնար աղօթք ընել, կ'ըսէ, առանց միանգամայն անէծք կարդալու։ Երբ որ Սուրբ եղիցի անուն քո ըսելու ըլլամ, պէտք է որ միանգամայն ըսեմ. Անիծեալ, դատապարտեալ, նախատեալ ըլլայ պապականներուն եւ բոլոր քու անունդ հայհոյողներուն անունը։ Երբ որ Եկեսցէ արքայութիւն քո ըսելու ըլլամ, պէտք է որ միանգամայն ըսեմ. Անիծեալ, դատապարտեալ ըլլայ եւ կործանի պապականութիւնը եւ երկրիս ամէն ան թագաւորութիւններն ու տէրութիւնները, որոնք քու թագաւորութեանդ դէմ են։ Երբ որ Եղիցին կամք քո ըսելու ըլլամ, պէտք է որ միանգամայն ըսեմ. Անիծեալ, դատապարտեալ, ամօթապարտեալ ըլլան եւ ոչընչանան պապականներուն ու քու կամացդ ու խորհրդոցդ դէմ ըլլողներուն մտածմունքներն ու խորհուրդները։ Ստուգիւ ամէն օր անդադար ասանկ կ'աղօթեմ թէ՛ բերնով թէ՛ մտքով, Քրիստոսի ամէն հաւատացեալներն ալ ինծի հետ ասանկ կ'աղօթեն, եւ աղէկ ալ գիտեմ որ աս աղօթքներս կը լսուին,,։ Ցըեղղոյէ մարգարէանէն դէմ ըսուած քարոզին մէջ. տես — Ռէֆէնք, Գիրք Բ. Գլ. Ժ. 448, 449։

6. Գործք Լուտ. գերմ. Հատ. Գ. 208. լատ. Հատ. Բ. 531. Բ։

7. Բնագրին մէջ՝ Unser Wein schmeckt nach dem Faß; գինինիս՝ տակառին համն ունի, կ'ըսէ։ Գործք Լուտ. գերմ. Հատ. Գ. 210.

վիճաբանութիւն չենք ուզեր ընել։ Եւ ինչպէս որ երբեմն Դաւիթ՝ Գողիաթին հետ մենամարտութիւն ընելու ատեն՝ Սաւուղին զրահներն ու զէնքերը՝ որոնց որ վարժած չէր, մէկդի ձգեց եւ իր սովորական քարկը, պարսատիկն ու դաշտին վրայ եղած քարերն առաւ, որոնք որ գործածելու սորված էր, ու անոնցմով Գողիաթը յաղթեց. այսպէս ալ մենք աս գրուածքիս մէջ՝ միայն ան կ'ուզենք գործածել որն որ սորված ենք, եւ աս ալ իրաւացի ու քրիստոնէութեան պաշտպան է,,։ Նամակին աս կերպով սկսելէն վերջը՝ Լուտերին Թղթին ամէն մէկ մասերուն պատասխան կու տայ։ "Մեզի հետ խստութեամբ ու գոռոզութեամբ վարուիլդ, կ'ըսէ, աստուածային ու աւետարանական օրինաց դէմ ըլլալը՝ յայտնի է։... Զմեզ զուր տեղ... բռնաւոր եւ Աւետարանին թշնամին կանչեցիր եւ ուրիշ նախատական անուններ գրիր վրանիս... որոնք որ ստուգիւ Աւետարանին եւ Ս. Գրոց ուրիշ մասերուն մէջ չէիր գտած։... Ի՞նչ հարկաւորութիւն ունէիր զմեզ ստախօս անուանելու, որ բերներնէս սուտ մը լսած չունէիր։... Ստուգիւ քեզմէ այսպէս նախատական խօսք լսելը՝ մեզի ծանր ու խիստ է... բայց թէ որ Աստուծոյ աղաչեցիր որ մեզի խաղաղասէր ու քաղցր հոգի տայ, որ քեզի հետ սիրով վարուինք, գիտնաս որ շատոնց աս աղօթքդ լսուած է։

"Բայց պարապ տեղ կը յուսաս որ հետդ ներողամտութեամբ վարուինք. ինչու որ դուն նոյն իսկ կայսրը՝ որուն որ հաւատարմութեան երդում ըրած ենք, սաստիկ կը նախատես ու կը թշնամանես, եւ իր հրամանները ոտքի տակ կ'առնես։ Անկից զատ՝ Վիդդենպերկ քաղաքը ապաստանարան մը դարձուցիր, ուր որ կրօնաւորներն ու կուսանքները՝ եկեղեցիներնիս ու վանքերնիս կողոպտելէն ետեւ՝ կը փախչին կը պատսպարին, եւ դուն անանկ տաճարակողոպուտ սրբապիղծ մարդիկը կ'ընդունիս ու քովդ կը պահես. այնպէս որ Վիդդենպերկ քաղաքը՝ բոլոր մեր երկրին կարգուբացներուն ապաւինութեան տեղն եղած է,,[8]։

Իշխանը հոստեղը կը ցուցնէ թէ ինչպէս Լուտերին իսկըզբան դուրս հանած գրքերը ըստ մասին հաճութեամբ կը կարդար, թէ ինչպէս Լիփսիայի վիճաբանութիւնն ընել տուաւ, յուսալով որ օգուտ մը կ'ընէ, եւ թէ ինչպէս իրեն բարիքը սրտանց ուզելով՝ ամէն միջոցն ի գործ դրաւ զինքը ճամբայ բերելու, հետը առանձին խօսեցաւ, եղբօր պէս խրատ տուաւ. բայց երբ որ, կ'ըսէ, հաստատուն իմացայ որ մոլորութիւններուդ մէջ յամառած ես, ալ չէի կրնար հետդ առջինին պէս վարուիլ. ինչու որ պզտիկութենէ այնպէս կրթուած եմ որ հնա-

8. Նոյն տեղը, 210, 211

զանդութեան դէմ ընողներն ու Քրիստոսի եկեղեցիէն բաժնուողները՝ Հերետիկոսի ու Հերձուածողի տեղ դնեմ: Ասոնք լսելէն ետեւ՝ խօսքն այսպէս յառաջ կը տանի. "Դարձեալ աս ալ կ՚ըսենք որ քու Աւետարանդ Հոգերնիս չէ. ինչու որ քրիստոնէական կրօնքին գլխաւորներէն դատապարտուեցաւ. եւ անոր համար ալ մեծ փութով զգուշացանք որ մեր հպատակները չընդունին: Եւ աս զգուշութիւնն ընելու՝ քու Աւետարանէդ ծագած չարաչար պտուղները ստիպեցին զմեզ: Որովհետեւ ո՛չ դուն եւ ո՛չ ալ ուրիշ մէկը կրնայք ուրանալ որ քու վարդապետութենէդ՝ Աստուծոյ, սուրբ Հաղորդութեան խորհրդին, ամենասուրբ Աստուածածնին եւ ամէն սրբոց դէմ հայհոյութիւններ եւ նախատինքներ կը բղխին: Քու վարդապետութեամբդ եւ քու աշակերտներուդ վարդապետութեամբը՝ եկեղեցւոյն իսկզբանէ դատապարտած ամէն հերետիկոսութիւնները նորոգուեցան, եւ բոլոր աստուածային պաշտօններն ան աստիճանի աղաւաղեցան ու տակն ու վրայ եղան, որ եկեղեցւոյ սկիզբէն վեր անանկ բան եղած չունէր: Եւ իրօք ալ ե՞րբ արդեօք այնչափ սրբապղծութիւններ եւ Աստուծոյ նուիրուած կուսանքներու պղծութիւններ եղած են, որչափ հիմա՝ քու Աւետարանդ քարոզուելու սկսելէն ետեւ կ՚ըլլան: Ե՞րբ իշխաններու դէմ այնչափ ապստամբութիւններ, ե՞րբ այնչափ սրբազան տեղերու յափշտակութիւններ, ե՞րբ աւելի գողութիւն ու աւազակութիւն եղաւ. Ե՞րբ Վիդդենպերկի մէջ աւելի կարգաւորաց կրօնաւորներ ու կուսանքներ գտնուեցան. Ե՞րբ այնչափ կանայք իրենց էրիկներէն բաժնուելով՝ ուրիշներու հետ կարգուեցան, որչափ հիմա քու Աւետարանդ քարոզուելու ատեն: Ե՞րբ ամուսնական հաւատարմութեան դէմ այնչափ պղծութիւններ պատահած էին, որչափ կը պատահին ան ժամանակէն ետեւ՝ որ դուն գրեցիր թէ Երբ որ կին մը իր էրկանէն զաւակ չ՚ունենար, պէտք է որ ուրիշ մարդու մ՚երթայ, եւ անկից ունեցած զաւակը պէտք է որ բուն իր էրիկը պահպանէ. նոյնպէս ալ էրիկը պէտք է որ վարուի [9]: Արդ աս ամէն պտուղները ան քու

9. Ստուգիւ բոլոր աս ու ասկից աւելի պիղծ բաները յայտնի բառերով եկեղեցւոյ մէջ ամէն տեսակ մարդիկներու առջեւ ռամկօրէն լեզուաւ խօսած է Լուտեր, Վարդպուրկի առանձնութենէն դառնալէն ետեւ. որոնք իր գործոցը հաւաքումներուն մէջ մինչեւ հիմա կը կենան: Շատ տեղ Լուտեր անանկ պիղծ ու անամօթ կերպով կը խօսի, որ շատ հեղինակներ վկայութիւն բերելու ստիպուած ատեննին չեն կրնար ռամկական լեզուներով (գաղղիերէն, գերմաներէն...) դնել, հապա լատիներէնը կը դնեն. շատ հեղ ալ նոյն իսկ լատիներէնին մէջէն կտորներ թող կու տան, որոնք որ արտաքոյ կարգի պիղծ ու անպիտան բաներ ըլլալուն համար՝ եւ ոչ լատիներէնը դնելու կը համարձակին: Նոյնպիսի պիղծ խօսքեր շատ հեղ Լուտերի ընտանեկան նամակներուն մէջ ալ կը գտնուին: Բայց աս անամօթ խօսքերուն բուն

Աւետարանէդ ծագեցան, որն որ դուն գրուածին տակէն դուրս հանեցիր։... Բայց աւելի լաւագոյն կ՚ըլլար որ քու Աւետարանդ միշտ ծածկուած մնար։ Եւ թէ որ առանկ ուրիշ Աւետարան մ՚ալ հանելու ըլլաս նէ, տուգիւ գեղացի մը չիմնար։ Թէ որ Քրիստոս առանկ Աւետարան ուզած ըլլար նէ՝ Խաղաղութիւնը հետեւընիդ ըլլայ՝ չէր ըսեր. եւ ոչ ալ Պետրոս ու Պօղոս առաքեալները կ՚ըսէին որ իշխաններուն ու մեծերուն հնազանդելու է։ Ա՛ս քու Աւետարանիդ պտուղները զմեզ կը սովրեն որ քու Աւետարանէդ ու վարդապետութենէդ զզուինք ու գարշինք. իսկ բուն Քրիստոսի Աւետարանը, թէ որ Աստուած կ՚ուզէ նէ, հոգւով եւ մարմնով, ինչքովիս ու պատուովիս կ՚ուզենք պաշտպանել, եւ կը խնդրենք որ իր շնորհքը աս բանիս մէջ մեզի օգնական ըլլայ։

«Մ՚եզի մահը կը յիշատակես, որն որ առջէն գիտենք թէ մեռնելու պիտի գայ։ Բայց վիճակնիս ինչ կ՚ըլլար, թէ որ քու Աւետարանդ ընդունէինք եւ այնպէս մեռնէինք։ Աստուած իրաւունք չէ՞ր ըսեր. Ուսկի՞ց կու գայ կոր ասիկա ան Նոր Աւետարանով՝ որն որ այնչափ գէշ ու վնասակար պտուղներ բերաւ. ես չըսի՞ որ ծառը պտղէն կը ճանչցուի։ Եւ թէ որ պատասխան տալու ըլլայինք որ Լուտեր ըսաւ թէ աս ան Աւետարանն է՝ որն որ գրուածին տակ ծածկուած էր. Աստուած մեզի չէ՞ր ըսեր մի. Բայց Քրիստոսի եկեղեցին քեզի ուրիշ տեսակ կը զրուցէր..., ինչո՞ւ ուրեմն Լուտերին հաւատացիր ու եկեղեցւոյ չհաւատացիր։ Արդ՝ գրուածին տակէն հանած Աւետարանդ քեզի պահէ. մենք Քրիստոսի Աւետարանին կ՚ուզենք հաւատարիմ մնալ, որն որ կաթողիկէ եկեղեցին ընդունած է ու մինչեւ հիմա հաստատուն կը պահէ. եւ Աստուած մեզի օգնական ըլլայ որ աս բանս կարենանք կատարել»[10]։

Տանք գրելէն ետեւ՝ հօր պէս իրեն խրատ կու տայ որ բռնած չար ճամբէն դառնայ ու չարաչար ընթացքը փոխէ, եւ ետքը նամակն այսպէս կը լմնցընէ։ «Թէ որ խրատներնուս կը հետեւիս ու հաստատուն կենալով միշտ կը յարատեւես, զքեզ ապահով կ՚ընենք որ Աստուծմէ մեծ վարձք կ՚ընդունիս ու յաւիտենական կենաց արժանի կ՚ըլլաս։ Նոյնպէս մեր բազմագութ տիրոջ՝ կայսեր առջեւը ձեռքերնէս եկածին չափ կը ջա-

դանձարանը՝ խօսք անդանոյ ըսուած հաւաքումն է, որուն վրայ յառաջաբանութեան մէջ խօսած ենք։ Ան աստիճանի սրբութեան հասած էր աս կրօնի Նորոգիչը, որ առանկ պիղծութիւններ կը սորվեցընէր. ան աստիճանի սրբութեան հասած էին նաեւ իր ձեռքը Նորոգեալները, որ ժամերով իրենց եկեղեցիներուն մէջ կեցած՝ մասդրութեամբ աս պիղծ խօսքերը մտիկ կ՚ընէին, ու մէջերնին մէկը բերան չէր բանար ու զինքը չէր յանդիմանէր. մանաւանդ թէ աստուածային խօսքի պէս կ՚ընդունէին։

10. Գործք Լուտ. գերմ. Հատ. Գ. 212։

նանք ու կ՚աշխատինք որ շնորհքի ու թողութեան հասնիս . իսկ մեզի դէմ ըրածներուդ համար մի կարծեր ամենեւին որ չարիք մը գայ վրադ, հապա մանաւանդ ամէն բարիք կրնաս յուսալ մեզմէ,,11 ։

Իսկ Անգղիայի թագաւորին պատասխանը՝ որն որ երկրորդ տարին Լուտերին ձեռքը հասաւ, թէպէտ եւ Գէորգ դքսին պատասխանին քով շատ սաստիկ է, բայց ան ալ խոնարհութեամբ մանաւանդ թէ չափաւորութեամբ գրուած է ։ Թագաւորին ընդարձակ թղթին մէջէն միայն քանի մը հատուած կը դնենք հոս ։ "... Ձեր գիտեր որ գրած գրքիս վրայ կ՚ամչնամ ըսածդ՝ սուտ է արդեօք . միայն աս գիտեմ որ բաւական պատճառ ունիս ամչնալու չէ թէ միայն ինծի դէմ գրած գրքիդ, հապա մինչեւ հիմա գրած բոլոր գրքերուդ վրայ . որովհետեւ անոնց մէջ անամօթ մոլորութիւններէ ու անմիտ հերետիկոսութիւններէ ուրիշ բան չկայ ։... Դարձեալ ան ալ չեմ կրնար իմանալ որ ինչպէս կրնայ ճշմարիտ ըլլալ մէկալ գրածդ թէ ինծի թշնամի ըլլողներէն գրգռուելով՝ ինծի դէմ գրած գիրքդ տպել տուիր . որովհետեւ այնպէս կ՚երեւայ որ աւելի քեզի թշնամի ըլլողներէն գրգռուելով տպել տուած ըլլաս, ինչու որ ան գիրքդ այնպէս բան մըն է, որ միայն հեղինակին նախատինք կը բերէ, իսկ իմ գրքիս պատիւ ու մեծարանք կու տայ ։... Եւ թէպէտ դուն այնպէս կը ձեւացընես որ կը կարծես թէ ան իմ անուամբս տպագրուած գիրքը՝ իմս չէ... ի վերայ այսր ամենայնի շատ մարդիկ կը վկայեն որ նոյն գիրքը ես շինած եմ ։ Եւ անոնք՝ որ կ՚ըսեն թէ ես շինած եմ, քու վկայութիւն կոչած մարդիկներէդ աւելի հաւատարիմ են ։ Եւ որչափ որ աւելի ան գիրքը քեզի անհաճոյ է, այնչափ ալ աւելի ուրախութեամբ կը խոստովանիմ որ իմս է ։... Դուն չարախօս բերնովդ կը նախատես մեծարգոյ Եբորակի կարդինալը մեր աւագին խորհրդականն ու Անգղիայի դիւանադպիրը . իսկ ես իր խոհեմութեան վրայ մեծ համարում ունենալով՝ չեմ կարծեր որ ամենեւին բանի տեղ դնէ ան մարդուն նախատինքը, որն որ բոլոր եկե-

11 . Նոյն տեղը, 214 ։ — Ալկ-սան՝ Լուտերին ու Գէորգ դքսին գրած նամակին բոլոր իմաստը դնելէն վերջը՝ դքսին ալ գեղեցիկ ու ճշմարիտ քրիստոնէական սիրով գրուած պատասխանին վրայ բոլոր բոլոր ալ երկու խօսք կը գրէ . "Գէորգ դուքսը, կ՚ըսէ, Լուտերին տուած պատասխանովը՝ անոր դէմ ունեցած ատելութիւնն ու ոխը ցուցուց,, ։ Գիրք Զ . 80 ։ Նոյնպէս Սեքէնտորֆ ալ՝ Լուտերին ու Գէորգ դուքսին գրած թղթին մեծ մասը մեծամեծ գովութիւններով դնելէն վերջը՝ դքսին տուած պատասխանին վրայ վեր ի վերոյ միայն յիշատակութիւն մը կ՚ընէ ըսելով որ "Այնպէս պատասխան մը տուաւ, որմէ յայտնի կ՚երեւայ որ Լուտերին դէմ ունեցած բարկութիւնը դեռ իջած չէր,, ։ Գիրք Բ . Հատ . ԾԳ . 37 . — 39 ։

ղեցին կը նախատէ, Ս. Հայրը կը թշնամանէ, բոլոր աստուածային բաները կը հայհոյէ, Քրիստոսի առաքեալները կ'արհամարհէ, Քրիստոսի ամենասուրբ մայրը կ'անպատուէ, եւ նոյն իսկ զԱստուած՝ իբրեւ եղեռնագործութեանց աղբիւր, պատճառ եւ գրգռիչ կը հայհոյէ։ Եւ աս քու հայհոյութեանցդ զզուելի կոյտը՝ ուրիշ բանէ այնչափ յայտնի չ'երեւար, որչափ ան վնասակար գրքերէն՝ որոնք որ քրիստոնէական ժողովրդեան վնասուն համար գրեցիր, եւ միանգամայն ան չարիքներէն՝ որոնք որ քու հերետիկոսութեամբդ գազան դարձած գեղացիները Գերմանիայի ամէն կողմերը կատաղութեամբ կը գործեն։...

“Որ գրես որ աչուըներդ ինծի վերցընելու կ'ամչնաս, որովհետեւ չարագործ եւ անօրէն մարդիկներէ գրգռուելով՝ ինծի դէմ գրեցիր։ Բայց ես անոր կը զարմանամ որ ինչպէս չես ամըչնար աչուըներդ վեր վերցընելու եւ Աստուծոյ կամ բարեպաշտ մարդու մը երեսը նայելու. որովհետեւ սատանայէն գըրգռուելով՝ ան աստիճանի անպիտանութեան հասար որ կրօնաւոր ու քահանայ ըլլալովդ՝ մարմնական ցանկութեան համար՝ Աստուծոյ նուիրուած կուսի մը հետ կարգուեցար։ Թէ որ աս բանը կուապաշտ Հռոմայեցիներուն մէջ ըրած ըլլայիր նէ՝ կոյսը կենդանի կենդանի կը թաղուէր, իսկ դուն մահուամբդ անամօթութեանդ պատիժը կը կրէիր։... Բայց ամենէն աւելի գէշն ան է որ ամօթէդ գետինն անցնելու տեղ՝ աս անօրէն գործքիդ վրայ կը պարծիս ալ, ու թղթով եւ գրով ուրիշներն ալ քեզի հետեւելու կը յորդորես...։

“Ինծի կը խոստանաս որ եթէ հաճիմ նէ՝ գիրք մը դուրս հանես, որուն մէջ՝ ինծի շատ գովութիւններ տաս եւ առջի գրքովդ ինծի դէմ բոլոր գրածներդ ետ կանչես։ Բայց ես շատ յօժարութեամբ զքեզ աս աշխատութենէն ազատ կ'ընեմ. վասն զի ան աստիճանի հպարտութեան եւ ընդունայնութեան մէջ ինկած չեմ որ քու գրքերուդ մէջ իմ վրաս գրուած գովութիւններուն բաղձամ։ Հապա միայն անոր կը բաղձամ որ մոլորութիւններդ ճանչնաս, ու հերետիկոսութիւններդ ետ կանչելով՝ խելքդ գլուխդ բերես, եւ ճշմարտութեան դառնալով՝ գրով ու գործքով ուղիղ հաւատքդ յայտնես, որով կարենաս զԱստուած պատուել ու փառաւորել...” 12։

12. Առ Բուլէնպերկի, Գլ. ԺԵ. Համ. Գ։ — Ասանկ իմաստուն թագաւոր մը, որն որ ուրիշներուն խելքը գլուխը բերելու համար այնչափ խրատներ կու տայ, իր պալատին մէջ գտնուող օրիորդի մը պատճառաւ նոյն ատենը արդէն եկեղեցիէն բաժնուած էր, ու բոլոր Անգղիային հերետիկոսութեան մէջ իյնալուն պատճառ եղաւ։ Հենրիկոս նոյն օրիորդին հետ կարգուելու ուզելով՝ սկսաւ ըսել թէ առջի ամուսնու-

Նոյն առեններն Լուտեր սկսաւ ետեւէ ըլլալ որ հուշակաւոր Երազմոսն ալ շողոքորթութեամբ ու կեղծաւորութեամբ հետը հաշտեցընէ ու իր կողմը ձգէ ։ Քանի մը տարի յառաջ իրարու հետ անձնիշխանութեան վրայ գրով կռուած էին 13. եւ Լու-

թիւնս անվաւեր է, եւ քիչ մը ետքը բուն կնիկը թող տալով՝ անոր հետ կարգուեցաւ. եւ երբ որ շատ անգամ խրատուելէն ետեւ խելքը գլուխը չքերաւ նէ՝ քահանայապետէն նզովուեցաւ. որուն բարկանալով՝ եկեղեցիէն բաժնուեցաւ. եւ սկսաւ ըսել թէ Անգղիայի մէջ կրօնին գլուխն ես եմ (1533)։ Բայց թէ առաջին կնոջմէն բաժնուելուն պատճառը՝ ամուսնութեան անվաւերութիւնը չէր, հապա իր անսանձ կիրքը, անկից յայտնի է որ երեք տարի վերջը թեթեւ կասկածի մը համար նոր կինը մեռցնել տալով՝ ուրիշի մը հետ կարգուեցաւ։ Ան երրորդ կինն ալ քիչ մը ետքը մեռցնելով՝ չորրորդ կին մ'առաւ. ու վեց ամիս վերջը անիկա ալ արձակելով՝ ուրիշ հինգերորդ կնոջ մը հետ կարգուեցաւ։ Իսկ քանի մը տարի վերջը (1542ին) ասոր վրայ ալ զրպարտութեամբ յանցանք ձգելով՝ մեռցնել տուաւ ու վեցերորդ կին մ'առաւ։

Բայց թէպէտ եւ Հէնրիկոս այսպէս ամօթալի կրից համար եկեղեցիէն բաժնուեցաւ, եւ Նորոգութեան ետեւէն գացող ուրիշ իշխաններուն պէս եկեղեցիներուն ու վանքերուն ինչքերը յափշտակեց տուաւ, մանաւանդ թէ ուղղափառութեան մէջ հաստատուն կեցողները եւ զինքն իբրեւ եկեղեցւոյ գլուխ չընդունողները մեռցնել տուաւ. սակայն թող չտուաւ որ հաւատոյ վարդապետութիւնները փոխուին ու Լուտերի մոլորութիւնները ներս մտնեն։ Բայց ինչ օգուտ որ անշարժ վիմէն բաժնուելէն ետեւ հաստատուն մնալն անկարելի ըլլալով՝ իր յաջորդներուն առենները բոլոր հաւատոյ վարդապետութիւնները տակն ու վրայ եղան, ու ան ժամանակէն վեր Անգղիա ամէն մոլորութեանց ասպարան մ'եղած է։

13. Լուտեր աս նիւթին վրայ գրած գրքին մէջ կը վարդապետէ որ չի կրնար ըլլալ որ Աստուծմէ զատ մէկը ազատ ըլլայ կամ անձնիշխանութիւն ունենայ. Աստուծոյ նախագիտութեամբը եւ աստուածային նախախնամութեամբ այնպէս կ'ըլլայ որ ամէն բան՝ Աստուծոյ անփոփոխ, յաւիտենական ու անհրաժեշտ կամքը կը կատարուի, որն որ անձնիշխանութիւնը կը քայքայէ ու կը ջնջէ։ Անոր համար անձնիշխանութիւն բառը՝ միայն Աստուծոյ կը վայլէ, եւ մարդիկներէն կամ հրեշտակներէն մէկուն կամ արարածի մը ամենեւին անձնիշխան չի կրնար ըսուիլ։ Հերձուածապետին աս խօսքերէն ինք իրմէ կը հետեւէր որ ուրեմն ամէն մեղքերուն պատճառն Աստուած է. Լուտեր աս բանս ալ չէր ուրանար, հապա ինք իրմէ աս հետեւութիւնն ալ կը հանէր ու կ'ըսէր որ Աստուած է որ ի մեզ չարիքն ալ բարիքն ալ կը գործէ։ Անոր համար, կ'ըսէր, հաւատքին կատարելութիւնն ան է որ հաւատանք թէ Աստուած արդար է, թէպէտ ինքը զմեզ իր կամօքը դատապարտութեան արժանի կ'ընէ, եւ այնպէս կ'երեւայ որ դատապարտելոց տանջանքներէն հաճութիւն կը զգայ։ Աստուծոյ պատուիրանքները միայն անոր համար տրուած են, որպէս զի մարդս իր անկարողութեան ու ազատ չըլլալուն վրայ համոզուի։ Աստուած երբ որ մարդուն կը պատուիրէ որ իր պատուիրանները պահպանէ եւ իրեն հաճութեան արժանի ըլլայ, զմարդը ծաղր կ'ընէ, որովհետեւ անկարելի է որ մարդ իր բերմամբը բարին ուզէ։ Աս առարկութեան որ Ս. Գիրքը շատ տեղ դատապարտութեան յանցանքը մարդկային կամաց կու տայ, ու կը յայտնէ որ Աստուած մեղաւորին մահը չ'ուզեր, հապա կ'ուզէ որ դառնայ ու փրկուի. Լուտեր պատասխան կու տար՝ Աստուծոյ կամքը երկու բաժնելով, որոնցմէ մէկը, կ'ըսէր, մեզի յայտնուած է, իսկ մէկալը յայտնուած չէ։ Աստուած մեղաւորին մահը չ'ուզեր ան կամքով՝ զորն որ խօսքով մեզի յայտնած է. բայց կ'ուզէ ուրիշ մէկ ծածուկ ու անքննելի կամքով, որն որ մենք ամենեւին չենք ճանչնար։ Դար-

տէր իր գրուածոց մէջ զԷրազմոսը այնպէս սաստիկ նախատած էր, մինչեւ Մելանքթոն կ'ըսէր որ "Երանի թէ Լուտեր բոլորովին լուռ ըլլար։ Ես կը յուսայի թէ որչափ որ տարիքը կ'առնէ նէ՝ այնչափ ալ բարքը կը քաղցրանայ. բայց կը տեսնեմ որ օրէ օր աւելի կը սաստկանայ։ . . . Այս ամենայն զիս սաստիկ կը նեղէ, եւ թէ որ Աստուած չ'օգներ նէ, աս կռիւներուն վերջը դժբախտ պիտ'որ ըլլայ" 14։ Իսկ Էրազմոս տեսնելով որ Լուտեր հետը ինչպէս խստութեամբ ու դառնութեամբ կը կռուի, այսպէս կ'ըսէր. Շատ կը ցաւիմ որ ծերութեանս ատեն ասանկ վայրենի գազանի ու կատաղի վարազի մը հետ կռուելու կը ստիպուիմ 15։

Երբ Լուտեր տեսնելով որ Էրազմոսի պէս երեւելի ու անուանի մարդը թշնամի ու հակառակորդ ունենալը՝ իր կողմանն որչափ վնաս է, ելաւ անոր նամակ մը գրեց, որուն մէջ միայն անոր կը նայէր որ զինքը հետը հաշտեցընէ։ Էրազմոս թուղթն առած օրը անմիջապէս պատասխան տուաւ, ու Լուտերի կեղծաւորութիւնն ու հպարտութիւնն երեսը զարնելէն ետեւ՝ ըսաւ թէ քանի որ մոլորութիւններդ մէկդի չես ձգեր նէ՝ մի յուսար որ հետս կարենաս հաշտուիլ 16։

Այսպէս Լուտեր ամենէն ալ պարապ ելլելով՝ տեսաւ որ կեղծաւորութիւնն ալ օգուտ մը չ'ըներ, եւ սկսաւ ըրածին վրայ ցաւիլ, որովհետեւ ցուցուցած խոնարհութիւնը իրեն մեծ նախատինք բերած էր 17։ Եւ թէպէտ կը բաղձար որ աս նախա-

ձեռքը այսպէս կ'ըսէր. Աստուած քեզի հանգիստ կ'ըլլայ, երբ որ անարժաններուն պատիւ ու վարձք կու տայ. ինչո՞ւ ուրեմն հանգիստ չ'ըլլար, երբ որ անմեղները կը դատապարտէ։ Եւ աս այլանդակ մոլորութիւններն ու հայհոյութիւնները այնպէս հաստատուն կը պնդէր, մինչեւ աս ալ կը գրէ որ Ա. գրուածները քննելու համար չըլլեցի, հապա հաստատելով եւ վճռելով. անոր համար ալ ամենեւին մէկու մը դատաստանին տակ չեմ ձգեր, հապա ամենուն խրատ կու տամ որ մինքերնին առանց հնազանդեցընեն։ — Լուտերին աս բաները յայտնի ու բացայայտ վարդապետելը այնչափ ստոյգ է որ բոլոր բողոքող մատենագիրները կ'ընդունին, եւ Բէլանք կը զրուցէ որ աս խօսքերը վճռաբանութեան տպաւորութեան տակէն բերնէն փախած կամ մէկ երկու անգամ ըսուած բաներ չեն. հապա կարգաւորեալ ու հիմնական կերպով գրուած եւ միշտ հաստատուն պաշտուած վարդապետութիւն. եւ որովհետեւ, կ'ըսէ, նոյն իսկ մեր (բողոքողներուն) մէջէն շատերը եւսքը աս խիստ վարդապետութիւնը մերժեցին, անոր համար կը ջանան կերպով մը Լուտերին աս բանս հաստատութեամբ վարդապետած ըլլալը ուրանալ, եւ կը կարծեն որ "Լուտերին աս տկար կողմը ծածկելու է,, բայց պարապ բան է, ամենեւին չկրնար ուրացուիլ կամ ծածկուիլ։ Տես Գիէր Դ. Հատ. Բ. 107. — 138։ Տես Նախ— Մէնցլ, Հատ. Ա. Գլ. Գ. 136. — 148։ Աս երկու մատենագիրներն ալ իրենց աս ընդարձակ հատուածներուն մէջ իրաւունքը գրեթէ բոլորովին Էրազմոսին կու տան ու Լուտերը վար կը զարնեն. բայց միշտ կրցածնուն չափ ջատագովելով։

14. Առ Գամերէր, Գիրք Բ. Համ. ԺԶ։

15. Նոյն տեղը։

16. Ուլէնպերկ, Գլ. ԺԷ. Համ. Ե։

17. Լուտերի աս կեղծաւորեալ խոնարհութեան իրեն օգուտ մը

տանաց վրէժն առնէ, բայց բաղձանքը շուտ մը չուզեց կատարել, հապա քիչ մը ատեն լռեց ու յարմար ժամանակի կը սպասէր։ Ինք աս մտաց վրայ եղած ատեն՝ լսելով որ Անգղիոյ մէկը իրեն առ Թագաւորը գրած Թուղթը եւ Թագաւորին տուած պատասխանը տպած՝ ամէն կողմը կը տարածէ, արտաքոյ կարգի կատղեցաւ. ի վերայ այսր ամենայնի աս ալ չիմանալու զարկաւ, եւ իսկզբան դէմ բան մը չգրեց։ Բայց երբ որ իմացաւ որ նոյն գրուածքները նաեւ գերմաներէն թարգմանուեր են եւ ամէնուն ձեռքը կը պտըտին, ալ անկէ վերջը կատաղութեանը վրայ չկրնալով տիրել, 1527ին սկիզբները գրուածք մը դուրս հանեց, որն որ թէպէտ կարճ բան մըն էր, բայց սաստիկ խիստ ու գժնդակ, որով յայտնապէս ու առանց կեղծաւորութեան՝ իր ժանտութեան թոյնը չէ թէ միայն Անգղիոյ Թագաւորին, հապա նաեւ Գէորգ դքսին ու Երազմոսին, մանաւանդ թէ բոլոր ուղղափառներուն դէմ կը թափէ։ "Կ'ուզէի մեծ բարձրամտութեամբ լսել, կ'ըսէ, եւ ինչպէս որ անանկ թիւնաւոր գրքերու հետ վարուելու սովորութիւն ունիմ՝ վրան աղէկ մը զուարճանալ, թէ որ ան գրքին մատենագիրը՝ ով որ է նէ՝ այնպէս չձեւացընէր որ ես (Անգղիոյ Թագաւորին գրած) թղթովս իմ վարդապետութիւնս ետ կանչած ըլլամ։ Ասիկա ամենեւին չեմ կրնար յանձն առնել. որովհետեւ աս բանս իմ անձիս չիվերաբերիր, որն որ պէտք է որ լռէ ու չարչարուի, հապա վարդապետութեանս կը վերաբերի, որն որ պէտք է որ բարձրաձայն յառաջանայ ու աքացէ։ Միայն սա բանին մէջ Աստուած ինծի համբերութիւն ու հեզութիւն չտայ. աս բանին մէջ կ'ըսեմ Չէ, չէ, չէ... թէպէտ եւ թագաւորները, կայսրները, իշխանները, սատանան եւ ով որ կ'ուզէ նէ՝ զայրանայ։

"Տէր Աստուած, որչափ փութով ու զգուշութեամբ զիս կը փնտռեն, որչափ նենգութեամբ ինծի որոգայթ կը լարեն։ Ես արեգական տակ եղող մարդիկներուն մէջ ամենէն երեւելին չեմ արդեօք։ Ստուգիւ հազար տարուան միջոցին մէջ Լուտերէն ատելուագոյն մէկը գտնուած չէ։ — Ինչո՞ւ, պատճառն ինչ է։ — Դուն քեզմէ մտածէ։ Այնչափ քահանայապետներ, այնչափ թագաւորներ, այնչափ իշխաններ, այնչափ կարդինալներ, այնչափ եպիսկոպոսներ, քահանաներ ու կրօնաւորներ, այնչափ իմաստուններ, մանաւանդ թէ բոլոր աշխարհք՝

չքմեղէն զատ՝ միտս ալ ընելը՝ նոյն իսկ բողոքող մատենագիրներն ալ կը խոստովանին։ Կուստաւ Փիցեր, (Գլ. ԺԸ. 376.) առանձինն Անգղիոյ Թագաւորին գրած Թղթին վրայ խօսելով՝ կ'ըսէ որ "իր անարգութիւնէն աւելի իրեն երեսը զարկին իր չափազանց խոնարհութիւնն ու քաղաքավարութիւնը"։ Իսկ Բէլինք (Գիրք Դ. Հատ. Բ. 106.) նոյն գործքը՝ "Անհեթեթ տկարութիւն" կ'անուանէ։

սատանային եւ անոր արբանեակներուն հետ միաբանած՝ Լուտերին մատնիչն ու դաւհիճը եւ սպանողն են, եւ անոր արեան կը ծարաւին։ . . . Ես ողորմելի մարդ մըն եմ, եւ սանկ դահիճներ ունենալու արժանի չեմ։ Բայց որովհետեւ իրենք այնպէս կ'ուզեն, պէտք է յանձն առնեմ որ ինծի աս պատիւն ընեն, եւ իրենց բարկութիւնն ու կատաղութիւնը՝ ինծի զբօսանք սեպեմ եւ զուարճանամ։ Ապա թէ ոչ՝ աս բարեկենդանի օրերը ինծի այնչափ զբօսեցուցիչ չէին ըլլար, թէ որ ասանկ մեծաղօր, ազնուական, իմաստուն միմոսներ ու հոպիտներ չունենայի։ Բայց աղքատ ըլլալովս՝ ուրիշ վարձք չեմ կրնար իրենց տալ, միայն աս կրնամ ընել որ աղաչեմ թէ բռածնին շարունակեն եւ աւելի սաստկացընեն 18։

“. . . Ես ողորմելի մեղաւոր մըն եմ. թող հակառակորդներս սուրբ եւ հրեշտակ ըլլան, երանի իրենց թէ որ կրնան այնպէս մնալ նէ. բայց չէ թէ աշխարհքիս ու անհաւատից առջեւ մեղաւոր եմ, հապա Աստուծոյ եւ իրեն հաւատարիմ ծառաներուն առջեւը։ Բայց աշխարհքիս առջեւ կ'ուզեմ անմեղ ըլլալ, եւ եմ ալ, եւ ան աստիճանի՝ որ զիրենք հազիւ իմ կօշիկներուս խրացը քակելու արժանի կը սեպեմ19։ . . . Իսկ պաշտօնիս ու վարդապետութեանս նայելով, մանաւանդ թէ վարուցս կողմանէ ալ՝ միայն թէ վարդապետութեանս հետ միաբան ըլլայ, ամենեւին մէկը իզմէ երբեք խոնարհութիւն կամ համբերութիւն մը չսպասէ, մանաւանդ բռնաւորներն ու Աւետարանը հալածողները։ Ուզեն չուզեն՝ պէտք է որ խոստովանին որ ես կենդանի սուրբ մըն եմ20, միայն թէ մինչեւ մահուանս առենը վարդապետութեանս մէջ հաստատուն մնամ։ Եւ թէ որ վարդապետութիւնս՝ Անգղիայի թագաւորէն, Գէորգ դքսէն, պապէն եւ անոնց ընկերներէն . . . ուրիշ թշնամի չունենար նէ, շատոնց Հայրմերով մը բանը լմընցուցած կ'ըլլայի 21։ . . .

“Բայց ինչո՞ւ պապականներուն կը բարկանամ, որոնք ինծի դէմ յայտնապէս պատերազմի ելած են եւ հետս այնպէս կը վարուին՝ ինչպէս որ թշնամւոյ հետ սովորութիւն է վարուիլ։ Ինծի աւելի վնասակար են իմ սիրելի որդեակներս, անձկալի եղբայրներս ու մտերիմ բարեկամներս, այս ինքն ապստամբ ոգիները՝ Խորհրդականները, որոնք որ կարծեմ՝ Լուտերին

18. Գործք Լուտ. գերմ. Հատ. Գ. 361. Բ. 362. լատ. Հատ. Բ. 534. Բ. 535։

19. Ut illos vix dignos censeam, qui mihi calceamenti corrigiam solvant. Գործք Լուտ. լատ. Հատ. Բ. 535. Բ։

20. Denn da sollen sie mich für einen lebendigen Heiligen halten. Գործք Լուտ. գերմ. Հատ. Գ. 365։

21. Գործք Լուտ. գերմ. Հատ. Գ. 365. լատ. Հատ. Բ. 537։

գրելէն յառաջ՝ Աւետարանին ու Քրիստոսի ինչ ըլլալը չէին գիտեր, եւ չէին կրնար իրենց հնարքովը պապին լուծը վզերնէն հանել, եւ ան ազատութեան ու լուսաւորութեան հասնիլ որուն մէջ հիմա կը գտնուին. եւ թէ որ կարողութիւն ալ ունենային՝ գործքի ձեռք զարնելու չէին համարձակեր: Երբ որ ես իսկզբան առանձին՝ պապին ու կայսեր եւ ուրիշ պապականներուն դէմ կը դնէի, եւ այնպէս բոլոր պատերազմին ծանրութիւնը կը քաշէի, իրենք իրենց սաստիկ քաջութեան համար՝ ձկերէն ու գորտերէն աւելի լուռ կը կենային: Իսկ երբ որ Աստուծոյ օգնականութեամբը բաներն ան աստիճանի հասուցի, որ ամէնքս ալ կրնանք շունչ առնել, եւ կը յուսայի որ պապին հետ պատերազմը գլուխ տանելու համար ինծի օգնական կ'ըլլան, անոնք յանկարծակի ետեւի կողմանէս վրաս կը յարձակին, ուր որ ես ողորմելի ու յոգնած եմ, եւ նոյն իսկ պապականներէն աւելի կը մոլեգնին:...

“Մարդ եկէք վրաս ինկէք ամէնքդ ալ մէկտեղ, սատանաներ, պապականներ, խորհրդականներ. գունդ գունդ Լութերի վրան դիմեցէք, ճեպեցէք, ստիպեցէք, նեղ խոթեցէք:... Բայց ինչ որ ընէք նէ՝ պարապ է, պէտք է որ իր վարդապետութիւնը հաստատուն մնայ:... Մարմինս կրնաք դիւրաւ ջնջել վերցընել. բայց վարդապետութիւնս զձեզ պիտի սպաննէ ու կտոր կտոր ընէ„[22]: — Մարդ չիգիտեր աս յիմարական գրուածքին վրայ ծիծաղի՞, չէ նէ գրողին յանձնապաստանութեան եւ ամբարտաւանութեան վրայ ցաւի:

22. Գործք Լուտ. գերմ. Հատ. Գ. 365.—366. լատ. Հատ. Բ. 537. Բ.—539:



# ԳԼՈՒԽ ԺԻ

## Սոցիալական ազդեցութիւն

Լուտերի վարդապետութիւնն ընդունող երկիրներուն մշակութային, կրօնական ու քաղաքական կեանքը։ Բողոքին՝ նոյն նիւթերուն եւ մանաւանդ Լուտերական քարոզիչներուն վրայ գրածները։ Լուտերին՝ իր աշակերտներուն քաղաքական կեանքին վրայ ըրած դիտողութիւնները։ Լուտեր ու ընկերներուն ճար մը հնարել կ'ուզէ։ Եկեղեցական առաջնորդութիւնը աշխարհական իշխաններուն ձեռքը կը յանձնէ։ Սաքսոնիայի կայսրընտիրին կը խնդրէ որ իր երկիրներուն մէջ այցելութիւն մ'ընել տայ։ Վարդապետութեան եւ արարողութեանց պաշտաման մէջ միակերպութիւն մը գտնելու կ'աշխատի։ Մելանքթոն այցելութիւն ընելու կը սկսի։ *Հրահանգք այցելուաց առ ժողովուրդս* բնակած երկիրը։ Լուտեր իր գրած նամակներուն առաջին համաձայնութիւն եւ ճիշդ հաւատարմութիւն կը պահանջէ։

## 1527

ԼՈՒՏԵՐԻ *վարդապետութեանց՝ քաղաքական կենաց վրայ ըրած ազդեցութիւնը եւ անոնցմէ հետեւած չարիքներն ու խռովութիւնները ասկից յառաջ տեսանք. հիմա հարկ է որ մտաւորական, կրօնական ու բարոյական կենաց վրայ ըրած ազդեցութեանն ալ մասնաւոր կերպով մը միտ դնենք։ — Գերմանիայի այն կողմերը՝ ուր որ իշխաններն եկեղեցականաց հետ միանալով՝ իրենց զօրութեամբը նոյն վարդապետութեանց դէմ դրած չէին նէ, այն տեղերը մոլորութիւնը սաստիկ հեղեղի մը պէս տարածուած էր։ Չէ թէ միայն ընդհանրապէս գաւառներն ու մեծամեծ քաղաքները, հապա նաեւ գեղերը եւ մինչեւ աղքատին հիւղերը աս ժանտախտէն ապականած էին։ Ասոր ամենէն առջի հետեւութիւններն եղան կրօնական նիւթերու մէջ ընդհանուր անիշխանութիւն, բարոյից սաստիկ ապականութիւն եւ ուսմանց նուազութիւն։ Լուտերականութեան տարածուած տեղերը՝ ամենեւին մէկը եկեղեցիներն ու դպրոցները հոգալու, քարոզիչներն ու վարպետները պահպանելու համար ստակ մը չէր ուզեր տալ*[1]*։ Ժողովրդեան մեծ մասը չէ*

1. Բլանք, Գիրք Զ. Հատ. Բ. 341։ — Նոյն մատենագիրը՝ Լուտերին առ Սաքսոնիայի կայսրընտիրը գրած երկու նամակներէն մէյ մէկ հատուած կը բերէ, որոնց մէջ Նորոգիչը աս նիւթերուն վրայ այսպէս կը տրտնջէ։ "Ամէն տեղ ժողովրդապետներուն տրտունջքին չափ չկայ։ Ամենեւին մէկը բան մը տալ չ'ուզեր, եւ մէջերնին Աստուծոյ խօսքին դէմ այնանկ ապերախտութիւն մը կայ, որ եթէ խիղճս թող տալու ըլլար նէ՝ ետեւէն կ'ուզէի որ ամենեւին ժողովրդապետ կամ քարոզիչ չունենան, եւ խոզերու պէս ապրին"։ — "Թէ որ աս բաներուն շուտ մը օգնուելու չըլլայ նէ, այլ աս երկիրս մէջ ժողովրդապետներուն, դպրոցներուն, Աւետարանին բանը բուսած է. ամէնքն ալ պէտք

թէ միայն եկեղեցի երթալը, աստուածային պաշտամանց ներկայ գտնուիլը, քարոզ մտիկ ընելը, խորհուրդներու մերձենալը մէկդի թող տուաւ, հապա շատերը եւ ոչ զաւակնին դպրոց խրկել, ուսում սորվեցնել տալ կ'ուզէին։ Այսով եկեղեցիներն ու բոլոր ուսումնական շէնքերը ամայի անապատ դարձան, մանաւանդ թէ տեղ տեղ բոլորովին գոցուեցան [2]։ Շատ տեղ ոչ արտաքին ուսում եւ ոչ ալ քրիստոնէական վարդապետութիւն սորվեցընող մը կը գտնուէր. այնպէս որ նոյն իսկ Լութերին բառերին նայելով՝ "Տղաքն անտառի ծառերուն պէս կը մեծնային, եւ անօգուտ փայտի կը նմանէին, որ այրելէն ուրիշ բանի չէր կրնար գալ"։ Նոյն հոգեւոր բաներու տգիտութիւնն ան աստիճանի հասած էր, մինչեւ դարձեալ նոյն Լութեր կը գրէ։ Հասարակ մարդիկ "քրիստոնէական վարդապետութեան վրայ տեղեկութիւն չունէին, ոչ հաւատքը (հաւատամքը) գիտեն, ոչ Հայրմերը, ոչ տասը պատուիրանները. հապա անասուններու կամ անմիտ խոզերու պէս կ'ապրին, եւ Աւետարանէն մէջէն ուրիշ բան սորված չեն, բայց երբ շատ ճարտարութեամբ անոր ազատութիւնը չարաչար գործածել" [3]։ Իսկ քարոզիչներուն քարոզած վարդապետութեանց կողմանէ՝ խեղճութիւնն ու անկարգութիւնն աւելի մեծ էր։ Ամէն մարդ Ս. Գիրքը ձեռքն ունենալով, եւ Լութերին տուած իշխանութեան համեմատ՝ կրցածին կամ ուզածին պէս հասկընալով ու մեկնելով՝ իր անձնական կարծիքը եւ շատ անգամ բերանն եկածը՝ իբրեւ Աստուծոյ զուտ ու անարատ խօսքը կը քարոզէր, եւ ամէնուն իշխանութիւն մը չկար որ աս բաները կարող ըլլար կարգի դնել։ Հաւատոյ վարդապետութիւնը եւ ուսումն ու կրթութիւնը աս վիճակի մէջ գըտնուելով, եւ Լութերական քարոզիչներուն մեծ մասը սաստիկ ագէտ մանաւանդ թէ խառնակեաց մարդիկներ ըլլալով [4], ամէն մարդ ինք իրմէ կրնայ մակաբերել որ ժողովրդեան բարուց ապականութիւնը քիչ ատենուան մէջ ինչ աստիճանի հասած էր։

Աս Լութերականութեան տարածուած տեղերուն եւ մանաւանդ Սաքսոնիայի կայսրընտրին երկիրներուն մասնաւորական,

է որ փախչին։ Ինչու որ ամէնուն բան մը չունին, չորս կողմը թափառական կը պտըտին, ու չորցած ագիներու կը նմանին"։ Նոյն տեղը, 342. Ծանօթ. 3։

2. "Յառաջագոյն շատ տեղ դպրոցներ կային, կ'ըսէ Մենցլ, որոնք քաղաքները իրենց ծախքովը շինել տուած էին . . . իսկ աւելի բարձր գիտութիւնները վանքերու մէջ կը սորվեցընէին։ Արդ երբ որ եկեղեցական բաները փոխուեցան նէ՝ աս դպրոցներն ալ գոցուեցան"։ Հոփ. Ա. Գլ. Զ. 235։

3. Լութերին Փոքր քրիստոնէական վարդապետութեան յառաջաբանին մէջ. Տես առ Ռէֆէլէ, Գիրք Բ. Գլ. Ա. 4։

4. Տես աս Գրքիս Բ. Գլխոյն մէջ (երես 152. — 154. եւ 155, 156.) գրածնիս, նոյնպէս քիչ մը ետքը (եր. 244.) Բլանքէն բերուած վկայութիւնը եւ աս Գլխոյն 20. Ծանօթ։

Հոգեւոր եւ քաղաքական վիճակը Բըլանք ընդարձակ կը ստորագրէ ։ Ալեքսանդրիայի կայսրընտրին երկիրներուն մէջ գրեթէ տեղ մը չկար՝ որ Լուտերի նախանձախնդիր հետեւողներ չունենար, ըսելէն վերջը, աս բողոքող հեղինակը խօսքն այսպէս կը շարունակէ. "Ասոնցմէ շատերը, գուցէ ալ մեծ մասը ստուգիւ եւ ոչ հաւատոյ հիմնական մասանց վրայ Լուտերին վարդապետութեան ինչ ըլլալը գիտէին. չէին գիտեր որ Լուտերին հետեւելով ինչ բանի պիտի հասնին . . . հապա զէնքն անոր համար կը յարգէին, վասն զի անիկա անկարգութեանց դէմ ելած, կրօնաւորները լռեցուցած, եւ պապին ու եպիսկոպոսներուն, նաեւ երբեմն իրենց աշխարհական տէրերուն ու իշխաններուն յանդուգն ճշմարտութիւններ խօսած էր„ [5]. Հայերէն խօսելով՝ անոնց դէմ ելած ու իշխանութիւննին ոտքի տակ առած էր ։ Քիչ մը ետքն ալ կը զրուցէ որ աս կրօնական նիւթերուն մէջ այնչափ ագէտ էին, որ բաւական թէ քահանանին կարգուած ըլլար, թէպէտ եւ բոլոր քարոզածը հին (ուղղափառ) վարդապետութեան համեմատ, ու Լուտերի վարդապետութեան բոլորովին հակառակ ըլլար, մէջերնէն մէկն ալ չէր տարակուսեր որ Լուտերի վարդապետութիւնը չըլլայ, միայն անոր համար վասն զի կարգուած էր [6] ։

Այնպէս Լուտերական երէցներուն վրայ խօսելով՝ կը զրուցէ որ անոնք ալ ժողովրդէն աւելի գիտուն չէին ։ "Ասոնցմէ ոմանք, կ'ըսէ, նորութեան ուղխին ետեւէն կ'երթային, եւ բեմերուն վրայէն՝ Լուտերին չափ սաստկութեամբ՝ պապին ու կրօնաւորներուն դէմ կը խօսէին, եւ կամ իրենց օգտակար կը սեպէին Լուտերին քանի մը սկզբունքներն ընդունիլ, եւ աշխարհք մտնելով՝ իրենք զիրենք Աւետարանի քարոզիչ կ'անուանէին, բայց առանց Աւետարանէն բան մը հասկընալու . . . ։ Ուրիշներ ալ կային որ իրենց ունկնդիրներուն միտքին կը հետեւէին, ոմանց՝ ըստ նոր վարդապետութեան կը քարոզէին, ոմանց ալ՝ ըստ հին վարդապետութեան. մանաւանդ թէ մինչեւ մէկը գտնուեցաւ, որ երկու եկեղեցւոյ երէց ըլլալով՝ մէկուն մէջ հաղորդութիւնը երկու տեսակաւ կը մատակարարէր, մէկալին մէջ ճշդիւ հին ծիսով պատարագ կ'ընէր [7] ։ . . .

"Քարոզիչնին իրենք իրենցմէ ընտրելու իրաւունք ունեցող հասարակութիւնները իրենք զիրենք երջանիկ կը սեպէին, թէ որ այնպէս պատահէր որ աստանկ ատեն մը (քարոզիչ փնտռած ատեննին) վանքէ ելած կրօնաւոր մը թափառական պտըտելով՝ իրենց կու գար, եւ գտած ազատութիւնը վայելելու համար՝

5. Գիրք Զ. Հատ. Բ. 336 ։
6. Նոյն տեղը ։
7. Դարձեալ նոյն վերը յիշուած տեղը, 337 ։

քիչ մը ժամանակ աշխարհքին մէջ ասդին անդին թափառելէն ետեւ՝ այնպէս կը ձեւացրնէր որ Աւետարանին պատճառաւ հալածանք կը քաշէ եւ նաեւ անէն տեղէն մերժուած է։ Ասանկները երկինքէ խաւրուած մարդիկներու պէս՝ ուսափ եւ առանց քննութեան կ՚ընդունուէին. որովհետեւ թէ որ մանաւանդ կիներնին ու զաւկըներնին մէկտեղ առած կը պտըտցրնէին նէ, ինչպէս որ շատ անգամ կը պատահէր, ա՛լ անկէ վերջը իրենց վարդապետութեան անարատ ըլլալուն՝ ուրիշ ամենեւին ցուցում մը հարկաւոր չէր սեպուեր։ Աս յանձնարարութեան թղթերը (այս ինքն՝ քարոզչի մը՝ հետը կին ու զաւակ ունենալը) շատ անգամ նաեւ քարոզիչ կամ երէց փնտռող աղնուականներուն առջեւն ալ մեծ զօրութիւն կ՚ունենար....։ Ամենէն աւելի խիղճ ունեցողները Լուտերին ու Մելանքթոնին կը դիմէին ... բայց ասոնք ո՞ւսկից կրնային միշտ անանկ մարդիկ գտնել, որոնք ժողովրդեան կրթութիւն տալու բոլորովին անյարմար չըլլալու չափ գիտութիւն ունենային։ Համալսարանին ուսանողներուն մէջ ... ստուգիւ երեւելի գլուխներ կային, բայց ասոնք մատի վրայ կրնային համրուիլ. եւ թէ որ ուսմունքնին չլմընցած թող չէին տար երթար նէ ալ՝ պէտք էր որ մեծ քաղաքներու եւ համալսարաններու համար պահուէին։ Գեղերու քարոզիչ ըլլալ՝ միայն շատ տկարներուն ու աղքատները կ՚ուզէին. ասոնք ալ կամ անանկ մարդիկ էին, որոնք յառաջագոյն ամենեւին ուսմանց ետեւէ ինկած չէին, հապա տարիքնին առնելէն ետեւ՝ իբրեւ թէ մէկէն աստուածաբանութեան կոչում մը կը զգային, եւ արուեստնին կամ ձեռագործնին թող տալով՝ աստուածաբան կ՚ըլլային, ... կամ վանքէ ելած կրօնաւորներ ու վռընտուած քարոզիչներ էին, որոնք գունդ գունդ Վիդդենպերկ կու գային, որպէս զի Լուտերին վարդապետութիւնը սորվին եւ ապրուստնին իրմէ ընդունին։ Ասանկ մարդիկներուն մէջէն պէտք էր որ հասարակօրէն՝ Լուտեր ընտրէր, եւ շատ անգամ ասոնք ալ ունենալուն վրայ կ՚ուրախանար, որովհետեւ ժողովրդեան կարօտութիւնը շուտ օգնութիւն կը պահանջէր։...

“Վերջ յայտնի է որ ասանկ քարոզիչներուն մէջ ամենէն աղէկներն ալ հասարակօրէն չէ թէ միայն աստուածաբանական գիտութիւն չէին ունենար, հապա եւ ոչ կրօնի վրայ զուտ ծանօթութիւն. աւելի եւս զուրկ կ՚ըլլային խոհեմութենէն, փորձառութենէն եւ ան ամէն հանգամանքներէն՝ որոնք ժողովրդեան առաջնորդ ըլլողը պէտք է որ ունենայ, որպէս զի օգուտ կարենայ ընել։ Մէջերնէն ամենէն աղէկները՝ Վիդդենպերկ Լուտերէն լսածնին՝ իրենց գեղերուն բեմին վրայէն կը խօսէին, պապականներուն ու խորհրդականներուն դէմ կը ճառէին, ու-

րովհետեւ Լուտերէն յառաջնին՝ ըստ մեծի մասին ասոնց վրայ էր, եւ իրենց պարզմտութեամբն անանկ կը կարծէին որ իրենց ունկնդիրներուն աւելի օգտակար բան մը չեն կրնար խօսիլ՝ քան թէ ան բանը որն որ իրենց այնչափ շատ անգամ ըսուած էր: Աւելի շատերը՝ նոյն նիւթերուն վրայ խօսելու չափ ալ գիտութիւն չունէին. ասկից զատ՝ շատերուն վարմունքն անանկ ամօթալի, եւ վարքերնին ու քաղաքավարութիւննին այնպէս անպիտան էր որ նաեւ հին ու չմաքրուած եկեղեցւոյն քարոզիչներէն ալ շատ վար էին: Մէկ խօսքով ըսելու համար՝ ատենին ժողովրդեան կրթութիւնն աւելի գէշ հոգացուած չէր կրնար ըլլալ. իսկ դպրոցները կարգի դնելու վրայ եւ ոչ կրնար մտածուիլ, թէպէտ եւ ասիկա ամէն բանէն աւելի հարկաւոր էր: Շատ տեղ դպրոցներուն մէջ ամենեւին ուսուցիչ չկար. եւ քիչ քարոզիչ կը գտնուէր որ վարպետներուն տեղը կարող ըլլար բռնել,, 8:

Ա՛ս սքանչելի նկարագիրը կը լրացընէ Լուտեր իր աս նիւթերուն վրայ զանազան անգամ գրածներովը, որոնցմէ մէկ հատուած հոս կը դնենք: "Զարմանալի բան մը չէր ըլլար, կ'ըսէ, թէ որ Աստուած դժոխքին պատուհաններն ու դռները բանար ու մէջերնիս սատանայ թափէր, կամ երկինքէն ծծումբ ու դժոխական կրակ տեղար, եւ ամէնքնիս մէկտեղ Սոդոմայ ու Գոմորայ պէս դժոխքին անդունդը կործանէր: . . . Որովհետեւ նոյն ժողովները հիմակուան Գերմանիայէն փոքր անկած նուազ եղեր էին. ինչու որ իրենք Աստուծոյ խօսքն ու քարոզութիւնը չունէին. իսկ մենք երկուքն ալ ունինք, բայց պարապ տեղ, եւ այնպէս կը վարուինք իբրեւ թէ ուզէինք որ Աստուած, իր խօսքը, բոլոր կարգն ու կանոնը եւ պատիւը ոչընչանայ: Խռովարարները Աստուծոյ խօսքը զսպելու կը ջանան. ազնուականներն ու հարուստները՝ կարգն ու կանոնը եւ պատիւը կործանելու ետեւէ կ'իյնան: . . . Իսկ ուրիշները ձեռուընին կը քաշեն, ո՛չ ժողովրդապետ եւ ո՛չ քարոզիչ կ'ուզեն պահպանել կամ անոնց ապրուստին համար բան մը տալ. ասկից զատ՝ տղաքն ալ անոնցմէ կը հեռացընեն, որպէս զի քարոզութեան պաշտօնը շուտ մը կործանի: . . . Ի վերայ այսր ամենայնի վստահութեամբ կը վարուին, ամենեւին խիղճ չեն ըներ, ասանկ դժոխական մնալանոց թէ դժոխականէն աւելի մեծ ապերախտութեան եւ չզղջալու մեղքերուն ու մոլութիւններուն վրայ ամենեւին

8. Գիրք Զ. Հատ. Բ. 338. — 340: — Բլունք ասոնք գրելէն ետեւ՝ Ձ. Ծանօթ. մէջ կը ցուցնէ որ "Բոլոր աս ստորագրութիւնը Լուտերին աշխարհական նամակներէն առնուած է, որոնց շատերը աս նիւթերուն վրայ գրուած ատտանիշներով լեցուած են,,:

զղջում չունին, Աստուծոյ բարկութենէն ամենեւին չեն վախնար ու բարերար փրկչին սէր ըսած բանդ չունին: . . . Եւ աս ամէն զարհուրելի ապականութիւններն ընելէն ետեւ՝ կ՚ուզեն աւետարանական ու քրիստոնեայ սեպուիլ: Թէ որ Գերմանիա սանկ պիտի շարունակէ նէ, շատ կը ցաւիմ որ գերմանացի ծնած, գերմաներէն խօսած ու գերմաներէն գրած եմ. եւ թէ որ խիղճս ներելու ըլլար նէ՝ կ՚ուզէի ետեւէ կենալ եւ ջանալ որ պապն իր բոլոր ապականութիւններովը նորէն մեր վրայ գայ, եւ յառաջուընէ աւելի ճնշէ, հարստահարէ ու ապականէ:

"Յառաջագոյն երբ որ սատանային կը ծառայուէր ու Քրիստոսի արիւնը կը նախատուէր նէ՝ ամէն քսակները բաց էին, եւ եկեղեցիներուն, դպրոցներուն եւ ուրիշ անպիտանութիւններուն համար տրուած տակը չափ չունէր: Ան ատեն տղաքը կրնային վանքերը, վարժատուները, եկեղեցիները, դպրոցներն երթալու ստիպել, եւ սատիկ շատ ծախք կ՚ըլլար, թէպէտ եւ ամէնն ալ փուճ տեղ: Իսկ հիմա որ ճշմարիտ դպրոցներ ու ճշմարիտ եկեղեցիներ հիմնել կ՚ուզուի, մանաւանդ թէ հիմնել չէ, հապա եղածները պահել . . . բոլոր քսակները երկաթի շղթաներով կապուած են, ամենեւին մէկը բան մը չիկրնար տալ: Աս ալ բաւական չէ. տղաքը բռնութեամբ կը հեռացընեն, ու թող չեն տար որ եկեղեցիները զանոնք սնուցանեն եւ անանկ պաշտօններու հասցընեն, որոնց մէջ՝ աւանց իրենց գործակցութեան՝ նաեւ ժամանակաւոր պիտոյքնին կրնայ հոգացուիլ: . . . Աստուծոյ կ՚աղաչեմ որ իր շնորհքովը զիս աս աշխարհքէս հանէ, եւ թող չտայ որ Գերմանիայի վրայ գալու թշուառութիւնը տեսնեմ: Ինչու որ այնպէս կը կարծեմ որ եթէ տասը Մովսէս ըլլէր ու մեզի համար աղօթք ընէր նէ, բան մ՚ալ գլուխ հանելիք չունէր: Աս բանս ես անձամբ ալ կը փորձեմ. երբ որ իմ սիրելի Գերմանիայիս համար աղօթք ընել կ՚ուզեմ նէ, բերանս չիբացուիր եւ աղօթքը բերնէս ելլել չ՚ուզեր. ուր որ ուրիշ բաներու համար աղօթք ընել ուզած ատենս՝ աղօթքն ինք իրմէ դուրս կ՚ելլէ: Անոր համար Աստուած զՂովտ (գուցէ ինքը զինքը կ՚իմանայ) պիտի փրկէ, իսկ Գոմորը պիտի կործանէ: Աստուած տայ որ ըսածներս սուտ ըլլան, եւ ես աս բանիս մէջ սուտ մարգարէ ըլլամ,, 9:

Մրդ. Լութեր աս բաները բոլոր կը տեսնէր, կ՚իմանար որ իր Աւետարանին պատուոյն որչափ վնասակար են: Ստոյգ է իր հպարտութիւնը թող չէր տար որ խոստովանի թէ սխալ իր գործքը, իր դրած սկզբանց ու քարոզած վարդապետութիւն-

9. Ճառ կամ քարոզ՝ Թէ Տղաքը դպրոց խաւրելու է. Գործք Լութ. Երլ. Հատ. Ե. 183: Տես նաեւ 157 երեսին մէջ բերուած վկայութիւնը:

Ներսէն միշտ հեռեւութիւնն է, բայց կը ճանչնար որ աս չա-րիքներուն աւելի սաստկանալն արգելելու համար պէտք է որ զօրաւոր հնարքներ բանեցուին եւ շուտով ի գործ դրուին: Եւ թէպէտ մէկ կողմանէ կը տեսնէր որ ամենէն յարմար միջոցն է՝ ուղղափառ եկեղեցւոյն անքանդելի կարգադրութիւնները, զո-րոնք ինք խղզման կործանելու եւ ջնջելու ետեւէ ինկած էր, նորէն հաստատել. բայց միւս կողմանէ չէր կրնար եւ չէր ու-զեր անոնք մէկէն եւ բոլորովին իր եկեղեցւոյն մէջ խոթել: — Աստուծոյ ձեռօքը հիմնուած գեղեցիկ ու հոյակապ շէնքը, կ'ըսէ Ռիֆէլ, Լուտերի եւ իր աշակերտներուն ջանքովը թող տրուած էր. նորէն նոյն տեղը դառնալու համար հարկաւոր ե-ղած զօրութիւնն ու արիութիւնն ալ կը պակսէր, որովհետեւ նոյն բաժանման պատճառ եղող հպարտութիւնն ու անձնասի-րութիւնը չէ թէ միայն վերցուած չէր, հապա շատ աւելի սաստկացած էր: Ուստի եւ ուրիշ միջոց չէր մնար, բայց եթէ բռնութեամբ կործանուած եկեղեցւոյն մնացորդները[10], խելք-բան կատաղութեամբ ամէն բան կործանելու տեղն՝ մինակ պղծելու յարմար տեսնուած քանի մը գերանները քովէ քով բերելով, աղքատիկ ու անպիտան հիւղ մը շինել, որպէս զի անոր մէջ ամփոփելով՝ մարդկային մոլութիւններուն ու մոլորու-թիւններուն մրրկին դէմ իրենք զիրենք կարենան պաշտպա-նել: Այս ինքն հին եկեղեցւոյն՝ իբրեւ անպիտան ու վնասակար մերժուած սովորութիւններէն, արարողութիւններէն, կար-գաւորութիւններէն քիչ մը բան առնել, եւ անոնք քովէ քով յարմարցընելով՝ նոր եկեղեցի մը կազմել[11]: — Արդ՝ Լուտեր աս միջոցն ուզեց գործածել, եւ ձեռք ալ զարկաւ ուզածը կա-մաց կամաց գլուխ տանելու: Բայց յայտնի է որ այսպէս մարդ-կային ձեռքով շինուած եկեղեցին՝ չէ թէ միայն առաջին ճշմա-րիտ եկեղեցւոյն աստուածային վայելչութիւնն ու ամրութիւնը չէր կրնար ունենալ, հապա եւ ոչ քիչ մը տեւեն հաստատուն մնալու չափ զօրութիւն. ուստի եւ պէտք էր որ ինք իրմէ կոր-ծանէր եւ ամէն հովերուն խաղալիկն ըլլար:

Լուտեր աս բանս ճանչնալով՝ ուզեց իր խախտուած եկեղե-ցւոյն արտաքին նեցուկ մը գտնել. ուստի ջանաց որ իր դրած կամ դնելու նոր կարգաւորութիւններուն՝ աշխարհական իշ-

10. Ռիֆէլին աս խօսքին համե-մատ կը գրէ նաեւ Լեւոն բողոքող մատենագիրն ալ: "Լուտեր, կ'ըսէ, բուռն եւ պատերազմող բողոքաւ կործանած էր մարդկային մտաց ճարտար մէկ հրաշակերտը՝ որն որ յաճախ յայտնապէս աստուածային առաջնորդութեամբ հազար տարուան մէջ շինուած էր, եւ որուն փառաւորութիւնն ու ներքին խորութիւնն իմանալու համար՝ Լուտեր թէ՛ խելքի թէ՛ կրթութեան կողմանէ շատ տկար էր": Գերմ. Գ. Հտ. Ա. Գլ. Ա. 96:

11. Ռիֆէլ, Գիրք Բ. Գլ. Ա. 6, 7:

խանութեան ձեռքովը հաստատութիւն տայ: — Արդէն յառաջագոյն ալ շատ անգամ իր կողմը միտող իշխանները կը սոփպէր որ "Ամպարշտութիւնը խափանեն եւ թող չտան որ Աստուծոյ խօսքին դէմ գործուի„. այս ինքն՝ ուղղափառութիւնը կործանեն եւ իր աղանդէն զատ կամ իր աղանդին մէջէն ելած ուրիշ աղանդները ջնջեն[12]: Բայց երբ որ մէյ մը տեսաւ որ շատ իշխաններ եւ ազատ քաղաքներու մեծեր իր կողմը միտած են, ալ անկէ վերջը՝ քահանայապետին ու եպիսկոպոսներուն ձեռքէն յափշտակած հոգեւոր իշխանութիւնը, զորն որ մինչեւ նոյն ատեն իրեն անձին սեպհականած էր, գրեթէ բոլոր նոյն աշխարհական իշխաններուն ձեռքը տուաւ, որպէս զի անոնց ձեռքովը թէ ուղղափառաց եւ թէ աղանդաւորաց դէմ կարող ըլլայ գնել[13]: — Աս հոգեւոր իշխանութիւնը բոլորովին աշխարհական իշխանաց ձեռքը յանձնելը՝ 1525ին վերջերն եղաւ, երբ որ Լութեր Սաքսոնիայի կայսրընտրին երկիրներուն մէջ եղած անկարգութեանց դարման տանելու համար՝ Յովհաննէս կայսրընտրէն խնդրեց որ նոյն երկիրներուն մէջ այցելութիւն մ'ընել տայ: Յառաջագոյն շատ անգամ նոյն վախճանաւ զանազան առաջարկութիւններ ըրած էր, բայց տեսնելով որ անոնք երեւելի օգուտ մը չեն ըներ, վերջապէս այցելութեան առաջարկութիւնն ըրաւ, ըսելով թէ Քահանայապետին իշխա-

12. Լութերին աս նիւթին վրայ գրած անթիւ անհամար խօսքերէն՝ մինակ մէկ հատը կը դնենք: "Մոլորութիւն վարդապետողներուն հետ, կ'ըսէ, շատ վիճաբանելու չէ. Հապա նաեւ [illegible] ընելու, առանց [illegible] տալու որ [illegible] փան, [illegible] է: Որովհետեւ աշխարհական իշխանութիւնը իր սուրն ու [illegible] անոր [illegible] որ [illegible], [illegible] ու [illegible] խաղաղութիւնն ու միութիւնը՝ հաստատուն մնան„: ՁԲ. Սաղմոսին մեկնութեան մէջ: Գործք Լութ. Երլ. Հրտ. Ե. 75: (Տես նաեւ 185. երեսին մէջ Լութերէն բերուած ուրիշ մէկ վկայութիւնն ալ. եւ աս նիւթոյ խօսքը բաղդատէ 163, 164 եւ 204 երեսներուն մէջ իրմէ բերուած վկայութիւններուն հետ:) Աւելի գրողն ան մարդն է՝ որն որ միշտ տրտունջ կ'ընէր որ եկեղեցիներ [illegible] ընելու [illegible], ուր որ ինք յանձն չէր առներ որ եկեղեցւոյն զէնքը պաշտպանութեան տալու համար կանչուած տանեն երեւայ: Ան մարդն է՝ որն որ նոյն տրտունջը կ'ընէր երբ որ՝ իր իբրեւ օրինաւոր եւ անկողմնակալ առաջարկած եւ որոշման անսալու խոստացած դատաւորը (Փարիզի համալսարանը) իր վարդապետութիւնը քննելէն ետեւ՝ դատապարտեց:

13. Թէպէտ եւ Լութեր իր տուած իշխանութեան վրայ վստահանալով՝ կը յուսար որ իշխանները իր կամքէն դուրս չեն ելլեր, եւ ձեռքերնին տուած իշխանութիւնը՝ միայն իր ուզածին չափ եւ ուզած վախճանին համար գործածելով՝ իրեն իբրեւ գործիք կ'ըլլան. բայց իր կարծածէն շատ տարբեր եղաւ: Ինչու որ իշխանները իրենց տրուած իշխանութիւնն առնելէն ետեւ՝ չէ թէ միայն ալ ամենեւին թող տալ չուզեցին, հապա նաեւ շատին ալ բոլորովին անցուցին, եւ ան աստիճանի հասաւ, մինչեւ լութերական եկեղեցականները անոնց գերին եղան: Աս բաներուն վրայ ուրիշ անգամ աւելի ընդարձակ խօսելու առիթ կ'ունենանք:

նութիւնը քու երկիրներուդ մէջէն վերցուած ըլլալով՝ բոլոր եկեղեցական ու կրօնական բաները հոգալը քեզի կ'իյնայ: «Ա՛ն ատենէն Աստուծոյ եկեղեցին [illegible], կը գրէ Լութեր կայսրներուն, [illegible] որ պապին նզովքը [illegible], եւ ամէն մարդ [illegible] կ'ըսէ: Բայց որովհետեւ մեր ամենուս եւ մասնաւորապէս իշխաններուն պարտքն է որ ամէն բանէն յառաջ խեղճ տղաքը... կրթենք, եւ իրենց կարգ կանոն ու Աստուծոյ երկիւղ սորվեցընենք, անոր համար պէտք է որ դպրոցներ, քարոզիչներ ու ժողովրդապետներ դրուին: Թէ որ ծնողք չեն ուզեր նէ, թող սատանային երթան. բայց ուր որ տղաք չհոգացուած ու անկիրթ կը մնան նէ, յանցանքը իշխաններուն է:... Արդ որովհետեւ ձեր իշխանութեան մէջէն պապական ու հոգեւորական բռնութիւնն ու կարգը վերցուած է, եւ ամէն վանքերն ու վարժոցները՝ իբրեւ վերին գլխոյ ձեռք՝ ձեր ձեռքն ինկած են, անոր համար նաեւ աս բաները կարգի դնելու պարտաւորութիւնն ու յանցանքը ձեզի կ'իյնայ. ինչու որ ուրիշ մը հոգը չէ, [illegible] ըլլալ [illegible] չէ որ ըլլայ: Անոր համար հարկ է որ դուք՝ որ Աստուծմէ աս բանիս որոշուած էք, բոլոր ձեր երկրին մէջ չորս հոգի այցելութեան հանէք, որոնցմէ երկուքը՝ տասանորդներուն եւ ինչքերուն, եւ երկուքը՝ վարդապետութեան տեղեակ ըլլան. եւ անոնք [illegible] հոգան որ հարկ եղած տեղերը դպրոցներ ու ժողովրդապետներ դրուին: Երբ որ քաղաք մը կամ գեղ մը կարողութիւն ունի նէ, [illegible] իշխանութեան [illegible] որ դպրոցներ, քարոզիչներ, ժողովրդապետներ դնեն: Թէ որ իրենք իրենց փրկութեան համար աս բանս ընել չեն ուզեր նէ, դուք՝ տղոց ու բոլոր կարօտութիւն ունեցողներուն վերին խնամակալն ըլլալով՝ պէտք է որ [illegible] ընելու. ինչպէս որ կամուրջներու, ճամբաներու եւ երկրին ուրիշ կարօտութիւններուն օգնելու բռնութեամբ կը ստիպուին:... Թէ որ կարողութիւն չունին նէ, վանքերուն ինչքերը կան, որոնք արդէն գլխաւորաբար աս բաներուն համար դրուած են, եւ պէտք է որ աս բաներուն գործածուին, որպէս զի հասարակ մարդիկներն այնչափ չնեղուին: Կրնաք մտածել որ աս բաները կրնան վերջապէս շատ գէշ հետեւութիւն ունենալ... Թէ որ թող տրուի որ զանազան տեղեր առանց դպրոցի ու ժողովրդապետի մնան, եւ ազնուականները վանքերուն ինչքերն իրենց առնեն, ինչպէս որ կը խօսուի եւ արդէն ոմանք կ'ընեն: Արդ որովհետեւ աս ինչքերը անանկ ալ ձեզի օգուտ մը չեն ունենար կոր, եւ արդէն աստուածային պաշտաման համար դրուած են, պատշաճ է որ ամէն բանէն յառաջ նոյն վախճանին գործածուին: Անկէ

ւելցածը կրնալ երկրին կառավարութեան համար գործածել կամ աղքատներու բաժնել,,[14]:

Նորոգիչը կը կարծէր որ աս պայծառութեան միջոցովը՝ ամենէն մեծ անկարգութիւնները կը շնչուէին, ամէն տեղ դպրոցներ ու ժողովրդապետներ կը դրուէին, եւ անոնց ծախքն ու ապրուստը հոգալու համար տուրք կը ճարուէր: Բայց անով ամէն բան չէր լմննար: Հարկ էր նաեւ թէ վարդապետութեան եւ թէ արարողութեանց կամ աստուածային պաշտամանց մէջ միակերպութիւն դնելու հնարք մը գտնել: Եւ թէպէտ Լուտեր աս փոխճանաւ միօրինակ զանազան գրուածքներ կը հրատարակէր[15], որոնք ետեւէ ետեւ նախ Վիդդենպերկի մէջ գործածուելու կը սկսէին, եւ անկից՝ ուրիշ տեղեր կ՚անցնէին. բայց ամէն մարդ անոնց չէր ուզեր հետեւիլ, հապա գրեթէ ամէն ժողովրդապետ կամ մանաւանդ ամէն մէկ հասարակութիւն աստուածային պաշտամունքն ուզածին պէս կը կատարէր կամ կատարել կու տար: Արդ որպէս զի աս բաները կարգի մտնեն, շատերը կ՚առաջարկէին որ գաւառական (եկեղեցական) ժողով մ՚ըլլայ. բայց յայտնի է որ Լուտեր աս բանիս չէր կրնար հաւանիլ, որովհետեւ չէր կրնար յանձն առնել որ իրմէ զատ ուրիշ մէկը իշխանութիւն ունենայ հոգեւոր կամ կրօնական նիւ-

14. Առ Տը Վեդդի, Հատ. Գ. 135: Տես նաեւ առ Մենցըլ, Հատ. Ա. Գլ. Զ. 236, 237:

15. Անոնց մէջ գլխաւորներն են: Ա. Ընթերցուածոց ու աղօթարանաց մեկնութիւնը: Լուտեր կ՚ուզէր որ աս գիրքը բոլոր քարոզիչներուն ու ժողովրդապետներուն ձեռքը տրուի, որպէս զի ուրիշ քարոզի տեղ՝ ժողովրդեան առջեւն անոնք կարդան: Եւ աս բանս, կ՚ըսէր, կ՚ուզեմ չէ թէ միայն ան քարոզիչներուն համար՝ որոնք քարոզ շինել չեն կրնար, հապա նաեւ խանդավառներուն եւ աղանդաւորներուն համար, որպէս զի չըլլայ որ ամէն մարդ ուզածը քարոզէ, եւ այսպէս Աւետարանին ու անոր մեկնութեան տեղ՝ յառաջուան պէս մոլորութիւններ վարդապետուին: Վրան ասոր անցնելէն ետեւ՝ աշխարհական իշխանութեան ձեռքով ալ ժողովրդապետներուն հրամայուեցաւ որ աս գրուածքը գործածեն: Տես առ Մենցըլ, Հատ. Ա. Գլ. Զ. 243: — Բ. Կարգաւորութիւն աստուածային պաշտամանց: — Գ. Քրիստոնէական պատարագ ընելու կերպ: — Դ. Աշխարհաբարութեան Լիթանիա ամէն տեղերց: — Ե. Պզտիկ եւ մեծ քրիստոնէական վարդապետութիւն: Լուտեր կ՚ուզէր որ բոլոր ժողովրդապետներն ու քարոզիչները անոնց մէջինները չէ թէ միայն ժողովրդեան սորվեցընեն, հապա նաեւ իրենք ալ ամէն օր կարդան. եւ աս հրամանը չկատարողները՝ ծոյլ ու որովայնի ծառայ կը կանչէր, որոնք, կ՚ըսէր «խողարած ու շներու ծառայ ըլլալու աւելի յարմար են, քան թէ հոգւոց պահապան ու ժողովրդապետ ըլլալու»: Պզտիկ քրիստոնէական վարդապետութեան մէջ: Իւր ժողովրդեան կամ տղոց համար կը հրամայէր որ նոյն քրիստոնէական վարդապետութիւնը կամաց սորվիլ չուզողները՝ նաեւ բռնութեամբ ստիպուին սորվելու, մինչեւ պատուիրած է որ, կ՚ըսէր. «Իշխանը ասանկ բիրտ մարդիկները իր երկրէն վռնտէ»: Նոյն տեղը: — Մարդ երբ որ աս բաները կարդալու ըլլայ նէ, կ՚ըսէ Ռեֆէլ, Լուտերին՝ քրիստոնէական ազատութեան վրայ բառերը, եւ ուղղափառ եկեղեցւոյ ստորութիւնները ու հրամանները բռնութիւն կանչելը՝ կամ հեղձութիւն պիտի սեպէ, կամ յիմարութեան խօսք: Ռեֆէլ Բ. Գլ. Բ. 64:

թեան մէջ վճիռ տալու կամ որոշում ընելու. անոր համար ժողովքի անունն իրեն այնպէս ատելի էր՝ ինչպէս անձնիշխանութեան անունը[16]։ Ուստի եւ աւելի կ'ուզէր որ ամէն մէկ հասարակութիւն ուզածն ընելու ազատութիւն ունենայ, քան թէ որ ժողովքի մէջ ամենուն հաւանութեամբը բան մ'որոշուի[17]։ Բայց որովհետեւ ասով ալ մէջերնին արտաքոյ կարգի մեծ տարբերութիւններ կ'ըլլային, որոնց պատճառաւ ժողովուրդը տարտամներ կ'ընէր, ժողովրդապետներուն եւ իրենց ժողովրդոցը մէջ եւ շատ անգամ նոյն իսկ ժողովրդապետաց մէջ սաստիկ վէճեր ու կռիւներ կ'ելլէին, անոր համար ուզեց որ աս նիւթին մէջն ալ աշխարհական իշխանութեան օգնութեամբը՝ ինք հաստատուն բան մ'որոշէ։ Արդ Լուտեր ուզած որոշումներն ու կարգադրութիւնները չըրեց, եւ իր գրածը կայսրընտրին առջեւը դրաւ, որ ան ալ իր իշխանութեամբը հաստատէ։ Իշխանը Լուտերին գրածը քննելէն կամ քննել տալէն ետեւ՝ հաւանութիւն տուաւ. որով եւ հաստատուելով՝ Վիդդենպերկի մէջ հրատարակուեցաւ։ Եւ աս կերպով դուրս ելաւ Գերմանական պատարագ եւ աստուածային պաշտամանց կարգաւորութեան ըսուած գիրքը[18]։

Թէպէտ եւ Լուտեր 1525ին վերջերը Սաքսոնիայի կայսրընտրէն խնդրած էր որ իր երկիրներուն մէջ այցելութիւն ընել տայ, բայց նոյն այցելութիւնը հազիւ երկու տարի վերջը սկսաւ. որովհետեւ կայսրընտիրը՝ Լուտերէն աւելի խոհեմութեամբ մտածելով՝ կը վախնար որ թեմական եպիսկոպոսները՝ որոնց գլխաւոր պաշտօններէն մէկն է այցելութիւնը, աս իրենց պաշտօնը յափշտակելուն համար՝ իրեն դէմ կայսեր տրտունջ կ'ընեն[19]։ Սակայն վրան երկու տարիի չափ ժամանակ անցնելէն ետեւ՝ ալ չկրնալով դէմ դնել՝ հաւանութիւն տուաւ. ուստի եւ

16. «Ինծի տալով բան չ'երեւար, կ'ըսէ Լուտեր, որ մերիններս արարողութեանց մէջ միաբանութիւն հաստատելու համար ժողով ընեն։ Թէպէտ եւ աս բանս աղէկ եռանդեամբ ալ փորձուի, ի վերջոյ այսր ամենայնի չար օրինակ է, ինչպէս որ սկզբանէ վեր բոլոր եկեղեցական ժողովքները կը ցուցընեն։ Այնպէս որ նոյն իսկ Առաքելոց ժողովքներուն մէջ աւելի գործքերու եւ աւանդութիւններու վրայ խօսուեցաւ, քան թէ հաւատքի վրայ. իսկ վերջին ժողովքներուն մէջ երբեք հաւատքի վրայ չէր խօսուեր, հապա միշտ կարծիքներու եւ խնդիրներու վրայ կը վիճուէր։ Անոր համար ժողովքի անունը ինծի այնչափ ատելի է, որչափ ատելի է անձնիշխանութեան կամ ազատ կամաց անունը»։ Ա՛ս Տը Վէթէ, Հատ. Բ. 562։

17. Բայց աս ազատութեամբ Լուտերին ընդհանրապէս ինչ խառնածը՝ Վիդդենպերկի կանոնիկոսաց դէմ ըրածներէն՝ աղէկ կրնայ իմացուիլ. Տես աս Գրքիս Ե. Գլուխը.

18. Աս բաները Լուտեր անձամբ կը պատմէ իր զանազան նամակներուն մէջ։ Տես աս Տը Վէթէ, Հատ. Գ. 31. 36. 88։ Իսկ բուն գրուածքը՝ է Գործք Լուտ. Եէն. Հատ. Գ. 295. Բ։

19. Մենցէլ, Հատ. Ա. Գլ. Զ. 237։

1527ին իր հրամանաւը բոլոր իր երկիրներուն մէջ ետեւէ ետեւ այցելութիւն սկսաւ ըլլալ, որն որ գրեթէ երեք տարի տեւեց։ Բոլոր երկիրը չորս մաս բաժնուեցաւ, եւ ամէն մէկ մասին համար մէկերկու աստուածաբան եւ մէկերկու օրէնսգէտ սահմանուեցաւ։ Աստուածաբաններուն մէջն էին Լուտեր, Մելանքթոն, Եուստոս, Սփալատին։ Ասոնք ելան բոլոր երկիրը պտըտեցան, եւ բողոքող մատենագիրներուն ըսածին նայելով՝ քարոզիչներուն բարքն ու հաւատքը կը քննէին, մոլութեան մէջ ըլլողները կը խրատէին եւ ուղղութեան կը բերէին[20], շատ կատաղիները չափաւորութեան կը յորդորէին կամ պաշտօններնէն կը հանէին, եւ մոլորութիւն (այս ինքն՝ Լուտերէն տարբեր բան մը) վարդապետողները տէրութենէն դուրս կ'աքսորէին։ Քարոզիչներուն խրատ կու տային որ ժողովրդեան մոլորութիւնները չխոցեն, եւ յամառած մեղաւորները՝ որոշ ժամանակէ մը ետեւ՝ եկեղեցական պատժոյ տակ ձգեն, այս ինքն՝ հաղորդութենէ կտրեն։ Ասկից զատ՝ դպրոցներուն ու եկեղեցիներուն եկամուտները կը կարգաւորէին։ Եւ աս ամէն բաներուն վրայ հսկելու համար՝ Վերատեսուչներ[21] կը դնէին, որոնք չէ թէ միայն ժողովրդապետներուն ու քարոզիչներուն վարդապետութեան վրայ պիտի հսկէին, հապա նաեւ անոնց վարուց վրայ, որպէս զի ժողովրդեան գայթակղութեան պատճառ չըլլան։ Վերատեսուչները՝ աս երկու բանէն մէկուն մէջ պակսող քարոզիչները խրատելէն ետեւ՝ երբ որ տեսնէին որ օգուտ մը չ'ըներ, բանն աշխարհական պաշտօնատէրներուն պիտի ծանուցանէին, անոնք ալ քննելէն ետեւ՝ կայսրընտրին պիտ'որ իմացընէին, որպէս զի ինք ալ պատշաճ սեպածն անոնց վրայ որոշէ[22]։

20. Առ Այցելուաց բարդյականին՝ ինչպէս Աւետարանին համաձայն ըլլալուն, եւ ժողովրդապետներուն մոլորութիւնները ինչպէս ուղղելուն՝ մէնակ մէկ օրինակ բերենք։ Մելանքթոն կը պատմէ որ Գէորգ դքսին հպատակներէն Միքայէլ Գրամէր անունով քահանայ մը՝ Լուտերին կողմն ըլլալուն համար՝ 1523ին բանտուեցաւ ու Նիւռէնպերկի եպիսկոպոսին խաւրուեցաւ։ Բայց ճամբան՝ չեմ գիտեր ինչ կերպով՝ փախչելով, Վիթդէնպերկ եկաւ, եւ Լուտեր զինքը մօտ տեղւոյ մը ժողովրդապետ դրաւ։ Ասիկա ետեւէ ետեւ երկու կին առած էր, բայց երկուքն ալ քիչ մը վերջը զինքը թողուտած փախած էին, եւ չկրնալով առանց ամուսնանալու ապրիլ, Լուտերէն խորհուրդ խնդրած էր, ան ալ իրեն հրաման տուած էր որ երրորդ կին մ'ալ առնէ։ Արդ երեք տարի վերջը, այցելութեան ժամանակ, աս երեքին վրայ ամբաստանութիւն եղաւ որ երեք կենդանի կին ունի, եւ Այցելուք ուզեցին վրան քննութիւն ընել. բայց երբ որ ինք Լուտերին թուղթն անոնց ցուցուց նէ, անոնք զինքը յանցանքէ ազատ կացուցին կամ արձակումն տուին։ Եւ այսպէս, երեք կին ունեցող մարդը՝ ժողովրդապետութեան ու քարոզչութեան պաշտօնին մէջ հաստատուած մնաց։ Գիզէ Բ. Հատ. Ժ. 31։

21. Superintendent.

22. Գործք Լուտ. գերմ. Հատ. Դ. 357, 357. Բ։ Ուիֆէլ, Գիրք Բ. Գլ. Բ. 59, 60։ Մենցլ, Հատ. Ա. Գլ. Ձ. 238։

Այս այցելութիւնը ամէն տեղէն յառաջ Թուրինգիայի մասին մէջ եղաւ, եւ այցելուներուն մէջ գլխաւորն էր Մելանքթոն, որուն՝ իր ընկերներուն հետ մէկտեղ՝ ըրած կարգաւորութիւնները, տուած որոշումներն ու խրատները բոլոր գրի անցուեցան, եւ ետքը կարգի դրուելով՝ Հրահանգ այցելուաց առ ժողովրդապետս ըսուած գրուածքը դուրս ելաւ, որուն վախճանն էր՝ Լուտերականներուն մէջ միակերպութիւն մը հաստատել [23]։ — Աս գրուածքին մէջ Լուտերին խիստ մոլորութիւններէն քանի մը հատը այնչափ փոխուած ու չափաւորուած էին, որ ուղղափառները սկսան ուրախանալ թէ Լուտերականք կամաց կամաց իրենց մոլորութիւնները կը ճանչնան եւ կ՚ուղղեն. իսկ խիստ Լուտերականք սկսան տրտնջել ու տհաճութիւն ցուցընել, ըսելով որ Լուտերի վարդապետութեանց եւ Աստուծոյ անսխալ խօսքին հակառակ է։ Երկու կողման ալ (ըստ մասաց ինչ) իրաւունք ունենալը ցուցընելու համար՝ աղէկ կը սեպենք նոյն գրուածքին մէջէն քանի մը նիւթերուն վրայ համառօտ տեսութիւն մ՚ընել, որով միանգամայն յայտնի կրնայ տեսնուիլ թէ Լուտերին մոլորութիւնները որչափ հակառակ եղած են, եւ թէ ուղղափառաց աս բաներուն վրայ ըսածները որչափ առոյգ եւ հիմնական խօսքեր են եղեր։

Մելանքթոն զանազան տեղերու քարոզչաց ընթացքը քննելով՝ տեսաւ որ շատերը (Լուտերի վարդապետութեանց եւ օրինակին հետեւելով) միայն հաւատքով արդարանալուն կամ արդարացուցիչ հաւատքին վրայ կը խօսին, եւ ամենեւին չեն խօսիր կամ խիստ քիչ կը խօսին ապաշխարութեան, զղջման եւ Աստուծոյ երկիւղին վրայ։ “Պապին դէմ կը գոռացեն որ, կ՚ըսէ Մելանքթոն, Ս. Գրոց վրայ բաներ կ՚աւելցընէ, (այս ինքն՝ Ս. Գրոց մէջ չեղած բաներ կը վարդապետէ,) արն որ դժբախտութեամբ շատ ճշմարիտ է. բայց ապաշխարութիւն չքարոզողներն ալ՝ Ս. Գրքէն մեծ մաս մը դուրս կը հանեն կամ թող կու տան, եւ անոր տեղ՝ միս ուտել եւ ուրիշ ասոր նման փուճ բաներ կը քարոզեն . . . այս ինքն՝ մժղուկները դուրս կը հանեն եւ ուղտերը կը կլլեն„։ Անոր համար ինք ժողովրդապետներուն խրատ կու տայ որ ժողովուրդը՝ ապաշխարութեան, մեղքերնուն վրայ զղջալու եւ ցաւելու, եւ Աստուծոյ դատաստանէն վախնալու յորդորեն. “Եւ ան աներկիւղ ընթացքը զայեն, որն որ հիմա աշխարհքիս մէջ մտած է, եւ ըստ մասին՝ հաւատոյ վարդապետութիւնն աղէկ չհասկընալէն ծագած է„։ Բայց պիտի ըսուի եղեր որ, կ՚ըսէ, ասանկ վարուելով՝ վտանգի մէջ կը մտնենք որ մեր հակառակորդները սկսին խօսիլ թէ առջի

23) Գործք Լուտ. գերմ. Հատ. Դ. 341. Բ. — 359. Բ։

վարդապետութիւններս եա կը կանչենք. սակայն աւելի լաւագոյն է ան վտանգին մէջ մնալ, քան թէ աւելի երկայն ատեն Հռովմէական անկարգութեան վիճակին մէջ մնալ։ Իսկ նոյն վիճակին վրայ այսպէս կը տրտնջէ. "Շատերը լսելով որ, կ'ըսէ, բաւական թէ հաւատան, մեղքերնին կը ներուի, իրենց հաւատք մը կը հնարեն, եւ անով կը կարծեն որ արդար են, որով ապահով ու յանդուգն կ'ըլլան։ Ասանկ մարմնաւոր ապահովութիւնը յառաջուան ժամանակներէն եղած ամեն մոլորութիւններէն աւելի գէշ ու վնասակար է,,[24]։

Տեսնելով որ շատ քարոզիչներուն՝ բարեգործութեանց վրայ չխօսելովը, կամ մանաւանդ բարեգործութեանց դէմ խօսելովը՝ ժողովուրդը ինքը զինքը ամէն պատուիրաններու պահպանութենէն եւ ամէն օրինաց հնազանդութենէն ազատ կը սեպէր, եւ առանց խղճի ամէն կերպ չարիքը կը գործէր, Մելանքթոն կը գրուցէ թէ "պէտք է որ տասը պատուիրանները մտադրութեամբ քարոզուի, որովհետեւ անոնց մէջ ամէն բարեգործութիւնները կը գտնուին,,։ "Բայց հարկաւոր չէ, կ'աւելցընէ վրան, որ արդեանց վրայ երկայն բարակ վիճուի թէ արդեօք Աստուած մեր բարեգործութեանց համար մեզի վարձք կու տայ. բաւական է որ ժողովուրդը կրթուի թէ Աստուած ատանկ գործքերը կը պահանջէ, ու վարձք կու տայ՝ որովհետեւ խոստացած է, առանց մեր արդեանց։ . . . Բայց շատերը կը պոռան որ Բարեգործութիւնները բան մը չեն արդիւնաւորիր։ Աւելի լաւագոյն կ'ըլլար որ ժողովուրդը բարեգործութիւն ընե-

24. Նոյն տեղը, 344, 350. Բ. եւ Ռիֆէլ, Գիրք Բ. Գլ. Բ. 54, 55։ — Աս գրուածքը դեռ դուրս չելած՝ Ագրիկոլայոս, Լութերին երեւելի ու սիրելի աշակերտներէն մէկը, որուն վրայ ուրիշ անգամ աւելի երկայն խօսելու առիթ կ'ունենանք, Մելանքթոնին՝ գլխաւորաբար ապաշխարութեան վրայ ըրածներուն ատոտիկ դէմ ելաւ, ըսելով որ Լութերի վարդապետութեան հակառակ է, եւ միայն հաւատքով արդարանալուն վարդապետութեան վնաս կը հասցընէ։ Լութեր թէպէտ եւ աս կարծեաց հետ բոլորովին համաձայն էր, ի վերայ այսր ամենայնի Մելանքթոնին ալ դէմ ըսել չուզելով՝ Ագրիկոլայոսը խրատեց որ հանդարտ կենայ, եւ գլխաւորաբար աս կը գրուցէր թէ "Քրիստոս անանկ կ'ընէ որ ամէն բան աղէկի կը դառնայ. աշխարհք եւ մարդկային իմաստութիւնը չեն կրնար աս ծանր մտածմունքն ըմբռնել՝ թէ Քրիստոս մեր արդարութիւնն է, եւ բարեգործութեանց յիմարութիւնը՝ մեզի հետ միացած, բնածին եւ բնութիւն եղած բան մըն է,,։ Տե՛ս Վէտ, Հատ. Գ. 196։ Բայց Ագրիկոլայոս չհնազանդեցաւ, եւ ասոր դէմ Մանչեանց ինդրէր անունով գրուածք մը հրատարակեց։ Աս վէճը շատ հանեց, այնպէս որ կայսրը մէջը մտաւ, ու հրամայեց որ Լութեր, Մելանքթոն, Ագրիկոլայոս եւ ուրիշ քանի մը հոգի Թորկաւ ժողովուին եւ մէջերնին միաբանին։ Ժողովքն եղաւ. եւ թէպէտ Ագրիկոլայոս չհամոզուեցաւ, (ինչպէս որ վերջէն ըսելիքներնէս կը տեսնուի,) ի վերայ այսր ամենայնի նոյն՝ ատենը ձայնը քաշելու ստիպուեցաւ։ Տե՛ս աս — Տե՛ս Վէտէ, Հատ. Գ. 242։ Տե՛ս նաեւ Մենցլ, Հատ. Ա. Գլ. Ջ. 249։

լու յորդորուէր, եւ նուրբ վէճերը մէկդի թող տրուէր: Որովհետեւ թէպէտ ստոյգ է որ Աստուած իր խոստմանց համար բարիք կու տայ՝ չէ թէ մեր բարեգործութեանց համար, բայց պէտք է որ Աստուծոյ հրամայած բարեգործութիւններն ալ կատարուին„: Նոյնպէս կը գրուցէր Մելանքթոն որ Լուտերի ան վարդապետութիւնն ալ թէ Մարդուն ամէն գործքերը մեղք են, ռամիկ ժողովուրդը չիկրնար հասկընալ, եւ անոր համար խրատ կու տար որ ատ բանս ալ քարոզութեանց մէջ մէկդի թող տրուի[25]:

Դարձեալ Մելանքթոն տեսնելով որ քարոզիչները Լուտերի օրինակին հետեւելով՝ բերաննին քրիստոնէական ազատութիւն մըն է առեր անցեր են, եւ ժողովուրդն անով մեծամեծ մոլութիւններու եւ չարիքներու մէջ կ'իյնայ, ասոր ալ դէմ կ'ելլէ: "Շատերը, կ'ըսէ, քրիստոնէական ազատութեան վրայ ալ անզգուշութեամբ կը խօսին, որով մարդիկ ըստ մասին կը կարծեն թէ անանկ ազատ են որ ա՛լ ասկէ ետեւ ամենեւին իշխան կամ մեծ պէտք չէ որ ունենան, եւ ունեցած պարտքերնին հարկ չէ որ հատուցանեն. իսկ ուրիշները կը կարծեն որ քրիստոնէական ազատութիւնն ուրիշ բան չէ, բայց եթէ միս ուտել, խոստովանանք չըլլալ, պահք չբռնել, եւ այլն: Արդ պէտք է որ քարոզիչները ժողովրդեան սաստիկ անպատշաճ մոլորութիւնը յանդիմանեն ու շիտկեն, եւ այնպիսի կերպով սորվեցընեն որ ուղղութեան ծառայէ, չէ թէ չարիքներու պատճառ ըլլայ„: Ուսուցի եւ վարդապետելու է որ, կ'ըսէ, քրիստոնէական ազատութիւնը՝ սատանային իշխանութենէն ազատ ըլլալն է, այս ինքն՝ առանց մեր արդեանցը միայն ի ձեռն Քրիստոսի՝ մեղքերնէս ազատիլը, Մովսիսական օրինաց դատաստանական կարգադրութիւններէն եւ արարողութիւններէն ազատ ըլլալը, եւ վերջապէս ան է որ մարդս եկեղեցւոյ մարդկային կարգաւորութիւնները կատարելու պարտական չէ[26]:

Վերջապէս՝ որովհետեւ Լուտերական քարոզիչներուն բերնին վրայէն՝ քահանայապետին, եպիսկոպոսաց եւ ընդհանրապէս բոլոր ուղղափառաց դէմ խօսած նախատական խօսքերը չափն ու սահմանն անցած էր, անոր համար Մելանքթոն իրենց խրատ կու տայ որ ամէն նախատական խօսքերէն ետ կենան, եւ միայն ընդհանրապէս ու անորոշ կերպով՝ իրենց ունկնդիրներուն մոլութեանց դէմ խօսին, չէ թէ ներկայ չըլլողներուն, այս ինքն՝ պապին, եպիսկոպոսներուն եւ ուրիշ ասոնց նմաններ-

25. Գործք Լուտ. գերմ. Հատ. Դ. 344. Բ. 346: Ռոֆէլ, Գիրք Բ. Գլ. Բ. 55, 56:

26. Գործք Լուտ. գերմ. Հատ. Դ. 353. Բ. 354. Բ:

րուն դէմ։ Սակայն կարծես թէ վախնալով որ ասով քարոզիչները իրենց մէկ պարտքին դէմ ընելու յորդորած ըլլայ, վրան կ՚աւելցընէ. Բայց եթէ ժողովուրդն անոնցմէ զգուշացընելու եւ օրինակ տալու համար[27]։

Աս բաները գրուելէն ետեւ՝ կայսրընտրին առջեւը դրուեցաւ, որ՝ իբրեւ եկեղեցւոյ վերին տեսուչ՝ զանոնք իր իշխանութեանը հաստատէ. ինքն ալ իր հաւանութիւնը չտուած՝ Լուտերին խաւրեց եւ կարծիքն հարցուց։ Իսկ Լուտեր իր կարծիքն աս կերպով տուաւ. "Շատ պարզ գրուած է (աս գիրքը) եւ ժողովրդեան յարմար է։ Բայց թէ հակառակորդները պիտի պարծին եղեր որ ետ կը դառնանք, անիկա բանի տեղ դնելու չէ, ան ալ կը հանդարտի։ Աստուածային բանի մը ձեռք զարնողը պէտք է յանձն առնել որ սատանան անոր դէմ խօսի, ինչպէս որ հարկ եղաւ որ ես ալ մինչեւ հիմա ընեմ։ Մենք ամէն բանէն յառաջ անոր պիտի նայինք որ մերիններուն մէջէն քարոզիչներուն դէմ ըլլողները՝ ասկից առիթ չառնեն նոյն քարոզչաց հակառակ ելլելու եւ զանոնք ստիպելու որ իրենց ուզածը քարոզեն, ինչպէս որ քանի մը տեղ արդէն եղած է„։ Ի վերայ այսր ամենայնի նոյն գրուածքին մէջի մէկ քանի բանին չիհաւնիր, ինչպէս է Մելանքթոնին՝ քահանայապետին ու եպիսկոպոսաց դէմ նախատական խօսքեր խօսիլն արգելելը։ Լուտեր կ՚ուզէ եւ կը հրամայէ որ "Քարոզիչները՝ . . . պապականութիւնն ու անոր հետեւողները սաստիկ դատապարտեն ու վար զարնեն, որովհետեւ, կ՚ըսէ, յայտնի է որ ասոնք Աստուծմէ դատապարտուած են, ինչպէս նաեւ սատանան եւ իր թագաւորութիւնը„[28]։

Ասկից զատ՝ Լուտեր նոյն գրուածքին յառաջաբանութիւն մը շինելով՝ հրատարակեց, որուն մէջ աս մտադրութեան արժանի խօսքերը կը գտնուին։ "Թէպէտ եւ աս գրուածքը խիստ պատուէրի մը պէս չենք կրնար հրատարակել, որպէս զի չըլլայ որ նորէն պապական վճիռներ հանած ըլլանք, հապա պատմութեան մը պէս եւ միանգամայն իբրեւ մեր հաւատքին դաւանութիւնը. ի վերայ այսր ամենայնի կը յուսանք որ ամէն բարեպաշտ ու խաղաղասէր ժողովրդապետները՝ որոնք իրօք Աւետարանին սէր ունին, եւ մեզի հետ միաբան ու միասիրտ մնալու կը բաղձան, . . . աս մեր իշխանին ու ամենաբարերար տիրոջը (կայսրընտրին) փոյթը եւ մեր սէրն ու

27. Նոյն տեղը, 355. Բ։ — Աս նիւթերուն վրայ համառօտ բայց աղէկ կը խօսի նաեւ Մենցլ, Հատ. Ա. Գլ. Զ. 245. — 248։

28. Աս Տը Վէդէ, Հատ. Գ. 211։ Տես նաեւ Մենցլ, Հատ. Ա. Գլ. Զ. 248։

բարի կամքը՝ ապերախտութեամբ ու հպարտութեամբ չէին արհամարհէր. հապա կամակոր ու առանց բանաւորութեան սիրով աս Այցելութեան (Հրահանգին) կը հպատակէին, եւ մեզի հետ միակամ խաղաղութեամբ նոյնին ետեւէն կ'երթան, մինչեւ որ Հոգին սուրբ Աստուած կամ իրենց կամ մեր ձեռօքը աւելի աղէկ բան մ'որոշէ: Բայց թէ որ անանկ յանդգնութեամբ դէմ դնեն, եւ առանց քաղաքական պատճառի փորձեր կերպով մը խռովութիւն ըլլան նէ, ինչպէս որ շատերը կան՝ որոնք միայն չարութեան համար՝ միաբան կամ հաւասար եղած բանը չեն կրնար տանիլ, հապա սրտերնին ու վարքերնին անմիաբան ու ինքնահաւան են, անանկ պէտք է որ մեզմէ քաշուին, ինչպէս որ յարդը կալէն կը քաշուի: Եւ չենք կրնար մենք իրենց համար մեր միաբանութիւնը թող տալ: Բայց աս բանիս մէջն ալ պէտք է որ մեր ամենաբարեբար տէրոջը (կայսրընտրին) օգնութեան ու խորհուրդին դիմենք: Ինչու որ թէպէտ եւ մեր կայսրընտիր տէրը վարդապետելու եւ հոգեւորապէս կառավարելու իշխանութիւն չունի, ի վերայ այսր ամենայնի իբրեւ աշխարհական տէր կամ գլուխ պարտաւոր է զգուշանալու որ իր հպատակներուն մէջ երկպառակութիւն, խռովութիւն ու ապստամբութիւն չըլլէ,,[29]:

Ասանկով ահաւասիկ Լուտերի ձեռօքը՝ քահանայապետին ու եպիսկոպոսաց, կամ մանաւանդ եկեղեցւոյ օրինաւոր իշխանութեան տակէն ելլողներուն, կամ նորոգչին բուն խօսքերը գործածելու համար՝ Աւետարանին ջերօքը՝ դադրի եւ իր զօրացուցիչներուն քաղաքներէն ալ ըլլողներուն՝ Լուտեր իր վերին իշխանութեամբը եւ Սաքսոնիայի կայսրընտրին օգնութեամբը նոր հաւատոյ կանոն եւ նոր միակերպ աստուածային պաշտամանց կարգ մը դրաւ, որուն ամէնքն ալ պէտք էր որ կուրակերպ հնազանդէին, եւ դէմ դնողները՝ պիտի պատժուէին աշխարհական իշխանին հրամանաւը, որն որ՝ Լուտերի ըսածներուն եւ ըրած կարգաւորութիւններուն նայելով՝ կրօնական նիւթերու մէջ անանկ իշխանութիւն մը կ'ունենար՝ զորն որ ինք ո՛չ ուղղափառ եպիսկոպոսաց, ո՛չ քահանայապետին եւ ո՛չ իսկ ընդհանուր ժողովքներուն կու տար: Բայց ինչպէս յայտնի է աս իշխանութիւնն ունեցողը եւ ի գործ դնողը՝ այնչափ աշխարհական իշխանը չէր, որչափ նոյն ինքն Լուտեր:

29. Գործք Լուտ. գերմ. Հատ. Դ. 343. 343. Բ:



# ԳԼՈՒԽ Ժ

## Շփայէրի աւագաժողովները

Դորկաուեան դաշնակցութիւնը։ Շփայէր աւագաժողով մը կը ժողվուի։ Լուտերական իշխաններուն նոյն ժողովին ըրածը։ Բաքեան շփոթութիւն։ Բողոքող իշխանները ուղղափառ իշխաններուն դէմ զէնք կը ժողվեն։ Լուտերին՝ այս բանին վրայ ունեցած կարծիքը։ Շփայէր քաղաքը նորէն աւագաժողով մը կ'ըլլայ։ Լուտերականներ ալ աւագաժողովին հրամանին դէմ կը բողոքեն, ու բողոքական կ'անուանին։

## 1526 — 1529

ԳԵՐՄԱՆԻԱՅԻ գլխաւոր եկեղեցականներէն ու իշխաններէն շատերը՝ որոնց մէջն էր կայսեր եղբայրը Ֆերդինանդ, տեսնելով որ Լուտերի մոլորութիւնները սաստիկ կը տարածուէին, եւ իշխանները՝ որոնք գեղացւոց ապստամբութեան ատեն իրարու հետ միացած էին, զանոնք յաղթելնուն պէս՝ առջի երկպառակութիւնը նորէն ձեռք առին[1], կարծեցին որ աւագաժողով մը ժողվելը՝ ասոր դէմ պատշաճ ճար մըն է։ Ուստի եւ կայսեր անունովը՝ Ֆերդինանդ հրաման տուաւ որ իշխանները Աւկսպուրկ քաղաքը գան ժողվուին։ Իշխաններէն ոմանք ալ հրամանին հետեւելով՝ 1525ին վերջերը եկան նոյն քաղաքը ժողվուեցան. բայց որովհետեւ գեղացւոց ապստամբութեան հետեւանքները դեռ բոլորովին դադրած չըլլալով՝ աւագանւոյն մեծ մասը չէր եկած, անոր համար ժողովականները քանի մը անգամ խօսելէն ետեւ՝ որոշեցին որ երկրորդ տարին (1526ին) Մայիսի սկիզբները Շփայէր ժողվուին։

Լուտերի կողմն եղող իշխանները եւ մանաւանդ մէջերնէն երկու գլխաւոր նախանձախնդիրները, Յովհաննէս՝ Սաքսոնիայի կայսրընտիրը, որն որ իր եղբօրը Ֆրեդերիկոս կայսրընտրին տեղն անցած էր, ու հոգւով մարմնով լուտերականութիւնը կը պաշտպանէր, եւ Փիլիպպոս՝ Հեսսէնի աշխարհատէր կոմսը, վախնալով որ նոյն աւագաժողովին մէջ իրենց դէմ բան մը չորոշուի, ուզեցին բոլոր զօրութիւննին մէկտեղ ժողվել, եւ անոր համար որոշեցին որ արդէն յառաջագոյն սկսած միաբանութիւննին կամ դաշնակցութիւննին նորէն հաստատեն ու զօ-

1. «Ատոնց կրօնական դաւանութեան (կրօնի տարբերութեան) վրայ գնելու, կ'ըսէ Ռանքէ, ամէնքն ալ ապստամբութեան դէմ կռուած էին։ Նորոգութեան թէ բարեկամները թէ թշնամիները միակերպ եռանդեամբ թշնամւոյն դէմ զէնք առած էին։ Բայց երբ որ թշնամին յաղթուեցաւ նէ՝ անկէ ետեւ ալ չի թշնամութիւնը կրկին սաստկութեամբ դուրս ելաւ»։ Գերմ. Գ. Գլ. Ե. Հատ. Բ. 225։

րացընեն։ Ուստի եւ Աւկսպուրկի մէջ իրենց դեսպաններուն ձեռքով եղած խօսակցութիւններուն համաձայն՝ Յովհաննէս կայսրընտիրն ու Փիլիպպոս աշխարհատէր կոմսը Կոթա քաղաքը մէկտեղ եկան, ու Փետրուարի վերջերը մէջերնին աս դաշինքը դրին, որ "Բոլոր զօրութեամբ իրարու օգնեն, թէ որ Աստուծոյ խօսքին (Լուտերի վարդապետութեանց) կամ անկարգութիւնները վերցընելուն համար վրանին յանձակում մ'ըլլայ"։ Իսկզբան աս իրենց դաշնակցութեան ժամանակ մը դրած էին, ըսելով որ աս միաբանութիւննիս այնչափ ժամանակ պիտի տեւէ, մինչեւ որ ըլլալու աւագաժողովին մէջ քրիստոնէական հաւասարութիւն մ'ընդունուի. բայց ետքը աս որոշումը վերցուցին, եւ անոր տեղ աւելցուցին որ ամէն մէկը իր սեպհական ինչքովն ու վնասովը՝ ընկերին պիտ'որ օգնէ։

Թէպէտ աս դաշինքն ընող երկու իշխանները Լուտերականներուն մէջ ամենէն երեւելիներն էին, բայց միայն իրենց միաբանութիւնը մեծ օգուտ մը չէր կրնար ընել, անոր համար նոյն տեղը որոշեցին որ յառաջագոյն մտածածնուն պէս՝ որչափ որ կարելի է՝նէ՝ ուրիշներն ալ իրենց դաշնակցութեան մէջ առնեն։ Աս որոշումն ընելէն ետեւ անմիջապէս իրարմէ բաժնուեցան. Փիլիպպոս՝ Գերմանիայի վերի կողմերը գնաց, իսկ Յովհաննէս՝ վարի կողմերը, որպէս զի ամէն մէկը իր բարեկամները նոյն դաշնակցութեան մէջ մտնելու յորդորէ։ Աշխարհատէր կոմսը երեւելի գործ մը չկրցաւ տեսնել. ասոր հակառակ կայսրընտիրը շատ մարդ իրեն ձգեց, որոնցմէ գլխաւորներն ասոնք են. Եռնեստ՝ Լիւնեպուրկի դուքսը, Փիլիպպոս՝ Կրուպենհակենի դուքսը, Հենրիկոս՝ Մեքլենպուրկի դուքսը, Վոլֆ՝ Անհալդի իշխանը, Ալպերդ՝ Մանսֆելտի կոմսը։

Ասոնք ամէնն ալ Յունիսի սկիզբը Մակտեպուրկ քաղաքը ժողվուեցան, եւ քանի մը օր վերջը կայսրընտիրն ալ իր որդւոյն ու աշխարհատէր կոմսին հետ մէկտեղ հոն հասաւ։ Ամսոյն 10ին սկսան մէջերնին խօսիլ. կայսրընտիրը առջեւնին դրաւ թէ ինչ մեծ վտանգի մէջ են, եւ թէ ինչպէս հարկաւոր է որ Շփայէրի աւագաժողովին մէջ ամէնքը միաբան խօսին ու միաբան գործեն։ Ետքը իրենց յայտնեց որ ինք ու Հեսսէնի աշխարհատէր կոմսը մէջերնին դաշնակցութիւն մը դրած են, եւ առաջարկեց որ իրենք ալ նոյն դաշնակցութեան մէջ մտնեն։ Աս բանիս ամէնքն ալ հաւանեցան, եւ ամսոյն 12ին դաշնակցութեան թղթոյն ստորագրեցին ու իրենց կնքովը կնքեցին։ — Թէպէտ աս դաշնակցութիւնը, ինչպէս տեսանք, Կոթա սկսուեցաւ ու Մակտեպուրկ ամբողջացաւ, բայց հասարակօրէն Տորկաւեան դաշնակցութիւն կ'անուանուի, որովհետեւ (Մարտի

կին) Սաքսոնիայի կողմանէ Դորկաւ քաղաքին մէջ հաստատուած էր[2]։

Լուտերական իշխանները այսպէս պատրաստուելէն ետեւ՝ անմիջապէս Շփայերի աւագաժողովը գացին, որն որ Յունիսի 25ին սկսաւ։ — Իսկզբան Կարոլոսին տեղապահներէն մէկը յայտնեց թէ կայսեր կամքն ան է, որ ամէնքս ալ մէկտեղ՝ ուղղափառ հաւատքն ու մեր նախնիներէն եկած կարգերն ու սովորութիւնները հաստատուն պահելու համար հարկաւոր միջոցները գտնելու ետեւէ իյնանք, ու դէմ դնողներն ըստ արժանւոյն պատժենք. եւ հաշտութիւն ընելու համար՝ Վորմսի աւագաժողովին վճիռն ու հրովարտակը կատարենք։ Բայց որովհետեւ աւագանւոյն գլխաւորներէն ոմանք Լուտերին կողմն էին, եւ Մենցլին ըսածին պէս "Իրենց դրած դաշնակցութեամբը մեծ զօրութիւն ստացած էին„[3], անոր համար ժողովքին մէջ շատ շփոթութիւններ ու հակառակութիւններ ելան, եւ միաբան խորհրդով բան մ'որոշելն անկարելի եղաւ։

Ուղղափառ կողմն եղող իշխանները վախնալով որ աս խռովութեանց մէջ իրենց հակառակորդները զօրանալով՝ կրօնի վնասակար բան մը կ'որոշեն, կայսեր կողմանէ եկած թուղթ մը դուրս հանեցին, որով անիկա կը հրամայէր որ աւագաժողովին մէջ՝ եկեղեցւոյ հին սովորութեանց դէմ բան մը չհաստատուի, հապա միայն Վորմսի աւագաժողովին վճիռը կատարել տալու միջոցներուն վրայ մտածուի։ Լուտերական իշխանները ասոր պատասխան տուին որ Մեր ուզածն ալ ան է որ կայսեր հրամանը գլուխ տարուի. բայց որովհետեւ հակառակութիւնները օրէ օր կ'աճին, եւ Լուտերի կողմը բռնողները շատուոր են, անոր համար կը վախնանք որ Վորմսի աւագաժողովին վճիռը կատարել ուզուինէ՝ ապստամբութիւն մը կը հանեն, եւ չարիքն ու շփոթութիւնները աւելի կը մեծնան։ Ուստի, ըսին, մեզի աղէկ կ'երեւայ որ կայսեր պատգամաւորութիւն մը խաւրենք եւ աղաչենք որ ազգային եկեղեցական ժողովք մը ժողվել տայ, որն որ աս չարիքներուն առջեւն առնելու ետեւէն իյնայ[4]։

Երկրորդ օրը Սաքսոնիայի կայսրընտիրն ու Հեսսէնի աշխարհատէր կոմսը ժողովքին մէջ խնդրեցին որ Մուրացող անուանուած կրօնաւորներուն թիւը քիչնայ, եւ անոնց մէջէն ուրիշ վիճակ մտնել ուզողները՝ ազատ ըլլան կամքերնին կատարելու. տօնի օրերը քիչնան. եկեղեցական պահոց օրէնքը

2. Աս Դորկաւեան դաշնակցութեան պատմութիւնը՝ ամբողջ Ռանքէէն առած ենք. Գիրք Դ. Գլ. Բ. Հատ. Բ. 350. — 353։ Տես Նաեւ Բլանք, Գիրք Զ. Հատ. Բ. 374. — 378։

3. Հատ. Ա. Գլ. Ը. 294։ Նոյնը կը գրուցէ Բլանք ալ, Գիրք Զ. Հատ. Բ. 384։

4. Ռանքէ, Գիրք Դ. Գլ. Բ. Հատ. Բ. 364, 365։

ընդունի. ամէն մարդ կրօնի մէջ ուզած ազատութիւններուն եւ կարգերուն ետեւէն երթալու ազատութիւն ունենայ. եւ վերջապէս ամէն մարդ իշխանութիւն ունենայ ուզած ատեն Աւետարանը քարոզելու: Դարձեալ խնդրեցին որ իրենց եկեղեցի մը տրուի, որուն մէջ աղանդներնուն համեմատ՝ աստուածային պաշտօնները կարենան կատարել: Աւագանւոյն մեծերը պատասխան տուին որ Աս բաներուն վրայ հիմա չիկրնար որոշում մ'ըլլալ. մանաւանդ վերջին խնդրոյն համար ըսին որ բոլորովին քաղքին եպիսկոպոսին ձեռքն է: Աս որ լսեցին՝ լուտերական իշխանները եպիսկոպոսին դիմեցին. եւ երբ որ անիկա ալ խընդիրքնին մերժեց նէ, բարկացան ու սկսան իրենց պալատներուն մէջ հրապարակաւ քարոզութիւն ընել տալ, ու Լուտերին գրած կարգադրութիւններուն համաձայն՝ աստուածային պաշտօն կատարել կու տային: Ամէն օր շատ բազմութիւն հոն կ'երթար, Լուտերի կողմն ըլլողները կրօնական եռանդ մը ցուցընելու, իսկ ուրիշները՝ հետաքրքրութեան համար: Լուտերական իշխանները պահքի օրերը հրապարակաւ միս կ'ուտէին, եւ թէ իրենք թէ իրենց կողմնակիցներին ու ծառաները միշտ աս խօսքը բերաննին ունէին թէ "Աստուծոյ անսպառ խօսքը". Նոյն ծառաներուն զգեստներուն թեւին վրայ ալ՝ "Բան Տեառն մնայ յաւիտեան" խօսքին առջի գրերը բանել տուած էին[5]:

Սպիներին ասանկ դրդութեան մէջ ըլլալով՝ ուղղափառ իշխաններուն անկարելի եղաւ որ ուզածնուն պէս բան մ'առաջ տանին: Միայն աս հաստատեցին (Օգոստոսի 27ին) որ կայսեր մարդ խաւրեն եւ աղաչեն որ երկրին թշուառութեան վրայ գթայ ու շուտ մը Գերմանիա գալով՝ ընդհանուր կամ ազգային (եկեղեցական) ժողովք մը գումարել տայ: Իսկ մինչեւ որ նոյն ժողովքը գումարուի նէ, ըսին, իշխաններէն ամէն մէկը Վորմսի աւագաժողովին վճիռը ջանայ այնպէս կատարել, որ Աստուծոյ ու կայսեր առջեւը կարող ըլլայ համար տալ[6]: — Լուտերական իշխաններուն ուզածն ալ աս էր. որովհետեւ իրենք աս որոշումէն կը հետեւցընէին որ ամէն մարդ իրեն աղէկ երեւցած վարդապետութեան ետեւէն երթալու եւ կրօնի նիւթերու մէջ ուզածն ընելու իշխանութիւն ունի:

Աս աւագաժողովը լմննալէն քանի մը ամիս վերջը (1527ին) մեծ շփոթութիւն մ'ելաւ, եւ քիչ մնաց ուղղափառ եւ Լուտերական իշխաններուն մէջ սաստիկ պատերազմ մը պիտի բացուէր: Աս բաներուն պատճառ եղաւ Գէորգ դքսին մարդիկնե-

5. Բլանք, Գիրք Զ. Հատ. Բ. 383, 384: Մենցլ, Հատ. Ա. Գլ. Ը. 294: Մեռլ տ'Օպինեէ, Հատ. Բ. 225. — 227:

6. Ալցոգ, Գիրք Զ. 82. Բ: Սէքենտորֆ, Գիրք Բ. Համ. ձե. 45: Մենցլ, Հատ. Ա. Գլ. Ը. 296:

րէն մէկը՝ Բոպք անունով, որն որ հոգւով մարմնով Լուտերի կողմն էր, եւ որուն համար Մէքէնսարֆ կ՚ըսէ թէ «Նենգաւոր ու շռայլ մարդ մըն էր, եւ աս մոլութիւններով նաեւ ուրիշ շատ մոլութիւններու մէջ ինկած էր» 7։ Ասիկա Հեսսենի աշխարհատէր կոմսին գնաց իմացուց որ ուղղափառ իշխանները մէջերնին ծածուկ միացած դաշինք դրած են որ զձեզ նուաճեն ու կրօննիդ ջնջեն։ Աս խօսքը հաւատացընելու համար դաշնադրութեան թղթի մը օրինակ տուաւ իրեն, որն որ ինքը շինած էր, եւ խոստացաւ որ հարկ ըլլայ նէ՝ բուն սկզբնագիրն ալ կը ցուցընեմ. եւ աս բանիս համար աշխարհատէր կոմսէն 4000 ֆիորին առաւ 8։ — Փիլիպպոս աս խաբեբայ ու նենգաւոր մարդուն խօսքին հաւատալով՝ շուտ մը գնաց Սաքսոնիայի կայսրընտիրն ու անոր որդին համոզեց, եւ երեքը մէկտեղ եռեւէն ել-նալով՝ Դորկաւեան դաշնակցութեան մէջ ըլլող Լուտերական իշխանները սկսան զօրք ժողվել եւ ամէն կողմ իրենց հաւատակիցներուն թղթեր գրելով՝ դրդեցին ոտք հանեցին։ Աս ալ որոշեցին որ Լեհերու թագաւորին ու Պրուսիայի դքսին թուղթ գրեն ու զիրենք գրգռեն որ Փերդինանդին երկիրներուն վրայ յարձակին 9։

Ուղղափառ իշխանները աս բաները տեսնելով՝ սկսան զար-

7. Գիրք Բ. Համ. ԻԵ. 94. — Բոլոր բողոքող մատենագիրները աս մարդուն պարսաւական անուններ տալէն չեն դադրիր. Բռանքէ զինքը «Զվստահացուցելու, խաբեբայ ու գէշ մարդ» կ՚անուանէ։ Գիէր Ե. Գլ. Բ. Հատ. Գ. 44։ Նոյն կարծիքն ունի նաեւ Մեալ տ՚Օպինեէ (Հատ. Բ. 269.). բայց չեմ գիտեր ուսկից իմացեր է որ նոյն մարդը «պարէկարգութեան (լուտերականութեան) գլխաւոր թշնամիներէն մէկն» է եղեր։

8. Մեքենսարֆ, Գիրք Բ. Համ. ԻԵ. 95։ — Ռիֆէլ (Գիէր Բ. Գլ. Ը. 357. Ծանօթ.) նոյն դաշնակցութեան շինծու թուղթը քննելով՝ կը ցուցընէ որ մէջը զանազան մեծ սխալմունքներ կան. եւ կը զրուցէ որ դուցէ Սաքսոնիայի կայսրընտիրն ու իր որդին ասոնց միտ դնելով՝ արդէն ի սկզբանէ անոր հարազատ ըլլալուն վրայ կը տարակուսէին, սակայն եւ պատրաստութիւննին՝ աշխարհատէր կոմսին ուզածին չափ շուտով չէին տեսներ. որով գանէ քիչ մը ատեն ան քաղաքական պատերազմն արգելուեցաւ, որն որ ետ-քը Գերմանիայի գլուխը այնչափ մեծ չարիքներ բերաւ։

9. Բլանք, Գիրք Զ. Հատ. Բ. 420։ — Ռիֆէլ՝ Ռոմէլ բողոքող մատենագրէն առնելով՝ աստոր վրայ եռեւս պարագաներն ալ կ՚աւելցընէ։ Կայսրընտիրն ու աշխարհատէր կոմսը իրենց դաշնադրութիւնը նորոգեցին, եւ յանձն առին որ 26,000 հոգի, եւ պատերազմի ծախուց համար 60,000 թալեր տան. Պրուսիայէն, Դանիայէն, Մեքլենպուրկէն, Լիւնեպուրկէն եւ Փոմերանիայէն օգնութիւն խնդրեցին, որոնք խոստացան տալ։ Ասկից զատ՝ աշխարհատէր կոմսը նենգաւոր Բոպքը Յովհ. Զաբոլեայէն խաւրեց, որն որ Հունգարիան Փերդինանդոս թագաւորին ձեռքէն առնել կ՚ուզէր, եւ ասիկա խոստացաւ որ ի սկզբան 100,000 թալեր տայ, եւ ետքը ամէն ամիս 20,000 թալեր, եւ միանգամայն՝ Փերդինանդին դէմ գնելու համար Գաղղիայէն ու Վենետիկէն առած օգնութեան կեան ալ իրենց խաւ-րէ։ Նոյն աշխարհատէր կոմսը նաեւ Գաղղիայի հետ խօսակցելու սկսաւ։ Գիէր Բ. Գլ. Ը. 358. Ծանօթ.

մնալ, եւ քանի մը անգամ Լուտերականաց գլխաւորներուն հարցուցին որ աս պատերազմի պատրաստութեանց պատճառն ու վախճանն ի՞նչ է։ Անոնք քիչ մը ատեն անորոշ ու ծածուկ պատասխաններ կու տային. բայց վերջապէս երբ որ պատերազմի պատրաստութիւնները լմնցաւ նէ, Հեսսենի աշխարհատէր կոմսը ան Բաքէն առած չինծու դաշնակցութեան թուղթը հրատարակեց, եւ յայտնեց որ աս դաշնակցութեան դէմ դնելու համար մենք ալ մերիններուն հետ կը միաբանինք։ Ան ատեն ուղղափառ իշխանները խնդրեցին որ նոյն թղթին ուսկից իր ձեռքն անցած ըլլալն իմացընէ։ Ասով բանը դուրս ելաւ. եւ երբ որ տիրանենգը ստիպեցին որ խոստացածին համեմատ դաշնագրութեան թղթին սկզբնագիրը ցուցընէ, խայտառակեցաւ ու խաբէութիւնն իմացուեցաւ [10]։ Ի վերայ այսր ամենայնի լուտերական իշխանները եւ գլխաւորաբար աշխարհատէր կոմսը աս ալ բաւական չսեպեցին, հապա ըսին որ Զօրքերը չենք ցրուեր, մինչեւ որ եպիսկոպոսները՝ զօրք ժողվելու համար ըրած ծախքերնին չեն հատուցաներ [11]։ Աս պահանջմունքը թէպէտ բոլորովին անիրաւ էր, ի վերայ այսր ամենայնի եպիսկոպոսները՝ խաղաղութեան սիրոյն համար, եւ որպէս զի թէ հայրենեաց եւ թէ կրօնքին մեծագոյն վնաս չըլլայ, յանձն առին, եւ Լուտերականներուն ուզածին չափ ստակ տուին։ Ասով եւ աս խռովութիւնները տարի մը տեւելէն ետեւ՝ 1528ին Յունիսի մէջ լմնցան [12]։

10. Երբ որ Գէորգ դուքսն իմացաւ որ բողոքող իշխաններուն տեսած պատրաստութեան պատճառն ինչ է, գրեց որ աս բանս հնարողն անամօթ, ստախօս ու խաբեբայ է, եւ վրան աւելցուց որ եթէ աշխարհատէր կոմսը նոյն մարդը չ'անուաներ նէ՝ ամէն մարդ տարակուսի կ'երթայ որ ինք (աշխարհատէր կոմսն) ըլլայ բոլորը հնարողը։ Ասով Փիլիպպոս ստիպուեցաւ Բաքը ձեռքէ թողուլ։ Աս տիրանենգին վրայ Գոտէլ քաղաքը՝ զանազան իշխանաց երեսփոխաններուն առջեւը դատաստան եղաւ. չարագործը նեղ մնաց, իրարու հակառակ պատասխաններ տուաւ, եւ նենգութիւնն ալ աստիճանի յայտնուեցաւ, մինչեւ աշխարհատէր կոմսը շատ անգամ կ'ըսէր թէ կեանքիս մէջ երբեք գլուխս աս գործքին պէս անհաճոյ բան մ'եկած չունէր։ Տես Բլանք, Գիրք Զ. Հատ. Բ. 425. — 429. Ռիֆֆել, Գիրք Բ. Գլ. Ը. 360։

11. Բլանք, Գիրք Զ. Հատ. Բ. 432։

12. Սէքէնտորֆ, Գիրք Բ. Համ. ԻԵ. 94. — 96։ Սլէյտան, Գիրք Զ. 90, 91։ Մէնցլ, Հատ. Ա. Գլ. Թ. 313. — 315։ Կուստաւ Փֆիցէր, Գլ. ԺԶ. 362։ Տես նաեւ Բլանք, Գիրք Զ. Հատ. Բ. 415. — 435. եւ Մեռլ տ'Օպինեէ, Հատ. Բ. 269. — 277։ — Թէպէտ Սէքէնտորֆ, չեմ գիտեր ինչ հրաշքով, աս դէպքին մէջ ուղղափառ իշխանաց իրաւունք կու տայ, Բաքը վար կը զարնէ, ըրած գործքը՝ նենգութիւն ու խաբէութիւն կ'անուանէ, ի վերայ այսր ամենայնի կը ջանայ որ Լուտերն ու անոր կողմնակիցներն ալ պաշտպանէ։ Միայն աշխարհատէր կոմսին անխոհեմութիւնն ու Բաքի պէս մարդու մը հաւատք ընծայելը կը պարսաւէ, եւ պատմութիւնն աս խօսքով կը լմնցընէ. "Ան դէպքէն իշխաններն ու անոնց խորհրդականները խրատ կրնան առնել թէ մարդս՝ որչափ զգուշաւորութեամբ եւ կիրքերը չափաւորելով գործք գործելու է։ Ինչ որ ըսուի

Մելանքթոն աս բաները ամենեւին չէր ուզեր, եւ եղածներուն վրայ շատ կ՚ամըչնար ու կը տրտմէր. անոր համար ալ յառաջագոյն աշխարհատէր կոմսին գրած էր որ Ամէն չարիք կրելը՝ Աւետարանին համար զէնք առնելէն աւելի կ՚ուզեմ: Բայց Լուտերին կարծիքը բոլորովին ասոր հակառակ էր. վասն զի թէպէտ եւ իր կարծիքը հարցուած ատեն՝ պատասխան կու տար թէ Պէտք չէ մեկէն պատերազմի ելլել, սակայն միշտ կը զըրուցէր որ պատրաստուելու, դաշնակցութիւն ընելու, մարդ ժողվելու է. եւ թէպէտ ետքը բոլոր Գերմանիայի մէջ յայտնուեցաւ որ ան ուղղափառներուն դաշնակցութիւնը սուտ ու շինծու բան է, ի վերայ այսր ամենայնի Լուտեր այնպէս երեւակայելով կամ այնպէս հաւատալ ուզելով որ ստոյգ է, իրեն կողմին իշխանները ուղղափառաց եւ մասնաւորապէս Գէորգ դքսին դէմ կը գրգռէր: "Խաղաղութիւնը հաստատուելէն ետեւ, կ՚ըսէ Բլանք, Լուտեր դաշնակցութեան պատճառաւ բուն պատերազմ մը սկսաւ 13: Յայտնապէս կը զրուցէր թէ ես աղէկ գիտեմ որ Բայքին ըսածները խաբէութիւն չեն, իր բարեկամներուն գրած ամէն նամակներուն մէջ կ՚ըսէր որ (ուղղափառ) իշխաններուն իրենք զիրենք ջատագովելու համար տուած պատճառները՝ անհիմն բաներ են. եւ Գէորգ դքսին ասոր վրայ պատշաճ ծանրութեամբ ըրած տրտունջներուն՝ սաստիկ տմարդի, խիստ դառն եւ բոլորովին նախատական ու արհամարհական կերպով պատասխան կու տար" 14: — Ուստի եւ մէկ նկատմամբ իրաւունք ունէր Մելանքթոն գրելու թէ "Երբ որ կը մտածեմ որ աս բաներուս համար մեր բարի ու իրաւացի

նէ ըսուի, ամենեւին տարակոյս չկայ որ աշխարհատէր կոմսին երիտասարդական եռանդը՝ Բայքին նենգաւորութենէն խաբուեցաւ":

13. Գրեթէ նոյնը բառ առ բառ կը զրուցէ նաեւ Մեռլ տ՚Օպինեէ, Հատ. Բ. 276, 277:

14. Գիրք Զ. Հատ. Բ. 434: — Նոյն մատենագիրը ուրիշ տեղ մ՚ալ (Գիրք Է. Հատ. Գ. Մասն Ա. 27. Ծանօթ. 22.) աս նիւթին վրայ այսպէս կը խօսի. "Չինքնար ուրացուիլ որ Լուտեր աս բանիս (Գէորգ դքսին՝ Լուտերին դէմ գրգռուելուն) չափէ դուրս անպատշաճ կերպով մը պատճառ եղած չըլլայ: Լուտեր՝ Բայքին պատճառաւ եղած խռովութիւններուն վրայ՝ առ Լինք նամակ մը գրած էր, որուն մէջ Գէորգ դքսին վրայ սաստիկ խստութեամբ կը խօսէր. եւ նոյն թուղթը դժբախտութեամբ դքսին ձեռքն անցաւ: Ուստի հետեւ Լուտեր նոյն թղթին մէջ յայտնապէս կը զրուցէր որ դուքսը՝ Բայքին ըրած դաշնակցութենէն այնչափ անմասն չէ, որչափ որ կը ձեւացընէ, անոր համար գրուածքի մը մէջ դուքսը ինքը զինքն արդարացուց. բայց նոյն գրուածքին մէջ Լուտերին վրայ արտաքոյ կարգի չափաւորութեամբ կը խօսէր. իսկ Լուտեր՝ առանց ուրիշ բանով գրգռուած ըլլալու՝ ... դքսին դէմ գրուածք մը դուրս հանեց, որուն մէջ ամենասաստիկ խիստ նախատական կերպով անոր վրայ կը յարձակէր: Լուտերին աս անխոհեմութեան վրայ նոյն իսկ կայսրընտրը (որմէ դուքսը հատուցում խնդրած էր) այնչափ նեղացաւ, որ Լուտերին հրամայեց թէ անկէ ետեւ բան մը հրատարակել ուզէ նէ՝ չտպած միշտ իրեն խաւրէ":

կողմը մրշակ պլտի ոտքատաւորի, գրեթէ կը վհատիմ, եւ աս վէճերուն ու նեղութիւններուն տակը կը ճնշուիմ„[15]։

Նոյնպէսով Գերմանիայիս վիճակն երթալով աւելի կը գէշնար, եւ անմիաբանութիւնն ու խռովութիւնները օրէ օր կը մեծնային։ Ստոյգ է Շփայերի (1526ին) աւագաժողովէն վերջը քանի մը անգամ նորէն ժողովքներ եղած էին. բայց ամենեւին օգուտ մը չէին ըրած։ Անոր համար կայսրը 1528ին նոյեմբերի վերջերը հրաման հանեց որ երկրորդ տարին նոյն Շփայեր քաղաքը նորէն աւագաժողով մ'ըլլայ։ Աս հրամանին համաձայն շատ իշխաններ ու Գերմանիայի ազատ քաղաքներու պատգամաւորներ եկան նոյն տեղը ժողվուեցան (Մարտի 15ին), եւ սկսան մտածել թէ աս կրօնի համար եղած խռովութիւններն ինչպէս կրնան դադրեցընել։ Վէճն ու մաքառումները երկայն ժամանակ տեւեցին, եւ առջեւնին մեծամեծ դժուարութիւններ ելլելով՝ չէին կրնար իրարու հետ միաբանիլ։ Երեք տարի յառաջ (1526ին) նոյն քաղաքը գումարուած աւագաժողովին վճռոյն վրայ խօսք բացուեցաւ. աւետարանականները սկսան տրտնջել թէ նոյն վճիռը շատ անկարգութիւններու եւ չարիքներու պատճառ կ'ըլլայ, որովհետեւ շատերը աս վճռոյն վրայ հիմնելով իրենց տէրութիւններուն մէջ նոր ու չլսուած մոլորութիւններ կը տարածեն[16], իսկ Լուտերի կողմնակիցները կը պնդէին թէ ան վճռէն հեռանալու չէ։ Երկայն ատեն աս բանիս վրայ խօսելէն ու վիճելէն ետքը՝ վերջապէս կայսեր եղբայրը՝ Ֆերդինանդոս, որն որ աւագաժողովին մէջ կայսեր տեղապահն էր, աւագանւոյն մեծ մասին հետ[17] ուրիշ նոր վճիռ մը հանեցին, որն որ իբրեւ թէ առջի վճռոյն մեկնութիւն պիտ'որ ըլլար։

Աս վճռոյն մէջ նախ կը հաստատէին որ ան տեղերը՝ ուր որ Վորմսի աւագաժողովին վճիռն ընդունուած է, հաստատուն մնայ, մինչեւ որ կայսեր խոստացած եկեղեցական ժողովքը գումարուի։ Երկրորդ, ան տեղերը՝ ուր որ նոր աղանդը տարածուած է, եւ առանց մեծ խռովութիւն հանելու չիկրնար թող տրուիլ, գոնէ ասկէ վերջը մինչեւ որ եկեղեցական ժողովքը գումարուի նէ՝ նորէն փոփոխութիւններ չըլլայ։ Երրորդ, ամենեւին մէկը

15. Աս Ռիֆէլի Գիրք Բ. Գլ. Ը. 360. Ծանօթ. եւ աս Պոսիւէի, Գիրք Բ. Համ. ԽԴ։

16. "Այսպէս էր որ, կ'ըսէ Ցէկլառն, շատերը առիկա (Շփայերի աւագաժողովին վճիռը) չարաչար կը գործածէին, եւ աս վճռոյն անուամբը՝ ամէն տեսակ նոր ու զարհուրելի վարդապետութիւնները կը պաշտպանուէին ու կը ջատագովուէին„։ Գէրլ Զ. 94։

17. Աս վճռոյն համար Կուստաւ Ֆիցէր կը խոստովանի որ "Զայնից կամ քուէից բազմութեամբ„ տրուեցաւ։ Գլ. ԺԶ. 326։ Նոյնպէս Բլանք (Գէրլ Զ. Հատ. Բ. 444.) ալ կը ցուցնէ որ "Մեծագոյն առաւելութեամբ քուէից„ տրուեցաւ։

Խորհրդականաց՝ սուրբ հաղորդութեան վրայ ունեցած կարծիքը չընդունի, ամենեւին տեղէ մը աւելի վերջը պատարագ ընելը չվերցուի, եւ Լուտերականներուն աղանդը տարածուած տեղերն ալ՝ մէկու մը պատարագ ընելը կամ պատարագ տեսնելը չարգելուի։ Չորրորդ, Կրկնակնունքները՝ թէ որ իրենց խոտորնակ աղանդին եւ ապստամբական շարժմունքներուն մէջ հաստատուն մնալու ըլլան նէ՝ մահուան պատիժ ընդունին։ Հինգերորդ, քարոզիչները Նիւռնպերկի երկու ազգաժողովներուն վճիռները հաստատուն պահեն, ճառերնուն մէջ մէկը չնախատեն, ժողովրդեան՝ իրենց իշխաններուն դէմ ապստամբելու առիթ չտան, ու Աւետարանը Ս. Հարց վարդապետութեան համաձայն քարոզեն։ Վեցերորդ, ազգաժողովին մէջի իշխաները իրարու հետ խաղաղութեամբ վարուին, կրօնի պատճառաւ մէկը մէկալին վնաս չհասցընէ. ամենեւին մէկը ուրիշին հպատակը իր պաշտպանութեան տակը չառնէ. եւ թէ որ մէկը ասոնց հակառակը գործելու ըլլայ նէ՝ իշխանութենէն վար իյնայ[18]։

Թէպէտ եւ աս վճիռը շատ չափաւորեալ եւ ազատական, մանաւանդ թէ աւելի Լուտերի կողմն ըլլողներուն նպաստաւոր էր, որովհետեւ՝ Մենցլին ըսածին պէս[19], աս վճռոյն նայելով՝ Նոր կրօնքը կամ Լուտերի աղանդը մինչեւ ընդհանուր կամ ազգային (եկեղեցական) ժողովքի մը վճիռ տալը՝ հանդարտ եւ խաղաղ պիտի մնար, ու Լուտերականք բոլորովին կրօնական ազատութիւն եւ ուղղափառաց հետ հաւասարութիւն պիտ'որ ունենային, ի վերայ այսր ամենայնի լուտերական իշխանք ասով ալ գոհ չեղան. եւ Յովհաննէս՝ Սաքսոնիայի կայսրընտիրը, Գէորգ՝ Պրանտեպուրկի սահմանակալ կոմսը, Եռնեստ ու Փրանկիսկոս՝ Պրաւնշուայկ-Լիւնեպուրկի դքսերը, Փիլիպպոս՝ Հեսսէնի աշխարհատէր կոմսը, Վոլֆկանկ՝ Անհալդի իշխանը, եւ 14 ազատ քաղաքներու պատգամաւորներ նոյն վճռոյն սաստիկ դէմ դարձան. եւ ժողովքին մէջ հրապարակաւ բողոքելով՝ յայտնեցին որ աս վճիռը չենք ընդունիր (Ապրիլ 19ին), վասն զի աւետարանական ճշմարտութեան հակառակ է։ Խօսքով բողոքելնուն ալ գոհ չըլլալով, նոյն բողոքումնին՝ կայսեր ու գումարուելու ընդհանուր կամ ազգային (եկեղեցական) ժողովքին ուղղուած գրուածքի մը մէջ գրին, եւ անմիջապէս երեք դեսպանի ձեռքով կայսեր խաւրեցին։

Բողոքման թղթին մէջ բերած պատճառնին աս էր թէ որովհետեւ Շփայէրի առաջին (1526ին) ազգաժողովը՝ Վորմսի

18. Ալէքսանտ., Գիրք Զ. 94։ Կուտատու Ֆիցեր, Գլ. ԺԶ. 317։ Մենցլ. Հատ. Ա. Գլ. Թ. 316։ 19. Հատ. Ա. Գլ. Թ. 317։

աւագաժողովին վճիռն անգործ թող տալու համար ամենուն հաւանութեամբը վճիռ տուած էր ; հիմա նոյն վճռոյն հակառակ վճիռ մը տալու համար՝ մեծ մասին հաւանութիւնը բաւական չէ, հապա պէտք է որ ամէնքը մէկտեղ միաբանին: Դարձեալ աս կը զրուցէին որ ըստ խղճի մտաց չենք կրնար յանձն առնել որ Աւետարանը կամ Աստուծոյ խօսքը (այս ինքն՝ Լուտերի մոլորութիւնները) ընդունուած տեղերը՝ հին կրօնքը հաստատուն մնայ ու նոյն կրօնքին ծէսերը պահուին, եւ գլխաւորաբար պատարագ ըլլայ, հապա պէտք է ջանանք որ ջնջուի 20:

20. Առջի պատճառին վրայ Մենցլ այսպէս կը խօսի. "Աս բանիս վրայ որոշակի օրէնք մը չկար. միայն աս կ'ըլլար որ կայսերական իշխանութեան տկարանալէն վերջը ան իշխանները՝ որոնք ուրիշներուն տուած վճիռը չէին հաւներ, նոյն վճիռը ի գործ դնելէն՝ ձեռքերնէն եկածին չափ՝ իրենք զիրենք ազատ կը կացուցանէին,, : Իսկ երկրորդ պատճառանքին վրայ այսպէս կը զրուցէ. "Աս ընդդէմ դառնալնին այնպիսի վճռոյ մը՝ որն որ ըստ ինքեան նոր կրօնին ու նոր եկեղեցւոյ կարգին՝ մնալու հրաման կու տար, եւ միայն ան կ'ուզէր որ ուրիշներն ալ իրենց կրօնին մէջ հանդարտ ձգեն, . . . պէտք է որ արտաքոյ կարգի բան մ'երեւայ. որովհետեւ հասարակօրէն նոր եկեղեցւոյ մը կողմնակիցները մեծապէս գոհ կ'ըլլան թէ որ կռուով ստացած սահմաններնուն մէջ ազատութեամբ մնալու եւ գործելու հրաման առնեն: Բայց նոյն ատեն բողոքողներուն կողմը աս յանդուգն ու անհամբեր . . . հոգին ունէր, որ կը կարծէր թէ իր ըրած նորութիւնը՝ երանութեան հասնելու ճշմարիտ ու ընդհանուր ճամբան է . . . եւ թէ պէտք է որ նոյն ճամբան՝ բոլոր երկրի վրայ եղող ամէն քրիստոնեաներուն առջեւը բացուի,, : Հոփ. Ա. Գլ. Բ. 318, 319: Նոյնպէս Բլանք ալ այսպէս կը խօսի. "Առջի բերան մարդ կը զարմանայ թէ ինչպէս գոհ չեն ըլլար այնպիսի վճռով՝ որն որ իբրեւ թէ զիրենք ամէն հալածմունքներէն կ'ապահովցընէր, եւ իրենց կարգադրութիւնները իբրեւ թէ օրէնքով մը կը հաստատէր: Այնչափ ժամանակէ վեր պարապ տեղ խնդրած ու բաղձացած բաներնին հիմա իրենց կը տրուէր: Իրենց հիմա անանկ բաներ կը շնորհուէր, որոնք ութը տարի յառաջ Լուտեր եւ իր բարեկամները մտքերնէն ալ չէին կրնար անցընել, եւ կամ ստուգիւ շնորհակալութեամբ եւ ուրախութեամբ ընդունած կ'ըլլային: Իրենց կը խոստացուէր որ զիրենք նոր կրօններնուն մէջ հանդարտ ու նոր կարծիքներնուն մէջ հանգիստ թող կու տան. եւ իրենցմէ ուրիշ բան չէր խնդրուէր՝ բայց ան միայն որ իրենք ալ ուրիշները իրենց կրօնին ու կարծիքներուն մէջ հանդարտ թողուն: Սակայն այնպէս ալ աս թէեւութիւնը իրենց խիստ կու գար: Ստուգիւ իրենց բռնած ճամբան աս կերպով մտածելով՝ չէ թէ միայն անհաւան ու յանդուգն՝ հապա նաեւ շատ ալ աւելի կրնայ ցուցուիլ, բայց բարեբախտութեամբ աս ալ ստոյգ է որ նոյնպէս դիւրին է զիրենք արդարացընելը: Թէպէտ եւ իրենց եղած առաջարկութիւնը նպաստաւոր ու արդար կ'երեւար, բայց իրենք ալ բաւական պատճառ ունէին կարծելու որ դրուած թեւութիւններով առանց իրենց խղճին, պատուոյն ու օգտին դէմ ընելու չեն կրնար ընդունիլ,, : Գիէր Ձ. Հոփ. Բ. 444, 445: Ասոնք գրելէն վերջը՝ բողոքողներուն պատճառները կը բերէ, որոնք վերը յիշատակեցինք. ու ետքը վրան խօսք մը կ'աւելցընէ, որով բողոքողներուն՝ աս վճռոյն դէմ ելլելուն միակ ու ճշմարիտ պատճառը կը յայտնուի: Սաքսոնիայի կայսրընտիրը, կ'ըսէ, աս աստուածաբանական պատճառներէն զատ՝ քաղաքական պատճառ մ'ալ ունէր, այս ինքն՝ յայտնի կը տեսնէր որ աս որոշմամբ՝ իրենց կողմնակցութեան մէջ անկէ ետեւ ուրիշներն ալ ընդունելն ու զօրանալը անկարելի կ'ըլլայ: 448, 449:

Որ է ըսել՝ մէկ կողմանէ իրենք իրենց համար կրօնի ազատութիւն ընդունելէն ետեւ՝ նոյն ազատութիւնն ուղղափառաց կը զլանային. որով կրօնի ազատութեան անուամբ՝ ուրիշ բան չէր իմացուեր, բայց եթէ Լուտերական ըլլալու ազատութիւն։

Ասանկով Շփայերի աս երկրորդ աւագաժողովին ալ՝ առաջինէն աւելի բան մը չկատարած՝ լմնցաւ։ — Բայց աս աւագաժողովը Լուտերականաց մանաւանդ թէ բոլոր Նորաղանդներուն պատմութեան մէջ շատ երեւելի է. որովհետեւ նոյն ժամանակէն է որ աս բողոք ընող իշխաններուն եւ անոնց կողմնակիցներուն՝ Բողոքող կամ Բողոքական (Բրոդեսդան) անունը դրուեցաւ. եւ անկէ վերջը նախնեաց սուրբ կրօնքէն բոլոր զատուողներուն ալ սեպհականուեցաւ նոյն անունը։



# ԳԼՈՒԽ ԺԸ

## Մարպուրկի բանակցութիւնը

Լութերականներուն ու Զուինգլիականներուն մէջ եղած անմիաբանութիւնն ու գժտութիւնը: Լութերին հետեւած սկզբունքներուն վրայ խորհրդածութիւն: Հեսսենի աշխարհատէր իշխանը երկու աղանդները իրարու հետ միաբանել կ'ուզէ: Երկու կողմանէ ալ երեւելիները Մարպուրկ կը ժողվուին: Առանձին ու հրապարակաւ վիճելով՝ տանի մը բանի մէջ իրարու հետ կը միաբանին: Գլխաւոր խնդրոյն մէջ չկրնալով միաբանիլ՝ վերեւերոյ եղբայրութիւն մը կ'ընեն, որն որ երկուքն չերեւար ու նորէն կ'աւրուի:

## 1529

**ԿՐՕՆԱԿԱՆ** խռովութիւնները երթալով կը զօրանային ու տարբեր կերպարանք մը կը ստանային: Ա՛լ հիմա յառաջուան պէս՝ կրօնի նորոգիչ Լուտեր միայն չէր, հապա ուրիշ հերձուածապետներ ալ գլուխ վերցուցած՝ իրեն չափ ալ չէ նէ՝ գոնէ անկէց քիչ մը նուազ յանդգնութեամբ ամէն մէկերնին ինքնիշխան ըլլալ ու խօսքերնին յառաջ տանիլ կ'ուզէին, որով մինչեւ նոյն ատեններն եղած չարիքները աւելի եւս կը մեծնային: Զուինգլիականք կամ Խորհրդականք, Կրկնակնունքները եւ ուրիշ աղանդաւորներ՝ չէ թէ միայն ուղղափառներէն, հապա նաեւ Լուտերականներէն բոլորովին տարբեր եւ առանձին աղանդներ կամ բաժիններ կը կացուցանէին, եւ թէ՛ ուղղափառները թէ՛ զԼուտերականները հաւասարապէս կ'ատէին, եւ իրարու հետ միշտ սաստիկ կռուոյ մէջ էին: Միշտ իրարու դէմ սաստիկ դառնութեամբ, խստութեամբ ու թշնամութեամբ կը խօսէին ու կը գրէին, միշտ մէկզմէկ՝ Քրիստոսի թշնամի, ուրացող, սատանայի ծառայ ու դիւահար կը կանչէին. եւ ամէն մէկ աղանդ կը պարծէր որ Քրիստոսի Հոգին՝ մենք միայն ունինք, միայն մենք Աստուծոյ խօսքը ճշմարտութեամբ ու անարատ կը քարոզենք, միայն մենք Աւետարանին պաշտպանն ու ջատագովն ենք: Գլխաւորաբար Լուտեր միշտ ուրիշ աղանդաւորաց դէմ շատ սաստկութեամբ կը գրէր, եւ սաստկութեամբ ու բռնութեամբ կը վարուէր. միանգամայն անոնց դէմ դնել կրնալու եւ զանոնք յաղթահարելու համար այնպիսի սկզբանց ետեւէ երթալու կը սկսէր, որոնց որ՝ իր նորոգութեան ձեռք զարկած ատեն բոլորովին հակառակ եղած եւ իբրեւ կրօնական ազատութեան ու Ս. Գրոց խօսքերուն հետ չհամաձայնող բաներ մերժած էր: Լուտերին բռնած ճամբան բացայայտ իմանալու համար՝ հարկ է որ նոյն սկզբունքները հոստեղս դնենք:

Առաջին. Եկեղեցին (այս ինքն՝ Լութերին հիմնած եկեղեցին) է Սիւն եւ հաստատութիւն ճշմարտութեան, որն որ պիտի չկործանի, եւ անոր համար մինչեւ աշխարհքիս վերջը չիկրնար մոլորիլ, որովհետեւ Քրիստոս եւ Հոգին սուրբ անոր մէջ ներկայ են [1]։

Երկրորդ. Այս եկեղեցին մի է եւ միայն փրկութեան տանող, անկէց դուրս փրկութիւն չկայ, հապա յաւիտենական դատապարտութիւն [2]։

Երրորդ. Հերետիկոս պէտք է սեպել չէ թէ միայն զանոնք՝ որոնք Ս. Գիրքը իրենց առանձնական կարծեաց համաձայն ու յայտնի իմաստին (այս ինքն՝ Լութերին անոնց տուած իմաստին կամ մեկնութեան) դէմ կը մեկնեն. հապա նաեւ զանոնք՝ որոնք բոլոր եկեղեցւոյ ինկզքանէ մինչեւ հիմա միաբան վարդապետածին դէմ բան մը կը վարդապետեն. եւ հարկ չկայ որ աս բանս շատ նիւթերու մէջ ըլլայ, հապա բաւական է որ ինկզքանէ մինչեւ հիմա վարդապետուած մինակ մէկ նիւթի մէջ ըլլայ [3]։

Չորրորդ. Այս եկեղեցւոյն մէջ, որն որ Աստուած հաստատած է եւ որուն Քրիստոս եւ Հոգին սուրբ կ'առաջնորդեն, միայն նոյն ինքն Աստուած կը կառավարէ։ Ի վերայ այսր ամենայնի ինք իր սպասաւորներն ու պաշտօնեաներն ունի, այս ինքն՝ քարոզիչները, որոնք Աստուծոյ խօսքը կը քարոզեն, խոր-

1. Այսպէս կը գրէ Լութեր Մեծ Քրիստոնէականին մէջ։ — «Լութեր շատ մեծ շփոթութեան մէջ ինկաւ, կ'ըսէ Լեւոն, անով՝ որ կամ Վիդէնպէրկէն եղող վարդապետներ՝ ինչպէս Գարոլշդատ (Գարլշդատ), եւ կամ իրմէ անկախ դուրս եղողներ՝ ինչպէս Զուինգլի, Նորոգութիւնն անանկ կերպով մը յառաջ կը տանէին, որն որ իրենին չէր համաձայներ։ Ասոր իր վարդապետութիւններէն հեռացող վարդապետներուն դէմ սկսաւ Լութեր հին կաթողիկէ եկեղեցւոյն անախորժութիւնն ու փութեանը արժեցընելու ջանալ, եւ կը հիմնէր զինքը Քրիստոսի ան խօսքերուն վրայ թէ «Ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս մինչեւ ի կատարած աշխարհի». եւ Պօղոս առաքելոյն խօսքին վրայ թէ «Եկեղեցի Աստուծոյ՝ սիւն եւ հաստատութիւն ճշմարտութեան»։ Մէօն Գ. Հտձ Ա. Գլ. Ա. 139։ Տես նաեւ առ Գրեփ Ե. Գլխոյն 1. Ծանօթ։

2. «Կը հաւատամ, կը գրէ Լութեր, որ երկրիս վրայ... միայն մէկ սուրբ, հասարակաց եկեղեցի կայ, որն որ ուրիշ բան չէ՝ բայց եթէ երկրի վրայ եղող սրբոց եւ բարեպաշտ հաւատացեալ մարդիկներուն ժողովքը կամ հասարակութիւնը, որն որ Հոգւով սրբով կը ժողվուի, կը պահպանուի ու կը կառավարուի, եւ ամէն օր ... կ'աճի։ Կը հաւատամ որ անոնցմէն մէկը չկրնար փրկութեան հասնիլ՝ թէ որ աս հասարակութեան մէջ չգտնուի, ու միաբան անոր հետ նոյն հաւատքը, նոյն խօսքը, նոյն խորհուրդը, նոյն յոյսն ու նոյն սէրը չունենայ. այնպէս որ ոչ հրեայ մը, ոչ հեթանոս մը, ոչ հերետիկոս մը կամ մեղաւոր մը չիկրնար փրկուիլ, թէ որ անոր հետ չհաշտուի, չմիանայ, եւ ամէն բանի մէջ անոր հետ միակերպ չըլլայ»։ Մեծ Քրիստոնէականին մէջ։ Տես նաեւ 150. երեսին մէջ Լութերէն բերուած վկայութիւնը, որուն մէջ կը զրուցէ թէ «Ով որ իմ վարդապետութիւնս չընդունիր նէ՝ անիկա չիկրնար փրկութեան հասնիլ»։

3. Ասոր վրայ տես առ Գրքին Գ. Գլխոյն 2. Ծանօթ. սկիզբները Լութերէն բերուած վկայութիւնը։

հուրդները կը մատակարարեն, աւանձնականաց վարուց վրայ կը հսկեն, եւ պատժոց վերին իրաւունքը կը գործածեն, այս ինքն՝ հաղորդութենէ կը կտրեն կամ կը նզովեն: Աս պաշտօնն Աստուծմէ դրուած է, եւ Քրիստոսի անգին արեամբն ու իր դառն մահուամբը հաստատուած է. եկեղեցականք՝ Աստուծոյ պատգամաւոր, փրկիչ, իշխան, Թագաւոր եւ հրեշտակ են: Անոր համար անոնց վրայ կ'առնուի Քրիստոսի խօսքը թէ "Որ զձեզ անարգէ՝ զիս անարգէ,,: Ինչու որ հաւատացելոց գլուխը՝ Քրիստոսն է, որն որ եկեղեցականաց ձեռօքը կը քարոզէ եւ անոնց միջնորդութեամբը խորհուրդները կը մատակարարէ[1]:

Աս չորս գաղափարները կամ սկզբունքները՝ որոնց Լուտերին ընդհանրապէս քարոզած վարդապետութիւններուն հակառակ ըլլալն այնչափ յայտնի է, որչափ յայտնի է թէ ուղղափառ վարդապետութեան համաձայն են, հարկաւ հինգերորդ սկզբունք մ'ալ կ'ենթադրէ, այս ինքն թէ Աս եկեղեցւոյն՝ աներեւոյթ կամ անտեսանելի գլխէն (Քրիստոսէն) զատ՝ նաեւ տեսանելի գլուխ մ'ալ պէտք է: Լուտեր թէպէտ եւ աս գաղափարը առաջուընէ միշտ կը մերժէր, եւ չէր ուզեր աս անունը վրան առնել, բայց մտքին մէջ հաստատուն դրած էր որ ինք ամէն կողմանէ իրաւունք ունի նոյն տեսանելի գլխոյն պաշտօնը կատարելու եւ իրօք ալ կը կատարէր:

Միայն ասով կրնանք իր բռնած ընթացքը մեկնել: Կայսրընտրին երկիրներուն մէջ ըրածները, ժողովքի մը իշխանութեան տակ ձգել չուզած բաները՝ (որովհետեւ ժողովք ըլլար նէ՝ ուրիշներն ալ իրեն չափ իշխանութիւն պիտ'որ ունենային,) ինք իրմէ որոշելը, ուրիշներուն՝ արդէն իր անուամբն ու իր հրամանաւը գործածներուն՝ իր հաստատութեանը կարօտութիւն ունենալը, եւ աս պատճառաւ ալ՝ առանց իր գիտութեան ու հաւանութեան եղած բաներուն՝ ապօրինաւոր ու ոչինչ սեպուիլը, ամէն բանի մէջ իր ունեցած կարծիքէն տարբեր կարծիքները՝ մոլորական եւ Աւետարանին դէմ սեպելը, իրմէ ուրիշ կարծիք ունենալը՝ յաւիտենական դատապարտութեան արժանի յանցանքի տեղ դնելը, ամէն կողմ տարակոյս մը, վէճ մ'ելլելուն պէս՝ իր կարծիքն ու որոշումը խնդրուիլը, եւ իր որոշածին իբրեւ Աստուծոյ պատգամ ընդունուիլը, — աս ու ասոր նման բիւրաւոր երեւոյթները ամենեւին ուրիշ կերպով չեն կրնար մեկնուիլ: Աս ենթադրութեան ամենեւին վնաս մը չ'ըներ, թէ որ Լուտեր ինքը զինքը Քահանայապետ անուանելու տեղ՝ Շնոր-

1. Ասոր վրայ տես Լուտերին գրուածոց մէջ Ճառ [illegible] Ե. եւ Ելից ԺԸ. Գլխոյն 13. — 22. Համարներուն մեկնութիւնը: Ա— Ռէֆէլէ, Գիրք Բ. Գլ. Բ. 68, 69:

հօքն Աստուծոյ եկղեսիաստէս Վիդդենպերկի, եւ կամ Գերմանիայի մարգարէ կամ աւետարանիչ կ'անուանէ. ինչու որ ինք աս վերջին անուններն ալ ունենալով՝ պատշաճ կը սեպէր քահանայապետի մը գործքերը գործել, մանաւանդ թէ քահանայապետէ մը աւելի իրաւունքներ կը բանեցընէր։ Աս բանս այնչափ յայտնի է որ չէ թէ միայն իր հակառակորդները իրեն նոյն յանդիմանութիւնը կ'ընէին եւ զինքը Աւետարանական եկեղեցւոյն պապը կ'անուանէին, հապա նաեւ նոյն իսկ իր հաւատարիմ աշակերտներն ալ աս բանին վրայ սաստիկ կը տրտնջէին [5]։

Բայց Լուտերին՝ ըստ մասին իր հակառակորդները յաղթահարելու եւ ըստ մասին իր հպարտութիւնը յագեցընելու համար՝ աս սկզբունքներն ընդունելէն աւելի զարմանալին ան է, որ շատ անգամ անոնց դէմ դնելու կամ զինքը խայտառակելու եւ զայելու համար՝ կը սկսէր ուղղափառ ճշմարտութիւնը պաշտպանել եւ ուղղափառ եկեղեցւոյ մեծամեծ գովութիւններ կու տար։ "Կը լսեմ ու կը տեսնեմ, կը գրէ տեղ մը, որ շատերը անոր համար (մկրտուած տղաքը) նորէն կը մկրտեն, որպէս զի պապը վշտացընեն, իբրեւ թէ նեռին հետ ամենեւին հաղորդակցութիւն մ'ունենալ չուզէին. ինչպէս որ նաեւ խորհրդականները՝ միայն անոր համար հաղորդութիւնը՝ լոկ հաց ու գինի է, կ'ըսեն, որպէս զի պապին վիշտ ու նեղութիւն հասցընեն, ու կը կարծեն որ աստով պապականութիւնը կը կործանեն [6]։

5. Մունգէր կը զրուցէր որ Լուտեր "Պապին օրէնքներն ու հրամանները՝ միայն անոր համար մերժեց, որպէս զի ինքը զինքը պապ ընէ"։ Առ Մէնցլէ Հատ. Ա. Գլ. Ե. 197։ Տես նաեւ աս Գրքին Ե. Գլխոյն մէջ գրուած՝ Մունգերին եւ Կալուինին խօսքերը (եր. 191.) եւ աս Գլխոյն 23. ծանօթ. վերջը։

6. Լուտեր այսպէս կը յանդիմանէ իր հակառակորդները եւ չարութիւններն դուրս կը հանէ. բայց թէ որ մէկը իր գործքերն ու խօսքերը քննելու ըլլայ նէ՝ կը տեսնէ որ ինքն ալ անոնցմէ տարբեր կերպով չէր վարուեր։ Ինք տեղ մը այսպէս կը գրէ. "Թէ որ ժողով մը հրամայելու ըլլար կամ թոյլ տար որ հաղորդութեան խորհուրդը երկու տեսակով մատակարարուի, մենք ժողովէն դէմ ընելու համար՝ միայն մէկ տեսակով կ'ընդունինք, կամ ոչ մէկ տեսակով ոչ մէկալ տեսակով, եւ կը նզովենք զանոնք՝ որոնք աս հրամանին համար երկու տեսակն ալ կ'ընդունին"։ Առ Գոխլէի Գիրք Բ. Հատ. Ժ։ Ուրիշ տեղ մը այսպէս կը գրէ. "Թէ որ ես վերացուցման (հաղորդութիւնը վեր վերցընելու) դէմ գրի նէ՝ պապականութեան դէմ ընելու համար էր. եւ թէ որ մինչեւ հիմա նոյն բանը հաստատուն պահած էի նէ՝ Գարլշտատին դէմ ընելու համար էր"։ Աս կերպով խօսելէն ետեւ՝ կարծես թէ վախնալով որ խօսքն ու միտքը աղէկ չիհասկըցուիր, աս ալ կը զրուցէ. "Նոյն սովորութիւնը պահելու է՝ երբ որ ուրիշները ամբարշտութեան մը պէս կը մերժեն, եւ մերժելու է՝ երբ որ իրենք հարկաւոր բանի մը պէս կը հրամայեն որ պահուի"։ Նոյն տեղը, Գիրք Զ. Հատ. ԼԳ։ Աս ալ բաւական չէ՝ միայն ուղղափառ եկեղեցւոյ դէմ ընելու համար կը բաղձար որ աս կամ ան բանը փոխէ կամ ուրանայ։ եւ միայն փնտռելով կը խափանուէր որ չէր կրնար կամքը կատարելու համար գոնէ առերեւոյթ պատճառ մը գտնել։ "Ինծի

Բայց ստուգիւ ասիկա անհիմն պատճառ մըն է, որուն վրայ ամենեւին բան մը չեն կրնար շինել։ Թէ որ այնպէս էր նէ՝ նաեւ բոլոր Ս. Գիրքն ու քարոզութեան պաշտօնն ալ ուրանալու էին, որովհետեւ մենք աս բաները պապէն առինք, ու նոր Ս. Գիրք մը շինելու էինք.... Կը խոստովանինք որ պապականութեան մէջ շատ քրիստոնէական ու բարի բաներ կան, մանաւանդ թէ ամէն քրիստոնէական բարիք հոն կը գտնուի, եւ հոնկից մեզի անցաւ։ Կը խոստովանինք որ պապականութեան մէջ ճշմարիտ Ս. Գիրք կայ, ճշմարիտ մկրտութիւն, ճշմարիտ հաղորդութեան խորհուրդ, ճշմարիտ բանալիք՝ մեղաց թողութեան համար, ճշմարիտ քարոզութեան պաշտօն, ճշմարիտ քրիստոնէական վարդապետութիւն....։ Պապին իշխանութեան տակը ճշմարիտ քրիստոնէութիւն, մանաւանդ թէ քրիստոնէութեան ուղղեծուծը կայ, եւ շատ բարեպաշտ ու մեծ սուրբեր։... Արդ թէ որ պապին իշխանութեան տակը ճշմարիտ քրիստոնէութիւն կայ նէ՝ ուրեմն պէտք է որ Քրիստոսի ճշմարիտ մարմինն ու անդամն ըլլայ. եւ թէ որ անոր մարմինն է նէ՝ պէտք է որ ունենայ ճշմարիտ Հոգին, Աւետարանը, հաւատքը, մկրտութիւնը, (հաղորդութեան) խորհուրդը, բանալիքը, քարոզութեան պաշտօնը, աղօթքը, Ս. Գիրքը եւ ան ամէն բաները՝ որոնք քրիստոնէութեան մէջ գտնուելու են։... Անոր համար մենք ապստամբ հոգիներուն (Կրկնամկրտիչներուն) պէս վարուելով՝ պապին իշխանութեան տակ գտնուած ամէն բաները չենք մերժեր. ապա թէ ոչ՝ քրիստոնէութիւնն ու Աստուծոյ տաճարն ալ՝ Քրիստոսէ ունեցած ամէն բարիքներովը պէտք էր որ մերժէինք„[7]։ — Աս խօսքերը հերձուածապետի եւ Լուտերի պէս հերձուածապետի մը բերանը շատ մեծ զօրութիւն ունի։ Բայց մենք պատմութեան կարգին դառնանք։

Ուղղափառ եկեղեցիէն բաժնուող աղանդներուն մէջ եղած

շատ հաճելի բան կ'ըլլար, կ'ըսէ, թէ որ մէկը հնարք մը ցուցընելու ըլլար՝ որ աս բանս (սուրբ հաղորդութեան մէջ Քրիստոսի իրապէս ներկայ ըլլալը) ուրանամ. ինչու որ չկայ բան մը՝ որն որ ինծի կարենայ այնպէս օգնել պապականութեան վնաս հասցընելու ունեցած դիտաւորութեանս՝ ինչպէս աս բանը„։ Աս Բլանգայ, Գիրք Ե. Հատ. Բ. 231. Եւ ասոր Գոտիսեի, Գիրք Բ. Հատ. Ա։ Մէնցըլ յայտնապէս կը ցուցնէ որ Լուտերին՝ իրական ներկայութիւնը այնպէս սաստիկ պաշտպանելուն պատճառը՝ Գարլշտատի կարծիքին մեծ ընդդիմութիւն գտնելն էր։ Հատ. Ա. Գլ. Է. 257։ Իսկ Բլանք (Գիրք Ե. Հատ. Բ. 211.— 213.) թէպէտ չ'ընդունիր, բայց կը խոստովանի որ շատերը կ'ըսեն թէ Լուտեր Գարլշտատին դէմ ունեցած թշնամութեան ու ատելութեան համար՝ անոր հաղորդութեան խորհրդին վրայ վարդապետած կարծիքին դէմ ելաւ եւ իրական ներկայութիւնը այնչափ սաստկութեամբ պաշտպանեց։

7. Աս գրուածքը Լուտեր 1528ին Կրկնամկրտիչներուն դէմ գրեց, եւ երկու անանուն ժողովրդապետներու խաւրեց։ Գործք Լուտ. գերմ. Հատ. Դ. 406. Բ. 409։

գժտութիւններն ու կռիւները՝ որոնք օրէ օր աւելի կը սաստկանային, Նորոգման անունը կ'առնէին եւ անոր գլխաւոր հիմը կը կործանէին: Ինչպէս ուրիշ անգամ ըսած ենք, Նորոգման գլխաւոր հիմը կամ սկիզբը՝ ուսկից որ ամէն ուրիշ մոլորութիւնները իբրեւ աղբիւրէ կը բխէին, աս էր որ կրօնի վերաբերած բաներու մէջ մի միայն կանոն եւ առաջնորդ՝ Ս. Գիրքն է, եկեղեցւոյ մէջ Ս. Գրքէն ուրիշ դատաւոր չկայ, եւ աս Ս. Գիրքն այնպէս յայտնի ու բացայայտ է, որ ամէն մարդ կրնայ հասկընալ: Բայց իրենց կռիւներէն՝ ամենուն առջեւը յայտնի կ'երեւար որ Ս. Գրոց խօսքերուն միտքին կամ նշանակութեան վրայ կը վիճէին, եւ ան ալ Քրիստոսի՝ հաղորդութեան խորհուրդը հաստատելու ատեն ըսած խօսքին վրայ, որն որ հարկ էր որ Ս. Գրքին ուրիշ ամէն խօսքերէն աւելի բացայայտ ըլլար, ինչու որ Քրիստոսի կտակն էր: Աղանդաւորները միշտ իրարու աս կ'ըսէին թէ Ս. Գրքին մէջ ամէն բան բացայայտ է, ու հասկընալու համար՝ միայն աչք ունենալ բաւական է. բայց աս յայտնի խօսքերը՝ Լուտեր ուրիշ կերպ կը հասկընար ու կը մեկնէր, Զուինգլի ու Խորհրդականք՝ ուրիշ կերպ, մանաւանդ թէ իրարու բոլորովին հակառակ: Առաջինը կ'ըսէր որ Քրիստոսի "Այս է մարմին իմ. Այս է արիւն իմ" խօսքերը՝ բուն կամ նկարագրական մտքով առնելու է. իսկ երկրորդը կը պնդէր թէ այլաբանական մտքով առնելու է. եւ մէկը՝ մէկալին կարծիքը՝ այլանդակութիւն, հերետիկոսութիւն, հայհոյութիւն, ամպարշտութիւն կը կանչէր[8]: Երազմոս՝ զորն որ երկու կողմն ալ իրեն ձգելու կը ջանար, իրենց այսպէս կ'ըսէր. Դուք ամէն բան Աստուծոյ անարատ ու սուրբ խօսքին կը ձգէք, եւ կը կարծէք որ Ս. Գրոց հաւատարիմ մեկնիչներն էք: Արդ դուք նախ եւ յառաջ Ս. Գրոց միտքին վրայ իրարու հետ միաբանեցէք, ու ետքը աշխարհքիս վարդապետ ըլլալու ջանացէք[9]:

8. Լուտեր 1526ին Քրիստոսի "Այս է մարմին իմ" ամենաբացայայտ խօսքին տրուած ութը զատ զատ իմաստներ կը բերէր: Երեսուն տարի վերջը աս խօսքիս վրայ ութսունուիրեք տարբեր տարբեր իմաստներ կային, կամ աս ամենաբացայայտ խօսքը՝ ութսունուիրեք իրարմէ տարբեր եւ ըստ մեծի մասին իրարու հակառակ կերպով հասկըցողներ կային, որոնք որ Օտէն (Հատ. Բ. Գլ. ԻԳ. 287.) յառաջ կը բերէ.

9. Առ Գոռիւէի, Գիրք Բ. Համ. ԽԳ: — Հոս պատշաճ կը սեպենք Երազմոսին աս նիւթին վրայ գրածներուն մէկէն մէկ հատուածը ամբողջ դնել, որմէ թէ բողոքողներուն սկզբունքին անպատշաճութիւնը եւ թէ միանգամայն մատենագրին ճարտարութիւնն ու գրուածներուն մէջ պահուած չափաւորութիւնը յայտնի կը տեսնուի: "Մէկը Աստուծոյ խօսքին դէմ չիգտանար, կ'ըսէ Երազմոս՝ Լուտերին, հապա քու տուած մեկնութիւններուդ: Ես Աստուծոյ խօսքը բոլոր սրտէ կը յարգեմ. բայց չեմ հաւատար որ քու ամէն Աստուծոյ խօսք ըսածդ՝ Աստուծոյ խօսք ըլլայ. եւ թէ որ Աստուծոյ խօսքն ալ այնչափ հաւատարմութեամբ կը գործածես՝ որչափ հաւատարմութեամբ որ կը գործածես

“Այն իսկ բողոքականք ալ աս իրենց անմիաբանութեան ու երկպառակութեան վրայ շատ կ'ամչնային ու կը տրտմէին, եւ

մեր խօսքերը, ան ատեն յայտնի է որ քու Աւետարանիդ վրայ մարդ որչափ վստահութիւն կրնայ ունենալ։ Թէ որ նոյնչափ գիտնականութեամբ ալ չէ նէ՝ գոնէ աւելի վախով եւ յարգութեամբ կը վարուիմ ես Ս. Գրոց հետ. եւ աս բանիս մէջ ուղղափառներուն հետոցը կը հետեւիմ, որպէս զի եկեղեցւոյ որոշմունքներէն չհեռանամ։ Իսկ դուն սաստկութեամբ կ'որոտաս, ամէն բան մէկդի կը մղես եւ կը պնդես որ Ս. Գիրքը՝ միայն ան կը բովանդակէ ինչ որ դուն կ'ուզես եւ ինչ որ քու կարծիքներուդ հետ կը միաբանի։ Մէկ խօսքով ըսելու համար՝ դուն իբրեւ Ս. Գրոց տէր կը վարուիս, չէ թէ իբրեւ անոնց մատակարար։ Քու այլանդակ կարծիքդ՝ թէ աշխարհքիս մէջ ամէն բան բացարձակ հարկաւորութենէ մը յառաջ կու գայ, դուն Ս. Գրքէն կ'առնես. բայց նոյն վարդապետութեան հակառակ վարդապետութիւնն ալ եկեղեցին նոյն Ս. Գիրքէն կ'առնէ։ Անանկ որ բոլոր վէճը անկէ ելքը ա՛լ Ս. Գրքին խօսքերէն կախում չ'ունենար, հապա անոնց տրուած մեկնութենէն։ Բայց քու բուն սխալմունքդ ան է որ կ'ուզես զմեզ ստիպել որ քու մեկնութիւնդ՝ իբրեւ Աստուծոյ խօսք ընդունինք։ Ս. Գիրքը՝ ինք իրեն դէմ չիկրնար կռուիլ կամ հակառակ ըլլալ, հապա մէկ մեկնութիւն ուրիշ մեկնութեան դէմ կ'ելլէ. եւ ես աս ընդդիմութեան կամ հակառակութեան մէջ աւելի ապահով կը սեպեմ ուղղափառաց կարծիքին եւ եկեղեցւոյ դատաստանին հետեւիլ, քան թէ քու եւ քեզի հետեւողներուն կարծեացը։ Ապա թէ ոչ՝ պէտք է որ շատ զօրաւոր ու քանդադատիչ պատճառներ բերես զմեզ համոզելու համար որ բոլոր քրիստոնէից այնչափ դարերէ վեր իրենց վարդապետներուն հետ հաւատացածն ու եկեղեցւոյ մինչեւ այսօրուան օրս հաստատուն բռնածը՝ մոլորական, ամպարշտական, հերետիկոսական ու հայհոյութեան վարդապետութիւն է. իսկ քու կարծիքդ՝ էական հաւատոյ մաս մը, առանց որոյ ամենեւին մէկը փրկութեան չիկրնար հասնիլ։

“Արդ ինչպէս ցուցմունքներով կրնաս զմեզ համոզել որ դուն քու քիչ կողմնակիցներովդ ճշմարտութիւն կը վարդապետես, եւ այնչափ եկեղեցւոյ վարդապետներ, այնչափ ճեմարաններ, այնչափ ժողովքներ, այնչափ քահանայապետներ բոլոր կուրութեան մէջ էին։ Ինչպէս կրնաս աս կնճռեալ կապը քակել։ Շատ անգամ ես քուկիններուդ հետ աս բանս փորձեցի, բայց մէկն ալ չգտայ որ կարող ըլլայ ասիկա գլուխ հանել։ Համարձակ կը խոստովանիմ, աս ծանր քարը սիրտս սաստիկ կը ճնշէ. եւ թէ որ դուն զիս կ'ուզես քեզի եղբայրակից ունենալ եւ հոգիս փրկել, ամէն բանէն յառաջ պէտք է որ աս քարը սրտիս վրայէն մէկդի ընես. եւ թէ որ ասիկա կատարելու ըլլաս նէ, քու թշնամեացդ հարուածներն ու վէրքերը սիրով կը կրեմ։ Կ'աղաչեմ ու կը պաղատիմ քեզի, որ մեզի յայտնես թէ դուն ինչ ցուցմունքներով կամ պատճառներով նոյն քարը քու սրտէդ վերցուցիր եւ այնչափ մեծ վստահութիւն ստացար։ Ստոյգ է դուն զԱստուած զամենագէտը քու խղճիդ մաքրութեանը վկայ կը կոչես. բայց բանը անոր վրայ չէ, պէտք է որ զմեզ ալ քու ըսածներուդ ու հաստատածներուդ ճշմարտութեան վրայ համոզես։ Թէ որ մենք անանկ թեթեւամտութեամբ կաթողիկէ ընդհանրական եկեղեցւոյ հաւատքէն հեռանայինք ու քու հաւատքիդ հետեւէինք նէ, պէտք է որ դուն վախնայիր որ քու աշակերտութեանդ մէջ շատ անհաստատ ու փոփոխամիտ չըլլանք։ Բայց քեզի ասանկ առաջարկութիւն մ'ըլլայ նէ՝ ան վարժապետներուն պէս կը վարուիս, որոնք տղաք կրթելու ատեննին՝ ժամանակներնուն մեծ մասը ծաղրելով, ծեծելով, նախատելով կ'անցընեն։

“Առաքելոց եւ ուրիշ մեծ մարգարէներուն սրբութիւնը, իրենց աստուածային հոգին եւ գործած հրաշքներնին՝ որոնցմով իրենց վարդապետութիւնը կը հաստատէին, իրենց գրուածներէն կը ճանչնանք. արդ որովհետեւ հոգիներն ընտրե-

ամէնքն ալ գոնէ մտքերնուն մէջէն ան կը մտածէին՝ մինչ որ Կալուինն առ Մելանքթոն կը գրէր. "Շատ հարկաւոր է որ, կ'ըսէր, լու կամ ճանչնալու զօրութիւնը մեզի տրուած չէ, գոնէ պէտք է որ մեզի ցուցուած կամ հիմ մը տաս, որով կարող ըլլանք ապահովութեամբ քու վարդապետութեանդ աւանդէն երթալ, և մերժել ան վարդապետութիւնը՝ զորն որ բոլոր երկրիս վրայ եղող քրիստոնեաները կը խոստովանին և որն որ այնչափ շատ, այնչափ իմաստուն և այնչափ երևելի մարդիկներէն իրենց աւանդուած է: Աստոյգ է դուն կը զրուցես որ ան մարդիկները թէպէտ և հոգին ունէին, բայց իբրև մարդ երբեմն նաև ըստ մարմնոյ ալ կը վարուէին: Ես ասոր դէմ չեմ ուզեր դնել. բայց որովհետև իրենց վրայ ըսածդ՝ ձեր վրայ ալ կը ստուգուի, անոր համար միշտ նոյն խնդիրը կը դառնայ որ Ո՞վ ճշմարիտ հոգին ունի, դո՞ւք՝ թէ անոնք: Ես ձեզմէ հրաշք չեմ պահանջեր. բայց ուրիշ բաները հաւասար դնելով՝ կը հետևցընեմ որ պէտք է աւելի անոնց հաւատալ որոնք հրաշքով իրենց վարդապետութիւնը հաստատեցին, քան թէ անոնց՝ որոնք իրենց վարդապետութեան ատանկ հաստատութիւն մը չունին:

"Անկից զատ՝ անոնց վարդապետութեան մէջ վերջին աստիճանի մեծ միաբանութիւն կայ, ուր որ քուկիններուդ մէջ ամենէն երևելիները ո՛չ քեզի հետ և ո՛չ ալ իրենք իրարու հետ միաբան են: Ամէնքդ ալ մի և նոյն Ս. Գիրքն ունիք, և ամէնքդ ալ կ'ըսէք որ մի և նոյն հոգին ունիք. և ի վերայ այսր ամենայնի Գարլշդադ քեզմէ երևելապէս կը խոտորի, նոյնպէս Զուինգլին, Եկոլամպադն ու Կապիտոն, որոնք Գարլշդադին կարծիքին հետ կը միաբանին, բայց իրեն ցուցումները կը մերժեն: Անոնք ասդին անդին սրբոց պատկերներուն պատերազմ հրատարակեցին, դուն զանոնք կը պաշտպանես. քու աշակերտներէդ ոմանք յայտնապէս քարոզեցին որ մարդկային ուսմունքները աստուածպաշտութեան թշնամի են, դուն ուսմանց կողմը բռնեցիր. և երբ որ ուսմունքները նորոգելու վրայ չինած գիրքդ դուրս ելաւ նէ, անոնք սկսան ըսել որ Քու հոգիդ դքեզ թող տուած է, և դուն մարդկային հոգւով կը գրես ու Աւետարանին դէմ կ'ելլես: Վերջապէս ինչպէս որ մէջերնիդ ամէն օր նոր վարդապետներ կ'ելլեն, այնպէս ալ նոր նոր կռիւներ կը ծագին. և ի վերայ այսր ամենայնի դուն կը պահանջես որ ամենեւին մէկը ձեզմէ չխոտորի, ուր որ դուք նաև շատ երևելի նիւթերու մէջ իրարու հետ միաբան չէք:

"Բայց աս ալ մէկդի թողունք. նոյն իսկ դուն քեզի հակառակ կը խօսիս, խօսքի կամ ճառի մը սկիզբը ուրիշ բան կը զրուցես, մէջը ուրիշ բան և վերջը դարձեալ ուրիշ մէկ բան: Ս. Հարց հեղինակութիւնը կը մերժես. և մէկալ կողմանէ Ս. Օգոստինոսէն ու Ս. Գրիգորէն այնչափ վկայութիւններ կը բերես. ի՞նչ. քեզի յարմար խօսած ատեննին հոգւո՞վ կը խօսէին, ու քեզի հակառակ խօսած ատեննին՝ ըստ մարմնո՞յ: Քահանայապետներուն ու ժողովքներուն որոշմունքները առջևդ ամենևին յարգ չունին. և ինծի դէմ Մելանքթոնին մէկ գիրքը վկայութեան կը բերես, իբրև թէ ան գիրքը (Աստուածաշնչին) կանոնական Գրոց հետ նոյն հեղինակութիւնն ունենար: Ես ըսած էի որ չիկրնար զրցուիլ թէ Աստուած այնչափ դարեր իր եկեղեցւոյն մէջ անանկ վտանգաւոր մոլորութիւն մը (կամաց ազատութեան վարդապետութիւնը, զորն որ՝ ինչպէս յայտնի է՝ Լութեր մոլորութեան տեղ կը դնէր) թող տուած ըլլայ, և ամենևին մէկ սուրբի յայտնած չըլլայ ան բանը՝ զորն որ դուք հիմա իբրև Աւետարանին ամենէն էական ու հիմնական վարդապետութիւնը կը դնէք: Դուն ասոր ի՞նչ պատասխան կու տաս: Կը զրուցես որ Աստուած ո՛չ իր մէկ սուրբը և ո՛չ ալ եկեղեցին մոլորութեան մէջ կը ձգէ. որովհետև սուրբ՝ միայն անոնք են որոնք Աստուծոյ հոգւովը կը վարուին: Բայց ասով ուրիշ բան ըսել չես ուզեր, բայց եթէ ան որ չիգիտցուիր թէ ո՛վ սուրբ է և եկեղեցին ո՛ւր կամ ի՞նչ է. մանաւանդ թէ կ'ուզես ցուցընել որ Աստուած մարդկային իրողութիւնները

մեզմէ առաջ եկողները՝ մեր երկպառակութեանց եւ անմիաբանութեանց վրայ կասկած չունենան. ինչու որ արտաքոյ կարգի պլանդակ բան է որ բոլոր ուրիշներէն բաժնուելէն ետեւ՝ մէջերնիս ալ միաբան չըլլանք, եւ ան ալ՝ Նորոգման սկիզբը,, 10։ Նոյն ինքն Լուտեր, թէպէտ եւ իր հակառակորդները դրանց ամբաստանութեամբ կ'արհամարհէր, եւ այնպէս կը ձեւացընէր որ ան մէջերնին եղած երկպառակութիւնները բանի տեղ չիդներ, մանաւանդ թէ կ'ուրախանայ, աս բաները՝ իր վարդա-

այնպէս կ'առաջնորդէ որ սրբոց եկեղեցին՝ իրօք հոն չէ՝ ուր որ կ'երեւայ որ ըլլայ, հապա աւելի հոն է՝ ուր որ չ'երեւար որ ըլլայ. եւ միանգամայն թէ անոնք որ միշտ սուրբի տեղ կը դրուին՝ իրօք ամպարիշտ են, եւ անոնք որ միշտ ամպարշտի տեղ կը դրուին՝ սուրբ են։ Բայց սուտ եկեղեցւոյ բոլոր վճիռները կ'ոչընչացընես, եւ անոնց զօրութիւնը հերետիկոսներուն ժողովականներուն կու տաս։ Դուն կը զրուցես որ թէպէտ եւ Աստուած գաբերով թող տուած ըլլայ որ ամենէն աւելի գիտուն մարդիկները մոլորութեան մէջ մնացած ըլլան, ի վերայ այսր ամենայնի սուտ եկեղեցին մոլորած չ'ըլլար, այս ինքն ան եկեղեցին՝ զորն որ դուն ծածկեալ եկեղեցի կ'անուանես, եւ որն որ մարդ ո՛չ կրնայ տեսնել եւ ո՛չ կրնայ ցուցընել. բայց ո՞ւսկից գիտես որ Վիքլէֆ՝ սուրբ մարդ էր, իսկ Արիանոսք՝ հերետիկոս էին։ Վիքլէֆ անո՞ր համար սուրբ է, վասն զի ան եկեղեցիէն դատապարտուեցաւ՝ զորն որ դուն պապական կը կոչես։ Թէ որ այնպէս է նէ՝ պէտք է որ նոյնպէս Արիոսն ալ սուրբ կանչես, վասն զի զինքն ալ նոյն եկեղեցին դատապարտեց։ Թէ որ աս բանիս մէջ Ս. Գրոց կը դիմես նէ, ես ալ քեզի կը հարցընեմ. Արիանոսք Ս. Գրքէն ամենեւին վկայութիւն չունէի՞ն։ Կ'ըսես որ իրենք նոյն վկայութիւնները չարաչար կը մեկնէին։ Բայց ասիկա ո՞ւսկից գիտենք, բայց եթէ որ եկեղեցին անոնց տուած մեկնութիւնը մերժեց, ու իր (եկեղեցւոյ) մեկնութիւնը հաստատեց։ Նոյնը կրնանք Պեղագիոսին վրայ ալ ըսել, որն որ քու առջեւդ անոր համար ամպարիշտ հերետիկոս չէ վասն զի Հռոմէական եկեղեցին զինքը դատապարտեց, հապա անոր համար՝ որովհետեւ անիկա քու վարդապետութեանդ հակառակը կը քարոզէր։

«Դուն միշտ բերանդ «Աստուծոյ հոգին» բառերը կը պոռացընես. բայց՝ միայն մարդկօրէն ալ մտածելով՝ պէտք է ըսել որ նոյն հոգին աւելի ընդհանուր ժողովքի մը մէջ կը գտնուի, քան թէ մասնաւոր ժողովականներու մէջ, որոնց մէջ արդէն գրեթէ միշտ սատանայական հոգին կը տեսնուի։ Թէ որ եկեղեցին երեւելի կամ տեսանելի ալ չէ նէ, ի վերայ այսր ամենայնի պէտք է որ վարդապետութեան վրայ՝ վստահանալու կամ ապահով որոշմունքներ գտնուին. արդ ինչպէս որ ըլլայ նէ՝ շատ աւելի ապահով է հրապարակական կամ ընդհանուր հեղինակութեան մը հետեւիլ, քան թէ աս կամ անոր առանձնական կարծիքին, որն որ ամէն բան կը մերժէ ու միայն իր խիղճն ու իր հոգին կը բարձրացընէ։ Թէ որ «Իմ հոգին ունիմ» ըսելը բաւական ըլլար նէ, պէտք էր որ շատերուն հաւատայինք, որոնք բոլորովին իրարու հակառակ բաներ կը վարդապետեն, մանաւանդ ան խռովարարները՝ որոնք շատ սաստկութեամբ կը պնդեն որ հոգին իրենց քովն է, եւ ամէն բան նոյն հոգւով կ'ուզեն դատել ու որոշել։ Դուն ասանկներուն դէմ Ս. Գրոց արտաքին բացայայտութիւնը կ'ուզես գործածել. բայց որովհետեւ Ս. Գիրքը քու ըսածիդ պէս բացայայտ չէ, եւ անոր տրուած մեկնութիւնները բոլորովին իրարու հակառակ են, անոր համար վէճն աս կերպով երբէք չիկրնար վերջանալ»։ Ա- Ուէֆէլէ, Գիրք Բ. Գլ. Զ. 289.— 293։

10. Ա. Պոսիւէի, Գիրք Բ. Համ. ԽԳ։

պետութեան ճշմարիտ ըլլալուն նշան սեպելով, բայց սակայն նորսէն շատ կը տրտմէր ու կը ցաւէր. եւ այնչափ աւելի՝ որչափ որ սաստիկ հպարտ էր, ինչու որ ուրիշ նորոգեալներուն՝ իրմէ տարբեր մանաւանդ թէ իրեն հակառակ կարծիք ունենալն իրեն մեծ նախատինք կը սեպէր։ Բայց ամենէն աւելի Մելանքթոն կը խռովէր ու մեծ տրտմութեան մէջ կ՚իյնար մինչեւ շատ անգամ մահուան կը բաղձար։ Իր խօսքին նայելով՝ Արցունքը երբեք չէր դադրեր. եւ շատ անգամ կ՚ըսէր թէ Էլպէ գետը իր բոլոր ալիքներովը՝ ինծի բաւական ջուր չէկրնար տալ՝ երկպառակեալ նորոգութեան թշուառութիւնը լալու համար [11]։

Այս պատճառներուն համար իրենց մէջէն շատերը կը բաղձային ու կը ջանային որ գոնէ Լուտերականներն ու Խորհրդականները, որոնք որ ամէն ուրիշ աղանդաւորներէն աւելի շատուոր ու զօրաւոր էին, իրարու հետ միաբանին. որպէս զի բոլոր զօրութիւններին մէկտեղ ժողվելով՝ դիւրաւ կարող ըլլան Կաթոլիկոսնքները եւ ուրիշ աղանդաւորները եւ գլխաւորաբար ուղղափառները յաղթահարել։ Ամենէն աւելի Խորհրդականներն աս միաբանութեան կը բաղձային. անոր համար Հեսսենի աշխարհատէր կոմսին ինկան, որ ինք մէջերնին գոնէ եւ աս երեւելի գործքը իր իշխանութեամբ կատարէ [12]։ Արդ աս իշխանը Շփայէրի (1529ին) աւագաժողովէն իր տեղը դառնալուն պէս՝ երկու կողման ալ գլխաւորներուն թուղթ գրեց, եւ հրաւիրեց որ Մարպուրկ գան ժողվուին ու իրարու հետ կրօնի վրայ խօսին։ Լուտեր՝ իսկզբան դէմ կեցաւ, բայց ետքը մէկ կողմանէ՝ հակառակորդներէն վախցած չերեւնալու եւ մէկալ կողմանէ ալ իր հզօր պաշտպանին աչքէն չելլելու համար՝ յանձն առաւ [13]։

Արդ որոշուած ժամանակին եկան նոյն քաղաքը ժողվուեցան աղանդներուն գլխաւորները, որոնց երեւելիներն էին մէկ

11. Նոյն տեղը, Գիրք Ե. Համ. Գ.

12. Արդէն աշխարհատէր կոմսը ինք իրմէ աս բանիս շատ կը բաղձար. բայց աս բաղձանքին պատճառը՝ կրօնքի նախանձախնդրութիւնը չէր, հապա ան որ Լուտերականք ու Զուինգլիականք կամ Խորհրդականք իրարու հետ միաբանելով՝ կայսեր եւ ուղղափառաց դէմ ըրած դաշնակցութիւններին՝ Խորհրդականներուն ալ մէջը մտնելովը՝ զօրանայ։ Որովհետեւ, թէպէտ ինք կը գիտնէր որ Խորհրդականները իրենց դաշնակցութեան մէջ առնելու համար հարկաւոր չէ որ անոնք ըստ ամենայնի իրենց կարծիքներուն հետ միաբան ըլլան, բայց Լուտեր միշտ ասոր դէմ կը դնէր, ու Սաքսոնիայի կայսրընտիրը Լուտերին խօսքը մտիկ ընելով՝ չէր ուզեր զիրենք միաբանութեան մէջ ընդունիլ։ Աս բաներուն վրայ ընդարձակ կը խօսի Սեքենտորֆ, Գիրք Բ. Համ. ԽԶ. Յաւել. 135. Եւ Համ. ԽԷ. 137։ Բայց թէ որչափ Լուտերին եւ իր կողմն եղող աստուածաբաններուն՝ Խորհրդականները իրենց միաբանութեան մէջ ընդունիլ չուզելուն պատճառն ինչ էր, տասր վրայ երկայն կը գրէ Բլանք. եւ կը ցուցընէ որ մի միայն պատճառը՝ մէջերնին եղած աղանդի տարբերութիւնն էր։ Տես Գիրք Զ. Հատ. Բ. 469, 470. եւ 512, 513. 515։

13. Մաթեսիոս, Ճառ Է. 71. Բ։ Բլանք, Գիրք Զ. Հատ. Բ. 516։

կողմանէ՝ Լուտեր, Մելանքթոն, Յուստոս ու Ագրիկոլայոս, իսկ միւսայ կողմանէ՝ Զուինգլի, Էկոլամպադ եւ Բուկեր։ Ասոնք ամէնն ալ՝ որ Նորոգման սիւներն էին, եւ որոնց վրայ բողոքողք իրենց բոլոր յոյսը դրած էին, առաջին անգամ իրարու երեսը աշխարհատէր կոմսին՝ իրենց պատուոյն համար տուած կոչունքին մէջ տեսան։ Կոչունքին վրայ իշխանն իրենցմէ խնդրեց որ հրապարակական վիճաբանութիւնը չսկսած, Լուտեր՝ Էկոլամպադին հետ, ու Մելանքթոն Զուինգլիին հետ առանձին վիճին. եւ ամէնքն ալ ասոր բանիս հաւանեցան։ Երկրորդ օրը աս առանձին վիճմունքն եղաւ. վիճած նիւթերնին ան բաներն էին, որոնց վրայ մէջերնին հակառակութիւն կար. այս ինքն սկզբնական մեղք, մկրտութեան՝ մեղքերը ջնջելու ունեցած զօրութիւնը, Քրիստոսի աստուածութիւնը, ամենասուրբ Երրորդութեան խորհուրդը, եւ ամէն բանէն աւելի սուրբ հաղորդութեան մէջ Քրիստոսի իրական ներկայութիւնը։ Խորհրդականք ուրիշ ամէն բաներու մէջ Լուտերականներուն հետ դիւրաւ միաբանեցան, մանաւանդ թէ ըսին որ մինչեւ հիմա ալ աս բաներուն վրայ ձեզմէ տարբեր կարծիք չունէինք մենք[14]։ Բայց

14. Խորհրդականներուն աս խօսքը բոլորովին սուտ է. եւ Լուտեր քիչ մը վերը իրենց համար կը դրէ որ մկրտութեան, խորհրդոց գործածութեան . . . վրայ յառաջագոյն շատ անգամ գրքերնուն մէջ վարդապետած բաներնին Մարպուրկ ետ կանչեցին։ Եւ աս բանս իրաւամբ կը գրուցէ, ինչու որ Զուինգլի իր գրքերուն մէջ մկրտութեան վրայ այսպէս կը խօսի. «Մկրտութեան վրայ ասկից աւելի համառօտ ու աւելի յայտնի ինչ կրնար ըսուիլ. բայց եթէ որ սկզբնական մեղքը՝ մեղք չի. հապա հիւանդութիւն մը, եւ թէ քրիստոնէից որդիքը աս հիւանդութեան համար մշտնջենաւոր պատժոյ տակ չեն իյնար։ Ասոր հակառակ ասկից աւելի ինչ մեծագոյն տկարութիւն կրնայ ըլլալ եւ կանոնական Գրոց մաքին դէմ, քան թէ ըսել որ տղաքնին մկրտութենէն առաջ մեռնելով կը կորսուին»։ Յայտնի է որ աս խօսքս բացայայտ սկզբնական մեղքն ու մկրտութեան զօրութիւնն ուրանալ է. որն որ թէ՛ եկեղեցւոյ եւ թէ՛ Լուտերի վարդապետութեան դէմ է. թող ուրիշ շատ մոլորութիւնները։ — Բայց կրնայ մէկը առարկութիւն ընել որ եթէ ուրիշ բաներու մէջ Լուտերականներուն զիջան, կամ ինչ եւ իցէ կերպով իրարու հետ միաբանեցան նէ, ինչո՞ւ հապա հաղորդութեան խորհրդոյն վրայ չկրցան միաբանիլ։ Աս խնդրոյն լուծումը դիւրին բան մըն է։ Որովհետեւ, Բոսսուէթին ըսածին պէս (Գիրք Գ. Գլ. Ա. Հատ. Ա. 187.), ան բաները՝ որոնց մէջ իրարու հետ միաբանեցան նէ՝ ամէնքին յայտնի բաներ չէին, եւ անոր համար իրենք ուզածնուն պէս կամ ըստ տեղւոյն՝ անոնց վրայ կարծիքնին կը փոխէին. իսկ հաղորդութեան խորհրդոյն վրայ ունեցած կարծիքնին ամենուն յայտնի էր. ուստի թէ որ մէկ կողմը մինչեւ նոյն ատեն ան նիւթին վրայ ունեցած կարծիքը փոխելու ըլլար նէ՝ թէ՛ իր կողման ետեւէն գացողներուն եւ թէ՛ հակառակորդներուն առջեւը կը նախատուէր։ Լուտեր աս բանը Զուինգլիականներուն վրայ յայտնապէս կը գրուցէ. «Իրենց ժողովուրդներէն կը վախնային, կ'ըսէ, որոնց քով չէին կրնար դառնալ՝ թէ որ մէյ մը (հաղորդութեան խորհրդին վրայ ունեցած) կարծիքնին փոխելու ըլլային»։ Ես Ոսփինիանէ, Գլ. Ի. Հատ. Բ. Իս ստ Կոռոփ. Ֆիցէրէ, Գլ. Ի. 478։ Բայց ինք Լուտեր ալ նոյն պատճառաւ վարուած ըլլայ

երբ որ խօսքը հաղորդութեան խորհրդին եկաւ նէ, կռիւը շատ սաստկացաւ. եւ որչափ որ երկու կողմանէ ալ ջանացին որ դիմացիններին իրենց կարծիքին դարձընեն, պարապ եղաւ, եւ ամէն մէկը իր առջի կարծիքին մէջ հաստատուն մնաց: Անոր համար որոշեցին որ աս նիւթին վրայ հրապարակական վիճաբանութեան կամ բանակցութեան մէջ խօսին[15]:

Աս հրապարակական կամ ընդհանուր բանակցութիւնը երեք օր տեւեց, որուն մէջ Լուտեր իր սովորութեան համաձայն՝ շատ բարձրամտութեամբ ու սաստկութեամբ խօսեցաւ: Արդէն Սեքենտորֆին ըսածին պէս, "Լուտեր ... ան մտքով միայն Հեսսենի երկիրը (Մարպուրկ) գացած էր, որպէս զի Հելուետացւոց պատճառները լսէ, եւ թէ որ կրնայ նէ՝ նոյն պատճառները ցրէ, եւ զիրենք իր կարծիքին դարձընէ: Ինք իր կարծիքին վրայ հաստատուն էր, եւ աշխարհատէր կոմսին ալ յայտնապէս ըսած էր որ ամենեւին կերպով մը իմ կարծիքէս չեմ խոտորիր"[16]: Անոր համար ալ առջեւի սեղանին վրայ "Այս է մարմին իմ" խօսքերը գրած էր. որպէս զի ցուցընէ թէ ինք մտքին մէջ հաստատուն կերպով դրած է որ կարծիքէն չշեղի[17]: Նոյնպէս Զուինգլի ալ յամառութեամբ խօսեցաւ. բայց միանգամայն իր մեծ տգիտութիւնն ալ ցուցուց. "Երկու կողմն ալ, կ'ըսէ Ռոսգոյ[18], իր կարծեաց ճշմարտութիւնը ցուցընելու համար վստահութեամբ՝ Ս. Գրոց վկայութեան կը դիմէր. բայց երկուքն ալ իմացան որ նոյն Ս. Գրոց դիմելով՝ կռիւ մը կամ վէճ մը միշտ չ'որոշուիր": Վերջապէս Խորհրդականք տեսնելով որ Լուտերը իր կարծիքէն շարժել անկարելի է, որովհետեւ իրենք ալ կարծիքնին փոխել չէին ուզեր, լալով աղաչեցին որ զիրենք եղբօր տեղ դնէ: Բայց Լուտեր աս բանը յանձն չառաւ, եւ սաստկութեամբ պատասխան տուաւ թէ Աս մեզմէ խնդրած եղբայրութիւննիդ ինչ կերպ եղբայրութիւն կ'ըլլայ, երբ որ մոլորութիւններնուդ մէջ յամառած կը մնաք: Յայտնի է որ ձեր վարդապետութեան վրայ դուք ալ կասկած ունիք, որ նոյնն ատեցողներուն հետ կ'ուզէք եղբայր ըլլալ[19]:

չ'ուրանար. ինք նոյն ժամանակը բարեկամներէն մէկուն կը գրէ որ Զուինգլիականաց՝ սուրբ հաղորդութեան վրայ ունեցած կարծիքն անոր համար ընդունիլ չուզեցի, որպէս զի աշակերտներս ամենուն առակ չըլլան: Առ Բուլլինկըրի, Գիրք Գ. Գլ. Ա. Հատ. Ա. 187:

15. Օուէն, Հատ. Բ. Գլ. ԻԳ. 294, 295: Բլանք, Գիրք Զ. Հատ. Բ. 519:

16. Գիրք Բ. Համ. ԽԷ. 137:

17. Կուստաւ Փիցէր, Գլ. Ի. 476: Օուէն, Հատ. Բ. Գլ. ԻԳ. 294:

18. Both parties appealed with confidence to the authority of scripture, for the truth of their opinions, and both discovered, that an appeal to those sacred writings will not always terminate a dispute. Գլ. ԺԹ. Հատ. Դ. 45:

19. Պասիւէ, Գիրք Բ. Համ. ԽԵ: Սեքէնտորֆ, Գիրք Բ. Համ.

Բայց որպէս զի չերեւայ որ բանակցութիւններնուն մէջ ամենեւին գործք մը չգործեցին, թուղթ մը հանեցին, որուն մէջ տասնուչորս գլուխ բաժնած գրած էին ան ամէն նիւթերը՝ որոնց վրայ իրարու հետ միաբանած էին, եւ աս թղթին՝ երկու կողման գլխաւորներն ալ ստորագրեցին։ Եւ թէպէտ, կ՚ըսէին նոյն թղթին մէջ, Ս. Հաղորդութեան մէջ Քրիստոսի ներկայութեան վրայ հիմակուհիմա իրարու հետ չկրցանք միաբանիլ. բայց որչափ որ խղճմտանքնիս կը ներէ նէ՝ կ՚ուզենք իրարու հետ քրիստոնէական սիրով վարուիլ, եւ Աստուծոյ աղաչել որ նոյն վարդապետութեան մէջ ալ զմեզ միաբանէ [20]։ Մէջերնին աս ալ հաստատեցին որ իրարու դէմ գրուածք չհանեն։

Բայց աս կերպարանեալ եւ արտաքին միաբանութիւնն ու խաղաղութիւնը երկայն ժամանակ չտեւեց։ Շուտ մը Լուտեր սկսաւ ըսել թէ մեր անոնց խոստացած սէրը՝ իրարու հետ մէկ հաղորդութեամբ կապուած մարդիկներուն մէջ գտնուած սէրը չէ, հապա ան սէրը՝ որն որ թշնամիներնուս պիտի ունենանք [21]։ Անոր համար ալ գրեթէ իրարմէ բաժնուելնուն պէս՝ սկսան մէկ մէկու դէմ գրուածքներ դուրս հանել, եւ երկու կողմն ալ կը ջանար որ ինքը յաղթած երեւայ [22]։

Խէ. 137։ Բլանք, Գիրք Զ. Հատ. Բ. 521։

20. Սէքէնտորֆ, Գիրք Բ. Համ. Խէ. 138։ Կուստաւ Ֆիցեր, Գլ. Ի. 477։

21. Աւ. Մէնցլէ, Հատ. Ա. Գլ. Է. 276։

22. Մէնցլ պատմելէն ետեւ՝ որ աս բանակցութենէն երկու տարի վերջը Հելուետիայի նահանգներուն մէջ կրօնի պատերազմ մը բացուելով՝ Զուինգլին, որն որ իրեն հետեւողներուն գլուխն անցած՝ պատերազմ գացած էր, սպաննուեցաւ եւ իր կողմնակիցները յաղթուեցան, Լուտերին մէկ խօսքը կը բերէ, որուն մէջ աս կրօնական ազատութիւն քարոզող մարդը՝ ուղղափառները վար կը զարնէ որ Զուինգլիականաց կամ Խորհրդականաց հաւատքը բոլորովին չեղջեցին, հապա նոյն պատերազմէն վերջը գրած դաշինքներնուն մէջ թող տուեր որ անոնք ալ ուղղափառաց պէս իրենց կրօնին մէջ ազատ ըլլան։ Մէնցլ ասոնք ըսելէն ետեւ՝ խօսքը այսպէս յառաջ կը տանի. "Անկարելի է որ մէկը (Լուտերի) աս վարմունքը՝ կիրքով խառն տեսլութենէ բոլորովին ազատ կարող ըլլայ կացուցանել. . . ։ Լուտերին իր կարծիքը կամ համոզումը պաշտպանելուն կերպը՝ նոյն իսկ իր Ս. Գիրքը մեկնելու վրայ ունեցած կարծիքին եւ եկեղեցւոյ վարդապետութիւններուն հետ վարուած կերպին նայելով՝ հակառակական բան մըն է։ Ուստի եւ չնախապաշարուած մարդիկ աս խորհրդածութիւնը կ՚ընէին՝ որ եկեղեցւոյ ու քահանայապետին տեղը հիմա միայն մէկ մարդու մը իշխանութիւնը կը հրամայէ,,։ Հատ. Ա. Գլ. Է. 276, 277։

# ԳԻՐՔ Գ

## ԱՒԳՍՊՈՒՐԿԻ ԱՒԱԳԱԺՈՂՈՎԷՆ

ՄԻՆՉԵՒ

ԼՈՒԹԵՐԻ ՄԱՀԸ.

**1530 — 1546**

# Գ Ի Ր Ք Գ

## ԱՒԿՍՊՈՒՐԿԻ ԱՒԱԳԱԺՈՂՈՎԷՆ ՄԻՆՉԵՒ ԼՈՒԹԵՐԻ ՄԱՀԸ

---

## Գ Լ Ո Ւ Խ Ա

### Աւկսպուրկի աւագաժողովը

Կայսրը կը հրամայէ որ Աւկսպուրկի աւագաժողով մը գումարուի։ Լութեր 17 յօդուածով համառօտ դաւանութիւն մը կը շինէ, որն որ Մելանքթոն կը փոխէ ու կարգի կը դնէ։ Կայսրը Աւկսպուրկ կու գայ, երկրորդ օրը Մարմնոյ Եւ Արեան տօնը հանդիսով կը կատարուի։ Աւագաժողովը կը սկսի։ Բողոքողք համառօտ դաւանութիւննին կը մատուցանեն։ Ուղղափառք նոյն դաւանութեան հերքումը կը շինեն։ Աս հերքման վրայ եղած խնդիրը։ Ուղղափառ եպիսկոպոսք կ'ուզեն որ Բողոքողաց հետ առանձին խօսուի։ Լութերին առ Մոգոնտիոյ կայսրընտրիր գրած նամակը։

## 1530

ԱՒԿՍՊՈՒՐԿԻ *աս աւագաժողովը բոլոր բողոքողաց եւ մասնաւորապէս Լուտերականաց համար մեծ դարագլուխ մըն է։ Ինչու որ Թէպէտ եւ արդէն քանի մը տարի յառաջ Դորկաւեան դաշնակցութեամբ մէջերնին քաղաքական միաբանութիւն մը հաստատած էին, Թէպէտ եւ Շփայէրի երկրորդ աւագաժողովին* (1529) *վճռոյն դէմ ամէնքը մէկտեղ բողոքելով՝ իբրեւ մէկ կրօնական միաբանութիւն երեւցած էին. բայց մինչեւ աս աւագաժողովը՝ դեռ կատարեալ հրապարակական եւ կրօնական մարմին մը չէին կացուցաներ, որուն գլխաւոր պատճառն ան էր որ ամենուն հաւանութեամբ միաբան ընդունուած հրապարակական դաւանութիւն հաւատոյ չունէին։ Ուստի եւ բուն աս աւագաժողովին մէջ երեւցան իբրեւ իրական կրօնական միաբանութիւն մը՝ իրենց տուած հաւատոյ դաւանութեամբը, որն որ մինչեւ հիմա ալ մէջերնին շատ յարգ ունի։ Անոր համար աս ժողովքը մեծ մտադրութեան արժանի է։ Եւ կարծես Թէ արդէն ժողովքին սկսելէն յառաջ տեսնուած պատրաստութիւնները կը ցուցընէին որ ասիկա շատ երեւելի հետեւանք պիտ' որ ունենայ։*

*Կայսրը՝ նոյն ատեններ պատերազմներէն քիչ մը ոգի առած ըլլալով՝ քահանայապետին ձեռքովը Հռոմայի կայսրութեան Թագովը պսակուելէն ետեւ՝ ուզեց Գերմանիա անցնիլ, եւ նոյն*

ժողովքին ներկայ գտնուին, ուստի եւ հրաման խաւրեց որ բոլոր աւագանին գայ Աւկսպուրկ ժողովուի, խոստանալով որ ինքն ալ անձամբ հոն կու գայ: — Բողոքող իշխանները աս հրամանէն կասկածի երթալով որ չըլլայ թէ նոյն քաղաքը ժողվուած ատեննին՝ գլուխնին բան մը գայ, սկսան մէջերնին խօսակցիլ որ արդեօք նոյն աւագաժողովին անձամբ երթան, թէ տեղերնին մարդ խաւրեն. եւ Սաքսոնիայի կայսրընտիրը աս բանիս վրայ իր խորհրդականներուն կարծիքը հարցուց: Աշխարհատէր կոմսը անձամբ երթալն իրենց շատ վտանգաւոր կը կարծէր, եւ աւելի ան կողմը կը միտէր որ չերթըցուի. թէպէտ եւ կը զրուցէր թէ չեմ որոշած որ երթամ թէ չերթամ: Բայց կայսրընտրին խորհրդականներէն՝ Պրիւք դիւանադպիրը հաստատուն պատճառներով ցուցուց որ վախնալու ամենեւին առիթ չկայ: Իսկ չերթալումնիդ, ըսաւ, կայսեր կասկածը կ'աւելցընէք, եւ միանգամայն վախ ունենալնիդ ցուցընելով՝ զինքը կը ստիպէք հետերնիդ խստութեամբ վարուելու. ուր որ առանց վախի ժողովք երթաք ու հոն համարձակ խօսիք նէ՝ ձեզի ամենեւին վնաս մը չիկրնար հասնիլ [1]: Ամէնն ալ աս խորհրդին հաւանելով՝ որոշեցին որ անձամբ երթան: Բայց Յովհաննէս Սաքսոնիայի կայսրընտիրը մտածելով որ աս ժողովքին մէջ կրօնի վերաբերած նիւթերուն վրայ մեծ զգուշութեամբ ու փութով պիտի խօսուի, Աւկսպուրկ երթալու համար ճամբայ չելած՝ Լուտերին, Մելանքթոնին ու Յուստոսին՝ ըլլալու ժողովքին խմացընելէն ետեւ՝ հրամայեց որ անմիջապէս խորհին ու վէճի տակ եղած նիւթերուն վրայ բան մը հաստատեն: Ասոնք իրենց Մարտի 14ին գրեց, ու հրամայեց որ գրելիքնին մինչեւ նոյն ամսոյն 21ը գրեն ու Դորկաւ իրեն բերեն: Լուտեր շուտ մը 17 գլխու մէջ հաւատոյ դաւանութիւն մը շինեց, որուն մէջ համառօտիւ մը իր վարդապետութեանց մեծ մասը բովանդակած էր, եւ ատեննին տարին Դորկաւ՝ կայսրընտրին տունը [2]: Հոն հասնելնէն քանի մը օր վերջը (Ապրիլի 3ին) ամէնքը մէկտեղ ճամբայ ելան. եւ Գոպուրկի մէջ մէկ քանի օր կենալով՝ զատկի տօնը

1. Բլանք, Գիրք Է. Հատ. Գ. Մասն Ա. 20, 21:

2. Ըստ ամենայնի այսպէս կը պատմէ Սէքէնտորֆ (Գիրք Բ. Համ. ԾԵ. 151.): Ասոր հակառակ Կուստաւ Ֆիցեր (Գլ. ԻԴ. 619.) կը զրուցէ որ աս 17 գլուխները նոյն ատեն չշինուեցան, հապա առջի տարին ուրիշ առթի մը մէջ շինուած էին: Իսկ Բլանք (Գիրք Է. Հատ. Գ. Մասն Ա. 22.—24. Ծան. 14.) վրան երկայն խօսելով՝ կ'ըսէ որ աս խնդիրը դեռ աղէկ մ'որոշուած չէ: — Բայց թէ՛ նոյն ժամանակ շինուած ըլլան, թէ՛ առջի տարին, ան ստոյգ է որ նոյն 17 գլուխները՝ աս Աւկսպուրկի աւագաժողովին մէջ կայսեր տրուած դաւանութեան հիմն եղան, ինչպէս որ ինք Կուստաւ Ֆիցերն ալ թէ՛ հոս եւ թէ՛ քիչ մը վերջը յայտնապէս կը գրէ:

կատարեցին, ու մաքը ճամբորդութիւններին նորէն յառաջ տանելով՝ Մայիսի 2ին Աւկսպուրկ հասան։ Բայց կայսրընտիրը պատշաճ սեպեց Լուտերը Գոպուրկի բերդին մէջ թողուլ. "Որպէս զի չըլլայ որ, կ՚ըսէ Ռոպերդսըն, քահանայապետէն նզովուած եւ անանկ դժուարաւ առջեւն առնուելու գժտութեանց պատճառ ըլլող անձը կայսեր առջեւը հանելով՝ զինքը վշտացընէ„[3]։

Արովհետեւ բողոքողներուն Աւկսպուրկ հասնելէն ետեւ՝ կայսրը դեռ կ՚ուշանար, անոր համար Մելանքթոն յարմար առեն գտնելով՝ Լուտերին շինած հաւատոյ դաւանութիւնը սրբագրեց ու շատ փոխեց, տեղ տեղ ընդարձակեց, տեղ տեղ համառօտեց, շատ բան մէկ դի թող տուաւ, շատ բան նորէն աւելցուց, կարգը փոխեց, ընդհանրապէս խիստ ու անպատշաճ տեղերը մեղմացուց, ոճը զարդարուն ըրաւ, վրան ալ յառաջաբանութիւն մ՚աւելցուց [4]։ Մելանքթոնին աս գրուածքն է, որ Աւկսպուրկի դաւանութիւն կը կոչուի։

Ասիկա երկու մաս կը բաժնուէր. առաջինը քսանումէկ գլուխ ունէր, որոնց մէջ բողոքողք իրենց վարդապետութիւնը դրած էին [5]. իսկ երկրորդ մասին մէջ Հռոմայ եկեղեցւոյն դէմ եօթը

3 ... The author of all those dissensions, which it now appeared so difficult to compose. Գիրք Ե. Հատ. Բ. 329։ — Իսկ Մաթեսիոս այսպէս կը գրէ. "Աս բերդին մէջ ձգեցին Լուտերը մեծ եւ կարեւոր խորհրդով մը, որպէս զի չըլլայ որ հակառակորդներն իր ներկայութեամբն աւելի եւս գրգռանան„։ Եւ վրան աս խօսքն ալ կ՚աւելցընէ. "Բայց թէպէտ եւ մեր վարդապետը (Լուտեր)... հոն մնաց, է վերայ այսր ամենայնի բողոքողք երեն չիմացուցած եւ իր խորհուրդը չհարցուցած՝ ամենեւին բան մը չէին ըներ„։ Ճառ. Ը. 78։ Կուստաւ Փֆիցեր (Գլ. ԻԴ. 663.) կը գրէ որ Լուտեր Գոպուրկի մէջ իբրեւ պահուըտած կը կենար, եւ տասներկու զինուորեալ մարդիկ զինքը կը պահպանէին։

4. Ինք Մելանքթոն աս բանս կը պատմէ առ Գամերարիոս գրած մէկ նամակին մէջ։ Տես առ Մենցըլ, Հատ. Ա. Գլ. Ժ. 345։ Տես նաեւ Բլանք, Գիրք Է. Հատ. Գ. Մաս Ա. 40, 41։

5. Գործք Լուտ. գերմ. Հատ. Զ. 388. Բ. — 394։ Աս տեղի մասը՝ ետեւի խօսքերով կը վերջանայ. "Որովհետեւ աս վարդապետութեանց բովանդակութիւնը յայտնապէս Ս. Գրոց վրայ հիմնուած է, եւ միանգամայն ընդհանուր քրիստոնէական մանաւանդ թէ Հռոմէական եկեղեցւոյն վարդապետութեան ... հակառակ չէ, անոր համար կը կարծենք թէ հակառակորդներն ալ վերը նշանակուած մասերուն մէջ մեզի հետ անմիաբան չեն կրնար ըլլալ։ Ուստի եւ զմերիններս աս բանիս համար իբրեւ հերետիկոս մերժողները՝ ... քրիստոնէական միաբանութեան ու սիրոյ դէմ կը գործեն։ Եւ որովհետեւ (հաւատոյ) գլխաւոր մասանց մէջ անհիմն բան կամ պակասութիւն մը չկայ, եւ աս մեր խոստովանութիւնը՝ աստուածային ու քրիստոնէական է, անոր համար պատշաճ էր որ եպիսկոպոսները՝ թէպէտ եւ մէկ մէկը աւանդութեանց վրայ պակասութիւն մ՚ըլլար՝ քաղցրութեամբ վարուէին հետերնիս. մանաւանդ որ մենք կը յուսանք թէ հաստատուն պատճառներով կրնանք ցուցընել որ ինչու քանի մը աւանդութիւններն ու անկարգութիւնները փոխեցինք„։ — Ուրիշ աս խօսքը բերելէն վերջը՝ վրան ետեւի խորհրդածութիւնը կ՚ընէ։ Մեզի անանկ կ՚երեւայ որ, կ՚ըսէ, բողոքողաց աս խօսքն ուրիշ բան չէ, բայց եթէ իրենց դատապարտութեան վճիռը։ Թէ որ իրենց դաւանութիւնը հաւատոյ

ամբաստանութիւն կար, կամ կը խօսէին ան եօթն անկարգութեանց վրայ՝ որոնք որ (իրենց խօսքին նայելով) Աւետարանին հակառակ՝ եկեղեցւոյ մէջ մտած էին, եւ զորոնք որ կ'ուզէին վերցընել կամ վերցուցած էին։ Աս եօթն ամբաստանութիւններն ասոնք են. Ա. Երկու տեսակով չհաղորդուիլը. Բ. Քահանայից չկարգուիլը կամ կուսութիւն պահելը. Գ. Պատարագը. Դ. Խոստովանութիւնը. Ե. Պահքը կամ միս չուտելը. Զ. Կրօնաւորական ուխտերը. Է. Եպիսկոպոսաց իշխանութիւնը [6]։ — Աս գրուածքը թէպէտ ըստ ինքեան մոլորու-

գլխաւոր մասանց մէջ Հռոմայ եկեղեցւոյն վարդապետութեան հակառակ չէր, հապա միաբան էր նէ, ապա ուրեմն Հռոմայ եկեղեցին նոյն գլխաւոր մասանց մէջ մոլորած չէր. ուստի ինչ պատճառ կամ իրաւունք ունէին այնպէս նոյն եկեղեցիէն բաժնուելու, անոր դէմ այնչափ ձայներնին բարձրացընելու, անանկ ապօրինաւոր գործողութիւններ ընելու եւ վերջապէս զանիկա դատապարտելու։ Թէ որ ասոր պատճառը իրենց ըսածին պէս՝ ետեւէ ետեւ մտած անկարգութիւններն ու աւանդութիւններն էին նէ, ինչո՞ւ իրենք՝ որ կը պահանջէին թէ եպիսկոպոսները նոյն կամ նոյնպիսի նիւթերու համար հետերնին քաղցրութեամբ վարուէին, չէին սպասեր որ ան իրենց անկարգութիւն սեպած բաներնին՝ օրինաւոր կերպով կարգով կանոնով վերցուէին։ Ենթադրենք որ իրօք եկեղեցւոյն մէջ անկարգութիւններ մտած ըլլային, աս անկարգութեանց համար բոլոր եկեղեցւոյ իշխանութիւնը մերժելու եւ կործանելո՞ւ էր։ Իրենք կը խոստովանէին որ նաեւ աշխարհական իշխանութեան մէջ ալ անկարգութիւններ մտած էին, եւ Լուտերին գրքերը ասոնց դէմ տրտունջներով լեցուն է. ինչո՞ւ ուրեմն երբ որ գեղացիները՝ Լուտերին խրատներէն յորդորուելով՝ նոյն իշխանութիւնը կարգի դնելու ելան նէ, իրենք չհամբերեցին, կամ գէթ զիջում մը չըրին, հապա անանկ չարաչար մեռցուցին։ Գիրք Բ. Գլ. Թ. 390։ — Բայց թէ ան բողոքողաց յառաջ բերած անկարգութիւնները այնչափ մեծ ու իրական բաներ չէին, ասկէ վերջի ծանօթութեան մէջ կը տեսնենք։

6. Գործք Լուտ. փերմ. Հատ. Զ. 394. — 404։ — Աղէկ կը տեսնենք բողոքողաց աս գրուածքին մէջ ըրած եօթն ամբաստանութիւններէն մէկ քանիին եւ միանգամայն ետքը ուղղափառաց ասոնց տուած պատասխանը հատուկտոր դնել, որպէս զի տեսնուի թէ աս ամբաստանութիւնները ինչչափ անհիմն բաներ են։ Ա. Հաղորդութեան խորհուրդը երկու տեսակաւ ընդունիլը՝ Քրիստոսի բացայայտ հրամանն է, կ'ըսէին, եւ վրան կ'աւելցընէին որ չէ թէ միայն հին եկեղեցիներն ընդհանրապէս աս սովորութիւնն ունէին, հապա նաեւ նոյն իսկ պապերը շատ անգամ հրամայած էին. բայց չգիտցուիր, կ'ըսէին, թէ երբ եւ որո՞ւն ձեռքովը մտած է մէկ տեսակաւ հաղորդուելու սովորութիւնը։ Բ. Քահանայից ամուրութեան կամ կուսութեան վրայ կը զրուցէին որ ողջախոհութեան շնորհքը քիչերուն տրուած է, անոր համար ալ, կ'ըսէին, ամուսնութեան վիճակին Աստուծմէ գրուած է մարդկան տկարութեան օգնելու եւ անկարգութեանց առջեւն առնելու համար։ Աս պատճառաւ, կ'ըսէին, Աստուծոյ խօսքին ու հրամանին վրայ հիմնուելով, եւ փորձով տեսնելով որ ողջախոհութեան ուխտը ո՛րչափ չարեաց եւ անկարգութեանց պատճառ կ'ըլլայ, մեղմէ քանի մը քահանայք ու եկեղեցականք կարգուեցան, ինչպէս որ հին ատենն ալ սովորութիւն էր։ Գ. Պատարագին վրայ խօսելով կը զրուցէին որ հակառակորդներուն ըսելը թէ մենք պատարագը մէկդի ձգած ենք ու կը մերժենք՝ սուտ խօսք ու զրպարտութիւն է. մեր մէջը պատարագն աւելի բարեպաշտութեամբ կ'ըլլայ քան թէ հակառակորդներուն մէջ։ Եւ ամենեւին յիշատակութիւն մը չը-

թիւններով լեցուն է, բայց բուն Լուտերի վարդապետութիւններէն շատ տարբեր է, կամ նոյն մոլորութիւններն ասոր մէջ շատ ամփոփուած ու փոխուած են. Եւ շատ տեղ անանկ լեզունելով՝ պատարագի կանոնին վրայ՝ զորն որ Լուտեր ամենամեծ հայհոյութիւն եւ ամպարշտութիւն կը կանչէր եւ իրենք բոլորովին մեկդի թող տուած էին, կը ցուցնեն որ արտաքին ծիսից մէջ ըրած յիշատակուելու արժանի փոփոխութիւններ՝ աս է որ լատիներէն երգերուն հետ նաեւ գերմաներէն երգեր ալ կը խառնենք: Ասոր վրայ կ'աւելցընեն որ մենք՝ միայն ուրիշի համար պատարագ ընելը կը մերժենք, եւ մինակ ան ատեն պատարագ կ'ընենք երբ որ հաղորդուող կայ, միանգամայն կը դատապարտենք ան մոլորութիւնը թէ Քրիստոս՝ միայն սկըզբնական մեղաց համար մեռած ըլլայ, եւ պատարագը՝ իբրեւ զոհ քաւութեան առանձնական կամ ներգործական մեղաց գրուած ըլլայ: Աս մոլորութեան դէմ՝ մենք կը վարդապետենք որ, կ'ըսեն, Քրիստոս իր մահուամբը ամէն տեսակ մեղքերուն քաւութիւն ըրած է, եւ չենք ընդունիր որ պատարագը ուրիշ մեղքերուն համար զոհ եւ կամ շնորհք ընդունելու գործք ըլլայ, հապա կը քարոզենք որ աս խորհուրդն անոր համար գրուած է որ հաւատացեալքը զարթուցանէ ու խղճմտանքնին մխիթարէ, յիշատակելով որ Քրիստոս՝ շնորհք ու մեղաց թողութիւն խոստացած է: Ասոր ու ասոր նման կերպով կը խօսին մէկալ ամբաստանութեանց մէջ ալ, որոնք որ համառօտութեան համար զանց կ'առնենք:

Ուղղափառ աստուածաբանները պատասխան տուած ատեննին՝ Ա. Ամբաստանութեան վրայ նախ կը ցուցընէին որ ամենեւին տեղ մը Քրիստոս բացայայտ եւ որոշակի հրամայած չէ որ հաղորդութիւնը երկու տեսակաւ մատակարարուի. երկրորդ՝ կը ցուցընէին որ հաւատացեալք մէկ տեսակաւ հաղորդուելով՝ ամբողջ Քրիստոս կ'ընդունին. երրորդ՝ որ հին եկեղեցւոյն մէջ մէկ կամ երկու տեսակաւ հաղորդուելու վրայ ոչ հրաման եւ ոչ արգելում մը կար. չորրորդ՝ կ'ըսէին որ նախնական եկեղեցւոյն մէջ թէպէտ հաղորդութիւնը հասարակօրէն երկու տեսակաւ կը մատակարարուէր, բայց ոչ միշտ եւ ոչ ամէն առթի մէջ, կը ցուցնէին որ Ղեւկիոսի Ի Դ. գլխոյն եւ Գործոց Բ. ու Ի. գլուխներուն վկայութիւնները՝ (որոնց մէջ հացին բեկանելուն վրայ խօսք կ'ըլլայ,) եկեղեցւոյ շատ անուանի Հարքը՝ մէկ տեսակաւ հաղորդուելուն վրայ կ'առնեն, եւ միանգամայն վերջին թօշակը միշտ մէկ տեսակաւ կը տրուէր. հինգերորդ՝ որ հաղորդութիւնը մէկ տեսակաւ մատակարարելը օրէնքով մը մտած բան չէ, հապա կամաց կամաց սովորութեամբ մտած, եւ օրէնք եղած է երբ որ Հուսեանք կը պնդէին որ զՔրիստոս ամբողջ ընդունելու եւ իր հրամանը կատարելու համար՝ հարկաւոր է որ երկու տեսակաւ հաղորդուի: Աս առթին մէջ կը ցուցնէին թէ եկեղեցւոյ սովորութիւնն ան է որ հերետիկոսութիւն մը ջնջելու համար՝ անոր հակառակ բան մը օրէնք կ'ընէ. ինչպէս երբ որ Նեստոր կ'ուզէր որ ամենասուրբ Կոյսը՝ միայն Քրիստոսի մայր ըսուի, եւ ոչ եթէ Աստուծոյ մայր, եկեղեցին արգելեց Քրիստոսածին կամ Քրիստոսամայր ըսելը, որն որ առանց Նեստորի հերետիկոսութեան՝ ստուգիւ երբեք չէր ըներ: Վեցերորդ կը ցուցնէին որ բողոքողաց ըսելը թէ եկեղեցին աշխարհականները բաժակէն կը զրկէ, սուտ խօսք է. ինչու որ նոյն իսկ քահանայապետը, կարդինալները, եպիսկոպոսներն ու քահանաներն ալ երբ որ առանց պատարագ ընելու կը հաղորդուին՝ մինակ մէկ տեսակը կ'առնեն, եւ աս բանս իրենց զրկում չխորհուիր:

Բ. Ամբաստանութեան մէջ Ս. Գրոց մէջէն բերուած վկայութիւնները՝ նոյն Ս. Գրոց ուրիշ խօսքերով շատ զօրաւոր կերպով կը հերքէին. նախ կը ցուցընէին որ նաեւ հին օրինաց ժամանակը կուսութիւնը շատ բարձր բան սեպուած էր, եւ քահանայք իրենց պաշտօնը կատարած ժամանակնին՝ պէտք էր որ իրենց կանանցմէ հեռու կենային. երկրորդ՝ բողոքողաց բերած վկայութիւններուն, այս ինքն՝ "Լաւ է ամուսնանալ քան զջեռնուլ. Ոչ ամենե-

մէկդի թող տրուած են եւ կամ շատ ծածուկ կերպով դրուած, եւ իրենց գլխաւոր վարդապետութիւններէն շատերուն վրայ բոլորովին լռուած է։ Աս լռուած վարդապետութիւնները կամ մոլորութիւններն ասոնք են. Անձնիշխանութիւնը՝ նշանակութիւն չունեցող բառ մըն է ու գործք չունեցող անուն մը. Աստուած՝ մեղաց առաջնորդն ու առաջին պատճառն է, եւ մարդիկներուն ձեռքովը չարիքը կը գործէ՝ չէ թէ միայն թոյլ տալով հապա նաեւ գործքով. Ամէն բան հարկաւ կ'ըլլայ, ու մարդկային գործքերուն մէջ ամենեւին ներընդունական բան չկայ. Հռոմայ քահանայապետը՝ չէ թէ միայն Քրիստոսի փոխանորդ ու եկեղեցւոյ գլուխ չէ, հապա նաեւ Նեռն է. Եկեղեցւոյ մէջ արտաքին պատարագ չկայ. Ամէն մկրտուած մարդիկ, այր եղեր են կին եղեր են, միօրինակ քահանայ են. Հաւատացեալք իրենց ամէն գործքերուն եւ նոյն իսկ բարեգործութիւններուն մէջ մեղք կը գործեն. Ամուսնութիւնը՝ միայն քաղաքական դաշինք մըն է, եւ ամուսնութեան բաները՝ եպիսկոպոսներուն ատեանին չեն վերաբերիր, հապա աշխարհական իշխաններուն ատեանին. Հաւատոյ նիւթերուն մէջ միայն Ս. Գիրքը կանոն է։ Արդ աս ամէն մոլորութեանց վրայ՝ որոնք Լուտեր մինչեւ նոյն ատենը իբրեւ Աւետարանին մէջ գտնուած յայտնի ճշմարտութիւններ թէ՛ գրով թէ՛ խօսքով յայտնապէս կը վարդապետէր, կամ բոլորովին բան մը չկար դաւանութեան մէջ, եւ կամ անանկ կերպով մը խօսուած էր որ բացայայտ կ'երեւար թէ Լուտերի բուն վարդապետութենէն շատ տարբեր է. նոյնպէս խորհուրդներուն թուոյն, ներողութեանց, քաւարանի եւ ուրիշ ասոնց նման բաներու վրայ բոլորովին լռուած էր։ Բայց եւ այնպէս երբ որ աս դաւանութիւնը՝ Մելանքթոնի գրչին տակ այսպէս փոխուելէն վերջը՝ բողոքողք Լուտերին խաւրեցին ու հարցուցին որ արդեօք կը հաւնի՛, կամ թէ կ'ուզէ՛ արդեօք փոփոխութիւն մ'ընել, ինք այսպէս պատասխան տուաւ. Աս դաւանութեան մէջ գտնուած ամէն խօսքերը կը հաւնիմ ու փոփոխութիւն ընել չեմ կրնար։ Բայց թէեւ քանի մը բան փոխել կարենայի, պէտք չէր որ փո-

թիւնները իրարմէ այնչափ տարբեր են, որչափ որ երկինք երկրէ... ի վերայ այսր ամենայնի Մելանքթոն դաւանութեան ԺԸ. յօդուածին մէջ կը գրէ. որ մարդը տակաւին ազատ կամք կամ անձնիշխանութիւն ունի„: Ահաւասիկ նոյն յօդուածը՝ որն որ Բլանք ծանօթութեան մէջ կը դնէ. "Մենք կը վարդապետենք որ մարդը կերպով մը ազատ կամք կամ անձնիշխանութիւն մը ունի, արտաքուստ պատուաւոր կերպով ապրելու եւ իմացութեան ըմբռնած բաներուն մէջ ընտրելու համար. բայց առանց շնորհաց, առանց Հոգւոյն սրբոյ ազդեցութեան ու օգնութեան՝ մարդս չիկրնար Աստուծոյ հաճոյ ըլլալ, սրտանց Աստուծմէ վախնալ ու հաւատալ„: Գիրք Է. Հատ. Գ. Մաս Ա. 113—114:

խէի. ինչու որ չեմ կրնար ան զգուշութիւնները բանեցընել, որոնցմով նոյն գրուածքը շարադրուած է, եւ միտքս այնչափ տկարութեամբ ու թուլութեամբ բացատրել [8]: — Որով կը հասկըցընէր որ թէպէտ Մելանքթոնին այնչափ կեղծաւորին ու թուլութեամբ գրելը չէհաւնիր, բայց մէջը գտնուած ամէն վարդապետութիւնները բոլորովին կ'ընդունի:

Վերջապէս Յունիսի 15ին կայսրն ալ Աւկսպուրկ հասաւ: Իրմէ յառաջ հոն հասնող բոլոր իշխանները քաղքէն դուրս դիմացը գացին, եւ այնպէս մեծ փառաւորութեամբ առին քաղաքը խոթեցին: Կայսեր հետ մէկտեղ եկաւ Գամբեճճիոյ՝ քահանայապետին աւագաժողովը խաւրած դեսպանը: — Երկրորդ օրը Մարմնոյ եւ արեան տօնն էր, եւ ըստ հին սովորութեան՝ սուրբ հաղորդութեան խորհուրդը մեծ հանդիսութեամբ ու շքեղութեամբ փողոցներուն ու հրապարակներուն մէջ թափօրով կը պտըտցընէին: Արդ երբ որ կայսեր քաղաք մտնելուն հանդիսութիւնը լմնցաւ, ու իշխանները իրենց յարգութիւնն ընելէն ետեւ՝ ետ կը դառնային, կայսրը ուղղափառ իշխանները թող տուաւ որ երթան, իսկ բողոքող իշխանները քովը պահելով՝ եղբօրը ձեռքով անոնց իմացուց թէ կ'ուզէ որ իրենք ալ երկրորդ օրը իրեն հետ մէկտեղ սրբազան հանդիսին ներկայ գտնուին, ինչպէս որ հնուցմէ ի վեր սովորութիւն էր: Իսկ անոնք մէկէն հասկըցուցին որ չեն ուզեր գալ. եւ թէպէտ կայսրը զիրենք շատ ստիպեց, ի վերայ այսր ամենայնի յամառութեամբ դէմ դրին ու չուզեցին հնազանդիլ, ըսելով որ Աս բանը չենք կրնար ընել, որովհետեւ խղճմտանքներնուս դէմ է [9]: Եւ Գէորգ՝ Պրանտենպուրկի սահմանակալ կոմսը վիզը ցուցընելով ըսաւ որ Լաւագոյն է կախաղան ելլեմ, քան թէ զԱստուած եւ զԱւետարանն ուրանամ. իբրեւ թէ Քրիստոսի ամենասուրբ Մարմինը պատուելը՝ զԱստուած ու զԱւետարանն

8. Առ Կուստ. Ֆիցերի, Գլ. ԻԴ. 623. եւ առ Մենցլի, Հատ. Ա. Գլ. Ժ. 345:

9. Սեքենտորֆ (Գիրք Բ. Համ. Կ. 162.) կը գրուցէ որ բողոքական իշխանք աս բանիս նախատես ըլլալով, կայսեր գալէն յառաջ՝ իրենց աստուածաբաններուն կարծիքն հարցուցած էին, եւ անոնց խորհրդեան համաձայն պատասխան տուին: Բայց Բլանք (Գիրք Է. Հատ. Գ. Մասն Ա. 34. — 36.) աս դէպքս անանկ մը կը պատմէ, որ յայտնապէս կը ցուցընէ թէ բողոքող իշխաններն աս կերպով պատասխան տալու շարժողն ամենեւին ուրիշ բան չէր, բայց եթէ ան որ ցուցընեն թէ կայսրմէ չեն վախնար, եւ ամենեւին մէկ բանի մէջ իրեն զիջանելու միտք չունէին: Ինք աս ալ կ'ենթադրէ որ կայսրը մտաւորապէս զիրենք փորձելու համար աս բանս առաջարկած ըլլայ, եւ արդէն ճամբորդութիւնն ալ անանկ յարմարցուցած էր որ, կ'ըսէ, նոյն օրը Աւկսպուրկ հասնի, որպէս զի ան բանն իրենցմէ պահանջէ: — Աս ենթադրութեան ցուցմունքը: — Անշուշտ Բլանք իր մտքին մէջ ունեցած պիտի ըլլայ. բայց ընթերցողներուն հաղորդելը հարկաւոր կամ պատշաճ չսեպեր:

ուրանալ ըլլայ: Կայսրը աս խօսքէն շատ այլայլեցաւ, եւ իրենց մինչեւ երկրորդ առտու մտածելու ժամանակ թող տուաւ. բայց իրենք երկրորդ առտու ալ նոյն պատասխանը կրկնեցին. մանաւանդ թէ աս առթին մէջ անանկ յանդուգն ու ժպիրհ կերպով խօսեցան, որ մարդը կարդացած ատեն՝ չիկրնար բարկութիւնը զսպել [10]: Աս յամառութեան ու խստապարանոցութեան վրայ ինքնակալը շատ զայրացաւ, բայց չուզեց զիրենք աւելի ստիպել, որպէս զի չըլլայ որ աւագաժողովէն յուսացած բարիքին արգելք ըլլայ: Ուստի եւ երկրորդ օրուան հանդիսին՝ կայսեր հետ մէկտեղ միայն ուղղափառ իշխանները ներկայ գտնուեցան [11]:

Երեք օր վերջը կայսրը մեծ բարեպաշտութեամբ հաղորդութիւն առաւ, որպէս զի ձեռք զարնելու գործքին աղէկ պատրաստուի [12]. ու երկրորդ օրը՝ որ Յունիսի 20ն էր, ժողովքը

**10**. Բողոքող իշխանները տուած պատասխաններնուն մէջ այսպէս կը խօսէին: "Անանկ ամպարշտական, եւ Աստուծոյ խօսքին ու Քրիստոսի հրամաններուն յայտնապէս դէմ եղող մարդկային կարգադրութիւնները՝ չենք ուզեր մեր հաւանութեամբն ու գործակցութեամբ աւելի եւս հաստատուն ընել: Մանաւանդ թէ ամենքնիս միաբան առանց տարակուսելու կը յայտնենք որ անանկ անպատշաճ ու ամպարիշտ մարդկային կարգադրութիւնները պէտք է եկեղեցիէն բոլորովին դուրս հանել ու ջնջել, որպէս զի չըլլայ որ եկեղեցւոյն դեռ առողջ ու անարատ անդամները անանկ մահաբեր ու ժանտակար թոյնով ըմբռնուին,,: Աս Բլանքոյ, Գիրք Է. Հատ. Գ. Մասն Ա. 35. Ծանօթ. 32:

**11**. Սեքենտորֆ, Գիրք Բ. Հատ. Կ. 162: Մենցել, Հատ. Ա. Գլ. Ժ. 340. — 343: Կուստաւ Ֆիցեր, Գլ. ԻԴ. 626: — Կայսրը նոյն առթին մէջ անոնց աս ալ ըսած էր որ իրենց երէցներուն հրապարակաւ քարոզ տալ չտան: Իշխաններն ասոր ալ չհաւանեցան, եւ ետքը միայն աս թէութեամբ զիջան որ երկու կողմանէ ալ աւագաժողովին ատենը քարոզ չըրուի: Մաքնեխօս, Ճառ Ը. 79: Սեքենտորֆ, Գիրք Բ. Հատ. ԿԱ. 164, 165: Կայսրը Աւկսպուրկ չեկած ալ նոյն բանն իրենց հրամայած էր. եւ չէ թէ միայն բողոքող իշխանաց քովը եղող լուտերական աստուածաբանները, հապա նաեւ Լուտեր ալ՝ իր ամփոփութեան հակառակ՝ ըսած էին որ պէտք է աս բանին մէջ կայսեր հնազանդիլ: Մանաւանդ թէ Մելանքթոն խրատ կու տար որ նաեւ պահքի օրերը միս չուտեն: Բայց կայսրընտրին աշխարհական խորհրդականները քաղաքական նկատմունքներու միտ դնելով՝ աս բանին սաստիկ հակառակ ելած էին. եւ կայսրընտիրը պատշաճագոյն սեպած էր աս հոգեւոր նիւթերուն մէջ աւելի իր աշխարհական խորհրդականներուն՝ քան թէ աստուածաբաններուն կարծեաց հետեւիլ: Ասոնց վրայ տես Բլանք, Գիրք Է. Հատ. Գ. Մասն Ա. 29. — 33: Ասկից յայտնապէս կը տեսնուի թէ որչափ փուճ ու չինծու խօսք էր անանկ առիթներու մէջ բողոքող իշխաններուն ըսելը թէ խիղճերնին թող չէտար կայսեր հրամանին հնազանդելով՝ աս կամ ան բանն ընել. որովհետեւ անանկ նիւթերու մէջ ալ շատ անգամ նոյն իսկ իրենց հոգեւոր առաջնորդներուն ու աստուածաբաններուն կարծեացը դէմ կը վարուէին:

**12**. Ասոր վրայ Սեքենտորֆ այսպէս կը խօսի. "Ժողովքին սկսելէն օր մը յառաջ, այս ինքն՝ Յունիսի 19ին, որ կիրակի օր մըն էր, կայսրը հաղորդութեան խորհուրդն ընդունեցաւ, եւ կ'ըսուի որ իրիկուան դէմ երկու ժամ աղօթքով անցուցած ըլլայ, բաց ի ան աղօթքներէն՝ որոնք ամէն առտու ժամ մը ընելու սովորութիւն ունէր: Դարձեալ հրամայեց որ ամէն եկեղեցիներուն մէջ նոյն գործքին յաջողութեան համար

սկսաւ: Ամէն բանէն յառաջ՝ կայսրը եկեղեցին գնաց, ու Մոգունտիայի կայսրընտիր արքեպիսկոպոսին Հոգւոյն սրբոյ պատուոյն համար ըրած պատարագը տեսաւ: Սաքսոնիայի կայսրընտիրն ալ կանչուեցաւ, որ պաշտօնը կատարէ, այս ինքն կայսեր առջեւէն սուրը տանի: Կայսրընտիրը՝ կայսեր հրամանին եւ սովորութեան համաձայն՝ աս պաշտօնը կատարելէն յառաջ՝ իր եկեղեցական կամ հոգեւոր խորհրդականներուն խորհուրդ հարցուց, որ արդեօք եկեղեցւոյ մէջ պատարագի ատեն կրնայ ներկայ գտնուիլ: Անոնք ալ միաբերան պատասխան տուին որ Ամենեւին առանց խղճի կրնաս ընել, ինչու որ Նեեման ասորին ալ՝ Եղիսէ մարգարէին հրամանաւը՝ Ասորւոց թագաւորին ձեռքը կը բռնէր, երբ որ ասիկա Մեհենին մէջ Ռեմմոն դիքին երկրպագութիւն կ'ընէր [13]: Ուստի եւ աս հրամանով կայսրընտիրը եւ՝ աշխարհատէր կողմէն զատ՝ ուրիշ բոլոր բողոքող իշ-

հրապարակաւ աղօթքներ ըլլան, որոշեց որ նոյն օրը եւ հետեւեալ օրերը ողորմութիւններ բաժնուին,,: Գիէբ+ Բ. Հատ. ԿԳ. 167:

13. Մաթեսիոս, Ճառ Ը. 79. Բ: Ուլէնպերկ, Գլ. ԻԱ. Հատ. Բ: — Քննենք մէյ մը, կ'ըսէ Օտէն, թէ ինչպիսի մարդիկ էին ան իշխանները՝ որոնք կը կարծէին թէ ուղղափառաց եկեղեցին ոտք կոխելով եւ պատարագի ներկայ գըտնուելով՝ խղճերնին կ'արդարացունէին, եւ անոր համար աստուածաբաններէն հրաման կ'առնէին: Անոնց մէջ ամենէն գլխաւորն էր Յովհաննէս Սաքսոնիայի կայսրընտիրը, որն որ ան ատենի ուտելու խմելու ետեւէ ինկած էր, որ նախաճաշէն վերջը հարկ կ'ըլլար միշտ փորը երկաթի կապերով հաստատել. եւ անոր համար Նորոգութեան մեծ սէր ունէր, որովհետեւ անով պահքի օրէնքէն կ'ազատէր ու միշտ միս կրնար ուտել, եւ սեղանը՝ եկեղեցիներուն ու վանքերուն արծաթէ ու ոսկիէ ամաններովը կը զարդարէր: Անկէ վերջը կու գար Յովհաննէս Փրեդերիկոս՝ իր որդին, որուն բարքը հօրմէն տարբեր չէր, ու բոլոր ժամանակներն ուտելով խմելով եւ որսի երթալով կ'անցընէր, ու քրիստոնէական կրօնքին առաջին սկզբունքներն իսկ չէր գիտեր: Անոնցմէ վերջը երեւելի էր Փիլիպպոս՝ Հեսսենի աշխարհատէր կոմսը, որուն անառակութիւններն առակ եղած էին: Անոնց մէջն էր նաեւ Վոլֆկանկ՝ Անհալդի իշխանը, որն որ այնչափ ագէտ էր, որ կ'ըսուի թէ խաչ հանել ալ չէր գիտեր: Վերջապէս անոնց մէջն էին Եռնեստոս եւ Փրանկիսկոս՝ Լիւնեպուրկի դուքսերը, որոնք Նորոգութեան այնչափ նախանձախնդիր էին, որ վանքերն ու եկեղեցիները թալլելը՝ իրենց ծառաներուն յանձնել չէին ուզեր, հապա ամէն բան իրենք իրենց ձեռքովը կը կատարէին, եւ եկեղեցիներուն ազնիւ զգեստներն ու ծանրագին սրբազան ամաններն անձամբ կը կողոպտէին, որպէս զի չըլլայ որ ձեռքէ ձեռք անցնելով բան մը կորսուի: Արդ ասոնք էին ան վերջին ատենի առաքինի ու Աստուծոյ փառացը նախանձախնդիր իշխանները, որոնք նոյն իսկ մեղքին չքէն այնպէս կը սոսկային, մինչեւ ուղղափառաց եկեղեցին ոտք կոխելը՝ խղճմտանքներնուն դէմ կը սեպէին ...: Հատ. Բ. Գլ. ԻԴ. 314, 315: — Եւ չկարծուի որ Օտէնին՝ աս իշխանաց վրայ ըսածները՝ որոնք իրօք քիչ մը չափազանց կ'երեւան, զրպարտութիւն ըլլան, որովհետեւ նոյն իսկ բողոքող մատենագիրները աս բաները երբեմն յայտնի երբեմն ալ ծածուկ կերպով կը խոստովանին: Մենցլ՝ Յովհաննէս Սաքսոնիայի կայսրընտրին համար կը զրուցէ որ "Միզանի, գինւոյ ու որսի բարեկամ էր,,: Հատ. Ա. Գլ. Ժ. 338. Ծանօթ: Նոյնպէս Բլանք (Գիէբ+ Զ. Հատ. Բ. 345.) կայսրընտրին գրեթէ ամէն օր գինեձէալը յայտնի

խաններն ալ պատարագին ներկայ գտնուեցան, բայց Սփալատինին ըսածին պէս՝ ծիծաղելով 14։

Պատարագը լմննալուն պէս՝ կայսրը աւագանւոյն հետ խորհրդին սենեակը գնաց։ Հոն Փիմփինելլի՝ քահանայապետին նուիրակը ճառ մը խօսելէն ետեւ՝ Փրեդերիկոս Պալատական (կամ Ֆալցի) կոմսը աւագաժողովին գլխաւոր վախճանը կայսեր կողմանէ ժողովականներուն առջեւը դրաւ, որ էր՝ շատ տարիներէ վեր Գերմանիան տակն ու վրայ ընող կրօնական գժտութիւններն ու խռովութիւնները դադրեցընելու ճար մը հոգալ։ Իր խօսքին մէջ գլխաւորաբար անոր վրայ ուժգնութիւն կը ցուցընէր որ Վորմսի աւագաժողովին վճիռը մինչեւ նոյն ատեն չէր կատարուած 15։

Քանի մը օր վերջը (ամսոյն 24ին) նորէն ժողվուած ժամանակնին՝ Գամբեճճիոյ քահանայապետին դեսպանը ժողովք եկաւ ու ճառ մը խօսեցաւ։ Նոյն օրը բողոքողք խնդրեցին որ իրենց հրաման տրուի ամենուն առջեւը իրենց հաւատոյ դաւանութիւնը կարդալու։ Կայսրը հրամայեց որ ան գրուածքն իրեն տան. բայց անոնք նորէն խնդրեցին որ չտուած՝ աւագաժողովին մէջը մէյ մը կարդան։ Սակայն ուղղափառ իշխանները դէմ կը դնէին ու կ՚ըսէին որ շատոնցուընէ դատապարտուած մոլորութիւնները աւագաժողովին մէջ հրապարակաւ նորէն լսել չենք ուզեր։ Վերջապէս ինքնակալը՝ աւելի իր հեզութեան ու զիջանող բնութեան հետեւելով քան թէ բուն իրաւանց նայելով՝ հրաման տուաւ որ երկրորդ օրը իր պալատը գան ու հոն իր առջեւը կարդան 16։

Երկրորդ օրը Թագաւորական պալատին սրահին մէջ իշխաններէն ոմանք ժողվուեցան, եւ անոնց ու կայսեր առջեւը Սաքսոնիայի կայսրընտրին դիւանադպրաց մէկը աս բողոքական կրօնին առաջին հրապարակական դաւանութիւնը գերմաներէն լեզուաւ կարդաց։ Բոլորը կարդալէն լմնցընելէն ետեւ՝ կայսեր

կը ղրկեցէ։ Աս մատենագրին խօսքը ետքը ուրիշ տեղ կը տեսնենք։ Լուտեր իր մէկ գրուածքին մէջ թէպէտ կը ջանայ կայսրընտրին որդին՝ զինուորութեան մոլութենէն արգաբեցընել, բայց միանգամայն կը խոստովանի որ շատ կը խմէ։ Լուտերին աս խօսքը Կուստաւ Ֆիցերն ալ կը դնէ։ Գլ. ԻԷ. 802, 803։ Մենցլին վկայութեան նայելով՝ նոյն ինք բողոքող աստուածաբանները Հեսսենի աշխարհատէր կոմսը՝ "Անհանդարտ մարդ մը,, կ՚անուանեն, եւ վանքերն ու բարեպաշտական տեղերը կործանելուն վրայ տրտունջ կ՚ընեն։ Հոփ. Ա. Գլ. Թ. 326։ Նոյն իշխանին վրայ Լուտերին գրած տրտունջները, եւ մանաւանդ ըսելը՝ որ "Ամենեւին փոփոխութիւն մը չէցուցըներ եւ ըրածներուն վրայ զիղջ ու ցաւ չ՚ունենար,, Կուստաւ Ֆիցեր երկու երեք անգամ կը յիշէ. Գլ. ԻԱ. 534, 536, 537։ Բայց աս անձին վրայ ուրիշ անգամ աւելի ընդարձակ խօսելու առիթ կ՚ունենանք։

14. Առ Ռիքֆէլի, Գիրք Բ. Գլ. Թ. 383։

15. Սեքենտորֆ, Գիրք Բ. Համ. ԿԴ. 168։

16. Սլէյտան, Գիրք Է. 102. Բ։

ատենադպրին երկու օրինակ տուին, որոնցմէ մէկը գերմաներէն ու մէկալը լատիներէն գրուած էր։ Երկուքին ալ Յովհաննէս՝ Սաքսոնիայի կայսրընտիրը, իր որդին Յովհաննէս Փրետերիկոս, Գէորգ՝ Պրանտենպուրկի սահմանակալ կոմսը, Փիլիպպոս՝ Հեսսենի աշխարհատէր կոմսը, եւ ուրիշ իրենց հետ միաբան ըլլող երեւելիները ստորագրած էին 17։

17. Ժողովքը գտնուողներուն մէջը Խորհրդականք ալ կային, գլխաւորաբար Ստրասպուրկ, Կոստանդիա, Մեմմինկէն ու Լինտաւ քաղաքներուն պատգամաւորներն ու իրենց աստուածաբանները։ Ասոնք ալ կ'ուզէին Լուտերականներուն հաւատոյ դաւանութեան ստորագրութիւն դնել, եւ Հեսսենի աշխարհատէր կոմսը շատ ջանաց որ իր կողմնակիցներն ալ բանիս հաւանին. բայց Լուտերականք յանձն չառին։ Անոր համար Խորհրդականք ալ զատ հաւատոյ դաւանութիւն մը տուին, որն որ Բուցեր շինած էր։ Զուինգլի ալ ապուած դաւանութիւն մը խաւրեց ժողովքին. բայց ան ատենանի խիստ բան մըն էր, որ Մելանքթոն կ'ըսէ թէ շինողը պէտք է որ խելքը կորսնցուցած ըլլայ։ Տես տը Ռէֆիւլէ, Գիրք Բ. Գլ. Ժ. 461, 462։ — Ռանքէ (Գիրք Ե. Գլ. Ը. Հատ. Գ. 247.) ու Մենցլ (Հատ. Ա. Գլ. Ժ. 346.) կը պատմեն որ աշխարհատէր կոմսը ան ատենան Խորհրդականաց կողմը միտած էր, որ Լուտերականներուն հաւատոյ դաւանութեան չէր ուզեր ստորագրել, եւ զինքը համոզելու համար հարկ եղաւ որ Լուտեր իրեն առանձին աս բանիս վրայ ազդարարութիւն մ'ընէ։ Իսկ Բլանք (Գիրք Է. Հատ. Գ. Մաս Ա. 70.) ասոր վրայ ան ալ կ'աւելցընէ թէ "Մելանքթոն ստիպմամբ Լուտերին գրեց որ շուտով մը աշխարհատէր կոմսին նամակ մը գրէ, զինքը՝ թէ որ կարելի է նէ՝ յորդորելու համար որ իրենց կողմը հաստատուն կենայ, եւ կամ արգելելու համար որ այնպէս անպատշաճ ատեն հրապարակաւ Հելուետիացւոց կողմը չբռնէ,,։ Եւ թէպէտ աշխարհատէր կոմսը Լուտերական դաւանութեան ստորագրելու հաւանեցաւ, բայց նոյն Բլանքին ըսածին նայելով՝ բոլոր աւագաժողովին ատենը միակերպ կ'աշխատէր որ Հելուետիացիներն ու Լուտերականները միաբանէ, որպէս զի իրենց կողմը զօրանայ, ու դիւրաւ ուղղափառաց դէմ կարող ըլլան դնել։ Աս մատենագիրը նոյն նիւթին վրայ բողոքողաց մէջ եղած անմիաբանութիւններուն ու երկպառակութիւններուն վրայ երկայն կը խօսի (78. — 93.)։ Իր խօսքերէն միայն մէկ կտոր մը յառաջ բերել պատշաճ կը սեպենք։ Բլանք կը ցուցէ որ Լուտերականներուն՝ Խորհրդականաց հետ միաբանելը դժուարացընող պատճառներէն մէկն ալ աս էր, որ "Լուտեր Խորհրդականներուն վարդապետութիւնը չէ թէ միայն ամենաթունալից, ամենաժխտական եւ հոգին սատանի պղծող մոլորութիւն կանչած էր, եւ ըսած էր որ նոյն մոլորութիւնը ամենեւին մէկ կերպով պէտք չէ տանիլ, հապա նաեւ զանիկա ջնջելու համար երբեմն երբեմն շատ բռնական միջոցներ եթէ չէր առաջարկած նէ, գոնէ ամենեւին ոչհաճութիւն մը չէր ցուցուցած որ անոնց դէմ ի գործ դրուին, եւ գոնէ Սաքսոնիայի մէջ ան ատենանի լաւութիւն պահած էր աս բաներուս նկատմամբ՝ մինչեւ ինքն ալ գործակից կրնայ համարուիլ. եւ առանձին ու բացայայտ կերպով մը շատ անգամ յանձնած էր որ անոնց գրուածները իշխաններուն կամ դատաւորներուն ձեռքով խափանուին ու արգելուին, եւ ասիկա՝ շատ օգտակար, հարկաւոր եւ աստուածահաճոյ գործք մը կը սեպէր։ Արդ թէ որ հիմա աւագաժողովին մէջ ըսելու ըլլային որ իրենց (Լուտերականաց) աղանդը չէկրնար յանձն առնել որ Խորհրդականները հալածուին, ան ատեն իրօք վտանգի մէջ կը մտնէին որ ուղղափառները իրենց աս հարցումը ընէին, որն որ զիրենք (Լուտերականները) պէտք էր որ շատ ամըչցընէր, այս ինքն թէ ինչպէս առանկ շուտով ան ատենանի քաղցրութեան ու հեզութեան հասան՝ զորն որ մինչեւ նոյն ատեն

Ըս կարդացածնիս՝ ան հռչակաւոր Աւգսպուրկեան դաւանութիւնն է, որուն համար Լուտերականք պարծելով կ՚ըսեն թէ հրաշալի բան մըն է։ "Առաքելոց ժամանակէն վեր, կ՚ըսէ Մաթեսիոս, ասկից աւելի մեծ ու բարձր գործք մը, աւելի գեղեցիկ ու փառաւոր դաւանութիւն մը եղած չէ" [18]։ Իսկ Սփալադին՝ "Ասանկ հաւատոյ դաւանութիւն, կ՚ըսէ, երբեք եղած չէ, չէ թէ միայն վերջին հազար տարուան մէջ, հապա եւ ոչ աշխարհքիս սկիզբէն վեր։ Եւ ստուգիւ ալ՝ ոչ պատմութեան մը մէջ եւ ոչ հին հարց ու վարդապետաց գրքերուն մէջ՝ խոստովանութիւն մը կը գտնուի, որն որ ասոր նման ըլլայ" [19]։

Կայսրը աս հաւատոյ դաւանութիւնն առնելէն ետեւ՝ Պալատական կողմին բերնովը բողոքողներուն պատասխան տուաւ որ Անիկա երեւելի գործողութիւն մ՚ըլլալով՝ հարկ է որ վրան աղէկ մը մտածեմ, խորհրդակցիմ ու ետքը պատասխան տամ։ Միանգամայն իրենց հրամայեց որ առանց կայսեր հրամանին ու հաւանութեան՝ նոյն դաւանութիւնը չտպեն. իրենք ալ խոստացան [20]։ Ետքը կայսրը առանձին ուղղափառ իշխաններուն

չէին ցուցուցած։ Աս հարցումն ըլլար նէ, կ՚ըսէ, գոնէ լաւութեամբ պէտք էին խոստովանիլ որ երբեմն տաքութեան ատեն՝ շատ անդին անցած էին. եւ թէ որ աս խոստովանութիւնը դիւրաւ Մելանքթոնէն եւ Պրենցէն կրնար առնուիլ նէ, ինչպէս կրնային յուսալ որ Լուտերին ալ կարող ըլլան ստիպել որ ընէ"։ (75.) — Բայց թէ որ աս բանս իրենց նախատական էր նէ, արդեօք նոյնչափ նախատական չէ՞ր ան ալ որ աս Լուտերին՝ խորհրդականաց դէմ բռնած ընթացքը՝ իր ի սկզբան դրածներուն ու գործածներուն բոլորովին հակառակ էր. եւ աս հարցումն ալ ուղղափառները իրենց չէ՞ին կրնար ընել։ Բայց եւ ոչ հարկաւոր էր որ ուղղափառները ընէին. ինչու որ Հեսսենի աշխարհակալը կոմսը Լուտերին երեսը կը զարնէր, եւ իրեն կը յիշեցնէր թէ "ինչպէս ինք Լուտեր յառաջագոյն՝ գրելու եւ քարոզելու սկսած ատեն՝ խիղճերը բռնադատելու սաստիկ դէմ դարձած էր, որչափ շատ անգամ իշխանները կամ դատաւորները խրատած էր որ իրենք իշխանութիւն չունին գրքեր արգելելու եւ նաեւ իրենց մոլորական երեւցած վարդապետութեան մը տարածուիլը բռնութեամբ խափանելու, եւ որչափ տոկունութեամբ շատ անգամ ըսած էր որ իրենց իշխանութիւնը մարմնոյ եւ ընչից վրայ կը տարածուի, իսկ հոգւոց եւ խղճից վրայ չիկրնար տարածուիլ"։ Նոյն տեղը, 78։

18. Ճառ. Ը. 80։

19. Ուլէնպերկ՝ Սփալադինին աս խօսքը հենգնելով՝ այսպէս կը գրէ. Աս խօսքը շատ իրաւամբ կը զրուցէ Սփալադին, որովհետեւ առաքելոց ժամանակէն վեր, մանաւանդ թէ աշխարհքիս սկիզբէն վեր, երկրի վրայ ո՛չ ազգ մը եւ ո՛չ միաբանութիւն մը գտնուած է, որուն հաւատոյ դաւանութիւնը՝ Լուտերականաց դաւանութեան համաձայն ըլլայ։ Ապա ուրեմն իրենց խօսքին ալ նայելով՝ Լուտեր նոր ու անլուր կրօն մը ու նոր խոստովանութիւն մը դուրս հանեց, որն որ իրմէ յառաջ ամենեւին մարդ մը չէր վարդապետած։ Գլ. ԻԱ. Համ. Բ։

20. Բողոքողք կայսեր հրամանին եւ ըրած խոստմունքներնուն դէմ՝ դեռ աւագաժողովը չլմնցած՝ աս դաւանութիւններին տպեցին ու հրատարակեցին։ Աս գործքս արդարացընելու համար կը զրուցեն որ դեռ կայսեր չտրուած՝ տարածուած եւ շատ սխալներով ասդին անդին տպուած էր. անոր համար Մելանքթոն պատշաճ սեպեց որ ճիշդ օրինակ մը տպել տայ։ Ռէֆեւ, Գերմ. Բ. Գլ. Թ. 385. Ծանօթ։

հետ խորհուրդ ըրաւ որ ինչ ընեն եւ ինչ պատասխան տան։ Եւ անոնց խորհրդովը որոշեց որ նոյն դաւանութիւնը ուղղափառ աստուածաբաններու ձեռք տան, որ ամէն մասունքները մէկիկ մէկիկ քննելով՝ կարծիքնին գրեն ու ետքը աւագաժողովին մէջ կարդացուի։ Այս խորհուրդը կամ որոշումը շուտ մը կատարեցին։ Բայց աստուածաբանները գրուածքը վեր ի վերոյ մը միայն կարդալէն վերջը՝ իմանալով որ հաւատոյ ամէն մասունքները ամբողջ մէջը չկան, կամ թէ անոնցմէ ոմանց վրայ Լուտերի հասարակօրէն վարդապետածէն շատ տարբեր կերպով խօսուած է, բանը կայսեր իմացուցին։ Ինքնակալը լուտերական իշխանաց հարցընել տուաւ որ բոլոր ձեր վարդապետութիւնները աս դաւանութեան մէջ ամբողջ կը գտնուի՞ն, եւ մէջը աւելցընելու կամ փոխելու ուրիշ բան մը չունի՞ք։ Անոնք ալ երկայն խորհելէն ու իրարու հետ խորհրդակցելէն վերջը՝ անանկ պատասխան մը տուին, որով կը հասկըցընէին թէ հիմակուս հիմա փոխելու բան մը չունին 21։ Այն ատեն ուղղափառ աս-

21. Մենցլ, Հատ. Ա. Գլ. ԺԱ. 339։ — Մեծապէս իրաւունք ունեին բողոքողք աս կերպով պատասխան տալու, ինչու որ ետքը շատ երեւելի փոփոխութիւններ ըրին, մանաւանդ Մելանքթոն, որն որ այնչափ անհաստատ էր, որ մարդ չէր կրնար աղէկ մը հասկընալ թէ ինչ հաւատքի կը ծառայէ։ Մելանքթոնին ըրածն ուրիշ շատերն ալ ըրին, ուստի եւ քիչ ժամանակուան մէջ աս հաւատոյ դաւանութիւնն այնչափ փոխուեցաւ, եւ ասդին անդին տպուած օրինակները իրարմէ այնչափ տարբեր էին, որ նոյն իսկ բողոքողք չէին գիտեր թէ կայսեր տուածնին՝ ասոնցմէ ո՛րն է։ Եղած փոփոխութիւններն այնչափ շատ էին, ու երեւելի նիւթերու մէջ, մինչեւ տասը տարի վերջը (1541ին) Վորմսի բանակցութեան մէջ, Էք հրապարակաւ բողոքողաց կը զրուցէր որ չեմ գիտեր բանակցութիւններնուս հիմ ո՞րը պիտ'որ առնենք, որովհետեւ հիմակուան ունեցած դաւանութիւննիդ՝ Աւկսպուրկի դաւանութենէն այնչափ տարբեր է, որ անկարելի է թէ մէկը հիմակուանը՝ անատենուանին հետ նոյն սեպէ։ Մենցլ աս դէպքը պատմելու ատեն՝ կը զրուցէ որ "Աս խօսքը՝ Մելանքթոնին վերջին ատենները դուրս հանած (Աւկսպուրկի) դաւանութեան տպագրութեան վրայ էր, եւ աս փոփոխութիւններն անանկ բաներ էին, որ կ'երեւայ թէ Մելանքթոն անոնք ընելու ատեն մոռցած ըլլայ որ աս իր շինած դաւանութիւնը՝ (իր անձնական գրուածքը չէ, որ ուզածին պէս փոխէ, հապա) հրապարակական գրուածք մըն է„։ Հատ. Բ. Գլ. Ժ. 209։

Հոստեղս կ'ուզենք աս փոփոխութիւններուն միայն մէկ օրինակը տալ, որով եւ կ'իմացուի թէ ասոնք ինչպէս եւ ինչ պատճառի համար կ'ըլլային։ Բողոքողք (կամ մանաւանդ Մելանքթոն) 1530ին դաւանութեան մէջ հաղորդութեան խորհրդին վրայ այսպէս գրած էին։ "Քրիստոսի Տեառն մերոյ ընթրեաց վրայ մենք այսպէս կը վարդապետենք թէ Քրիստոսի ճշմարիտ մարմինն ու արիւնը՝ հացին ու գինւոյն տեսակներուն տակ ճշմարտապէս ներկայ է, եւ անով կը բաշխի ու կ'ընդունուի։ Եւ ասոր հակառակ եղող կարծիքները կը մերժենք„։ Գոյծէ Լատ. եւրմ. Հատ. Զ. 390։ Աս խօսքով բողոքողք երեք բան կ'ընդունէին. մէյ մը որ Քրիստոսի մարմինն ու արիւնը՝ սուրբ խորհըրդեան մէջ իրօք եւ ճշմարտապէս ներկայ է. երկրորդ՝ որ աս բանս հացին ու գինւոյն տեսակին տակ կը կատարուի, որն որ գոնէ ծածուկ մը գոյացափոխութիւնն ալ կ'ակնարկէր. (տես Ծանօթ. 7.) եւ

տուածաբանները սկսան քննել ու մոլորական տեղերուն հերքումը չինել, եւ Ս. Գրոց վկայութիւններով ու հաստատուն պատճառներով ամէն մոլորութիւնները մէկիկ մէկիկ ցրեցին։ Դարձեալ գրուածքներնուն մէջ ան ալ յայտնապէս ցուցուցին որ ինչպէս աս դաւանութիւնը՝ Լուտերին ու Մելանքթոնին գրքերուն մէջ գտնուած բուն մոլորութիւններէն տարբեր ու օտար է։

Աս գրուածքը լմննալուն պէս՝ կայսեր տուին (Յուլիսի 13ին), որն որ նախ ուղղափառ իշխաններուն առջեւը կարդալ տուաւ։ Բայց որովհետեւ աստուածաբանք տեղ տեղ քիչ մը սաստկութեամբ ու խստութեամբ խօսած էին, պատշաճ սեպուեցաւ որ չէնքը քիչ մը մեղմացընեն, հակառակորդներուն հետ անուշութեամբ խօսին, եւ անանց հակասութեանց կամ հիմնական եւ յառաջուան վարդապետութիւններնուն տարբերութեան վրայ ըսածնին բոլորովին մէկդի թողուն։ Աս փոփոխութիւններն ըլլալէն վերջը՝ կայսրը բողոքողաց գլխաւորներն իրեն կանչեց (Օգոստոսի 3ին) ու ըսաւ որ Ձեր դաւանութիւնը հմուտ ու բարեպաշտ մարդիկներու տուի որ կարդան ու կարծիքնին ըսեն. իրենք ալ աս բանս կատարեցին ու կարծիքնին գրով տուին, որն որ ասանկ առջեւնիդ կարդացընել կու տամ։ Եւ շուտ մը կայսեր դպիրներէն մէկը ան հերքումն առաւ ու առջեւնին կարդաց[22]։

երրորդ՝ թէ աս կարծիքը ընդունողները, այս ինքն Զուինգլիականները կամ Խորհրդականները, Կըրկնակնունքներն ու անոնց նմանները մերժելու է։ Արդ որովհետեւ Մելանքթոն՝ նոյն իսկ Լուտերին կենդանութեան ատեն՝ աս կարծիքին մէջ շատ դեգեւելու եւ տարակուսելու սկսած էր, անոր համար դաւանութեան աս հատուածն անանկ կերպով մը փոխեց, որ չէ թէ միայն Լուտերականներուն նոյն ժամանակը աս նիւթին վրայ ունեցած կարծիքներուն հետ համաձայնի, հապա նաեւ Խորհրդականաց կարծիքէն ալ չհեռանայ։ Ուստի եւ Ներքոյ ի բառերը դուրս ձգեց, ու հացին ու գինոյն գոյացին տակ բառերուն տեղ՝ հացին ու գինոյն հետ միասին՝ ճաշակողներուն կը մատուցուի դրաւ։ Նոյնպէս ուրիշ տեսակ կարծիք ունեցողներուն դէմ եղած դատապարտութիւնը բոլորովին վերցուց։ Տես Մենցլ, Հատ. Բ. Գլ. Ե. 114։ Լեւոն կը պնդուցէ թէ նոյն իսկ Լուտեր հաւանեցաւ որ աս փոփոխութիւնն ըլլայ. եւ ասոր հաւանելուն պատճառն էր, որ ուղղափառաց իրարու հետ հաստատութեամբ կապուիլը տեսնելով՝ վերջին ժամանակները սկսաւ Հելուետացւոց հետ քաղցրութեամբ վարուիլ, (Տես աս Գէրֆէն Ե. Գլխոյն 9. Ծանօթ.) որպէս զի հետերնին միանալով, իրենց կողմն ալ զօրանայ։ Մաան Գ. Հրծ Ա. Գլ. Ա. 158։

22. Կուստաւ Փիցէր, Գլ. ԻԴ. 629, 630։ — Մենցլ (Հատ. Ա. Գլ. ԺԱ. 362, 363.) թէպէտ աս հերքումն ընդհանրապէս չիհաւանիր, բայց աս խօսքերն ալ կը գրէ։ Չիկրնար ուրացուիլ որ ասոր մէջը շատ յարմար բաներ կային, եւ մանաւանդ Լուտերին՝ հաւատքի եւ մարդկային կամաց ազատութեան վրայ ունեցած կարծիքներուն՝ Ս. Գրոց իմաստին եւ ամենաբացայայտ վկայութեանց հակառակ երեւնալը՝ շատ յայտնի կը ցուցուէր։ Թէ որ մարդ Ս. Գրոց բառերուն վրայ հաստատուն կենայ, ինչպէս որ Լուտեր կ'ուզէր, ան ատեն եկեղեցւոյ իշխանութեան եւ

Պոպիոն ընթերցուածքը լմնցուցածին պէս՝ Փրեդերիկոս Պալատական կոմսը այսպէս խօսեցաւ։ Մեր տէրը Ինքնակալ կայսրը կը կարծէ որ աս հերքումը ճշմարտապէս քրիստոնէական ու կատարեալ գրութիւն է, եւ Ս. Գրոց ու մարդկային մտաց հիմանց վրայ այնպէս հաստատուած է, որ չիկրնար մէկը դէմ դնել։ Անոր համար ինք իր կողմն ըլլող իշխաններուն հետ հաճութեամբ կ՚ընդունի, եւ խրատ կու տայ որ Սաքսոնիայի կայսրընտիրն ու իրեն հետ միաբան ըլլողներն ալ անոր միաբանին եւ ամէնքը մէկտեղ աս գրութեան ստորագրեն, եւ հաստատուն գիտէ որ դէմ չեն դներ։ Բողոքողներն իրարու հետ քիչ մը խորհրդակցելէն ետեւ՝ խնդրեցին որ ան հերքումէն իրենց օրինակ մը տրուի։ Իսկ Պալատական կոմսը կայսեր կողմանէ պատասխանեց թէ Այսօր ատենն ուշ է, Ինքնակալը ուրիշ անգամ իր կամքը կը յայտնէ։

Երկու օր վերջը իշխանները նորէն ժողվուեցան եւ բողոքողներուն այսպէս պատասխան տրուեցաւ. Ինքնակալ տէրերնիս խնդրած գրութիւննիդ կ՚ուզէ ձեզի տալ, բայց աս թէութիւնը կը դնէ որ միայն դուք կարդաք, ուրիշին չցուցընէք եւ չօրինակէք կամ տպել չտաք։ Եւ աս բանս կը հրամայէ ձեզի ան երդման զօրութեամբը՝ որով որ իրեն հետ կապուած էք. միանգամայն խրատ կու տայ ձեզի ու մարդասիրութեամբ կ՚աղաչէ որ նորէն միաբանիք անոնց հետ՝ որոնցմէ որ բաժնուեցաք։ Բայց բողոքողք յամառութեամբ դէմ կը դնէին, ու հերքման թուղթը նոյն թէութեամբ ընդունիլ չէին ուզեր. եւ որովհետեւ կայսրն ալ ուզածէն ետ չէր կենար, անոր համար մեծ հակառակութիւն մ՚ելաւ 23։ Ուղղափառ իշխաններուն մէջէն քանի մը գլխաւորները վախնալով որ չըլլայ թէ կայսրը հակառակորդաց զայրանալով՝ հետերնին խստութեամբ վարուի, որով ամէն բան տակն ու վրայ ըլլայ, մէջերնին մտան։ Սաքսոնիայի կայսրընտրին եւ անոր հետ միաբան

խրմէ գրուած զանազան օրէնքներուն համար, եւ մասնաւորապէս (քահանայից) չկարգուելուն ու կրօնաւորական կարգերուն համար Ս. Գրոց վկայութիւններ չեն պակսիր, որոնք ուղղափառ կարծիքը կրնան պաշտպանել,,։ Հոստեղս Աւետարանին եւ Պօղոս առաքելոյն թղթերուն մէջէն կատարելութեան, մահացուցման . . . վրայ քանի մը վկայութիւններ բերելով կամ յիշատակելով, այսպէս կը խօսի. "Այս ամենայն եւ ուրիշ վկայութիւններ՝ մեծ ճարտարութեամբ եկեղեցական կարգադրութիւնները պաշտպանելու համար՝ գրուած էին։ Նաեւ հին ու նոր օրինաց մէջ գտնուած ուխտերը չէին մոռցուած,,։ Տես Նախ առ Եւխոյն 6. Ծանօթ։

23. Ալեյտան, Գիրք Է. 104։ — Մենցլ կը ցուցնէ որ "Կայսեր այսպէս վարուելուն պատճառն ան չէր, որ հերքման հաստատուն ըլլալուն վրայ կը տարակուսէր, հապա ան էր որ գիտէր թէ վիճաբանելով ու կռուելով հակառակութիւնը չէր կրնար դադրիլ կամ վերցուիլ,,։ Հոփ. Ա. Գլ. ԺԱ. 365։

ըլլողներուն խրատ տուին որ խաղաղասէր մտօք վարուին. կայսեր ալ աղաչեցին որ իրենց հրաման տայ հակառակորդներուն հետ առանձին խօսելու. Գուցէ, ըսին, աս կերպով բանը հանդարտութեամբ կը վերջանայ: Կայսրը՝ սիրով աս աղաչանքն ընդունեցաւ. բողոքողք ալ դէմ չդրին [24]:

Երբ որ աս բաներս Աւկսպուրկ կը կատարուէին, Լուտեր շարունակ թղթերով իրեններուը կը յորդորէր որ հաստատուն կենան, եւ ուղղափառաց հետ չմիաբանին: Աս վախճանին հասնելու համար քանի մը գրուածք ալ դուրս հանեց: Հաւատոյ դաւանութիւննին կայսեր տալէն քանի մը օր վերջը՝ Մոգունտիայի արքեպիսկոպոսին նամակ մը գրեց, որուն մէջ խրատ կու տար որ կայսրմէ բողոքողաց համար քաղաքական ու արտաքին խաղաղութիւն ընդունի. որովհետեւ կարելի չէ որ, կ'ըսէր, անոնց եւ ուղղափառաց մէջ ներքին ու հոգեւոր միաբանութիւն ըլլայ [25]: Աս նամակը արքեպիսկոպոսին չխրկած՝ Նիւռնպերկ տպել տուաւ ու ամէն կողմ տարածեց, եւ իրեն ալ տպուած օրինակ մը խաւրեց: Ասիկա անոր համար ըրաւ, որ բոլոր Գերմանիայի իմացընէ թէ հաւատոյ դաւանութիւննին աւագաժողովին մէջ տուած են. նոյն դաւանութիւնն ալ երկայն խօսքերով կը գովէր եւ կ'ըսէր թէ մէկը չիկրնար ցրել: Դարձեալ մէկ վախճանն ալ աս էր որ միաբանութեան խորհրդէն ետ կեցընէ արքեպիսկոպոսը՝ որն որ Գերմանիայի մէջ մեծ պատիւ ու իշխանութիւն ունէր, ցուցընելով որ բոլոր ըրած ջանքն ու ճիգը պարապ է: Երրորդ աս ալ կ'ուզէր որ աս թղթով՝ կայսրը եւ ուղղափառ իշխանները բռնաւոր ու ամպարիշտ երեւցընէ: Եւ ասոր համար ալ նամակին վրայ Բ. Սաղմոսին համառօտ մեկնութիւնն աւելցուց, եւ ան սաղմոսին խօսքերը կայսեր եւ ուղղափառ իշխաններուն վրայ կը մեկնէր, իբրեւ թէ Աւկսպուրկի աւագաժողովը՝ Աստուծոյ եւ անոր Օծելոյն դէմ ժողվուած է, եւ մէջի ուղղափառ իշխանաց վախճանն ուրիշ բան չէ, բայց եթէ Քրիստոս իր աթոռէն իջեցընել եւ տեղը իրենք նստիլ: Աս մեկնութեան մէջ տեղ մը իշխանաց այսպէս կ'ըսէր. Թէ որ խորհուրդս չէք ընդունիր ու ամպարիշտ գործքերնիդ (ամպարիշտ գործք ըսածը՝ իշխաններուն իր մոլորութեանց դէմ դնելն է) մէկդի չէք ձգեր նէ՝ նոյն պատիժը վրանիդ կու գայ, որն որ կրեցին Հրեայք՝ որոնք Քրիստոսի առաքեալները ձեզի պէս հալածեցին [26]:

24. Մաթեսիոս, ճառ Ը. 86, 87: Ուլէնպերկ, Գլ. ԻԱ. Համ. Դ:

25. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ե. 110. Բ. — 112:

26. Նոյն տեղը, 112. Բ. — 114. Բ. Տես նաեւ Ուլէնպերկ, Գլ. ԻԳ. Համ. Գ:

## ԳԼՈՒԽ Բ

## Աւագաժողովին վերջը

*Պրանտենպուրկի կայսրընտրին՝ բողոքողներուն ըսածը։ Երկու կողմանէ եօթնական հոգի կ'ընտրուին, որ իրարու հետ խօսին։ Բողոքականք քանի մը բանի մէջ կը զիջանին։ Լութերին հակառակելովը՝ ուրիշ բաներու մէջ միաբանիլը անկարելի կ'ըլլայ։ Կայսրը նախ աստուածաբաններուն ու ետքը բողոքողներուն հետ առանձին կը խօսի։ Բողոքողք գրով ու խօսքով իրենք զիրենք արդարացընելու կը ջանան։ Առաջարկուած խաղաղութեան պայմանները։ Բողոքականք ալ պայմաններուն չեն հաւանիր։ Աւագաժողովին վերջը։ Աւագաժողովը կը լմննայ։*

# 1530

ՆՈՐԲ որ երկու կողմն իրարու հետ միաբանեցան որ առանձին խօսին ու հանդարտութեամբ ջանան մէջերնին խաղաղութիւն ընել, ուղղափառաց մէջէն 16—17 հոգի միջնորդ ընտրուեցան, որոնցմէ ոմանք ժողովքին գլխաւորներէն էին, որպէս զի աս բանս գլուխ հանելու փոյթ տանին. եւ սահմանուեցաւ որ Օգոստոսի 7ին սկսին [1]։ Որոշեալ օրը երկու կողմանէ ալ սահմանուած մարդիկներն եկան մէկտեղ ժողվուեցան. եւ ամենէն յառաջ Յովակիմ՝ Պրանտենպուրկի կայսրընտիրը բողոքողներուն խօսակցութիւն մ'ըրաւ, որուն մէջ իրենց խրատ կու տար որ յամառութիւնը մէկդի ձգեն եւ ինքնակալին հնազանդին։ Բացայայտ խօսքերով ու յայտնի պատճառներով ցուցուց որ եթէ գոնէ նոյն ատեն խելքերնին գլուխնին չեն ժողվեր նէ, հարկաւ մեծամեծ չարիքներ, գժտութիւններ, պատերազմներ, յափշտակութիւններ ու շատ մարդու մահ պիտի պատահի, եւ աս ամէն չարեաց պատճառ՝ իրենք պիտ'որ ըլլան։ Այս ամենայն՝ զօրաւոր խօսքերով առջեւնին դրաւ։ Բողոքողք նոյն օրը

1. Դեռ առանձնական բանակցութիւնը կամ խորհրդակցութիւնը չսկսած՝ Հեսսենի աշխարհատէր կոմսը, կայսեր հրաժարական ողջոյն չտուած, մանաւանդ թէ Բլանքին (Գիրք Է. Հատ. Գ. Մաս Ա. 99.) ըսածին նայելով՝ իր կողմնակիցներուն ալ չիմացուցած՝ քանի մը հոգւով Աւկսպուրկէն ելած գացած էր։ Ռանքէ աս բանս այսպէս կը պատմէ. "Ամէն օր, կ'ըսէ, իրեն աւելի նեղութիւն կը պատճառէր այնպիսի ժողովքի մը մէջ մնալը, ուր որ աւերութեան կարգին նայելով՝ ինք՝ անանկ պատիւ ու իշխանութիւն չէր կրնար ունենալ, որն որ իր նոյն ժամանակուան ունեցած զօրութեան համաձայն էր։ Ասոր համար կայսրմէ խնդրեց որ իրեն երթալու հրաման տայ. կայսրը հրաման չտուաւ, ի վերայ այսր ամենայնի ինք իրիկուն մը ձիով ելաւ հանկից գնաց"։ Գիրք Ե. Գլ. Ը. Հատ. Գ. 273։ — Երբ որ ինքնակալն աս բանս իմացաւ, սիրտը շատ նեղացաւ, ու Սաքսոնիայի կայսրընտրին եւ անոր կողմնակիցներուն հրամայեց որ գործքը բոլորովին չլմնցած ու որոշում մը չեղած՝ քաղքէն չելլեն. եւ խոստացաւ որ երկպառակութիւնները վերցընելու համար պատշաճ սեպուած ամէն միջոցը կը բանեցընէ։

պատասխան չտուին. բայց երկու օր վերջը (Օգոստոսի 9ին) երբ որ նորէն ժողվուեցան՝ ամենուն անուամբ Պրիւք՝ Սաքսոնիայի կայսրընտրին դիւանադպիրը պատասխան տալով՝ նախ ուղղափառ իշխաններուն դէմ տրտունջ ըրաւ, իբրեւ թէ իրենց սպառնալիքներ ըրած ըլլան: Ետքը չորս պատճառ բերաւ, որոնց համար, ըսաւ, կայսեր կամքը չենք կրնար կատարել: Բերած չորս պատճառներն ասոնք են. նախ՝ կայսրը մեզի բաւական ունկնդրութիւն չըրաւ. երկրորդ՝ մեր հաւատոյ դաւանութեան դէմ շինած հերքումնիդ անանկ թէութեամբ ուզեց ձեռուընիս տալ, որ չէինք կրնար յանձն առնել. երրորդ՝ չենք կրնար առանց խղճմտանքներնուս դէմ ընելու՝ կայսեր հետ միաբանիլ ու ձեր շինած հերքման ստորագրել. չորրորդ՝ Շփայերի աւագաժողովին մէջ մեզի խոստում տրուած էր որ շուտ մը ընդհանուր ժողովք գումարուի, եւ մինչեւ հիմա աս խոստումը չկատարուեցաւ: Աս բաները թղթով կարդաց, ու խնդրեց որ ուղղափառները մէկիկ մէկիկ ամենուն ալ պատասխան տան 2:

Երկու օր վերջը (Օգոստոսի 11ին) Պրանտենպուրկի կայսրընտիրը խնդիրքնին կատարեց: Ամենէն յառաջ ըսաւ որ Երկու օր յառաջ ձեզի խօսածնիս՝ բարեկամական կերպով խօսեցանք եւ միայն խաղաղութեան սիրոյն համար, եւ չէ թէ մէկը վշտացընելու կամ նախատելու միտք եւ կամ ձեզի սպառնալիք ընելու համար: Միայն առջեւնիդ դրինք, ըսաւ, թէ ինչպիսի չարիքներ Գերմանիայի վրայ գալու վտանգ կայ, եթէ որ մէջերնիս խաղաղութիւն ու միաբանութիւն հաստատելու չըլլանք: Աս ըսելէն վերջը՝ բողոքողներուն բերած չորս պատճառներուն մէկիկ մէկիկ պատասխան տուաւ: Առաջին պատճառին այսպէս պատասխանեց: Ինքնակալը չէ թէ միայն յանձն առաւ որ հաւատոյ դաւանութիւննիդ մտիկ ընէ, որուն համար ըսիք թէ ամբողջ է ու վրան աւելցընելու կամ փոխելու բան մը չունիք, հապա նաեւ հրաման տուաւ որ մենք քիչուորքս հոս ժողվուինք, ուզածնուդ չափ զձեզ մտիկ ընենք, եւ մէջերնիս միաբանութիւն ընելու ջանանք: Արդ՝ ի՞նչպէս կրնաք ըսել որ Ինքնակալ տէրերնիս ձեզի բաւական ունկնդրութիւն ըրած չըլլայ. ուզեցէք արդեօք իրեն կամ առանձին կամ հրապարակաւ բան մ'ըսել, որն որ ինք լսել չուզած ըլլայ: — Երկրորդ պատճառին աս պատասխանը տուաւ: Չէք կրնար աւելորդ կամ անիրաւ սեպել ան թէութիւնը՝ որով որ ուզեց Ինքնակալը մեր հերքումը ձեռուընիդ տալ. դուք ալ աղէկ գիտէք որ ձեր քա-

2. Ուլէնպէրկ, Գլ. ԻԱ. Համ. Ե: Սէքէնտորֆ, Գիրք Բ. Համ. Կէ. 175, 176:

բողոքիչներն ու հոգեւոր առաջնորդները Վորմսի աւագաժողովին վճիռն ինչպէս անարգեցին ու նախատեցին, մինչեւ հրապարակաւ ամենուն առջեւը ոտքի տակ առին կոխկռտեցին, եւ ինչ մեծ նախատինք հասցուցին առաւ թէ կայսեր եւ թէ նոյն աւագաժողովին մէջ եղողներուն։ Արդ թէ որ կայսրը հիմա նոյն թէութիւնը չդնելու ըլլար, յայտնի է որ աս գրութիւնն ալ նոյն նախատանաց տակ պիտի՛ որ իյնար։ — Երրորդ պատճառին այսպէս դէմ դրաւ։ Ինծի կ'երեւայ որ դուք հոն կը փախնաք՝ ուր որ ամենեւին փախչելու պատճառ չկայ, եւ աստ հակառակ ուր որ խղճմտանքին ետեւէն երթալու է, հոն անոր դատաստանը բոլորովին կ'արհամարհէք։ Խղճի մտաց դէմ ան է որ իշխանութիւն չունեցող քանի մը մարդիկներու կը հետեւիք, եւ կը հեռանաք եկեղեցւոյ հաղորդութենէն ու նախնեաց հաւատքը թող կու տաք, որն որ Ս. Գրոց այնչափ վկայութիւններով եւ ամէն առաջին Հարց ու ժողովոց իշխանութեամբ հաստատուած է. եւ անանկ վարդապետութիւններ կը սորվեցընէք, որոնք չէ թէ միայն հոգւոց դատապարտութեան պատճառ կ'ըլլան, հապա նաեւ երկրին խաղաղութիւնը կը վերդովեն ու տակն ու վրայ կ'ընեն։ Թէ որ աս բաներն աղէկ մը մտածէիք նէ՝ ստուգիւ առանց ուշացընելու շուտ մը նորէն կաթուղիկէ եկեղեցւոյ հետ կը միաբանէիք, ուսկից որ բաժնուած էք։ — Իսկ չորրորդին ասանկ պատասխան տուաւ։ Դուք ալ աղէկ գիտէք որ աս վերջին տարիները Գերմանիայի ու Իտալիայի մէջ եղած շփոթութիւններուն պատճառաւ՝ ընդհանուր ժողովք գումարելը՝ չէ թէ միայն դժուարին, հապա նաեւ անկարելի էր։ Դարձեալ չեմ գիտեր թէ ինչպէս կրնաք յուսալ որ ան ժողովքէն օգուտ մ'ըլլայ. ինչու որ աղէկ գիտէք թէ Լուտեր Վորմսի աւագաժողովին մէջ եւ անկէ ետեւ ինչ յանդգնութեամբ եւ անամօթութեամբ անոնց իշխանութիւնը ոտքի տակ առաւ ու անգոսնեց, մինչեւ շատ անգամ յանդըգնեցաւ ըսել որ ժողովքները մեծամեծ մոլորութեանց մէջ ինկած են, եւ թէ իր վարդապետութիւնն ամենեւին ժողովքի մը իշխանութեան տակ չիձգեր։ — Այսպէս բոլոր իրենց պատճառներուն պատասխան տալէն ետեւ՝ նորէն աղաչեց որ միաբանութիւնը հերձուածէն աւելի ընտրեն, եւ եկեղեցւոյ ու ինքնակալին հետ հաշտուին [3]։

Աս պատասխանն ու խօսակցութիւնը բողոքողներուն սիրտը շատ նեղացուց, եւ երկու օր մէջերնին խորհրդակցելէն ետեւ՝ երբ որ ամսոյն 13ին նորէն ժողվուեցան, սկսան իրենք զիրենք ու իրենց վարդապետութիւնը ջատագովել։ Մենք, ըսին, եկե-

3. Ուլէնպերկ, Գլ. ԻԱ. Համ. Ե։

ղեցիէն բաժնուած չենք, որովհետեւ մեր վարդապետութիւնները բոլորովին Ս. Գրոց ու կաթուղիկէ եկեղեցւոյ վարդապետութեան համաձայն է, որն որ ցուցընելու ալ պատրաստ ենք։ Մեզմէ ամենեւին մէկը կայսեր կամ աւագաժողովոյ մը վճիռն արհամարհած չունի, եւ թէ որ աւանկ բան մ՚եղած է նէ՝ շատ կը ցաւինք։ Դարձեալ ճշմարտութեան քարոզիչներուն ըրածը մեր հոգը չէ, հապա միայն ըսածներնուն կը նայինք. թէ որ ճշմարտութեան դէմ բան մը կը վարդապետեն նէ՝ միայն անիկա մեր խղճմտանքը կը ծանրացընէ։ Ուրիշներուն՝ ժողովոց իշխանութեան վրայ գրածն ու ըսածն ալ մեզի չիվերաբերիր. մենք գիտենք որ անոնց վայելած յարգութիւնը տուած ենք, եւ ասկէ վերջն ալ պատրաստ ենք պատշաճ մեծարանքով մեծարելու։ Վերջապէս աս ալ ըսին որ եթէ աս առանձնական բանակցութիւնը կամ խորհրդակցութիւնը յառաջ տանիլ կ՚ուզէք նէ՝ մեզի կ՚երեւայ որ երկու կողմանէ ալ անձինքներուն թիւը քիչցընելու է [4]։

Ուղղափառութեան կողմն ըլլողները՝ որոնք խաղաղութեան ու եկեղեցւոյ օգտին կը բաղձային, աս առաջարկութիւնը սիրով յանձն առին. ու երկու կողմանէ ալ միայն եօթնական հոգի որոշուեցաւ, որոնք Օգոստոսի 16ին մէկտեղ ժողվուեցան, ու խաղաղութեան եւ միաբանութեան վրայ քիչ մը խօսելէն ետեւ՝ սկսան բուն խնդիրներուն վրայ խօսիլ։ Եւ որպէս զի կարենան հաստատուն բան մ՚ընել, բողոքողաց հաւատոյ դաւանութիւնն առին, ու ամէն մէկ մասերուն վրայ սկսան խորհիլ ու խօսիլ։ Երկու օր աս կերպով խօսելէն ու վիճելէն ետեւ՝ շատ բաներու մէջ իրարու հետ միաբանեցան. իսկ բոլորովին չմիաբանած նիւթերնուն մէջ ալ ըստ մեծի մասին իրարու մօտեցան. ինչու որ Մելանքթոն՝ որն որ խորհրդեան մէջ բողոքողաց կողման աստուածաբաններուն գլխաւորն էր եւ ուղղափառներուն հետ միաբանելու կը բաղձար, աս բաներուն մէջ շատ զիջաւ [5]։ Իսկ մնացած քանի մը մասերուն մէջ միաբանիլն ան-

4. Սեքենտորֆ, Գիրք Բ. Համ. Կէ. 177։

5. Բողոքող մատենագիրներէն ոմանք այնպէս կ՚ուզեն ձեւացընել որ աս մասերուն մէջ միաբանելնուն պատճառն ան էր, որ ուղղափառք բողոքողներէն յաղթուեցան կամ թէ անոնց պատճառներէն տարուելով՝ յառաջուան ունեցած կարծիքնին փոխեցին։ Ուրիշները եւ առանձինն Բլանք (Գիրք Է. Հատ. Գ. Մաս Ա. 106, 107.) աս աստիճանի յառաջ չեն երթար, հապա կ՚ըսեն որ երկու կողմանէ ալ քիչ մը զիջանելով՝ կրցան միաբանիլ, եւ կը խոստովանին որ բողոքողք աւելի զիջան կամ փոփոխութիւն ըրին։ Կուստաւ Փֆիցեր (Գլ. ԻԴ. 638.) մասնաւոր կերպով մը կը ցուցնէ որ "Աս խօսակցութեանց մէջ բողոքողաց այնչափ շատ զիջանելուն վրայ մարդս պէտք է զարմանալ, ինչու որ յայտնի է թէ իրենք ուղղափառներէն աւելի տեղի տուին"։ — Բայց ճշմարիտ պատմութենէն յայտնի է որ ուղղափառներուն տեղի տալը

կարելի եղաւ։ Աս չմիաբան նիւթերնին՝ գլխաւորաբար ասոնք էին. Հաւատք եւ բարեգործութիւն, սրբոց պաշտօն, խոստովանանք, եկեղեցական կարգ, եկեղեցւոյ սովորութիւնները կամ արարողութիւնները [6]։ Անոր համար աս բաները հաւա-

կամ զիջանիլը՝ ուրիշ բան չէր, բայց եթէ ան՝ որ բողոքողներուն իրենց վրայ ունեցած սխալ կարծիքները կը ջնջէին, ցուցընելով որ ուղղափառ վարդապետութիւնը՝ ան իրենց կարծածը չէ։ Եւ կամ ան էր որ քանի մը նիւթերու մէջ, ինչպէս քահանայից կարգուելուն եւ հաղորդութեան երկու տեսակաւ մատակարարուելուն վրայ ըսին թէ մինչեւ որ ընդհանուր ժողովք մը գումարուի նէ՝ քահանայապետէն խնդրեն որ մինչեւ նոյն ատենն եղածներուն հրաման տայ։ Երկայն խօսքերու եւ շատ վկայութիւններու կարօտութիւն չունինք ցուցընելու համար որ կոչած բաներու մէջ զիջանողներն ուղղափառները չէին, հապա բողոքողները։ Բողոքողներուն բերանն ըլլալ Մելանքթոնին որչափ զիջած ըլլալը՝ 3երորդ ծանօթութենէն յայտնի է. իսկ ուղղափառներուն տեղի տուած չըլլալուն յայտնի վկայութիւն է Լուտերին խօսքը, որն որ Սեպտեմբերի 20ին Յուստոսին այսպէս կը գրէ. "Հակառակորդներնիս մեզմէ ինչ կ'ուզեն, բայց եթէ որ իրենք մեզի ամենուն մողէ լաւ ալ չելլանին, իսկ մենք չէ թէ միայն տեղի տանք, ... եւ պատարագը, (հաղորդութեան մէջ) մէկ տեսակը, (քահանայից) չկարգուիլը ... ընդունինք, հապա նաեւ խոստովանինք որ ամէն բան իրենք աղէկ վարդապետած են,,։ Ան Կոստ. Ֆէյերի, Գլ. ԻԴ. 659։

6. Նոյն իսկ բողոքող մատենագիրներն ալ կը վկայեն որ ուղղափառ աստուածաբանները աս վիճաբանութեանց մէջ արտաքոյ կարգի չափաւորութեամբ ու բողոքող աստուածաբաններուն հետ սիրով կը վարուէին. միանգամայն անոնց ունեցած առաւելութիւնները եւ ընդհակառակորդնին նեղը խոթելնին կը խոստովանին։ Բլանք՝ խօսակցութեանց իբրեւ գրագիր ներկայ եղող Սփալատինին գրածներէն առնելով՝ աս նիւթերուն վրայ եղած վիճաբանութիւնները կը յիշատակէ։ Հաւատոյ վրայ եղած վէճերուն վրայ ասանկ կը գրէ. "Հակառակորդներուն (ուղղափառներուն)... դժուար բան մը չէր ցուցընելը որ եկեղեցւոյն՝ բարեգործութեանց արդիւնաւոր ըլլալուն վրայ ըսածները՝ այնչափ վտանգաւոր եւ Աստուծոյ շնորհքը նուաստացընող եւ մոլորական՝ անանկ անհիմն բան չէ, ինչպէս որ Լուտեր միշտ կը զրուցէր։ Բայց ուղղափառ աստուածաբանները աս իրենց առաւելութիւնները շատ չափաւորութեամբ գործածեցին։ Իսկ՝ խօսակցութեանց մէջ միայն վեր ի վերոյ մը յիշատակեց որ բողոքողաց՝ միայն հաւատքով արդարանալու վարդապետութիւնը՝ ժողովրդեան համար չէ թէ միայն գայթակղեցուցիչ, հապա նաեւ շատ դիւրաւ վնասակար ու վտանգաւոր կրնար ըլլալ. եւ աս իր ըսածը... ստոյգ էր ու չէր կրնար ուրացուիլ։ Աս անհակառակելի պարագան ալ մէջ բերաւ որ եկեղեցւոյ հնագոյն հայրքը շատ յաճախ անգամ անանկ կերպով մը խօսած էին, որով դպրոցական (ուղղափառ) դրութեան շատ աւելի կը մօտիկնային քան թէ նոր լուտերական դրութեան. բայց աս պարագան ալ անձնաւէր մանրամանութեամբ մը մէջ չբերաւ, որն որ այնչափ աւելի կրնար օգտաւորիլ, որչափ որ բողոքողները աս բանիս չէին ուզեր հաւանիլ։ ... Բողոքողաց դէմ չէր գտներ Ս. Գրոց ան յաճախ վկայութիւնները՝ որոնց մէջ մեր բարեգործութեանց վարձքին ու արդիւնաւորութեան վրայ բացայայտ կը խօսուի. հապա միայն անոնց Ս. Գրքէն բերած վկայութիւններուն դիմացը պատասխան մը կը գտնէր, որով ստուգիւ անոնց (բողոքողաց) բերած ցուցմունքներուն զօրութիւնը իրօք շատ տարակուսական կ'ըլլար։ Բողոքողք Ս. Գրոց ան տեղերուն ապաւինած էին, որոնց մէջ Պօղոս առաքեալ շատ անգամ զհաւատքը՝ իբրեւ պատճառ արդարացուցման՝ գործոց դիմացը կը դնէ, եւ որոնց մէջ այնպէս կ'երեւայ թէ յայտնապէս կը զրուցէ որ Աստուած մարդիկները՝ միայն իրենց հաւատացքը եւ

այս դատաւորութեան երկրորդ մասին հետ խառնեցին, որուն մէջ որ Հռոմայ եկեղեցւոյ դէմ եօթն ամբաստանութիւններ կային․ եւ անոնց ամէնուն վրայ ամսոյն 18ին վճռաբանութիւն եղաւ։ Եւ երբ որ տեսան որ ասոնց վրայ չէին կրնար ու պիտի չկրնան ալ միաբանիլ, յայտարարութիւն մը չինեցին, որուն մէջ ըրած-ներնուն վրայ աւագաժողովին տեղեկութիւն կու տային։ Ետքը խորհուրդ ընտրողներուն թիւը նորէն քիչցուցին ու երկու կող-մանէ ալ երեք երեք հոգի որոշեցին, որ անոնք միայն մէկտեղ խօսին։ Ասոնք ալ մինչեւ ամսոյն վերջը նոյն նիւթերուն վրայ շատ անգամ խորհուրդ կամ վիճաբանութիւն ըրին, բայց երբե-ւէ բան մը չկրցան որոշել․ եւ թէպէտ քանի մը մասերուն մէջ ալ իրարու հետ միաբանեցան կամ իրարու մօտիկցան, բայց բոլորովին միաբանիլն անկարելի եղաւ [7]։

Ասոր գլխաւոր, մանաւանդ թէ միակ պատճառը՝ Լուտեր կրնայ սեպուիլ․ որովհետեւ, վերը ըսածնուս պէս, ինք շարու-նակ գրով իրեններուն կը յորդորէր որ չըլլայ թէ հակառակորդ-ներնուն զիջանին կամ անոնց հետ միաբանին։ Իր գլխաւոր աշա-կերտներէն ոմանք եւ մանաւանդ Մելանքթոն սրտանց կը բաղ-ձային որ խաղաղութիւն ըլլայ, եւ աս վախճանին հասնելու համար ամէն բան ընելու պատրաստ էին [8]։ Միայն Լուտեր ամե-

չէ թէ իրենց գործոցը համար կ'ար-դարացընէ․ բայց Էք աս տեղին մէջ նոր օրինակ մը եղաւ որ վիճա-ղութիւնը՝ շատ անգամ հարկաւո-րութեան տեղ՝ աւելի աղէկ մեկ-նութիւն կու տայ քան թէ տեսա-կան աստուածաբանութիւնը։ Ինք՝ Մելանքթոնին եւ անոր ընկերնե-րուն յիշեցուց որ Պօղոս առաքեալ նոյն տեղերը անանկ մարդիկներու հետ կը խօսի կամ անանկ մարդիկ-ները կ'ակնարկէ, որոնք աս մոլո-րական կարծիքն ունեցած էին կամ դեռ ունէին թէ փրկութեան հաս-նելու համար չէ թէ միայն Քրիս-տոսի հաւատալու է, հապա նաեւ Մովսիսական օրէնքն ալ կատարե-լու է, կամ մէկ խօսքով ըսելու համար՝ հրէութիւնը քրիստոնէու-թեան հետ միացընելու է։ Անոր համար, կ'ըսէր, Առաքելոյն խօսքե-րը իրրեւ տատանկներուն մոլորու-թեան հերքումը սեպելու է, ուստի եւ իր եզրն+ ըսելը՝ միայն Մովսի-սական օրինաց մէջ հրամայուած գործքերուն վրայ հասկընալու է, ո-րով եւ նոյն խօսքերը (բողոքողնե-րուն անոնց տուած իմաստէն) շատ տարբեր իմաստ կ'ունենան։ Սակայ-է բողոքողները աս մեկնութեան ուղղութիւնը կրնային ուրանալ, բայց չէին կրնար հերքել»։ Գիէ+ Է․ Հատ․ Գ․ Մասն Ա․ 107․ — 109։

7․ Սեքենտորֆ, Գիրք Բ․ Համ․ ՀԴ․ 194։ Բլանք, Գիրք Է․ Հատ․ Գ․ Մասն Ա․ 117․ — 136։

8․ Մելանքթոնին աս տեններ ինչ մտաց վրայ ըլլալը, որչափ ե-կեղեցւոյ հետ միաբանիլ ուզելը, եւ աս վախճանին հասնելու համար ինչչափ պատրաստութիւն ունենալը՝ նոյն աւագաժողովին ատենը գրած քանի մը թղթերէն բացայայտ կը տեսնուի։ Առ Քահանայապետին դեսպանը գրած մէկ թղթին մէջ՝ ուրիշ շատ խօսքերէն զատ՝ ասոնք ալ կը գրէ․ «Մենք Հռոմայ եկե-ղեցւոյն վարդապետութեան հակա-ռակ կամ անկէց տարբեր վարդա-պետութիւն չունինք։ Մանաւանդ թէ [illegible] վարդապետութիւն-ներ սերմանել ուզողները յանդի-մանեցինք։ Հռոմայ եկեղեցւոյն հնա-զանդելու պատրաստ ենք, միայն թէ հետերնիս իր սովորական գթու-թեամբը վարուի, ու աչք գոցէ կամ թոյլ տայ մէկ-երկու փոքր բա-ները՝ որոնք ուզելու ալ ըլլանք՝

Նոյն զօրութեամբ դէմ կը դնէր, այնպէս որ միաբանութեան եւ ոչ անունը կ'ուզէր լսել. մանաւանդ թէ կարծես որ կը բաղձար թէ խռովութիւններն աւելի եւս մեծնան։ Ո՛չ իր վարդապետութիւններուն պատճառաւ թափուած այնչափ արիւնը, ոչ ան արիւնը՝ որն որ ինքն ալ կը խոստովանէր որ ետքը Գերմանիայի մէջ նոյն պատճառաւ պիտի թափուէր, ոչ բոլոր բարեպաշտներուն արցունքն ու հեծութիւնը բաւական եղաւ խելքը գլուխը բերելու։ Կ'ուզէր որ ինչ ըլլայ ըլլայ՝ իր վախճանին հասնի, եւ միտքը դրած էր որ ամէն ճիգն ի գործ դնէ,

չենք կրնար փոխել։ Մենք ամենեւին ուրիշ պատճառի մը համար Գերմանիայի մէջ այնչափ ատելութիւն չենք կրեր, որչափ կը կրենք Հռոմայ եկեղեցւոյն վարդապետութիւնները ամենամեծ հաստատամտութեամբ պաշտպանելնուս համար։ ... Միայն սովորութեանց կամ արարողութեանց մէջ քիչ մը զանազանութիւն կայ, որն որ կ'երեւայ թէ միաբանութեան արգելք կ'ըլլայ։ Բայց նոյն իսկ կանոնագիրքներն ալ կ'ընդունին որ տեսակ զանազանութիւններով ալ եկեղեցւոյ միութիւնը կրնայ պահուիլ"։ Դարձեալ կը գրէր. "Մենք Հռոմայ քահանայապետն ու բոլոր եկեղեցական առաջնորդութիւնը կը մեծարենք։ ... Ինչո՞ւ ուրեմն մենք՝ որ այսպէս խոնարհութեամբ կ'աղաչենք, պիտի մերժուինք, ինչո՞ւ սրով ու հրով պիտի հալածուինք, ուր որ միաբանութիւնն ալ այնպէս դիւրաւ կրնայ հաստատուիլ"։ Առ Ռէֆէլէ. Գիրք Բ. Գլ. Թ. 402. Եւ Առ Մենցլէ, Հատ. Ա. Գլ. ԺԱ. 377։ Մանաւանդ եպիսկոպոսներուն իշխանութեան վրայ շատ չափաւորեալ կարծիք ունէր։ Նոյն ատենները՝ առ Կամերարիոս իր բարեկամը այս բանիս վրայ այսպէս կը գրէ. "Ի՞նչ երեսով կրնանք եպիսկոպոսներուն ձեռքէն իրենց իշխանութիւնը յափշտակել, թէ որ զուտ վարդապետութեան դէմ չեն դներ։ Մտածածս բոլոր ըսելու համար՝ կը բաղձայի չէ թէ եպիսկոպոսներուն (աշխարհական) իշխանութիւնը հաստատել, որչափ եպիսկոպոսական տնտեսութիւնը. որովհետեւ կը տեսնեմ որ եթէ եկեղեցական կառավարութիւնը քակենք նէ՝ ինչպիսի եկեղեցի կ'ունենանք. կը տեսնեմ որ ինչպէս աս բանս ըլլալէն ետեւ՝ առջինէն շատ աւելի անտանելի բռնաւորութիւն դուրս պիտի՛ որ ելլէ"։ Մենցլ (Հատ. Ա. Գլ. ԺԱ. 375, 376.) աս խօսքը յառաջ բերելէն ետեւ՝ այսպէս կը գրէ. "Աս կարծիքը չէ թէ միայն եպիսկոպոսներուն վրայ կը տարածէր, հապա նաեւ քահանայապետին վրայ։ ... Մելանքթոն կը կարծէր որ քահանայապետն ուրիշ եպիսկոպոսներուն պէս իրաւունք ունի. եւ թէ չիկրնար իր ձեռքէն առնուիլ եկեղեցւոյ գլխաւորութիւնը՝ որն որ այնչափ դարերու սովորութեամբ ստացած է"։ — Մելանքթոնին աս մտքի վրայ ըլլալը եւ շատ զիջում ընելը այնպէս յայտնի էր, որ Յուստոս Լուտերին ծածուկ այսպէս կը գրէր. "Փիլիպպոս վարդապետը բարի մտքով աս բանիս մէջ շատ զգուշութեամբ ու հանդարտութեամբ կը վարուի, եւ հասարակաց խաղաղութեան շատ բան զոհելու պատրաստ է։ Աս օրերս եպիսկոպոսաց իշխանութեան վրայ իրարու հետ սաստիկ վիճեցինք, որն որ քու ականջդ գաղտուկ կը զրուցեմ"։ Առ Ռոպինսըրէ, ի Վարս Մելանքթոնի։ Գլ. Զ. Հատ. Գ։ Ասոր համար ալ Մելանքթոնը բոլոր խիստ Լուտերականներուն ատելի եղած էր, ու հետը կասկածելով կը վարուէին, եւ միանգամայն վրան զանազան զրպարտութիւններ կ'ընէին, որոնցմէ մէկն ալ ան էր որ ուղղափառներէն կաշառ առնելով՝ ճշմարտութիւնը մատնեց։ Տե՛ս առ Բլանքոյ, Գիրք Է. Հատ. Գ. Մասն Ա. 140։ — Աս ամէն բաներուն համար Մելանքթոնին արգելեցին որ անկէ վերջը ուղղափառաց հետ ամենեւին բանի մը մէջ չմիաբանի։ Ասոնց վրայ երկայն կը խօսի Բլանք, Գիրք Է. Հատ. Գ. Մասն Ա. 139. — 149։

մինչեւ որ աշխարհքիս մէջ ալ մէկը չգտնուի որ ուղղափառ հաւատքը դաւանի, եւ քահանայապետն իր իշխանութենէն իյնայ: Նոյն օրերը Սփալատինին այսպէս կը գրէ. «Որ ըսեմ, բայց ուրախութեամբ չէ, որ զարմանալի բանի մը՛ն էք ձեռք զարկեր. պապն ու Լուտերը իրարու հետ միաբանել կ'ուզէք: Բայց պապն աս բանս չ'ուզեր, եւ Լուտեր ալ ձեզի կ'աղաչէ որ աս բանիս ետեւէն չիյնաք: Անոր համար ինծի կ'երեւայ որ ջանքերնիդ ու վաստակնիդ փուճ է, եւ բան մը պիտի չկրնաք ընել: Իսկ թէ որ երկուքին կամացը հակառակ աս բանս գլուխ տանելու ըլլաք, ես ալ շուտ մը ձեզի կը հետեւիմ ու կը ջանամ որ զՔրիստոս Բելիարայ հետ միաբանեմ» 9: — Բողոքողները՝ աս ու ասոր նման խօսքերն իրմէ լսելով՝ ալ անկէ վերջը միաբանութեան վրայ չէին ուզեր խօսիլ 10: Ինչու որ կ'ըսէին թէ աս խօսակցութեանց ու խորհրդակցութեանց վախճանը՝ միայն ան է, որ զմեզ պապին հնազանդութեան տակ խոթէք, անոր համար բոլոր ճիգերնիդ ու աշխատութիւննիդ պարապ է:

Երբ որ ինքնակալն իմացաւ որ խաղաղութիւն ընելու եւ միաբանութիւն հաստատելու յոյսը պարապ ելաւ, Սեպտեմբերի 7ին ուղղափառ իշխանները պալատը ժողվեց, եւ հետերնին խորհուրդ ըրաւ թէ աս խռովութիւնները դադրեցընելու եւ անոնցմէ ծագած ու ծագելու չարիքները խափանելու համար ինչ ընելու է: Աս խորհրդին մէջ իշխաններն իրեն աղաչեցին որ ազդու միջոց մը գործածուի, եւ խոստացան որ միշտ ամէն առթի մէջ իրեն հաւատարիմ կը մնան, ինչպէս որ ուղղափառ իշխաններու կը վայլէ, նախնեաց սուրբ կրօնին համար բոլոր զօրութեամբ կ'աշխատին, եւ թէ որ հարկ ըլլայ նէ, ըսին,

9. Աւ. Օանի, Հատ. Բ. Գլ. ԻԳ. 339: — Ասկից զատ՝ Լուտեր իրենց կը սպառնար որ եթէ տեղի տալու ըլլան նէ՝ ինք ամենուն բան մը չ'ընդունիր ու իր գիտցածը յառաջ կը տանի: Նոյն ատենները իր բարեկամներուն գրած մէկ թղթին մէջ կը զրուցէ որ «Եթէ դուք արծիւը տոպրակի մը մէջ փակելու (այսինքն՝ իմ վարդապետութիւններս թողտալու) ըլլաք նէ, Լուտեր վարդապետը կու գայ եւ գերի բռնուած արծիւը նորէն փառաւորութեամբ կ'արձակէ. կենդանի է Քրիստոս»: Տես առ Բլանթոյ, Գիրք Է. Հատ. Գ. Մասն Ա. 115, 116. Ծանօթ. 102:

10. Ռանքէ՝ Յովհաննէս կայսերընտրին հաստատամտութիւնը կամ աւելի ճիշդ խօսելով՝ յամառութիւնը երկայն բարակ գովելէն ետեւ՝ խօսքն այսպէս կը լմնցընէ. «Ջինքն աս բաներուս մէջ աւելի հաստատուն բռնողը՝ առանց տարակուսի Լուտերն էր»: Գիրք Ե. Գլ. Ը. Հատ. Գ. 265: — Սէքէնտորֆ (Գիրք. Բ. Հատ. ՀԴ. 194.) պատմելէն վերջը որ ինչպէս Օգոստոսի վերջին օրը մէկ քանի եպիսկոպոսներ եւ իշխաններ Սաքսոնիայի կայսրընտրին քովը կերակուր ուտելով՝ կը ջանային որ մէջերնին միաբանին ու խաղաղութիւն ընեն, խօսքն այսպէս կը լմնցընէ. «Բայց բողոքողները՝ Լուտերին նամակներովը հաստատուած ըլլալով՝ լաւագոյն սեպեցին ան նենգաւոր միաբանութենէն ետ կենալ ու խաղաղութեան սատանիկ բաղձանքին դէմ դառնալ»:

կեանքերնիս ալ վտանգի մէջ գնելու եւ արիւննիս թափելու պատրաստ ենք։ Կայսրն ալ իրենց նոյն խոստումը ըրաւ։ Անոնք իրմէ բաժնուելէն ետեւ՝ կայսրը հրաման տուաւ որ Աղեքսանդրիայի հայրապետին ու անոր հետ միաբան ըլլողներուն ալ իրեն գան 11, եւ Փրեդերիկոս Պալատական կոմսին ձեռքովը առջեւնին դրաւ որ հաւատոյ դաւանութիւննին տալէն վերջը հետեւերնին ինչչափ սիրով վարուեցաւ, եւ որչափ փոյթ ունեցաւ խաղաղութիւնը հաստատելու։ Անոնք մէկիկ մէկիկ զրուցելէն ետեւ՝ աս ալ յայտնեց թէ որչափ կը տրտմի տեսնելով որ աս իր փոյթն ու ծիգը բոլորովին պարապ գնաց, եւ թէ իրենք ուղղափառ եկեղեցիէն բաժնուելով՝ ընդունած մոլորութիւններնուն մէջ յամառութեամբ կը մնան։ Բայց որովհետեւ, ըսաւ, ընդհանուր ժողովք կը խնդրէք, եւ կ'աղաչէք որ մինչեւ աս ժողովքին գումարուիլը՝ ձեզի խաղաղութիւն տրուի, կը ջանամ որ կարելի եղածին չափ շուտով աս ժողովքը գումարուի, եւ խնդրած խաղաղութիւններնուդ ալ կը հաւանիմ, թէ որ մեզի հետ միաբանած բաներնէդ ամենեւին բան մը չէք փոխեր, ու վերցուցած հին սովորութիւններնիդ նորէն կը հաստատէք, թէ որ անիրաւութեամբ յափշտակուած եկեղեցական ու վանական ինչքերը ետ կը դարձնէք, եւ ան մարդիկներուն ձեռքը կը յանձնէք, զորոնք ես կը սահմանեմ, որպէս զի մինչեւ ժողովքին գումարուելու ատենը մատակարարեն, թէ որ մինչեւ ժողովքին վճիռ տալը՝ խաղաղութեամբ ու հանդարտութեամբ կը վարուիք ու թող չէք տար որ ամենեւին մէկը գրով կամ խօսքով խռովութիւն մը հանէ 12։

Բողոքողներն ասոր պատասխան տուին, եւ Մենք մոլորութիւն մը չենք ընդունած ու եկեղեցիէն չենք բաժնուած ըսելէն ետեւ՝ խօսքերնին այսպէս յառաջ տարին. Մեծ ուրախութիւն կը պատճառէ մեզի ինքնակալ տէրերնուս ընդհանուր ժողովք գումարել տալու ըրած խոստմունքը. բայց կ'աղաչենք

11. Ասկէ ետեւ մինչեւ աս գլխոյն վերջը պատմածնիս՝ բոլոր կը գտնուին Սլէյտանին (Գիրք Է. 105. — 109.), Սէքէնտորֆին (Գիրք Բ. Հատ. ԻԵ. 194. — 196. դարձեալ Հատ. ԻԸ. ի Յաւել. 200. — 206.), Բլանքին (Գիրք Է. Հատ. Գ. Մասն Ա. 152. — 178.), Ռանքէին (Գիրք Ե. Գլ. Ը. Հատ. Գ. 283. — 291.) եւ Ռալենպերկին (Գլ. ԻԲ.) մէջ։

12. Մենցլ (Հատ. Ա. Գլ. ԺԲ. 396.) աս խօսքերը գնելէն յառաջ՝ հին պատմագիրներէ մ'առնելով՝ կը գրէ որ կայսրը անանկ քաղցր խօսքեր զրուցեց, որ չէ թէ միայն մարթաւոր սրտերը հապա նաեւ երկաթէ սրտերը կրնային կակղցնել։ Նոյն խօսքը Բլանք ալ (Գիրք Է. Հատ. Գ. Մասն Ա. 152. Ծանօթ. 135.) կը բերէ, բայց չէ թէ Մենցլին պէս հաւանելով՝ հապա վրան ծիծաղելով, ինչպէս նաեւ կը ծիծաղի ուրիշ հեղինակներուն եւ առանձինն Ռոպերդսոնին կարծեացը վրայ, որն որ կը զրուցէ թէ կայսրը բոլոր զօրութեամբ եւ սրտանց կը ջանար երկու կողմը միաբանելու եւ խաղաղութիւն ընելու։

որ այս ժողովքը՝ Շփայերի աւագաժողովին վճռոյն համեմատ՝ օրինաւոր, ազատ ու քրիստոնէական ժողովք ըլլայ, եւ Գերմանիայի մէկ քաղքին մէջ գումարուի: Բայց ինքնակալ տէրերնուս ան հրամանը՝ որ վերցուցած հին սովորութիւններնիս նորէն հաստատենք ու եկեղեցական ծիսերը ետ դարձնենք, բայց խղճմտաց դէմ չենք կրնար ընել: — Կայսրը տուած պատասխանին մէջ՝ իրենց խօսքին որչափ անհիմն մանաւանդ թէ սուտ ըլլալը ցուցընելէն ետեւ՝ մտածելու ժամանակ տուաւ ու արձակեց:

Երկու օր վերջը բողոքող իշխանները գրով ալ պատասխան մը տուին, որն որ գրեթէ յառաջագոյն ըսածներնուն կրկնութիւն էր: Եւ որովհետեւ կայսրը իրենց թող տուած էր որ եթէ կ'ուզեն նէ՝ հակառակորդներնուն հետ նորէն խօսակցին, ասոր ալ այսպէս պատասխան կու տային. Որովհետեւ ասկէ վերջը ալ մէջերնիս հակառակութիւն եղած բաներէն ամենուն բան մը չենք կրնար ընդունիլ, անոր համար կը կարծենք որ ասկէ ետեւ խաղաղութեան ու միաբանութեան վրայ խօսելու համար նորէն խորհուրդ ընել պարապ է: Բայց թէ որ արտաքին ու հասարակաց խաղաղութեան վրայ խօսակցիլ կ'ուզուի նէ, ան ատեն ամենուն օգտին համար պատշաճ սեպուածը՝ մենք ալ ձեռքերնէս եկածին չափ յանձն կ'առնենք: Կայսրը բողոքողներուն տուած պատասխանին վրայ մտածել ուզելով՝ զիրենք արձակեց, հրաման տալով գլխաւորաբար Սաքսոնիայի կայսրընտրին որ բաները բոլորովին չմնցած ու կարգի չդրուած՝ քաղքէն չելլէ:

Ասքը իրեններէն երկու հոգւոյ հրամայեց որ մինչեւ ժողովքին գումարուելու ատեն մէջերնին հաստատուելու խաղաղութեան դաշինքը շինեն: Աս դաշինքին գլխաւոր պայմանները ասոնք էին. Ա. Երկու կողման ալ գլխաւորները ստորագրութիւն դնեն ան հաւատոյ մասանց վրայ, որոնց մէջ իրարու հետ միաբանեցան. իսկ վրանին դեռ վէճ եղած մասունքները զատ գրուին, որ գումարուելու ժողովքին դատաստանին տակ ձգուին: Բ. Դեռ փոփոխութիւն մը չեղած վանքերուն մէջ նորէն բան մը չփոխուի, իսկ ուրիշներուն վրայ կայսրը բան մ'որոշէ: Գ. Պատարագը հասարակաց սովորութեան համաձայն կատարուի ու մէջէն բան մը դուրս չձգուի. եւ նախնեաց սովորութեան համաձայն աստուածային պաշտօն կատարողներուն՝ արգելք դնող կամ խափանող չըլլայ: Դ. Բողոքողք ասկէ վերջը կրօնի բաներուն ամենեւին չփոխեն. եւ ետեւէ չիյնան որ մէկը՝ իրենց հպատակն եղեր է, ուրիշին հպատակն եղեր է՝ իրենց կարծեացը դարձընեն: Ե. Ուրիշ ամէն բաներու մէջ մէկալ իշխաններուն պէս կայսեր հնազանդ ու հպատակ ըլլան, եւ ա-

նոնց հետ մէկտեղ տանել կենան որ եկեղեցականներոց ու խորհրդա-կանաց ատեանները ջնջեն:

Երբ որ աս պայմանները բողոքողաց ատենը դրուեցան, անոնք դէմ դարձան եւ ամենեւին չէին ուզեր յանձն առնել: Ան ատեն կայսրը ալ ձանձրանալով, եւ տեսնելով որ գիջանելն ամենեւին օգուտ մը չ'ըներ, մանաւանդ թէ ինք որչափ կը զիջանի նէ՝ հակառակորդներուն աւելի կ'ըմբոստանան ու կը յանդըգնին, միտքը դրաւ որ բանը լմնցընէ: Անոր համար Մոգունտիայի արքեպիսկոպոսին եւ ուրիշ քանի մը եկեղեցական ու աշխարհական իշխաններուն հրամայեց որ աւագաժողովին վճիռը շինեն: Ասոնք հրամանը կատարեցին, ու Սեպտեմբերի 24ին՝ վճիռը ամենուն ատենը կարդացուեցաւ: Վճռոյն մէջ՝ աւագաժողովին մէջ եղածները մէկիկ մէկիկ պատմելէն ու վերը յիշուած խաղաղութեան պայմանները դնելէն ետեւ՝ կայսրը բողոքողաց ժամանակ կու տար որ մինչեւ Ապրիլի 15ը մտածեն թէ արդեօք դեռ վճռման ատեն եղած մասունքները կ'ուզեն ընդունիլ թէ չէ. եւ կը խոստանար որ քահանայապետը հաւանեցընէ քիչ մը ժամանակ վերջը ընդհանուր ժողովք գումարել տալու[13]:

Բողոքողք մէջերնին խորհելէն ու խօսելէն ետեւ՝ երկու անգամ, մէյ մը նոյն օրը մէյ մ'ալ երկրորդ օրը պատասխան տուին եւ ըսին որ Աւագաժողովին վճիռը չենք կրնար ընդունիլ: Եւ մինչեւ նոյն ատեն ըսածնին նորէն կրկնելով՝ կը զրուցէին որ Մեր դաւանութիւնն այնչափ հաստատուն բան է, մինչեւ դրունք դժոխոց չեն կրնար յաղթահարել. եւ դարձեալ թէ Մենք կաթողիկէ եկեղեցիէն հեռացած չենք, եւ թէ ըստ խղճի մտաց չենք կրնար կայսեր հնազանդիլ ու թողուլ մեր վարդապետութիւնը՝ որն որ միայն Աստուծմէ յառաջ եկած է: Եւ երկու անգամ կայսեր աղաչեցին որ ատենը կարդալ տայ իրենց դաւանութեան ջատագովութիւնը՝ որն որ Մելանքթոնին շինել տուած եւ հետերնին բերած էին[14]: Դարձեալ կը խնդրէին որ

13. Մենցէլ, Հատ. Ա. Գլ. ԺԲ. 402, 403: — Թէպէտ բողոքող մատենագիրներուն մեծ մասը աս վճիռն ու պայմանները շատ խիստ ու անիրաւ կ'անուանեն. բայց իրենք ալ, եւ մանաւանդ Բլանք (Գիրք Է. Հատ. Գ. Մաս Ա. 164. Ծանօթ. 145.) Մելանքթոնին՝ նոյն վճռոյն վրայ ունեցած կարծիքը մէջ կը բերեն: Մելանքթոն՝ Կամերարիուսին գրած մէկ թղթին մէջ ուրիշ խօսքերէն զատ՝ աս ալ կը զրուցէ. «Կայսրը արդարոյ կարգի չափաւոր վճիռ մ'առաջարկեց»: (Moderatissimam Cæsar proposuit sententiam.) Տեսէ Բլանքայ, Վերը յիշուած տեղը:

14. Տես ի Գործս Լուտ. գերմ. Հատ. Զ. 404. — 505: — Աս ջատագովութեան համար Բոսիւէ կ'ըսէ որ «Գլխաւոր բաներու մէջ հաւատոյ դաւանութեան համաձայն էր. բայց թէ որ չեմ սխալիր նէ՝ գրութեան եղանակը՝ անկից աւելի ուղղափառութենէն հեռու մնացած էր»: Գիրք Ե. Գլ. Բ. Հատ. Գ. 287:

աւագաժողովին վճռէն իրենց օրինակ մը տրուի, որ մինչեւ Ապրիլի 15ը կարենան մտածել։

Բայց կայսրը իրենց խօսքերը լսել չուզեց, ու Յովակիմ՝ Պրանտենպուրկի կայսրընտրին ձեռքովը ըսաւ որ Երկայն ատենէ վեր դատապարտուած մոլորութիւններու վրայ ձեզի հետ նորէն վիճել չեմ ուզեր։ Ըսած խօսքերնուն սուտութիւնը ցուցուց ու պատճառած չարիքնին, եկեղեցական ու վանական ընչից յափշտակութիւնը, այնչափ գեղացւոց մահը, հոգեւոր ու աշխարհական իշխանութեան արհամարհուիլը, եւ ուրիշ ամէն չարիքները նորէն առջեւնին դնելէն վերջը՝ հարցուց որ արդեօք ասանկ չարիքներու պատճառ ըլլող վարդապետութիւնները թողուլը՝ խղճմտանքի դէմ բան է, չէ նէ խղճմտանքի համաձայն բան։ Բայց սակայն բողոքողները հաստատուն մնացին եւ աւագաժողովին վճիռն ընդունիլ չուզեցին, միանգամայն կայսրմէ խնդրեցին որ աս բանս շուտով վերջանայ, որ ամէն մարդ կարենայ իր տեղը դառնալ։ Ետքը իրենք զիրենք կայսեր յանձնելով՝ աղաչեցին որ հետերնին սրտմտութեամբ չվարուի։ Ասոնք ըլլալէն ետեւ՝ շուտ մը նախ Սաքսոնիայի կայսրընտիրը եւ ետքը մէկալ իշխանները կայսեր հրաժարական ողջոյննին տալով քաղքէն ելան գացին, տեղերնին երեսփոխան կամ գործակալ թող տալով՝ որ աւագաժողովին վերջին գործքերը տեսնեն։ — Աս երեսփոխաններուն հետ ալ քանի մը անգամ նոյն նիւթերուն վրայ խօսուեցաւ, եւ ետքը Նոյեմբերի 19ին աւագաժողովին վճիռը հրատարակուեցաւ։ Եւ այսպէս լմնցաւ Աւկսպուրկի աս աւագաժողովը՝ որն որ, ինչպէս իսկզբան ըսինք, գլխաւորաբար Լուտերականաց պատմութեան մէջ շատ երեւելի է[15]։

15. Մենցլ. Հատ. Ա. Գլ. ԺԲ. 417։



# ԳԼՈՒԽ Գ

## Շմալքալտեան դաշնակցութիւն

Կայսրը իր Ֆերտինանդոս եղբայրը Հռոմայ թագաւոր ընել կու տայ։ Բողոքող Շմալքալտեան դաշնակցութեան հիմը կը դնեն եւ Հռոմայ թագաւորին ընտրութեան դէմ կ'ելլեն։ Զանազան հողերէն օգնութիւն կը խնդրեն, եւ իրենց դաշնակցութեան համար Լութերին հաւանութիւն կ'առնեն։ Լութերին մէջ երկուածքը։ Բողոքող Շմալքալտեան դաշնակցութիւնը կը հաստատեն։ Նիւռնպերկի դաշինքը։ Յովհաննէս Սաքսոնիայ կայսրընտիրը կը մեռնի։

## 1530 — 1532

ԸՒԱԳԱԺՈՂՈՎԻՆ վճիռը հրատարակուելէն քիչ մը ետքը՝ կայսրը Աւկսպուրկէն ելաւ Գոլոնիա գնաց, ու հոնտեղը սկսաւ ետեւէ իյնալ որ շատոնցուընէ ունեցած խորհուրդը գլուխ տանելով՝ իր Ֆերդինանդոս եղբայրը Հռոմայի թագաւոր ընել տայ. որովհետեւ, Մենցլին ըսածին պէս [1], Աւկսպուրկ եղած ատեն աղէկ իմացած ու համոզուած էր որ կայսերական իշխանութիւնը՝ նոր նեցուկի մը ու իր բացակայութեան ատեն աղէկ փոխանորդի մը կարօտութիւն ունի։ Աս բանիս համար Մոգունտիայի արքեպիսկոպոս կայսրընտրին յանձնեց որ հարկաւոր եղած մարդիկները ժողովի կանչէ. արքեպիսկոպոսն ալ աս հրամանը կատարելով՝ ամենուն հրաւէր խաւրեց որ Դեկտեմբերի 29ին Գոլոնիա քաղաքը գան ժողովուին։

Սաքսոնիայի կայսրընտիրն աս հրաւէրի թուղթն առածին պէս՝ շուտ մը Հեսսենի աշխարհատէր կոմսին եւ ուրիշ բողոքող իշխաններուն գրեց ու ստիպեց որ աճապարեն Դեկտեմբերի 22ին Շմալգալտ քաղաքը գան, որ հոնտեղը ժողովք մ'ընելով՝ իրենց կողման ապահովութեան համար խորհին ու խօսին։ Ասոր պատճառն ան էր որ կը վախնար թէ կայսրը զիրենք բռնութեամբ ստիպէ կամքը յանձն չառածնին՝ ակամայ ընդունելու։ Եւ թէպէտ հաստատութեամբ գիտէր որ ո՛չ կայսրը եւ ո՛չ ուղղափառ իշխանք կրօնի պատճառաւ իրենց դէմ պատերազմ չեն ըներ, բայց որովհետեւ գերագոյն դատաստանարանը կամ ատենակը իրենց՝ վանքերէն ու եկեղեցիներէն յափշտակած հարստութեանց վրայ կ'ուզէր դատաստան ընել, եւ տարակոյս չունէր որ բոլորն ալ ետ դարձընելու պիտի ստիպէ, անոր համար աս վճռոյն դէմ դնելու չափ զօրութիւն ստանալ [2],

1. Հատ. Ա. Գլ. ԺԳ. 418։

2. Ասիկա գլխաւորաբար անկից յայտնի է որ ամէն անգամ մէջեր-նին դաշինք գրած ատեններնին ալ խօսքս ալ մէջը կը դառնուէր. Թէ որ գերագոյն դատաստանարանը՝ Եկե-

ուստի եւ իր կողմնակիցներուն հետ նորէն աւելի հաստատութեամբ կապուիլ ու արդէն դրած դաշնակցութիւններն լաւ մը ամրացընել կ'ուզէր[3]։ Բայց որպէս զի չերեւայ որ կայսեր հրամանին դէմ կը դնէ ու պարտքը չիկատարեր, որոշուած ատեն Յովհ. Փրեդերիկոս իր որդին քանի մը հաւատարիմ խորհրդականներով Գոլոնիա խաւրեց, չէ թէ որ Հռոմայի թագաւորին ընտրութեան հաւանին, հապա որպէս զի իր անուամբ աս բանիս դէմ դնեն[4]։

Սակայն թէպէտ եւ Սաքսոնիայի կայսրընտիրն այսպէս յայտնի կերպով դէմ դարձաւ, եւ ուրիշ կայսրընտիրներն ալ աս բանիս հաւանութիւն տալու այնչափ յօժարութիւն չունէին, ի վերայ այսր ամենայնի կայսեր միտքը դրածը չկրնալով արգելել՝ վերջապէս մէկալները հաւանեցան, ու 1531ին Յունուարի 5ին Գոլոնիա ժողվուողները Ֆերդինանդոսը Հռոմայի թագաւոր ընտրեցին[5]. եւ նոյն օրը աս ընտրութիւնը՝ Սաքսոնիայի կայսր-

ղեցական իշխերուն պաշտօնատար՝ մէջերնէս մէկու մը կամ ոմանց դէմ բան մը վճռելու ըլլայ նէ, ամէնքս ալ միաբան զանոնք պէտք պաշտպանենք։ Տես նաեւ Էջ. 321. եւ ծանօթ. 18։

3. Սեքենտորֆին (Գիրք Բ. Համ. ԽՁ. Յաւել. 135. եւ Համ. ԽԸ. 141, եւ այլն), Մէնցլէն (Հատ. Ա. Գլ. Թ.) եւ ուրիշ մատենագիրներուն պատմածին նայելով՝ բողոքող իշխանները Դորկաւի (տես Էջ. 257. — 259.) դաշնակցութիւնն ընելէն ետեւ՝ քանի մը անգամ զանազան քաղաքներ ժողվուած եւ աս դաշնակցութիւններն աւելի եւս հաստատելու ջանացած էին։ Բայց աւելորդ սեպեցինք աստնք մանրամասն պատմել։ Դարձեալ աս Գլխուս մէջ բողոքողաց դաշնակցութեան վրայ պատմածնիս՝ մի եւ նոյն ատեն ու մի եւ նոյն տեղ չեղաւ. հապա զանազան ժողովքներու մէջ ու այլեւայլ տեղեր. բայց մեր համառօտութիւնը թող չտար որ աս ամէն ժողովքներուն վրայ զատ զատ խօսինք։

4. Սլէյտան, Գիրք Է. 111. Բ։ Բլանք, Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 188։ — Զարմանք է որ Յովհաննէս կայսրընտիրը, որն որ հաստատապէս Լութերին հետազօտելու վարժած էր, աս բանիս մէջ ալ անոր հրամանին դէմ ըրաւ։ Կայսրընտիրը Լութերին հարցուցած էր որ արդեօք Ֆերդինանդոսին՝ Հռոմայի թագաւոր ըլլալուն կրնայ հաւանութիւն տրուիլ։ Լութեր ալ երեն պատասխանեց (1530ին, Դեկտեմբերի 12ին.) որ ասիկա չէ թէ միայն խղճմտանքի դէմ բան մը չէ. հապա մանաւանդ խոհեմութիւն է որ հաւանիս, որպէս զի չըլլայ որ կայսրը աս բանիս համար բարկանալով՝ իշխանութիւնդ ուրիշին եւ մանաւանդ Գէորգ դքսին տայ։ Ասոր վրայ ալ պէտք ես մտածել որ, ըսաւ, թէ չհաւանիս նէ ալ՝ մէկալ կայսրընտիրներուն դէմ չես կրնար դնել, ուստի եւ չհաւանիլդ օգուտ մը չ'ըներ, հապա մանաւանդ աս կ'ըլլայ որ մէջերնիդ երկպառակութիւն ու չխաղաղութիւն կ'ելլէ։ Տես աս Սեքենտորֆի, Գիրք Գ. Համ. Բ. 4. եւ աս Բլանքայ, Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 185, 186։ Ասոր նման գիրք մ'ալ տես աս Գրքին Ա. Գլխոյն 11. ծանօթութեան մէջ։

5. Ա՛ս կայսեր կենդանութեան ժամանակ՝ Հռոմայի կայսր ընտրելը, որն որ կայսերութեան ալ յաջորդ ընտրել ըսել էր, Գերմանիայի (Ոսկեղէն հրովարտակ ըսուած) օրինաց դէմ էր։ Անոր համար ալ Սաքսոնիայի կայսրընտիրը եւ ուրիշ բողոքող իշխանները՝ աս օրէնքը պատճառ կը բռնէին, նոյնպէս ասոր համար էր որ ուղղափառ իշխաններն ալ չէին ուզեր աս բանիս հաւանիլ, եւ կ'ըսէին որ ասիկա մեր իրաւանց ու Գերմանիայի ազատութեան դէմ է։ Բայց բոլոր ջանքերնին պարապ եղաւ, մինչեւ որ կայսրը կ'ըսէր թէ ես առիթաղղական պատ-

ընտրին եւ Հեսսենի աշխարհահաւէր կոմսին առանձին թղթով իմացուցին։ Քանի մը օր վերջը կայսրը, Թագաւորն ու կայսր-ընտրիները՝ եղածը զատ զատ թղթերով Գերմանիայի բոլոր իշխաններուն ալ իմացուցին։ Ինքնակալը լուտերական իշխաններուն ալ՝ որոնք որոշած ժամանակնին Շմալգալտ ժողվուած

ճառանէր ունիմ, որոնցմէ կը բանադատիմ այս օրինաց դէմ գործելու։ Բերած պատճառներն ալ ասոնք էին։ Գերմանիայի մէջ օրէ օր մեծցող կրօնական խառնակութիւնները, եւ չորս կողմանէ զինք պաշարող պատերազմի վտանգը կը պահանջէ որ, կ'ըսէր, Գերմանիայի մէջ միշտ իմաստուն ու զօրաւոր իշխան մը գտնուի. բայց ես չեմ կրնար իմ իշխանութեանս բոլոր ուրիշ մասերը երեսի վրայ ձգել ու միշտ Գերմանիա մնալ, եւ ուրիշ մէկն ալ չենք կրնար գտնել որ Փերդինանդոսին պէս այս բանիս յարմար ըլլայ։ Ինք շատ ժամանակէ վեր Գերմանիա գտնուելովը՝ բոլոր օրէնքներն ու սովորութիւնները գիտէ, եւ որովհետեւ կրօնական խառնակութիւնները ոտքելէն վեր՝ միշտ ամէն բան իր աչքին տակն էր, անոր համար ինք կրնայ անանկ հնարքներ գտնել, որով կարելի է այս խառնակութիւնները դադրեցընել։ Դարձեալ որովհետեւ ինք Հունգարիայի Թագաւոր է, եւ իր երկիրները Տաճկաստանի սահմանակից են, անոր համար նոյն իսկ իր անձնական շահը զինքը կը ստիպէ որ ան կողմանէ վրանիս յարձակիլ ուզողներուն՝ քաջութեամբ դէմ դնէ, եւ թող չտայ որ մինչեւ Գերմանիա գան։ Սոոնտ+ Ի ԳԷ ԻԸ Բերէ Ռոպերտսոն, Գիրք Ե. Հատ. Բ. 333։ Ասոնցմէ զատ՝ իր պապը Մաքսիմիլիանոսին օրինակը կը բերէր, որն որ հօրը՝ Փրեդերիկոս Գ.ին մահուընէ ետքը տարի յառաջ՝ Հռոմայի Թագաւոր ընտրուած էր։ Սակայն այնչափ յայտնի բան էր, որ Մելանքթոն իրենց կողման իշխանները համոզելու համար որ Փերդինանդոսին ընտրութեան հաւանին, Գերմանիայի պատմութեան մէջէն ան կայսերաց օրինակները ժողվեց, որոնք իրենց կենդանութեան ատեն՝ յաջորդնին ընտրել կամ անուանել տուած էին, որով եւ ասկեղէն հրովարտակին օրէնքը սովորութեամբ գրեթէ խափանուած էր։ Բլանտ+, Գիրք Ը. Հատ. Գ. Մոսն Ա. 186։ Այս պատճառներով եւ զուցէ եղած խառնակութիւններն աւելի չմեծցընելու վախով՝ կայսեր քաջ ըլլող իշխանները իր կամքին զիջան, թէպէտ եւ ան ալ գիտէին որ կայսերական իշխանութիւնը իր տան մէջ հաստատելու բաղձանքն ալ զկայսրը այս բանիս կը յօժարեցընէ։

Բայց Սաքսոնիայի կայսրընտրին ու իր կողմի եղողները միշտ սաստիկ դէմ կը դնէին, չէ թէ միայն որոշումն ըլլալէն յառաջ՝ հապա նաեւ ըլլալէն լմննալէն ետեւ ալ։ Եւ թէպէտեւ չորուանց Ոսկեղէն հրովարտակին օրէնքը պատճառ կը բերէին, եւ այնպէս կը ձեւացընէին որ դէմ դնելնուն պատճառը՝ միայն ան հրովարտակն է, բայց դէմ դնելնուն գլխաւոր պատճառն ուրիշ էր. ինչպէս նոյն իսկ երեւելի բողոքող մատենագիրներն ալ կը վկայեն։ "Փորձով գիտէին, կ'ըսէ Ռոպերտսոն, որ իրենց կարծիքներուն այնչափ յառաջ երթալուն՝ ամենեւին բան մը այնպէս չէր օգնած՝ որչափ Մաքսիմիլիանոսին մահուընէ ետեւ եկող անտէրընչութեան ժամանակը, Կարոլոսին երկայն ատեն Գերմանիայէն դուրս ըլլալը, եւ այս ամէն բանին ետեւէն եկած՝ տէրութեան կամ կառավարութեան սանձերուն թոյլնալը. որովհետեւ այս անիշխանութեան վիճակէն իրենց այլեւայլ օգուտներ ծագած էին, անոր համար չէին ուզեր իրենց նոր ու հաստատուն տէր մը սահմանել"։ Գիրք Ե. Հատ. Բ. 333։ Իսկ Ռանքէ յայտնի կը զրուցէ որ կայսրընտիրներուն՝ նոյն իսկ Կարոլոս հինգերորդը ինքնակալ ընտրելուն մէկ պատճառն ալ այս եղած էր, որ անիկա շատ ընդարձակ տէրութիւն ունենալով՝ յաճախ պիտի ստիպուէր Գերմանիայէն հեռու կենալու, որով իրենց իշխանութիւնն ալ կամաց կամաց աւելի կ'ընդարձակէր եւ գրեթէ ամէն ուզածնին կրնային ընել։ Գիրք Բ. Գլ. Գ. Հատ. Ա. 377։

էին, առանձին թուղթ մը գրեց, որով իրենց կը յանձնէր որ փերդինանդոսը իբրեւ Հռոմայի օրինաւոր թագաւոր ճանչնան: Բայց Սաքսոնիայի կայսրընտիրն ու իրեն հետ ըլլողները՝ պատասխան տուին որ Պատշաճ ժամանակին՝ տէրութեան օգտակար սեպածնիս ի գործ կը դնենք: Աս պատասխանին կայսրը շատ զայրացաւ. եւ տուգիւ բողոքող իշխաններն ասով՝ իրենց Շմալգալտ ժողվուելուն վախճանը յայտնի կ'իմացընէին:

Իրենք ալ ժողովքին մէջ սկսած էին մտածել որ ինչ կերպով կայսեր եւ անոր հետ միաբան ըլլող իշխաններուն դէմ կրնան դնել: Բայց աս ժողովքը սկսելու առեններն՝ անմիջապէս առջեւնին մեծ դժուարութիւն մ'ելաւ, որն որ չէին կրնար յաղթել: Դժուարութիւնն աս էր որ կայսրութեան հին օրէնքները՝ առանց կայսեր հրամանին կամ հաւանութեան՝ ժողովք գումարելը կ'արգելէին. եւ պատիժ ալ կար՝ որ աս օրէնքին դէմ ընողը՝ իշխանութենէն կ'իյնար եւ ինչքերը տէրութեան կ'առնուէին: Արդ բողոքող իշխանները կը վախնային որ չըլլայ թէ կայսրը աս օրէնքը ձեռք առնելով՝ զիրենք պատժէ: Բայց վերջապէս վրան շատ խօսելէն ետեւ՝ ըսին որ ան վտանգն այնչափ մեծ չէ՝ որչափ որ մեր միաբանութիւնը հարկաւոր է: Աս ըսին ու անկէ ետեւ ալ առանց վախի համարձակութեամբ սկսան գործքերնին յառաջ տանիլ: Խսկզբան իրենց դաշնակցութեան վախճան ան դրին որ Լուտերին մոլորութիւնները՝ զորոնք "Աւետարանական վարդապետութիւն կամ Աւետարան եւ Աստուծոյ խօսք,, կ'անուանէին, հաստատուն պահեն, եւ վրանին յարձակողներուն դէմ իրենք զիրենք պաշտպանեն 6: Դաշնակցութեան թուղթ մ'ալ շինեցին, որուն բոլոր բողոքող իշխանները ու Գերմանիայի ազատ քաղաքներէն ոմանց պատգամաւորները ստորագրեցին: Աս ընելէն վերջը՝ կայսեր նամակ մը գրեցին, որուն մէջ իրեն կ'իմացընէին որ ինչ պատճառներէ ստիպուելով՝ աս դաշնակցութիւնը հաստատեցին: Ասկից զատ՝ թղթեր գրեցին Անգղիայի, Գաղղիայի ու Դանիայի թագաւորներուն, եւ Գերմանիայի զանազան ազատ քաղաքներուն՝ որոնք ուղղափառութենէ դուրս ելած էին, բայց դեռ իրենց դաշնակցութեան մէջ մտած չէին, եւ իրենք զիրենք ջատագովելէն ու հակառակորդներնին զրպարտելէն վերջը՝ կը հրաւիրէին որ

6. Թէպէտ եւ յայտնի էր, կ'ըսէ Մենցէլ (Հատ. Յ. Գլ. ԺԳ. 426.) որ այս դաշնակցութիւնն ուղղակի կայսեր դէմ է, ի վերայ այսր ամենայնի ատոր մէջ մտնողները կ'ըսէին թէ Աս քրիստոնէական կապակցութիւնները՝ ոչ կայսեր, ոչ տէրութեան մէկ իշխանին եւ ոչ ալ ուրիշ մէկու մը դէմ է. հապա միայն քրիստոնէական ճշմարտութիւնն ու խաղաղութիւնը պահպանելու համար: Ըստ ամենայնի Մենցէլին պէս կը խօսի նաեւ Բլանք ալ, Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 200:

անոնք ալ դաշնակցութեան մէջ մտնեն կամ ինչ կերպով որ ըլլայ նէ՝ իրենց օգնութիւն ընեն [7]։

Թէպէտեւ բողոքող իշխաններն ու մեծերը այսպէս ամէն բանի, նաեւ կայսեր դէմ յայտնապէս պատերազմի ելլելու պատրաստ էին. բայց ասիկա բաւական չէր, իրենց կողման ժողովուրդներուն մտքին մէջ ալ աս գաղափարը պէտք էր խօթել։ Աս ժողովուրդները՝ որչափ որ Լութերի վարդապետութիւններով իշխանութեան դէմ գրգռուած էին ալ նէ, ի վերայ այսր ամենայնի այնչափ դարերէ յառաջ հաստատուած կայսերական իշխանութեան դէմ յայտնապէս ապստամբելէն եւ կայսեր դէմ զէնք առնելէն դեռ կը գարշէին։ Անոր համար Շմալքալտեան դաշնակցութեան մէջ մտնող իշխանները կը ջանային իրենց ապստամբութեան՝ օրինաւորութեան եւ իրաւանց կերպարանք

7. Սլէյտան, Գիրք Ը. 114. — 115. Բ։ — Ռոպերդսն (Գիրք Ե. Հատ. Բ. 334.) ու Բլանք (Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 195. — 197.) յայտնապէս կը խոստովանին որ բողոքող իշխաններուն՝ Գաղղիայի ու Անգղիայի թագաւորներուն դիմելուն պատճառն ինչ էր. Գաղղիայի թագաւորը, կ'ըսեն, կայսեր առած մեծ համբաւին վրայ կը նախանձէր, ու զանազան անգամ անոր յաղթուելուն համար՝ սաստիկ ոխ պահած էր. իսկ Անգղիայի թագաւորը իրեն դէմ շատ բարկացած էր, որովհետեւ կը կարծէր որ քահանայապետին՝ անոր աչքէն չելլելու համար՝ հրաման չէր տուած որ բաժնուի իր առաջին կնոջմէն՝ որն որ Կարոլոսին մօրաքոյրն էր։ — Անշուշտ բողոքող իշխանները իրենց պաշտպանած Աւետարանէն սորված էին աս առաքինութիւնը՝ որ իրենց օրինաւոր տիրոջը դէմ գնելու համար՝ անոր նախանձորդներուն ու թշնամիներուն հետ կ'ուզեին դաշնակից ըլլալ։ Բայց ասկից զատ՝ բողոքողներուն ան երկու թագաւորաց հետ դաշնակցութիւն ընելը՝ նոյն իսկ իրենց բռնած, կամ աւելի ճիշդ խօսելու համար՝ բռնել ձեւացուցած ընթացքին հակառակ է։ Լութեր եւ անոր խրատովը բողոքող իշխաններուն շատերը չէին ուզեր Խորհրդականաց հետ դաշնակից ըլլալ, կամ զանոնք իրենց դաշնակցութեան մէջ ընդունիլ, ըսելով որ թէպէտ անոնք հաւատոյ ուրիշ բոլոր մասերուն մէջ մեզի հետ միաբանին, բայց հաղորդութեան խորհրդին վրայ մոլորական կարծիք ունենալով, իրենց հետ դաշնակից ըլլալը՝ Աւետարանին դէմ է։ Իսկ աս երկու թագաւորներուն հետ, — որոնցմէ առաջինն իր երկրին մէջ բողոքողներուն կողմը բռնողներուն դէմ սաստիկ խստութիւն կը բանեցնէր ու զանոնք կը հալածէր, իսկ երկրորդը՝ ինքը զինքն իր անարութեան մէջ եկեղեցւոյ գլուխ հրատարակելէն ետեւ՝ թէ ուղղափառները եւ թէ բողոքողներն այրել կամ մեռցնել կու տար, առաջինները՝ իր գլխաւորութիւնը չընդունելնուն համար, իսկ վերջինները՝ Լութերին եւ ուրիշ Նորոգիչներուն վարդապետութեան հետեւելնուն համար, — դաշնակից կ'ըլլան, անոնցմէ դեսպան կ'ընդունին ու դեսպան կը խաւրեն, եւ ասիկա Աւետարանին դէմ չեն սեպեր. Լութեր եւ ուրիշ լութերական աստուածաբաններն ալ աս բանիս բերան չեն բանար։ Բայց ինչ կ'ըսեմ Անգղիայի ու Գաղղիայի թագաւորներուն հետ դաշնակցութիւն ընել. աս իշխաններն ու իրենց դաշնակիցները բանն ան աստիճանի հասուցին մինչեւ Հունգարիայի մէջ Փերդինանդոս թագաւորին թշնամիներուն հետ միանալով՝ անոնց ձեռքովը Ցաճկաց թագաւորն յորդորեցին որ կայսեր երկիրները յարձակում ընէ, որպէս զի իրենք վախերնէն ազատին։ — Ասանց կարծեաց Լութեր ասոնք ալ իր ան Աւետարանէն սորված էր, որն որ իրեն սորվեցուցած էր եկեղեցւոյ դէմ ելլել։

մը տալ, որպէս զի կամաց կամաց ժողովուրդներն ալ նոյն ազատամտութիւնն օրինաւոր բանի տեղ դնեն, եւ իրենք ալ մասնակից ըլլան: Ուստի եւ այս վախճանին հասնելու համար՝ ուզեցին որ իրենց կողման աստուածաբաններուն ու օրէնսգէտներուն համաձայնութիւնն ալ ունենան, եւ անոնց հարցուցին որ այս դաշնակցութեան վրայ ինչ կարծիք ունին, եւ միանգամայն թէ արդեօք հարկաւոր եղած ատեն՝ կայսեր դէմ կրնան պատերազմի ելլել: — Լուտեր շատ հեղ վարդապետած էր, եւ իշխաններուն՝ ուրիշ անգամ այս նիւթին վրայ իրեն խորհուրդ հարցուցած ժամանակը մէկալ աստուածաբաններուն հետ պատասխան տուած էր, որ իշխանի կամ իշխանութեան դէմ դնելը՝ օրինաւոր բան չէ, եւ քրիստոնէի չվայլեր որ նաեւ ինքը զինքը պաշտպանելու համար՝ զէնք գործածէ, միանգամայն բողոքող իշխաններուն դրած դաշնակցութեան դէմ դարձած էր[8]: Անոր համար թէպէտ եւ նոյն ատենուան վտանգին մեծութեան նայելով՝ իր կողմնակիցներուն նպաստաւոր պատասխան տալու կը բաղձար, բայց չէր համարձակեր հաստատութեամբ վճիռ կտրել: Սակայն երբ որ իմացաւ որ իր կողմն ըլլող օրէնսգէտներէն ոմանք արդէն համաձայնութիւն տուած են, ըսելով թէ օրէնքները հրաման կու տան որ շատ դէպքի մէջ մարդ իր վրայ յարձակողին դէմ ինքը զինքը պաշտպանէ, եւ թէ հիմա այս օրէնքը կրնան գործածել աւետարանական վարդապետութիւնը (Լուտերի մոլորութիւնները) պաշտպանելու համար, ասիկա պատրուակ առնելով՝ ինք ալ համարձակութեամբ իշխանաց ազատամտութեան համաձայնութիւն տուաւ: Շատ հաւանական է որ այս համաձայնութիւնը տալու ան ալ մեծապէս օգնած ըլլայ որ յայտնի կը տեսնէր թէ բաներն ան աստիճանի յառաջ գացած են, որ ինք հրաման չտալու ալ ըլլայ նէ՝ իշխանները բռնած ճամբաներնէն ետ պիտի չկենան, ուստի եւ համաձայնութիւն չտալովը՝ իր իշխանութեան ու պատուոյն վնաս պիտի հասնի: Աս նիւթիս վրայ գրածին մէջ Լուտեր կը զրուցէ որ կը խոստովանիմ թէ ես օրէնսգէտ չեմ, եւ մինչեւ հիմա չէի գիտեր որ այսանկ օրէնք կայ. անոր համար յայտնի է որ վարդապետած՝ անգիտութեամբ վարդապետեցի: Բայց որովհետեւ ես միշտ այնպէս կը քարոզէի որ Աւետարանը՝ քաղաքական օրէնքները չիխափաներ, անոր համար հիմա կը համարձակիմ վճռելու թէ ամէն մարդ՝ մեր վարդապետութեան հակառակ կեցողներուն

8. Լուտերին եւ լուտերական աստուածաբաններուն՝ յառաջագոյն շատ անգամ եւ զանազան առիթներու մէջ դէմ դնելը ու իրենց խօսքերը եւ մանաւանդ Լուտերին գրածները երկայն յառաջ կը բերէ Կուստաւ Փֆիցեր, Գլ. ԻԱ. 500. — 506. փոր-ցյուլ 536. — 542. — 544: Տես նաեւ Սեքքենդորֆ, Գիրք Բ. Հատ. ԽԲ. 141:

դէմ՝ ինքը զինքը կրնայ պաշտպանել։ Նոյն միջոցուն ուրիշ բողոքող աստուածաբաններն ալ տուին [9]։

Նոյն բանս շատ անգամ կրկնելով կը վարդապետէ Լուտեր նոյն ատենները հանած գրուածքի մը մէջ ալ՝ որուն անունն է Մ. Լուտերի վարդապետին Ազդարարութիւնը իր սիրելի Գերմանացիներուն։ Գրուածքն այսպէս կը սկսի. Աւկսպուրկի աւագաժողովին մէջ ըլլող եկեղեցականներուն ես խրատ տուի որ ջանան խաղաղութիւն ընել, իրենց անպիտանութիւններէն քանի մը հատն ուղղել ու Աւետարանին՝ ազատութիւն տալ, եւ աս բանիս համար բոլոր հաւատացելոց հետ մէկտեղ աղօթք ըրի։ Բայց յայտնի է որ ոչ ազդարարութիւննիս եւ ոչ աղօթքնիս օգուտ մ՚ըրաւ. այնպէս որ կ՚երեւայ թէ Աստուած՝ իրենց կուրութեան, անզեղջութեան ու թափած անմեղ արիւններնուն համար՝ չ՚ուզեր իրենց բարի խորհուրդ մ՚ալ տալ կամ թողուլ որ ազդարարութիւն մը կամ խրատ մը վրանին ազդեցութիւն ընէ։ Ան վիճակի մէջ են հիմա իրենք՝ որ վիճակի մէջ կը գտնուէին Հրեայք Երեմիայի ժամանակը, որոնց համար Աստուած նոյն մարգարէին ըսաւ որ նաեւ Մովսէս ու Սամուէլ ալ իրենց համար աղօթք ընէին նէ՝ ի վերայ այսր ամենայնի իրենց չէի գթար, եւ դուն ալ իրենց համար աղօթք մ՚ըներ։ Աս խօսքը պէտք է որ ես ու մերիններն ալ մեզի ըսուածի պէս առնենք, որովհետեւ Աստուած գործքով կը ցուցընէ որ իրենց (ուղղափառներուն) համար ըրած աղօթքնիս մտիկ ընել չ՚ուզեր, հապա կ՚ուզէ թող տալ որ փարաւոնի պէս Հոգւոյն սրբոյ դէմ մեղանչեն, մինչեւ որ ալ ոչ ապաշխարութեան եւ ոչ դարձի յոյս մնայ [10]։

Նոյնը ընդարձակ գրելէն վերջը՝ կը սկսի ըսել թէ հարկ է որ պատերազմ կամ ապստամբութիւն եւ դուցէ երկուքն ալ մէկտեղ ելլէ։ Թէ որ սաստիկ բան մ՚ըլլայ նէ, կ՚ըսէ, Քրիստոս զիս մահուընէ կրնայ ազատել, ինչպէս մինչեւ հիմա ազատեց. իսկ թէ որ չ՚ազատեր ու մեռնելու ըլլամ նէ, "Մահուընէս վերջը Լուտերին ով ըլլալն աղէկ կ՚իմանան...։ Ինչու որ միտքս դրած եմ հետս այնչափ շատ եպիսկոպոսներ, քահանաներ ու կրօնաւորներ տանիլ, որ ամէնքն ալ ըսեն թէ Լուտերին մարմինը մեծ յուղարկաւորութեամբ գերեզման տարուեցաւ։ Որովհետեւ ինք ամէն եպիսկոպոսներէն, քահանաներէն ու կրօնաւորներէն մեծ վարդապետ մըն է, անոր համար պէտք է որ մէկտեղ գերեզման երթան...։ Բայց թէպէտ աս պանդխտու-

9. Տես առ Բլանքայ. Գիրք Ը.
10. Գործք Լուտ. գերմ. Հատ. Հատ. Գ. Մասն Ա. 181, 182. եւ Ե. 290. Բ. Ծանօթ. 5.

Թիւնը մէկտեղ պիտի ըլլան, ի վերայ այսր ամենայնի իրենք դժոխք պիտ'որ երթան, իրենց՝ ստութեան ու սպանութեան աստուծոյն, որուն որ ստութեամբ ու սպանութեամբ ծառայեցին. իսկ ես՝ իմ Յիսուս Քրիստոս Տեառնս, որուն որ ճշմարտութեամբ ու խաղաղութեամբ ծառայեցի : . . . Բայց բաներուն ան աստիճանի չեն կրնար հասցընել որ ես աւելի անդին չկրնամ տանիլ. եւ անանկ խիստ գլուխ չեն կրնար ունենալ, որ ես աւելի խիստ գլուխ չունենամ, Թէպէտեւ չէ թէ միայն աս Կարոլոս կայսրը, հապա նաեւ Տաճկաց կայսրն ալ հետերնին ունենան : Զիս չեն կրնար վախցընել ու վհատեցընել, հապա ես զիրենք կրնամ վախցընել ու վհատեցընել : Պէտք է որ ասկէ վերջը միշտ ինծի տեղի տան ու զիջանին, իսկ ես իրենց ամենեւին չեմ ուզեր տեղի տալ ու զիջանիլ : Ես պէտք է որ մնամ, իսկ իրենք պէտք է որ կործանին : . . . Վասն զի պէտք է որ իմ կեանքս՝ իրենց դահիճն ըլլայ, իսկ մահս՝ իրենց սատանան 11 :

«Թէ որ բաներուն ան աստիճանի հասնին՝ որ պատերազմ մը բացուի, ես ալ գրիչս թող կու տամ, կը լռեմ, եւ ամենեւին աս բանին մէջ չեմ մտներ, ինչպէս որ վերջին գեղացւոց ապստամբութեան ատեն մտայ. հապա թող կու տամ որ ինչ ուզէ նէ՝ ըլլայ, թէպէտ եւ աշխարհքիս մէջ ամենեւին մէկ եպիսկոպոս մը, քահանայ մը, կրօնաւոր մը չմնայ, եւ ես ալ իրենց հետ մեռնիմ : . . . Դարձեալ չեմ ուզեր ապստամբ սեպել եւ ապստամբի տեղ դնել զանոնք՝ որոնք աս սպանող ու արեան ծարաւի պապականներուն դէմ կը դնեն. հապա թող կու տամ որ (ըրածնին՝) անձին պաշտպանութիւն անուանուի . . . : Որովհետեւ ասանկ դէպքի մէջ թէ որ անագորոյն սպանողներն ու արեան ծարաւի շները պատերազմիլ ու սպաննել կ'ուզեն, ստուգիւ անոնց դէմ դնելն ու ինքը զինքը պաշտպանելը՝ ապստամբութիւն չէ 12 : . . .

«Բայց որովհետեւ ես Գերմանացւոց մարգարէն եմ . . . անոր համար կ'ուզեմ հաւատարիմ ուսուցչի մը վայելածին պէս՝ իմ սիրելի Գերմանացիներուս իրենց վնասուն ու վտանգին վրայ ազդարարութիւնս ընել, եւ քրիստոնէավայել կերպով սորվեցընել որ եթէ կայսրը՝ իր սատանաներէն այս ինքն պապականներէն գրգռուելով՝ հրամայելու ըլլայ որ մեր կողման իշխաններուն դէմ պատերազմ ըլլայ, իրենք ինչ պէտք են ընել : . . . Ուստի աս է իմ սրտէ բխած խրատս. եթէ կայսրը հրամայելու ըլլայ որ՝ պապին իրողութեանցը կամ մեր վարդապետութեան համար՝ մեր կողման դէմ պատերազմ ըլլայ, . . . ա-

11. Mein Leben sol jr Henker sein, Mein Tod jr Teufel sein. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ե. 292, 292. Բ.

12. Նոյն տեղը, 293. Բ.

մինչեւ մէկը սա բանիս մէջ չմնէ ու կայսեր չհնազանդի. Հապա հաստատուն գիտնայ որ Աստուծմէ իրեն սաստիկ արգելուած է սա դէպքիս մէջ կայսեր հնազանդիլ. եւ ով որ անոր հնազանդելու ըլլայ նէ՝ գիտնայ որ Աստուծոյ անհնազանդ կ՚ըլլայ, եւ իր մարմինն ու հոգին յաւիտենական դատապարտութեան տակ կը ձգէ: Ինչու որ կայսրը սա բանս ընելով՝ չէ թէ միայն Աստուծոյ եւ աստուածային իրաւանց դէմ կ՚ընէ, հապա նաեւ իր կայսերական իրաւանց, իր երդման, իր պարտաւորութեան, իր կնքոյն ու հրամանագրերուն դէմ„ [13]: Ասկէ ետեւ մինչեւ վերջը պատճառներ կը բերէ, որոնց համար, կ՚ըսէ, պէտք չէ սա բանիս մէջ կայսեր հնազանդիլ. այս ինքն թէ՝ կայսեր հնազանդողը՝ Աւետարանին դէմ պատերազմած ու պապականութեան անպիտանութիւններուն հաստատուելուն պատճառ եղած կ՚ըլլայ, կ՚ըսէ:

Լուտերի սա ամէն խօսքերով ժողովուրդն ուղղափառներուն եւ նոյն իսկ կայսեր դէմ սաստիկ գրգռուեցաւ. ասոնցմով՝ ուղիղ դատաստան ընելու եւ իրաց պարագաներն աղէկ քննելու համար հարկաւոր եղած միջոց հանդարտութիւնը կորսնցուց, որով կայսեր դէմ պատերազմի ելլել ուզող իշխանները ալ ամենեւին չէին տարակուսեր որ առիթը գալու ըլլայ նէ՝ իրենց երկիրներուն մէջ ըլլողներուն մեծ մասը իրենց կողմը կը բռնէ: Ասով աւելի յանդգնելով՝ բոլոր զօրութեամբ ետեւէ կ՚ըլլային որ ձեռք զարկած գործքերնին գլուխ տանին [14]: Զանազան անգամ ժողովքներ ընելով՝ սկսան որոշել թէ դաշնակիցներէն որը որչափ ստակ պիտի տայ եւ որը որչափ զօրք, ամէն մէկ գնդին զօրավարն ով պիտ՚որ ըլլայ եւ ով ընդհանուր հրամանատար. անկէ վերջը հետերնին միաբանիլ կամ դաշնակցութեան մէջ մտնել ուզողները՝ ինչ պայմանով ու ինչ կերպով պէտք է ընդունիլ, եւ թէ ինչպէս կրնան պաշտպանել դաշնակցութեան ան անդամները՝ որոնց կայսրը չարիք մը կը հասցընէ [15]: Դարձեալ Սաքսոնիայի կայսրընտիրն ու Հեսսենի աշխարհատէր կոմսը, որոնք արդէն իրօք սա դաշնակցութեան գլուխն ու հոգին էին, մասնաւորաբար ալ դաշնակցութեան գլուխ անուանեցին [16]:

13. Դարձեալ նոյն տեղը, 297. Բ. 298:

14. Ասոր վրայ Բլանք այսպէս կը խօսի. "Մարդ կրնայ իրաւամբ այնպէս սեպել որ շատ մեծի մասին սա (Լուտերին եւ բողոքող աստուածաբաններուն) յայտարարութեան, եւ սա երկու գրուածներուն (վերը գրուած Ազդարարութեան, ու Աւկսպուրկի ատենաժողովոյն վճռոյն դէմ Լուտերին հանած գրուածքին) պտուղն եղաւ, որ անմիջապէս անկէ ետեւ ան միջոցներն իրօք ի գործ դրուեցան, որոնցմով միայն՝ դաշնակցութիւնն հաստատեցաւ„: Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 182:

15. Սլէյտան. Գիրք Ը. 115. Բ. Բլանք, Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 180. — 201:

16. Մենցլ, Հատ. Ա. Գլ. ԺԳ. 433: Բլանք, Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 213:

Բողոքողք աս դաշնակցութեամբ վախճաններնուն հասան: կայսրը իրենց պատրաստութիւնները տեսնելով, եւ լսելով որ Ցաճիկները սաստիկ զօրքով Աւստրիայի վրայ յարձակելու պատրաստութիւն կը տեսնեն, ուզեց զանազան զիջմունքներ ընելով՝ հետեւրնին խաղաղութիւն ընել. որպէս զի չըլլայ որ դուրսի թշնամեաց հետ պատերազմած ատեն՝ ներքութեան մէջ աւելի եւս վտանգաւոր թշնամիներ ունենայ, մանաւանդ որ բողոքող իշխաններէն ալ մեծ օգնութիւն կրնար ունենալ: Բողոքողները շատ անգամ դէմ դնելէն ու միշտ դժուարութիւններ հանելէն ետեւ, վերջապէս նոյն իսկ Լուտերին հաւանութիւն տալովը՝ յանձն առին որ կայսեր հետ խաղաղութիւն ընեն 17: Բողոքողներուն երեւելիները 1532ին Ցուլիսի 23ին ստորագրեցին ան թղթին՝ որով կայսրը մինչեւ ընդհանուր ժողովքին գումարուիլը իրենց խաղաղութիւն կը շնորհէր, եւ ամէն բանէն աւելի ստիպմամբ ուզածնուն կը հաւանէր, այս ինքն թէ՝ մինչեւ որ ընդհանուր ժողովք մը գումարուի նէ՝ գերագոյն դատաստանարանը կրօնական նիւթերու պատճառաւ ամենեւին մէկու մը դէմ վճիռ չհանէ, եւ եկեղեցական ինչքերը հիմակու հիմա ան վիճակի մէջ մնան, ինչպէս որ են 18: կայսրն ալ նոյն դա-

17. Հանած դժուարութիւններնուն գլխաւորներն ասոնք էին. Ա. Ֆերդինանդոս թագաւորին ընտրութեան չէին ուզեր հաւանիլ, եւ Բ. կը պահանջէին որ աս խաղաղութեան դաշանց մէջ մտած ստպուրին չէ թէ միայն անոնք՝ որոնք նոյն ատեն իրենց կողմն էին, հապա նաեւ ետքէն ալ իրենց կողմն անցնողները: Լուտեր՝ որ պատերազմին ինչ վերջ ունենալուն վրայ տարակոյս ունէր, բաներուն աս կերպ գտնալուն վրայ ուրախանալով՝ ետեւէ կ'ըլլար որ բողոքողք զիջանին եւ աս դժուարութիւնները մէկդի ձգեն: Եւ թէպէտ անոնք առաջին մասին մէջ չզիջան, որով եւ կայսրը ստիպուեցաւ նոյն պայմանը ետ առնել. բայց երկրորդ մասին մէջ տեղի տուին՝ ինկզքան Ցովհաննէս կայսրընտիրը եւ ուքը մէկալ իշխանները, վերջերը մինակ Հեսսենի աշխարհատէր կոմսը մնաց, որն որ ամենուն դէմ չկրնալով դնել՝ ակամայ տեղի տուաւ: Ասոնց վրայ տես Սեքենտորֆ, Գիրք Գ. Հատ. Թ. 21: Բլանք, Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 215. — 228: Կոսսարտ Փֆիսթեր, Գլ. ԻԵ. 689. — 900:

18. Բողոքողք աս դաշանց վրայ վստահանալով՝ միօրինակ իրենց երկիրներուն մէջ եղած ուղղափառ եկեղեցիներուն ինչքերը կը կողոպտէին. եւ երբ որ եպիսկոպոսք աս բանիս դէմ գերագոյն դատաստանարանին տրտունջ կ'ընէին, եւ դատաստանարանը կ'ուզէր քննութիւն ու դատաստան ընել, ան ատեն իրենք ձայներնին կը բարձրացընէին, որ Դաշանց դէմ կ'ըլլայ կոր. կրօնական նիւթերու վրայ մեզի դէմ դատաստան կ'ուզեն կոր ընել, եւ այլն: Բանին ան աստիճանի հասաւ որ բողոքողք կայսեր սկսան տրտունջ ընել. կայսրը պատասխանեց որ ան դաշանց մէջ եղած որոշումը՝ միայն կրօնական նիւթերու վրայ ըլլալով, ուրիշ նիւթերուն վրայ գերագոյն դատաստանարանը կրնայ դատաստան ընել. իսկ թէ որ նիւթ կրօնի կը վերաբերի, որ նիւթ չվերաբերիր, ան ալ պէտք է որ դէպքը պատահած ատեն որոշուի: Բողոքողք ասով գոհ չըլլալով՝ շատ անգամ մէջերնին խօսելէն ետեւ, վերջապէս 1538ին իրենք իրենցմէ որոշեցին որ ամենեւին մէկ նիւթի մէջ իրենք գերագոյն դատաստանարանին վճռոյն գլուխ ծռելու պարտաւոր չեն, որովհետեւ նոյն դա-

շինքը Օգոստոսի 2ին իր ստորագրութեամբն հաստատեց, ու երկրորդ օրը հրատարակուեցաւ։ — Աս դաշինքը՝ Նիւռնպերկի խաղաղութիւն կ՚անուանուի, որովհետեւ բողոքող իշխանք նոյն քաղաքը ստորագրեցին [19]։

Դաշինքը դրուելէն քիչ մը ետքը (Օգոստոսի 16ին) Յովհաննէս Սաքսոնիայի կայսրընտիրն ու Լուտերի գլխաւոր պաշտպանը մեռաւ, եւ իրեն յաջորդ թող տուաւ Յովհ. Փրետերիկոս իր որդին, որն որ բոլորովին հօրն ընթացքը բռնեց, մանաւանդ թէ անկից ալ անդին անցաւ, եւ բոլոր կեանքը Լուտերին եւ անոր հետեւողներուն կողմը բռնեց։ Իր աս Լուտերին կողմը բռնելը այնչափ սաստիկ էր, որ Կուստաւ Ֆիցէր [20] կը խոստովանի թէ իր հաստատութիւնը «Երբեմն խիստ յամառութեան կը դառնար. այնպէս որ կրնայ ըսուիլ թէ, կ՚ըսէ, շատ անգամ նոյն իսկ Լուտերէն աւելի Լուտերական կ՚ըլլար»։ Անիկա ըսելէն վերջը՝ Լուտերին մէկ խօսքը կը դնէ, որուն մէջ նորոգիչն իշխանին դէմ տրտունջ կ՚ընէ թէ կամապաշտ ու հպարտ է։

տատասանարանին մարդիկը տարբեր կրօնք ունենալով՝ կասկածելի եւ կողմնակալ են, եւ կրօնական նիւթերու մէջ իրենց դէմ բան մ՚ըսել չկրնալնուն սխը՝ աւելի ստատկութեամբ արտաքին նիւթերու մէջ կ՚ուզեն հանել։ Տես Ռէֆնէլ, Գիրք Բ. Գլ. ԺԱ. 526, 527։

19. Աս դաշնակցութենէն յառաջ եղած ժողովքներն ու խօսակցութիւններն ընդարձակ կը պատմեն Սլէյտան (Գիրք Ը. 119. Բ. — 125.), Բլանք (Գիրք Ը. Հատ. Գ. Մաս Ա. 205. — 231.) ու Մէնցլ (Հատ. Ա. Գլ. ԺԳ. 432. — 452.)։

20. Գլ. Իե. 701։



# ԳԼՈՒԽ Գ

## Սատանայական տեսիլներ [1]։

Լութերին՝ պատարագի ու ձեռնադրութեան դէմ գրած գիրքը։ Սատանային հետ ըրած (՞) վիճաբանութեան պարագաները։ Լութերական երէցու մը սատանային հետ ըրած (՞) խօսակցութիւնը։ Լութերին աս բանին վրայ ունեցած կարծիքը։

## 1533 — 1534

ԼՈՒՏԵՐ նոյն տարիները (1533ին վերջերը) պատարագին ու ձեռնադրութեան դէմ գիրք մը հրատարակեց, որուն մէջ կը պատմէ թէ գիշեր մը սատանային հետ պատարագի վրայ վիճաբանութիւն ըրած ըլլայ, որուն վրայ վերը [2] յիշատակութիւն ըրած ենք։ Արդ աս է Լուտերին խօսքերը. "Անգամ մը [3] կէս գիշերին մէկէն ի մէկ քնէն արթընցայ, ու սատանան սկսաւ սրտիս մէջ սաստիկ վիճաբանութիւն մը...[4]։ Լսէ, բազմատեղեակդ, գիտես որ դուն տասնուհինգ տարի գրեթէ ամէն

1. Հարկաւոր կը սեպենք աս գլուխը չսկսած՝ ծանուցանել որ հոստեղը պատմածներնուս ստուգութեան երաշխաւոր չենք ըլլար, ուստի եւ իբրեւ ճշմարիտ պատմութիւն չենք գներ, հապա այնպէս կը պատմենք՝ ինչպէս որ ինք Լուտեր եւ իրեն հետեւողները կը գրեն, եւ թող կու տանք որ կարդացողներն իրենք իրենցմէ դատաստան ընեն։ Տես նախա աս Գլխոյն 7. Ծանօթ։

2. Գիրք Ա. Գլ. Թ. եր. 125։

3. Թէպէտ Լուտեր աս տեսիլքին ժամանակը չ'որոշեր. բայց հաւանական կ'երեւայ, կ'ըսէ Ուլէնպերկ, որ Վարդպուրկ եղած ատեն պատահած ըլլայ, եւ զանազան պատճառներով ալ իր կարծեաց ստուգութիւնը կը ցուցընէ։ Գլ. ԻԵ. Համ. Գ։ Տես նախա աս Գլխոյն 7. Ծանօթութեան սկիզբները։

4. Զուինգլի ալ իր անձին վրայ կը պատմէ որ սաստիկ տեսիլ մը տեսած եւ անով սորված ըլլայ որ ինչպէս իր հակառակորդներուն բերանը գոցէ. որոնք կ'ըսէին թէ Քրիստոս հաղորդութեան խորհրդին մէջ իրօք ներկայ է։ Ինքն ալ Լուտերին պէս աս տեսիլքին պատմութիւնը կը գրէ, բայց երեւցողին ով ըլլալը անոր որոշածին պէս բացայայտ չ'որոշեր։ Ահաւասիկ իր խօսքերը։ Ապրիլի տասնըչորսին օրը քնացած ատենս ինծի այնպէս կ'երեւար որ հակառակորդներս մէկուն հետ կը վիճեմ, եւ այնպէս ապշութեան մէջ ինկած էի, որ ինչ պատասխան տալը չէի գիտեր։ Անոր համար մեծ տագնապ ու նեղութիւն կը կրէի, ինչպէս կը պատահի երբ որ մէկը քնոյն մէջ երազներով կը չարչարուի։ Եւ թէպէտ եղածն երազ է, բայց նոյն ատեն իմացածս՝ Աստուծոյ շնորհքովը շատ երեւելի բան է։ Եւ աս է. ինծի այնպէս կ'երեւար թէ մէկը կը տեսնեմ, որն որ ինծի կը մօտենար, բայց չեմ կրնար ըսել որ տեսածս ճերմա՞կ էր թէ սեւ։ Արդ տակէս ինծի ըսաւ որ հակառակորդիս բերանը դիւրաւ կրնամ գոցել, թէ որ Ելից գրքին աս խօսքը վկայութիւն բերեմ թէ "Փութանակի ուտիցէք. զի զատիկ Տեառն է"։ (Ելք. ԺԲ. 11։) Ուր որ է բառը՝ կը նշանակէ բառին տեղ գրուած է։ Շուտ մը վախնալով՝ քնէն արթընցայ, Եօթանասնից թարգմանութիւնը ձեռքս առի. եւ ան ժամանակէն վեր այնպէս մեկնեցի եւ հրապարակաւ ժողովրդեան առջեւ քարոզեցի։ Ա— Օտինէ, Հատ. Բ. Գլ. ԻԳ. 289։ Տես նախա Բլանք, Գիրք Ե. Հատ. Բ. 259. Ծանօթ. 100. Ի— Պոսիւէ, Գիրք Բ. Համ. ԻԷ։

որ Թիւ պատարագ ըրիր։ Արդ ի՞նչ կ՚ըսէիր եթէ իմանայիր որ այն պատարագներովդ սոսկալի կռապաշտութիւն ըրած ես, եւ չէ թէ Քրիստոսի մարմնոյ եւ արեան՝ հապա պարզ հացի ու գինւոյ երկրպագութիւն ըրած եւ ուրիշներուն առջեւը երկրպագութիւն ընելու դրած ես։ — Ես ալ իրեն պատասխան տուի թէ Ես ձեռնադրուած քահանայ եմ ու եպիսկոպոսէն օծում ու ձեռնադրութիւն ընդունած եմ, ասկից ալ զատ՝ այն բաները հրամանաւ եւ հնազանդութեան համար ըրած եմ. ուրեմն ինչպէս կրնամ քահանայագործած չըլլալ, մանաւանդ ալ որ խօսքերը ծանրութեամբ եւ ոչ թէ կատակի համար կ՚ըսէի ու պատարագս ջերմեռանդութեամբ կը մատուցանէի։ Ասիկա դուն ալ աղէկ գիտես։ — Այո, ըսածներդ ստոյգ են, ըսաւ, բայց Տաճիկներն ու հեթանոսներն ալ իրենց մեհեաններուն մէջ ըրածնին՝ հրամանաւ եւ հնազանդութեան համար կ՚ընեն, եւ մտադրութեամբ ու չէ թէ կատակի համար։ Նոյնպէս Երոբովամայ քուրմերն ալ Դանայ ու Բերսաբէէի մէջ ամէն բան գուցէ Երուսաղէմի ճշմարիտ քահանաներէն աւելի ջերմեռանդութեամբ կ՚ընէին։ Արդ ի՞նչ կ՚ըլլար թէ որ քու ձեռնադրութիւնդ ու օծումդ ալ Տաճիկներուն ու Սամարացիներուն պէս սուտ ու անպիտան ըլլար„ [5]։

Ասոնք գրելէն վերջը Լուտեր կ՚ըսէ թէ աս խօսքերէն անանկ պլպլեցայ որ քրտինքի մէջ մնայ, սիրտս դող ելաւ ու բոլոր մարմինս սարսռելու սկսաւ։ Վասն զի սատանան անանկ կերպով կը խօսի ու իր պատճառներն անանկ ետեւէ ետեւ կը դնէ որ, կ՚ըսէ, մարդ չի կրնար պատասխան տալ։ Ես նոյն ատեն իմացայ թէ, կ՚ըսէ, ինչպէս կ՚ըլլայ որ շատերը առտուանց անկողիններնուն մէջ մեռած կը գտնուին. որովհետեւ սատանան մարդուն մարմինը կրնայ խեղդել, նոյնպէս հոգին ալ անանկ անձկութեան մէջ կը ձգէ, որ մինչեւ մարմնէն կը բաժնուի. ինչպէս շատ անգամ ես ալ գրեթէ նոյն վիճակին մէջ գտնուեցայ։ Ասկէ ետքը Լուտեր հինգ պատճառ կը բերէ, որոնք, կ՚ըսէ, սատանան իմ ձեռնադրութեանս ու օծմանս դէմ առջեւս դրաւ։ Աս հինգ պատճառները համառօտիւ ասոնք են։ Նախ՝ դուն ճշմարիտ հաւատք չունէիր, հապա հաւատքի կողմանէ Տաճկըներուն մանաւանդ թէ սատանային կը նմանէիր, որովհետեւ մենք ամէնքս ալ Քրիստոսի վրայ գրուածներուն կը հաւատանք։ Բայց ամէնքս իր վրայ վստահութիւն կամ յոյս մը չունինք, հապա իբրեւ դատաւոր իրմէ կը վախնանք։ Դուն ալ ձեռնադրուելու ատենդ՝ աստանկ հաւատք ունէիր, նոյնպէս զքեզ ձեռնադրողն ալ աս հաւատքն ունէր, անոր համար իբրեւ հեթանոս ձեռ-

5. Գործք Լուտ. գերմ. հատ. Զ. 87։

նադրուեցար եւ հեթանոսի պէս պատարագ ըրիր։ Աս տանկ ըլլալով՝ ինչպէս կրնայիր քահանայագործել։ Երկրորդ՝ Քրիստոսի կարգադրութեան ու դիտման հակառակ ձեռնադրուեցար ու քահանայագործեցիր. որովհետեւ Քրիստոսի դիտումն ան է որ պատարագն անանկ ըլլայ՝ որ ուրիշներուն ալ բաշխուի. անոր համար ալ աս խորհուրդը հին Հայրք՝ Հաղորդութիւն անուանեցին։ Իսկ դուն ասոր հակառակ տասնուհինգ տարի միշտ խորհուրդն առանձին ընդունեցար եւ ուրիշին չտուիր, մանաւանդ թէ ուրիշին տալը քեզի արգելուած էր (°)։ Այդ տանկ ձեռնադրութիւն ու քահանայագործութիւն կրնա՞յ մի ըլլալ։ Երրորդ՝ Քրիստոսի դիտումն ան է որ աս խորհուրդը կատարողները զինքը քարոզեն ու իր մահը միշտակեն, ինչպէս որ թէ ինք Քրիստոս՝ եւ թէ Պօղոս առաքեալ կը զրուցեն։ Իսկ դուն պատարագ ըրած ատենդ՝ ամենեւին բան մը չքարոզեցիր եւ ոչ զՔրիստոս խոստովանեցար, հապա առանձին ընդունեցար եւ քթիդ տակէն կամաց կամաց քանի մը խօսք ըսիր։ Աս է Քրիստոսի դիտումը կատարել, ա՞ս է սուրբ ձեռնադրութիւնը։ Չորրորդ՝ Քրիստոսի դիտումն ան է որ աս խորհուրդը առ հասարակ ամենուն ըլլայ եւ ուրիշ քրիստոնէից ալ հաղորդուի. իսկ դուն անոր համար ձեռնադրուեցար որ նոյնը Աստուծոյ պատարագ կամ զոհ մատուցանես, եւ ոչ թէ խորհրդոյ քահանայ՝ հապա պատարագի քահանայ ձեռնադրուեցար։ Աս ի՞նչ ապականեալ ձեռնադրութիւն է։ Հինգերորդ՝ ինչպէս ըսինք, Քրիստոսի դիտումն ան է որ խորհուրդը հաւատացեալներուն բաժնուի, իրենց հաւատքը զօրացընելու եւ զՔրիստոս հրապարակաւ գովելու համար։ Իսկ դուն նոյնը քեզի անձնական գործք ըրիր, եւ առանց ուրիշին գործակցութեան կատարեցիր, ու ետքը ուրիշներուն հաղորդեցիր եւ ստակով ծախեցիր [6]։

6. Գործք Լուտ. գերմ. հատ. Զ. 87. — 88։ — Լուտեր թէպէտ սատանայէն խօսքերը (իր գրածին նայելով) մոլորութեանը մերկ ըրաւ ու գրի անցուց, եւ զգուշութեամբ անոնց հետեւեցաւ. բայց անոր միչինները որ սատանան նոյն խօսքերուն մէջ եկեղեցւոյ եօթը խորհուրդները՝ երբեք ճշմարիտ խորհուրդ կ'ընդունի, եւ իրարու նման եւ հաւասար կը դնէ։ Լուտերի պատամածին նայելով՝ սատանան զինքը համոզելու համար որ մարդ մը առանձին խորհուրդ չիկրնար կատարել, իրեն աս խօսքերն ըսաւ. ինչո՞ւ չէք վարդապետներ փուք որ մէկը կրնայ առանձին ինքը զինքը մեղանել. եւ թէ որ ընելու ըլլայ նէ՝ ինչո՞ւ նոյնը մկրտութիւն չէ։ Ինչո՞ւ համար դրօշմ չ'ըլլար, երբ որ մէկը ինքը զինքը կը դրօշմէ։ Ինչո՞ւ օծում կամ ձեռնադրութիւն չ'ըլլար, երբ որ մէկը ինքը զինքը կ'օծէ կամ կը ձեռնադրէ։ Ինչո՞ւ արձակում չ'ըլլար, երբ որ մէկը ինքը զինքը կ'արձակէ։ Ինչո՞ւ (վերջին) օծումը չիկատարուիր, երբ որ մէկը ինքը զինքը կ'օծէ։ Ինչո՞ւ ամուսնութիւն չ'ըլլար, երբ որ մէկը ինք իրեն հետ ամուսնանալ կ'ուզէ,,։ Գործք Լուտ. գերմ. հատ. Զ. 88. Բ։ Ահաւասիկ եկեղեցւոյ եօթը խորհուրդները. Ա. Մկրտութիւն, Բ. Դրօշմ, Գ. Օծումն (քահանայութեան) կամ ձեռնադրու-

Լուտեր այս հինգ պատճառները գրելէն ետեւ՝ ուրիշ խել մը բաներ ալ կը պատմէ, որոնք սատանան խօսեցաւ, կ'ըսէ, եւ վերջապէս իբրեւ անոր ըրած հետեւութիւնն ու վճռաբանութեան վերջը՝ ետեւի խօսքերն ի մէջ կը բերէ. "Որովհետեւ, զրուցեց, կ'ըսէ, դուն ուրիշ բանի համար չձեռնադրուեցար՝ բայց եթէ առանձին պատարագ ընելու համար, այս ինքն՝ Քրիստոսի խօսքին ու կարգադրութեան, եւ եկեղեցւոյ դիտաւորութեան ու հաւատքին դէմ գործելու, անոր համար աւելի պղծուած ես քան թէ ձեռնադրուած, եւ քու ձեռնադրութիւնդ՝ աւելի փուճ ու սնոտի է քան թէ զանգակի մը մկրտութիւնը եւ քարի ձեռնադրութիւնը: Աս պատճառաւ ալ ստուգիւ քու քահանայագործելդ՝ քահանայագործել չէր, հապա հեթանոսի պէս սուտ հաց ու գինի կը նուիրէիր, եւ բարեպաշտ քրիստոնէից՝ աղէկ բանի մը պէս ստելով կը ծախէիր ու իրենց կը հաղորդէիր, որպէս զի քու փորդ սնուցանես: Ո՛վ որովայնի քահանայ եւ ոչ Աստուծոյ քահանայ. ո՞վ արդեօք երկինքն ու երկրիս վրայ ասկից աւելի մեծ պղծութիւն, խաբէութիւն ու վնաս լսած է, եւ այլն: Աս էր բոլոր վճռաբանութեան գրեթէ բովանդակութիւնը" [7]:

թիւն, Դ. Արձակումն կամ ապաշխարութիւն, Ե. (վերջին) Օծումն, Զ. Ամուսնութիւն. որոնց վրայ հաղորդութիւնն ալ աւելցընելու է, որովհետեւ թէ Լուտեր եւ բողոքականք եւ թէ (Լուտերին գրածներուն նայելով) սատանան կ'ընդունին որ խորհուրդ է. եւ սատանան կ'ընդունի որ մէկալ խորհուրդներն ալ ըստ ամենայնի հաղորդութեան պէս խորհուրդ են, ինչու որ հաղորդութեան խորհրդին առանձին կատարուելուն անվաւերութիւնը՝ մէկալ խորհուրդներուն անվաւերութենէն կ'ուզէ ցուցընել:

7. Գործք Լուտ. գերմ. Հատ. Զ. 89: — Սեքենտորֆ (Գիրք Ա. Համ. ՃԲ. Յաւել. 166. — 169.) եւ վերջին ատենուան շատ բողոքող մատենագիրներ իրենց վարդապետին պատուոյն արատ մը չբերելու համար՝ կը զրուցեն որ Լուտերին աս ամէն գրածները՝ միայն երեւակայութեան ցնորքներ են, եւ տեսիլք ու վճռաբանութիւն ըսելը՝ այլաբանական խօսքեր են, որոնք ուրիշ բան չեն նշանակեր՝ բայց եթէ սատանայի փորձութիւն: Դարձեալ նոյն Սեքենտորֆ եւ ուրիշ քանի մը բողոքող մատենագիրներ չեն հաւանիր որ Լուտերի աս վճռաբանութիւնը կամ փորձութիւնը Վարդպուրկին մէջ գտնուած ատեն, ուստի եւ պատարագը վերցընելու վրայ գրելէն յառաջ՝ պատահած ըլլայ: Առաջիններին համար կը զրուցենք որ թէպէտ ո՛չ Լուտեր եւ ո՛չ իր ժամանակին հեղինակներն այսպէս կ'իմանան, ի վերայ այսր ամենայնի մենք ալ կ'ենթադրենք որ Սեքենտորֆին կարծածին պէս՝ տեսիլք ու վիճմունք ըսելով՝ փորձութիւն իմացուի. սակայն այսպէս ալ դնելով՝ միշտ Լուտերին եւ իրեն հետեւողներուն վրայ աս նախատինքը կը մնայ որ սատանային խրատներուն ու թելադրութիւններուն հետեւելով եւ անոր փորձութիւններէն յաղթուելով՝ սուրբ պատարագը ջնջեց վերցուց: Նոյնպէս երկրորդին համար ալ կը զրուցենք որ Լուտեր նոյն գիրքը՝ տեսիլքը կամ փորձութիւնն ունենալէն յառաջ գրած ըլլայ վերջը գրած ըլլայ. միշտ գտնէ աս ստոյգ եւ հաստատուն կը մնայ որ պատարագը ջնջելը՝ սատանայէն խորհրդեան ու փորձութեան համաձայն, ուստի եւ դէշ բան մըն է. որովհետեւ փորձութիւնը նոյն իսկ բողոքողներուն կար-

Լուտեր ասոնք գրելէն ետեւ՝ կը զրուցէ որ սատանային պատճառներէն յաղթուելով ու պատասխան տալ չկրնալով՝ խօսքերուն հաւանեցայ. եւ չեմ կրնար ուրանալ որ, կ'ըսէ, պատարագ ըրած ատենս՝ ծանր մեղք կը գործէի, եւ ուրիշ բանի չէ՝ հապա մահուան ու դատապարտութեան արժանի էի։ Անկէ ետքը կը սկսի սուրբ պատարագին ու քահանայական կարգին դէմ սաստիկ հայհոյութիւններ գրել։ Կ'ըսէ թէ քահանայական զգեստ հագած՝ պատարագ ընելու համար խորանին առ-ծեւաց նայելով ալ՝ դեռ բանի մը թելադրութիւն է։

Հոստեղս պատշաճ կը սեպենք ծանուցանել որ Լուտեր չէ թէ միայն իր գրքերու մէջ՝ հապա ուրիշ շատ անգամ ալ կամ յայտնի եւ կամ ծածուկ կը յիշատակէ որ սատանայական տեսիլքներ ու երեւոյթներ ունեցած եւ սատանային հետ վիճած է։ Վարդպուրկէն Վիդգենպերկ դառնալէն ետեւ՝ ժողովրդեան խօսած ճառերէն մէկուն մէջ պարծելով մը ասոր վրայ այսպէս կը խօսի. «Դուք չէք գիտեր որ սատանային հետ կռուիլը ու իրեն յաղթելը՝ ինչչափ դժուար բան է. բայց ես աղէկ գիտեմ, ինչու որ շատ անգամ հետն աղ ու հաց կերած եմ. անոր համար ես զինքն աղէկ կը ճանչնամ, ինքն ալ զիս կը ճանչնայ»։ Առ Ոսփինեանի. Գլ. Է. Համ. Գ։ — Խօսք սեղանոյ ըսուած գրքին մէջ Լուտերին տեսած զանազան սատանայական տեսիլքներուն պատմութիւնները կը գտնուին, որոնցմէ մէկը հոս կը դնենք։ «Երբ որ ես 1521ին Վորմսէն դառնալու ատենս՝ Այզենախի մօտ բռնուելով՝ Վարդպուրկի բերդին մէջ . . . կը կենայի, կ'ըսէ Լուտեր, մարդիկներէն հեռու սենեկի մը մէջ կը բնակէի, եւ ամենուն մէկը չէր կրնար ինծի գալ. միայն երկու ազնուական երիտասարդ օրը երկու անգամ կու գային եւ ուտելու խմելու բան կը բերէին։ Արդ ասոնք պարկ մը կաղին գնած ու պահարանի մը մէջ դրած էին, որ երբեմն երբեմն կ'ուտէի։ Անգամ մը . . . քնացած ատենս՝ սատանան եկաւ ու կաղինին եղած տեղը կենալով՝ մէկիկ մէկիկ սաստիկ զօրութեամբ գերաններուն կը նետէր, ու անկողնոյս մէջ մեծ աղմուկ ու չփոթութիւն կը հանէր. բայց ես բանի տեղ չըրի։ Երբ որ նորէն քիչ մը քուն մտայ, մէյ մ'ալ լսեցի որ սանդուղին վրայ անանկ աղմուկ մը կ'ելլէր, որ կարծես թէ սանդուղէն վար շատ մը տակառներ կը գլտորին։ Եւ թէպէտ գիտէի ես որ սանդուղը շղթայով կապուած ու գոցուած է, եւ կարելի չէ որ մէկը վեր ելլէ կամ կարաս վար գլտորի. ի վերայ այսր ամենայնի ելայ սանդուղին քովը գացի, որ տեսնեմ թէ ինչ է. եւ տեսայ որ սանդուղը գոցուած ու ամրացած էր։ Ան ատեն ըսի որ Դո՛ւն ես, այնպէս ըլլայ»։ Խօսք սեղանոյ, 205. բ։

Երբ որ աս վերջին տարիները Օտէն Գերմանիա կը պտըտէր, որ ամէն բան անձամբ տեսնելով ու քննելով՝ Լուտերին վարքը գրէ, Վարդպուրկ ալ գնաց։ Բերդին պահապանը՝ որն որ Լուտերին մեծ սէր ու յարգութիւն կը ցուցընէր, զինքը ամէն տեղ պտըտցուց եւ հոնտեղը Լուտերին բոլոր ըրածներն ու իրեն պատահածները պատմեց։ Կաղիններին պատմութիւնն ալ պատմելէն ետեւ՝ վրան աս ալ աւելցուց. Երբ որ, ըսաւ, սատանան չէր ուզեր Լուտերին հնազանդիլ ու թող տալ երթալ, մանաւանդ թէ ճանճի կերպարանք մտնելով՝ կը թռչտէր ու վարդապետին ականջը կը բզզէր, ան ալ կաղամարն առաւ ու ճանճին նետեց։ Աս ըսաւ ու առաւ զինքը նոյն տեղը տարաւ, եւ պատին վրայ թանաքի բիծ մը ցուցընելով՝ Ահաւասիկ, ըսաւ, պատմածիս յայտնի վկայութիւնը, որն որ եւ ո՛չ ժամանակը կրցաւ աւրել հանել։ Նոյն տեղը Լուտերի՝ սատանային հետ պատարագին վրայ ըրած վիճաբանութիւնն ալ պատմեց։ Օտէն, Հատ. Ա. Գլ. Ի. 276։ Տես նաեւ Մեռլ տ'Օպինիէ, Հատ. Բ. 34, 35 եւ Ծանօթ։

ջեւը կեցող քահանան ուրիշ կերպով պէտք չէ նկատել, բայց իբրեւ սատանայ՝ որ դժոխքէն ելած եկած՝ հոն կը կենայ։ Նոյնպէս քահանայի ձեռնադրութիւնը կամ օծումը՝ աւելի պըղծութիւն է քան թէ օծում, որով մկրտութեան ատեն քրիստոնեայ ըլլող մարդը՝ եպիսկոպոսին ձեռքովը սատանայ կը դառնայ։ Եւ թէպէտ կը խոստովանի որ շատ Ս. Հայրք ալ նոյն կերպով ձեռնադրուած եւ իրենք ալ ուրիշները նոյն կերպով ձեռնադրած են, բայց անմտական զանազանութիւններ ընելով՝ զիրենք կը ջատագովէ [8]։ Եւ շատ կը հաստատէ որ չէ թէ միայն ամէն մարդ հապա նաեւ սատանան ալ կրնայ խորհուրդ կատարել, եւ իր մատակարարած խորհուրդը՝ քահանայի մը մատակարարածին պէս վաւեր է [9]։ — Դարձեալ ուրիշ գրքի մը մէջ՝ սուրբ պատարագին վրայ գրած աս հայհոյութիւնները ջատագովել ուզելով՝ այսպէս կը խօսի. "Շատ կը բաղձամ որ ամէն մարդ աս երկու բառերուն, այս ինքն պատարագ եւ խորհուրդ բառերուն մէջ եղած տարբերութիւնն աղէկ հասկընայ, եւ իմանայ որ աւելի տարբեր են իրարմէ քան թէ խաւարը լոյսէն, եւ սատանան՝ Աստուծմէ։ . . . Երանի թէ Աստուած ամէն բարեպաշտ քրիստոնէից անանկ սիրտ մը տար, որ պատարագ բառը լսելնուն պէս՝ սկսէին դողալ, ու սատանայ եւ պղծութիւն մը տեսածի պէս երեսնին խաչ հանէին,, [10]։ — Ասանկ ամպարիշտ խօսքերուն վրայ խորհրդածութիւն ընելը աւելորդ բան կը սեպենք։

Նոյն ատենները Լուտերականաց մէջ սատանայական մէկ տեսիլքի պատմութիւն մը հրատարակուեցաւ, որն որ թէպէտ ըստ ինքեան ծիծաղական ու առասպելական բան մըն է, բայց

8. Գործք Լուտ. գերմ. Հատ. Զ. 99. Բ. 100։

9. Ահաւասիկ Լուտերին բուն խօսքերը։ "Թէ որ սատանան գալու ըլլար, կ'ըսէ, . . . ու ժողովրդապետութեան պաշտօնի կանչուելով՝ հրապարակաւ եկեղեցւոյն մէջ Աւետարանը քարոզէր, մկրտէր, պատարագ ընէր, արձակում տար . . . պէտք էր որ խոստովանէինք թէ խորհուրդները՝ ճշմարիտ խորհուրդ էին. եւ մենք ճշմարիտ մկրտութիւն ընդունած, ճշմարիտ Աւետարան լսած, ճշմարիտ արձակում առած, Քրիստոսի ճշմարիտ մարմինն ու արիւնն ընդունած էինք։ Որովհետեւ պէտք չէ որ մեր հաւատքն ու խորհուրդները անձին վրայ հիմնուին, որ արդեօք բարեպաշտ է թէ չար, ձեռնադրուած ընդունած է թէ ոչ, ան պաշտօնին կանչուած է թէ ինք իրմէ ապրգած մտած է, ստորանան է թէ իր մայրը,,։ Գործք Լուտ. գերմ. Հատ. Զ. 105։ — Զարմանալու բան մըն է թէ ինչպէս կրնար Լուտեր աս բանս ըսել. որովհետեւ ատենին ու գլխաւոր պատճառը՝ որով (իրեն պատմածին նայելով) սատանան զինքը ուղղափառ քահանայից ձեռնադրութիւնն ու պատարագը մերժելու համոզեց, աս էր որ անոնք ճշմարիտ հաւատք չունէին, հապա հաւատքնին սատանայի հաւատքին նման է։ (Տես երես 324։) Արդ թէ որ ուղղափառք՝ սատանայի նման հաւատք ունենալնուն համար՝ չեն կրնար ձեռնադրուիլ ու խորհուրդ կատարել, ինչպէս կրնայ սատանան։

10. Գործք Լուտ. գերմ. Հատ. Զ. 174, 174. Բ։

լուտերական վարդապետութեան վրայ քանի մը մտադրութեան արժանի բաներ մատակարարելուն համար՝ հոտերս համառօտու մը՝ բայց պատմութեան բնագրին խօսքերովը՝ կը դնենք։ Սաքսոնիայի Ողասփորդ քաղաքին մէջ 1534ին ծրագալուցին իրիկունը, լուտերական երէց մը եկեղեցին նստած՝ երկրորդ օրը Հաղորդութեան տանելու ատեններնին խոստովանանք կ'ընէր։ Երբ որ ամէնքը խոստովանանք եղան լմնցան, եւ ինքն ալ ոտք ելաւ որ երթայ, աղտոտ զգեստ հագած սեւ մարդ մը տեսաւ, որ դէպ իր կողմը կը մօտիկնար, եւ գլխու խոյրը այնպէս վար քաշեց, որ ճակատը բոլորովին գոցուեցաւ։ Աս մարդս երիցուն քովը մօտենալով՝ բարձր ձայնով ըսաւ. Տէր, իմ խոստովանանքս ալ կ'ուզեմ ըսել։

Հա, ըսաւ երէցը, ու գնաց տեղը նստեցաւ. իսկ մարդը երկու քայլ հեռու ծունկ չոքեցաւ իբրեւ թէ խոստովանանք ընել կ'ուզէ։

Երէցն իրեն ըսաւ. Թէ որ խոստովանանք ընել կ'ուզես նէ՝ քիչ մը մօտ գալու ես որ լսեմ։

Աս քեզի բաւական մօտ եմ, պատասխան տուաւ մարդը, եւ շուտ մը զերէցը քննելու պէս՝ հարցուց թէ Քրիստոսի ծննդեան վրայ ինչ կարծիք ունիս։

Երէցը պատասխան տուաւ որ Հոգին սուրբէն յղացաւ եւ սուրբ Կոյսէն ծնաւ, ինչպէս որ առաքելական հանգանակն ու Ս. Գիրքը կը վկայեն։

Դարձեալ իրեն հարցուց մարդը. Կոյսէ ծնած ըլլալն ո՞ւր գրուած է։

Երէցը պատասխանեց որ Մարգարէք ու աւետարանիչք կ'ըսեն թէ մայրը կոյս էր։

Մարդը հեգնելով մը կրկնեց թէ Կրնայ ըլլալ որ ան բանը մարգարէութեանց ու աւետարաններուն մէջ գտնուի, բայց ես Գիրքն այնպէս չեմ հասկընար։

Ասկից վերջը քիչ մ'ալ նոյն նիւթին վրայ խօսելէն ետեւ՝ խօսքը տարբեր բանի վրայ դարձընելով ըսաւ. Քրիստոս ինչո՞ւ խաչեցաւ։

Երէցը. Մեր մեղացը համար խաչեցաւ ու մեռաւ, որպէս զի իր մահուամբը զմեզ մշտնջենաւոր մահուանէ, մեղքէն, սատանայի բռնութենէն ու գժոխքէն ազատէ։

Մարդը. Չէ, այնպէս չէ, հապա իր մեղացը համար մեռաւ, որովհետեւ Մովսէսի օրէնքէն ապստամբած էր։

Երէցը. Աս խօսքը բոլորովին սուտ է, որովհետեւ ինք ամենեւին մեղք գործած չէ, հապա Աստուծոյ անմեղ գառնն է, որն որ աշխարհքիս մեղքն իր վրան առաւ։

Մորթը. Այս դաշտն ելայ եւ տեսայ որ երկինքը բացուած էր. հոն էր Մովսէս՝ որ աշխարհքիս վրայ կը նայէր, ու եղջիւրները կը թօթուէր. եղջիւրներուն մէկէն ձեր Քրիստոսը կախուած էր, եւ որովհետեւ Մովսեսի օրէնքը ջնջելու կը ջանար՝ եղջիւրէն վար ինկաւ, հրեայք ալ զինքն առին, խաչեցին ու մեռցուցին, որովհետեւ Մովսեսի օրինաց դէմ գործած էր։ Մէկալ եղջիւրին վրայ նստած էր դրախտին մէջ Ադամին ու Եւային խնծոր տուողը։ Աս ըսելէն ետեւ՝ երեք անգամ երեցին հարցուց որ Ասիկա կը ճանչնա՞ս, ո՞վ էր։ Երէցն ալ պատասխան տուաւ թէ Սատանան էր։

Ուրիշ մ՚ալ իրարու հետ խօսելէն ետեւ՝ երէցը մարդուն հարցուց թէ ինչո՞ւ հոս եկած ես. թէ որ մեղքերդ խոստովանիլ կ՚ուզես նէ՝ խոստովանէ։ Կը բաղձա՞ս մեղքերէդ ու անհաւատութենէդ արձակում ընդունիլ, որ ճշմարիտ հաւատքով սուրբ հաղորդութեան խորհրդին մօտենաս՝ մեղքերուդ թողութեան համար։ Մարդը պատասխան տուաւ թէ Ո՛չ քու արձակումդ կ՚ուզեմ ոչ ալ խորհուրդդ, եւ արդէն անոնցմէ ինծի օգուտ մը չկայ։ Ան ատեն երէցն ալ բարկանալով՝ ըսաւ որ Ելիր, քեզի պատրաստուած տեղը գնա։ Մարդը պատասխան տուաւ որ Ըսածդ կ՚ընեմ, բայց վաղը իրարու հետ աս բանիս վրայ ուրիշ տեսակ կը խօսինք։ Աս ըսելէն վերջը՝ հոնտեղը սաստիկ ժանտահոտութիւն մը ձգելով՝ ելաւ գնաց[11]։

Լուտեր աս պատմութիւնը կարդալուն պէս, (որովհետեւ շուտ մը տպած չորս կողմը տարածած էին,) վրան յառաջաբանութիւն մ՚աւելցուց, որն որ Նիկողայոս Ամստորֆ՝ Նորոգչէն ձեռնադրուած եպիսկոպոսին՝ ուղղուած էր, եւ աս բանիս վրայ իր դատաստանը հարցուց։ Չեմ հարցըներ, կ՚ըսէ, թէ ասիկա ո՞վ էր, (որովհետեւ հաստատութեամբ միտքը դրած էր որ սատանան է, ինչպէս ետեւի գրած խօսքերէն կը տեսնուի,) հապա միայն ան կ՚ուզեմ իմանալ թէ ինչու այնպէս համարձակութեամբ եկաւ, իբրեւ թէ մէկը զինք ընտանութեամբ կանչած ըլլար։ Ետքը շատ մը կատակի ու հայհոյութեան խօսքեր խօսելէն ետեւ նոյն մեղաւորին ապաշխարութեան վրայ, զորն որ Բեեղզեբուղին խոնարհ պատգամաւորը կը կանչէր, Ամստորֆին կը յանձնէր, որ իբրեւ Մակտեպուրկի եկեղեցւոյն ճշմարիտ եւ գլխաւոր եպիսկոպոսը՝ աս բանիս վրայ իր կարծիքը զրուցէ։ Բայց թէ որ, կ՚ըսէ, իմ դատաստանիս թող տալու

11. Աս պատմութիւնը ըստ ամենայնի այսպէս բայց աւելի ընդարձակ կը գտնուի ի Գործս Լութ. Գերմ. Հատ. Զ. 352. — 353. Բ. ու վրան գրուած է. "Ճշմարիտ պատմութիւն՝ որն որ Սդասֆորդ պատահած է,,։

ըլլաս, ըսելով որ ես (Լուտերս) պապ եմ, միտքդ բեր որ եկեղեցւոյ հին ժամանակները շատ եպիսկոպոսներ՝ նոյն իսկ պապէն աւելի իմաստուն եւ աստուածապաշտ էին, ինչպէս յայտնի է Ս. Օգոստինոսէն՝ որն որ Հիպպոնայի ողորմելի եպիսկոպոս մըն էր։ Դարձեալ թէ որ ես իբրեւ պապ աս պատգամաւորին պատասխան տալ ուզէի ալ նէ՝ չէի կրնար, ինչու որ կարդինալներս ու եպիսկոպոսներս քովս չեն. եւ թէ որ զիրենք ժողովքի գումարել ուզէի նէ՝ աս բանս ինծի աւելի դժուար կ՚ըլլար քան թէ Հռոմայ պապին։ Անոր համար, դո՛ւն Ամստորֆ, որ նոյն տեղերուն եպիսկոպոսն ես, աս բանիս վրայ պատասխան տուր։ Բայց ինչ որ է նէ, որովհետեւ ես պապ կ՚անուանուիմ, ես ալ, անոր համար քեզի իշխանութիւն կու տամ որ ասանկ մեղաւորներուն աս կերպով արձակում տաս. Ամենակալն Աստուած սրտմտի քեզի դէմ, ու մեղքերդ վրադ հաստատելով՝ զքեզ յաւիտենական հրոյն մէջ գահավէժ ընէ։ Եւ ես, Քրիստոսի տեառն մերոյ, եւ մեր ամենասուրբ տէրը՝ Լուտեր Ա. պապին իշխանութեամբը[12],... բոլոր Աստուծոյ շնորհքը քեզմէ կը վերցընեմ, ու կը զրկեմ զքեզ յաւիտենական կեանքէն, եւ աս խօսքովս զքեզ դժոխքին անդունդը կը խաւրեմ, որն որ աշխարհքիս սկիզբէն քեզի ու քու թագաւորիդ պատրաստուած է. Ամէն[13]։

12. Աս խօսքերը թեպետ եւ կես մը կատակով գրուած կ՚երեւան, ի վերայ այսր ամենայնի՝ 270, 271 երեսին մէջ ըսածներնուս հաստատութիւն կրնան ըլլալ։

13. Irascatur tibi omnipotens Deus et retentis peccatis, detrudat te in ignem æternum. Et ego autoritate Domini nostri Jesu Christi, et sanctissimi Domini Lutheri Papæ primi, mihi in hac parte concessa, absolvo te ab omni misericordia Dei et vita æterna, mittens te his verbis in infernum, qui tibi et Regi tuo præparatus est ab initio mundi, amen. — Գործք Լուտ. գերմ. Հատ. Զ. 150. — 152։



# ԳԼՈՒԽ Ե

## Լուտերականք եւ խորհրդականք կը հաշտուին

Լուտեր խորհրդականաց հետ հաշտուիլ յանձն կ'առնէ։ Բուցէր, Կապիտոն եւ ուրիշ խորհրդականք Վիտտենպերկի մէջ Լուտերին եւ իրեններուն հետ կը խօսին։ Մէկզմէկու դաշինք կը դնեն։ Մելանքթոն դաշանց թուղթը կը գրէ, որուն ամէնքը կը ստորագրեն։ Հելուետացիք ալ դաշինքին չեն ուզեր հաւանիլ։

## 1535 — 1536

ԽՈՐՀՐԴԱԿԱՆԱՑ *մէջէն ոմանք եւ մանաւանդ վերին Գերմանիայի քաղաքները շատ անգամ ետեւէ կ'իյնային որ Լուտերականաց հետ խաղաղութիւն ընեն ու մէկտեղ միաբանին, ինչպէս որ մինչեւ հիմա քանի մը հեղ տեսանք։ Եւ թէպէտ Լուտերականներէն շատերն ալ աս խաղաղութեան ու միաբանութեան կը բաղձային, սակայն Լուտեր միշտ անոնց դէմ կը դնէր, ու չէր ուզեր որ միաբանութիւն ըլլայ՝ մինչեւ որ անոնք իրենց մոլորութիւնները, այս ինքն իր կարծեաց դէմ ունեցած կարծիքնին չթողուն։ Բայց վերջապէս երբ որ Աւկսպուրկ քաղաքին ծերակոյտը՝ որ Խորհրդականաց աղանդին միտած էր, Լուտերի մոլորութիւններն ընդունեցաւ, երկու կողմն ալ յառաջուընէ աւելի մեծաւ ետեւէ իյնալ որ աս միաբանութիւնը հաստատուի։ Աւկսպուրկցիք՝ լուտերականութիւնն ընդունելը մտքերնին դրածնուն պէս՝ շուտ մը իրենց վարդապետներէն երկու հոգի Վիդդենպերկ խաւրեցին, որ մտքերնին Լուտերին յայտնեն, եւ միանգամայն ջանան որ միաբանութեան խօսքը՝ որն որ քիչ մը ատենէ վեր մոռցուած էր, նորէն դուրս հանեն ու գլուխ տանելու փութան։ Լուտեր ծերակուտին պատասխան տուած ատեն՝ խոստացաւ որ իրեններովը մէկտեղ ետեւէն իյնայ որ չէ թէ միայն աս ամենուն բաղձացած միաբանութիւնն ու խաղաղութիւնը հաստատուի, հապա նաեւ բոլոր գայթակղութեան պատճառները վերցուին, որպէս զի անկէ վերջը խաղաղութիւնը մէջերնին հաստատուն մնայ [1]։*

*Ծերակոյտն աս թուղթն առնելուն պէս՝ Խորհրդականաց կողմն եղող ուրիշ քաղաքներուն եւ մանաւանդ Ստրասպուրկցոց հետ խորհրդակցեցաւ, ու մէջերնին հաստատեցին որ երկրորդ տարին (1536ին) Մայիսի 14ին Թուրինգիայի Այզենախ քաղաքը ժողով մը գումարուի, բայց չէ թէ Սաքսոնիայի կայսրընտրին կամ ուրիշ իշխանի մը առաջնորդութեամբ կամ հրա-*

1. Գործք Լուտ. գերմ. Հատ. Մաս Ա. 372. — 375։ Ուլենպերկ, Զ. 508։ Բլանք, Գիրք Ը. Հատ. Գ. Գլ. Իէ. Համ. Ա.

մանաւ, հապա քանի մը առանձնական մարդիկներու եւ մանաւանդ Լութերի։ Աս որոշումն ըլլալուն պէս՝ Բուկեր ու Կապիտոն (Ստրասպուրկի երէցները) ելան Հելուետիացի Խորհրդականաց կամ Զուինգլեականաց գացին, եւ ըլլալու ժողովքին անոնց իմացընելով՝ յորդորեցին որ իրենք ալ հաստատուելու խաղաղութեան մասնակից ըլլան։ Եւ համանութիւնին ընդունելէն ետեւ՝ հետերնին անոնցմէ քանի մը հոգի առած՝ ետ դարձան. եւ ամէնքը մէկտեղ ժողովքի եկան։ Բայց Այզենախ հասած ատեննին՝ իմանալով որ Լութեր հոն ժողովքի պիտի չգայ, հապա իր տեղը Մելանքթոնը եւ ուրիշ մէկ երկու հոգի պիտի ղրկէ, որ անոնք խօսին ու ջանան խաղաղութիւն ընել, անմիջապէս ելան շիտակ Վիդդենպերկ գացին, ինչու որ կը բաղձային բանը Լութերին հետ տեսնել, գուցէ վախնալով որ ուրիշի ձեռքով եղած միաբանութիւնը կամ չ'ընդունիր եւ կամ ընդունելէն ետեւ շուտով կ'աւրէ [2]։

Ասոնք Մայիսի 21ին Վիդդենպերկ հասան, եւ երկրորդ աւուր երկու գլխաւորները Լութերին առջեւն ելան, ու մէջերնին խօսուելու գլխաւոր նիւթերուն վրայ իրեն հետ առանձին խօսակցեցան։ Նոյն օրը Լութերին երեւելի աշակերտներէն շատերը եկան իր տունը ժողվեցան, եւ Լութերի գահերիցութեամբ՝ Խորհրդականաց երկու պատգամաւորներուն հետ խորհուրդ մը ըրին։ Մելանքթոն աս խորհրդին չէր եկած. անոր պատճառը գուցէ ան էր որ կը վախնար թէ Լութեր Խորհրդականներուն հետ շատ խստութեամբ կը վարուի։ Ամէնքը նստելէն ետեւ՝ Բուկերէն խնդրեցին որ Լութերին առաջուանց խաղաղութիւնը մէջերնին հաստատուելու համար ըրած խօսակցութեան պատասխան տայ։ Բուկեր սկսաւ խօսիլ, եւ ընդարձակ ճառով մը ուզեց ցուցընել թէ ինչպէս ուրախ է որ աս ժողովքը ժողվուեցաւ, մանաւանդ անոր վրայ որ Վիդդենպերկի մէջ ժողվուեցաւ, եւ նոյն տեղը կրնայ իր միտքը յայտնել։ Ետքը յիշատակեց թէ ինչպէս երեք տարիէ վեր կը ջանայ որ ամէնքն ալ միաբանին ու հաղորդութեան խորհրդին վրայ մի եւ նոյն կարծիքն ունենան ու եկեղեցական կարգադրութիւններնին ալ նոյն ըլլայ։

Լութեր աս խօսակցութեան պատասխան տուաւ թէ իմ սրտիս բաղձանքն ալ միշտ ան էր որ երկու կողմին մէջ՝ ճշմարիտ, հաստատուն եւ տեւական միաբանութիւն ու խաղաղութիւն մ'ըլլայ։ Բայց որովհետեւ շատ ժամանակ չէ որ, ըսաւ, Զուինգլին ու Եկոլամպադին նամակները դուրս ելան, եւ ան

2. Բլանք, Գիրք Ը. Հատ. Գ. Գիրք Գ. Համ. ԽԷ. 129, 130։ Մասն Ա. 375, 376։ Սէքէնտորֆ, Ուէնտպերկ, Գլ. ԻԷ. Համ. Ա։

ալ՝ Բուկերի հաւանութեամբն ու գործակցութեամբը, (ինչպէս որ յայտնի կը ցուցընէ նոյն նամակներուն սկիզբը յառաջաբանութեան պէս դրուած նամակը) դարձեալ որովհետեւ աս մօտերս ուրիշ գրքեր դուրս ելան, որոնց մէջ շատ ամպարիշտ վարդապետութիւններ, եւ մանաւանդ հաղորդութեան խորհրդին դէմ սաստիկ մոլորութիւններ կան, անոր համար չեմ կրնար հասկընալ թէ ասանկ բաներ վարդապետողներուն հետ ինչպէս հաստատուն միաբանութիւն կրնայ ըլլալ։ Ինչու որ յայտնի է թէ ամէնքս մէկտեղ ժողվուած ատեն՝ ուրիշ կերպ կը խօսինք, եւ երբ որ իրարմէ կը բաժնուինք ու գիրք գրելու կը սկսինք, ուրիշ կերպ, մանաւանդ թէ առջի խօսքերնուն հակառակը կը խօսինք ու կը գրենք։ Բայց Խորհրդականաց այսպէս վարուելուն պատճառն ինչ է։ Ասիկա կամ անոր համար կ՚ընեն, որովհետեւ հաղորդութեան խորհրդին մէջ Քրիստոսի իրական ներկայութիւնը սրտանց չեն ընդունիր, որն որ մէկտեղ ժողվուած ատեննիս՝ չեն յայտներ. եւ կամ անոր համար որ տեղերնին գացած ատեն՝ ժողովրդեան դիմադարձութեան պատճառաւ ուրիշ կերպ չեն կրնար ընել։ Անոր համար ինծի աւելի աղէկ կ՚երեւայ որ բաները ինչպէս են նէ՝ այնպէս մնան, քան թէ հիմա մէջերնիս՝ միայն արտաքին խաղաղութիւն ու միաբանութիւն մը հաստատենք, ու քիչ մը ետքը նորէն առջինէն աւելի իրարմէ բաժնուինք։ Վասն զի մեզմէ վերջը եկողները ո՛չ այնչափ կոյր են՝ որ աս խաբէութիւնը չտեսնեն, եւ ոչ ալ այնչափ համր՝ որ չորս կողմը չտարածեն ու վրանիս չծիծաղին։ Բայց աշխարհքս խաբուելու ալ ըլլայ նէ, Աստուած՝ որ ամէն բան կը տեսնէ ու կը լսէ, չիկրնար խաբուիլ։

Բուկեր Լուտերին աս խօսակցութիւնը լսելով՝ սաստիկ խռովութեան ու շփոթութեան մէջ ինկաւ, ինչպէս երեսէն, շարժուածքներէն ու խօսքերէն յայտնի կ՚երեւար։ Եւ որպէս զի Լուտերին՝ իր վրայ ունեցած կասկածը փարատէ, այսպէս պատասխան տուաւ. Մեր խօսքերուն մէջ ամենեւին նենգութիւն կամ կեղծաւորութիւն մը չկայ. ինչու որ հիմա հոս խօսածներս՝ մեր իշխաններուն առջեւը, եկեղեցիներուն մէջ, եւ Գերմանիայի քարոզիչներուն ու երէցներուն առջեւը թէ խօսքով ու թէ գրով շատ անգամ խօսած ու յայտնած ենք։ Իսկ Զուինգլիին ու Եկոլամպադին նամակներուն համար ըսաւ որ Չէ թէ միայն առանց իմ հաւանութեանս, հապա նաեւ իմ հրամանիս դէմ տպուեցան։ Եւ տպողը իր կողմանէ իբրեւ յառաջաբան՝ վրան աւելցուցեր է իմ տարի մը յառաջ գրած մէկ թուղթս. բայց ան թուղթն ալ ես բոլորովին տարբեր միտք գրած էի, այնպէս որ եւ ոչ երազիս մէջ երեւակայած էի որ

նոյն թուղթը տալէ տամ։ — Աս Բուկերին ըսածները՝ Կապիտոնն ալ հաստատեց, ու բոլոր յանցանքը՝ տղոցներուն վրայ ձգեց։

Սորէն խօսեցաւ Լութեր եւ իրենց ազդարարութիւն ըրաւ որ մէջերնին կամ հաստատուն ու տեւական միաբանութիւն մը հաստատուի, եւ կամ ամենեւին։ Եւ որպէս զի, ըսաւ, դնելու դաշինքնիս հաստատուն ըլլայ, երկու բան հարկաւոր է. նախ որ մինչեւ հիմա գրքերնուդ մէջ սուրբ հաղորդութեան ուղիղ վարդապետութեան դէմ վարդապետած բաներնիդ ետ կանչէք. եւ երկրորդ որ ասկէ վերջը մեզի հետ ըստ ամենայնի մի եւ նոյն վարդապետութիւնն ունենանք, եւ գլխաւորաբար ընդունինք որ նաեւ անհաւատներն ալ հաղորդութեան խորհրդին մէջ Քրիստոսի ճշմարիտ մարմինն ու ճշմարիտ արիւնը կը ճաշակեն 3։ Ետքը Խորհրդականաց գլխաւորներուն՝ հաղորդութեան խորհրդին վրայ գրած ամպարիշտ խօսքերը յիշելով՝ Չենք կրնար, ըսաւ, ասանկ ամպարիշտ խօսքեր խօսողները չնզովել եւ անոնցմէ չզարշիլ։ Վերջապէս իրենց մինչեւ երկրորդ օրը ժամանակ տուաւ, որ աղէկ մը մտածեն ու ետքը գան մտքերնին նորէն յայտնեն 4։

Երկրորդ օրը Մայիսի 23ին (կամ ըստ ոմանց՝ երրորդ օրը Մայիսի 24ին) ամէնքն ալ եկան նորէն ժողվուեցան. աս ան-

3. Թէպէտ եւ Մենցլ՝ աս դէպքին վրայ շատ համառօտ կ'անցնի, ուստի եւ մեզի երեւելի օգնութիւն մը չըրցաւ ընել, բայց իր միտքն ընթերցողներնուս հաղորդելու համար՝ գրածը պատշաճ կը սեպենք հոս դնելու։ Արդ ըսելէն ետեւ որ Բուկեր՝ Լութերին քանի մը մեղմ գրուածներէն զինքը քիչ մը զիջած կարծելով՝ իր ընկերներովը Վիդգենպերկ եկաւ, խօսքն այսպէս յառաջ կը տանի։ "Լութեր զինքն (զԲուկեր) ու իր ընկերները սաստիկ յանդիմանական խօսակցութեամբ մ'ընդունեցաւ. եւ պահանջեց որ ամէն բանէն յառաջ՝ Ցվինգլի նոյն ատեն ուսուցած վարդապետութիւններէն բացայայտ ետ կանչեն եւ անոր մոլորական ըլլալը հրապարակաւ խոստովանին, ու ետքը ան վարդապետութիւնն ընդունին՝ որն որ ինք իրենց առջեւը դրեր էր ...։ Պէտք է որ, ըսաւ, չէ թէ միայն վարդապետենք ու խոստովանինք թէ Քրիստոսի ճշմարիտ մարմինը խորհրդեան մէջ ճշմարտապէս ներկայ է ու ճշմարտապէս կը ճաշակուի, հապա նաեւ բացայայտ ընդունինք որ անհաւատ հաղորդուողներուն այնպէս ճշմարտութեամբ ներկայ է ինչպէս որ հաւատացեալներուն ներկայ է, եւ թէ անհաւատները այնպէս ճշմարտութեամբ կ'ընդունին ինչպէս որ հաւատացեալները կ'ընդունին։ Բուկեր՝ որ հիմա Լութերին առջեւն այնպէս կը կենար, ինչպէս որ յառաջագոյն Լութեր Կայետանոս կարդինալին առջեւը կեցած էր, ... Լութերին խօսքէն շատ այլայլեցաւ, ու մեծ շփոթութեամբ պատասխան տալէն ետեւ՝ ... Լութերին պահանջածն ըրաւ, ու անոր հետ մէկտեղ ըսաւ որ հաղորդութեան մէջ չէ թէ միայն արժանաւորները Քրիստոսի ճշմարիտ մարմինը սրտիւ ու բերնով իրենց երանութեան համար կ'ընդունին, հապա նաեւ անարժաններն ալ՝ բերնով իրենց դատապարտութեան համար կ'ընդունին,,։ Հար. Բ. Գլ. Ե. 104։

4. Ուլենպերկ, Գլ. ԻԷ. Համ. Ա։ Սեքենտորֆ, Գիրք Գ. Համ. ԽԷ. 130։

գամ Մելանքթոնն ալ հետերնին էր։ Լուտեր՝ առջի օրուան քառածները կրկնելէն ետեւ՝ հակառակորդներուն հարցուց որ Մինչեւ հիմա Քրիստոսի, Ս. Գրոց ու հին եկեղեցւոյ մնաց դէմ վարդապետածնիդ ես կը կանչէք, դարձեալ կը խոստանա՞ք որ ասկէ վերջը հաղորդութեան խորհրդին վրայ մեզի հետ մի եւ նոյն կարծիքը հաստատութեամբ պահէք։ Բուկեր պատասխան տուաւ. Շատ բան կայ որ ես յառաջագոյն աղէկ չէի իմացեր, եւ անոր համար ալ ինչպէս որ պատշաճ է նէ՝ այնպէս չէի վարդապետած. բայց երբ որ մէյ մը իմացայ, ալ անկէ վերջը մոլորական վարդապետութիւնները մէկդի թողուցի։ Եւ որպէս զի չըլլայ որ իմ առջի գրքերովս մէկու մը մոլորելու պատճառ ըլլամ, կ՚ուզեմ մոլորութիւններս գրով ու խօսքով ետ կանչել։ Ետքը աս ալ ըսաւ որ Պատրաստ եմ խոստովանիլ թէ Քրիստոսի ճշմարիտ մարմինն ու արիւնը պաշտօնէին ձեռօքը՝ առանց զանազանութեան ամէն ճաշակողներուն կը մատուցուի, միայն թէ Քրիստոսի խօսքերը չաղաւաղուին։ Աս է իմ վարդապետութիւնս՝ որն որ վարդապետելէն երբեք չեմ դադրիր։ Եւ եթէ կը կարծէք որ յայտնի չխօսեցայ, ուզածնիդ հարցուցէք, եւ ես պատրաստ եմ ամենուն պատասխան տալու։ Բուկերին խօսքը բոլոր իր հետն եկողներն ալ կրկնեցին, երբ որ Լուտեր իրենց կարծիքն ալ հարցուց։ Եւ ետքը ամէնքն ալ իրեն շատ աղաչեցին որ զիրենք իր հաղորդութեան մէջ ընդունի. ինչու որ, ըսին, որովհետեւ մենք Աւգսպուրկի հաւատոյ դաւանութիւնը եւ անոր ջատագովութիւնը կ՚ընդունինք, կը վայլէ որ այսպէս առանց կեղծաւորութեան մի եւ նոյն հաւատքն ունեցողները՝ մի միայն մարմին ըլլան ու իրար եղբայրական սիրով սիրեն։

Աս խօսքերէն ետեւ Լուտեր ոտք ելաւ, մօտ խուց մը գնաց, որպէս զի տալու պատասխանին վրայ մտածէ. իր գլխաւոր աշակերտներն ալ ետեւէն գացին։ Հոն Լուտեր ամենուն հարցուց որ Խորհրդականներուն ինչ պատասխան տալու է։ Անոնք ալ միաբերան պատասխան տուին որ եթէ բերնով խոստովանածնին՝ սրտով ալ կը հաւատան, եւ կը խոստանան որ նոյն կարծեաց մէջ հաստատուն մնան եւ իրենց եկեղեցիներուն մէջ նոյնպէս վարդապետեն, կը վայլէ որ հետերնին խաղաղութիւն ընենք։ Ան ատեն Լուտեր աշակերտներուն հետ մէկտեղ դուրս ելաւ, եւ հակառակորդներուն նորէն հարցում մ՚ընելէն ու պատասխանն ընդունելէն ետեւ՝ մէջերնին խաղաղութիւնը հաստատեցին, եւ Լուտեր իրենց խօսք մը խօսեցաւ։ Բուկեր ու Կապիտոն աս բանս տեսնելով՝ սկսան ուրախութիւններնէն լալ, եւ Աստուծոյ գոհութիւն տուին որ վերջապէս բաղձանքներնուն

հասան։ Երբոր Լուտեր իրենց խրատ տուաւ որ տեղերնին դարձած ատեննին՝ զգուշութեամբ ու խոհեմութեամբ ջանան ժողովրդեան մտքէն մոլորական կարծիքները ջնջել, եւ հիմա ընդունած կարծիքնին կամաց կամաց մէջերնին խոթել[5]։

Այս միաբանութիւնն ըլլալէն ետեւ՝ քանի մը օր Խորհրդականները Վիդդենպերկ մնացին, եւ Լուտերի կարծիքներէն տարբեր ունեցած քանի մը ուրիշ կարծիքներնուն վրայ խօսեցան ու մէջերնին միաբանեցան։ Նոյն օրերը Լուտեր եւ իր աշակերտներէն ոմանք ժողովրդեան առջեւը ճառեր խօսեցան, նոյնպէս Խորհրդականներէն ոմանք ալ խօսեցան, եւ իմացուցին որ երկու կողմն իրարու հետ միաբանած է։ Եւ աս միաբանութիւնը գործքով ալ ցուցընելու համար՝ կիրակի օր մը Բուկեր եւ Կապիտոն Վիդդենպերկի եկեղեցւոյն մէջ՝ լուտերական կարգադրութեանց համաձայն՝ հաղորդութիւն առին։ — Վիդդենպերկցիները աս ամէն բաները տեսնելով՝ ալ մտքերնին դրին որ Խորհրդականք սրտանց մոլորութիւններնին թողտուին ու մեզի հետ բոլորովին միացան։ Անոր համար ալ սկսան պարծիլ որ մենք ճշմարիտ ու զօրաւոր պատճառներով հակառակորդներնիս յաղթեցինք, ու զիրենք իրենց մոլորական ճամբէն դարձուցինք։ Իսկ Լուտեր եւ ուրիշ գլխաւորները գրեթէ յայտնապէս գիտէին որ Խորհրդականաց ըրածը՝ միայն դրսանց ձեւացընել ու խաբէութիւն է. բայց հարկ կը սեպէին որ իրենք ալ կեղծաւորին[6]։

Խորհրդականները դեռ Վիդդենպերկէն չելած՝ Մելանքթոն Լուտերին հրամանաւը՝ մէջերնին դրած դաշինքնին ու միաբան ընդունուած վարդապետութիւնները գրեց, եւ երկու կողման գլխաւորները նոյն գրուածքին ստորագրելէն ետեւ՝ Բուկեր հետն առաւ ու ընկերներովը մէկտեղ ելան տեղերնին դարձան։ — Ստրասպուրկցիք եւ վերին Գերմանիայի ուրիշ մէկ երկու քաղաքներու բնակիչները եղածին վրայ շատ ուրախացան եւ սիրով հաւանութիւն տուին, որովհետեւ Բլանքին ըրածին պէս՝ պաշտպանուած կարծիքը հոգերնին չէր, հապա

5. Ռուշէնպերկ, Գլ. Իէ. Համ. Բ։ Տես նաեւ Սեքէնտորֆ, Գիրք Գ. Համ. Խէ. 130։ Բլանք, Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 377. — 388։ Ռանքէ, Գիրք Է. Գլ. Բ. Հատ. Դ. 83. — 85։

6. Բլանք (Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 382. — 388.) յայտնապէս կը զրուցէ թէ Լուտեր շատ կը կասկածէր որ Բուկերին եւ իր ընկերներուն ըրածները սրտանց ըլլան, բայց պատշաճ սեպեց արտաքուստ բան մը չցուցընել։ Աս բանին վրայ ինք շատ ընդարձակ կը գրէ. բայց իր ըրածներուն մէջէն միմիայն աս խօսքը պատշաճ կը սեպենք հոս դնել։ "Թէ որ մարդ կրնայ կասկածի երթալ որ, կը զրուցէ տեղ մը, Լուտեր կեանքին մէջ երբեք գիտութեամբ պզտիկ խորամանկութիւն կամ նենգութիւն մը ըրած է (*) իրեն կարեւոր մէկ նպատակին հասնելու համար, ստուգիւ աս դէպքս է,,։ (382.)

բաները բոլորովին քաղաքական կողմանէ կը նկատէին եւ Լուտերականաց հետ միանալնին՝ աս նկատմամբ՝ իրենց մեծ շահ կը սեպէին [7]։ Բայց Հելուետիայի խորհրդականները կամ Զուինգլիականները՝ որոնք Լուտերականաց հետ միանալէն նոյն քաղաքական շահը չունէին, անանկ դիւրութեամբ չզիջան։ Ասոնք միաբանութիւնն իմանալուն պէս՝ Ստրասպուրկ երկու հոգի խաւրեցին, որ Բուկերին ու Կապիտոնին հետ խօսին։ Ութը օր Բուկեր աշխատեցաւ որ զիրենք համոզէ․ բայց պարապ եղաւ։ Ան ատեն ինք ելաւ Հելուետիա գնաց ու հոն մէկ երկու ժողովքի մէջ շատ ջանաց որ Հելուետիացիք դաշանց թղթին ստորագրեն եւ այսպէս միաբանութիւննին հաստատուն ըլլայ։ Բայց Հելուետիացիք ան թղթին ստորագրել չէին ուզեր, եւ ամենեւին յանձն չէին առներ որ կարծիքնին փոխեն։

Աս բանը Բուկերին չէ թէ միայն մեծ տրտմութիւն ու ցաւ պատճառեց, որովհետեւ մեծապէս կը բաղձար որ Լուտերականներուն հետ ըրած միաբանութիւնը հաստատուն մնայ, հապա մեծ նախատինք ալ եղաւ, որովհետեւ Հելուետիացիք սկսան երեսը վար առնել, ըսելով որ Լուտերին աչքը մտնելու համար՝ հաղորդութեան խորհրդին ճշմարիտ վարդապետութիւնը թող տուիր ու մոլորութիւն ընդունեցար։ Թէպէտ եւ ասոր՝ իր ձեռք զարկածէն ետ չկեցաւ, ու միշտ կը ջանար Հելուետիացիները համոզել որ աս միաբանութիւնն իրենց հաւատքին վնաս մը չ՚ըներ, եւ աս թղթին մէջ գրուածներուն հաւանելու համար՝ կարծիքնին փոխել հարկաւոր չէ, ուստի եւ խաղաղութեան համար ան թղթին կրնան ստորագրել ու միանգամայն կարծիքներնուն մէջ հաստատուն կենալ․ բայց ինչ որ ըրաւ նէ՝ պարապ եղաւ; եւ չկրցաւ զիրենք համոզել որ ըրած միաբանութեան հաւանին, ու բերած դաշինքի թղթին ստորագրեն [8]։

Ասանկով աս քանի մը հոգւոյ մէջ հաստատուած միաբանութիւնը չեղածի պէս եղաւ։ Եւ թէպէտ քիչ մը ատեն Լուտերականներն ու Խորհրդականները իրարու դէմ նախատական գրուածքներ դուրս չհանեցին, մանաւանդ թէ Զուինգլիականք քանի մը անգամ Լուտերի հետ թղթակցեցան, ու Լուտեր զիրենք վաստըկելու եւ իր կողմը զօրացընելու համար իր սաստկութիւնը քիչ մը մէկդի դրաւ, որով եւ աւելի եւս իրարու մերձեցան [9]․ բայց ետքը ան արտաքին միաբանութիւնն ու

7․ Բլանք, Գիրք Ը․ Հատ․ Գ․ Մաս Ա․ 391․ 392։

8․ Նոյն տեղը, 392․ — 394։ Ուլենպերկ, Գլ․ ԽԷ․ Համ Դ։

9․ Նոյն թղթակցութեանց վախճանն ու նիւթն աս էր։ Ինչպէս յայտնի է, Զուինգլիականք կ՚ըսէին թէ հաղորդութեան խորհրդոյն մէջ

խաղաղութիւնն ալ վերցուեցաւ, եւ յառաջուան պէս, մանաւանդ թէ յառաջուընէ աւելի իրարու հետ թշնամացան, եւ սկսան մէկզմէկ սաստիկ նախատել. ինչպէս քիչ մը ետքը կը տեսնենք։

Քրիստոսի մարմինն ու արիւնը իրօք ներկայ չէ, հապա ընդունողները իրենց հաւատքին զօրութեամբ նոյն խորհրդոյն միջնորդութեամբ զՔրիստոս կ'ընդունին. իսկ Լուտերականք կը զրուցէին թէ իրօք ներկայ է, անանկ որ անհաւատն ալ այնպէս կ'ընդունի զՔրիստոս ինչպէս հաւատացեալը, միայն թէ իր դատապարտութեան համար։ Արդ Բուկեր իր գրած դաշնադրութիւնը Զուինգլիականաց ընդունել տալու համար կը զրուցեր որ նոյն դաշնադրութեան թղթին մէջի խօսքերով բոլորովին անհաւատները չեն իմացուիր, հապա հաւատքներնուն մէջ անչափօր չափփչօր եղողները. ուստի եւ իրենց կարծեաց մէջ հաստատուն մնալով ալ՝ նոյն դաշնադրութեան թղթին կրնան ստորագրել։ Հելուետիացիք աս բանիս վրայ սարակուսելով, (որովհետեւ եթէ Լուտեր դաշինքին խօսքը Բուկերին մեկնած միտքին տանէր նէ՝ իր առաջի վարդապետութիւնը մէկդի ձգած կ'ըլլար, որն որ չէին կրնար ամենեւին կարծել.) վերը պատմածներնուս պէս զանազան ժողովքներ ընելէն ետեւ՝ ելան Լուտերին նամակ մը գրեցին, որով առանց յայտնապէս ըսելու՝ կ'ուզէին զինքը ստիպել որ նոյն խօսքերուն բացայայտ իմաստն իրենց իմացընէ։ Բայց անանկ կերպով մը գրուած էր աս թուղթը, որ Լուտերին հասարակ ընթացքին նայելով՝ պէտք էր որ իրենց սաստիկ խիստ պատասխան մը տար, որովհետեւ անոր մէջ Զուինգլիականք իրենց վարդապետութիւնը բացայայտ գրած էին։ Սակայն Լուտեր իրենց անանկ պատասխան մը տուաւ որ, կ'ըսէ Բլանք, Հելուետիացիք անշուշտ երկու երեք անգամ պէտք էր որ կարդային հաստատելու համար՝ որ սխալ չեն կարդար կոր. այս ինքն անանկ բերան մը կը բանեցընէր, որով կ'իմացընէր թէ իրենք ալ մինչեւ նոյն ատեն ունեցած կարծիքներնուն մէջ կրնան մնալ, եւ իբրեւ թէ ինքը զինքը կը մեղադրէր մինչեւ նոյն ատեն անոնց դէմ բանեցուցած խստութեան համար։ Անանկ որ՝ նոյն Բլանքին ըսածին նայելով՝ շատերը սկսան ըսել որ Լուտեր Հելուետիացիներէն խաբուեցաւ, եւ թէ աս առթին մէջ մարդկօրէն վարուեցաւ —։ Լուտերին աս կերպով վարուելուն պատճառն ան էր, որ կ'ըսէ Լեւոն, "Յայտնի կը տեսնէր թէ ամէն բանէն յառաջ հասարակաց թշնամւոյն (ուղղափառաց) դէմ միութիւն հարկաւոր է„. ուստի եւ նոյն ժամանակին պարագաներուն նայելով՝ կը բաղձար ինչ կերպով ըլլայ նէ՝ ըլլայ, Զուինգլիականաց հետ միաբանութիւն ընել։ — Բայց ինչ որ է նէ՝ ատով Հելուետիացիները գոհ եղան, ուստի եւ իրենք ալ նոյն Բուկերին եւ ուրիշներուն հետ գրուած միաբանութեան մէջ մնած սեպուեցան։ Աս բաներուն վրայ տես Բլանք, Գիէր Ը. Հատ. Գ. Մասն Ա. 394. — 408։ Լեւոն, Մասն Գ. Հատ Ա. Գլ. Ա. 157։ Եւ Մէնցլ, Հատ. Բ. Գլ. Ե. 109. — 113։

# ԳԼՈՒԽ Օ.

## Ընդհանուր ժողովքի խօսք

Պօղոս Գ. քահանայապետը կ՚որոշէ որ Մանդուա ընդհանուր ժողովք գումարուի: Քահանայապետին դեսպանը Վերճերիոս՝ Վիթթենպերկի Լութերին հետ կը տեսնուի: Բողոքողք Շմալքալտ կը ժողվուին ու ընդհանուր ժողովքին վրայ կը խորհին: Շմալքալտեան յօդուածք: Կայսրը Շմալքալտ մարդ կը խրկէ ու բողոքողները կը յորդորէ որ ընդհանուր ժողովքին երթան: Անոնք դէմ կը դնեն, ու զանազան պատճառներ կը հանեն: Լութերին՝ եկեղեցւոյ ու ժողովոց վրայ գրածը:

## 1535 — 1539

*ՇԱՏ ժամանակէ վեր՝ եկեղեցւոյ բարիքն ու Գերմանիայի խաղաղութիւնն ուզողներուն բաղձանքն աս էր որ ընդհանուր ժողովք մը գումարուի, որպէս զի կրօնական երկպառակութիւններն ու խռովութիւնները դադրեցընելու հնարք գտնէ: Բողոքողներն ալ ամէն առթի մէջ միշտ կը խնդրէին որ ընդհանուր ժողովք ըլլայ, ինչպէս որ մինչեւ հիմա տեսանք. բայց անոնց ուզելը, գոնէ վերջին ատենները, միայն արտաքուստ բան էր[1]: Կայսրը իրենց շատ անգամ խոստացած էր որ աս խնդիրք-*

1. Շատ անգամ բողոքողները իրենց գրուածոց ու խօսքերուն մէջ ընդհանուր կամ ազգային (եկեղեցական) ժողովք կը խնդրէին. բայց չէր բան մը՝ որմէ իրաք այնպէս վախնային ու փախչէին ինչպէս ատանկ ժողով մը, մանաւանդ ընդհանուր ժողովք (տես աս Գլխոյն 6. Ծանօթ.), որովհետեւ առաւելիւ գիտէին եւ կը խոստովանէին ալ որ իրենց մոլորութիւնները ան ժողովքին մէջ պիտի դատապարտուէին. եւ ասոր վրայ այնչափ տարակոյս չունէին, որչափ որ մէջերնէն գիտունները կը ճանչնային թէ իրենց մոլորութիւններուն մեծ մասը արդէն առջի ընդհանուր ժողովքներուն մէջ դատապարտուած են: — Բայց ինչո՞ւ ուրեմն այսպէս չուզած բաներնին միշտ կը խնդրէին: — Որովհետեւ յայտնի կը տեսնէին որ Եւրոպայի նոյն ժամանակուան վիճակը, գրեթէ ամէն կողմ եղած տարատեսակ խռովութիւններն ու եւ եւ պատահած պատերազմները անկարելի կ՚ընէին որ գոնէ նոյն ատեն ընդհանուր ժողովք ըլլայ, անոր համար ժամանակ վաստըկելով զօրանալու համար՝ միշտ աս առաջարկութիւնը կ՚ընէին, որպէս զի ուրիշ իրենց դէմ գործածուելու միջոցները մէկդի ձգել տան: Դարձեալ ընդհանուր ժողովք խնդրելով՝ կ՚ուզէին ցուցընել թէ իրենց դատին հաստատութեան եւ իրաւանց վրայ այնչափ ապահով են, որ բոլոր աշխարհքիս դատաստանին առաջ կ՚ուզեն ձգել:

Բայց ան շատ ծիծաղական բան էր, որն որ գրեթէ միշտ ժողովք խնդրած ատեննին վրան կ՚աւելցընէին, այս ինքն թէ ժողովքը՝ Ազատ, Բարեպաշտօնական ու Քրիստոնէական ըլլայ, ինչու որ աս գեղեցիկ բառերը բուն նշանակութիւններէն շատ տարբեր նշանակութեամբ կը գործածէին: Որովհետեւ, Պոսիւէի ըսածին. պէս (Գիրք Ե. Համ. ԻԵ.) անանկ ընդհանուր ժողովք մը կ՚ուզէին, ուսկից որ քահանայապետն ու ամէն իր կողմն ըլլողները մերժուած ըլլան: Եւ ըսածներնուն՝ աս պատճառը կը բերէին: Անոնք, կ՚ըսէին, չեն կրնար դատաւոր ըլլալ, ինչու որ բուն իրենց վրայ դատաստան պիտ՚որ ըլլայ. պապը յանցաւորն է, իսկ եպիսկոպոսները՝ իրեն սպասաւորներն են, ուստի եւ

նին կատարէ, եւ միշտ ալ ետեւէն կ'իյնար որ խոստումն իրօք գլուխ տանի. մանաւանդ Աւգսպուրկի աւագաժողովէն վերջը շատ ջանաց աս բանս ընելու, եւ շատ անգամ քահանայապետին կ'աղաչէր որ ընդհանուր ժողովք գումարելու հրաման տայ: Եւ թէպէտ Կղեմէս Է. փոյթ տարաւ որ կայսեր կամքը կա-

չէն կրնար դատաւոր ըլլալ: Արդ, կ'ըսէ Պոսիւէ, թէ որ աս ասանկ է նէ, ժողովքը ո՞վ պիտի գումարէր ու ժողովքին մէջ գահերեց ո՞վ պիտի նստէր: Լուտերականք արդեօք, որ կա՛մ աշխարհական մարդիկ էին եւ կա՛մ իրենց եպիսկոպոսներէն ապստամբած քահանայք: Բայց աս բանէն ծագած ուրիշ անպատեհութիւնները մէկդի թողտալով՝ իրենց վրայ ալ դատաստան պիտի չըլլա՞ր մի, իրենք ալ յանցաւոր չէի՞ն արդեօք. եւ կամ գոնէ՝ ինչպէս որ իրենք զուղղափառները յանցաւորի տեղ կը դնէին նէ՝ ուղղափառներն ալ նոյնպէս զիրենք յանցաւոր չէի՞ն սեպեր, մանաւանդ որ ուղղափառներուն թիւը՝ անտարակոյս Լուտերականներէն շատ էր: Ի՞նչ ուրեմն, արդար ու անաչառ դատաւոր գտնելու համար անհաւատներուն ու Հրեաներո՞ւն դիմելու էր, կամ թէ սպասելու էր որ Աստուած երկինքէն հրեշտա՞կ խաւրէ: Կամ եկեղեցւոյ առաջնորդները՝ իրենց Քրիստոսէն ընդունած իշխանութիւնէն զրկելու համար՝ բաւակա՞ն է արդեօք որ ոմանք վրանին չարիք խօսին ու զանոնք յանցաւոր սեպեն: Աս կարծիքն այնպէս այլանդակ բան մըն է, որ նոյն իսկ Մելանքթոն ալ անպատեհութիւնը տեսնելով՝ այսպէս կը գրէ. "Ես այնպէս կը կարծեմ որ ժողովքին (Պօղոս Գ.ին Մանդուա գումարել ուզած ընդհանուր ժողովքին վրայ կը խօսի) դէմ չէկրնար գրուիլ. ինչու որ թէպէտ պապը չկրնայ հօն դատաւոր նստիլ, ի վերայ այսր ամենայնի ժողովքը գումարելու իրաւունք ունի, եւ պէտք է որ ժողովքը հրաման տայ որ քննութիւն ու դատաստան ըլլայ": Եւ քիչ մը ետքը վրան աս խօսքս ալ կ'աւելցընէ. "Իրաւ աւելի խորագէտ ըլլողները կ'ըսեն թէ պատճառաները սուրբ ու ճշմարիտ են, բայց անօգուտ, որովհետեւ պապին բանաւորութիւնն այնչափ է որ եթէ մէյ մը ժողովքին մէջ մտնել յանձն առնենք նէ՝ անկէց կը հետեւցընեն որ կը հաւանինք թէ պապը վրանիս դատաստան ընէ: Արդ ես տեսայ որ իմ կարծեացս մէջ անպատեհութիւն կայ, բայց միշտ մէկալ կարծիքէն աւելի վայելուչ է": Մելանքթոն, Գիրք Գ. Թուղթ 196. առ Պոսիւէի, Վերը յիշուած տեղը: Թղթին աս կտորուանքը Սեքէնտորֆ (Գիրք Գ. Հատ. ԾԲ. Յաւել. Բ. 148.) ալ ի մէջ կը բերէ ու Մէնցլ (Հատ. Բ. Գլ. Դ. 92.) ալ կը յիշատակէ:

Բայց չէ թէ միայն Մելանքթոնին աս խօսքերը՝ բողոքողներուն այլանդակ պահանջմունքն ու կարծիքը կը դատապարտեն, հապա նաեւ իրենց ամէնուն անուամբ շինուած գրութիւն մը: Աւգսպուրկի հաւատոյ դաւանութեան մէջ աս խօսքերը կը կարդանք. "Դուն, տէր մեր ինքնակալ, . . . մանաւանդ եղանակաւ մը՝ 1526ին Շփայեր գումարուած աւագաժողովին մէջ թղթով յայտնեցիր որ քեզմէ աս կրօնքի բաներուն վրայ որոշում չէս կրնար ընել, հապա կը ջանաս քահանայապետին ընդունիլ որ ընդհանուր ժողովք գումարուի: Տարի մը յառաջ ալ Շփայեր ժողովուած վերջին աւագաժողովին մէջ գրով . . . նոյնը դարձեալ կրկնեցիր: . . . Եւ ըսիր որ . . . ապահով ես թէ քահանայապետը նոյն ընդհանուր ժողովքը գումարելու դէմ չէ դներ": Գոլդէ Լութ. Ֆիւրմ. Հատ. Ձ. 388: Աս խօսքերով յայտնի կ'երեւայ որ դեռ 1530ին անանկ ժողովք կ'ուզէին՝ զորն որ քահանայապետը պիտի գումարէր: "Ասանկ նշանաւոր յայտարարութիւն մը, կ'ըսէ Պոսիւէ (Գիրք Գ. Հատ. ԿԲ.) յաւիտեան պիտի մնայ Լուտերականներուն ան գործքին մէջ՝ որն որ իրենց ամէն գործքերէն աւելի վաւերական է. այս ինքն Աւգսպուրկի դաւանութեան գլուխը, իրենց դէմ վկայութեան եւ եկեղեցւոյ անլուծանելի իշխանութեան հաստատութեան համար":

տարէ, որուն արդէն ինքն ալ կը բաղձար, բայց միշտ արգելքներ ելլելով՝ կը խափանէին։ Իր յաջորդը Պօղոս Գ. (1534) ալ անոր օրինակին հետեւելով՝ սկսաւ ետեւէն իյնալ որ ընդհանուր ժողովքով մը եկեղեցւոյ սաստիկ տառապանաց օգնութեան հասնի. ուստի եւ իրեններուն հետ խորհուրդ ընելէն ետեւ՝ որոշեց որ ժողովքը Մանդուա քաղաքն ըլլայ, եւ շուտ մը թէ կայսեր եւ թէ ուրիշ քրիստոնեայ թագաւորներուն ալ իր որոշումն իմացուց։ Դարձեալ իբրեւ դեսպան Գերմանիա խաւրեց Պետ. Պօղ. Վերգերիոսը, որն որ յառաջագոյն մէյ մը Կղեմէս Է.ին ժամանակը նոյն պաշտօնը կատարած էր։

Աս դեսպանը Սաքսոնիայէն անցնելու ատեն՝ կայսրընտիրը հոն չըլլալով՝ անոր փոխանորդէն ապահովութեան թուղթ ուզեց, վասն զի կը վախնար որ բողոքողք՝ ուղղափառաց դէմ ունեցած ատելութիւններնէն գրգռուելով՝ գլուխը բան մը չբերեն։ Կայսրընտրին փոխանորդը չէ թէ միայն ուզածը կատարեց, հապա նաեւ դիմացը մարդ խաւրեց, որ զինքը պատուով Վիդդենպերկ բերեն։ Եւ երբ որ քաղաքին մօտեցանէ՝ ինքն ալ անձամբ դիմացը գնաց, ու իրարու պատահած ատեննին՝ ձիէն վար իջաւ, եւ այնպէս շատ մեծարանքով առաւ քաղաք խոթեց ու կայսրընտրին պալատը բնակեցուց։ Իրիկուան կերակրոյ ժամանակն ալ սեղանին ծառայութիւնը ինք անձամբ կատարեց։ Երկրորդ օրը դեսպանը ճամբայ ելլելէն յառաջ նախաճաշ ընելու ատեն՝ Լուտեր յանկարծ Փոմերին հետ ներս մտաւ. որովհետեւ կայսրընտրին փոխանորդը զերենք կանչած էր՝ դեսպանին ընկերութիւն ընելու համար, ինչու որ, կը գրէ դեսպանը իր նամակին մէջ, հոն ուրիշ մարդ չկար՝ որուն լեզուն կարենայի հասկընալ[2]։

Կայսրընտրին փոխանորդը զԼուտեր կանչածին պէս՝ ասիկա սափրիչ բերել տուաւ, որպէս զի ածիլուած ու մազերը շիտկուած՝ դեսպանին առջեւն ելլէ։ Երբ որ սափրիչն աս բանիս վրայ զարմանալով՝ պատճառն հարցուց, Լուտեր պատասխան տուաւ որ Ասիկա անոր համար կ'ընեմ, որպէս զի դեսպանը զիս երիտասարդ տեսնելով՝ մտքին մէջ ըսէ որ Եթէ Լուտեր երիտա-

2. Բալլաւիչինի, Գիրք Գ. Գլ. ԺԸ. Հատ. Ա 345։ — Ուլէնպերկ (Գլ. ԻԸ. Համ. Ա.) բողոքող հեղինակներէն առնելով եւ ուրիշ քանի մը թէ՛ ուղղափառ եւ թէ՛ բողոքող մատենագիրներ կը պատմեն որ դեսպանը ինք իրեն Լուտերը կանչել տուած էր։ Բայց Բալլաւիչինի բուն դեսպանին՝ Հռոմ խաւրած նամակը կը բերէ, որուն մէջ մեր գրածին պէս կը պատմուի։ — Դարձեալ դեսպանը կը գրուցէ որ Վիդդենպերկի համալսարանը ժամանակի պատճառաւ Թուրինկիա փոխադրուած ըլլալով, աս երկու հոգիէն զատ՝ լատիներէն խօսող, ուստի եւ ինծի ընկերութիւն ընելու մարդ չկար հոն, անոր համար ալ կայսրընտրին փոխանորդը զերենք կանչել տուած էր։

սարդութեան առեն մեզի այսչափ նեղութիւն կու տայ կոր նէ, ինչ պիտ'որ ըլլայ, երբ որ մէյ մը տարիքն առնէ։ Եղքը պահ-ցու զգեստները հագաւ ու վիզը ոսկի շղթայ մ'անցուց, որուն վրայ սափրիչն իրեն ըսաւ. Տէ՛ր վարդապետ, ասիկա զէնքը պիտի գայթակղեցընէ։ Լուտեր ալ պատասխան տուաւ որ Ես ալ անոր համար կ'ընեմ որ գայթակղին, վասն զի իրենք ալ մեզի շատ գայթակղութեան պատճառ տուին. ան աղուէսներուն ու օձերուն հետ այսպէս վարուելու է [3]։

Ետքը ելաւ Լուտեր, ու վերը ըսածներնուս պէս՝ Փոմերին հետ մէկտեղ դեսպանին գնաց։ Վերգերիոս զէնքը ծանրութեամբ՝ բայց սիրով ընդունեցաւ, թէպէտ եւ Լուտեր անոր շատ մեծարանք չցուցուց։ Քիչ մը առեն անտարբեր բաներու վրայ խօսելէն ետեւ՝ ընդհանուր ժողովքին վրայ խօսք բացուեցաւ, եւ դեսպանը քահանայապետին նոյն ընդհանուր ժողովքին վրայ ըրած որոշումն իմացընելէն ետեւ՝ Լուտերին կարծիքը հարցուց։ Լուտեր պատասխան տուաւ որ Ես գիտեմ թէ ժողովք գումարելու խօսքը՝ միայն խօսք է, իրօք ժողովք գումարուելիք չունի. եւ թէպէտ, ըսաւ, ժողովքը գումարուի ալ նէ, ի վերայ այսր ամենայնի միայն արտաքին ու չնչին բաներու վրայ խօսք պիտ'որ ըլլայ, ինչպէս կրօնաւորաց զգեստին, քահանայից կուլակին, կերակրոյ ու խմելիքի եւ ուրիշ ասոնց նման բաներու վրայ։ Իսկ հաւատքի, արդարութեան, հատուցման եւ ուրիշ ասանկ հարկաւոր ու երեւելի նիւթերու վրայ ամենեւին խօսք պիտի չըլլայ։ Արդէն ես իմիններովս՝ Հոգին սուրբէն սորված ըլլալով՝ հաստատութեամբ գիտենք թէ ասոնց վրայ ինչ կարծիք ունենալու է, եւ ժողովքի հարկ չունինք։ Բայց ժողովքը ձեզի շատ հարկաւոր է, ինչու որ կամ ամենեւին հաւատք չունիք կամ տարակուսանօք ունիք։ Սակայն թէ որ կ'ուզէք նէ՝ ես ժողովքի գալու չեմ դանդաղիր, թէպէտ եւ ստուգիւ ալ գիտնամ որ ինծի համար կախաղան կամ կրակ պատրաստուած է։ Եղքը ժողովքին տեղւոյն եւ ուրիշ նիւթերու վրայ իրարու հետ խօսելէն ետեւ, բաժնուելու առեննին՝ Վերգերիոս Լուտերին ըսաւ որ խոստումդ յիշէ եւ պատրաստ եղիր որ ժողովք երթաս։ Լուտեր ալ պատասխան տուաւ որ Հրամերես, Տէ՛ր, աս վզովս եւ աս գլխովս կ'երթամ [4]։

3. Ուլէնպերկ, Գլ. ԻԸ. Համ. Ա։ Սեքէնտորֆ, Գիրք Գ. Համ. ԼԳ. 95։ Կուստաւ Փֆիցէր, Գլ. ԻԵ. 703, 704։ — Ռանքէ (Գիրք Է, Գլ. Բ. Հատ. Գ. 89.) ասանկ համառօտ մը պատմելէն ետեւ՝ կը զրուցէ որ կառքին մէջ նստած առեննին՝ Լուտեր՝ Փոմերին ըսաւ թէ "Ահաւասիկ Գերմանիոյ պապն ու Պոմերանոս կարդինալը կառքով կ'երթան"։

4. Ուլէնպերկ, Գլ. ԻԸ. Համ. Ա. Սեքէնտորֆ, Գիրք Գ. Համ. ԼԳ. 95։ Մէնցըլ, Հատ. Բ. Գլ. Դ. 73, 74։ Ռանքէ, Գիրք Է. Գլ. Բ. Հատ. Գ. 89. — 91։ Կուստաւ Փֆիցէր, Գլ. ԻԵ. 704. — 706։

Վերգերիոս անկից ճամբան յառաջ տարաւ, ու Բրաղա քաղաքը Յովհ. Փրետերիկոս Սաքսոնիայի կայսրընտրին հետ տեսնուելով (1535ին, Նոյեմ. 30ին), քահանայապետին կողմանէ իմացուց որ բողոքողներուն շատոնցուընէ ուզած ընդհանուր ժողովքը հիմա պիտի գումարուի. եւ իրեն աղաչեց որ աս բանին դէմ չդնէ, ու իրեններուն հետ մէկտեղ ժողովքին ներկայ գտնուի, եւ ամէնքն ալ իրենք զիրենք ու վարդապետութիւննին՝ ժողովքին դատաստանին տակ ձգեն, որպէս զի գժտութիւններն ու խռովութիւնները վերնան: Մասնաւորապէս ժողովքին տեղւոյն վրայ խօսելով, յայտնեց որ արդէն կայսրն ու Գաղղիայի թագաւորը ժողովքին Մանդուա գումարուելուն հաւանած են. քահանայապետը անոր համար աս քաղաքն ընտրած է, ըսաւ, որովհետեւ ինք Գերմանիա գալու համար հետը շատ զօրք բերելու էր, որուն Գերմանացիք չէին հաճեր, Գաղղիայի թագաւորն ալ յանձն չէր առներ Գերմանիա գալ ու իր եպիսկոպոսները հոն խաւրել: Ասկից զատ Գերմանիան՝ Կրկնակնքոց ու Խորհրդականաց պատճառաւ շփոթութեան մէջ ըլլալով՝ ժողովքը հոն գումարելն անպատշաճ բան է: Իրենք (բողոքողք) Մանդուա չգալու ամենեւին պատճառ մը չունին, որովհետեւ նոյն քաղաքը կայսեր իշխանութեան տակն է. եւ արդէն Լուտեր իրեն (դեսպանին) ծանուցած է որ ամէն տեղ նոյն է, եւ ամէն տեղ գալու պատրաստ է: — Կայսրընտիրն աս բաներուն հաստատուն պատասխան մը չտուաւ, հապա ըսաւ թէ Աս օրերս Շմալքալտ ժողովք մը պիտի՛որ ընենք, հոնտեղը աս բանիս վրայ աղէկ մը կը մտածենք, ու ետքը թղթով պատասխան կու տամ [5]:

Կայսրընտիրը խօսքը բռնեց, եւ բողոքող իշխաններուն Շմալքալտ ժողովք ընելէն վերջը, Դեկտեմբերի 21ին ամենուն բերնէն Վերգերիոսին նամակ մը գրեց, որուն մէջ ծածուկ խօսքերով այնպէս մը կը հասկըցընէ որ ընդհանուր ժողովքին գումարուելուն հաւանելու միտք չունին: Բայց, ինչպէս ըսինք, աս բանս յայտնի չէին ըսեր, հապա ծածուկ. ինչու որ թղթին մէջ այնպէս կը ձեւացընէր որ միայն ժողովքին տեղը չէին հաւնիր: Սակայն միանգամայն չէր ուզեր որ քահանայապետը ժողովքին մէջ գահերէց ըլլայ. դարձեալ կը պահանջէր որ ա-

5. Ալկյման, Գիրք Թ. 139: Մէնցլ, Հատ. Բ. Գլ. Դ. 75, 76: Բլանք, Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 271, 272: — Աս վերջին մատենագիրը Վերգերիոսին մեծամեծ գովութիւններ կու տայ, եւ կը զրուցէ որ կայսրընտրին պալատին մէջ ամենուն հետ անանկ սիրով ու քաղաքավարութեամբ՝ բայց միանգամայն իր պատիւն ալ պահելով վարուեցաւ, որ ամէնքը վրան մեծ սէր ու յարգութիւն ունեցան. եւ նոյն իսկ Լուտեր զինքը կը յարգէր, գոնէ այնչափ որչափ որ Լուտեր մը կրնար քահանայապետական դեսպան մը յարգել:

խորհականներն ալ նոյն ժողովքին մէջ եկեղեցականներուն պէս դատաւոր նստին, եւ անոնց նման վճիռ տան ու ձայն կամ քուէ ունենան։ Այսոնցմէ զատ՝ բողոքողք նոյն թղթին մէջ ուրիշ պատճառանք մ՚ալ կը բերէին կամ պահանջմունք մը կ՚ընէին, որմէ իրենց խարդախութիւնը աւելի եւս կը յայտնուէր, եւ որուն վրայ շատ բողոքող մատենագիրք եւ առանձինն Բլանք ու Մենցլ մեծ դժգոհութեամբ կը խօսին։ Երկու տարի յառաջ, կ՚ըսեն աս երկու բողոքող մատենագիրները, երբ որ Կղեմէս Է. ընդհանուր ժողովք ընել ուզած էր նէ, յայտնած էր որ նոյն ժողովքն ըստ ամենայնի եկեղեցւոյ հին ժողովքներուն կարգին կանոնին համեմատ պիտ՚որ ըլլայ, կամ ըստ Բլանքայ՝ ուզած էր որ ըլլալու ժողովքին ձեւն ու կարգադրութիւնները յառաջագոյն որոշուած ըլլան։ Բողոքողք աս բանիս դէմ դարձած էին, եւ իրենց նոյն ընդհանուր ժողովք երթալ չուզելուն մէկ պատճառն ալ աս բանս բռնած էին։ Հիմա Պօղոս Գ. նոր քահանայապետը իրենց բացայայտ ըսել տուած էր որ ժողովքին ձեւն ու կարգադրութիւնները որոշելը՝ նոյն իսկ ժողովականաց կը թողու։ Արդ բողոքողք հիմա աս բանին դէմ դնելու սկսան, եւ կը պահանջէին որ ժողովքին ամէն կարգն ու կանոնը եւ մէջը բռնուելու ընթացքը յառաջագոյն որոշուին։ Որով կը ցուցընէին որ վախճաննին ուրիշ բան չէ, բայց եթէ ժողովքին գումարուիլն արգելել[6]։

Բայց աս իրենց խաբէական գործքերովը քահանայապետին միտքը չկրցան փոխել, որն որ երկրորդ տարին (1536ին) Յունիսի 2ին կոնդակով մը որոշեց որ 1537ին Մայիսի մէջ ընդհանուր ժողովքը Մանդուա քաղաքը սկսի։ Բողոքողք աս բանս իմանալնուն պէս՝ ուզեցին բռնելու ճամբաներնուն վրայ նորէն

6. Բլանք, Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 278։ Մենցլ, Հատ. Բ. Գլ. Գ. 78, 79։ Տես նաեւ Սլէյդան, Գիրք Թ. 139. Բ. — 140. Բ։ — Աս պատասխանին մէջ "յայտնապէս ցուցըցին որ, կ՚ըսէ Մենցլ, քաղաքական կողմանէ հիմա ունեցած զօրութիւննին կը ճանչնան, եւ իմացուցին թէ աս (ընդհանուր) ժողովքը՝ զորն որ իրենց քաղաքական տկարութեան տեղն խնդրած էին, հիմա որ իրենց առջեւը կը դրուէր, կ՚ուզէին մերժել"։ Եւ աս ժողովքը մերժելու համար բերած պատճառնին դնելէն վերջը՝ վրան կ՚աւելցընէ որ "Բայց (ժողովքը բոլորովին մերժելու) բաղձանքնին՝ յայտնապէս դուրս չհանեցին, հապա տեղւոյն վրայ բերած պատճառանքներնուն տակ ծածկեցին"։ Վերը յիշուած տեղը։ Նոյն բանը Բլանք ալ (Վերը դրուած տեղը, 277, 278.) կը խոստովանի։ "Բնական խոհեմութիւնը պէտք էր իրենց ցուցընել թէ, կ՚ըսէ, ժողովքը կարելի եղածին չափ ուշացընեն, եւ անոր համար ալ փոխարէն նոր պատճառանքներ գտնեն, որովհետեւ պապը իրենց հին պատճառանքներն անգործածական ըրած էր։ Աս բանս իրօք ալ ըրին... բայց չէկրնար ուրացուիլ որ շատ ճարտարութեամբ կամ բարակութեամբ չվարուեցան"։ Հաստեզս՝ առ. Վերգերիոս տուած պատասխաններն յիշատակելէն ետեւ՝ վրան կ՚աւելցընէ թէ "Անկից կրնար դիւրաւ իմացուիլ որ ժողովքին ամենիւրէն բաներնուն յետոյ չէր դրուեր"։

բան մ՚որոշել. ուստի եւ Սաքսոնիայի կայսրընտիրը Յովհան Ջէյին Լութերին հրաման խաւրեց որ Վիրդէնպերկի աստուածաբաններուն եւ իրաւագէտներուն հետ խորհուրդ ընէ, եւ իրեն որոշում մը տայ որ ինչ պէտք են պահպանել քահանայապետին թէ որ անոր կողմանէ Գերմանիա նորէն դեսպան մը գալով՝ զիրենք ժողովքի հրաւիրելու ըլլայ: Ասոնք տուած պատասխաններնուն կամ որոշմունքներնուն մէջ թէպէտ եւ իբրեւ հաստատուն կը դնէին որ իրենք նոյն ժողովքին մէջ պէտք է որ դատապարտուէին, որովհետեւ, կ՚ըսէին, ժողովքները մոլորական են եւ հոգւոյն սրբոյ ներկայութիւնը առանց ժողովքներուն խոստացուած չէ. ի վերայ այսր ամենայնի խրատ կու տային որ յառաջուընէ նոյն ժողովքը չմերժեն, հապա քահանայապետին դեսպանին ու նամակին ընդունին եւ ժողովքին մարդ խաւրեն. վասն զի, կ՚ըսէին, եթէ ժողովքին ինչպէս վարուիլը տեսնելով՝ կրնանք անոր դէմ բողոք ընել: Աս ամենուն մէկտեղ տուած որոշմունքէն զատ՝ Լութեր առանձին ալ կայսրընտրին թուղթ մը գրեց, որուն մէջ՝ աս կերպով որոշմունք ընելնուն պատճառը յայտնապէս կ՚իմացընէ: Պապը, կ՚ըսէ, ամենեւին միտք չունի ժողովք ընելու, եւ երբեք ընդհանուր ժողովք ըլլալիք չունի. արդ թէ որ մենք դէմ դնելու ըլլանք՝ ժողովքին չգումարուելուն յանցանքը վրանիս կը ձգեն, որով եւ տկարները կը գայթակղին, եւ այսպէս Աւետարանին վնաս կը հասնի: Ուստի եւ է խղճի մտօք կը պարտաւորին ժողովքին դէմ չդնելու [7]:

Բայց կայսրընտիրը իր ընտրլիքն արդէն միտքին մէջ որոշած էր. անոր համար ալ ոչ իր աստուածաբաններուն ու իրաւագէտներուն եւ ոչ ալ Լութերին որոշմունքն ու խրատը կրցաւ դիտաւորութիւնը փոխել տալ. ուստի եւ աստուածաբաններուն ու իրաւագէտներուն գրուածքին տակ ասանկ գրեց: "Ես անանկ կը կարծեմ որ նուիրակին դիմացը մարդ խաւրելու եւ ըսելու է որ ետ դառնայ: Պապը եկեղեցւոյ գլուխ չէ, հապա Աւետարանականաց (Լութերականաց) ոսոխիմ թշնամին, եւ ժողովք հրատարակելուն վախճանն ուրիշ բան չէ, բայց եթէ զիրենք կործանել ու իր նախկին իշխանութիւնը նորէն հաստատել" [8]:

Թէպէտ եւ այսպէս կայսրընտիրը միտքին մէջ հաստատութեամբ դրած էր որ ընդհանուր ժողովքին դէմ դառնայ, բայց եւ այնպէս վախնալով որ չըլլայ թէ կամքերնուն դէմ

7. Բլանք, Գիրք Ը. Հատ. Գ. Բ. 92. — 95:
Մաան Ա. 286, 287. եւ Ծանօթ. 8. Աս Մենցլի, վերը յիշուած
107: Մենցլ, Հատ. Բ. Գլ. Գ. տեղը, 87, 88: Ցես նաեւ Բլանք,
84. — 87: Ռանքէ, Գիրք Ե. Գլ. նոյն տեղը, 288, 289:

ստիպուած մարդ խաւրելու, ուզեց իրենց վարդապետութիւնը հաստատուն տեղ մը կապել, եւ որոշել որ եթէ հարկ ըլլայ նէ՝ ինչ բանի մէջ ուղղափառներուն կրնան զիջանիլ ու տեղի տալ։ Անոր համար Լուտերին եւ Վիդտենպերկի աստուածաբանից հրամայեց որ զանազան գլուխներու մէջ իրենց վարդապետութիւնը գրեն. որպէս զի իմանան թէ ինչ բանի մէջ եւ որչափ կրնան ուղղափառներուն տեղի տալ, եւ ինչ բանի մէջ միջերնին դրած են որ հաստատուն կենան [9]։

Լուտերական աստուածաբանները աս հրամանը կատարեցին, եւ Շմալքալտեան գլուխ ըսուած գրուածքը շինեցին [10], որոնք բողոքողներուն առջեւը շատ մեծ յարգ ունին, եւ 1537ին Յունուարի 3ին կայսրընտրին խաւրեցին։ Իրենց ամէն երեւելի պաշտօնեաները կամ վարդապետները աս գրուածքին ստորագրած էին. Մելանքթոնն ալ մէկալներուն հետ անունը գրած էր. բայց որովհետեւ Լուտերին՝ նոյն գրուածքին մէջ քահանայապետին իշխանութեան դէմ ըսածներուն [11] բոլորովին չէր

9. Այսպէս կը գրէ Լուտեր նոյն գրուածքին յառաջաբանին մէջ. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ձ. 544։ Տես նաեւ Սեքենտորֆ, Գիրք Գ. Համ. ԾԵ. 151։

10. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ձ. 544. — 558։

11. Լուտեր աս գրուածքին մէջ քահանայապետին դէմ գրած ուրիշ սաստիկ նախատական խօսքերէն զատ՝ աս ալ կը գրուցէ։ "Ինչպէս որ զսատանան պէտք չէ որ իբրեւ տէր եւ Աստուած պաշտենք, այսպէս ալ չենք կրնար իր առաքեալը՝ զպապը կամ նեռը՝ ... գլուխ կամ տէր ունենալ"։ Վերը յիշուած տեղը, 550։ — Մենցլ (Հատ. Բ. Գլ. Դ. 99.) աս խօսքը վկայութիւն բերելէն վերջը՝ կը գրուցէ որ "Բոլոր աս գրուածքին ընդհանրապէս անանկ կերպով մը շինուած է, որ Աւկսպուրկի հաւատոյ դաւանութեան քաղցր ու խաղաղական հոգւոյն բոլորովին հակառակ կ'ելլէ։ Անոր մէջ ամէն բան չէ թէ միայն շատ աւելի խիստ կերպով բացատրուած է, հապա նաեւ կողմնակցութեան բոլոր վարդապետութիւնները մասնաւորապէս ան կերպով գրուած են, որ կերպով որ հին եկեղեցւոյ վարդապետութիւններէն անհնարին հեռու պէտք էր երեւային։ Շմալքալտեան Գլուխները՝ կրեց տէր դատախազի մը գործք են"։ Նոյն կերպով մանաւանդ թէ աւելի սաստիկ կը խօսի նաեւ Բլանք. "Մելանքթոն, կ'ըսէ, անով (Աւկսպուրկի դաւանութեամբ) հակառակորդները կ'ուզէր զիջուցանել. իսկ Լուտեր ասով (Շմալքալտեան Գլուխներով) կ'ուզէր իրենց դէմ գնել։ Մելանքթոն կ'ուզէր (լուտերականութիւնը) պաշտպանել. Լուտեր՝ (ուղղափառութիւնը) ամբաստանել։ Անոր համար (Լուտերի գրուածքին մէջ) չէ թէ միայն ամէն բան անհամեմատ աւելի խիստ կերպով բացատրուած էր քան թէ առաջինին մէջ, հապա նաեւ իրենց (Լուտերականաց) վարդապետութիւնը՝ մասնաւորապէս ան կերպով բացատրուած էր, որ հին վարդապետութիւնէն ունեցած տարբերութիւնը շատ բացայայտ երեւայ, եւ իրարու հետ միաբանելու անկարելութիւնը շատ յայտնի տեսնուի։ Աստի եւ առանձինն ան կտորներուն վրայ, որոնք Մելանքթոն (Աւկսպուրկի) դաւանութեան մէջ շատ մասին ծածկած եւ շատ մասին բոլորովին լռած էր, ինչպէս են՝ պատարագ, քաւարան, ուխտաւորութիւնք, եղբայրութիւնք, (սրբոց) մասունք կամ նշխարք եւ ներողութիւն, Լուտեր շատ բացայայտ կը խօսէր. մանաւանդ թէ ասոնց մէջէն՝ պապականութեան վարդապետութիւնն ու պապին իշխանութիւնը

հաւանէր, անոր համար ստորագրութիւնն այսպէս դրած էր․ «Ես Փիլիպպոս Մելանքթոնս ալ հոս դրուած գլուխները իբրեւ ուղիղ եւ քրիստոնէութեան համեմատ՝ կ'ընդունիմ։ Բայց քահանայապետին համար կը կարծեմ որ եթէ Աւետարանին զիջանելու ըլլայ նէ՝ խաղաղութեան եւ ընդհանուր միաբանութեան համար՝ մենք ալ կրնանք յանձն առնել որ մինչեւ հիմա մարդկային իրաւամբ ուրիշ եպիսկոպոսներուն վրայ ունեցած գլխաւորութիւնը՝ նաեւ հիմա իրեն հպատակ եղող քրիստոնեաններուն եւ ասկէ վերջը իրեն հպատակիլ ուզողներուն վրայ ալ ունենայ„ [12]։

Բողոքողները՝ աս պատրաստութիւնները տեսնելնուն պէս՝ իրենց յառաջագոյն ըրած որոշման համեմատ՝ 1537ին սկիզբները Շմալքալտ նորէն ժողվուեցան [13]։ Ժողովքին սկսելէն քիչ

տաճարին իրեն գլխաւոր նիւթն ըրած էր, եւ անոր վրայ շատ երկայն կը խօսէր„։ Գիզէ Ը. Հատ. Գ. Մասն Ա. 299։

12. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ջ. 557. Բ։ Բլանք, Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 302, 303։ — Ասկից զատ՝ երբ որ ընդհանուր ժողովքի վրայ խօսք եղած ատեն՝ ուրիշ բողոքող աստուածաբանները կ'ըսէին թէ նոյն ժողովքն ընդունելու եւ մարդ խաւրելու չէ, որովհետեւ գումարողը քահանայապետն է, ուր որ առաջին ընդհանուր ժողովքները գումարողները՝ կայսրներն էին, Մելանքթոն աս խօսքին թէ՛ ստութիւնն ու թէ՛ այլանդակութիւնը ցուցուց, պատասխան տալով որ Աս բանս ի՞նչպէս կրնայ ըլլալ, որովհետեւ թէ որ կայսեր հպատակ չըլլողները՝ ընդհանուր ժողովքին գալ չուզէին նէ՝ կայսրը զիրենք ի՞նչպէս կրնար ստիպել։ Մէնցլ, Հատ. Բ. Գլ. Գ. 90։ Բլանք, Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 294։

13. Բողոքողք վերջին տարիները քանի մը անգամ զանազան տեղ ժողովքներ ըրած էին, եւ անոնց մէջ՝ Նիւրնպերկի խաղաղութեան պայմաններուն դէմ՝ (տես աս Գրքին Գ. Գլխոյն 17 Ծանօթութիւնը.) դաշնակցութիւններնուն մէջ նորէն այլեւայլ իշխաններ ընդունած, նոյն իսկ դաշնակցութիւններն նորոգած, զօրքերնին շատցուցած, Գաղղիայի ու Անգղիայի թագաւորներուն հետ (որոնցմէ առաջինին հետ կայսրը պատերազմի մէջ եւ երկրորդին հետ բոլորովին աւրուած էր,) աւելի մտերմութեամբ կապուած եւ անոնցմէ մեծամեծ օգնութեանց խոստմունքներ ընդունած էին. եւ վերջապէս ամէն ճիգն ի գործ դրած էին կայսեր եւ ուղղափառ իշխաններուն դէմ պատերազմի աղէկ պատրաստուելու։ Նոյնպէս աս վերջին ժողովքին մէջ ալ աս ամէն բաները աւելի եւս հաստատեցին, դաշնակցութեան մէջ նոր մարդիկներ առին, եւ որոշեցին որ օտար թշնամեաց դէմ կայսեր իրենցմէ ուզած օգնութիւնը չտան։ Բլանք, Գիրք Ը. Հատ. Գ. Մասն Ա. 276. — 286. եւ 308. — 310։ Նոյն մատենագրին պատմածին նայելով՝ 1538ին սկիզբները ուրիշ ժողովքի մը մէջ որոշեցին որ դեսպան խրկեն Գաղղիայի թագաւորին՝ որն որ նոյն ատենները կայսեր հետ զինադադար ըրած էր։ „Կ'երեւայ որ, կ'ըսէ Բլանք, տամ կ'ուզէին թագաւորը յորդորել որ կայսեր հետ դրած դաշանց մէջ՝ իրենց կողմնակցութեան վնասակար որոշում մը չդանուի, եւ մանաւանդ Մանդուա ժողվուելու (ընդհանուր) ժողովքին հաւանութիւն չտայ։ Բայց իրօք կը բաղձային որ իրենց չըսածն (°) ալ թագաւորն ինք իրմէ իմանայ աս իրենց գործքէն, այս ինքն իրենց հետ աւելի անձուկ կապուի, եւ կայսեր հետ ըրած պատերազմը քիչ մ'ատենէ ետքն շարունակելու փութայ„։ Ի՞նչ զարմանալի հայրենասիրութիւն եւ հաւատարմութիւն։ Նոյն տեղը։ 322, 323։

մը վերջը՝ կայսրը իր դիւանադպրի փոխանորդը Մատաթիոս Հելտ իրենց խրկեց, որ հետերնին խօսի։ Աս պատգամաւորը փետրուարի 15ին իրենց առջեւը խօսակցութիւն մ'ըրաւ, որուն մէջ զիրենք կը խրատէր որ քահանայապետին որոշման համաձայն գումարուելու ընդհանուր ժողովքին երթան, եւ ձեռքերնէն եկածին չափ ջանան ու գործակից ըլլան որ այսչափ տարիէ վեր Գերմանիան տակն ու վրայ ընող խռովութիւններն ու անմիաբանութիւնները վերնան։ Աս բանս չէք ընդունիր կամ դէմ կը դնէք նէ, ըսաւ, չէ թէ միայն կայսրն ու մեր տէրութեան ուղղափառ իշխանները, հապա նաեւ ուրիշ թագաւորներն ու իշխանները վստահ կասկած կ'ունենան որ դուք խաղաղութիւնը կ'ատէք, եւ աս հիմակուան խռովութիւններն ու երկպառակութիւնը կը սիրէք[14]։ Աս խօսակցութենէն զատ՝ Սաքսոնիայի կայսրընտրին հետ ալ առանձին խօսեցաւ, ու կայսեր իր վրայ ունեցած սէրը ցուցուց։ Բայց բոլոր իր խօսքերը մտքերնին փոխելու բաւական չեղաւ. վասն զի հաստատութեամբ գիտնալով որ վարդապետութիւննին ընդհանուր ժողովքին մէջ պիտի դատապարտուի, ամենեւին նոյն ընդհանուր ժողովքին հաւանիլ ու հոն երթալու կամ մարդ խաւրելու խոստում տալ չուզեցին[15]։ Նոյնպէս քահանայապետին կողմանէ

14. Աս խօսակցութիւնն ընդարձակ կը դնէ Սլէյտան, Գիրք ԺԱ. 163. — 164. Բ։

15. Հելտ աս ամէն բաներէն տեսնելով որ բողոքողք կայսեր դէմ յայտնի ապստամբած են եւ ամէն եղանակաւ պատերազմ ընելու կը պատրաստուին, միանգամայն իմանալով թէ բարեկամական եւ խաղաղական կերպով զիրենք ճամբու բերելու յոյս չկայ, Գերմանիայի բոլոր ուղղափառ իշխաններուն հետ գնաց մէկիկ մէկիկ առանձին խօսեցաւ, եւ զիրենք յորդորեց որ վտանգին մեծութեան նայելով՝ իրենք ալ միաբանին եւ բողոքողաց դէմ իրենք զիրենք պաշտպանելու համար մէջերնին Հակառակ-դաշնակցութիւն մը ընեն։ Իշխանները թէպէտ իսկըզբան չուզեցին աս բանս յանձն առնել, վախնալով որ չըլլայ թէ անով բողոքողք աւելի եւս գրգռուին ու չարիքն աւելի մեծնայ. բայց ետքը հարկաւոր ըլլալն յայտնապէս տեսնելով՝ յանձն առին, եւ այսպէս 1538ին Յունիսի 10ին 11 տարուան համար դաշինքը դրուեցաւ։ Աս դաշնակցութեան մէջ մտնողներուն գլխաւորներն էին կայսրը, իր եղբայրը Փերդինանդոս թագաւորը, Մոգունտիայի կայսրընտիր արքեպիսկոպոսը, Սալցպուրկի կարդինալ արքեպիսկոպոսը, Գուլիելմոս ու Լուդովիկոս՝ Պաւիերայի դքսերը, Գէորգ՝ Սաքսոնիայի դուքսը եւ Հենրիկոս՝ Պրաունշուայկի դուքսը։ Դաշնակցութեան թղթին մէջ կը զրուցէին որ թէպէտ եւ կայսեր հաստատուն կամքն ու հրամանն ան է որ Նիւրնպերկի խաղաղութիւնն ամբողջ ու անխախտ մնայ, բայց որովհետեւ քանի մը բողոքող իշխաններ աս դաշանց հակառակ նոր նոր դաշնակցութիւններ կ'ընեն, եւ անանկ գործքեր կը գործեն, որոնցմէ շատ մեծ խռովութիւններ ու ապստամբութիւններ կը վախցուին, անոր համար ինքնակալը, իր եղբայրը եւ ուրիշ հնազանդ կայսրընտիրներն ու իշխանները՝ զանազան ժողովքներու մէջ իրարու տուած խոստմունքնին յիշելով՝ որոշեցին որ աս քրիստոնէական միաբանութիւնը մէջերնին հաստատեն, չէ թէ մէկու մը վրայ յարձակելու, հապա վրանին յարձակողներուն դէմ իրենք զիրենք պաշտպանելու համար։ Մասնաւոր կերպով կը զրուցէին թէ

եկող Վորստիոս նոր դեսպանին ջանքն ալ պարապի գնաց․ եւ թէպէտ Սաքսոնիայի կայսրընտրին յառաջագոյն միտքը դրածին պէս՝ զինքը սահմանէն ետ չդարձուցին, ու թող տուին որ Շմալգալտ գայ, բայց կարծես թէ զինքն ու քահանայապետը աւելի եւս նախատելու համար 16։

Սակայն որպէս զի չիմացուի որ լոյսը կ՚առնեն եւ անոր համար ժողովքին գումարուելուն դէմ կը դնեն, շուտ մը Մելանքթոնին գրուածք մը շինել տուին, որուն մէջ իրենք զիրենք ու ժողովքին ունեցած հակառակութիւննին արդարացընելու կը ջանային, եւ բոլոր քրիստոնեայ իշխաններուն խաւրեցին։ Նոյն

առ դաշնակցութեան մէջ մտնողներէն ամէնուն մէկը՝ Նիւռնպերկի խաղաղութեան դէմ ընելով՝ նոյն խաղաղութեան դաշանց տարապարտ բողոքող իշխաններուն վրայ պիտի չյարձակի կամ անոնց անիրաւութիւն մը պիտի չընէ․ եւ ինչ կերպով որ ըլլայ նէ՝ բողոքող իշխաններուն դէմ բռնութիւն պիտի չբանեցընէ։ Բայց մէկալ կողմանէ ալ իրարու խօսք կու տային որ եթէ իրենց մէջէն մէկու մը վրայ կրօնի պատճառաւ յարձակում կամ անիրաւութիւն մ՚ըլլայ, եւ կամ մէկու մը երկրին մէջ ապստամբութիւն մ՚ելլէ նէ՝ բոլորը մէկտեղ զանիկա պաշտպանեն եւ ամէն կերպով օգնեն։ Դարձեալ իրենց երկիրներուն մէջ գտնուող եկեղեցական ու վանական ինչքերուն վրայ հսկեն, եւ զանոնք յափշտակել ուզողները վանեն։ Ռէֆեշ, Գիրք Բ․ Գլ․ ԺԱ․ 523․ — 526։ Յեօ Նախ- Մինցլ, Հատ․ Բ․ Գլ․ Ե․ 109։ Բլանք, Գիրք Ը․ Հատ․ Գ․ Մասն Ա․ 312․ — 316։ Ռանքէ, Գիրք Է․ Գլ․ Բ․ 100․ — 111։

16․ Այսպէս գրեթէ բառ առ բառ կը գրուցէ Բլանք, ու ետքը կը պատմէ թէ երբ որ քահանայապետական դեսպանը 1537ին սկիզբը Վայմար եկաւ, Սաքսոնիայի կայսրընտիրը անմիջապէս ճամբայ ելաւ, իրեն ըսել տալով որ թող Շմալգալտ գայ։ Դեսպանին հոն հասած ատեն (Փետրուարի 24ին), «Թէպէտ եւ կայսրընտիրը զինքը երկրորդ օրը առջեւը հանեց, կ՚ըսէ, բայց ատով կարծես թէ (ետքը) Մարտի 2ին իրեն տրուած պատասխանին նախատինքն աւելի եւս սաստկացաւ։ Ինչու որ կայսրընտիրը դեսպանին խօսքը մտիկ ընելէն ետեւ՝ որն որ ուրիշ բան չէր, բայց եթէ պարզ հրաւէր մը որ ընդհանուր ժողովքին մարդ խաւրեն, քահանայապետին նամակը՝ որն որ դեսպանն իրեն տուած էր, առջեւի սեղանին վրայ դրաւ, եւ պատասխան տալու տեղ՝ դեսպանին ըսաւ որ հիմա քեզմէ բաժնուելուս պէս՝ դաշնակիցներուս ժողովքին պիտ՚որ երթամ, եւ պէտք է որ նախ իրենց հետ խորհուրդ ընեմ որ արդեօք կրնա՞մ պապին նամակը պարզապէս ընդունիլ․ անոր համար աւելի աղէկ կ՚ընես թէ որ նոյն նամակը հիմակուն հետդ քովդ կը պահես։ Դեսպանին՝ սա նախատինքին վրայ ըրած արդար տրտունջին ամենեւին ականջ չկախուեցաւ, մանաւանդ թէ կը ջանային որ Շմալգալտ կեցած ատեն որչափ որ կարելի է նէ՝ հետն արհամարհելով վարուին․ եւ հինգ օր վերջը (Մարտի 2ին) նամակն (առանց բանալու) իրեն ետ տուին»։ Գիրք Ը․ Հատ․ Գ․ Մասն Ա․ 291, 292։

Սլէյտանն ալ նոյն բաները կը պատմէ եւ վրան աս ալ կ՚աւելցընէ․ «Օր մը, կ՚ըսէ, դեսպանը աշխարհատէր կոմսէն այցելութիւն ընել ուզեց․ բայց մերժուեցաւ, որովհետեւ աշխարհատէր կոմսը պատասխան տուաւ թէ ատեն կամ յարմարութիւն չունիմ (fit réponse qu'il n'avait loisir)։ Եւ անմիջապէս Լուտերին այցելութեան գնաց, որն որ ծանր հիւանդ էր, եւ սա բանս դեսպանը պատուհանէն կրնար տեսնել»։ Գիրք ԺԱ․ 169։ Յեօ Նախ- Սեքենդորֆ, Գիրք․ Գ․ Հատ․ ԾԱ․ 144․ — Մինցլ, Հատ․ Բ․ Գլ․ Գ․ 88, 89։

դրուածքին մէջ միանգամայն պատասխան կու տային վրանին եղած ամբաստանութեան որ ամենուն դատաւորի մը հնազանդիլ չեն ուզեր [17], ուրիշ ազգերը կ'արհամարհեն, եկեղեցւոյ դատաստանէն կը փախչին, եւ առջի ժողովքներէն շատոնց դատապարտուած հերետիկոսութիւնները նորէն դուրս կը հանեն։ Կը ջանային ցուցընել թէ պէտք չէ որ քահանայապետը կրօնական նիւթերու մէջ դատաւոր ըլլայ, եւ ոչ իսկ ան ատեն՝ երբ որ իր եպիսկոպոսները հետն են։ Շատ ժողովքներու օրինակ կը բերէին, որոնց որ ժողվուիլը Ս. Հարք չուզեցին յանձն առնել, գիտնալով որ ճշմարտութիւնը պաշտպանելու համար չէ, հապա մոլորութիւնը հաստատելու համար [18]։ Եւ որովհետեւ, կ'ըսէին, աս գործքը՝ բոլոր քրիստոնէից հոգւոյն փրկու-

**17.** Աս ամբաստանութիւնը թէ բողոքողները ամենուն դատաւորի մը հնազանդիլ չեն ուզեր, ամենուն մէկու մը վճռոյն տակ իյնալ յանձն չեն առներ, չէ թէ միայն ուղղափառք նոյն ատեն կ'ընէին, եւ ուղղափառ մատենագիրները կ'ընեն, հապա նաեւ բողոքող մատենագիրներն ալ։ Բաւական ըլլայ մէջ բերել Մէնցլին վկայութիւնը, որուն մէջ ուրիշ շատ մտադրութեան արժանի բաներ ալ կան։ Արդ աս մատենագիրը խօսելով որ ինչպէս շատ անգամ ուղղափառ ու բողոքող իշխաններուն կամ աստուածաբաններուն մէկտեղ գալով՝ իրարու հետ միաբանիլ ուզելնին՝ փուճ ու անօգուտ բան էր, խօսքն այսպէս յառաջ կը տանի։ "Իւրաքանչիւր կողմը կը հաստատէր թէ իր վարդապետութիւնը՝ Ս. Գրոց իմաստին համաձայն է, ու հակառակորդինը՝ Ս. Գրոց հակառակ։ Ասոր համար՝ որպէս զի աս խնդիրը կամ դատաստանը վերջ մ'ունենար, պէտք էր որ դատաւոր մ'ալ ընտրուէր. բայց բողոքողք արդէն իսկզբան ըսած էին որ դատաւոր չեն ընդունիր. եւ Շմալքալտի ժողովքին մէջ կայսերական պատգամաւորներուն յայտնապէս ծանուցած էին որ "Աստուծոյ կամ-"քը չիկրնար ամենուն մարդկային "կարծիքով կամ դատաստանով ճանչ-"ցուիլ, հապա՝ Յակոբոս առաքե-"լոյն ըսածին պէս՝ Աստուծոյ Որ-"դին որն որ ի ծոց Հօր է, ինք միայն "յայտնեց։ Անոր համար Ֆերտինանտ "կայսրը թող հրամայէ որ աս վէճման "դատ եղած քննիչներուն վրայ Յիսուս "Քրիստոս մէջ գրէն աս վարդապետութեանը՝ "դատաւոր ըլլայ"։ Եւ որովհետեւ չէր կրնար ապացուցել որ Քրիստոս անձամբ երկինքէն իջնայ եւ աստուածաբանական դահճին վրայ նստի, անոր համար դատաստանն ու որոշումը անոր ձեռքը թող տալը՝ ուրիշ բան չէր նշանակեր, բայց եթէ ըսել որ բողոքող աստուածաբաններուն՝ Ս. Գիրքը իրենց մտաց համաձայն մեկնելով հանած վարդապետութիւններն ու կարծիքները՝ անմիջական, կատարեալ ու անսխալ ճշմարտութիւն է։ Ի վերայ այսր ամենայնի նոյն ինքն Մելանքթոն՝ որ աս խօսքերը իր ձեռքը գրած էր, թէ՛ յառաջագոյն եւ թէ՛ ետքը իր թղթերուն մէջ շատ տեղ՝ մեկնութիւններուն պակասաւորութեան ու անստուգութեան, իր կողման աստուածաբաններուն՝ թէ՛ իրեն (Մելանքթոնին) դէմ, եւ թէ՛ իրենց կարծիքներէն քիչ մը շեղողներուն դէմ բանեցուցած դաժանութեան, ատելութեան ու բռնաւորութեան դէմ կը տրտնջէ"։ Հատ. Բ. Գլ. Ժ. 194։ Ասոնք գրելէն վերջը մատենագիրը ծանօթութեան մէջ Մելանքթոնին նամակներէն քանի մը վկայութիւններ կը բերէ, որոնցմով Լութերին աշակերտը իր կողմնակիցներուն բռնաւորութեանց դէմ սաստիկ կը գանգատէ։

**18.** Բողոքողներուն հատուածը ժողովոց վրայ ըսածը՝ բոլոր Արիանոսներուն կամ ուրիշ հերետիկոսներուն գումարած կամ գումարել ուզած ժողովոց վրայ է, որոնց որ եկեղեցին երբեք հաւանած չէ, ինչպէս որ բերած օրինակներնէն յայտնի կը տեսնուի։

թեան կը վերաբերի, անոր համար բոլոր քրիստոնեայ թագաւոր-ներուն ու իշխաններուն կ'աղաչենք որ հակառակորդներնուս չա-րախօսութեանց չհաւատան, հապա մանաւանդ ջանան որ Աստուծոյ ճշմարիտ պաշտօնը հաստատուի: Վերջապէս կը զրուցէին որ օրինաւոր եւ ըստ կարգի ժողովք մը գումարուելու ըլլայ նէ՝ հոնտեղը զմեզ կ'արդարացընենք եւ յայտնի կը ցուցընենք որ ուզածնիս՝ ամենուն ընդհանուր օգուտն է 19:

Բողոքողք տանք ըրած ատեն՝ քահանայապետն ու եպիս-կոպոսները, եւ ինքնակալը բոլոր ուղղափառ իշխաններուն հետ կը ջանային որ ընդհանուր ժողովքը շուտ մը սկսի: Իրենք ալ ասիկա տեսնելով՝ սկսան իրենց կողմանէ ջանքերնին աւելցը-նել որ արգելեն. եւ մանաւանդ անոր փոյթ կը տանէին որ զա-նազան գրուածքներով ժողովքին յարգութիւնը ժողովրդեան աչքէն նուազեցընեն, եւ ամենուն սրտին մէջ քահանայապետին ու Հռոմայ Աթոռոյն դէմ ատելութիւն գրգռեն: Բայց աս գրուածոց մէջ ամենէն երեւելին է Լուտերին՝ 1539ին սկիզբ-ները ժողովքներուն ու եկեղեցւոյ վրայ գրածը: Աս գրքին մէջ Նորոգիչն ընդարձակ կերպով մը Հարց ու ժողովոց իշխանու-թեան եւ զինուորեալ եկեղեցւոյն վրայ կը խօսի, ու խել մը պղանդակ մոլորութիւններ ու սուտութիւններ կը գրէ: Առա-ջին մասին մէջ կը ջանայ ցուցընել որ եկեղեցին չկրնար ան

19. Աս ընդարձակ գրուածքին մօտը բոլոր կը գտնէ Սլէյտան, Գիրք ԺԱ. 169. — 176: — Բլանք նոյն գրուածքին մէջ ըսուած պատճառներուն համար կը զրուցէ որ "Թէպէտ եւ Մելանքթոնին բոլոր ճարտարութեամբն ու արուեստովը գրուած էին, բայց ամենեւին չէին կրնար ան ազդեցութիւնն ընել, որն որ կ'ուզուէր որ ընեն, եւ աս բանս ինք Մելանքթոն ալ ստուգիւ ամենէն աղէկ կը զգար": Ետքը՝ ըսրած պատճառներնին կը յիշատակէ, եւ ամէն մէկուն քով՝ որչափ անհիմն բան ըլլալը համառօտիւ կը ցուցընէ: Եւ վերջապէս կը զրուցէ որ ստուգիւ Լուտերականներէն շատերն ալ աս բանս կ'իմանային. "Բայց որովհետեւ նոյն ժամանակը ազանդին մէջ պապին դէմ սաստիկ ատելութիւն մտած էր, անոր համար ամենեւին մէկը շատ դէմ չդրաւ անանկ մէկ արտաշման՝ որն որ աս ատելութիւնն ամէն բանէն աւելի կը յարգեցընէր, եւ կ'երեւար որ զպապը սաստիկ շատ պիտի նեղէր ու արհամարհէր: Լուտեր ալ անոնց մէջն էր, որոնք աս ատելութիւնն ամենէն սաստիկ ունէին: Աս ատելութիւնը՝ ժողովքին վրայ իր ըրած խրատին յայտնապէս մեծ ազդեցութիւն ըրած էր": Գիէր Ը. Հատ. Գ. Մաս Ա. 294. — 297: — Նոյն ժամանակը Լուտերին՝ քահանայապետին դէմ ունեցած ատելութիւնն ան աստիճանի սաստկացած էր, որ հեղ մը ճամբայ ելլելու համար կառք մտած ատեն՝ քովը եղող բողոքող քարոզիչներուն պոռաց. "Աստուած զձեզ պապին դէմ ատելութեամբը լեցընէ": (Deus impleat vos odio Papae!) Սեքէնտորֆ, Գիրք Գ. Համ. Կ. Յաւել. 165: Բլանք, Միրբ. յեղափոխ. տեղը. 300. Ծանոթ. 118: Մէնցլ, Հատ. Բ. Գլ. Գ. 100: — Դարձեալ նոյն ժամանակները (Փետրուարի 27ին) գրած մէկ նամակին մէջ աս խօսքը գրած է, որն որ ետքը միշտ բերանն ունէր. "Կենդանութեանս ատեն քու ժանտախտդ էի, պապ. մեռնելու ատենս ալ քու մահդ պիտ'որ ըլլամ": (Pestis eram vivus, moriens ero mors tua, Papa!) Առ Ցը Վէթթէ, Հատ. Ե. 57:

վիճակին մէջ խոթուիլ, ինչպէս որ Հայոց գրքերուն ու եկեղեցւոյ վճիռներուն մէջ կայ։ Ժողովքները, կ'ըսէ, շատ անգամ իրարմէ տարբեր մանաւանդ թէ իրարու հակառակ վճիռներ տուած են. իսկ Հայքը աւելի եւս իրենց անկատարութիւնը ցուցուցած եւ շատ անգամ իրարու եւ իրենք իրենց ալ հակառակ բաներ գրած են։ Երուսաղէմի (առաքելոց) ժողովքներուն եւ Նիկիայի առաջին ժողովքին մէջ շատ բան հաստատուեցաւ, որոնք ետքը վերցուեցան։ Համառօտ ըսելու համար, կ'ըսէ, թէ որ բոլոր հին Հայքը եւ ամէն ժողովքները, առանց մէջէն մէկ հատը հանելու, մէկտեղ ժողվելու ըլլանք, անոնց մէջ բոլոր քրիստոնէական կրօնքին վարդապետութիւնները չենք կրնար գտնել[20]։

Երկրորդ մասին մէջ մանաւորապէս ժողովքներուն վրայ կը խօսի, եւ անոնց իշխանութիւնն այնպէս վար կ'իջեցընէ, որ կարծես թէ ժողովրդապետներուն եւ դպրոցներու վարպետներուն՝ իրենց իշխանութեան տակ ըլլողներուն վրայ աւելի իշխանութիւն կու տայ, քան թէ ընդհանուր ժողովքին՝ եկեղեցւոյ մէջ։ Եւ որովհետեւ, կ'ըսէ, չենք կրնար յուսալ որ հիմակուան ժամանակս ընդհանուր ժողովք գումարուի, անոր համար պէտք է ջանալ որ առանձին ժողովքներ ըլլան, դպրոցներուն աշկերտները՝ իրենց վարպետին առաջնորդութեան տակ ու հաւատացեալները իրենց ժողովրդապետին առաջնորդութեան տակ առանձին ժողվուին։ Դարձեալ Երուսաղէմի ժողովքին եւ չորս առաջին ընդհանուր ժողովքներուն վրայ կը խօսի, ու անոնց մէջ վճռուած խնդիրները կը բերէ։ Եփեսոսի ժողովքին վրայ խօսած ատեն յայտնապէս կը վարդապետէ որ ի Քրիստոս՝ Աստուածութիւնն ու մարդկութիւնը իրարու հետ խառնուած ու շփոթուած են, որմէ կը հետեւցընէ նաեւ որ աստուածային ու մարդկային բնութեան յատկութիւններն ալ իրարու հետ խառնուած ու շփոթուած են, ու Քրիստոսի Աստուածութիւնը չարչարելի է, կամ թէ Քրիստոս Աստուածութեամբն ալ չարչարուեցաւ։ Ասոր վրայ, կ'ըսէ, ես անգամ մը Զուինգլիին հետ վիճեցի. եւ զինքը Նեստորական կ'անուանէ, որովհետեւ անիկա յանձն չէր առներ ըսել որ Քրիստոսի աստուածային բնութիւնը կրնայ չարչարուիլ ու մեռնիլ[21]։

Գրքին երրորդ մասին մէջ կը խօսի Լուտեր եկեղեցւոյն վրայ՝ որուն կը հաւատանք, ինչպէս որ հանգանակին մէջ կայ. եւ կը յայտնէ թէ չիհաճիր առաքելոց ան խօսքին՝ որ կ'ըսէ.

20. Գործք Լուտ. գերմ. հատ. 21. Նոյն տեղը, 246. Բ. — 279.
Է. 233. Բ. — 246. Բ.

«Հաւատամք ի սուրբ կաթուղիկէ եկեղեցի»։ Նոյն միտքը, կ'ըսէ, աւելի աղէկ կրնար յայտնուիլ ըսելով, Հաւատամք ի սուրբ քրիստոնէական ժողովուրդն, որով որ շատ միամիտներէն կ'ազատէինք, որոնց տակը կը ձգէ զմեզ եկեղեցի մութ ու կոյր անունը։ Ետքը եօթը նշան կը դնէ, որոնցմէ, կ'ըսէ, երկրի վրայ աս սուրբ ու քրիստոնէական ժողովուրդը կրնանք ճանչնալ. այս ինքն Ա. Աստուծոյ անարատ խօսքը, Բ. Մկրտութիւն, Գ. Հաղորդութիւն, Դ. Եկեղեցւոյ բանալիքը, Ե. Եկեղեցւոյ պաշտօնէից կոչումը, Զ. Աղօթք, Է. Հալածում կամ սուրբ խաչ[22]։ Ստուգիւ անլուր ու պղանդակ նշաններ։ Միշտ ամէն տեղ ճշմարիտ եկեղեցւոյ չորս նշան կը տրուի, այս ինքն Մի, Սուրբ, Կաթուղիկէ կամ Ընդհանրական եւ Առաքելական ըլլալ։ Բայց Լուտեր իրաւունք ունէր աս նշանները չընդունելու եւ ուրիշ նշաններ հնարելու, ինչու որ իր հիմնած եկեղեցին, որն որ եկեղեցի ալ ըսուելու արժանի չէ, չէ թէ միայն աս նշաններուն չորսը մէկտեղ չունի, հապա եւ ոչ մէկը։ Կաթուղիկէ կամ ընդհանրական եւ առաքելական չըլլալը՝ արդէն ինք իրմէ յայտնի է, վասն զի միայն Գերմանիայի մէկ անկիւնն էր եւ ուրիշ բոլոր եկեղեցիէն բաժնուած, եւ քրիստոնէութեան հաստատուելէն տասնուհինգ դար վերջը դուրս ելլելէն զատ՝ շատ բանի մէջ նաեւ առաքելական վարդապետութեան հակառակ։ Իսկ թէ միանգամայն Մի կամ միաբան եւ Սուրբ չէր, ասիկա ալ թէպէտ մինչեւ հիմա ըսածներէս յայտնի կ'երեւայ, բայց ետեւը դրուած երկու գլուխներէն՝ աւելի եւս բացայայտ կը տեսնուի։

22. Դարձեալ նոյն տեղը, 279. — 291. Բ։ — Սեքենտորֆ (Գիրք Գ. Հատ. ՀԶ. 251.) Լուտերին աս գրքին վրայ խօսելով՝ կը զրուցէ որ «Այնպիսի իմաստութեամբ . . . գրուած է, որ մարդ աւելի բանի մը չի կրնար բաղձալ»։ Իսկ Մենցլ (Հատ. Բ. Գլ. ԺԱ. 233. Ծանօթ.) կը զրուցէ որ «Լուտեր աս գրքին մէջ անանկ սկզբունքներ կը դնէ, որոնցմով բոլոր ժողովքներուն նաեւ առաջին չորս ընդհանուր ժողովոց հեղինակութիւնը գետինը կ'իյնայ. մինչեւ առաքելոց առաջին ժողովքին վաւերութեան վրայ այնպիսի ընդդիմութիւններ կը հանէ, որոնք . . . իր յառաջագոյն՝ յառաջբերելու ալ դող Հոգւոյն սրբոյ զօրութեան վրայ ունեցած կարծեաց դէմ կ'ելլեն»։



# ԳԼՈՒԽ Է

## Լուտերական կրօնին միութիւնը

Լուտերականներէն ոմանք շատ աղանդ կը կոչէն, ու Հակաւակօրինականք կը կոչուին։ Լուտերի խօսքերը՝ որոնք աս աղանդին պատճառ եղան։ Լուտեր Հակաւակօրինականաց սաստիկ դէմ կը դնէ։ Մելանքթոն՝ երկու աղանդի գլուխ։ Հերոնիմոս Շուրֆ եւ ուրիշ օրէնսգէտք հակառականն խրատներ պաշտպանելու կը ելնեն։ Լուտեր ասոնց դէմ կը խօսի։ Նիւռնպերկի մէջ խոստովանութեան վրայ պատահած խռովութիւնը։ Լուտեր իր աշակերտներուն անհնազանդութեան վրայ սաստիկ կը տրտմի, ու կը գուշակէ որ մահուընէն ետեւ աւելի պիտի սաստկանան։

## 1538 — 1539

ՄԻՆՉԵՒ հիմա քանի մը անգամ առիթ ունեցանք տեսնելու որ շատերը Լուտերի գլխաւոր վարդապետութեան կամ սկզբունքին հետեւելով, այս ինքն թէ կրօնականնիւթերու մէջ աստուածաշունչէն ուրիշ կանոն չկայ եւ ամէն մարդ իր իմացածին պէս Ս. Գրոց մեկնութիւն կրնայ տալ, զանազան մոլորութիւններու մէջ ինկան։ Բայց աս վերջին տարիները իր աշակերտներէն ոմանք՝ իրեն այլեւայլ մասնաւոր խօսքերէն պատճառ առնելով՝ սկսան զանազան աղանդներ կազմել, որով Լուտերականները իրարմէ տարբեր գնդերու բաժնուեցան։ Աս գնդերուն կամ աղանդներուն մէջ ամենէն գլխաւորը՝ Անտինոմեանց կամ Հակառակօրինականաց աղանդն եղաւ, որուն հետեւողները կը վարդապետէին որ եկեղեցւոյ մէջէն աստուածային օրէնքները բոլորովին վերցընելու է, չէ թէ միայն ան օրէնքները՝ որոնք Մովսիսական կրօնքին ծէսերուն կամ սովորութիւններուն ու զոհերուն եւ պաշտօնին կը վերաբերին, հապա նաեւ տասնաբանեայ պատուիրաններն ալ, որոնք, կ'ըսէին, քրիստոնէից կամ Նոր կտակարանի եկեղեցւոյն համար չեն։ Իրենց գլխաւոր սկզբունքը՝ որ միշտ բերաննին կը պտըտցընէին, աս էր. Ուզածդ ըրէ, թէ որ միայն հաւատաս՝ երանելի կ'ըլլաս[1]։

Լուտեր կ'ըսէր թէ աս վարդապետութիւնը գտնողը՝ ամէն մարդիկներէն աւելի անմիտ ու վնասակար է. բայց թէ որ աղէկ նայուելու ըլլայ՝ նոյն այլանդակութիւնը բուն հնարողն՝ ինքն է. այնպէս որ կրնանք ստուգութեամբ զրուցել թէ, կ'ըսէ Ուլենպերկ[2], աս անօրէն աղանդը իր ուղեղէն կամ սրտէն ծնաւ, ինչպէս որ Աթենասին համար բանաստեղծները կ'առասպելեն որ Արամազդայ ուղեղէն ելած է։ Արդէն Հակառակօրինականք ալ միշտ զԼուտեր իրենց հայր կը խոստովանէին եւ

1. Ալկյասն, Գիրք ԺԲ. 185. Բ։ 2. Գլ. ԻԹ. Համ. Գ։

իրենք զիրենք՝ անոր ճշմարիտ ու հարազատ որդիքը, եւ իրենց ամպարիշտ խօսքերուն վկայութիւնն ու հաստատութիւնը միշտ անոր գրուածներէն կ՚առնէին։ Այսպէս ըսելու եւ վարուելու ալ մեծապէս իրաւունք ունէին, որովհետեւ Լուտեր բոլորովին նոյն վարդապետութիւնը սորվեցուցած էր իր զանազան գրքերուն մէջ, որոնց մէջէն Հակաօրինականք՝ իբրեւ իրենց սեպհական զինանոցէն՝ զէնք կ՚առնէին ճշմարտութեան դէմ պատերազմելու համար։ Լուտերի խօսքերէն ոմանք՝ որոնք Հակաօրինականաց վարդապետութեան հետ ըստ ամենայնի նոյն են, օրինակի համար հոստեղս կը դնենք։ "Մենք, կ՚ըսէ Լուտեր, զՄովսէս չենք ուզեր տեսնել եւ ոչ իր խօսքերուն ականջ կախել. որովհետեւ Մովսէս՝ միայն Հրէից ազգին տրուեցաւ, ու մեզի հեթանոսացս ու Քրիստոնէիցս ամենեւին չվերաբերիր....։ Մովսեսի օրէնքները՝ միայն Հրէից համար են, եւ զմեզ ասկէ վերջը ամենեւին չեն պարտաւորեր։ Թէ որ մէկը զՄովսէս իր հրամաններովը քու առջեւդ դնելու ըլլայ նէ՝ իրեն այսպէս պատասխան տուր. Գնա, կորսուէ Մովսիսիդ հետ մէկտեղ, ես Հրեայ չեմ, Մովսիսին հետ զիս մի խառներ։ Անիկա բոլոր դահիճներուն վարդապետն է, եւ մէկը չկայ՝ որ իրմէ աւելի կամ իրեն չափ վախցընէ, տառապեցընէ, բռնութիւն բանեցընէ, սպառնալիք ընէ, սաստէ ու յանդիմանէ, եւ կրակ ու շանթ թօթափէ։ Ես չեմ ուզեր Մովսէսը իր օրէնքներուն հետ ունենալ, որովհետեւ ինք Քրիստոսի թշնամի ու հակառակորդ է....„[3]։

Ըս խօսքերէն յայտնի կ՚երեւայ որ Մովսէս եւ օրէնք ըսելով՝ Լուտեր չէ թէ միայն այն օրէնքները կ՚իմանայ, որոնք Հրէական կրօնքին ծէսերուն ու դատաստաններուն կը վերաբերէին, եւ ինչպէս յայտնի է՝ քրիստոնեաները չեն պարտաւորեր, հապա նաեւ այն օրէնքներն ալ՝ որոնք բարուց համար են կամ տասնաբանեայ պատուիրաններն ալ։ Ասիկա՝ թէպէտ ինչպէս ըսինք՝ խօսքին ընթացքէն ու բառերէն կ՚իմացուի, բայց հոստեղս իր քանի մը ուրիշ խօսքերն ալ կը դնենք՝ որոնցմով աւելի բացայայտ կ՚երեւայ։ Գաղատացւոց թղթին մեկնութեան մէջ այսպէս կը գրէ։ "Բայց ես կը կարծեմ որ Առաքեալը չէ թէ միայն ծիսական օրէնքին վրայ կը խօսի, հապա նաեւ բոլոր օրինաց վրայ։ Ստուգիւ ալ Քրիստոս շատ քիչ բան տուած կ՚ըլլար, թէ որ միայն զոհից գործքերուն մեղքերը վերցուցած ու ջնջած ըլլար. բայց որովհետեւ տասը պատուիրանաց մեղքերն ալ վերցուց, անկէց կը հետեւի... որ բոլոր օրէնքներն ազատ եղած են„ (կամ մարդիկներն ազատ են պահելու եւ չպահելու)[4]։ Նոյն գրքին մէջ

3. Առ Ուլէնպերկի, Գլ. ԻԹ. Համ. Գ։ 4. Գլ. Ե. Համ. 17. Առ Ու-

ուրիշ տեղ մը կը զրուցէ. «Հաւատացողին համար՝ անմիջապէս ամէն օրէնքները, ամէն օրինաց գործքերը կը դադրին, ամէն բան իրեն ազատ ու պատշաճական է, ուստի եւ օրէնքը՝ հաւատքով ու սիրով կը լեցուի կամ կը կատարուի»[5]: Դարձեալ կը գրէ. «Պօղոս առաքեալ... աս խօսքով (այս ինքն Ընդ տարերբք աշխարհիս ի ծառայութեան կայաք) նաեւ տասնաբանեայ օրինաց արտաքին գործքերն ալ կ'իմանայ». ուստի ըսելով որ հիմա անոնցմէ ազատած ենք, կ'իմացընէ որ տասնաբանեայ օրինաց արտաքին գործքերէն ազատ ենք[6]: Բաբիլոնական գերութեան գրքին մէջ Լուտեր այսպէս կը գրէ: «Կը տեսնես, կնունք եղած քրիստոնեան ինչչափ հարուստ է, որ ուզելու ալ ըլլայ նէ՝ մեծամեծ մեղքերով իր փրկութիւնը չիկրնար կորսընցընել, բայց եթէ ան ժամանակը երբ որ չ'ուզեր հաւատալ: Վասն զի անհաւատութեան մեղքէն ուրիշ մեղք չկայ՝ որ զինքը կրնայ ըլլայ դատապարտել»[7]: Ուրիշ տեղ մ'ալ կ'ըսէ. «Թէ որ մէկը ըսելու ըլլայ որ Աւետարանը փրկութեան համար գործք կը պահանջէ, սուտ կը խօսի»[8]: Դարձեալ Մելանքթոնին այսպէս կը գրէ. «Մեղաւոր եղիր ու քաջութեամբ մեղք գործէ. բայց աւելի եւս զօրութեամբ հաւատա, եւ ուրախացիր ի Յիսուս Քրիստոս՝ որ մեղքը յաղթեց: Աս աշխարհքիս վրայ եղած ատեններս՝ պէտք է որ մեղք գործենք. բաւական որ խոստովանինք զԳառնն Աստուծոյ՝ որն որ աշխարհքիս մեղքը իր վրան կը վերցընէ. աս որ ըլլայ նէ՝ մեղքը զմեզ իրմէ (Աստուծմէ) չիկրնար բաժնել, թէպէտ եւ օրուան մէջ հազար անգամ շնութիւն եւ սպանութիւն ընենք»[9]:

Թէ որ Լուտերի աս ու ասոնց նման բիւրաւոր խօսքերը՝ Հակառակօրինականաց սկզբունքներուն հետ համեմատելու ըլլան՝ անմիջապէս կ'իմացուի որ աս աղանդաւորաց խօսքերը Լուտերի խօսքերուն մեկնութիւնը մանաւանդ թէ կրկնումն են: Վասն զի իրենց գլխաւոր սկզբունքներն ասոնք էին. «Ա. Օրէնքը արժանի չէ որ Աստուծոյ խօսք ըսուի: Բ. Թէ որ շնութիւն, ... կամ ուրիշ մեղք գործած ես, միայն հաւատա ու երանութեան ճամբուն մէջ ես: Գ. Թէպէտ մեղքերու մէջ վերջին աստիճանի թաթխուած ըլլաս, միայն հաւատա ու փրկութեան մէջ ես: Դ. Տասնաբանեայ օրէնքները կամ Աստուծոյ տասը պատուիրանները Հրէից համար են՝ չէ թէ քրիստոնէից հա-

Փէլլի, Գիրք Ա. Գլ. Ա. 18. Ծանօթ:

5. Գլ. Բ. Համ. 15. վերը յիշուած տեղը, 19. Ծանօթ:

6. Գլ. Դ. Համ. 3. Նոյն տեղը, 21. Ծանօթ:

7. Առ Ուլէնպերկի, Գլ. ԻԹ. Համ. Գ:

8. Խօսք սեղանոյ, Գերմ. 175. Բ:

9. Տես առ Տը Վէդէ, Հատ. Բ. 37:

մար։ Ե. Որոնք որ Մովսէսին հետ բան գործք ունին՝ սատանային քովը պիտ՚որ երթան. նոյն իսկ Մովսէսը կախաղան հանելու է։ Զ. Պէտք չէ օրէնք քարոզելով՝ մարդիկները Աւետարանին պատրաստել. վասն զի Աւետարանի պատրաստելը՝ Աստուծոյ գործքն է։ Է. Աւետարանին մէջ՝ օրէնքին դէմ եղած յանցանքներուն վրայ խօսելու չէ, հապա միայն Որդւոյն Աստուծոյ չարչարանաց վրայ։ Ը. Խօսքը լսելն ու անոր համաձայն վարքը չփոխելը՝ օրէնքին ետեւէն կու գայ։ Թ. Խօսքը լսելն ու սրտին մէջ իմանալը՝ ճշմարտապէս Աւետարանին ետեւէն կու գայ։ Ժ. Պետրոս առաքեալ՝ քրիստոնէական ազատութեան ինչ ըլլալն իմացած չէ։ ԺԱ. Իր աս խօսքը թէ "Բարեգործութիւններով կոչումնիդ ու ընտրութիւննիդ հաստատուն ըրէք„ բան մը չ'արժեր։ ԺԲ. Թէ որ կարծես թէ քրիստոնէից մէջ՝ պարկեշտ, բարի վարք ունեցող, սուրբ, զգաստ մարդիկներ գտնուելու են, անմիջապէս Աւետարանէն հեռացար„[10]։

Լուտեր աս խօսքերը իր հաւատարիմ ու սիրելի աշակերտներուն բերնէն լսելով՝ շատ կը խռովէր ու նեղութեան մէջ կ'իյնար։ Եւ մանաւանդ աստ վրայ շատ կ'այլայլէր որ անոնք միշտ կ'ըսէին թէ մենք Լուտերի վարդապետութենէն ուրիշ բան չենք սորվեցըներ, եւ ինչպէս վերը ըսինք, կարծիքնին՝ անոր գրքերէն առնուած վկայութիւններով կը պաշտպանէին։ Այդ Նորոգիչն սկսաւ վախնալ որ եթէ իմացուելու ըլլայ որ ինք ասանկ ամպարիշտ կարծիքներու գտիչն է, կամ գոնէ անոնց պատճառ տուած է, ալ անկէ վերջը զինքը մարգարէի, առաքելոյ կամ աւետարանչի տեղ չեն դներ, հապա իբրեւ օրինաց թշնամի ու հայհոյիչ՝ երեսէ կը ձգեն։ Եւ որովհետեւ Հակաւակօրինականաց ըսածը՝ թէ մեր քարոզածը Լուտերի վարդապետութիւնն է՝ չէր կրնար ուրանալ կամ հերքել, անոր համար սկսաւ հետերնին վիճել, եւ կը ջանար որ զիրենք աս կարծիքները թող տալու համոզէ[11]։

Հակաւակօրինականաց մոլորութիւնները վարդապետողներուն գլխաւորը, կամ Լուտերին գրքերէն աս վարդապետութիւններն առջի հանողը՝ Նորոգչին սիրելի բարեկամն ու հաւատարիմ աշակերտը Յովհ. Ագրիկողայոսն էր, զորն որ ինք գրեթէ ամէն աշակերտներէն աւելի կը սիրէր, ինչու որ թէ իրեն քաղաքակիցն էր եւ թէ իր վարդապետութիւններուն մէջ շատ յառաջադէմ[12]։ Այդ Լուտեր սկսաւ ետեւէ իյնալ որ ամէնէն յառաջ ասիկա լռեցընէ. անոր համար շատ

10. Գործք Լուտ. գեր. Հատ. Է. 369. Բ. 370։
11. Մաթեսիոս, ճառ. ԺԱ. 129։
12. Մենցլ, Հատ. Բ. Գլ. Ը. 169։ Տես նաեւ Բ. Գրքին Թ. Գլխոյն 24. Ծանօթ։

անգամ թէ առանձին եւ թէ ուրիշներուն առջեւը զինքը կը խրատէր որ մոլորութիւնները մէկդի թողու։ Երկայն ատեն աս այսպէս ըլլալէն ետեւ, Ագրիկողայոս՝ իր վարդապետին խօսքերէն համոզուածի պէս՝ խոստացաւ որ անոր իմաստուն խրատներուն հետեւի։ Ան ատեն Լուտեր ալ իրմէ պահանջեց որ մոլորութիւնները հրապարակական գրուածքով մը ետ կանչէ։ Ագրիկողայոս աս ալ յանձն առաւ. բայց որովհետեւ խորամանկ մարդ մըն էր, այնպէս ձեւացուց թէ իր անձին վրայ վստահութիւն չունի, ուստի եւ Լուտերին աղաչեց որ աս ետ կանչելու թուղթը ինք (Լուտեր) շինէ, որուն որ, ըսաւ, ես ստորագրելով՝ անձամբ շինածի պէս ամէն կողմ կը տարածեմ։ Աս բանը շատ խելացութեամբ ըրաւ Ագրիկողայոս, վասն զի ասով զԼուտեր կը ստիպէր իր սեպհական վարդապետութիւնները ետ կանչելու, եւ զինքը վարդապետ եւ առաջնորդ կ'ունենար ետ կանչելու, ինչպէս որ մոլորութեանց վարդապետն ու առաջնորդն էր։ Լուտեր աս առաջարկութեան շատ նեղ մնաց, եւ չկրցաւ ինչպէս որ պէտք էր նէ՝ գրել. վասն զի եթէ բացայայտ ու մանրամասն բան մը գրելու ըլլար՝ իր անձին դէմ խօսող պիտ'որ երեւար, եւ այնպէս պիտի կարծուէր որ յառաջագոյն օրինաց ու բարեգործութեանց դէմ գրածն ու վարդապետածը՝ հիմա ետ կը կանչէ։ Անոր համար վեր ի վերոյ այսպէս համառօտ բան մը գրեց. “Յովհաննէս Այսլեպենցի վարդապետը՝ օրինաց կամ տասնաբանեայ պատուիրանաց դէմ վարդապետածը կամ գրածը բոլոր ետ կանչել կ'ուզէ, եւ կը բաղձայ որ Աւկսպուրկ քաղաքը կայսեր տուած հաւատոյ դաւանութիւններնուս եւ անոր ջատագովութեան մէջ գտնուած վարդապետութեան՝ մեզի հետ հետեւի։ Եւ թէ որ ասկէ վերջը տարբեր կարծիք մ'ունենայ կամ վարդապետէ նէ՝ անիկա հիմակուընէ ոչինչ կը սեպէ ու կը դատապարտէ,, 13։

Բայց թէպէտ հակառակորդներէն մէկը այսպէս լռեցուց Լուտեր, կամ գոնէ արտաքուստ իրեն հետ միացուց. սակայն ուրիշ շատերը կային, որոնք իր խօսքերը մտիկ չէին ըներ, հապա կարծիքնին հրապարակաւ կը վարդապետէին։ Քիչ մը վերջը Ագրիկողայոսն ալ կեղծաւորելէն ձանձրանալով եւ տեսնելով որ Հակառակօրինականաց կողմն ալ զօրաւոր է, նորէն իր առջի ընթացքը ձեռք առաւ. եւ քիչ մը ժամանակ ալ Վիդդենպերկ բնակելէն ետեւ՝ իմանալով որ Լուտեր զինքը բանտ դնել տալ կ'ուզէ, փախաւ ուրիշ տեղ գնաց։ — Այսպէս Լուտերի կենդանութեան ատեն՝ Լուտերականք երկու գլխաւոր

13. Գործք Լուտ. գերմ. Հատ. Է. 292. Բ։

ձիւղ բաժնուեցան, այս ինքն բուն Լուտերականք եւ Հակառակօրինականք 14։

Նոյն ժամանակները Մելանքթոն ալ առանձին առանձին աշակերտներ ունեցաւ, եւ ինքն ալ զատ առաջնորդ եղաւ չէ թէ միայն մէկ աղանդի՝ հապա երկու իրարմէ տարբեր աղանդներու։ Վասն զի Լուտերականներէն ոմանք՝ Մելանքթոնին համաձայնութեան խորհրդոյն վրայ ունեցած կարծիքին 15 հետեւելով եւ աւելի խորհրդականներուն մօտիկնալով՝ Լուտերին բուն վարդապետութենէն հեռացան ու զատ աղանդ մը կազմեցին. ասոնք Մելանքթոնին մկրտութեան անուամբը՝ Փիլիպպեանք անուանեցան։ Իսկ ուրիշ ոմանք Մելանքթոնին մէկ ուրիշ կարծեացը հետեւելով թէ պզտիկ բաներու եւ թեթեւ սովորութիւններու մէջ (որոնց անտարբեր բաներ կ'ըսէին) ուղղափառ եկեղեցւոյ ետեւէն կրնայ երթըլցուիլ, ուրիշ զատ աղանդ մը ձեւացուցին ու Մելանքթոնեանք անուանեցան։ Թէպէտ եւ աս երկու աղանդները Լուտերի կենդանութեան ատեն այնչափ երեւելի չէին եւ անոր համար ալ մեծ խռովութիւններու պատճառ չեղան, բայց Լուտերին սաստիկ նեղութիւն ու վիշտ կը պատճառէին, ինչու որ կը տեսնէր թէ իրեն ամենէն սիրելի ու հաւատարիմ աշակերտը Մելանքթոնն ալ՝ որն որ միանգամայն իրեն թեւ թիկունքն էր, իրմէ պառակտեցաւ 16։

Դարձեալ նոյն ժամանակները Վիդդենպերկի մէջ ուրիշ անմիաբանութիւն ու խռովութիւն մ'ալ ելաւ։ Յառաջները 17 տեսանք որ Լուտեր կանոնական իրաւանց գրքերը հրապարակաւ այրեց. իրեն միտքն ան էր որ աս իրաւանց գործածութիւնն ալ յիշատակն ալ ջնջէ վերցընէ։ Բայց Վիդդենպերկի իրաւագէտներէն շատերը՝ ասոնց օգտակարութիւնն ու հարկաւորութիւնը ճանչնալով, եւ անոնց պակսութենէն ծագած չարիքներուն ու շփոթութիւններուն միտ դնելով՝ շատ կը մեծարէին ու կը յարգէին։ Ասոնց մէջ ամենէն երեւելին՝ Հերոնիմոս Շուրֆ օրէնսգիտութեան վարդապետն ու Լուտերի

14. Աս դէպքին ընդարձակ պատմութիւնը կը գտնուի Սեքենտորֆին (Գիրք Գ. Հատ. ԶԲ. 306. — 310.) Կուստաւ Փֆիցերին (Գլ. ԻԸ. 780. — 786.), Մենցլին (Հատ. Բ. Գլ. Ը. 169. — 173.) եւ Ուլէնպերկին (Գլ. ԻԹ. Հատ. Գ. Դ. Ե. Զ.) մէջ։ Իսկ ատոր վերաբերեալ գրուածները կը գտնուին ի Գործս Լուտ. գերմ. Հատ. Է. 292. — 296. 368. — 377 եւ 378. — 382։

15. Տես աս Գրքին Ա. Գլխոյն 21. Ծանօթ։

16. Լուտեր Մելանքթոնին դէմ ձայն չէր հաներ, որուն գլխաւոր պատճառներէն մէկն ալ աս էր, որ Սաքսոնիայի կայսրընտիրը տեսնելով որ աս երկուքին իրարու դէմ ելլելը իմացուի նէ՝ իրենց կողման մեծ վնաս կ'ըլլայ, շատ ետեւէն եղաւ որ Լուտեր հանդարտ կենայ։ Աս բանս կը պատմէ Մենցլ (Հատ. Բ. Գլ. ԺԹ. 415, 416.), Կուստաւ Փֆիցեր (Գլ. ԻԸ. 817. — 819.) եւ ուրիշ շատ մատենագիրներ։

17. Երես 93։

սիրելի բարեկամն էր, որն որ իսկզբան՝ Նորոգութեան սաստիկ պաշտպան էր ու Վորմսի ազգաժողովին ատեն՝ իր խորհուրդներովը՝ Լութերին շատ օգուտ ըրաւ[18]: Արդ. ասիկա տեսնելով որ Լութեր իրեններովը մէկտեղ եկեղեցւոյ կարգերը բոլորովին տակն ու վրայ կ'ընէ, հին գեղեցիկ կարգաւորութիւնները կ'աւրէ կ'ապականէ, եւ բոլոր օրէնքներն ու իրաւունքները ոտքի տակ կ'առնէ, աչքի կարծիքը փոխեց, եւ հին եկեղեցւոյ գեղեցիկ կարգերը՝ որոնք կանոնական իրաւանց ծագման պատճառ եղած էին եւ զանոնք հաստատուն կը պահէին, Լութերին նոր ու անհիմն կարգաւորութիւններէն վեր սկսաւ բռնել[19]: Անոր համար Լութերին՝ Վիդդենպերկի եկեղեցւոյն մէջ դրած երէցները կ'արհամարհէր եւ անոնց ձեռքէն խորհուրդ ընդունիլ չէր ուզեր: Աս ալ բաւական չէ, ամենուն աչքեւը կանոնական իրաւունքը կը գովէր, ու համալսարանին ուսանողները շատ անգամ կը յորդորէր որ ձեռքէ թող չտան աստնկ հարկաւոր ուսումը, որն որ այնչափ դարերէ յառաջ իմաստուն ու երեւելի մարդիկ համալսարաններուն մէջ խոթած էին:

Իսկզբան քիչ մը ատեն Լութեր աս բանս չիմանալու զարկաւ ու ձայն չհանեց. սակայն երբ որ տեսաւ որ լռելով օգուտ մը չ'ըլլար, հապա անոր հակառակ Շուրֆին կողմն օրէ օր կը բազմանայ, ա՛լ անկէ վերջը սկսաւ թէ եկեղեցւոյ մէջ հրապարակաւ եւ թէ առանձինն՝ իրաւագէտներուն դէմ սաստիկ կատաղութեամբ խօսիլ: Եւ իրենց համար միշտ կը գրուցէր որ կանոնական իրաւունքը նորէն համալսարաններուն մէջ խոթելով՝ աւրիշ բան չեն ուզեր բայց եթէ պապականութիւնը նորէն ոտք

18. Տես երես 109:

19. Մենցել աս բանին վրայ ասանկ կը խօսի. "Լութեր քահանայապետութեան կամ քահանայական կարգին (hiérarchie) դէմ պատերազմ ելած ատեն՝ առաքելին եկեղեցւոյ հաստատուն մնալուն հարկաւոր եղած թէութիւններուն վրայ առանց պայծառ գաղափար մը ունենալու՝ աչքը միայն եկեղեցական . . . կառավարութեան դարձուցած էր: Երբ որ իր աս պատերազմին մէջ յաղթութիւն գտնելովը՝ նոր կառավարութեան կերպ մը գուրս ելաւ, որուն մէջ եկեղեցականներուն ձեռքը աւրիշ իշխանութիւն չմնաց, բայց եթէ իրենց պաշտօնին գործքերը կատարել, եւ եկեղեցւոյ բոլոր առաքելին իրաւութիւնները աշխարհական իշխանութեան տակ ինկան, Լութեր տեսաւ որ աս կերպն ալ աղէկ բան մը չէ . . . : Արդ Լութեր որ իր ըրածներովը եկեղեցական գործքերուն մէջ դատաւոր ու որոշիչ ըլլալու իշխանութիւնը իրաւագիտաց ձեռքն անցուցած էր. սկսաւ նեղանալ անոնց աս իշխանութիւնը գործածելուն վրայ: Բայց գլխաւոր բանն ան էր որ իրաւագէտները չէ թէ միայն շատ բաներու մէջ իրմէ տարբեր կարծիք ունէին, հապա նաեւ եկեղեցական նիւթերու մէջ հաստատուն հիմ մ'ունենալ ուզելով՝ կանոնական իրաւունքը, զորոնք որ Լութեր այրած էր, իբրեւ վաւերական եւ հաստատուն կը ճանչնային ու կը գործածէին. որով իր շատ կարծիքներուն՝ որոնք շատ անգամ իրարու համաձայն բաներ չէին, ուղղակի ընդդէմ կը զինէին: Աս բաներէն Լութեր իրաւագիտաց դէմ սաստիկ գռանցաւ", եւ այլն: Հատ. Բ. Գլ. ԺԹ. 418:

հանել։ Բոլոր առնիւթին վրայ ըրած խօսակցութիւններուն մէջ ամենէն երեւելի են 1539ին մեծ պահոց երկու առաջին կիրակիները եկեղեցւոյ մէջ խօսած ճառերը, որոնց հոգին իմանալու համար՝ մէյ մէկ համառօտ հատուած կը դնենք։ "Երեք տարի է, կ'ըսէ, որ ես լուած կեցած էի։ Թէ որ օրէնսգէտները իմ անձս դատապարտել կ'ուզէին նէ, թող Աստուծոյ խօսքովը դատապարտէին, չէ թէ պապին մճիռներովը։ Մանաւանդ որ ես դատապարտուելու արժանի ալ ըլլայի..., պէտք էր որ իրենք մեր վարդապետութիւնն յարգէին, որն որ Աստուծոյ խօսքն է, ու Հոգին սուրբ մեր բերնովը կը խօսի. պէտք էր որ խօսքերը պատուէին, Թէպէտ եւ խօսողը Կայիափասը կամ Յուդան ըլլար։ Իսկ իրաւանց գիրքերը աղէկ բան մ'ալ ըլլան՝ մենք չենք ուզեր զմեզ անոնցմով կապել, ինչու որ չենք ուզեր իրաւագիտաց հաճոյ ըլլալու համար՝ պապին (կարդացողներն աս ու ետեւի անամօթ խօսքերը յառաջ բերելնուս ներեն,) աղբին ու ապաւառին երկրպագութիւն ընել...„20։ Աս խօսքերը մեծ պահոց առջի կիրակին խօսած ճառին մէջ կը գտնուի. իսկ երկրորդ կիրակին խօսած ճառին մէջ աս կտորը կայ։ "Ձեզի խրատ մը կ'ուզեմ տալ, տէր օրէնսգէտք։ Իմացայ որ մեր դպրոցներուն մէջ պապին իրաւանց գիրքը կը սորվեցընէք եղեր, եւ մտքերնիդ դրեր էք ալ որ զանոնք պաշտպանէք։ Չէ՞ք գիտեր որ մենք ան էշ պապը իր ապաւառաւը մէկտեղ պրեցինք։ Անոր համար կ'աղաչեմ ու կը պաղատիմ, այնպէս վարուեցէք, ինչպէս որ կը վարուինք հոս մենք եւ ամէնքը՝ որոնք (Աւկսպուրկի) հաւատոյ դաւանութիւնն ընդունեցան... վասն զի չենք կրնար թողուլ որ մեր եկեղեցին պառէք ու բաժնէք։ Իսկ թէ որ ըրածնիդ կ'ուզէք ընել նէ՝ ուրիշ տեղ գացէք ու հոնտեղն ըրէք։ Մենք (միայն հարկը կը ստիպէ որ Լուտերին աս ամպարիշտ ու անամօթ խօսքերը կրկնենք) պապին ապաւառն ու փուքերը չենք ուզեր. դուք կերէք զանոնք։ Իսկ թէ որ խրատներուս չէք հնազանդիր ու դէմ կը դնէք, աղէկ գիտցէք որ ես ալ եղջիւր կ'առնեմ ու զձեզ սաստիկ կը խեթկեմ...։ Իշուն ապաւառն ու պապին աղբը եկեղեցիներու մէջ խոթելու ետեւէ մ'իյնաք, մանաւանդ աս քաղքիս մէջ...։ Պապը մեր սաստիկ թշնամին է, որն որ աս տեղէն մերժեցինք, եւ անոր տեղը զՔրիստոս ընդունեցանք. ինչու որ ան էշ պապը՝ իր իշական ապաւառաւը բոլոր աշխարհքին աղտոտեց. թող ինք ուտէ զանիկա ..............„21։

20. Wir wöllen des Bapsts Mist und Drecket nicht anbeten. Խօսք Ալ-ղանդ., գերմ. 425. Բ.

21. Wir wöllen des Bapsts Dreck und förtze nicht Haben. Fresset jr sie selbs... Menget uns die Eselsfürtze

Աս ամէն պիղծ, անամօթ ու ամպարիշտ խօսքերը՝ որոնք չէ թէ քահանայի հապա եւ ոչ կրթուած հեթանոսի մը բերան կը վայլեն, Լուտեր՝ կրօնի նորոգիչը, Նոր Աւետարանին առաքեալն ու մարգարէն՝ եկեղեցւոյ մէջ խօսեցաւ։ Բայց իր բարեկամներուն հետ առանձին եղած ատեն՝ վրանին աւելի անամօթ ու լիրբ խօսքեր կը խօսէր, ու անոնց գրած նամակները ասանկ եւ աւելի ամպարիշտ ու պիղծ խօսքերով լեցուն են։— Սակայն կ՚երեւայ որ Լուտերին աս ամէն ըրածները Շուրֆին ու իր կողմնակիցներուն երեւելի վնաս մը չկրցան հասցընել. ինչու որ հինգ տարի վերջը (1544ին) աւելի եւս սաստկութեամբ վրանին կը յարձակէր[22], որ է ըսել թէ դեռ նոյն ատեն անոնք հաստատուն կը կենային։

Նոյն տարիները (1539ին) Նիւռնպերկի լուտերական եկեղեցին կառավարող երէցներուն մէջն ալ զատ խռովութիւն ու երկպառակութիւն մ՚ելաւ. աս երկպառակութիւնն ալ Լուտերի գրուածներէն պատճառած էր։ Անդրէաս Օսիանտր՝ որ նոյն քաղքին առաջին լուտերական երէցն էր, ու Օսիանտրական աղանդին գլուխն եղաւ, կը քարոզէր թէ առանձնական խոստովանութիւնը ամենուն հարկաւոր է. իսկ ուրիշ իրեն հետ եղող երէցները՝ Լուտերին խօսքերուն հետեւելով՝ կ՚ըսէին թէ ամէն մարդուն կամքին ազատ թող տալու է, որովհետեւ Լուտերի վարդապետութիւնն աս էր։ Առանձին խոստովանանք ըլլալ ուզողներուն, կ՚ըսէր հերձուածապետը, արգելելու չէ, մանաւանդ թէ յորդորելու է որ ըլլան. բայց միանգամայն պէտք չէ ամենեւին մէկը ստիպել որ խոստովանանք ըլլայ. հապա պէտք է թող տալ հաւատացելոց որ եթէ կ՚ուզեն՝ մեղքերնին սրտերնուն մէջ միայն Աստուծոյ առջեւը խոստովանին. եւ թէ որ իրենք աս խոստովանութիւնը (որն որ ինք ընդհանրական խոստովանանք կ՚անուանէր) բաւական կը սեպեն նէ, հրաման կամ թող տալու է որ հաղորդուին, առանց ուրիշ բան պահանջելու[23]։

Երբ որ Լուտեր աս խռովութիւններն իմացաւ, շուտ մը նամակներ գրեց եւ երէցները յորդորեց որ իրարու հետ միաբանին, միանգամայն նոյն նիւթին վրայ իր կարծիքն ալ յայտնեց։ Բայց որովհետեւ աս թղթերն օգուտ մը չըրին եւ խռովութիւնն ու երկպառակութիւնը օրէ օր կը մեծնար, Նիւռնպերկի ծերակոյտը՝ Վիդդենպերկցիներէն խնդրեց որ նոյն նիւթին վրայ ունեցած կարծիքնին իմացընեն։ Ան ատեն Լուտեր իրեններուն

und Bapstsdreck nicht in die Kirchen . . . Der Bapst beschleußt alle welt mit seinen Eselsfürtzen, die fresse er selbs. Նոյն տեղը, 425. Ա։

22. Դարձեալ նոյն տեղը, 417. Բ։

23. Ուրիշ զանազան տեղերէն զատ՝ տես նաեւ Հրահանգք այցելութեան առ ժողովրդապետս ըսուած գրքին մէջ։ Գործք Լուտ. գերմ. Հատ. Է. 12. Բ. 13։

հետ խորհուրդ ըրաւ, եւ այսպէս պատասխան գրեց։ Թէպէտ եւ առանձին արձակումը քրիստոնէութեան շատ պատշաճ բան է եւ շատ մխիթարութիւն կու տայ, եւ անոր համար ալ կ՚ուզենք որ աս բարեպաշտ սովորութիւնը պահուի, բայց չենք կրնար եւ չենք ուզեր խղճմտանքները այնպէս ծանրաբեռնել, իբրեւ թէ միայն անով կրնայ մեղաց թողութիւն գտնուիլ։ Ինչու որ Աւետարանին քարոզութիւնը՝ լսողներուն սրտին մէջ մեղաց թողութիւն կը պատճառէ. այս ինքն՝ թէ որ հաւատացեալները սրտերնուն մէջ փախնալով՝ հաւատքով իրենք զիրենք Աւետարանին ձեռօք մխիթարեն եւ ուղղեն. անոր համար ալ Աւետարանը՝ ընդհանրական արձակում կոչելու է. եւ աս ընդհանրական արձակումը՝ քրիստոնէութենէ օտար բանի մը պէս չիկրնար արգելուիլ։ Արդ Նիւռնպերկցիներուն խրատ կու տանք որ խոստովանութիւնները վերցընելու համար՝ անանկ միջոցներ բանեցընեն, որ բանը բարեկամութեամբ լմըննայ։ Մեզի այնպէս կ՚երեւայ որ երկու կողմն ալ ժողովրդեան խրատ տալու են որ առանձին խոստովանանքը գործածեն. իսկ զՕսիանտր եւ իրեն հետեւողները ստիպելու չէ որ ընդհանրական խոստովանանքը քարոզեն, բաւական է որ ընդհանրական խոստովանանքն հերիք է լսողներուն վրայ գէշ չխօսին, եւ զանանք չդատապարտեն։ Դուք ալ նոյնպէս պէտք չէ որ իրենց վրայ գէշ խօսիք կամ զիրենք նախատէք [24]։ — Աս ամէն բաները գրեց Լութեր, ու իրմէ ուրիշ չորս հոգի ալ նոյն թղթին ստորագրելով՝ Նիւռնպերկցոց խաւրեցին։ Բայց ամենեւին գլուխ չճանչցող ու միայն իրենց խելքին հետեւող մարդիկներուն ինչ օգուտ կրնայ ընել ուրիշին խօսքն ու խրատը։ Աս գրուածքը եւ ետքէն ալ Լութերին եւ ուրիշներուն նոյն երկպառակութիւնը դադրեցընելու համար ըրած ջանքը պարապի գնաց. մանաւանդ թէ խռովութիւնները երթալով աւելցան։ Ո՞ւր դնենք որ Օսիանտր եւ իրեն հետեւողները ուրիշ շատ բաներու մէջ ալ Լութերէն տարբեր կարծիք ունէին, եւ այսպէս իրենք ալ զատ աղանդ մը շինեցին [25]։

Լութեր աս ամէն իր որդւոցը երկպառակութիւններն ու անմիաբանութիւնները տեսնելով, եւ իր եկեղեցւոյն՝ այնչափ քիչ ատենուան մէջ այնչափ աղանդներու բաժնուիլը տեսնելով՝ սաստիկ կը տառապէր եւ չէր գիտեր թէ ինչ կերպով անոնց առջեւն առնէ։ Շատ անգամ մտերիմ բարեկամներուն մէջ եղած ատեն՝ իր աշակերտներէն շատերուն ապերախտութեան ու յանդգնութեան վրայ կը տրտնջէր։ Շատ դժուարին

24. Գործք Լութ. գերմ. հատ. Է. 349. Բ. — 351։

25. Տես Ուլէնպերկ, Գլ. Լ. Համ. Ե.

բան է ինծի, կ'ըսէր, որ ծերացած ու աշխատութիւններով յոգնած ատենս՝ տեսնեմ որ հաւատքով մեզի հետ ընտանի եղողները մեզի դէմ ելլեն, ու եկեղեցիներնուս խաղաղութիւնն ու միաբանութիւնն աւրեն: Անգամ մ'ալ այսպէս խօսած ատեն՝ ըսաւ որ Պէտք է կայսրընտրին աղաչեմ որ ինծի բանտ մը տայ, որպէս զի մեր յանդուգն ու անամօթ քարոզիչները մէջը դնեմ: Վրան աւելցընելով որ Այսպէս պէտք է զսպել զանոնք՝ որոնք Աւետարանին ձեռօքը պապականութեան կապերէն ազատեցան, եւ հիմա ազատութիւննին չարաչար գործածելով՝ զանազան աղանդներու կը բաժնուին եւ ամէն կերպ մոլութիւններու մէջ կ'իյնան 26:

Բայց աս Լուտերի կենդանութեան ատեն ելլող աղանդները ոչինչ են, թէ որ իր մահուընէ ետեւ ելլողներուն հետ համեմատելու ըլլան. ինչու որ իր կենդանի եղած ատեն՝ իրեն սաստիկ բարկութիւնը ճանչնալով ու գիտնալով որ ուզածը գլուխ կը տանի եւ իրեն դէմ դնելը վտանգաւոր է, շատերը կը վախնային ու համարձակութեամբ չէին խօսեր 27: Բայց երբ որ մէյ մը իր մահուամբը աս կապէն ազատեցան՝ ալ անկէ վերջը ամէն մարդ սկսաւ արձակ համարձակ իր կարծիքը տարածել, ամէն մէկը իր մտքին ցնորքը՝ օրէնք կը համարէր, եւ Աւետարանն ու քրիստոնէութիւնը՝ իր երազածը կը դնէր: Աս բանը Լուտեր իր կենդանութեան ատեն մակաբերեց, անոր համար ալ բարեկամներուն կ'ըսէր թէ գիտեմ ես որ իմ մեռնելէս վերջը սաստիկ հերձուածներ ու հերետիկոսութիւններ դուրս պիտ'որ ելլեն, եւ իմ աշխարհք բերած Աւետարանիս լոյսը՝ մոլորութիւններու թանձր խաւարաւ պիտի նսեմանայ: Անոր համար թէ որ մէկը գտնուի որ Վիդդենպերկի համալսարանին վճիռներն արհամարհէ, պէտք է զինքը հերետիկոսի տեղ դնել ու պատժել. միայն թէ համալսարանն ալ իմ վարդապետութեանս մէջ հաստատուն մնայ 28: — Աս վերջին կտորը անոր համար դրաւ, որովհետեւ կը տեսնէր որ արդէն իր կենդանութեան ատեն Վիդդենպերկի համալսարանին վարդապետներէն շատերը զինքը կը քամահեն, եւ իր դրած օրէնքներն ու կարգադրութիւնները չպահելէն զատ՝ իր վարդապետութիւններուն հակառակ բաներ ալ կը վարդապետեն:

26. Մաթեսիոս, ճառ ԺԱ. 130՝. Բ:

27. Կուստաւ Փիցէր, Գլ. ԻԶ. 731:

28. Մաթեսիոս կը պատմէ որ Լուտեր անգամ մը իրեն տանը ըսաւ. «Մաթեսիոս, պիտի տեսնես որ աս Վիդդենպերկի համալսարանն ու եկեղեցին ինչ բաներու մէջ պիտ'որ իյնան, եւ մէջերնին ինչպիսի հերետիկոսութիւններ պիտ'որ ելլեն»: Ճառ ԺԶ. 207. Բ:

# ԳԼՈՒԽ Ը

## Լուտերական կրօնքին սրբութիւնը

Լեմնիոս անունով մէկը Վիթթենպերկեան բարուց ապականութիւնը կը խայտառակէ։ Լութեր ալ մարդը քաղքէն կը վտարէ։ Լութերական երէց մը Վիթթենպերկեան անպիտանութիւնները եկեղեցւոյ մէջ կը խայտառակէ։ Այս գործերէն հետեւութիւնը։ Հեսսէնի աշխարհակալը կամ-ար կ'ուզէ երկրորդ կին մ'առնել։ Լութեր ու Մելանքթոն ու Բուցեր հրաման կու տան։

## 1538 — 1540

ԻՆՉՊԷՍ ուրիշ անգամ գրուցած ենք, Լուտերի վարդապետութիւններուն տարածուած կողմերը սաստիկ ալ բարուց ապականութիւն ու անպիտանութիւն կը տիրէր։ Ասոր պատճառն ինք իրմէ յայտնի է. որովհետեւ երբ որ մէյ մը մարդիկ՝ Լուտերի վարդապետութեան համաձայն՝ հնազանդութեան կապը կը խզէին, եւ օրինաց լուծը վրաներնէն կը նետէին, ա՛լ անկէ վերջը բան մը չէր կրնար գտնուիլ որ մարդկային բնութեան ընտաբոյս չարութեան արգելք դնէր, եւ մէկն ալ չէր կրնար զիրենք վախցընել, որովհետեւ բուն իսկ Լուտերի օրինակէն՝ բոլոր իշխանութիւնն ու մեծերուն հրամանները ոտքի տակ առնել ու բանի տեղ չդնել սորված էին։ Եւ իրօք ալ Լուտերականներէն ամենուն մէկը իր իշխանին եւ մանաւանդ իր հոգեւոր առաջնորդին անսալ ու հնազանդիլ չէր ուզեր. նոր Աւետարանին պաշտօնեաները ամէն տեղ արհամարհուած էին, եւ ամէն մարդ Լուտերի սկզբունքին հետեւելով ինքը զինքը վարդապետի տեղ կը դնէր, իրեն անձին առաջնորդ ըլլալու բաւական կը սեպէր, եւ ուրիշ առաջնորդի հարկաւորութիւն ունենալը չէր ուզեր ճանչնալ[1]։ Բայց բարուց ապականութիւնը՝ ամէն տե-

1. Աս հոգեւոր իշխանութեան արհամարհուիլը, ինչպէս ըսինք, բուն իսկ լուտերական կամ բողոքական կրօնքին սկզբունքէն եւ առաջնորդներէն կը ծագէր։ Որովհետեւ երբ որ առաքեալներէն յաջորդութեամբ եկած եկեղեցական իշխանութիւնը մէյ մը արհամարհուած ու անարգուած էր, ինչպէս կրնար ըլլալ որ ան բողոքող երէցներուն՝ իրենք իրենցմէ առած իշխանութիւնը պատիւ ընդունէր ու հաստատուն ըլլար։ Եւ երբ որ մարդիկ իրենց կրից ետեւէն երթալով ու ազատութեան բաղձալով՝ Քրիստոսի օրէնքը մէյ մը վրանէրնէն նետեցին, ինչպէս կրնար ըլլալ որ նորէն մէյ մ'ալ նոյն լծին տակ մտնեն։ Լսենք մէյ մը թէ ինչպէս Կալվինոս՝ որն որ Սդրասպուրկի Նորոգեալ եկեղեցւոյն առաջնորդութեան մէջ Բուցերին ընկերն էր, իր ժողովրդեան վրայ կը տրտնջէ։ «Պաշտօնեաներուն իշխանութիւնը, կ'ըսէ, բոլորովին եղծուեցաւ. ամէն բան դէպ ի կորուստ կը դիմէ, ամէն բան դէպ ի կործանում կ'երթայ։ Մեկերնիս ես ո՛չ մէկ եկեղեցի կայ, որուն մէջ կարգաւորութիւն գտնայ։ . . . Ժողովուրդն ալ ա՛լ համարձակ մեզի այսպէս կ'ըսէ. Դուք կ'ուզէք բռնաւոր ըլլալ եկեղեցւոյ՝

ղէն առեալ էր Վիտգենպերկի մէջ, որ Նորոգութեան կենդրոնը կը սեպուէր։

Նոյն քաղաքը Սիմոն Լեմնիոս անունով բանաստեղծ մը որն որ ազատ է. «Նոր պապականութիւն մը կ'ուզէք կանգնել։... Աստուած ինծի կը ցուցընէ որ Հովիւ ըլլալն ինչ է, եւ թէ ինչ մեծ անիրաւութիւն ըրինք եկեղեցւոյն՝ մեր ան յանդուգն դատաստանովը ու անմտական սատանկութեամբը՝ որով զպապը մերժեցինք։ Ինչու որ ժողովուրդն անսաստկութեան վարժելով եւ գրեթէ անոր մէջ սնանելով՝ սանձը բոլորովին վրայէն մերժեց, իբրեւ թէ մենք պապականներուն իշխանութիւնը եղծանելովնիս՝ խաբհաւրդներուն ու պաշտօնէից զօրութիւնն ալ եղծած ըլլայինք։ Եկեղեններնես վեր պայծես կը պոռան. Եւ Աւետարանը բաւական կը ճանչնամ. զՅիսուս Քրիստոս ճանչնալու համար ձեր օգնութեան կարօտութիւն չունիմ։ Գացէք անոնց քարոզեցէք՝ որոնք ձեզի ականջ կախել կ'ուզեն»։ Առ Պոսիւէ, Գիրք Ե. Հատ. Է։

Նոյն բանը Լուտեր ալ կը զրուցէ. «Նաեւ ազնուականներուն մէջ շատ անպիտան մարդիկ կը գտնուին, կ'ըսէ, որոնք կը զրուցեն թէ ասկէ վերջը ոչ ժողովրդապետ, ոչ քարոզիչ պէտք է. արդէն ամէն բան գրքերուն մէջ կայ, եւ ամէն մարդ ինք իրմէ կրնայ սորվիլ։ Ասով... թէ՛ ժողովրդապետները եւ թէ՛ քարոզիչները մեծ կարօտութեան մէջ կ'իյնան եւ անօթութիւն կը կրեն»։ Գործք Լատ. Երրմ. Հատ. Դ. 427։

Ասանկ կը տրտնջէին Կալվինոս եւ Լուտեր, բայց ամենեւին իրաւունք չունէին. ինչու որ ժողովրդին ատ գործքերն ու խօսքերը՝ իրենց առաջնորդներուն ընթացքին եւ անոնց քարոզած սկզբունքներուն կատարեալ համաձայն էին։ Եւ իրօք ալ, թէ որ կանոն հաւատոյ՝ միայն Ս. Գիրքն է, թէ որ ամէն մարդ Ս. Գիրքը կրնայ հասկընալ, թէ որ ամէն մկրտեալ մարդ՝ քահանայ է ու մեղքերը կրնայ արձակել, թէ որ քահանայք ձեռնադրութեամբ աւելի կը պղծուին քան թէ կը սրբուին. ... ապա ուրեմն ժողովուրդը՝ քահանայի, երիցու, պաշտօնէի, հովուի ինչ կարօտութիւն ունի։ Անոր համար կամ պէտք է նոյն սկզբունքները վերցընել կամ անկէց ելած ին-քեան ծագած հետեւութիւններն ալ ընդունիլ։

Բաներն ան աստիճանի հասան որ Մենցլին բանծնին պէս (Հատ. Ա. Գլ. ԺԴ. 482, 483.) ժողովուրդն ու իշխանները «որպէս զի ապահով ըլլան որ ժողովրդապետները իրենց կը հնազանդին... քարոզիչներնին դաշինքով կ'առնէին եւ որոշեալ ժամանակի մը համար կը բռնէին, եւ ան ժամանակին անցնելէն ետեւ, թէ որ անոնք (խստութիւն բանեցընելով կամ ուզածնին ընելով) աժդահութիւն պատճառած ըլլային նէ՝ պէտք էր որ ելլէին երթային»։ Ասոր ընելէն ետեւ ծանօթութեան մէջ կը պատմէ որ Նիւռնպերկ քաղաքը Լուտերին բարեկամներէն մէկը եօթը տարուան համար վարձքով բռնուած էր, եւ ուրիշ մէկու մը օրինակը կը բերէ, որուն դեռ դաշինքով որոշեալ ժամանակը չլմընցած՝ բռին որ տասնուհինգ օրուան մէջ ելլէ երթայ։ — «Բայց, կ'ըսէ Մենցլ, (Վերը յիշուած տեղը) ասանկ դաշինք ալ չըլլար նէ, որովհետեւ Լուտեր իր գործողութիւնները սկսելու ատեն՝ իշխաններուն յանձնած էր որ (ժողովրդապետներուն) վարդապետութեան յստակութեան վրայ հսկեն, մանաւանդ թէ ատ բանը իրենց պարտք դրած էր, անոր համար ասով եկեղեցականաց բոլորը իշխաններուն ձեռքն էր, ուստի եւ միայն... հերետիկոսական կարծուած կարծիքներու համար... աշխարհական իշխանները կամ դատաւորները զիրենք կը մերժէին, կամ նաեւ դատաստանի կը կանչէին եւ իբրեւ հասարակ չարագործ կը պատժէին»։ Ասոնք գրելէն ետքը՝ ծանօթութեան մէջ երեւելի բողոքող մատենագրէ մը (Բլանքէն) առած՝ կը պատմէ թէ 1530ին Յովհաննէս կայսրընտրին ատենը՝ գրեթէ Լուտերին աչքին առջ՝ ամենէն յարգուած քարոզիչ մը, որն որ Լուտերին ալ սիրելի էր, կայսրընտրին հրամանաւը առանց ամենեւին եւ ոչ փոքր քննութեան մը՝ բանտ դրուեցաւ եւ հոն իբրեւ չարագործ մեռաւ, որուն պատճառն ան էր՝ որ վրան ձայն մ'ելած էր թէ Երրորդութեան վրայ սխալ

կար, որն որ ան ատենները քերթուած մը տպել տալով՝ զլու-
տեր իրեն դէմ ելլելու գրգռեց: Լուտերին՝ ասոր դէմ ելլե-
լուն ու հետը թշնամանալուն երկու պատճառ կար. մէյ մը որ
Լեմնիոս իր բանաստեղծութեան մէջ Վիդդենպերկեցոց սաստիկ
ապականութիւնն ու խառնակ վարքը կը խայտառակէր. եւ եր-
կրորդ որ Մոգունտիայի արքեպիսկոպոսին մեծամեծ գովեստներ
կու տար: Արդ Լուտեր ամենասուրբ Երրորդութեան տօնին օրը
(1538ին) աս բանաստեղծին դէմ եկեղեցւոյ մէջ խիստ խօսք
մը խօսեցաւ, եւ ետքը անոր տպագրութեան վճիռը կարդաց,
որն որ արդէն տպուած էր: Նոյն վճռոյն մէջ Լուտեր այսպէս
կը զրուցէր: Անպիտան մարդուն մէկը հոգեգալստեան օրերը
քանի մը վերտառութիւն տպել տուաւ. արդ աս գրուածքը
մեր քաղքին մեծարգոյ բնակիչներէն ոմանց դէմ ստութիւննե-
րով ու նախատական խօսքերով լեցուած է: Անոր համար ա-
սոնք գրող անօրէնը՝ թէ որ ձեռք իյնայ նէ՝ դահճի ձեռքով
կեանքը կորսնցնելու արժանի է: Եւ որովհետեւ ես փաստէրին՝
մեր քաղքին ժողովրդապետին փոխանորդն եմ, անոր համար՝
որպէս զի լռելով անօրէն ամպարշտութեան հաղորդ չսեպուիմ՝
ձեզի հետ մէկտեղ մի եւ նոյն վարդապետութիւնն ու նոյն
հաւատքն ունեցողներուն կ'աղաչեմ որ ան գրուածքը մերժեն
եւ այրեն: Բայց որովհետեւ ան անամօթ ու լիրբ մարդը՝ զա-
տանան ալ (Մոգունտիայի արքեպիսկոպոս կայսրընտիրը կ'իմանայ)
սուրբի պէս գովութեամբ կը բարձրացընէ, չեմ կրնար համ-
բերել որ աս բանս Վիդդենպերկ քաղքին ու համալսարանին
մէջ պատահի, որովհետեւ ան պիղծ եպիսկոպոսը[2] խաբե-

կարծիք ունի: Բայց երբ որ ետքը քննութիւն եղաւ, տեսնուեցաւ որ ամենեւին ասանկ կարծիք չունի եղեր: Խօսքը կը լմընցընէ ըսելով որ աս մարդս երկու տարի վերջը կաթուղիկէ եկեղեցւին դարձաւ, եւ լուտերականութեան սաստիկ հակառակորդներէն մէկն եղաւ:

Թէպէտ եւ լուտերական երէցները խոստովանանքի վրայ շատ թուլութեամբ կը խօսէին, ի վերայ այսր ամենայնի ան պահել ուզած կապանքներնուն վրայ իշխանին մէկը ան աստիճան նեղացաւ որ, Մելանքթոնին պատմածին նայելով՝ խնճոյքի մը մէջ ("Ինչու որ, կ'ըսէ Մելանքթոն, իշխանները՝ միայն խնճոյքի մէջ աստուածաբանութեան վրայ կը խօսին,) ըսաւ թէ Աս բանիս սաստիկ դէմ դնելու է. պէտք է որ ամէնքնիս մէկտեղ զգուշանանք որ դրան ազատութիւննիս ձեռքերնես չյափշտակեն չառնեն. ապա թէ ոչ՝ զմեզ նոր գերութեան տակ կը ձգեն, ու կամաց կամաց հին աւանդութիւնները կը նորոգեն,,: Առ Գաօխէ, Գիրք Ե. Հատ. ԺԱ:

Արդ ինչպէս կրնային ասանկ ժողովրդապետներն ու եկեղեցական առաջնորդները՝ որոնց կեանքն ու պահպանութիւնը, ինչպէս նաեւ իրենց տունն ու ընտանեացը պահպանութիւնը՝ ժողովուրդներնուն ձեռքն էր, զանոնք բան պատուէրի խրատել, յանդիմանել, սաստել, պատուհասել, որն որ բառ Առաքելոյն ամէն հովուի առաջնորդին պաշտօնն է: Եւ թէ որ եկեղեցականները իրենց պաշտօնը չէին կատարեր, ինչպէս կրնար ըլլալ որ ժողովրդեան բարքը սաստիկ չապականէր:

2. Պիղծ եպիսկոպոս կամ պիղծ չքահանայ ըսածներնուս բուն դէմ-

բայց ու նենգաւոր մըն է, որն որ զիս ու իմ աշակերտներս՝ Լուտերական սատանայ կ՚անուանէ։ Արդ դարձեալ նորէն ամենուն եւ մանաւանդ բանաստեղծներուն ու արքեպիսկոպոսին շողոքորթներուն կ՚աղաչեմ որ չըլլայ թէ մէյ մ՚ալ ան պիղծ չքահանան Վիդդենպերկի եկեղեցւոյն կամ քաղաքին կամ համալսարանին մէջ հրապարակաւ գովեն, ապա թէ ոչ՝ կը տեսնէք որ ես ալ անոր փոխարէն ինչ կ՚ընեմ։ Ամենեւին չեմ ուզեր որ իրենք զիրենք դատապարտութեան տակ ձգողները, որոնք զիս ու իմ աշակերտներս մեռցնելու յօժարութիւն ունին, հոն Վիդդենպերկի մէջ գովուին [3]։

Լուտերի՝ ժողովրդեան առջեւ խօսած խօսքը եւ տուած տարագրութեան վճիռը Լեւոնիոսին ականջն հասնելուն պէս՝ իրեն անձին ջատագովութիւն մը դուրս հանեց, որուն մէջ կը սպառնար որ եթէ Վիդդենպերկցիք իրեն դէմ հանած տարագրութեան վճիռնին չվերցընելու ըլլան նէ, ինքն ալ անոնց բարուց ապականութեան վրայ ուրիշ շատ բաներ կը գրէ։ Եւ ասիկա ինծի դիւրին բան մըն է, կ՚ըսէ, վասն զի շատ ատեն Վիդդենպերկ կեցած ըլլալով՝ ամէն բան աղէկ գիտեմ։ Լուտեր եւ Վիդդենպերկցիք աս սպառնալիքէն վախնալով՝ ձայներնին քաշեցին. եւ թէպէտ տարագրութեան վճիռը չվերցուցին, բայց ի գործ դնելու ետեւէ իյնող ալ չեղաւ [4]։

Աս պղծութիւններն ու բարուց ապականութիւնը երթալով այնպէս կը սաստկանային, որ. քանի մը ամիս վերջը նոյն իսկ լուտերական երէց մը եկեղեցւոյ մէջ քարոզ տալու ատեն՝ Լեւոնիոսէն աւելի սաստկութեամբ Վիդդենպերկցիները աս բաներուն վրայ յանդիմանեց, եւ մանաւանդ կանանց վրայ խիստ դէշ խօսեցաւ։ Աս ալ բաւական չէ, առաջնորդներուն եւ մանաւանդ Փոմերին անհոգութեան վրայ տրտունջ ըրաւ։ Ասոր վրայ շատ նեղացան քաղքին կանանցմէ քանի մը հոգի, որոնք իրենք զիրենք այսպիսի դէշութիւններէ ազատ կը սեպէին։ Ասոնցմէ ոմանք, որոնց մէջն էին Փոմերին ու Յուստոսին կանայքը, իբրեւ իրենց անմեղութեան վկայ՝ էրիկնին հետերնին առած՝ Լուտերին վրայ գացին, եւ ան երիցուն դէմ սաստիկ քանքատեցին որ բեմին վրայէն առանց զանազանութեան բոլոր քաղքին կանանց վրայ դէշ խօսեցաւ։ Լուտեր իրենց անանկ պա-

մաներէն ակզբնագիրը Scheißbischof կամ Scheißpfaff է, որն որ Լուտերին Գործոց լատիներէն թարգմանութեան մէջ cacando maculatus Episcopus կամ Sacerdos թարգմանուած է։ Զենք ուզեր հայերէն լեզունիս պղծել աս պիղծ ու անամօթ բառերը հայերէն թարգմանելով։

3. Գործք Լուտ. գերմ. Հատ. Զ. 568. Բ։

4. Ուլէնպերկ, Գլ. ԻԸ. Համ. Զ։ Տես նաեւ Մաթեսիոս, Ճառ ԺԱ. 128, ու Սէքենտորֆ, Գիրք Գ. Համ. ԿԸ. 197, 198։

պատասխան մը տուաւ, որմէ մակաբերեցին թէ ինքն ալ երիցուն ըրածը կը հաւնի ու հետը կամակից է։ Փոմեր աս լսելով՝ սաստկութեամբ Լուտերին դէմ խօսեցաւ, ու պնդեց որ ան երէցը չէր կրնար արդարանալ եւ կանայք մեծապէս իրաւունք ունին իրեն դէմ տրտնջելու։ Լուտեր քիչ մ'ալ խօսելէն ետեւ՝ տեսնելով որ բանը գէշի կ'երթայ, խօսքը ծիծաղի դարձուց եւ ըսաւ որ կատակելու համար ուզեցի երէցը պաշտպանել։ Բայց այնպէս չէր, հապա որովհետեւ անոր ըսածներուն ստոյգ ըլլալը գիտէր, կամ գուցէ ինքն էր երէցը դրդողը որ խօսի, անոր համար ալ սկզբան ուզեց անոր ըրածը պաշտպանել, բայց ետքը վախնալով որ ամէնքը հետը կը թշնամացընէ, խօսքն ուրիշ տեսակ դարձուց[5]։

Նոյնպէս չարիքն օրէ օր կը մեծնար ու Նոր Աւետարանին աշակերտները միշտ աւելի կ'անպիտաննային. կամ՝ Մաթեսիոսին խօսքերովը գործածելու համար՝ "Սատանան անոր (Լուտերին) թեմին մէջ գայթակղութիւն գայթակղութեան վրայ պատահել կու տար,,[6]։ Եւ թէպէտ Լուտեր եւ աղանդին ուրիշ գլխաւորները չէին ուզեր խոստովանիլ որ աս չարիքն իրենց աշխարհք բերած ազատութեան պտուղն է. բայց իրենք ալ շատ անգամ գրքերնուն ու խօսքերնուն մէջ յայտնի կ'ըսէին որ Աստուծոյ խօսքը (Լուտերի մոլորութիւնները) քարոզուելու սկսելէն վեր՝ մարդիկ պապականութեան ատեն եղածներնէն աւելի անպիտանցան ու գէշցան[7]։ Ասոր վրայ ալ կը տրտնջէին որ ամէն մարդ բերնով միշտ Աստուծոյ խօսքը, Աստուծոյ խօսքը՝ կ'ըսէ, բայց սրտին մէջ ոչ Աստուծոյ խօսքը կը յարգէ, եւ ոչ ալ վարքը Աստուծոյ խօսքին համաձայնցընելու կը ջանայ. հապա մանաւանդ Աստուծոյ խօսքը պատրուակ առնելով՝ ամէն կերպ չարիքը կը գործէ[8]։ Լուտեր շատ անգամ իր մտերիմ բարեկամնե-

5. Ուլէնպերկ, Գլ. ԻԸ. Համ. Զ։

6. Ճառ ԺԴ. 171. Բ։

7. Բաւական կը սեպենք հոստեղ Լուտերին մէկ վկայութիւնը դնել։ "Աս քարոզութիւնը (այս ինքն թէ առանց գործոց՝ միայն հաւատքը կ'արդարացընէ) պէտք էր որ, կ'ըսէ, մարդիկ մեծ ուրախութեամբ լսէին ու ներքին շնորհակալութեամբ ընդունէին, անով աղէկնային եւ միանգամայն եռանդոտ ըլլային։ Բայց դժբախտութեամբ ասոր հակառակը կ'ըլլայ, եւ որչափ որ յառաջ կ'երթըցուի՝ աշխարհս աս վարդապետութեամբ՝ աւելի գէշ, աւելի անառակ եւ աւելի չար կ'ըլլայ. ի վերայ այսր ամենայնի ասիկա վարդապետութեան յանցանքը չէ, հապա մարդիկներուն։ . . . Թէ որ յառաջագոյն մարդիկ մէկ սատանայով դիւահարեալ էին նէ՝ հիմա եօթը սատանայով դիւահարած են։ Հիմա սատանան բազմութեամբ՝ մարդկան մէջ կը մտնէ, անանկ որ Աւետարանին պայծառ լուսոյն տակ աւելի ագահ, աւելի նենգաւոր, աւելի շահախնդիր, աւելի անողորմ, աւելի անկարգ, աւելի յանդուգն, աւելի գէշ են, քան թէ պապականութեան տակ,,։ Առ Մենցլէ, Հատ. Բ. Գլ. Ը. 167։

8. Լուտեր իր զանազան բարեկամներուն այսպէս կը գրէ. "Աս

րուն հետ առանձին եղած ատեն՝ ատոր վրայ դառն արցունք կը թափէր ու կը ջանար որ առջեւն առնելու հնարք մը գտնէ, բայց փուճ տեղ։ Կ'ուզէր որ նորէն մէջերնին խօսէ եկեղեցական պատիժները՝ նզովքն ու հաղորդութենէ կտրելը՝ որոնց որ իսկզբան սաստիկ դէմ խօսած էր, մինչեւ յանդգնած էր ըսելու որ քրիստոնեայ մը հաղորդութենէն կտրուելուն կամ նզովուելուն վրայ պէտք է որ ուրախանայ․ բայց ամենուն մէկը յանձն չէր առներ որ Լուտերի առաջնորդութեամբ եկեղեցւոյ իշխանութենէն դուրս հանած վիզը նորէն իր կամօքը եկեղեցական իշխանութեան տակ ձգէ [9]։ Եւ ինչպէս ալ կրնային յանձն առնել․ որովհետեւ շատերը, չըսենք ամէնքը, անոր համար Նոր Աւետարանին ետեւէն կ'երթային, որպէս զի հանգիստ խղճով ցանկութիւննին կատարեն ու ազատ համարձակ մոլութիւններնուն ծառայեն [10]։ Անոր համար ալ Լուտեր, որպէս զի

մեր խուժանէն աւելի մէկը ինծի նեղութիւն չէտար․ ասոնք Աստուծոյ խօսքը ամենեւին բանի տեղ չեն դներ, կամ միայն բերաննին կը պարպեն ու ականջնին կը հնչէ բայց սրտերնուն մէջ չի մնար․ ամենուն հոգերնին չէ հաւատքն ու սէրը, որոնցմով միայն քրիստոնեան քրիստոնեայ կ'ըլլայ։ Քրիստոնեայ ըլլալնին կը դնեն միայն աւելորդապաշտութիւնը բանի տեղ չդնելու մէջ․ այս ինքն՝ տկարներուն առջեւ միս, պանիր ու կաթ կ'ուտեն, երկու տեսակով կը հաղորդուին, ան ալ խորհուրդը իրենց ձեռօքը ճաշակելով, պահք չեն պահեր, աղօթք չեն ըներ, մեղքերնին չեն խոստովանիր ու պատկերները կը խորտակեն„։ Ա—Տը Վէթթէ, Հատ․ Բ․ 152, 159, 162, 177, 275։ Բայց աս տրտունջը՝ միայն խուժանին կամ ժողովրդեան վրայ չէր ըներ, հապա ընդհանրապէս ամենուն եւ առանձինն քարոզիչներուն եւ առաջնորդներուն վրայ ալ․ "Մենք, կը գրէ Լուտեր, Աւետարանը՝ միայն խօսքով ունինք, չէ թէ զօրութեամբ կամ գործքով, եւ աւելի գիտութեամբ կը հպարտանանք քան թէ սիրով կը շինուինք։ Խօսքին զօրութիւնը ի մեզ կամ դեռ ամենեւին ծածկուած է, եւ կամ շատ քիչ կը գտնուի, որուն վրայ շատ կը զարմանամ։ Մենք նոյներն ենք՝ ինչ որ յառաջագոյն էինք․ խիստ, խօսք չհասկցող, անհամբեր, յանդուգն, գինեմէր, հեշտասէր, կռուասէր, մէկ խօսքով քրիստոնէին որոշիչ նշանը՝ սէրը՝ ամենեւին տեղ մը չ'երեւար„։ Տը Վէթ․, Հատ․ Բ․ 154, 175։

9․ Աս Վիդդենպերկցոց անպիտանութիւնը ան աստիճանի հասաւ որ Լուտեր ալ չկրնալով համբերել՝ զիրենք թող տալու ուրիշ տեղ գնաց։ Տէօ Մոլէօնօ, Ճառ ԺԴ․ 171․ Բ։ Մէնցլ, Հատ․ Բ․ Գլ․ ԺԹ․ 421։

10․ Պատշաճ կը սեպենք հոս տեղը դնել երեւելի բողոքող մատենագրի մը՝ Յովհաննէս Սաքսոնիայի կայսրընտրին վրայ գրածը, որմէ որ ըսածնիս աւելի եւս հաստատութիւն կը գտնէ։ "Ստոյգ է, կ'ըսէ, կայսրընտիրը՝ Լուտերին ձեռք զարկած բոլոր կրօնական բաները գլուխ հանելու կամք ունէր, ստուգիւ անոր վարդապետութեան եւ անձին նախանձախնդիր էր … բայց այս ամենայն բոլորովին մոռնալով մէջ ալ բերել մը յառաջ խօս էր։ Նոր հաւատքին ճշմարտութեան վրայ (ստոյգ է առանց անձնական քննութեան) որոնց համոզուած էր․ սակայն միայն ճշմարտութիւնը իր վրայ այնպէս զօրաւոր ազդեցութիւն չէր կրնար ընել, որ նոյն ճշմարտութեան համար երեւելի բանի մը ձեռք զարնէր, թէ որ ուրիշ պատճառներ զինքը չստիպէին։ Իր աստուածաբաններուն՝ զինքը իբրեւ Աստուծոյ գործքին պաշտպան եւ Աւետարանին խոստովանողը հռչակելնուն վրայ կ'ուրախանար, չէ թէ անոր համար որ իր ունայնասիրութիւնը անով

զիրենք իրմէ եւ իր Աւետարանէն չհեռացընէ, շատ անգամ եւ ոչ ձայն հանելու կը համարձակէր[11]։ Ասոր շատ օրինակներ կրնայինք բերել. բայց ամենէն աւելի յարմար է Հեսսենի աշխարհատէր կոմսին օրինակը, որն որ մէջի զանազան պարագաներուն համար լսելու արժանի է, ու բողոքական կրօնին սըրբութեան եւ Լուտերին աւետարանական վարդապետութեան վրայ պայծառ գաղափար մը կրնայ տալ։

Պատմութիւններնուս ընթացքին մէջ շատ անգամ տեսանք որ աս իշխանը Լուտերին վարդապետութեանց ինչպէս սաստիկ պաշտպան էր։ Ասոր պատճառը բողոքողներուն հարցընելու ըլլանք նէ՝ կ'ըսեն որ ներքուստ ճշմարտութենէն համոզուած ըլլալով եւ աստուածային նախանձով վառուելով՝ կ'ուզէր որ պա-

կը յաղթեմ, սրտմտեցաւ ան մեծութիւնը իր վրան այնչափ զօրութիւն չունէր. հապա անոր համար որ ուրիշ շատ գործքերը թուլութեամբ մէկդի թող տալուն եւ չխակել չուզած ... յանցանքներուն վրայ խղճին մէջ զգացած անհանգստութիւնն ատով հանդարտեցընէ։ Պատուական Յովհաննէսը կը կարծէր որ իր քանի մը սիրելի ակարութիւններուն վրայ կրնայ աչք գոցել, օրինակի համար հանքէօտ հանքէօտ [illegible] [illegible], թէ որ կարենայ ինք իրեն ըսել կամ ուրիշներուն ըսել տալ որ աստուածոց Աւետարանին համար գործք մը գործած է. անոր համար ալ Լուտերին կամ իր պալատին երիցուն իրմէ ամէն պահանջածները կատարելու պատրաստ էր։ Բայց աս պատրաստականութիւնը սահման ունէր, եւ աս բանս արդէն նոյն պատրաստականութեան բղխած աղբիւրէն կրնայ մակաբերուիլ։ Պատուական կայսրընտիրը մէկ կողմանէ միայն անանկ բաները կ'ընէր, որոնց կատարումը իրեն շատ դժուարութիւն մը չէր պատճառեր ... մէկալ կողմանէ ալ շատ դիւրին էր իր արդէն սկսած մէկ գործքն ալ դադրեցընել տալ։ Բաւական որ իր պալատականները ... մէկ բանի վրայ տրտունջ ընէին, անմիջապէս եռանդը կը մարէր. եւ աս բանս պալատականները շատ աղէկ կը գործածէին։ Թէ որ Լուտերին՝ ու կայսրընտիրին առաջարկած մէկ բանը՝ պալատականներուն կարծեաց կամ շահին դէմ կ'ըլլար նէ, բաները այնպէս կը դարձընէին, որ կայսրընտիրին տուած խոստումն ալ առանց կատարուելու կը մնար։ Ասիկա դժբախտութեամբ հասարակօրէն անանկ բաներու մէջ կը պատահէր, որոնց մէջ իր գործակցութիւնը շատ հարկաւոր էր, ... որովհետեւ գրեթէ միշտ ան ատեն կ'ըլլար, երբ որ Լուտեր եկեղեցական ընչից գործածութեան կամ կարգի դրուելուն վրայ առաջարկութիւն կ'ընէր։ Ան բանս կայսրընտիրին հաւատալու բաներուն մէջ ամենէն երեւելին ու ամենէն հարկաւորն էր. բայց Լուտերին ըրած առաջարկութիւնները՝ ազնուականաց ու պալատին (կայսրընտիրին եւ իր պալատականներուն) խորհրդոցը դէմ էին. ան շփոթութիւնները՝ որոնց մէջ եկեղեցական ինչքերը կը գտնուէին՝ Լուտերին առաջարկած կարգաւորութիւններէն աւելի աղէկ կը յարմարէր իրենց։ ... Ասոր տեղը լեցընելու համար իշխանը պատրաստ էր Լուտերին ուրիշ ամէն պահանջածներն ընելու ... բայց ատով Լուտերին գործքն առաջ չէր երթար,,։ Բլանք, Գէրք Զ. Հատ. Բ. 344. — 346։

11. Շատ կը ցաւիմ, կ'ըսէր Լուտեր, որ "Թեթեւամիտ եւ անպիտան մարդիկներ աղտոտ խողերու պէս՝ առանց հաւատքի, առանց միտքի՝ (Աւետարանին) մէջը կը մտնեն, մինակ նոր բաներով զուարճանալու համար, եւ անմիջապէս երբ որ նոր ըլլալէն կը դադրի՝ կը սկսին զզուիլ ... Եւ թէպէտ բարկութենէս ճաթելիքս կու գայ, բայց դէրէ է որ ղէրէնտ փանէմ՝ ինէ որ չէմ ուզէր որ Աւէտարանը էս էմ յէտօէս քործանէմ,,։ Աւ— Տը Վիտէ, Հատ. Բ. 546։

պակաս աւելորդապաշտութիւնները վերցուին եւ ամէն մարդ նոր ծագած շնորհաց համնակից ըլլայ[12]։ Իսկ թէ որ նոյն ժամանակուան մատենագիրները քննելու ըլլանք նէ՝ շատերը կ'ըսեն թէ աս իշխանը ինքը զինքը սաստիկ անարժան պղծութեանց տուած էր, որով կը տեսնուի թէ անանկ եռանդնոտ աստուածապաշտ չէր կրնար ըլլալ։ Բայց օտար պատմագրաց վկայութեան կարօտութիւն չունինք, արդէն ինք անձամբ աս բանին ճշմարտութիւնը կը հաստատէ, ինչպէս քիչ մը ետքը կը տեսնենք։ Արդ՝ ասկից ուրիշ ինչ պատճառ հարկ է փնտռել անոր Լուտերին վարդապետութիւններուն սաստիկ ջատագով ու պաշտպան ըլլալուն. վասն զի յայտնի կը հետեւի որ աս վարդապետութեանց անոր համար ետեւէն կ'երթար, որովհետեւ անոնցմով կրնար խիղճն հանդարտեցընել, եւ կ'առնէր ուղղափառ վարդապետութիւնը՝ որն որ իր մոլութիւնները կը դատապարտէր։ Ասիկա ըրած բոլոր պլանդակութիւններուն վրայ աս ալ աւելցուց որ ունեցած կնոջմէն զատ՝ երկրորդ կին մ'ալ առաւ. բայց աս պլանդակութիւնը չըրած՝ ուզեց իր հոգեւոր առաջնորդներուն հաւանութիւնն առնել։ Անոր համար եղաւ Բուկերին ձեռքովը Լուտերին նամակ մը գրեց, որուն համառօտութիւնն աս է[13]։

12. Ռոպէրթ կը պատմէ որ 1524ին անգամ մը աս իշխանը Մելանքթոնին պատահելով՝ հաւատոյ վրայ իրեն քանի մը հարցմունքներ ըրաւ, ու պատասխանն առնելով՝ գրով ալ ուզեց, եւ աս գրուածքը կարդալով՝ նոր վարդապետութիւններուն մէջ աղէկ հաստատուեցաւ։ Ասոնք պատմելէն ետեւ՝ խօսքն այսպէս յառաջ կը տանի. "Օրէ օր նոր վարդապետութեան սկզբունքն մտացը աւելի եւս կը թափանցէր. եւ արդէն երկրորդ տարւոյն սկիզբն ըսաւ որ Աւելի կ'ուզեմ մարմնոս, կեանքս, երկիրս, մարդիկներս կորսնցընել, քան թէ Աստուծոյ խօսքէն հեռանալ"։ Գիէր Գ. Գլ. Ե. Հատ. Բ. 177։ — Ասանց կարծեաց՝ գործած պղծութիւնները աս թափանցած վարդապետութիւններուն պտուղն էր։ Բայց թէ աս թափանցած վարդապետութեանց մէջ ինչչափ հաստատուն էր՝ անկից յայտնի է որ պատմելու անօրէնութիւններ գործելէն վերջը՝ վախնալով որ կայսրը աս բանիս համար զինքը չպատժէ, կ'ուզէր կրօնական նիւթերու մէջ իրեն տեղի տալով՝ հետն հաշտուիլ։ Ասիկա կը պատմէ Մենցլ (Հատ. Բ. Գլ. Թ. 192.) որն որ մէկտեղ ամէն առթի մէջ աս իշխանին՝ աւետարանական ճշմարտութեան մէջ ունեցած հաստատութիւնը մինչեւ երկինք կը բարձրացընէ.

13. Աս գէպքս մինչեւ վերջը գրեթէ բառ առ բառ այսպէս կը պատմէ Մենցլ (Հատ. Բ. Գլ. Թ. 179. — 192.), որն որ աշխարհատեր կոմսին թղթին ու Լուտերին տուած պատասխանեայն մեծ մասը կը դնէ։ Աւելի համառօտ բայց բաւական հաւաստարմութեամբ կը պատմէն Սեքէնտորֆ (Գիէր Գ. Հատ. ՀԹ. Յաւել. Գ. 277. — 281.), Կուստաւ Փիցեր (Գլ. ԻԶ. 759. — 764.) ու Ռոպէրթ (Գիէր Է. Գլ. Է. Հատ. Դ. 256. — 263.). իրենց ջատագովելու համար հնարած պատճառներուն ալ աղէկ մէկ գրած են։ Տես նաեւ Պօսիւէ. Գիէր Զ. Հատ. Ա. — Ժ. Նոյն Զ. Գրքին վերջը աշխարհատեր կոմսին թուղթն ու Լուտերին տուած պատասխանը բառ առ բառ գրուած են։ Պատասխանը կայ նաեւ առ Տը Վեդի, Հատ. Ե. 236։

Մ երբեմն հիւանդութեանս ժամանակէն հոգւոյս բաներուն վրայ սկսայ մտածել, եւ մանաւանդ անոր վրայ որ ամուսնութենէս ետքը շաբաթ վերջը անօրէն պղծութիւններու մէջ իյնալու սկսած էի: Շատ անգամ քարոզիչներս խրատ կու տային որ խորհուրդներու մերձենամ. բայց ես որովհետեւ չարիքներէս չէի ուզեր հեռանալ, անոր համար ալ հաղորդութիւն առնելու չէի համարձակեր, որ չըլլայ թէ իմ անձիս դատաստանն ուտեմ եւ ըմպեմ....: Անոր համար մտադրութեամբ հին ու նոր կտակարաններուն մէջ փնտռեցի, եւ աս բանին ուրիշ ճար մը չգտայ, բայց եթէ ան՝ որն որ Աստուած Իսրայելացւոց թոյլ տուած է, այս ինքն շատ կին ունենալ. ինչպէս որ կը կարդանք թէ Աբրահամ, Յակոբ, Դաւիթ, Սողոմոն եւ ուրիշներն ըրին, որոնք որ գալու Քրիստոսին կը հաւատային, եւ Պօղոս առաքեալն ալ զիրենք կը գովէ....: Գիտեմ ես որ Լուտեր ու Մելանքթոն՝ Անգղիայի թագաւորին խրատ տուին որ իր կնոջմէն չբաժնուի, հապա անկից զատ՝ ուրիշ մ՚ալ առնէ[14]:... Ես ասկէ վերջը ալ սատանային կապանքին մէջ մնալ չեմ ուզեր, եւ չեմ կրնար ու չեմ ուզեր ուրիշ կերպով ասկից ազատիլ, բայց եթէ ունեցած կնոջմէս ուրիշ կին մ՚ալ առնելով: Անոր համար Լուտերէն, Մելանքթոնէն ու Բուկերէն կը խնդրեմ որ ինծի վկայութիւն տան որ աս հնարքը կրնամ գործածել, որպէս զի աւելի եւս զուարթութեամբ կարող ըլլամ Աւետարանին համար ապրիլ ու մեռնիլ եւ յօժարութեամբ զանիկա պաշտպանել: Իսկ ուրիշ կողմանէ ինչ որ հրամայելու ըլլան նէ՝ կը

14. Տեղ մը չենք գտներ, կ՚ըսէ Պոսիւէ, որ Լուտեր ու Մելանքթոն՝ Անգղիայի թագաւորին անանկ խրատ մը տուած ըլլան: Բայց որովհետեւ ասանկ երեւելի մէկ դեպքի մէջ իշխանը հաստատուն բանի մը պէս օրինակ կը բերէ, ու Լուտեր եւ իրեն հետ մէկտեղ աս թղթին ստորագրողները ասոր դէմ չեն գրեր, յայտնի է որ հիմ մը պիտի՝ որ ունենայ: Եւ ասիկա զարմանալու բան մը չէ. որովհետեւ թէ որ Հեսսենի աշխարհատէր կոմսին նոյն հրամանը տուեր, որպէս զի անանկ զօրաւոր օգնական մը չկորսնցնեն, կրնայ ըլլալ որ Անգղիայի թագաւորին ալ նոյն խրատը տուած ըլլան, որպէս զի իրենց կողմը ձգեն: Բայց թէ մինչեւ Պոսիւէին ատենը եւ մինչեւ հիմա ծածուկ մնաց, ան ալ զարմանք կարգի բան մը չէ. ինչու որ Լուտերին եւ իրեններուն՝ Հեսսենի աշխարհատէր կոմսին երկու կին ունենալու հրաման տալն ալ շատ ժամանակ գաղտուկ մնացած էր, եւ Պոսիւէի ժամանակները դուրս ելաւ, երբ որ իշխանին հաւանութիւն խնդրած թուղթն ու Լուտերին պատասխանը գտնուեցան: Աս երկու գրուածքը՝ Կարոլոս Լուդովիկոս Պալատական կայսրընտիրը եւ Եռնեստ Հեսսենի իշխանը իրենց ձեռագիրներուն մէջ գտնելով տպել տուին: — Աս երկու իշխանները՝ Սեքենդորֆ (Լիւթ. ծանօթութիւն ԺԷ, ձեռագիր թուղթ, 277:) շատ կը գովէ, եւ զեն իրենց բարեկամութեամբը կը պատուէն, կ՚ըսէ. բայց միանգամայն իր վարդապետին ու լուտերական կրօնքին գլխաւոր նեցուկին ասանկ մեծ նախատինք բերող գաղտնի գրուածքները հրատարակելնուն համար ծանուկ մը զիրենք կը յանդիմանէ:

կատարեմ, փոխ-երրորդ ճաշերն ալ ուտելու ըլլան նէ՝ պատրաստ եմ կատարել: Բայց եթէ կասկածելու ըլլան որ աս բանս ուրիշներուն գայթակղութեան պատճառ կ'ըլլայ եւ Աւետարանին վնաս կու տայ, գոնէ ինծի հաստատութեան թուղթ մը տան, որ եթէ գաղտուկ ամուսնանալու ըլլամ նէ՝ զԱստուած չեմ բարկացըներ:... Անկից ալ չվախնամ որ հակառակորդներնիս աստով զմեզ աւելի կ'ատեն ու մեզի դէմ աւելի թշնամի կ'ըլլան. վասն զի անոնք զմեզ այնչափ կ'ատեն եւ մեզմէ այնչափ կը գարշին, որ ատելութիւննին չիկրնար աւելի մեծնալ: Բայց թէ որ Լուտեր ու Մելանքթոն խօսքիս չեն հաւանիր[15], որն որ չեմ կարծեր, միտքս դրած եմ որ ինքնակալին դիմեմ. եւ յայտնի է որ ինքն ալ առանց պապին հրամանին աս բանին չիհաւանիր: Եւ թէպէտ ամենեւին բան մը չիկրնար զիս Աւետարանէն հեռացընել, կամ զիս ստիպել որ անոր օգտին դէմ բան մ'ընեմ. ի վերայ այսր ամենայնի կը վախնամ որ ինքնակալը զիս անանկ բանի մը կը բռնադատէ, որն որ մեր կողման օգտակար չըլլայ: Արդ կը խընդրեմ որ յուսացած օգնութիւնս ինծի տան, որպէս զի չըլլայ թէ ուրիշ իրենց հաճելի չեղած տեղէն խնդրելու ստիպուիմ. ինչու որ ես կը բաղձամ որ իրենց թոյլտուութեամբն ու հրամանաւը հանգիստ գտնեմ, քան թէ ուրիշ որուն որ է նէ հրամանաւը: Ուստի եւ գրով՝ Լուտերին, Մելանքթոնին ու Բուկերին կարծիքը կը խնդրեմ, որպէս զի կարող ըլլամ ինքը զինքս ուղղել եւ բարի խղճիւ խորհրդեան մերձենալ[16]:

Աս էր Հեսսենի աշխարհատէր կոմսին թուղթը, որն որ ինչպէս վերը ըսինք՝ Բուկերի ձեռքով Լուտերին խաւրեց: — Արդ Լուտեր ու Մելանքթոն՝ անարատ Աւետարանին քարո-

15. Իշխանը հոս՝ միայն Լուտերն ու Մելանքթոնը կը յիշատակէ, որովհետեւ Բուկերի հաւանութեան վրայ արդէն ապահով էր. վասն զի իշխանին բերնէն նոյն թուղթը գրողն ինքն էր, եւ գուցէ բուն հնարքն ալ ինք գտած էր:

16. Թէպէտ եւ մատենագիրներն ըստ մեծի մասին իշխանին աս խօսքերուն հաւատալով կը զրուցեն թէ երկրորդ կին առնելու ուզելուն պատճառն աս ըսածներն է, բայց ոմանք ալ բուն պատճառը բացայայտ կը զրուցեն, որմէ որ իշխանին՝ իր առաջնորդներէն հրաման եւ հաւանութիւն ուզելուն պատճառն ալ կ'իմացուի: Ռոնքէ ասոր վրայ այսպէս կը գրէ. Իշխանը "Իր քրոջը պալատը՝ Մարգարիտա Սալ անունով աղջկան մը հետ ճանչւորութիւն ըրաւ, որուն սաստիկ զարնուեցաւ: Բայց աղջիկն իր մօրմէն խրատուելով՝ անոր անկարգ ցանկութեան այնպէս սաստիկ դէմ դրաւ, որ ցանկութիւնը գլուխ տանելու համար արտաքոյ կարգի միջոցի մը (այս ինքն անոր հետ կարգուելու) ձեռք զարկաւ": Գերմ. Ե. Գլ. Է. Հատ. Դ. 257, 258: Բլանքալ կը զրուցէ որ իշխանը Մարգարիտա Սալին կոյր կիրք մ'ունէր: (Բուն խօսքը տես աս Գլխոյն 22. ծանօթ. մէջ:) Ասկից ինք իրմէ կը հետեւի որ աշխարհատէր կոմսին՝ իր հոգեւոր առաջնորդներէն հաւանութիւն ուզելուն բուն եւ միակ պատճառն ան էր որ իր անօրէն գործքն իբրեւ օրինաւոր ցուցընելով՝ երկրորդ կնոջն հաւանութիւնն ընդունի եւ իր անկարգ ցանկութիւնը յագեցընէ:

Արդ Լուտեր իր գլխաւոր աշակերտներուն հետ խորհուրդ ընելէն վերջը՝ ամենուն հաւանութեամբ հրաման տուաւ իշխանին որ կամքը կատարէ, միայն կրկին ու կրկին կ՚ազդարարէր որ գաղտուկ պահէ, իբրեւ թէ չարիք գործելը ներուած ըլլայ՝ թէ որ ծածուկ մնալու ըլլայ նէ։ Աս հրամանը, կամ իրենց բառը գործածելով՝ աս անօրինութիւնը տալու համար երկայն նամակ մը գրեցին, որուն Լուտեր, Մելանքթոն, Բուկեր եւ ուրիշ քանի մը երեւելի լուտերական վարդապետներ ստորագրեցին։ — Բայց եկեղեցւոյ մէջ սատանի այլանդակ նորութիւն մը խօթելնուն համար իրենք ալ շատ կ՚ամչնային. որովհետեւ, ինչպէս թղթին մէջն ալ կ՚ըսեն, գիտէին որ եթէ յայտնուելու ըլլայ նէ՝ չէ թէ միայն ուղղափառները, հապա նաեւ իրենց կողմնակիցներն ալ վրանին պիտի ծիծաղին, իբրեւ թէ Կրկնակինքոց պէս՝ ամուսնութիւնք խաղի տեղ կը դնեն, կամ անհաւատներուն պէս՝ այնչափ կին առնելու հրաման կու տան որչափ որ մէկը կ՚ուզէ։ Մանաւանդ որ, ինչպէս Մենցլ աղէկ կը գրուցէ[20], չէ թէ միայն աշխարհատէր կոմսին Ս. Գրքէն բերած օրինակներէն ու վկայութիւններէն համոզուած չէին, հապա նաեւ տուած պատասխաններնուն մէջ զանոնք կը ցրէին. ուստի եւ բացայայտ գիտէին որ տուած հրամաննին՝ Ս. Գրոց դէմ է։ Անոր համար, ինչպէս ըսինք, շատ անգամ իշխանին կ՚աղաչէին որ ամուսնութիւնը քիչ հոգւոյ առջեւ ըլլայ, դրսէն մարդ չիմանայ, տեսնողներն ալ խոստովանանքի գաղտնիքի պէս ծածուկ պահեն։

Աշխարհատէր կոմսը աս հրամանն առնելուն պէս՝ շուտ մը բաղձանքը կատարելով՝ իր առաջին կնոջը հաւանութեամբը՝ Մարգարիտա Սաալին հետ կարգուեցաւ. ամուսնութիւնն ալ քիչ մարդիկներու առջեւ կատարուեցաւ, որոնցմէ մէկն ալ Մելանքթոնն էր[21]։ — Բայց որչափ որ կը ջանային բանը գաղտուկ պահելու, անկարելի էր. շուտ մը բանը ամէն կողմ տարածուեցաւ, եւ շատերը չէ թէ միայն իշխանը հապա նաեւ Լուտերը վար կը զարնէին թէ ինչո՞ւ սանկ գայթակղական բանի մը դէմ չ՚ելլեր[22]. ի՞նչ կ՚ըսէին թէ որ իմանալու ըլլային օր անոր հրամանաւն ու հաւանութեամբը աս բանս եղած էր։

20. Նոյն տեղը, 186։

21. Կուստաւ Փիցեր, Գլ. ԻԶ. 761։ Լեւոն, Մոան Գ. Հտր Ա. Գլ. Ա. 160։

22. Կուստաւ Փիցերին (Գլ. ԻԶ. 761.) պատմածին նայելով՝ Սաքսոնիայի կայսրընտիրն ալ նոյն բանին վրայ շատ նեղացաւ, եւ աս իշխանին ու աշխարհատէր կոմսին մէջ առջէն յառաջագոյն եղած գժտութիւնն աւելի եւս մեծցաւ։ Նոյնը կը գրուցէ Լեւոն ալ (Մոան Գ. Հտր Ա. Գլ. Ա. 160.) եւ աս ալ կ՚աւելցընէ որ նոյն բանին վրայ բոլոր Սաքսոնիայի իշխանները սաստիկ բարկացան։ Բայց աս բողոքող իշխաններուն բարկութեան պատճառն ան էր որ մէյ մը կը վախնային թէ կայսրն աս բանիս համար հետերնին աւելի խստութեամբ

Փիլիպպոս՝ իրեն դէմ խօսողներուն միշտ աս պատասխանը կու տար․ Ես Աստուծոյ առջեւ այնպէս կ'ապրիմ որ հոգեւոր առաջնորդներս վրաս գոհ են ։ Իսկ Լուտերին սովորական պատասխանն աս էր․ Աս բանիս վրայ ես շատ խօսիլ չեմ ուզեր, թող ինք իր անձը պաշտպանէ․ եւ արդէն կարողութիւն ունի, ու քովը իմաստուն մարդիկներ ալ կան, որոնք զինքը կրնան պաշտպանել [23] ։ Բայց վերջերը երբ որ բանը շատ մեծցաւ՝ աշխարհատէր կոմսը ինքը զինքը արդարացընելու համար՝ Լուտերին տուած հաւանութեան թուղթը հրատարակել կ'ուզէր, եւ իր անձնական աստուածաբանները աս բանին արդէն հաւանութիւն տուած էին ։ Բայց երբ որ Լուտեր իմացաւ նէ՝ աշխարհատէր կոմսին սաստիկ յայտարարութիւն մը խաւրեց [24], որով իշխանը դիտաւորութիւնը մէկդի թող տուաւ ։ Սակայն քիչ մը ետքը Այզենախի մէջ Լուտեր, Մելանքթոն ու Հեսսենցի աստուածաբանք նորէն խորհուրդ ըրին, ու երկրորդ անգամ հաւանութիւն տուին [25] ։

Ահաւասիկ աս է նորոգեալ եւ ըստ Աւետարանին մաքրուած կրօնքին սրբութիւնը ։ Ասկից շատ աւելի պիղծ բաներ ալ կայ, որով ըսածնիս աւելի եւս կրնայինք հաստատել, եւ որոնք Լուտեր եկեղեցիներուն մէջ յայտնապէս կը վարդապետէր եւ մինչեւ հիմա իր գրքերուն մէջ կը կենան, ինչպէս քանի մը տեղ արդէն նշանակած ենք, բայց պարկեշտութիւնը չներեր որ անոնց վրայ խօսինք կամ վկայութիւն բերենք ։

կը վարուի ։ Եւ երկրորդ որ աշխարհատէր կոմսը՝ Բլանքին ըսածին պէս՝ թէպէտ եւ "Մուրֆուրխտ Սաա-[illegible] ինքը զինքը բաւական յանգուգն սեպած էր աստնկ մէկ գործքէն ծագելու ամէն հետեւութիւնները բանի տեղ չդնելու" ․ բայց "աս գայթակղական ամուսնութենէն" ետեւ՝ ալ ան առջի ստատկութիւնը կորսընցուց, եւ գրեթէ ամէն ատեն մէջ ուրիշ բողոքող իշխաններէն աւելի՝ զիջանելու կողմը կը միտէր, որովհետեւ կը վախնար որ կայսրը ասկից առիթ առնելով՝ հետը շատ խստութեամբ կը վարուի ։ Գէքր Ե․ Հար․ Գ․ Մասն Բ․ 46, 47 ։

23․ Սէքէնտորֆ (Լիւթ. յիշուած տեղը, 280․) կը պատմէ թէ Մելանքթոն աս բանին վրայ այնչափ այլայլեցաւ որ ծանր հիւանդութեան մէջ ինկաւ ։ Աս բանս այնչափ մեծ այլանդակութեան տեղ կը դնէր, որ եւ ոչ իր ըսածին բարեկամը՝ Կամերարիուսին գրելու կը համարձակէր, եւ միայն այնչափ մը վեր ի վերոյ կը գրուցէր․ "Կը ճանչնամ որ ան աստիճանի ծանրութիւն ու իմաստութիւն ունիս, որ ողորմելի բարեկամներդ չես արհամարհեր ։ Մինէ աաաֆէլ ֆուրշիլէ ֆործ+ով մը տրապատասած ինէ, որն որ չեկրնար գրուիլ ։ Ի վերայ այսր ամենայնի կ'ուզէի որ իմանաս, եւ թէ որ կեանք ունենամ նէ՝ ատեն կու գայ որ կ'իմացընեմ" ։ Ան Ռէֆիել․ Գէր Բ․ Գլ․ ԺԱ․ 538․ Ծանօթ ։

24․ Լուտեր աս յայտարարութեան մէջ կը գրուցէ որ աս բանը ամենեւին չեկրնար ջատագովուիլ․ եւ թէ որ վրան խօսք ըլլայ նէ, ես՝ իմ ու Մելանքթոնին հաւանութիւն տալը՝ կամ բոլորովին կ'ուրանամ, կամ թէ որ ասիկա չ'անցնիր նէ՝ թողութիւն կը խնդրեմ եւ կը խոստովանիմ որ մոլորեցայ ։ Տես առ Սէքէնտորֆ, Լիւթ. յիշուած տեղը ։

25․ Սէքէնտորֆ, վերը յիշուած տեղը, 279 ։ Մէնցէլ, Հատ․ Բ․ Գլ․ Թ․ 190 ։

# ԳԼՈՒԽ Թ.

## Զանազան ժողովներ

Ֆրանքֆորդի ժողովքն ու անոր որոշմունքները։ Ո՛չ կայսրը եւ ո՛չ բողոքականները աս որոշմունքներուն կը հաւանին։ Հագենաուի ու Վորմսի ժողովքները։ Ռեգենսպուրգի ժողովքը։ Կայսրը աստուածաբաններուն գիրք մը կու տայ, որ անոր համեմատ՝ իրարու հետ միաբանելու ջանան։ Երկու կողմն ալ աս գիրքը չեն հաւնիր։ Լութերին՝ միաբանութեան վրայ ունեցած կարծիքը։ Շփայերի աստուածաժողովը ու անոր վճիռը։ Քահանայապետն ու [illegible] դէմ կը դնէ։ Լութեր ասոր դէմ կռուելով՝ քահանայապետութեան դէմ այլանդակ պղծութիւններ կը գրէ։

## 1538 — 1544

ԻՆՉՊԷՍ որ ասկից յառաջ եւ գլխաւորաբար վերջի գլուխներուն մէջ տեսանք, բողոքողներուն յանդգնութիւնն երթալով կը սաստկանար, եւ մանաւանդ ուղղափառ իշխաններուն կայսեր հետ միաբանութիւն կամ դաշնակցութիւն ընելէն ետեւ՝ իրենք ալ կայսեր դէմ պատերազմ ընելու համար իրենց աստուածաբաններէն ու օրէնսգէտներէն նորէն հաւանութիւն առած ըլլալով՝ ա՛լ յայտնապէս թշնամութեան գործքեր սկսան գործել[1]։ Աս յանդգնութեան գլխաւոր պատճառն ան էր որ աստուգիւ գիտէին թէ կայսրն իրենց դէմ զէնքով չէկրնար վա-

1. Աս հաւանութեան թուղթը տես առ. Ցըվէգի, Հատ. Գ. 159։ — Բլանք կը ցուցնէ որ "Բողոքող իշխանները նոյն ատենը մէկէն ի մէկ քով դրած էին իրենց անխոհեմ վախը՝ որով մինչեւ նոյն օրէն թշնամիներնուն դէմ յաղթութեամբ յարձակողական պատերազմ սկսելու յարմար առիթները կորսնցուցած էին։ . . . Հիմա նոյն խակ Լութեր կը յայտնէր որ չէկրնար չհաւանիլ թէ որ իրենք չէ թէ միայն Նիւրնպերկի դաշնակիցներուն (ուղղափառ իշխանաց) դէմ իրենք զիրենք պաշտպանեն, հապա նաեւ անոնց յարձակելէն յառաջ՝ իրենք անոնց վրայ յարձակին . . . միայն խրատ կու տար որ մէկ կողմանէ անոնց (ուղղափառներուն) տեսած պատրաստութեան վրայ աւելի ստուգութիւն ստանան, եւ մէկալ կողմանէ իրենց զօրութիւնն աղէկ քննեն, որովհետեւ անհաւասար զօրութեամբ աճապարելով թշնամւոյն վրայ յարձակիլը՝ զԱստուած փորձել է, կ'ըսէր։ Ասոր համար միայն որոշեցին որ պատերազմի պատրաստութիւնը՝ մինչեւ նոյն ատեն եղածէն աւելի եռանդեամբ տեսնեն, մինչեւ նորէն զօրք ժողվելու հրամաններ խաւրեցին։ Եւ աս իրենց մտածմունքը փոխելնին՝ գլխաւորաբար պատճառ եղաւ որ . . . կայսեր իրենց առաջարկած խաղաղութեան հաւանելու այնչափ դէմ դրին։ Ի վերայ այսր ամենայնի վերջապէս աւելի աղէկ սեպեցին որ իրենց առջի սկզբունքին (այս ինքն միայն պաշտպանողական պատերազմ ընելու) մէջ հաստատուն մնան"։ Գիզէ Թ. Հատ. Գ. Մասն Ա. 18, 19։ Եւ քիչ մը վերջը ասոնց իրենց առջի սկզբան դառնալնուն պատճառները կը դնէ. որ են նախ՝ աշխարհատէր կոմսին հիւանդանալը, երկրորդ՝ առջի տարուան հունձքին գէշ ըլլալը, որով զինուորաց համար ապրուստ հոգալը շատ դժուար կ'ըլլար, եւ երրորդ՝ որ ուղղափառներուն զօրութեան դէմ դնել կրնալնուն վրայ սկսան տարակուսիլ։ Նոյն տեղը, 21, 22։

րուկը, որովհետեւ Ցաճիկները սաստիկ զօրութեամբ՝ չէ թէ միայն Հունգարիայի հապա նաեւ Աւստրիայի վրայ քալելու կը սկսէին: Ստուգիւ ալ կարծածնուն պէս եղաւ. վասն զի կայսրն իրենց դէմ պատերազմի ելլելու տեղ՝ մարդ խաւրեց եւ իրենցմէ Ցաճկաց դէմ օգնութիւն ուզեց: Եւ թէպէտ Լուտեր խրատ կու տար որ կայսեր կամաց զիջանին ու խնդրած օգնութիւնը տան, մանաւանդ թէ ինք սկսաւ Ցաճկաց դէմ քարոզներ տալ, եւ իր կողմն ժողովրդապետներուն հրամայեց թէ ինչպէս որ պապականներուն դէմ աղօթք կ'ընէին, նոյնպէս ալ Ցաճկաց դէմ աղօթք ընեն[2]. բայց կայսրընտիրը՝ անշուշտ իր խղճմտանքին եւ Աւետարանին դէմ չընելու համար՝ պատշաճ չսեպեց Լուտերին աս խրատին հետեւիլ: Ուստի եւ կայսեր ու թագաւորին կողմանէ եկող Ցովակիմ Բ. Պրանտենպուրկի կայսրընտրին ըսաւ որ Ես եւ իմ կողմնակիցներս մարդու պէս, հաստատուն եւ անկեղծ խաղաղութիւն մը կը պահանջենք, որուն համար հարկաւոր է որ աւագաժողով մը գումարուի: Եւ մինչեւ որ կայսրը մեզի ուզածնուս պէս խաղաղութիւն չտար, գերագոյն դատաստանարանին դատաստանները չդադրեցըներ, Նիւռնպերկի խաղաղութենէն վերջը մէջերնիս ընդունած մարդիկներնիս եւ անկէ վերջն առնելիքներնիս ալ իբրեւ մեզի դաշնակից չսեպեր, խնդրած օգնութիւնը տալիք չունինք[3]: կայսրը ուրիշ կերպ չկրնալով ընել եւ միանգամայն տեսնելով որ ընդհանուր ժողովքին սկսիլը կ'ուշանայ[4], հրաման տուաւ որ աս բաներուն վրայ մտածելու համար Ֆրանկֆուրդ քաղաքը ժողովք կամ բանակցութիւն մ'ըլլայ:

Աս ժողովքը 1539ին փետրուարի մէջ սկսաւ ու երկու ամիս տեւեց: Ժողովքին վերջը (Ապրիլի 10ին) ժողովականները զանազան որոշմունքներ ըրին, որոնց գլխաւորներն ասոնք են: Ա. Ինքնակալը Աւկսպուրկի դաւանութեան հետեւողներուն տասնուհինգ ամիս ժամանակ տայ, որ կրօնական նիւթերուն վրայ աւելի աղէկ տեղեկանան: Բ. Նիւռնպերկի խաղաղութեան դաշինքն հաստատուն մնայ: Գ. Թէ որ տասնուհինգ ամսուան

2. Աս նիւթին վերաբերեալ զանազան գրուածները կը յիշատակէ Ռոֆֆէլ, Գիրք Բ. Գլ. ԺԱ. 527. Ծանօթ. 5:

3. Բլանք, Գիրք Թ. Հատ. Գ. Մասն Բ. 5.—7:

4. Մենցլին պատմածին նայելով՝ ժողովքին 1537ին Մայիսի մէջ սկսիլը՝ Մանդուայի դքսին հանած քանի մը դժուարութիւններուն պատճառաւ արգելուեցաւ: Անոր համար քահանայապետն որոշեց որ ժողովքը Վիչենցա ըլլայ, ու հոն երկու դեսպան խաւրեց. բայց ասոնք քանի մը ամիս սպասելէն ետեւ՝ թողտուին գացին, ինչու որ կայսեր ու Գաղղիայի թագաւորին մէջ պատերազմ բացուելուն համար՝ ամենեւին մէկը չեկաւ: Ետքէն ալ թէ՛ աս պատերազմին եւ թէ՛ Ցաճկաց կողմանէ վախցուած յարձակման համար ժողովքին գումարուիլը դարձեալ նորէն ուշացաւ: Հատ. Բ. Գլ. Ջ. 117: 118:

միջոցին մէջ երկու կողմերը խրատու հետ միաբանիլ չկրնան նէ՝ անկէ վերջն ալ մէջերնին խաղաղութիւնք առնէ, մինչեւ որ նորէն բան մ՚որոշուի ։ Գ. Աս միջոցին՝ բողոքողաց դէմ ոչ կրօնի նիւթերու մէջ եւ ոչ արտաքին նիւթերու մէջ գերագոյն դատաստանարանը ամենեւին որոշում մը չընէ ։ Ե. Բողոքողները աս տասնուհինգ ամսուան միջոցին մէջ ամենեւին մէկը իրենց դաշնակցութեան մէջ չընդունին, եւ կրօնի պատճառաւ ամենեւին մէկու մը վնաս չհասցընեն կամ մէկու մը դէմ պատերազմի չելլեն ։ Զ. Բողոքողք նոյն ժամանակին մէջ ուղղափառ եկեղեցականաց իշխանութիւն թողուն որ տարեկան թոշակնին ընդունին ։ Է. Ինքնակալը իր կամացը համաձայն ժամանակ մը որոշէ, որ ուղղափառներն ու բողոքողները նիւռնպերկ քաղաքը մէկտեղ գան, կրօնի նիւթերուն վրայ բանակցին կամ խօսին, եւ աս բանակցութեան կամ ժողովքին մէջ՝ միայն խաղաղասէր մարդիկ մտնեն ։ Ը. Աս որոշմունքները հաստատելու համար՝ ինքնակալին վեց ամիս ժամանակ տրուի. որոշուածները աս վեց ամսուան մէջ հաստատուն մնան. նոյնպէս թէ որ ինքնակալը աս որոշմունքներուն հաւանութիւն տալ չուզէ ալ նէ՝ ի վերայ այսր ամենայնի նիւռնպերկի խաղաղութեան դաշինքը հաստատուն մնայ[5] ։

Աս որոշմունքներն ընելէն վերջը՝ ժողովականք երկու հոգի խաւրեցին Սպանիա՝ ինքնակալին, որ իր իշխանութեամբը զանոնք հաստատէ ։ Կայսրը աս խնդրքին շատ նեղ մտաւ. վասն զի անոնց հաւանութիւն չտար նէ՝ պէտք էր անմիջապէս Գերմանիա երթալ, որպէս զի իր ներկայութեամբը ջանայ ան չարիքներուն առջեւն առնել, որոնք որ ժողովքը աս որոշմունքներով խափանել ուզած էր. բայց Սպանիայի վիճակը թող չէր տար որ հոնկից բաժնուի ։ Իսկ թէ որ հաւանութիւն տար նէ, իրաւամբ կը վախնար որ չըլլայ թէ Գերմանիայի մէջ դեռ ունեցած ակար իշխանութիւնն ալ բոլորովին կորսընցընէ ։ Անոր համար աւելի աղէկ սեպեց լռել եւ ամենեւին պատասխան չտալ ։ Քահանայապետն ալ նոյն ժողովքին որոշմունքները լսելով՝ շատ նեղացաւ, որովհետեւ կը տեսնէր թէ անոնցմով բողոքողներուն շատ մեծ ազատութիւն տրուած, որով կրօնքին մեծ վնաս եղած էր ։ Ուստի եւ աս բաներուն վրայ ինքնակալին տրտունջ ըրաւ ու սրտին ցաւն իմացուց ։ Ինքնակալը՝ թէպէտ եւ քահանայապետին պատասխան տուած ատեն՝ ժողովքին մէջն եղող իր տեղակալները արդարացընելու կը ջանար, բայց ինքն ալ մտքին վրայ աւելի հաստատուեցաւ որ որոշմունքներուն հաւանութիւն չտայ ։

5. Սէքէնտորֆ, Գիրք Գ. Հատ. Բ. 188 ։ Բլանք, Գիրք Թ. Հատ. ԿԹ. 203 ։ Սլէյտան, Գիրք ԺԲ. 187. Գ. Մառն Բ. 10. — 16 ։

Նոյ պատճառաւ երկրորդ տարին (1540ին) Յունիսի մէջ Հակենաւ քաղաքը նորէն ժողովք կամ բանակցութիւն մ՚ըրին [6], որուն մէջ երկու կողմանէ ալ աստուածաբաններ կը գտնուէին, որպէս զի դեռ հակառակութեան տակ եղող հաւատոյ մասունքներուն վրայ վիճէին: Բուն ժողովքը չսկսած՝ Ֆերդինանդ Թագաւորին հրամանաւը քանի մը հոգի խաղաղութեան միջնորդ դրուեցան, այս ինքն Լուդովիկոս Պաղատական կայսրընտիրը, Յովհաննէս՝ Տրիերի արքեպիսկոպոսը, Լուդովիկոս՝ Պաւիերայի դուքսը եւ Գուլիելմոս Ստրասպուրկի եպիսկոպոսը: Ասոնք պատշաճ սեպեցին որ վիճմունքն այնպէս յառաջ տարուի, ինչպէս որ Աւկսպուրկի աւագաժողովին մէջ սկսուած էր. անոր համար ալ՝ ըսին որ նոյն ժամանակը երկու կողման միաբան ընդունած մասունքները մէկդի ձգելով՝ միայն անոնց վրայ խօսինք, որոնց վրայ մէջերնիս դեռ անմիաբան ենք: Բայց բողոքողք աս առաջարկութիւնը յանձն չառին, եւ Աւկսպուրկի աւագաժողովին մէջ ընդունած վարդապետութիւններուն մէջն ալ հիմա միաբանիլ չէին ուզեր, հապա կը պնդէին որ միայն մեր հաւատոյ դաւանութեան եւ անոր ջատագովութեան մէջ եղած բաները կ՚ընդունինք: Ան ատեն Ֆերդինանդ տեսնելով որ աս ժողովքին մէջ բան մը պիտի չկրնայ գործուիլ, մանաւանդ որ բողոքողաց կողման գլխաւոր իշխանները անձամբ չէին եկած, հապա տեղակալներ խաւրած էին, ժողովականներուն հաւանութեամբը Յուլիսի 28ին վճիռ մը հրատարակեց, որուն մէջ կը հրամայէին որ նոյն տարւոյն Հոկտեմբերի 28ին Վորմս քաղաքը ուրիշ ժողովք մ՚ըլլայ եւ հոն խօսուի [7]:

Երբ որ որոշուած ժամանակը հասաւ նէ, երկու կողմանէ ալ քանի մը աստուածաբաններ ու իշխաններ եկան Վորմս ժողվուեցան: Աս ժողովքին մէջ գտնուեցաւ Մելանքթոնն ալ, որն որ ծանր հիւանդութեան պատճառաւ Հակենաւի ժողովքին մէջ չէր գտնուած [8]: Կայսրը իր առաջին պաշտօնեան ու Ներ-

6. Կայսրը որոշած էր որ աս ժողովքը Շփայեր քաղաքին ըլլայ, բայց հոնտեղը նոյն ժամանակը տարափոխիկ հիւանդութիւն մը ըլլալով՝ ժողովքը Հակենաւ փոխուեցաւ:

7. Սեքենտորֆ, Գիրք Գ. Համ. ՀԹ. 282. — 284: Բլանք, Գիրք Թ. Հատ. Գ. Մասն Բ. 54. — 57: Կուստաւ Ֆիցլեր, Գլ. ԻԴ. 712: Մէնցլ, Հատ. Բ. Գլ. Ժ. 202: Ռիֆէլ, Գիրք Բ. Գլ. ԺԱ. 540. — 543:

8. Որովհետեւ՝ ուրիշ անգամ ըսածներնուս պէս՝ Լուտեր Մելանքթոնին հետ կասկածելով կը վարուէր, նոյնպէս ալ բոլոր Լուտերականները իր վրայ ամենեւին վստահութիւն չունէին, անոր համար Հերձուածապետը կայսրընտրին աղաչեց որ իրենց կողմանէ ժողովք գացող աստուածաբաններուն սահման ու չափ դնէ, եւ հրամայէ որ ամենեւին ան սահմանէն անդին չանցնին ու քանի մը տարի յառաջ Շմալքալտ որոշուածէն ամենեւին չխոտորին: Աս հրամանը, կ՚ըսէ, նոյն ինք Մելանքթոնն ալ կը խընդրէ, որպէս զի աւելի եւս զօրութեամբ ու հաստատութեամբ կռուի եւ պապականներուն խաբէական

քին խորհրդականը՝ Կրանվելլան իբրեւ իր դեսպանը կամ գործակալը աս ժողովքին խաւրեց. Նոյնպէս քահանայապետին կողմանէ ալ Գամբեճճիոյ եպիսկոպոսը իբրեւ նուիրակ եկաւ։ Ասոնք երկուքն ալ մէյ մէկ ճառ խօսեցան, որոնց մէջ գլխաւորաբար ան ցուցուցին որ սէրը ամէն բանէն վեր է, յայտնեցին որ աս խռովութեանց մէջ նոյն սէրը որչափ պակսած է, եւ որչափ չարիքներ յառաջ եկած են եւ կրնան ալ գալ թէ որ ճար մը չգտնուելու ըլլայ։ Բողոքողաց սիրտը աս խօսքերուն վրայ շատ նեղացաւ, ու Մելանքթոն ասոնց դէմ ճառ մը շինեց, որուն մէջ կը զրուցէր թէ աս վրդովմունքը բոլորովին եկեղեցւոյ մէջ մտած պակսութիւններէն, եւ Հռոմայ եկեղեցւոյն՝ բողոքողաց վարդապետութեան դէմ դնելէն ծագած է։ Աս ճառը՝ Մելանքթոնին հասարակօրէն բանեցուցած հանդարտ ու մեղմ լեզուին հետ չէհամաձայնիր, այլ անանկ սաստկութեամբ գրուած է, որ Կրանվելլա թող չտուաւ որ ժողովքին մէջ կարդացուի[9]։ — Ժողովքն աս կերպով սկսելով՝ յայտնի կ՚երեւար որ օգուտ մը պիտի չունենայ, ինչպէս որ չունեցաւ ալ։ Ժողովքին գահերէցն ընտրուելէն ու երկու կողմանէ երկ՚երկու դպիր դրուելէն ետեւ՝ մէջերնին համաձայնեցին որ խօսուած բաները կայսեր չիմացուցած՝ ամենեւին դրսի մարդիկներուն չզրուցեն։ Ասոնք որոշուելէն ետեւ՝ 1541ին Յունուարի 14ին բուն բանակցութիւնը սկսաւ[10]։ Ամենէն յառաջ Մելանքթոն ու Էք սկսան իրարու հետ սկզբնական մեղաց վրայ վիճել։ Աս վիճաբանու-

խօսքերուն բանուելով՝ պատշաճէն աւելի տեղի տալու վտանգի մէջ չիյնայ։ Կայսրընտիրը Լուտերին խնդիրքը շատ մը կատարեց. ասոր համար ալ կը տեսնենք որ աս ժամանակէն վերջը բողոքողք իրենց կարծիքներուն մէջ առաւել յամառութեամբ մնացին։ Մէնցըլ, Հատ. Բ. Գլ. Ժ. 197։ — Ասոր վրայ Կուստաւ Ֆիցեր (Գլ. ԻԴ. 712.) կը զրուցէ թէ որչափ որ կայսրն ու քահանայապետը աս խօսակցութիւնները կամ ժողովքները մեծ բանի տեղ կը դնէին, այնչափ ալ բողոքողք դէմ էին, որովհետեւ "Միաբանելու խորհուրդը շատոնց մէկդի ձգած էին ու նոյն ժամանակուան վիճակը կ՚ուզէին պահել"։ Անոր համար պատգամաւորներուն առաւել հրաման տրուած էր որ Աւգսպուրկի աւագաժողովոյն տառ-նը խօսակցութեանց մէջ զիջած կամ յանձն առած բաներնուն միտ չդնեն, հապա դաւանութեան բաներուն վրայ ճշգիւ հաստատուն կենան։ Մանաւանդ Յովհ. Փրեդերիկոս իր պատգամաւորներուն մասնաւորապէս պատուիրած էր որ ուրիշ պատգամաւորներուն մեծ մասը միաբանին եւ աս կամ ան բանին մէջ տեղի տալ ուզեն ալ նէ՝ իրենք անոնց հետ չմիաբանին ու միշտ դէմ դնեն։ Տես նաեւ Մէնցըլ, Հատ. Բ. Գլ. Ժ. 205, 206. — Բլանք, Պէկր Թ. Հատ. Գ. Մասն Բ. 61, 62։

9. Մէնցըլ, Հատ. Բ. Գլ. Ժ. 206. — 208։ Ռոփէլ, Գիրք Բ. Գլ. ԺԱ. 546, 547։

10. Ժողովքին մէջ բանուելու եղանակին վրայ գրեթէ երկու ամիս վէճ եղած էր մէջերնին, որովհետեւ բողոքողք ամէն նաեւ անտարբեր բաներուն՝ որոնց մեծ մասը՝ արդէն Հակենաւ որոշուած էր, դէմ կը դնէին։ Ասոնց վրայ մէկիկ մէկիկ կը խօսի Բլանք, եւ բողոքողները աս բանիս համար վար կը զարնէ։ Պէկր Թ. Հատ. Գ. Մասն Բ. 66. — 72։

թիւնը չորս օր (մինչեւ ամսոյն 17) տեւեց, որմէ ժողովականները ձանձրանալով՝ իմացուցին որ աս նիւթին վրայ բաւական խօսուած է, ուրիշ նիւթի մը պէտք է անցնիլ: Բայց երկրորդ օրը (18ին) կայսրմէ թուղթ մը եկաւ, որուն մէջ կը հրամայէր որ հիմակուհիմա վիճաբանութիւնը դադրի եւ մնայ մինչեւ Ռեկենսպուրկ քաղաքը ժողովուելու ազգաժողովին ատենը, ուր որ ինքն ալ ներկայ պիտի գտնուէր: Ուստի եւ բան մը չեղած՝ ժողովականներն իրարմէ բաժնուեցան[11]:

Աս Ռեկենսպուրկ գումարուելու ազգաժողովին համար քահանայապետը իբրեւ դեսպան խաւրեց Գոնդարինոս կարդինալը, որն որ Մարտի վերջերը նոյն քաղաքը հասաւ. նոյն օրերը հասան նաեւ ինքնակալը եւ տէրութեան բոլոր երեւելի աւագանին, բաց ի Սաքսոնիայի կայսրընտրէն՝ որն որ իր տեղը փոխանորդ խաւրեց, վասն զի Լուտեր խրատ տուած էր որ իր քաղքէն դուրս չելլէ: Ամէն մէկ իշխան հետը իր աստուածաբանները բերած էր. ուղղափառներուն կողմանէ գլխաւոր աստուածաբաններն էին Յովհ. Էք, Յովհ. Գրոպպէր եւ Յուլիոս Փլուկ. իսկ բողոքողներուն կողմանէ՝ Մելանքթոն, Բուկեր եւ Պիստորիոս: Ապրիլի 5ին ազգաժողովին առաջին գումարման մէջ կայսրը ճարտարախօսի մը բերնով հրապարակախօսութիւն մ'ըրաւ: Աս ճառին մէջ ցուցուց թէ որչափ փոյթ ու խնամք ունեցած է կրօնի պատճառաւ եղած գժտութիւններն ու անոնցմէ ծագած չարիքները խափանելու: Յայտնեց որ ինչպէս երկու անգամ, թէպէտ եւ տէրութեան հոգերով ծանրացած էր, սակայն եւ այնպէս յանձն առաւ Իտալիա երթալ ու քահանայապետին հետ խօսելով ջանաց որ ընդհանուր ժողով գումարուի, որն որ ամէն բանէն աւելի յարմար միջոց կը կարծեմ, ըսաւ, աս խռովութիւնները դադրեցընելու. բայց ետեւէ ետեւ եկած պատերազմներուն պատճառաւ թէ իմ եւ թէ քահանայապետին բաղձանքը պարապ ելաւ: Վերջապէս ուզեցի աս ազգաժողովը գումարել, եւ քահանայապետն ալ իմ աղաչանքս ընդունելով՝ դեսպան մը խաւրեց, որն որ առաքինի ու խաղաղասէր անձ մըն է: Արդ որպէս զի կարող ըլլանք խաղաղութեան հասնիլ, որուն ամէնքս ալ կը բաղձանք, կարծեմ թէ երկու կողմանէ իմաստուն մարդիկներ որոշելու է, որոնք դեռ հակառակութեան տակ եղող խնդիրներուն վրայ իրարու հետ վիճելով, քահանայապետին դեսպանին հաւանութեամբը կարենանք բան մ'որոշել[12]:

11. Սլէյտան, Գիրք ԺԳ. 204. — 206: Սէքենտորֆ, Գիրք Գ. Հատ. 2. 294. — 298: Մենցել, Հատ. Բ. Գլ. Ժ. 209, 210: Ռիֆէլ, Գիրք Բ. Գլ. ԺԱ. 547. — 549:

12. Սլէյտան, Գիրք ԺԳ. 208, 209:

Նոյնպէս կողմն ալ կայսեր խօսքերուն հաւանելով՝ վերը յիշուած վեց աստուածաբաններն որոշուեցան, որ իրարու հետ վիճաբանին[13]: Կայսրը աս վեց հոգին առջեւը կանչեց, մէկիկ մէկիկ ձեռքն իրենց առաւ, եւ ազդու խօսքերով յորդորեց որ վիճաբանութեանց մէջ կրից ետեւէ չերթան, հապա միայն Աստուծոյ փառաց միտ դնեն[14]: Աս աստուածաբաններուն խնդրելովը՝ Փրեդերիկոս Պաղատական կոմսը՝ Պաղատական կայսրընտրին եղբայրը եւ Կրանվելլա պաշտօնեան ընտրուեցան, որ վիճողներուն մէջ դահերէց նստին, դարձեալ թէ ուղղափառաց եւ թէ բողոքողաց կողմանէ քանի մը հոգի գրուեցան, որ իբրեւ վկայ՝ վիճաբանութեանց ներկայ գտնուին: Ասոնք ըլլալէն վերջը՝ բուն վիճաբանութիւնն սկսաւ: Իսկզբան Պաղատական կոմսը վիճողներուն խրատ տուաւ որ խաղաղասէր մտօք միաբանութեան ետեւէ իյնան, եւ նախատական ու կծանող խօսքերէն զգուշանան: Անկէց ետեւ Կրանվելլա գիրք մը դուրս հանելով[15], ըսաւ որ Կայսրը ասիկա իմաստուն մարդիկներէ ընդունած է, եւ քրիստոնէութեան գլխաւոր մասունքը ասոր մէջ անանկ կերպով մը մեկնուած են, որ աս գիրքը՝ միաբանութեան ճամբայ բանալու շատ յարմար է: Ասոր համար, ըսաւ, կայսրը կը հրամայէ որ ամէն բանէն յառաջ աս գիրքը քննէք, եւ ասոր մէջ գտնուած հաւատոյ մասունքներուն վրայ՝ երկու կողմն ալ ունեցած կարծիքը նշանակէք[16]:

Ընդհանրապէս աս գիրքն առին եւ սկսան մէջը գտնուած հաւատոյ մասունքները մէկիկ մէկիկ քննել: Բայց շատ մը առջեւնին մեծ դժուարութիւններ ելան, ոչ ուղղափառք եւ ոչ բողոքողք ամէն մասերը կը հաւնէին: Անոր համար օրերով (Ապրիլի 27էն մինչեւ Մայիսի 10) միօրինակ վիճելէն ետեւ՝ հազիւ գրքին առջի չորս մասանցը վրայ կրցան միաբանիլ, որոնք էին մարդկային բնութեան, կամաց ազատութեան, սկզբնական մեղաց եւ արդարացուցման վրայ: Իսկ մնացած տասը մասանց վրայ միաբանիլն անկարելի եղաւ: Աս ետքի տասը մասանց մէջ՝ հաղորդութեան խորհրդին, եկեղեցւոյ եւ ընդհանուր ժողովքներուն իշխանութեան, խոստովանանքի, սրբոց պաշտաման, պատարագի եւ ասոնց նման ուրիշ քանի մը նիւթերու վրայ կը

13. Վիճաբանութեան առեն Էք հիւանդանալով՝ ուղղափառաց կողմանէ մինակ մէկալ երկու աստուածաբանները մնացին:

14. Մենցել, Հատ. Բ. Գլ. ԺԱ. 216: Կուստաւ Ֆիցեր, Գլ. ԻԴ. 713:

15. Աս գրքին անունը Interim, Առ ժամանակ կամ առժամանակեայ գրուեցաւ, որովհետեւ անոր միջոցով եղած միաբանութիւնը միայն առ ժամանակ մի, այս ինքն՝ մինչեւ ընդհանուր ժողովքին ժողվուիլը պիտի տեւէր:

16. Ալէյման, Գիրք ԺԳ. 209. Բ: Բլանք, Գիրք Թ. Հատ. Դ. Մասն Բ. 84. — 86:

խօսուէր։ Արդ՝ ուղղափառ աստուածաբաններուն դէմ բողոքողաց աստուածաբանները կ'ըսէին թէ հաղորդութեան խորհրդին մէջ գոյացափոխութիւն չկայ, հապա Քրիստոսի մարմինն ու արիւնը հացին եւ գինւոյն հետ մէկտեղ կը գտնուին։ Եկեղեցին Ս. Գիրքը մեկնելու իշխանութիւն չունի, եւ ընդհանուր ժողովքներն ալ Ս. Գրոց վրայ անսխալ վճիռ չեն կրնար տալ։ Խոստովանանքը՝ յաստուածային իրաւանց չէ, հապա ամէն մարդ ազատ է մեղքերը քահանային առջեւը խոստովանանք ընելու եւ չընելու։ Չէին ուզեր ամենեւին որ սրբոց պաշտօն մը կամ յարգութիւն մը մատուցուի եւ կամ անոնցմէ օգնութիւն խնդրուի։ Կ'ուրանային որ պատարագը՝ զոհ կամ պատարագ ըլլայ, եւ կենդանեաց կամ ննջեցելոց համար օգուտ մ'ունենայ։ Աս ալ կ'ուզէին որ քահանայից ամուրութիւնը կամ կուսութիւնը բոլորովին վերցուի, եւ կը պնդէին թէ պէտք է որ ամէնքն ալ ազատ ըլլան նաեւ քահանայութենէն ետքը աշխարհք մտնելու։

Որովհետեւ, ինչպէս Բլանք կը զրուցէ, իշխանները գիտէին որ միաբանութեան վերջերը Մելանքթոնին ցուցուցած խստութիւնն ու տեղի չտալուն գլխաւոր պատճառը Լութեր էր, անոր համար մէջերնէն քանի մը հոգի՝ որոնք միաբանութիւն ըլլալուն կը բաղձային, ուզեցին նորոգչին երթալ ու մէջերնին միաբանած հաւատոյ մասունքներուն եւ դեռ չմիաբանածներնուն վրայ իր կարծիքը հարցընել, եւ միանգամայն զինքը համոզել որ բոլորովին միաբանելնուն դէմ չդնէ, հապա ինքն ալ իր կողմանէ գործակից ըլլայ[17]։ Ասոնք գացին (Յունիսի 7—10ին) հետը խօսեցան, եւ եղածները մէկիկ մէկիկ պատմելէն ետեւ՝ աղաչեցին որ ընդունուած մասունքներուն վրայ իր կարծիքն իմացընէ, եւ եղանակ մը ցուցընէ՝ որով կարենան մնացածներուն վրայ ալ միաբանիլ։ Աս ալ յայտնեցին որ եթէ միաբանութիւնն ու խաղաղութիւնը հաստատելը կարելի չ'ըլլար նէ, չէ թէ միայն մեծամեծ չարիք կը հետեւին, հապա նաեւ նորէն նորէն սաստիկ երկպառակութիւններ, անմիաբանութիւններ ու հերձուածներ կ'ելլեն[18]։

17. Գիրք Թ. Հատ. Գ. Մասն Բ. 136. — Երբ որ Սաքսոնիայի կայսրընտրին պատգամաւորները աս բանս իրենց իշխանին իմացուցին նէ՝ շատ այլայլեցաւ. եւ թէպէտ, ըսաւ, կը յուսամ որ Լութեր իշխաններուն քրիստոնէական պատասխան մը կու տայ, բայց թէ որ Աստուած թող տալու ըլլայ որ անիկա իյնայ ու անպատշաճ զիջմունքներ ընէ, ես ամենեւին չեմ հաւանիր։ Եւ զԼութեր զգուշացընելու եւ յորդորելու համար որ տեղի չտայ՝ չէ թէ միայն իրեն թուղթ մը գրեց, հապա ելաւ անձամբ Վիդդենպերկ գնաց, որպէս զի իր ներկայութեամբը՝ եկող իշխաններուն ջանքը պարապի հանէ։ Սեքէնտորֆ, Գիրք Գ. Հատ. ՁԸ. 361։ Կուրագուա-Ֆէյեր, Գլ. ԻԴ. 716։ Ռէֆել. Գիրք Բ. Գլ. ԺԱ. 564։

18. Սեքենտորֆ, Գիրք Գ. Հատ.

Լուտեր իսկզբան խօսքով ու ետքը գրով ալ պատասխան տուաւ թէ Բոլորովին անկարելի բան է որ մենք Հակառակորդներնուս Հետ միաբանինք, եւ նոյն իսկ ինքնակալն ալ աս միաբանութիւնը չիկրնար Հաստատել. ինչու որ ինքնակալը միամիտ սրտիւ եւ բարի կամօք խաղաղութեան բաղձայ ալ նէ՝ պապականները նոյն մտքի վրայ չեն, եւ ամենեւին աս բանիս փոյթ չունին ու պարզմտութեամբ չեն վարուիր։ Ետքը խօսքը Հաւատոյ մասունքներուն դարձընելով՝ այսպէս կը զրուցէ. Թէպէտ եւ անանկ կ'երեւայ որ ան Հաւատոյ մասունքը՝ որոնց վրայ իրարու Հետ միաբանեցանք, այնպիսի կերպով գրուած են որ երկու կողմն ալ կրնայ ընդունիլ, բայց ան միաբանութիւնը պարապ է, երբ որ մնացած մասունքներուն վրայ չէք կրնար իրարու Հետ միաբանիլ։ Եւ աս մասերուն վրայ միաբանութիւն չիկրնար ըլլալ, ինչու որ անոնց մէջ քանի մը բան կայ որ յայտնապէս տասնաբանեայ պատուիրաններուն առաջինին դէմ է[19]։

Դարձեալ նոյն նիւթին վրայ այսպէս կը գրէ Սաքսոնիայի կայսրընտրին։ Իսկզբանէ վեր ես անանկ կը կարծեմ որ պապականներուն՝ մեզի Հետ միաբանիլ ուզելը բոլորովին խաբէութիւն ու նենգութիւն է. եւ Հաստատուն գիտեմ որ մէջերնիս խաղաղութիւն Հաստատելն անկարելի է, վասն զի Քրիստոս Հին օձին Հետ միաբանելը կարելի բան չէ։ Անոր Համար քու տէրութեանդ կ'աղաչեմ որ ետ կանչես մեր վարդապետները՝ որոնք արդէն իրենց պաշտօնին պարտքը կատարած են. եւ կրկին կ'աղաչեմ որ աս խնդիրքը շուտով կատարես, իմ աս խրատը քեզի տալս ամենեւին մէկը չիմացած։ Եւ ետքը Աւկսպուրկի Հաւատոյ դաւանութիւնն ու ջատագովութիւնը Ռեկենսպուրկ խաւրես, եւ մերիններէն դեռ Հոն մնացողներուն Հրամայես որ զանոնք աւագաժողովին առջեւը դնեն եւ ըսեն թէ մենք անոնցմէ մազի չափ ալ չենք Հեռանար[20]։

Բողոքողք Լուտերին ինչ մնաց վրայ ըլլալն իմանալով, եւ

ՁԸ. 362։ Մենցլ, Հատ. Բ. Գլ. ԺԱ. 233. — 236։ Գործք Լուտ. գերմ. Հատ. Է. 466. Բ. — 467. Բ։

19. Գործք Լուտ. գերմ. Հատ. Է. 468, 469։

20. Նոյն տեղը, 472, 473։ — Լեւոն կը պատմէ որ կայսրընտիրը միանգամայն Ամստորֆը Ռեկենսպուրկ խաւրեց, որպէս զի Մելանքթոնին օգնէ։ Մելանքթոն նոյն միջոցին մէջ նաեւ եկեղեցւոյ վրայ ալ ուղղափառաց Հետ միաբանած էր, կ'ըսէ. «Բայց Ամստորֆին Հասնելէն ետեւ՝ ալ միաբանութեան խօսքը վերջացաւ. ինչու որ աս մարդս ամէն առթի մէջ Լուտերին վարդապետութեանց խիստ կողմը գուրգ կը Հանէր կամ կը պաշտպանէր, եւ կ'ուզէր որ միշտ միայն անոնց Համեմատ գործուի»։ Մոան Գ. Հտ Ա. Գլ. Ա. 165։ Տես նաեւ Բլանք, որն որ կը զրուցէ թէ «Խիստ լուտերական Ամստորֆը . . . Ռեկենսպուրկ խաւրուեցաւ, որ Հոն . . . Մելանքթոնին ուսերուն վրայ նըստելով՝ գործողութեանց մէջ ամէն քայլերուն միտ դնէ»։ Գիրք Թ. Հատ. Գ. Մոան Բ. 125։

Գերմանիայի կայսրընտրէն՝ անոր խրատին համաձայն գրուած թուղթ մ'առնելով՝ իրենց կարծիքներուն մէջ ալ աւելի յամառեցան. եւ Աւգսպուրկի հաւատոյ դաւանութիւնն ու ջատագովութիւնը բերելով՝ ըսին թէ Ատոնց մէջ դրուած բաներուն վրայ հաստատուն կը կենանք, եւ ինչ բանի մէջ որ ձեզի հետ միաբանեցանք նէ՝ ան ալ ատոնց մէջ պարունակուածներուն միջոցով միաբանեցանք [21]: Մէկալ կողմանէ ալ ուղղափառ իշխանները սկսան տրտնջել որ իրենց աստուածաբանները միաբանուած մասունքներուն մէջ բողոքողներուն շատ զիջած են: Կայսրը շատ աշխատելէն վերջը՝ տեսնելով որ օգուտ մը չ'ըլլար եւ խօսակցութիւնն աւելի երկընցընելը պարապ է, աւագաժողովը վերջացուց, եւ նորէն ամէն բան ընդհանուր ժողովքին ձգեցին:

Բայց որովհետեւ աս ընդհանուր ժողովքը դարձեալ կ'ուշանար [22], եւ չարիքները կը սաստկանային, անոր համար ուրիշ քանի մը ժողովքներէ վերջը՝ 1544ին փետրուարի 20ին Շփայեր քաղաքը նորէն աւագաժողով մը սկսաւ: Աս աւագաժողովին մէջ ներկայ էին կայսրը, իր եղբայրը Ֆերդինանդ թագաւորը, բոլոր կայսրընտիրներն եւ աւագանւոյն մեծ մասը: Խել մը օր շարունակ պատերազմներու վրայ խօսելէն ետեւ՝ որոշեցին որ կրօնի վերաբերած նիւթերուն վրայ ուրիշ անգամ մը խօսին, եւ սահմանեցին որ Դեկտեմբերի մէջ նորէն ժողվուին: Բայց դեռ իրարմէ չբաժնուած՝ աւագաժողովին վճիռն հրատարակեցին: Եւ որովհետեւ նոյն ատենները բողոքողներուն կողմը սաստիկ շատցած ու զօրացած էր, եւ կայսրն ընելու պատերազմներուն համար իրենց մեծ կարօտութիւն ունէր, անոր համար եկեղեցւոյ սովորութեան եւ ուղղափառ հաւատքին ներածէն աւելի

21. «Կայսրընտիրը Լուտերին հաստատութեամբն ու իմաստուն խրատովը հաստատուելով, կ'ըսէ Սէքէնտորֆ, Յունիսի 14ին գրած մէկ նամակին մէջ... հրամայեց... որ անկէ վերջը ամենեւին մէկ մասի մէջ զիջում չըլլայ: «Եւ, կ'ըսէ կայսրընտիրը նոյն թղթին մէջ, թէպէտ ուրիշներէն վար չեմ մնար Գերմանիայի մէջ խաղաղութիւնը հաստատուած տեսնելու բաղձանքին մէջ, բայց աս բանիս համար չեմ կրնար հաւանիլ որ Աստուծոյ եւ խղճմտանքին դէմ գործուի: ... Ասանկ խաղաղութիւնը առուգիւ աստուածային պատիւ եւ անհնարանելի երկպառակութեան սկիզբ մը կ'ըլլար»: Անկէ վերջը կը պատմէ Սէքէնտորֆ թէ կայսրընտիրն իրեններուն հրաման խաւրեց որ Աւգսպուրկի դաւանութիւնն ու ջատագովութիւնը նորէն գալու համեմ եւ ըսեն որ մինչեւ որ զմեզ չէք համոզեր որ մոլորած ենք, մենք ատոնց վրայ հաստատուն պիտի կենանք: Գիրք Գ. Հատ. 2Թ. 363, 364:

22. Քահանայապետը 1542ին Մայիսի 22ին հրամայած էր որ ընդհանուր ժողովքը Տրիդենտ քաղաքը ժողվուի, ու Նոյեմբերի առաջին օրը ամենայն սրբոց տօնին սկսի, որ օրը որ Լուտեր 25 տարի յառաջ ամենայն սրբոց եկեղեցւոյն մէջ իր մոլորութիւնները վարդապետելու սկսած էր: Բայց զանազան պատճառներով աս ժողովքին սկիզբը ուշանալով՝ հազիւ 1545ին Դեկտեմբերի 13ին սկսաւ:

շատ բաներ շնորհեց իրենց։ Աս պատճառաւ բողոքողք նոյն վճիռը շատ հաւնեցան եւ ուրախութեամբ ընդունեցան, ու սկսան կայսրը գովել որ բոլոր ինքնակալներէն աւելի արդար է, ամենէն աւելի խաղաղութիւնը կ'ուզէ ու հասարակաց օգտին փոյթ կը տանի. եւ խոստացան որ ամէն մէկը ուրիշ ասանկ առիթներու մէջ տուածէն աւելի զօրք եւ ուրիշ օգնութիւն տայ։ Բայց բողոքողներուն այսպէս ուրախացած ատենն՝ ուղղափառները սաստիկ կը տրտմէին, եւ յայտնապէս կայսեր դէմ կը տրտնջէին։ Կայսրը շատ ջանաց որ զանոնք զիջեցընէ, եւ զանազան պատճառանքներով կ'ուզէր ինքը զինքն արդարացընել. որով քիչ մը հանդարտելով՝ տուած վճիռն ընդունելու հաւանեցան, թէպէտ եւ միշտ մտքերնուն մէջ դրած էին որ ուղղափառ կրօնքին վնասակար բան է [23]։

Երբ որ աս վճիռը քահանայապետին ձեռքը հասաւ, շատ տրտմեցաւ ու վշտացաւ, եւ շուտ մը կայսեր թուղթ գրելով յայտնեց թէ ինչպէս կը ցաւի որ նոյն վճիռը տալու ատեն այնպէս չվարուեցաւ, ինչպէս որ իսկզբանէ վեր բոլոր բարեպաշտ ինքնակալները կը վարուէին։ Քահանայապետին տրտունջը գլխաւորաբար երեք բանի վրայ էր. Մէյ մը որ ինքնակալը՝ քահանայապետին կարծիքը չհարցուցած՝ վճիռ տուած էր որ կրօնական նիւթերը քննելու համար ընդհանուր կամ ազգային (եկեղեցական) ժողովք ժողվուի։ Երկրորդ որ աս վճռով չէ թէ միայն աշխարհական մարդիկ, հապա նաեւ հերետիկոսք իսկ եկեղեցիներուն ու վանքերուն ընչից վրայ կանոններ ու կարգեր սահմանելու յանդգնած էին։ Եւ երրորդ որ առաջին հին ժողովներուն հակառակ՝ կայսեր վճռոյն մէջ բողոքողաց շատ նպաստաւոր եւ ուղղափառ կրօնքին սաստիկ վնասակար բաներ սահմանուած էր։ Ասոնց վրայ խօսելէն ետեւ՝ քահանայապետը հօր պէս կայսեր խրատ կու տար որ Աստուծոյ դրած սահմաններէն անդին չանցնի, ու ձեռքը կրօնի վերաբերեալ բաներու մէջ չխոթէ, որպէս զի չըլլայ որ Աստուծոյ ասանկ բաներու մէջ մտնողներուն տուած պատիժներն իրեն վրայ ալ գան [24]։

Լուտեր քահանայապետին աս նամակը գրելն իմանալուն պէս՝ իր սովորութեան համեմատ սաստիկ կատղելով՝ անանկ գրուած մը դուրս հանեց, որն որ մինչեւ նոյն ատենը գրած ամէն գրքերէն աւելի անամօթ ու աղտեղի է, կամ թէ բողոքող մատենագրի մը խօսքն յառաջ բերելու համար, "Որուն մէջ

23. Սլէյտան, Գիրք ԺԵ. 246. Բ. 247. Բ։ Սեքենտորֆ, Գիրք Գ. Համ. ՃԺԳ. 475։ Բալլաւիչինի, Գիրք Ե. Գլ. Ե. Համ. Ա. 354, 355։

24. Սլէյտան, Գիրք ԺԶ. 250, 251. Բ։ Սեքենտորֆ, Գիրք Գ. Համ. ՃԺԴ., ՃԺԵ. 479. — 494։ Մէնցլ, Հատ. Բ. Գլ. ԺԵ. 344. — 347.

գործածած լրբութիւնը՝ քանուութը տարբերնէ վեր Հռոմայ եւ անոր քահանայից դէմ քարոզածներն ու ըսածները այնչափ անցուց, պարկեշտութեան օրէնքներն այնչափ մէկդի թող տուաւ, եւ անանկ նախատական ու պիղծ խօսքեր բանեցուց, որ անոնց համար ամենեւին գրիչ մը եւ առաւել եւս տպագրութեան մամուլ մը պէտք չէր գտնուիլ„[25]: Աս գրքին անունը դրաւ Հռոմի մէջ սատանայէն հաստատուած պապականութեան դէմ եւ կ՚ուզէր որ ասիկա թերեւս իր կամացը վերջին յայտարարութիւնը կամ թերեւս իր կտակը սեպուի: Բայց մէջի խօսքերը՝ որոնք ան աստիճանի աղտեղի, անամօթ եւ անպարկեշտ, մանաւանդ թէ խելացնոր բաներ են՝ որ հազիւ վայրենի ու անկիրթ ազգերու մէջ յիմար մը կամ գինով մը կրնայ խօսիլ, չենք կրնար մեր ընթերցողներուն առջեւը դնել[26]: Լուտեր աս ընդարձակ գրքին

25. Մենցլ, Հատ. Բ. Գլ. ԺԵ. 352:

26. Ինչպէս որ ուրիշ անգամ ալ զրուցած ենք, Լուտերին կողմը բռնող մատենագիրները իր աս տեսակ անամօթ ու պիղծ խօսքերուն զգուշութեամբ կը ծածկեն եւ ամենեւին յիշատակութիւն ալ չեն ըներ վրան: Ալէյսան՝ որ հասարակօրէն Լուտերին գրուածներէն երես երես վկայութիւն կը բերէ, աս գրքին վրայ միայն այսչափ կը գրէ. "Աս գրքին մէջ (Լուտեր) նախ պատասխան կու տայ պապին նամակին՝ որով անիկա շինծու կամ խաբէական խօսքերով ինքնակալը կրօնական նիւթերուն մէջը մտնելէն ետ կը կեցընէր, ինչպէս որ յառաջագոյն ըսինք: Ետքը ընդարձակ կերպով կը հերքէ Ս. Գրոց ան խօսքերը՝ զորոնք պապն իր իշխանութիւնը հաստատելու համար բերած էր, եւ իրեն դէմ կը գործածէ„: Գիէզ ԺԶ. 259: Ամենեւին չէ համարձակիր եւ ոչ համառօտ վկայութիւն մ՚ալ բերելու, որովհետեւ բոլոր ան ընդարձակ գրքին մէջ եւ ոչ կէս էջ բան մը կայ՝ որն որ մարդս առանց ամօթէն գետինն անցնելու կարող ըլլայ կարդալ: Բայց Ալէյսան կարծես թէ աս պակասութիւնը լեցընելու համար՝ Լուտերին նոյն գրքին սկիզբը դրած պիղծ պատկերին ստորագրութիւնը կ՚ընէ: Քիչ մը վերջը Լուտերին նոյն ժամանակները հանած ուրիշ մէկ գործքին նկարն ալ կը ստորագրէ, եւ չէ թէ միայն Նորոգչին աս պղծութիւնը կ՚արդարացընէ, հապա զինքը՝ թերեւս մարգարէ, եւ աս անամօթ ու գարշելի պատկերը՝ թերեւս մարգարէական հոգւով ձեւացուցած բան մը կը դնէ: "Շատերը, կ՚ըսէ, Լուտերին աս ծաղրածութիւնները կը յանդիմանէին, թերեւս թէ անվայել ու անպարկեշտ բաներ են, բայց ինք պատճառներ ունէր, որոնցմէ կը շարժէր, եւ կը կարծուէր որ ատանցմով ուրիշ բաներ կը գուշակէր: Որովհետեւ նոյն իսկ իր գըրքերուն մէջ շատ երեւելի բաներու վրայ մարգարէութիւններ կը գըտնուին, որոնցմէ ոմանք արդէն կատարուեցան, ոմանք ալ Աստուծոյ ձեռքն են„: Գիէզ ԺԶ. 259. Բ. 260:

Իսկ Սեքենտորֆ թէպէտ աս գրքին մէջ եղած պիղծ խօսքերուն վրայ ամենեւին յիշատակութիւն մը չ՚ըներ, բայց Լուտերին ուրիշ մէկ գրքին վրայ խօսելէն եւ ըսելէն ետեւ որ "Իւր ոչ Աւետարանականներուն (բողոքողներուն) ամէնն ալ կը հաւնէին նոյն գիրքը„, վրան կ՚աւելցընէ. "Սակայն աւելի վշտացուց զիրենք՝ աս տարի պապին դէմ դուրս ելած գրուածքը„. եւ անոնց խօսքը ի մէջ կը բերէ, որոնք կ՚ըսէին թէ "Լուտեր ան դաժանութեամբ իր անձին աւելի վնաս ըրաւ քան թէ իր թշնամիները„: Բայց կարծես թէ աս խօսքերով իր մարգարէին ու առաքելոյն նախատինք հասցուցած ըլլալէն վախնալով՝ կայսրընտրին նոյն գրուածքին վրայ ըրած դատումը հաճութեամբ մը ի մէջ կը բերէ: Կայսրընտրին խօսքն աս է. "Մարտինոս Վ. տարօրէն կարգի հոգի մը

մէջ Հռոմայ գահին եւ քահանայապետներուն ու կարդինալներուն վրայ չերեւակայուելու զըպարտութիւններ ու հայհոյութիւններ ընելէն ետեւ՝ լմընցընելու ատեն աս սպառնալիքն ալ կ'ընէ. Թէ որ կենդանի մնալու ըլլամ նէ՝ աւելի եւս սաստիկ կը գրեմ. իսկ թէ որ մահը վրաս հասնելով՝ թող չիտար որ կամքս կատարեմ, կը բաղձամ որ ուրիշ մէկը ելլէ ու ինծմէ հազար անգամ աւելի գէշ ընէ27 ։

ունի, որն որ չիկրնար տանիլ որ աս բաներուն մէջ իրեն սահման ու չափ դրուի ։ Բայց ամէնուն տարակոյս չկայ, որ ինք ծանրակշիռ պատճառ մը ունեցած պիտ'որ ըլլայ աս խօսքերը գործածելու ։ Արտաքոյ կարգի կերպով մը պապականութեան դէմ գրգռուած է, որպէս զի զանիկա կործանէ, չէ թէ որպէս զի դարման բերէ, որովհետեւ աս բանս անկարելի է. անոր համար ալ քաղցր խօսքեր չիգործածեր ։ Միտքն ան է որ իրը այնպէս յայտնի դուրս հանէ, որ պապական պղծութիւնները ամէն մարդ կարող ըլլայ տեսնել ու զգուշանալ ։ Բայց մենք կը կարծենք որ պապը չէ թէ միայն աս ու ասոնց նման խօսքերու, հապա շատ ուրիշ բաներու ալ արժանի էր,, ։ Սէքէնտօրֆ աս խօսքերը բերելէն ետեւ՝ միանգամայն Լուտերին գըքին ճակատը գրուած անամօթ պատկերին վրայ ալ խօսելով՝ կը ցուցնէ թէ երբ որ սմանք տրտունջեցին որ նոյն նկարը շատերուն գայթակղութեան եւ բարկութեան պատճառ կ'ըլլայ, կայսրընտիրը պատասխան տուաւ որ "Լուտեր տարբեր տեսակ հոգի մը ունի, անոր համար ալ հայրս ու հօրեղբայրս՝ Փրետերիկոս ու Յովհաննէս կայսրընտրինները՝ եւ ես ալ իրեն բան մը չենք հրամայեր ։ Ինք (Լուտեր) այնպէս զինուորութիւն մ'ունի, որ ուրիշները չեն կրնար ըմբռնել. անոր համար ես ալ չեմ կրնար իրեն աս կամ ան բանին արգելել, թէպէտ եւ սմանք անանկ գայթակղին,, ։ Սէքէնտօրֆ, Գիրք Գ. Համ. ՃԻԲ. 556 ։ Ցես Նաթ— Բլանք, Գիրք Թ. Հատ. Գ. Մասն Բ. 273. Ծանօթ. 29 ։

27. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ը. 232. — 273. Բ ։ — Բլանք կը ցուցնէ որ բողոքող իշխանները աս գրուածքը ուղղափառ իշխաններուն կը բաժնէին, որպէս զի քանի մը ուղղափառ քահանայից՝ իրենց քաղաքներուն մէջ Լուտերի վարդապետութեանց դէմ խօսածներուն հատուցում ընեն ։ Բայց վրան կ'աւելցընէ որ նոյն իսկ իրենց մէջէն շատերը ատոր վրայ կը ահաձէին ։ Գիրք Թ. Հատ. Գ. Մասն Բ. 272, 273 ։



անգամ տեսած ենք թէ սա իշխանը կը բաղձար ու՛ եռանդ կ'ընէր որ Խորհրդականաց ու Լուտերականաց մէջ միաբանութեան Բ. Դանիայի թագաւորը՝ Սաքսոնիայի կայսրընտրին եւ Հեսսենի աշխարհատէր կոմսին պէս՝ Նորոգութիւնը կամ Լուտերականութիւնը իր երկիրներուն մէջ տարածելու մեծ փոյթ ու ջանք ըրաւ, ուղղափառ հոտը ուզողներուն մեծ նեղութիւն հասցուց եւ գրեթէ բոլոր իր հպատակները լուտերական ըրաւ: Այդ ասոր վրայ Մոսհեմիոս երեւելի բողոքող մատենագիրն այսպէս կը գրէ: "Քրիստիան Բ., որն որ կամ բնութեամբ եւ կամ կրթութեամբ գաժան ու անագորոյն մարդ մըն էր, 1521էն սկսած՝ բոլոր Դանիան լուտերական կրօնքին գերութեանը տալ ուզեց...: Աս բանը չէ թէ կրօնի համար ունեցած փոյթէն ըրաւ, հապա իշխանութիւնն ու հարստութիւնը մեծցընելու բաղձանքով: Եւ արդէն ըրած գործքերէն յայտնի կ'երեւայ որ լուտերական կրօնքին՝ միայն այնչափ ատեն օգնեց, մինչեւ որ նոյն կրօնքին ձեռքովը բարձր իշխանութեան հասաւ, եւ զօրաւոր եպիսկոպոսները՝ իրենց ինչքերնէն ու իշխանութիւններնէն մերկացուց": Պտմ. Եկեղ. Դար ԺԶ. Հտ Ա. Գլ. Բ. Համ. ԼԳ: Աս խօսքը կրնանք ճշմարտութեամբ նոյն ժամանակը բողոքողութեան կողմը ըլլող իշխաններէն շատերուն վրայ ալ ըսել:

Աս աշխարհական իշխաններուն՝ եկեղեցական իշխանութիւնը յափշտակելուն վրայ ամէն գլխաւոր նորոգողները՝ իբրեւ մեծ անկարգութիւն մը կը քանքատէին: Բայց ամենեւին տրտնջելու իրաւունք չունէին, ինչու որ աս իշխանութիւնն անոնց ձեռքը բուն տուողները՝ իրենք են. որովհետեւ ուզած փոփոխութիւններն ընելու եւ ուղղափառ կրօնքը իրենց երկիրներուն մէջ ջնջելու համար միշտ աշխարհական իշխաններուն կը դիմէին, անոնց պաշտպանութիւնը չկորսընցընելու համար ամէն բանի մէջ միշտ անոնց կը հնազանդէին, որով զիրենք՝ հոգեւոր առաջնորդներնուն վրայ տիրելու եւ անոնց իշխանութիւնն արհամարհելու վարժեցուցին: Աս բանս շատ բողոքող մատենագիրները կը խոստովանին եւ իբրեւ Լուտերին բանած ճամբուն բնական հետեւութիւնը կը նկատեն: "...Շատ մը երեւելի իշխաններ նոր վարդապետութեան կողմը բռնեցին, կ'ըսէ Կուստաւ Ֆիշէր, եւ իրօք ալ մեծամեծ իշխանութիւններու մէջ նոյն վարդապետութիւնը խոթուեցաւ. Իշխանները կը նորոգէին, եւ աս բանիս մէջ աստուածաբանները իրենց ձեռք կը բռնէին ու զիրենք կը քաջալերէին...: Իշխանները՝ իբրեւ նոր ու զուտ վարդապետութեան հզօր պաշտպան ու նահատակ՝ անզգալի կերպով մը հոն հասան որ սկսան ամէն մէկը իր երկրին մէջ ինքը զինքը իբրեւ եկեղեցւոյ գլուխ սեպել: Ինկզբան աս բանը վնաս մը չունէր, որովհետեւ իշխանները՝ աստուածաբաններուն կարծիքը չհարցուցած՝ դիւրաւ բան մը չէին ըներ, ինչպէս Սաքսոնիայի կայսրընտրէն յայտնի է. ի վերայ այսր ամենայնի աս բանը եկեղեցւոյ անկախութեան հակառակ էր, եւ իրեն շատ անգամ վնասակար հպատակութիւն մը կը պատրաստէր. բայց ատիկա չըլլար նէ ալ, աս ստոյգ է որ նոր եկեղեցւոյն՝ հին առաքելական եկեղեցւոյ մերձենալը կը խափանէր": Գլ. ԻԱ. 745, 746: Ուրիշ տեղ մը յայտնապէս կը խոստովանի որ Լուտերին բանած ճամբուն հետեւութիւնն եղաւ "Եկեղեցւոյ ինքնակացութեան ու ազատութեան կորուստը, եւ եպիսկոպոսական իրաւանց՝ աշխարհական իշխաններուն ձեռքն անցնիլը": Եւ ետքը վրան կ'աւելցնէ որ թէպէտ Լուտեր ուզեց աս բաներուն ճար մը հոգալ եւ հոգեւորական իշխանութիւնը՝ աշխարհական իշխանութենէն անկախ ընել, բայց բանը բանէն անցած էր: "Չկրցաւ, կ'ըսէ, տալ եկեղեցւոյն ազատութիւնը՝ զորն որ միջին դարերուն մէջ ունեցած էր եւ օգտակար կերպով ունեցած էր": Մոան Գ. Հտ Ա. Գլ. Ա. 137, 138:

Արդ բողոքողք՝ քահանայապետին եւ եկեղեցւոյն օրինաւոր իշխանութիւնը մերժել ուզելնուն՝ աս շահն ունեցան որ իրենց վրայ աշխարհական քահանայապետներ ստացան, եւ առաքելոց իշխանութիւնը՝ աշխարհական իշխաններու ձեռք տու-

թիւն ըլլայ, եւ Զուինգլիին հետեւող Հելուետիացիներն ալ Համաձայնութեան դաշնակցութեան մէջ մտնելով՝ իրենց կողմէ ու նոյն դաշնակցութիւնը զօրանայ: Բայց կը տեսնէր որ գլխաւորապար Լուտերին դէմ գնելովը՝ աս բանը գլուխ չէր ելլեր, եւ խորհրդականները՝ թէպէտ խօսքով ու գրանց Լուտերականներուն հետ կը միաբանէին, բայց սրտով անոնցմէ կը գարշէին ու զիրենք կ'ատէին, եւ միանգամայն կ'իմանար թէ ասոր պատճառն ան է որ Լուտերականաց քանի մը սովորութիւնները, եւ մանաւանդ վերացուցումը կամ սուրբ խորհուրդը վեր վերցընելնին՝ ամենեւին չէին կրնար տանիլ, եւ իբրեւ կռապաշտութիւն կամ աւելորդապաշտութիւն կը սեպէին: Արդ իշխանը երկայն ատեն Լուտերը աս սովորութիւնը մէկդի ձգելու ստիպելէն ետեւ, վերջապէս անանկ նեղ խոթեց որ նախ ուրիշ եկեղեցիներէն ու ետքը Վիդդենպերկի եկեղեցիէն վերցուց[2]:

Խորհրդականք աս տեսնելով շատ ուրախացան, եւ մտքերնին դրին որ կարելի է թէ ետեւէ ետեւ ուրիշ բաներու մէջ ալ Լուտերի սաստիկ խստութիւնը կը յաղթեն, եւ այսպէս բոլորովին իրենց կողմը կը խոնարհեցընեն: Աս ալ բաւական չէ, նաեւ Լուտերականք սկսան ըսել որ Լուտերի մնաց զարմանալի հաստատութիւնը՝ որով մինչեւ հիմա հաղորդութեան մէջ Քրիստոսի իրական ներկայութիւնը կը պաշտպանէր, երթալով կը թուլնայ, ու կը սկսի Խորհրդականաց կարծեացը միտել[3]: Լուտեր աս խօսքերուն սաստիկ կը նեղանար, ինչու որ, ինչպէս յայտնի է, ամենեւին չէր կրնար իր պատուոյն դէմ կամ իր կարծիքները փոխելուն վրայ եղած խօսքերուն համբերել: Սակայն բանը աւելի չտարածելու համար քիչ մը ժամանակ ձայն չհանեց, ու պատշաճ առթի մը կը սպասէր որ նորէն ասպարէզ ելլէ: Աս առիթը շատ չուշացաւ. քիչ մը վերջը պատահեցաւ որ Վէլտ անունով երեւելի բժիշկ մը Վիդդենպերկ եկաւ ու Լուտերին տունը բնակեցաւ: Օր մը սեղանի վրայ նստած ատեննին՝ գլուխները քիչ մը գինիէն տաքցած ըլլալով՝ Վէլտ սկսաւ վերացուցման մէկդի ձգուելուն վրայ առանց զգուշութեան խօսիլ, եւ համարձակ Լուտերին ըսաւ որ Ամենուն բերանն աս է որ դուն Հելուետացիներուն հաճելի ըլլալու

լին: Բայց ամենէն ամօթալին ու նախատականն ան է որ շատ անգամ աս քահանայապետնին կին մը կ'ըլլայ, որուն որ իբրեւ օրինաւոր քահանայապետի պէտք է որ հնազանդին ու կրօնի վրայ ըրած որոշմունքներուն պէտք է որ գլուխ ծռեն: Աս կին քահանայապետը (ինչպէս Անգղիոյ թագուհին) եպիսկոպոսներ կը դնէ ու կը հանէ, ծոմ ու պահք բանալու հրաման կու տայ, եւ մինչեւ հաւատոյ մեծ ու երեւելի վարդապետութիւնները կ'որոշէ, եւ այլն...:

2. Գասպար Բէւկեր, առ Պոսիւէի, Գիրք Զ. Համ. ԺԲ:

3. Նոյն անդ: Կուստաւ Ֆֆէյեր, Գլ. Իէ. 777:

համար աս փոփոխութիւնը եկեղեցւոյ մէջ խոթեցիր, եւ միանգամայն սկսար հաղորդութեան վրայ իրենց ունեցած կարծիքին միտել։ Լուտեր՝ որն որ բժշկէն քիչ գինի խմած չէր, աս լսելուն պէս՝ անանկ կատղեցաւ եւ անանկ խօսքեր խօսեցաւ, որ Մելանքթոն շուտ մը գուշակեց թէ բանը գէշի պիտ'որ երթայ, եւ ան քանի մը տարիէ վեր Լուտերականաց ու Զուինգլիականաց մէջ եղած արտաքին բարեկամութիւնն ու միաբանութիւնը չարաչար պիտի քակուի [4]։

Քանի մը օր վերջը ասոր վրայ ուրիշ պատճառ մ'ալ աւելցաւ։ Զուինգլիականք իրենց Ս. Գրոց գերմաներէն թարգմանութիւնը նորէն տպեցին, եւ տպողը օրինակ մը Լուտերին պարգեւ խաւրեց։ Ասոր վրայ Լուտեր աւելի եւս կատղեցաւ. վասն զի, ինչպէս Զուինգլիականք յայտնապէս կը զրուցեն եւ Լուտերականք ծածուկ մը կը խոստովանին, իրեն մեծ նախատինք կը սեպէր որ իրմէ ուրիշը Ս. Գիրքը թարգմանելու ձեռք զարնէ, եւ նորոգութեան աշակերտները՝ իր թարգմանութիւնը բաւական չսեպելով՝ ուրիշ թարգմանութիւն մ'ալ ուզեն ունենալ։ Այդ Լուտեր Աստուածաշունչն իրեն խաւրողին շուտ մը իմացուց որ մէյ մ'ալ Զուինգլիականաց գրքերէն իրեն բան մը չխաւրէ, վասն զի, ըսաւ, ես անոնց հետ ամենեւին հաղորդակցութիւն չունիմ, գրքերնին ոչ ընդունիլ եւ ոչ կարդալ կ'ուզեմ, որովհետեւ հետերնին քիչ մը հաղորդակցութիւն ունենալն ալ՝ Քրիստոսի հաւատացեալ անդամներուն սաստիկ մեծ մեղք է։ Ստուգիւ շատ կ'աշխատին. բայց բոլոր փոյթերնին ու ջանքերնին փուճ է, ինչու որ արդէն իսկ դատապարտեալ են, եւ ուրիշներն ալ հետերնին դժոխք տանիլ կ'ուզեն։ Ուստի ես իրենց դատապարտութեան ու հայհոյութեան վարդապետութիւններուն չեմ ուզեր հաղորդակից ըլլալ, հապա մանաւանդ միտքս դրած եմ որ որչափ կենդանի եմ նէ՝ աղօթքով ու գրուածքով իրենց դէմ պատերազմիմ [5]։

Ասիկա գրեց ու շուտ մը սպառնալիքը գործքով ալ կատարելով, 1544ին՝ Վերջին խոստովանութիւն ըսուած գիրքը դուրս հանեց, որով ութը տարիէ վեր դադրած պատերազմը նորէն սկսաւ։ Մելանքթոն աս բանիս վրայ իր բարեկամներէն մէկուն այսպէս կը գրէ։ «Գուցէ աս իմ թուղթս ձեռքդ չհասած՝ կ'ընդունիս Լուտերին անհնարին սաստիկ գիրքը՝ որով Ս. Հաղորդութեան վրայ եղած կռիւը կը նորոգէ։ Երբեք աս պատերազմը այսչափ սաստկութեամբ մղած չէր. անոր համար ես ասկէ

4. Գասպար Բեւկեր, առ Մենցլի, Հատ. Բ. Գլ. ԺԹ. 410. Ծանօթ։ Սեքենտորֆ, Գիրք Գ. Համ. ՃԺԸ. 515։ Պոսիւէ, Գիրք Զ. Համ. ԺԲ։

5. Մենցլ, Հատ. Բ. Գլ. ԺԹ. 410։ Պոսիւէ, Գիրք Զ. Համ. ԺԳ։ Կուստաւ Ֆիցեր, Գլ. ԻԷ. 776։

վերջը եկեղեցւոյն խաղաղութեան ամենեւին յոյս չունիմ: Ա՜հ մեր թշնամիները... գլուխ կը վերցընեն, եւ մեր եկեղեցիներին ուրիշ եւս կը պատռուին: Երբ որ աս բաները կը յիշեմ նէ, սաստիկ ցաւերու մէջ կ'իյնամ,, 6:

Մէլանքթոն այսպէս կը գրէ. իսկ Լուտեր իր գրքին մէջ առանկ կը խօսի. Իմ կեանքիս օրերը լմննալու ատեն, երբ որ մէկ ոտքովս արդէն գերեզմանը խոնարհած եմ, աս խոստովանութիւնս ուզեցի դուրս տալ, որպէս զի Քրիստոս դատաւորին առջեւը աս վկայութիւնն ու պարծանքն ունենամ որ հաղորդութեան խորհրդոյն թշնամիները՝ Գարլշդատը, Զուինգլին, Եկոլամպադն ու անոնց աշակերտները դատապարտեցի, եւ մեծ զգուշութեամբ իրենցմէ խորշեցայ, ինչպէս որ Առաքեալն ալ խրատ կու տայ թէ "Ցառնէ հերձուածողէ. յետ միանգամ եւ երկիցս խրատելոյ, հրաժարեսջիր. գիտասջիր զի թիւրեալ է այնպիսին, եւ մեղանչէ անձամբ զանձն դատապարտեալ,,: Ստոյգ է որ քանի մը տարի յառաջ հետերնին միաբանեցանք, եւ դաշինք դրինք որ մէջերնիս բարեկամութիւն պահենք ու իրարու դէմ սաստիկ կամ նախատական խօսքեր չգրենք: Բայց որովհետեւ Խորհրդականք անկէ վերջը Զուինգլիին մէկ գիրքը տպեցին, որուն մէջ ան հերձուածապետը չէ թէ միայն հաղորդութեան խորհրդոյն թշնամի կ'ելլէ, հապա բոլորովին հեթանոսի պէս կ'երեւայ, ինչու որ Թեսեոսը, Սոկրատը, Արիստիդէսը, Նուման, Կամիլլոսը եւ ուրիշ ասոնց պէս կռապաշտ մարդիկները՝ նահապետներուն ու մարգարէներուն հետ արքայութեան մէջ կը դնէ, անոր համար ես ան ժամանակէն վեր Զուինգլիականներն ուղղելու յոյսը բոլորովին մէկդի ձգեցի: Առաւ միանգամայն խնդացայ որ բոլոր իրենց տուած խրատներս ու խորհուրդներս եւ մէջերնիս հաստատուած սէրն ու բարեկամութիւնը ամենեւին օգուտ մը չեն ըրեր: Արդ եթէ մէկը կը գանուի որ աս միաբանութիւնն ընելուս համար կը կարծէ թէ ես Խորհրդականաց հետ մի եւ նոյն կարծիքն ունիմ, կ'աղաչեմ որ ան խորհուրդը մէկդի ձգէ. վասն զի ինծի լաւագոյն է կտոր կտոր ըլլալ ու մարմինս այրուելու մատնել, քան թէ Զուինգլիին, Գարլշդատին ու Եկոլամպադին կարծեացը հետ միաբանիլ: Եւ չիվայլեր որ ասկից վերջը իրենց համար աղօթք ընենք կամ իրենց վրայ հոգ ունենանք. ինչու որ Ս. Յովհաննէսին ըսածին պէս՝ մահուչափ մեղք կը գործեն 7:

Երբ որ Լուտերին աս գիրքը դուրս ելաւ, Զուինգլիականք սաստիկ բարկացան. որովհետեւ թէպէտ իրենք կարծիքներնէն

6. Թուղթ առ Գուլլինկէր, առ Ուլէմպերկէ, Գլ. ԼԲ. Համ. Գ:

7. Գործք Լուտ. գերմ. Համ. Ը. 192. Բ. — 202. Բ:

եա կեցած չէին, բայց Լուտերականներուն հետ միաբանութիւն ընելէն ետեւ՝ Լուտերին եւ իրեններուն դէմ ամենեւին բան մը չէին գրած ։ Մէլքերնին սկսան խորհուրդ ընել թէ աս իրենց եղած նախատինքը ինչ կերպով վրաններնէն վերցընեն. ամենք, որոնց մէջն էր Բուկեր, ըսին որ Լուտերին խնայելու է, որովհետեւ ծեր է եւ եկեղեցւոյ մէջ այնչափ մեծ արդիւնք ունի. մանաւանդ որ, ըսին, գրածները՝ իրմէ գրած չէ, հապա ուրիշներէն գրգռուելով ։ Իսկ ուրիշները կ'ըսէին թէ ամենեւին լռելու չէ, հապա պատասխան տալու է. որովհետեւ ինք մեզմէ ամենեւին մէկէն՝ ոչ հրապարակաւ եւ ոչ առանձինն՝ նախատինք մը չկրած՝ թէ կենդանիներն ու թէ մեռածները այնպէս սաստիկ կը նախատէ ։ Մանաւանդ թէ, կ'ըսէին, պէտք է որ աճապարենք աս բանս շուտ մը հոգանք, որպէս զի չըլլայ որ՝ եթէ մենք զմեզ չպաշտպանած Լուտեր մեռնի եւ մենք իր մահուընէ վերջը գրենք նէ, այնպէս երեւնայ թէ իրմէ կը վախնայինք, որով ջատագովութիւննիս ալ զօրութիւն մը չունենայ ։

Աս վերջին խօսքերուն շատերը հաւանեցան, ուստի եւ 1545ին սկիզբները Ուղղափառ խոստովանութիւն անունով՝ լատիներէն ու գերմաներէն լեզուաւ գիրք մը դուրս հանեցին, որուն սկիզբը իրենց ու Լուտերականաց մէջ դրուած դաշանց վրայ, ետքը իրենց հաւատքին ու վարդապետութեան վրայ կը խօսէին, եւ ամենէն ետքը Լուտերին ամբաստանութիւններուն պատասխան կու տային ։ Լուտեր Զուինգլիին դէմ ըրած ամբաստանութիւններուն մէջ աս ալ կը ցուցնէր որ աղտեղի ու ամարդի խօսքեր կը գործածէ ։ Խորհրդականք աս ամբաստանութեան պատասխան տալու ատեն այսպէս կը խօսէին. "Գուցէ Լուտեր սխալմամբ՝ Զուինգլիին վրայ խօսելու տեղ՝ իր անձին վրայ կը խօսի. վասն զի յայտնի է եւ ամենուն մէկը չիկրնար ասոր վրայ տարակուսիլ, որ աշխարհքիս մէջ մարդ չկայ՝ որն որ երբեք Լուտերէն աւելի աղտեղի, ամարդի ու անամօթ կերպով գրած կամ խօսած ըլլայ, եւ կամ մեր անարատ կրօնին բաներուն եւ ուրիշ երեւելի վէճմանց մէջ այնչափ քրիստոնէական համեստութեան ու ողջախոհութեան դէմ ճառած ըլլայ ։ Ամենուն ձեռքը կը պտըտին Լուտերին՝ Անգղիայի թագաւորին ու Հենրիկոս Պրաունշուայկի դքսին դէմ գրած գրքերը[8], որոնք խոզարած մը գրած ըլլար նէ, եւ ոչ եթէ Լուտե-

8. Աս Պրաունշուայկի դքսին դէմ եղած գիրքը՝ որուն վրայ Զուինգլիականք հոս կը խօսին, Լուտեր 1541ին գրած էր եւ պատճառն աս էր ։ Սաքսոնիայի կայսրընտիրը, Հեսսենի աշխարհատէր կոմսը եւ ուրիշ բողոքող իշխանները՝ Հենրիկոս Պրաունշուայկի դքսին հետ սաստիկ թշնամացած էին ։ Իսկզբան իրարու դէմ զանազան գրուածներ դուրս հանեցին. բայց ետքը բաներնին ան աստիճանի հասան՝ որ թուղթն

րի պէս հոգւոց երեւելի հովիւ մը, գուցէ ցաւակցութեան արժա-
նի կը սեպուէր, բայց նախատինքէն բոլորովին ազատ չէր մնար„ :

Աս ըսելէն վերջը խօսքերնին այսպէս յառաջ կը տանէին. Լուտեր մեզի դէմ գրած խստութիւնը կարճառօտ կ'անուանէ : Ստուգիւ թէ որ մէկը նոյն գրուածքին մէջ պատճառ կամ Ս. Գրոց վկայութիւն փնտռելու ըլլայ նէ՝ կարճ է ու համառօտ. իսկ թէ որ մէջը գտնուած նախատական խօսքերուն ու զրպարտութիւններուն միտ դնելու ըլլայ նէ՝ շատ երկայն ու ընդարձակ է : Բայց Լուտերի ամէն գրքերուն նկարագիրն աս է. որուն համար ալ պարզամիտներն այնչափ կը գայթակղէին որ Աւետարանն իրենց ատելի ու գարշելի կ'ըլլայ : Ստոյգ է Մարգարէները, Յովհ. Մկրտիչ, առաքեալք եւ նոյն ինքն Քրիստոս շատ անգամ սաստիկ ու խիստ խօսքեր խօսեցան, բայց միշտ իրենք զիրենք կը չափաւորէին. իսկ Լուտեր ամենեւին չափաւորութիւն չիճանչնար, եւ բոլոր իր գրքերը նախատական ու զրպարտիչ խօսքերով լեցուն են : Այնպէս որ եթէ երբեմն զօ-

ու գրիչը մէկդի ձգելով՝ ձեռքերնին զէնք առին : Եւ որովհետեւ Սաքսոնիայի կայսրընտիրն ու Հեսսենի իշխանը կամաց Շմալքալտի դաշնակցութեան անուամբը սաստիկ զօրքով Հենրիկոսին վրայ յարձակեցան, խեղճն այնչափ բազմութեան դէմ դնել չկրնալով՝ ստիպուեցաւ փախչիլ : Ան ատեն բողոքող իշխանները անոր երկրին տիրելով՝ շուտ մը ուղղափառ կրօնքը ջնջեցին եւ լուտերական աղանդը հաստատեցին : Ուրիշ մատենագիրներէն զատ՝ աս դէպքս ընդարձակ կը պատմէ Բլանք (Գիրք+ Թ. Հատ. Գ. Մասն Բ. 202. — 212.), եւ աս բանս ընելնուն համար բողոքողները վար կը զարնէ, ցուցընելով որ կրօննին պաշտպանելու համար ամենեւին ատանկ բան ընելու հարկ չկար :

Արդ երբ որ իշխանք իրարու հետ դեռ գրով կը կռուէին, Հենրիկոս իր գրուածներէն մէկուն մէջ ըսած էր որ Լուտեր Թէպէտ եւ Սաքսոնիայի կայսրընտրէն կուռքի պէս պաշտօն ու պատիւ կ'ընդունի, սակայն զանիկա կ'անարգէ, կ'արհամարհէ ու ծաղր կ'ընէ : Լուտեր աս գրուածքը կարդալուն պէս՝ Հենրիկոսին դէմ վերը յիշուած գիրքը հանեց, որուն մէջ դքսին դէմ այնչափ նախատական խօսքեր կը գրէ եւ այնչափ աղտեղի անուններ կը դիզէ որ մարդ չկրնար առանց արդար բարկութիւն մը զգալու կարդալ : Դքսին տուած սովորական անուններն ասոնք են. էշ թանձրամիտ, անզգուած կոճղէ մը աւելի անմիտ, անամօթ ստախօս, թափեալ ուղեղ, լուսնոտ, դիւահար, ամպարիշտ, ձախակողմեան աւազակ, հրձիգ, սատանայ, կատաղի, ցնորեալ, խռովարար բռնաւոր, վատասիրտ ու փախստական աւազակ, խենթեցած ներքինի, աւազակներու առաջնորդ եւ արիւնարբու շուն, կրակ ձգողներուն գլուխն ու իշխանը, չէ թէ միայն մէկ սատանայէ հապա բոլոր մէկ սատանաներու բանակէ գրաւուած, որն որ չէ թէ գինով հապա սատանաներով գինովցած ու լեցուած է, որն որ սատանայ կը ծնէ, սատանայ կը թքնէ, սատանայ կը . . . է, սատանայ կը . . . է, որուն քովը Յուդա եւ Հերովդէս եւ Ներոն եւ աշխարհքիս ուրիշ չարագործները պաշտօնելու սուրբ պէս են, որուն նման արեգական տակը երբեք մէկը եղած չէ . . . . . . . . . . . : Գործ+ Լութ. Գերմ. Հատ. Է. 417. Բ. 444 : — Մաթեսիոս Լուտերին աս անամօթ գիրքը ջատագովելու համար կը զրուցէ որ "Ով որ մարգարէից գրքերը կարդացած չէ եւ Հոգւոյն սրբոյ լեզուն չիճանչնար նէ, . . . անիկա աս Բուքէ գրքին խօսքերէն կը գայթակղի„ : Ճառ ԺԳ. 162 :

բաւոր ու հաստատուն պատճառաբանութիւն մ'ալ գտնելու ըլլայ, այնչափ աղտեղի, գարշելի ու գառն խօսքերով կը բացատրէ, որ մարդ չիկրնար հաւանիլ: Ասոնք գրելէն ետեւ՝ Լուտերի խօսքերը առաքելոց, մարգարէից ու Ս. Հայրց խօսքերուն հետ կը համեմատեն, եւ կը ցուցընեն որ Նորոգիչը անոնցմէ որչափ տարբեր ու օտար է. մէկ խօսքով ըսելու համար՝ աս գրքին մէջ Լուտերը խաղք ու խայտառակ կ'ընեն 9:

Այս կերպով նորէն սկսաւ Լուտերականաց ու Խորհրդականաց եւ առանձինն Զուինգլիականաց մէջ եղած սաստիկ թշնամութիւնը, որն որ Լուտեր ժառանգութեան մը պէս իր աշակերտներուն թող տուաւ:

9. Առ Ուլենպերկի, Գլ. ԼԲ. Համ. Գ: — Աս գրքով Լուտեր այնպէս սաստիկ կը նախատուէր որ Սաքսոնիայի կայսրընտիրն ու Հեսսենի աշխարհատէր կոմսը իրենց երկիրներուն մէջ ծախուելը արգելեցին: Կոսսպոս Փէշէր, Գլ. ԻԷ. 778: —Աս գրքին ծախուելը արգելողներն անոնք էին որ Լուտերին՝ եկեղեցւոյ ու քահանայապետին դէմ գրած անամօթ եւ անպիտան գրուածքները սաստիկ փութով կը տարածէին, եւ տարածուելը արգելողները բանաւոր կանչելէն չէին դադրեր:



## ԳԼՈՒԽ ԺԸ

## Լութերի մահը

Լութեր Այսլեպէն կ'երթայ։ Վիթթէնպերկէն ելլելէն յառաջ խօսած ճառը։ Փառաւորութեամբ Այսլեպէն մտած ատեն՝ վրան տկարութիւն մը կու գայ։ Վերջին գործերը, հիւանդութիւնն ու մահը։ Մարմինը կը բերեն Վիթթէնպերկի ամենայն սրբոց եկեղեցւոյն մէջ կը թաղեն։

# 1546

ԼՈՅՆ ժամանակները Մանսֆելտի կոմսերուն մէջ երկրի սահմաններու եւ ժառանգութեան վրայ գժտութիւն մը ծագած ըլլալով՝ ասոնք Լութերը Այսլեպէն կանչեցին, որ գայ նոյն խառվութիւնները վերցընելու հնարք մը գտնէ։ Լութեր աս գործքը յանձն առաւ, ու 1546ին Յունուարի 23ին ճամբայ ելաւ որ հոն երթայ[1]։ Վիգգենպերկէն ելլելէն քանի մը օր յառաջ կիրակին օրը եկեղեցին ճառ մ'ըսաւ, որուն մէջ մարդկային մտաց դատաստաններուն կամ կարծիքներուն վրայ երկայն խօսեցաւ, ըսելով որ կրօնական նիւթերու մէջ մարդկային մտաց սաստիկ սանձ դնելու է, որովհետեւ սատանան մարդկային մտաց ու բնական լուսաւորութեան պատճառանօք շատերը հաւատքէն կը հեռացընէ։ Անկից ծագեցան, կ'ըսէ, Արիանոսեանց ու Խորհրդականաց աղանդները։ Բայց մեր օրերը դուրս ելած աղանդները՝ միայն ասոնք չեն. ինչու որ երեսունէն աւելի հերձուածապետներ փորձ փորձեցին զիս իրենց մոլորական վարդապետութիւններուն ետեւէն ձգելու. սակայն ես շատ քաջութեամբ իրենց դէմ դրի ու պատճառներնին հերքեցի։ Եւ եթէ իրենց հաւանելու ըլլայի նէ՝ պէտք էր որ կրօննիս երեսուն աղանդ բաժնուէր։ Հերետիկոսները մեր զանազան խորհուրդներով երեւի կ'ըլլան որ ամենեւին մէկտեղ մը չեն կենան, հոգւոյ ամենուն վրայ քննանան ու դիպչին։ Աղէկ գիտեմ որ եթէ Աստուած մեզի հաւատարիմ պաշտօնեաներ խաւրելու չըլլայ նէ, սատանան մեր եկեղեցին պիտի պատռէ, եւ պիտի չդադրի մինչեւ որ բոլորովին չկործանէ։ Աս բանս թէ որ պապին ու կայսեր ձեռօքը գլուխ տանիլ չկրնայ նէ՝ անոնց ձեռօքը պիտի ջանայ կատարել, որոնք մեզի հետ մի եւ նոյն հաւատքն ունին։ Եւ անոնց ձեռօքը կ'ուզէ սատանան իր կամքը կատարել, որոնք կ'ըսեն թէ ինչ վնաս ունի թէ որ աս կամ ան բանին մէջ զիջանելու ըլլանք։ Չէ, ամենեւին պէտք չենք եւ ոչ մազի չափ տեղի տալ կամ զիջանիլ։ Թէ որ մեզի հետ նոյն վարդապետութիւնը պահել կ'ուզեն

1. Մաթեսիոս, ճառ ԺԴ. 175. Բ։ Սեքենտորֆ, Գիրք Գ. Համ. ՃԼԳ. 634, 635։

նէ՝ պահէն, այս թէ ոչ՝ թող տան երթան։ Ես վարդապետութիւնս իրենցմէ չընդունեցայ, հապա աստուածային շնորհօք՝ Աստուծմէ։ Շատ կասկածի մէջ եմ. անոր համար Աստուծոյ եւանգելիոնին աղօթք ըրէք որ իր խօսքը ձեր մէջը պահպանէ [2]։

Լութեր աս ճառը խօսելէն քանի մը օր վերջը, ինչպէս ըսինք, ճամբայ ելաւ. հետը մէկտեղ տարած էր որդիքներէն երեքը, իսկ ճամբան Հալ քաղքէն Յուստոս ալ իրեն ընկերացաւ։ Մանսֆէլտի կոմսերուն երկիրը մտնելուն ատեն՝ անոնք զինքը մեծ պատուով ընդունեցան. դիմացը հարիւր հոգիէն աւելի ձիաւոր խաւրեցին, որոնք տարին զինքը Այզլեպէն բերին, ուր որ կոմսերն ալ անձամբ դիմացն ելան։ Բայց այսպէս փառաւորութեամբ քաղաք մտած ատեններին՝ Լութերին վրայ մէկէն սաստիկ տկարութիւն ու նուաղութիւն մը եկաւ, որուն վրայ ինք Լութեր կը կարծէր թէ սատանային գործքն է. ուստի եւ իր մտերիմներուն ըսաւ որ "Միշտ սատանան հետս այսպէս կը վարուի. երբ որ երեւելի գործք մը գործելու վրայ կ'ըլլամ նէ՝ զիս աս կերպով կը փորձէ եւ աս փորձութեամբ վրաս կը յարձակի" [3]։ Աս տկարութիւնը քիչ քիչ անցաւ, եւ սկսաւ ըստ սովորութեան ուտել խմել. կոմսերը զինքը ազնիւ գինիներով, որսի մսերով ու համադամ կերակուրներով կը պահէին. մինչեւ շատերը կ'ըսեն որ շատ անգամ գինովցաւ ու մահը աս շատ ուտելէն խմելէն վրան հասաւ։

Այզլեպէն հասնելուն երկրորդ օրը սկսաւ Նորոգիչը ան գործքին ետեւէն իյնալ, որուն համար զինքը կանչած էին, եւ Յունուարի 28էն մինչեւ Փետրուարի 17 միշտ անոր կը զբաղէր։ Նոյն միջոցին եկեղեցւոյն մէջ չորս անգամ քարոզ տուաւ, երկու ալ քահանայ ձեռնադրեց [4]։ Փետրուարի 14ին ժողովրդեան առջեւը տուած վերջին քարոզին մէջ ըսաւ թէ Ես նորէն իմ Վիդդենպերկցիներուս կը դառնամ. բայց դուք իզմէ ընդունած վարդապետութիւններնուդ մէջ հաստատուն կեցէք, եւ միշտ աս աշխարհքիս իմաստուններէն զգուշացէք [5]։

2. Գործք Լութ. գերմ. Հատ. Ը. 314։

3. Նոյն տեղը, 422։ Մաթեսիոս, Ճառ ԺԴ. 176։ Սեքէնտորֆ, վերը յիշուած տեղը, 635։

4. Կուստաւ Ֆիցեր, Գլ. ԼՌ. 874։

5. Բոլոր թէ ուղղափառ եւ թէ բողոքող մատենագիրները Լութերին՝ Փետրուարի 16ին, այս ինքն մեռնելէն երկու օր յառաջ թղթի կտորի մը վրայ գրած մէկ խօսքը յառաջ կը բերեն, որով Նորոգիչը Ս. Գրոց դժուարիմանալի ըլլալը կը յայտնէ։ "Ով որ հինգ տարի հովիւ չէ եղած նէ, կ'ըսէ Լութեր, չիկրնար Վիրգիլիոսի Հովուականներն հասկընալ։ Ով որ հինգ տարի մշակութիւն չէ ըրած նէ, Վիրգիլիոսին Մշակականը չիկրնար իմանալ։ Ով որ քսան տարի տէրութեան գործքերուն մէջ մտած չէ նէ, Կիկերոնին նամակները չիկրնար իմանալ։ Այսպէս ալ մէկը չկարծէ որ Ս. Գրոց ճաշակն առած է, թէ որ հարիւր տարի Եղիա ու Եղիսէ

Մայիս 17ին Լուտերին վրայ հիւանդութեան նշաններ սկսաւ երեւնալ[6]. Անոր համար Յուստոս եւ ուրիշները, նոյնպէս կոմսերն ալ իրեն ըսին որ ա՛լ քարոզ չտայ, հապա տունը հանգարտ կենայ: Լուտեր իրենց խօսքին անսալով՝ տան մէջ մնաց. բայց ամէն օրուան պէս կէսօրուան եւ երիկուան կերակրոյ գնաց, ու իր սովորականին պէս կերաւ խմեց: Իրիկուան կերակրէն ետեւ ելաւ սենեակը գնաց, եւ սկսաւ կուրծքի նեղութիւն զգալ: Հոն եղողներէն մէկն ըսաւ թէ կոմսուհին սովորութիւն ունի որ իր որդիքներէն մէկը սաստիկ ցաւ մ'ունենայ նէ՝ միեղջերուի եղջեր տաշուկ կու տայ. ուստի եւ գնաց որ իրմէ քիչ մը նոյն դեղէն առնէ: Անիկա բերելու երթալէն վերջը Յուստոս ուրիշ մէկու մը հետ սկսաւ կուրծքը տաք լաթով շփել, որով քիչ մը հանգիստացաւ: Քիչ մը ետքը Ալպերդ կոմսն եկաւ ու անձամբ դեղը բերաւ, եւ երբ որ իմացաւ թէ հիւանդը աղէկկեկ է, դեղը հոն ձգեց գնաց: Լուտեր նոյն դեղէն քիչ մ' առնելէն վերջը՝ եթէ կէս ժամ մը քնանալու ըլլամ նէ, ըսաւ, կը յուսամ որ հիւանդութիւնը բոլորովին կը փարատի: Աս ըսաւ ու ելաւ գահոյքին վրայ ընկողմեցաւ եւ ժամը ութ ու կէսէն մինչեւ տասը հանգարտ քնացաւ: Տասնին արթընցաւ, ելաւ քովի սենեակը գնաց, եւ անկողնին մէջ մտնելով՝ քովիններուն ըսաւ որ "Տեառն Աստուծոյ եւ իր Աւետարանին համար աղօթք ըրէք, որպէս զի իր ամէն բանը յաջող երթայ, վասն զի Տրիդենտի ժողովքն ու գարշելի պապը իրեն դէմ սաստիկ զայրացած են„[7]: Աս ըսելէն ետեւ քուն մտաւ:

Իսկ Յուստոս Լուտերին որդիքներովն ու մէկ ծառայով

մարգարէներուն, Յովհաննէս Մկրտչին, Քրիստոսի հետ եկեղեցին կառավարած չէ: Աս աստուածային Ենէականը մի փորձեր, հապա գետինն ինկած՝ հետոցը երկրպագութիւն ըրէ: Մենք մուրացկան ենք: Անիկա ճշմարտութիւն է„: Խօսք Սեղանոյ, Յ. Բ: Մէնցըլ, Հատ. Բ. Գլ. ԺԹ. 425, 426: Ձենք գիտեր՝ Լուտերին աս խօսքը իր Ս. Գրոց թարգմանութեան վրայ ըրածներուն հետ ինչպէս միաբանենք. բայց եթէ ըսելով որ իր անձին փորձովն իմանալով՝ առջի կարծիքն աս խօսքով ետ կ'առնէ:

6. Ասկէ մինչեւ գլխուն վերջը պատմածնիս Յուստոսին՝ Լուտերին մահուան վրայ գրած տեղեկութենէն առած ենք, ասկից կ'առնեն նաեւ գրեթէ բոլոր թէ՛ ուղղափառ եւ թէ՛ բողոքող մատենագիրները, որովհետեւ հերձուածողապետին մահը քիչ մարդու առջեւ պատահած ըլլալով եւ ամենուն ուղղափառ մը կամ անկողմնակալ մարդ մը ներկայ չգտնուելով՝ ուրիշ աւելի հաւատարիմ վկայութիւն մը չունինք: Անոր համար գրածներնուս ստուգութիւնը՝ միայն Յուստոսին վկայութեան վրայ հաստատուած է, որուն որ մենք երաշխաւոր չենք կրնար ըլլալ: Աս տեղեկութիւնն ամբողջ կը գտնուի ի Գործս Լուտ. Եէնայ. Հատ. Ը. 421. Բ: — 426. Բ: Նոյնը Սեքենտորֆ ալ՝ վրան զանազան ծանօթութիւններ աւելցընելով՝ ի մէջ կը բերէ. Գիրք Գ. Հատ. ՃԼԴ. 636. — 638: Տես նաեւ Մաթեսիոս, Ճառ ԺԴ: 177. Բ. — 179. Բ:

7. Յուստոսին տեղեկութեան մէջ. Գործք Լուտ. գերմ. Հատ. Ը. 423: Մէնցըլ, Հատ. Բ. Գլ. ԺԹ. 426:

քովը կը սպասէին։ Լուտեր մինչեւ կէս գիշերէն ժամ մը վերջը քնացաւ, եւ երբ որ արթընցաւ նէ՝ ծառային հրամայեց որ խուցը տաքցընէ։ Յուստոս ինչպէս ըլլալն հարցուց. Լուտեր ալ պատասխան տուաւ. «Ո՜հ, Տէր, ինչ ցաւերու մէջ եմ. կարծեմ թէ Այսլեպէն՝ ծնած ու մկրտուած տեղս՝ պիտի մեռնիմ»։ Յուստոս ու ծառան ըսին թէ Ա՜հ, յարգոյ Հայր, Աստուած մեր երկնաւոր Հայրը քեզի օգնութիւն կը հասնի, քու քարոզած Յիսուս Քրիստոսիդ ձեռօքը։ Ան ատեն Լուտեր ոտք ելաւ, ու մէկը ձեռքէն չբռնած՝ քովի խուցը գնաց, հոն քանի մը անգամ երթալէն գալէն ետեւ՝ գահոյքին վրայ ընկողմեցաւ ու ըսաւ. Սաստիկ ցաւեր զիս կը նեղեն։ Տան մէջին ըլլողներուն աս բաները իմանալուն պէս՝ ամէնքն ալ վազեցին եկան. Ալպերդ կոմսն ալ իր կնոջմով մէկտեղ եկաւ, եւ զանազան համեմներ, արմատներ ու զօրացուցիչ դեղեր բերին եւ ամէնքը զինքը կը հոգային. նաեւ մօտ տեղերէն երկու բժիշկ բերել տուին։ Երբ որ ամէնքը կը ջանային որ իրեն օգնութիւն մ'ընեն, Լուտեր ըսաւ. Տէր Աստուած, աս ի՜նչ ցաւ ու անձկութիւն է կրածս. ա՛լ հիմա ստուգիւ գիտեմ որ Այսլեպէն պիտի մնամ։ Իսկ Յուստոս եւ ուրիշները զինքը կը մխիթարէին եւ խրատ կու տային որ Քրիստոս՝ մեծ քահանայապետն ու միակ միջնորդը օգնութեան կանչէ։ Լուտեր ասոր վրայ սկսաւ աղօթք ընել եւ Աստուծոյ շնորհակալ ըլլալ որ զՔրիստոս իրեն յայտնեց, զոր որ, ըսաւ, գարշելի պապն ու ամպարիշտները կը նախատեն, կը հալածեն ու կը հայհոյեն 8։

Բայց ո՛չ աս հպարտական ու Փարիսեցւոյն աղօթքին նման աղօթքը, ո՛չ բժիշկներուն տուած դեղերը եւ ո՛չ ալ քովի եղողներուն հոգն ու խնամքը կրցան իրեն օգուտ մ'ընել. հապա ցաւերը շատ սաստկանալով՝ զինքը անհնարին կը նեղէին։ Քիչ մը ետքը աչուըները գոցեց, իբրեւ թէ հանգչելու համար, եւ մէկը բան մը կը հարցընէր նէ՝ պատասխան չէր տար։ Վերջապէս Յուստոս հարցուց որ Մինչեւ հիմա քարոզած վարդապետութիւններուդ մէջ մնալ ու հաստատութեամբ անոնց մէջ մեռնիլ կ'ուզե՞ս։ Լուտեր պատասխան տուաւ թէ Այո՛. եւ անկէ վերջը ա՛լ ամենեւին բերանը չբացաւ. հապա քնանալու պէս՝ անշարժ կը պառկէր։ Վերջապէս խորունկ շունչ մ'ալ առաւ ու հոգին փչեց, փետրուարի 18ին, կէս գիշերէն գրեթէ երեք ժամ վերջը։ — Լուտեր 62 տարի եւ երեք ամիս ապրած էր։

Ան ատեն ամէն մօտ եղողները եւ մանաւանդ երէցները

8. Յուստոսին տեղեկութեան Սէկյանտ. Գիրք ԺԶ. 270։ Մէնցլ. մէջ, վերը յիշուած տեղը, 423. Բ. Հատ. Բ. Գլ. ԺԹ. 426։ 424։ Մաթեսիոս, Ճառ. ԺԴ. 178։

բարձր ձայնով սկսան իրենց հայրն ու վարդապետը լալ։ Եւ Յուստոս շուտ մը նամակով սա բանս Սաքսոնիայի կայսրընտրին իմացուց, եւ հարցուց թէ ուր կ'ուզէ որ Լութերին մարմինը թաղուի։ Բայց որպէս զի չըլլայ որ յանկարծակի մեռնելուն վրայ մէկը գայթակղի, Յուստոս սա ձայնը դուրս հանեց որ Շատ անգամ Լութեր յայտնած էր թէ մահուան ատենը հասնի նէ՝ կը բաղձայ որ երկայն հիւանդութեամբ չտանջուի, հապա շուտ մը հոգին հանէ։ Ու բանը երկրորդ օրը մեռելոյն պատուոյն համար խօսած ճառին մէջն ալ հաստատեց։

Երկրորդ օրը մարմինն առին մեծ փառաւորութեամբ քաղաքին մէկ եկեղեցին տարին, ուր որ շատ բազմութիւն ժողվուած էր, եւ կոմսերն ալ հոն էին։ Յուստոս ճառ մը խօսեցաւ, եւ նախ մեռելին ու իր երեւելի ձիրքերը երկայն բարակ գովելէն ետեւ՝ խօսքը հոգւոյն անմահութեան ու անդիի աշխարհքին կենացը դարձուց. վերջապէս իբրեւ թէ մարգարէական հոգւով մը ուղղափառ կրօնքին դէմ շատ բան խօսեցաւ, եւ խոստացաւ որ Լութերի մահը ուղղափառութեան կործանումը պիտի փութացընէ, եւ սա բանս հաստատեց Լութերին ան խօսքովը՝ որն որ յառաջները[9] յիշեցինք։ Գիշերը քաղաքացիներէն տասը հոգի մինչեւ առտու պատուոյ համար Լութերին մարմնոյն քովը սպասեցին։ Երրորդ օրն ալ կէսօրէն յառաջ լութերական երէցներէն մէկը Լութերին վրայ դամբանական ճառ մը խօսեցաւ, եւ կէսօրէն վերջը մարմինն առին ու դէպ ի Վիտդենպերկ ճամբայ ելան. վասն զի թէպէտ կոմսերը կ'ուզէին որ հոն՝ ծնած քաղաքը թաղուի, եւ կ'ըսէին թէ հոն մեռնիլն ըստ պատահման եղած բան չէ, հապա Աստուծոյ նախախնամութեամբը. բայց Սաքսոնիայի կայսրընտիրը չուզեց թողուլ եւ հրաման տուաւ որ մեծ շքով Վիտդենպերկ բերուի։

Մարմինը նոյն քաղաքը հասաւ փետրուարի 22ին. համալսարանին բոլոր վարդապետները, քաղաքին խորհրդականները, շատ իշխաններ ու ազնուականներ եւ սաստիկ բազմութիւն մինչեւ քաղաքին դուռը դիմացը գացին, եւ առին ամենայն սրբոց եկեղեցին բերին։ Հոն խել մը տրտմական երգեր երգեցին, եւ Փոմէր ու Մելանքթոն վրան դամբանական ճառեր խօսեցան։ Վերջապէս զինքը թաղեցին նոյն եկեղեցւոյն մէջ, ան ամպիոնին մօտ՝ ուսկից որ այնչափ մոլորութիւններ վարդապետած էր[10]։

9. Գիրք Գ. Գլ. Զ. 19. Ծանօթ. վերջը։

10. Յուստոսին տեղեկութեան մէջ. Գործք Լութ. գերմ. Հատ. Ը. 424.—426։



# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ԼՈՒԹԵՐԻՆ ՄԱՀՈՒԸՆԷ ՄԻՆՉԵՒ ԱՒԿՍՊՈՒՐԿԻ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԴԱՇԻՆՔԸ

Բողոքողաց գործերը։ Կայսրը Շմալքալտեան դաշնակիցներուն դէմ պատերազմի պատրաստութիւն կը տեսնէ։ Բողոքող իշխաններէն ոմանք դաշնակցութենէն կ'ելլեն։ Սաքսոնիայի կայսրընտիրն ու Հեսսենի աշխարհատէր կոմսը պատերազմի կ'ելլեն եւ վերջապէս կը յաղթուին։ Աւգսպուրգի ատենաժողովն ու անոր վճիռը։ Լայփցիկեան ատենաժողովոյ բռնած կրօնաձեւը։ Աւգսպուրգի ժողովը նորէն ատենաժողով մը կը գումարուի։ Բողոքողք Տրիդենտեան ժողովէն մերժ խառնելով կը հեռանան։ Մորից կայսրընտրին ներգործութիւնը։ Բասաւի դաշինքը։ Աւգսպուրգի ատենաժողովն ու խաղաղութիւնը։

## 1546 — 1555

**ԹԷՊԷՏ** Լուտերին մահուամբը գրքերնուս սահմանուած չափը լեցուած է, բայց պատմութիւններնուս ամբողջութիւն մը տալու համար՝ հարկ կը համարինք մինչեւ հիմա պատմածներնուս հետ հարկաւոր կապակցութիւն ունեցող դէպքերը համառօտ եղանակաւ մը յառաջ տանիլ մինչեւ Աւկսպուրկի խաղաղութեան դաշինքը՝ որով կրօնական շփոթութիւններն ու անոնցմէ պատճառած քաղաքական վրդովմունքները գոնէ ժամանակ մը հանդարտեցան։

Ինչպէս որ տեսանք, բողոքող իշխաններուն յանդգնութիւնը ալ վերջին աստիճանի հասած էր. քանի մը տարիէ վեր ապստամբութեան դրօշն յայտնի բացած էին, եւ մարդ կոյր պէտք էր ըլլալ, որ չտեսնէր իրենց բուն վախճանը եւ կրօնի պատրուակին տակ ծածկած նպատակնին, այս ինքն՝ կայսեր իշխանութիւնը բոլորովին մերժելու եւ կատարելապէս ինքնագլուխ ու անկախ ըլլալու ջանքերնին։ Լուտերին վարդապետութիւններն ընդունած եւ Շմալքալտեան դաշնակցութեան մէջ մտած ըլլալը՝ իրենց թէ ամուր վահան կամ պարիսպ մըն էր, որուն պաշտպանութեան տակ՝ ամէն մարդ ուզած չարիքը կրնար ընել, առանց ամենեւին պատիժ կրելու. որովհետեւ Շմալքալտեան դաշնակցութեան անդամները ամէն կերպով զինքը կը պաշտպանէին։ — Թէ որ ժողովրդեան մէկ մասը իր օրինաւոր իշխանին դէմ ապստամբէր, բաւական թէ ըսէր որ իշխաննիս թող չտար որ աւետարանական վարդապետութեան հետեւինք, անմիջապէս Շմալքալտեանք ոտք կ'ելլէին զանոնք պաշտպանելու, ըսելով թէ երկրիս վրայ ամենեւին իշխանութիւն մը չկայ, որ

ժողովրդեան՝ Աստուծոյ անարատ խօսքն ընդունելու բաղձանքին կարող՝ ըլլայ դէմ դնել։ Ասոր հակառակ թէ որ քաղքի մը մեծերը Լուտերի վարդապետութիւններն ընդունելով՝ սկսէին քաղաքացիներուն վրայ բռնաւորական խստութիւն մը բանեցընել եւ զիրենք ստիպել որ ուղղափառութիւնը թող տալով՝ լուտերականութիւնն ընդունին, Շմալքալտեանք մեծերը պաշտպանելու կը սկսէին, ըսելով որ իշխանաց ամենէն մեծ իրաւունքն ու պարտքն է հպատակներնուն փրկութեան հոգ տանիլ։

Ոչ ալ բաւական չէ. կարգաւորեալ բանակներու գլուխ անցած՝ ուղղափառ իշխաններու երկիրները կը յարձակէին, օրինաւոր իշխանները կը մերժէին, երկիրները կը յափշտակէին իրենց կ'առնէին կամ ուզած մարդիկներնուն կու տային։ Ցանցանքներնուն համար՝ կայսերութեան օրինաց համաձայն՝ իշխանութիւններնէն վար առնուած իշխանները զէնքով զօրքով տեղերնին կը դնէին։ Կայսերութեան ու կայսեր յայտնի թշնամիներուն հետ կը թղթակցէին, կը խօսակցէին, անոնցմէ դեսպան կ'ընդունէին ու դեսպան կը խաւրէին, անոնց հետ դաշնակցութիւն կը դնէին, որ պետութեան օրէնքներէն սաստիկ արգելուած էր. մանաւանդ թէ ուրիշները իրենց հայրենեաց ու կայսեր դէմ կը գրգռէին եւ օգնութիւն կը խոստանային։ Եւ այսպէս բոլոր պետութեան օրէնքները ոտքի տակ առնելէն ետեւ՝ ամենեւին ոչ եկեղեցական եւ ոչ աշխարհական դատաստանի վճռոյն հնազանդիլ կ'ուզէին։

Կայսրը թէպէտ աս բաները կը տեսնէր, կ'իմանար որ ասոնց նպատակը իր իշխանութիւնը բոլորովին ջնջել է, ի վերայ այսր ամենայնի դեռ կ'ուզէր հետերնին քաղցրութեամբ վարուելով, խաղաղական միջոցներ բանեցընելով՝ զիրենք ճամբու բերել։ Անոր համար ալ ժողովք ժողովքի վրայ գումարել կու տար, եւ երթալով միշտ աւելի կը զիջանէր. բայց ամէն բան պարապ կ'երթար։ Որչափ որ ինք աւելի զիջում կ'ընէր, այնչափ ալ իրենք աւելի յանդգնութիւն եւ անամօթութիւն կը ստանային։ Բայց վերջապէս կայսրը յայտնի տեսաւ որ իր իշխանութեան դեռ մնացած ստուերը պահելու եւ աւելի մեծագոյն չարիքները խափանելու համար՝ հարկ է որ զէնք բանեցընէ, ուստի եւ սկսաւ զօրք ժողվել։

Որովհետեւ Շմալքալտեանք իրենց բոլոր ըրած չարիքներուն կրօնական կերպարանք կու տային, եւ այնպէս կը ձեւացընէին որ ամենուն միակ նպատակը՝ իրենց կրօնն հաստատուն պահելն է, անոր համար թէ իրենք նոյն ատենները եւ թէ ետեւէն եկող բողոքող մատենագիրներուն մեծ մասը կը գրու-

յեն որ կայսեր իրենց դէմ պատերազմ բանալը՝ պարզապէս իրենց կրօններնուն համար, ուստի եւ նոյն պատերազմը կրօնական պատերազմ էր։ Բայց բաւական է որ մարդ քիչ մը անկողմնակալութեամբ ամէն պարագաներուն միտ դնէ, որպէս զի իմանայ որ կայսեր նոյն պատերազմն ընելուն պատճառը ամենեւին կրօնքը չէր, հապա միայն ան էր որ ապստամբ ու խռովարար իշխանները զսպէ, եւ իր օրինաւոր իշխանութիւնն հաստատէ։ Նոյն պատերազմին բոլոր պարագաները եւ պատերազմէն վերջը կայսեր բռնած ընթացքը աս զրուցածներնուս ստուգութիւնը բացայայտ կը ցուցընեն։ Նախ, աս պատերազմը բոլոր բողոքող իշխաններուն դէմ չէր, հապա միայն անոնց դէմ էր, որոնք Շմալգալտեան դաշնակցութեան մէջ մտած էին, եւ ամէն առթի մէջ կայսեր դէմ կը դնէին ու տէրութեան օրէնքները ոտքի տակ կ'առնէին. իսկ ան իշխաններուն՝ որոնք թէպէտ կրօննին փոխած եւ լուտերականութիւնն ընդունած էին, բայց խռովութեանց մասնակից չէին ըլլար, կայսրը ամենեւին բան մը չէր ըսեր։ Մանաւանդ թէ հանդարտ կեցող բողոքող իշխաններէն ոմանք, եւ առանձինն Մորից Սաքսոնիայի դուքսը[1] կայսեր կողմն էին եւ իրեն հետ միանալով մէկալ ապստամբ իշխաններուն դէմ պատերազմի ելան։ Դարձեալ կայսրը պատերազմ հրատարակելու ատեն՝ յայտնապէս կը զրուցէր թէ մի միայն պատճառն է իր կայսերութեան սկիզբէն մինչեւ նոյն ատեն քանի մը իշխաններուն իրեն հասցուցած նախատինքը, իր հրամաններն ու աւագաժողովներուն վճիռներն արհամարհելնին. բացայայտ կ'ըսէր թէ վախճանն ան է որ նոյն անհնազանդ, անհաւատարիմ ու ապստամբ իշխանները՝ որոնք բոլոր երկրին խաղաղութիւնը կը վրդովեն, կարգն ու կանոնը եւ օրէնքն ու իրաւունքը ոտքի տակ կ'առնեն, հնազանդութեան ու կարգի բերէ եւ Գերմանիան խաղաղցընէ։ Եւ երբ որ Շմալգալտեանք իրեն դեսպան խաւրեցին եւ հարցուցին թէ տեսած պատերազմի պատրաստութիւնը որուն դէմ է, ինք պատասխան տուաւ որ իմ վախճանս դեռ խաղաղութիւնն է, ինծի

1. Աւիկա Գէորգ Սաքսոնիայի դքսին եղբօրը՝ Հենրիկոս դքսին՝ որդին էր։ Գէորգ դքսին որդիքներուն ամէնն ալ իրմէ յառաջ մեռած ըլլալով, անմիջապէս իրեն մահուընէ վերջը (1539ին, Ապրիլի մէջ) եղբայրը Հենրիկոս դուքսն իր տեղը անցաւ, եւ հոգւով մարմնով Լուտերական ըլլալով՝ մէկէն բոլոր երկիրը ստիպեց ուղղափառութիւնը թող տալու։ Հենրիկոս 1541ին մեռնելով՝ իրեն յաջորդեց Մորից. որն որ թէպէտ եւ հօրը պէս լուտերական էր, բայց քաղաքական նկատմունքներով եւ Սաքսոնիայի կայսրընտրին հետ աղէկ չըլլալով, Շմալգալտեան դաշնակցութեան մէջ չէր։ Կայսրը 1547ին զինքը Յովհաննէս Փրեդերիկոսին տեղ Սաքսոնիայի կայսրընտիր ըրաւ, եւ շատ երկիրներ տուաւ։

հնազանդ ըլլալներուն՝ միշտ իմ սէրս ու գթութիւնս կը ցուցընեմ. միայն անհնազանդներուն դէմ իմ կայսերական իշխանութեանս եւ իրաւանց համեմատ՝ սաստկութեամբ պիտի վարուիմ: Ասով նոյն իսկ Շմալգալտեան դաշնակցութեան մէջ ըլլող քանի մը բողոքող իշխանք հանդարտեցան, եւ նոյն դաշնակցութենէն դուրս ելլելով՝ ապստամբական գործքերէն ետ քաշուեցան. եւ անոր համար ալ իրենց ամենեւին վնաս մը հասցընող չեղաւ, թէպէտ եւ բողոքողութեան մէջ հաստատուն մնացին:

Իսկ ուրիշները եւ գլխաւորաբար Սաքսոնիայի կայսրընտիրն ու Հեսսենի աշխարհատէր կոմսը, որոնց գլխաւոր մանաւանդ թէ միակ վախճանն էր յափշտակած հարստութիւններնին եւ ձեռք բերած իշխանութիւննին չկորսնցընել, աս խօսքով ամենեւին չհանդարտեցան, հապա կայսեր դէմ զինելու եւ պատերազմ ընելու պատրաստութիւննին յառաջ տանելով՝ գրեթէ իրմէ աւելի զօրք ոտք հանեցին: Անոր համար պետութեան օրինաց համեմատ՝ (1546ին, Յուլ. 20ին) զիրենք երկուքը իբրեւ ապստամբ իշխանութենէ վար առաւ եւ տարագրութեան տակ ձգեց: Աս դատապարտութեան վճռոյն մէջ յանցանքնին մէկիկ մէկիկ զննելով՝ կը ցուցընէր թէ ինչպէս ասոնք՝ կրօնական շփոթութիւններն ու երկպառակութիւնը վերջացընելու եւ խաղաղութիւնը նորէն հաստատելու համար մինչեւ նոյն ատեն իր ունեցած փոյթն ու ցուցուցած գթութիւնը պարապ հանեցին, եւ ուրիշներն ալ իրենց անհնազանդութեան ու ապստամբութեան ետեւէ ձգելու ջանացին, քանի մը անգամ զօրքով ու զէնքով երկրին խաղաղութիւնը վրդովեցին, մէկուն մէկալին երկիրներն իրենց յափշտակեցին: Եւ աս ամէն չարիքները կրօնի եւ ազատութեան պատրուակաւ գործեցին, ուր որ միակ փափաքնին՝ իր (կայսեր) իշխանութիւնը մերժել, իրենք զիրենք կայսերական իշխանութենէ անկախ ընել, եւ յափշտակած երկիրներով ու ինչքերով մեծնալն էր:

Սակայն իրենք եւ իրենց կողմնակիցները ասով աւելի եւս գրգռուելով՝ իրենց կողմանէ պատերազմը սկսան: Բայց իսկըզբան քանի մը տեղ փոքր յաղթութիւններ ընելէն ետեւ՝ վերջապէս յաղթուեցան. Սաքսոնիայի կայսրընտիրը պատերազմի մէջ (1547ին, Ապրիլի 24ին) վիրաւորեցաւ ու գերի ինկաւ. իսկ Հեսսենի աշխարհատէր կոմսը նեղ մնալով՝ անձնատուր եղաւ (Յունիսի 11ին): Այսպէս կայսրը՝ գրեթէ միայն Շմալգալտեան դաշնակցութեան մէջ չեղող բողոքող իշխաններուն օգնութեամբը՝ նոյն դաշնակցութեան կողմնակիցները յաղթեց եւ զիրենք հնազանդեցուց:

Բայց թէ պատերազմին պատճառն ու վախճանը ոչ իր իշխանութիւնը չափէն աւելի ընդարձակել, եւ ոչ ալ բողոքողաց կրօնքը զինուք ու բռնութեամբ ջնջել էր, անկից յայտնի է որ բողոքող իշխանները ասանկ յաղթելէն ետեւ՝ բողոքողութեան մնացած երկիրները ամենեւին չստիպեց որ իրենց կրօնական պաշտամունքները թող տան, հապա ուզեց որ ուղղափառ կրօնը դառնալնին՝ միայն համոզմամբ ու կամաւոր միաբանութեամբ ըլլայ։ Անոր համար պատերազմները լմննալուն պէս՝ Աւկսպուրկ քաղաքը աւագաժողով մը գումարել տուաւ, զորն որ (1547ին Սեպտ. 1ին) անձամբ բացաւ. եօթը կայսրընտիրներն ու կայսերութեան աւագանւոյն մեծ մասը հոն ներկայ էին։ Կայսրը շատ ջանաց որ գէթ աս աւագաժողովին մէջ բողոքողները յանձն առնեն Տրիդենտեան ժողովքը մարդ խաւրել։ Բայց բողոքող իշխանք՝ բաց ի Մորից կայսրընտրէն՝ չէին ուզեր աս բանին հաւանիլ, կամ իրենց միշտ ըսածը կրկնելով՝ կը զրուցէին որ ան ատեն յանձն կ'առնենք նոյն ժողովքը մարդ խրկել երբ որ քահանայապետը գահերէց չ'ըլլայ, եպիսկոպոսները իրեն ըրած հաւատարմութեան երդմնէն ազատ կ'ըլլան, մեր աստուածաբաններուն ալ նոյն ժողովքին մէջ վճիռ տալու եւ քուէ ձգելու իշխանութիւն կը տրուի, եւ նոյն ժողովքին մինչեւ հիմա ըրած որոշմունքներն անվաւեր ու ոչինչ կը սեպուին։ Աս պայմանադրական պահանջմունքներէն զատ՝ ուրիշ դժուարութիւն մ'ալ կար. Տրիդենտ քաղաքը նոյն ատենները ժանտախտ ինկած ըլլալով՝ արդէն առջի տարին ժողովականներուն մեծ մասը ձգած Պոլոնիա գացած, եւ մինակ մէկ մասը հոն մնացած էր, ուստի եւ ժողովքը գրեթէ դադրած կը սեպուէր։ Անոր համար կայսրը ուզեց բողոքողներուն հետ Առժամանակեայ միաբանութիւն մ'ընել. ուստի եւ քանի մը հոգւոյ յանձնեց որ նոյն առժամանակեայ միաբանութիւնը գլուխ հանելու համար, եւ մինչեւ ընդհանուր ժողովքին նորէն ժողվուելու ատեն բողոքողներուն կրօնական նիւթերու մէջ բռնելու ճամբան որոշելու համար գրուածք մը շինեն։ Ասոնց շինած գրուածքը՝ թէ վարդապետութեան եւ թէ պաշտամանց կողմանէ՝ բոլորովին ուղղափառական էր, եւ բողոքողներուն՝ միայն երկու բանի մէջ կը զիջանէին, մէյ մը որ հաղորդութիւնը կարող ըլլան երկու տեսակաւ մատակարարել, եւ երկրորդ՝ որ ամուսնացող քահանաները իրենց կանայքը պահելով, կարող ըլլան տնօրինմամբ՝ իբրեւ աշխարհական՝ եկեղեցւոյ հաղորդութեան մէջ մնալ։ Իսկ բողոքող իշխաններուն յափշտակած եկեղեցական ընչից վրայ ամենեւին խօսք չէին ըներ։ Կայսրը աս գրուածքին հաւա-

նելով՝ Մայիսի 15ին (1548ին) հրատարակել տուաւ, եւ քիչ մը ետքը (Յունիսի 30ին) աւագաժողովը գոցուեցաւ։

Բայց բողոքող իշխաններուն շատերը անմիջապէս սկսան աս Առժամանակեայ գրքին դէմ դառնալ, եւ բաց ի երկու հոգիէն՝ չուզեցին իրենց երկիրներուն մէջ հրատարակել տալ։ Իսկ Մորից՝ որն որ նոյնը ոչ կատարեալ ընդունողներէն եւ ոչ ալ կատարեալ մերժողներէն էր, իրենց կողման աստուածաբանները զանազան տեղեր ու գլխաւորաբար Լիփսիա ժողվեց, եւ խորհուրդ հարցուց թէ ինչ ընելու է։ Ասոնք Մելանքթոնին գահերիցութեամբը խորհուրդ ընելէն ետեւ՝ որոշեցին որ նոյն Առժամանակեայ գիրքն այնպէս ինչպէս որ է նէ՝ չեն կրնար ընդունիլ, բայց մէջը գտնուած անտարբեր բաներուն կրնան հաւանիլ։ Անոր համար նոյն (1548) տարին Դեկտեմբերի մէջ Սաքսոնիայի կայսրընտրութեան երկիրներուն համար Լէիփսիկեան Առժամանակեայ ըսուած կարգադրութիւնը դուրս ելաւ, որուն մէջ՝ Աւկսպուրկի Առժամանակեայ գրուածքին՝ արտաքին պաշտամանց վրայ բռած որոշմունքները գրեթէ բոլորովին կ'ընդունէին։ Աս կերպով կայսեր Աւկսպուրկի աւագաժողովէն յուսացած օգուտը չըլլալով՝ 1550ին նոյն քաղաքը նորէն աւագաժողով մը գումարել տուաւ, եւ հոն սկսաւ բոլոր զօրութեամբ ջանալ որ բողոքողք մարդ խաւրեն Տրիդենտեան ժողովքը՝ որն որ Յուլիոս Գ. քահանայապետին հրամանաւը նորէն բացուած էր։ Բողոքողք աս անգամ ալ ըստ սովորութեան երկայն ատեն դէմ դնելէն եւ դժուարութիւններ հանելէն ետեւ՝ վերջապէս յանձն առին, եւ այսպէս ալ դրուեցաւ նոյն աւագաժողովին վճռոյն մէջ՝ որն որ 1551ին Փետրուարի մէջ հրատարակուեցաւ։

Աս որոշման համեմատ՝ բողոքող իշխանք սկսած էին ժողովքին պատգամաւորներ խաւրել. մէյ մ'ալ Մորից կայսրընտրին նենգութեամբը ամէն բան տակն ու վրայ եղաւ։ Ասիկա՝ որ միշտ կայսեր կողմը բռնած եւ Շմալգալտեանները յաղթելու մեծապէս օգնած էր, թէ իր տուած խոստմունքները եւ թէ կայսրմէ գտած բարիքները ոտքի տակ առնելով, Գաղղիացւոց եւ քանի մը բողոքող իշխաններու հետ գաղտնի դաշինք դնելէն ետեւ՝ անոնց օգնութեամբ մեծ բանակ մը ժողվեց եւ կայսեր դէմ դարձաւ [2]։ Կայսրը թէպէտ արդէն շատ կողմանէ Մո-

2. Աս նենգութեան պատճառ կը բռնէր Մորից՝ Հեսսենի աշխարհատէր կոմսին ազատ թող չտրուիլը, որուն ազատութիւնը ինք շատ անգամ կայսրմէ խնդրած էր. միանգամայն կայսեր դէմ աս զրպարտութիւնը կ'ընէր որ Գերմանիայի ազատութիւնը կրօնի պատրուակաւ կ'ուզէ կործանել եւ զենք իր գերիներն ընել։ Բայց բուն պատճառն էր որ իսկզբան կեղծաւորելով բոլոր ուզածները եւ մանաւանդ Սաքսոնիայի կայսրընտրութիւնը ձեռք բերելէն ետեւ, ալ կեղծաւորութիւ-

րիցին դէմ կը զգուշացընէին. բայց Կարոլոս անոր յառաջագոյն ցուցուցած հաւատարմութեան վստահանալով՝ անկարելի կը սեպէր որ իրեն դէմ նենգութիւն մ'ընէ։ Ուստի երբ որ ապստամբ կայսրընտիրը սկսաւ մեծ բանակով մը վրան քալել նէ, բոլորովին անպատրաստ գտնուելով՝ փախչելէն ուրիշ բան չկրցաւ ընել։ Ասով Մորից ետեւէ ետեւ շատ քաղաքներ առաւ, դեռ որ կողմը բռնելիքներնուն վրայ տարակուսող բողոքող իշխանները՝ հետը միացուց, եւ այսպէս կայսրը ստիպեց իրեն հետ հաշտութեան դաշինք մը դնելու։

Այն հաշտութեան խօսակցութիւնն ու դաշինքը Բասաու քաղաքն եղաւ, որուն գլխաւոր պայմաններն ասոնք են. Հեսսենի աշխարհատէր կոմսը՝ զոր որ կայսրը արդէն ազատած էր, ազատ ըլլայ. Մորից եւ իր նիզակակիցները թշնամութեան գործքերէն բոլորովին հեռու կենան։ Կայսրը վեց ամիս վերջը ազգաժողով մը գումարել տայ, որուն մէջ խօսուի թէ կրօնական երկպառակութիւններն ինչպէս կրնան խաղաղցուիլ, եւ միանգամայն կայսեր դէմ եղած ամբաստանութիւններն ալ քննուին։ Մինչեւ որ նոյն ազգաժողովը գումարուի նէ՝ մէջերնին խաղաղութիւնը հաստատուն մնայ։ Աս Բասաուի դաշինքը 1552ին Յուլիսի 30ին դրուեցաւ եւ Օգոստոսի 2ին ստորագրուեցաւ ու հրատարակուեցաւ։

Աս կերպով քիչ մը ժամանակուան համար ներքին խաղաղութիւնը հաստատուելէն ետեւ՝ ամէնքը միաբան սկսան արտաքին (Գաղղիացւոց ու Տաճկաց դէմ ըլլալու) պատերազմին զբաղիլ։ Բայց վեց ամիս վերջը գումարուելու ազգաժողովը՝ աս պատերազմներուն պատճառաւ՝ հազիւ երեք տարի վերջը (1555ին) գումարուեցաւ Աւկսպուրկ քաղաքը։ Նոյն ազգաժողովը ութ ամիսի չափ տեւեց, եւ վերջապէս Սեպտեմբերի 21ին կրցան միաբանիլ ու հետեւեալ որոշմունքներն ընել, որոնք նոյն ամսոյն 26ին հրատարակուեցան։

Կայսրը, կայսրընտիրներն եւ ուրիշ աւագանին՝ տէրութեան մէջ ամենեւին մէկու մը դէմ՝ Աւկսպուրկի դաւանութեան հետեւելուն համար՝ բռնութիւն մը պիտի չընեն եւ վէնք պիտի

նը մէկդի ձգեց, եւ իր նախորդը Յովհաննէս Փրետերիկոսին պէս՝ Շմալքալտեանց գլուխն անցնելով՝ իր իշխանութիւնն աւելի մեծցընելու եւ կայսեր իշխանութիւնը նուազեցընելու, մանաւանդ թէ կործանելու ետեւէ սկսաւ իյնալ։ Իսկ իր պատրաստութիւնները գաղտուկ տեսնելու աղէկ առիթ ունեցաւ Մակտեպուրկ քաղաքին պաշարումը, որուն բնակիչները դեռ ապըստամբ ըլլալով՝ կայսրը Մորիցին յանձնած էր որ շատ զօրքով վրանին երթայ ու քաղաքը պաշարմամբ առնէ։ Իրաւ իշխանը բազմաթիւ բանակ մը ժողվեց, տարիի մը չափ քաղաքը պաշարեց կեցաւ, եւ նոյն միջոցին իր պատրաստութիւնները տեսնելով՝ բանակն իր օրինաւոր տիրոջը դէմ դարձուց։

չարչարանէն. Հապա աս կրօնական վիճումն ու երկպառակութիւնք վերջացնելու համար՝ միայն քրիստոնէական, բարեկամական ու խաղաղական միջոցներ պիտի բանեցուին : Նոյնպէս Աւկսպուրկի դաւանութեան հետեւողները՝ գլխաւորը եւ ուրիշ հին կրօնին հետեւող թէ աշխարհական եւ թէ եկեղեցական իշխանները իրենց կրօնական եւ եկեղեցական պաշտամանց, ինչից եւ երկիրներուն մէջ հանդարտաբար ու հանգիստ թող պիտի տան : Թէ որ աս հին կրօնին հետեւող եպիսկոպոսներէն մէկը՝ նոյն կրօնքը թող տալու ըլլայ նէ, նոյն գործքով իր պաշտօնն ու թոշակը կը կորսնցընէ, եւ գլխուն ընտրողները ուրիշ մէկը պէտք է որ ընտրեն : Ամենեւին իշխան մը ուրիշ մէկ իշխանը կամ ուրիշին հպատակը իր կրօնին դառնալու պիտի չստիպէ, եւ կամ ուրիշին հպատակը իր օրինաւոր իշխանին դէմ պիտի չպաշտպանէ. բայց թէ որ մէկը կրօնի պատճառաւ տեղէն ելլել ուրիշ տեղ երթալ ուզէ նէ՝ ամենեւին արգելք պիտի չդրուի եւ ինչքերն օրինաւոր կերպով ծախելը պիտի չարգիլուի : Ան տեղերը՝ ուր որ երկու կրօնքին ալ հետեւողներ կային, անկէ վերջն ալ ազատ պիտի ըլլան նոյնպէս մնալու : Բողոքողներուն իրենց սեպհականած այնպիսի եկեղեցական ինչքերը՝ որոնք տէրութեան անմիջական ինչքեր չէին, եւ որոնք Բասաուեան դաշնադրութեան ատեն եւ անկից առաջ եկեղեցականաց ձեռքը չէին, հիմակուան տէրերուն ձեռքը մնան : . . . Ուրիշ աղանդաւորները՝ որոնք ոչ ուղղափառ կրօնի եւ ոչ Աւկսպուրկեան դաւանութեան կը հետեւէին, աս խաղաղութեան դաշանց մէջ մտած չէին սեպուիր :

Կրօնական երկպառակութեանց պատճառաւ Գերմանիայի մէջ եղած շփոթութիւնները աս Աւկսպուրկի խաղաղութեամբ առ ժամանակ մը վերջացան : Բայց կրօնական բաժանումը նոյն դաշինքով քաղաքականօրէն ալ հիմնուեցաւ եւ հաստատեցաւ : Եւ այսպէս հիմ դրուեցաւ ան սաստիկ թշնամութիւններուն եւ պարհուրելի պատերազմներուն՝ որոնք ետքը պատահեցան :



# ՑՈՒՑԱԿ ԳԼԽՈՑ



## ԳԻՐՔ Ա

### ԼՈՒԹԵՐԻ ԾՆՆԴԵՆԷՆ ՄԻՆՉԵՒ ՎԱՐԴԳՈՒՐԿԷՆ ԵԼԼԵԼԸ

## Գ Ի Ր Ք Բ

### ԼՈՒԹԵՐԻ ՎԱՐԴՊՈՒՐԿԷՆ ԵԼԼԵԼԷՆ ՄԻՆՉԵՒ ԱՒԿՍՊՈՒՐԿԻ ԱՒԱԳԱԺՈՂՈՎԸ

